# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

# 16

# FOREIGN SOURCES

# ABOUT ARMENIA AND ARMENIANS

NATIONAL ACADEMY OF SCIENCES OF ARMENIA
INSTITUTE OF ORIENTAL STUDIES

# ARAB SOURCES

## III

# ARAB HISTORIANS AND GEOGRAPHERS OF IX - X CENTURIES

INTRODUCTION AND TRANSLATIONS FROM ORIGINAL TEXTS BY

Prof. ARAM TER–GHEVONDIAN

YEREVAN UNIVERSITY PUBLISHING HOUSE

YEREVAN 2005

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ
ԱՐԵՎԵԼԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԱՐԱԲԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Գ

# ԱՐԱԲ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ

## Թ - Ժ ԴԱՐԵՐ



ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ
ԲՆԱԳՐԵՐԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԱՐԱՄ ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆԻ



ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ 2005

ՀՏԴ 941 (479.25)
ԳՄԴ 63.3 (2Հ)
Ա 821




ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
**ԳԱԼՈՒՍՏ ԳՅՈՒԼԲԵՆԿՅԱՆ**
ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅԱՆ

Հատորի կազմող և խմբագիր, ծանոթագրությունների և
ցանկերի հեղինակ, պատմ. գիտ. թեկնածու
**Վահան Տեր-Ղևոնդյան**

Ա 821 Արաբական աղբյուրներ Գ / Թարգմ. բնագրից, ներածություն **Արամ Տեր-Ղևոնդյանի**: Երևանի համալս. հրատ.: Եր., 2005, 704 էջ:

Գրքում թարգմանաբար ներկայացված են հատվածներ 9-10-րդ դարերի արա պատմիչների ու աշխարհագրագետների 19 երկերից: Դրանք հարուստ տեղ կություններ են պարունակում 7-10-րդ դարերի Հայաստանի և հարևան երկրներ ինչպես քաղաքական պատմության, այնպես էլ տնտեսության, վարչաիրավակա դրության ու մշակույթի վերաբերյալ:

Ուշագրավ տվյալներ կան նաև Հայաստանի լեռների, գետերի, լճերի, ըն հանրապես բուսական ու կենդանական աշխարհի, ինչպես նաև ճանապարհներ քաղաքների, արհեստների ու առևտրի մասին:

Ա $\frac{0503020913}{704(02)05}$ 2005 ԳՄԴ 63.3 (2Հ

ISBN 5-8084-0703-6

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## Ժ դար, աշխարհագրագետներ

# ԿԱԶՄՈՂԻ ԿՈՂՄԻՑ

Վաստակաշատ արաբագետ-հայագետ Արամ Տեր-Ղևոնդյանը 1980-ական թվականներին ձեռնարկել էր երկու ծավալուն ու հիմնարար աշխատանքներ, որոնք լինելու էին նախորդ տասնամյակների իր պրպտումների ու ուսումնասիրությունների տրամաբանական շարունակությունը:

Այդ աշխատությունների իրականացումն ու հրատարակումը ծանրակշիռ ներդրում էր լինելու Հայաստանում արաբագիտության ու միջնադարագիտության զարգացման գործում: Դրանցից առաջինը պիտի լիներ «Հայաստանը և արաբական աշխարհը է-ԺԶ դարերում» մեծածավալ աշխատությունը, որն ընդգրկելու էր հայ-արաբական փոխհարաբերությունները մարզպանական շրջանից մինչև օսմանյան տիրապետության հաստատումը: Ընդ որում, հեղինակը նպատակ ուներ անդրադառնալու հայ-արաբական ոչ միայն քաղաքական, այլև տնտեսական ու մշակութային բազմազան հարաբերություններին: Գիրքը ունենալու էր նաև մի այլ առանձնահատկություն: Եթե Ա. Տեր-Ղևոնդյանի «Հայաստանը և արաբական խալիֆայությունը» (1977) ներկայացնում է փոխհարաբերությունների պատմություն միշտ իբրև կենտրոն ունենալով Հայաստանը, ապա ստեղծվելիք գործը պիտի նախկինի համեմատ ավելի մեծ տեղ տար արաբական նյութին, զուգահեռ տաներ շարադրանքը և, լիներ ոչ թե շեշտված հայագիտական, այլ հավասարապես հայագիտական-արաբագիտական: Հանկարծահաս մահը կիսատ թողեց այս գործը: Շարադրված էին այդ աշխատության միայն առաջին հինգ գլուխները, որոնք առանձին գրքով հրատարակվեցին 1996 թվականին «Հայաստանը 6-8-րդ դարերում» խորագրով (ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն):

Երկրորդ ուղղությունը՝ արաբ մատենագիրների երկերի արաբերենից հայերեն թարգմանություններն ու հրատարակություններն էին, որոնք նա ծրագրել էր իրականացնել լիակատար ու համակարգված ձևով:

Արաբական պատմագրությունն ու աշխարհագրությունը ձևավորված գիտություն է դառնում Թ դարում ու զարգացում ապրում մինչև ԺԵ-ԺԶ դարերը, մինչև օսմանյան նվաճումը: Ուստի Ա. Տեր-Ղևոնդյանը ծրագրել էր ժամանակագրական սկզբունքով, թարգմանել, ծանոթագրություններով ու գիտական համապատասխան ապարատով հրատարակել արաբալեզու մատենագիրների բոլոր այն երկերից հատվածներ, որտեղ որևէ հիշատակություն կար Հայաստանի կամ հայերի մասին: Ընդ որում, արդեն արված գործը ցույց է տալիս, որ եթե 1981-ին հրատարակած 13-րդ դարի պատմիչ

Իբն ալ-Ասիրի երկերին նվիրված հատորում ուշադրության կենտրոնում է Հայաստանը և անմիջական հարևան երկրները, ապա թարգմանությունների այս նոր շարքը էլ ավելի լայն է բացում կարկինը, երբեմն ընդգրկելով նաև Բյուզանդիայի կենտրոնական մասը, Իրանի գրեթե բոլոր նահանգները, կովկասյան ու թյուրքական ամենատարբեր ցեղեր, Սիրիա, Իրաք, Պաղեստին, Եգիպտոս, մինչև անգամ հեռավոր Մաղրիբ ու Անդալուս (Մահմեդական Իսպանիա): Ընդ որում, բացի զուտ քաղաքական անցուդարձի վերաբերյալ հաղորդումներից, առատ տեղեկություններ կան առևտրատնտեսական հարաբերությունների, ժամանակի հարկային ու իրավական դրության, ամենատարբեր բնագավառների մասին: Ընդգծենք, որ այստեղ ևս գործել է վերոհիշյալ ուսումնասիրության սկզբունքը, այն է. հայ-արաբական փոխառնչություններին մոտենալ ոչ թե զուտ հայագիտական, այլ միջազգային տեսանկյունից, հայագիտության ու արաբագիտության նվաճումները զուգադրել այնպես, որ այս երկու բաղադրիչներից և ոչ մեկը չկորցնի իր գիտական լրջությունն ու մասնագիտական խորությունը:

Ցավոք, այս ասպարեզում ևս Ա. Տեր-Ղևոնդյանի նախաձեռնածը կիսատ մնաց: Նա հասցրել էր իրականացնել միայն առաջին հատորի համար նախատեսած թարգմանությունները և գրել էր մի ծավալուն ներածություն (ինչպես նաև Խորեզմիի, Ֆարղանիի, Յակուբիի ու Մուկադդասիի կենսագրությունները և փոքրաթիվ ծանոթագրություններ):

Հատորն ընդգրկում է Թ դարի 15 մատենագիրների (Աբու Յուսուֆ, Վահբ իբն Մունաբբիհ / Իբն Հիշամ, Վակիդի, Խալիֆա իբն Խայյաթ, Իբն Կուտայբա, Աբու Հանիֆա ալ-Դինավարի, Բալազուրի, Յակուբի, Խորեզմի, Ջահիզ, Իբն Խորդադբեհ, Իբն ալ-Ֆակիհ, Իբն Ռուստա, Ֆարղանի, Կուդամա իբն Ջաաֆար) պատմական ու աշխարհագրական բնույթի 16 երկեր, ինչպես նաև երեք աշխարհագրագետներ Ժ դարից (Իսթախրի, Իբն Հաուկալ, Մուկադդասի): Նշված դարաշրջանի խոշոր հեղինակներից ընդգրկված չէ միայն Թաբարին: Ամենայն հավանականությամբ Տեր-Ղևոնդյանը դեռ չէր ձեռնարկել Թաբարիի պատմության ամբողջական թարգմանությանը, որը հավանաբար, կա՛մ կկազմեր առանձին հատոր, կա՛մ Իսթախրիի, Իբն Հաուկալի ու Մուկադդասիի հետ միանալով, Ժ-ԺԱ դարերի այլ հեղինակների հետ, կամբողջացներ արաբական աղբյուրների հաջորդ հատորը:

Հայաստանի, կամ հայերի մասին տեղեկություններ պարունակող գլուխները, կամ ենթագլուխները Տեր-Ղևոնդյանը գիտակցաբար թարգմանել է ամբողջությամբ, ուստի ընթերցողը, երբեմն, կարող է հանդիպել դեպքերի կամ անձանց նկարագրությունների, որոնք առաջին հայացքից, Հայաստանի հետ անմիջական առնչություն չունեն:

Տառադարձության հարցում Ա. Տեր-Ղևոնդյանը ներկա հատորում հիմ-

նականում հետևել է նույն այն սկզբունքներին, որոնք կիրառվել են 1981-ին լույս տեսած Իբն ալ-Ասիրի երկերի թարգմանություններում: Ուստի վերոհիշյալ հատորից, առանց որևէ փոփոխության, զետեղում ենք տառադարձության վերաբերող մասը (Տե՛ս Իբն ալ-Ասիր, Երևան, 1981, էջ 32-33):

«Մեր թարգմանության մեջ ամենադժվարին խնդիրներից մեկը տառադարձության հարցն է: Մինչ այժմ չկա հայերեն տառերով արաբերենի տառադարձություն, (որի համար պետք է լինեն տպագրական տառաձևեր, միջոցներ), ինչպես կա եվրոպական լեզուներում լատինական տառերով և ռուսերենում՝ ռուսական տառերով:

Այնուհանդերձ ստեղծել ենք մեզ համար պայմանական տառադարձություն, որը կիրառել ենք նաև այս թարգմանության մեջ: Արաբերենի 28 տառերից հնարավոր է հայերեն տառադարձել միայն 21-ը: Դրանք են ا(ա), ب(բ), ت(տ), ج(ջ), خ(խ), د(դ), ر(ռ, ր), ز(զ), س(ս), ش(շ), ط(թ)[1], ع(ղ), ف(ֆ), ق(կ), ك(ք), ل(լ), م(մ), ن(ն), ه(հ), و(ու), ي(յ):

Մնում է յոթ տառ, որոնց համար հայերենում չունենք համապատասխան համարժեքներ, ուստի և գոհացել ենք հարմարեցնելով: Այսպես լեզվաշրթնային ث(սա) տառի համար դրել ենք պարզապես ս: Սույն հայկական տառն օգտագործել ենք նաև լեզվաքմային ص(սադ) տառի համար: Կոկորդային ح(հա) տառի դիմաց դրել ենք սովորական հ, լեզվաքմային ذ(զալ) տառի դիմաց դ, լեզվաքմային ض(դադ) տառի փոխարեն նույնպես դ, լեզվաքմային ظ(զա) տառի համար զ: Սակայն ամենամեծ թերությունը կոկորդային ع(այն) տառի դիմաց ոչ մի հարմար գիր չլինելն է: Տվյալ դեպքում ապաթարցը հնարավոր չէ օգտագործել, որովհետև դա օգտագործել կարելի է «ալիֆ համզայի» համար, իսկ «այնի» համար թե՛ եվրոպական լեզուներում, թե՛ ռուսերենում ապաթարցի հակառակ ուղղությամբ կիսակլոր է օգտագործվում:

Յնարավորություն չկա նաև երկար ձայնավորներն (երկար ա, ու, ի) արտահայտելու:

Արաբերենի (ալ-) որոշիչ հոդը բաղաձայնով սկսվող բառից առաջ արտասանվում է ըստ իրեն հետևող տառի: Եթե նրան հաջորդում է արևային կոչվող բաղաձայններից մեկը ( س ش ص ض ظ ط ل ن ت ث د ذ ر ز), ապա նրա լ հնչյունը, ազդվելով հաջորդ բաղաձայնից, կրկնակի է արտասանվում: Այսպես, գրվում է ալ-շամս (արև), բայց արտասանվում է աշ-շամս: Իսկ եթե հաջորդող բառի առաջին բաղաձայնը լուսնային է (ا ب ج ح خ ع غ ق ك م ه و ي), ապա կարդացվում է այնպես, ինչպես գրվում է: Այսպես, գրվում է ալ-կամար (լուսին) և նույն ձևով արտասանվում է: Յետևելով եվրոպական արևելագի-

[1] Այս տառի (ط) հայերեն տառադարձման հարցում չկա միասնական կարծիք: Ավելի հաճախ օգտագործվում է «տ» տառը, բայց մենք բոլոր տեղերում թողել ենք «թ», այնպես ինչպես գրել է Ա. Տեր-Ղևոնդյանը: (Վ. Տ. -Ղ.)

տության մեջ այժմ ընդունված սկզբունքին որոշիչ հոդը գրում ենք միշտ ալ-ձևով, անկախ այն բանից, թե ինչպիսի բաղաձայն է նրան հաջորդում:

Նույնպես և Աբու (հայր) բառի դեպքում, երբ հոլովվելով դառնում է Աբի, ինչպես, օրինակ, Իբն Աբի Ջաֆար (Աբու Ջաֆարի որդի), դարձյալ գրում ենք եվրոպական արևելագիտության մեջ ընդունված ձևով Իբն Աբու Ջաֆար «Աբու» բառը միշտ պահելով ուղղական հոլովով»:

Հայաստանի գիտությունների ազգային ակադեմիան 1960-ական թվականների սկզբից ձեռնարկեց «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» շարքը, որի հրատարակման շնորհիվ հայերեն թարգմանվեցին հին հունական, բյուզանդական, ասորական, արաբական ու թուրքական արժեքավոր աղբյուրներ, որոնք ամփոփված են մինչ այժմ (1961-1990 թթ. ընթացքում) լույս տեսած 15 հատորների մեջ: Դրանցից երկուսը վերաբերում են արաբական աղբյուրներին: Նախ, 1965-ին հրատարակվեց Հակոբ Նալբանդյանի կազմած հատորը, որն ամփոփում էր 13-14-րդ դարերի երեք մատենագիրների (Յակուտ ալ-Համավի, Աբուլ-Ֆիդա և Իբն Շադդադ) երկերից հատվածներ: Իսկ 1981-ին Արամ Տեր-Ղևոնդյանի հեղինակությամբ լույս տեսավ ամբողջովին Իբն ալ-Ասիրին (13-րդ դար) նվիրված մի հատոր, որում թարգմանաբար տեղ են գտել հատվածներ նրա նշանավոր «Լիակատար Պատմություն», ինչպես նաև «Մոսուլի աթաբեկների պատմություն» երկերից:

Հայագիտության, մասնավանդ պատմագիտության ու աղբյուրագիտության զարգացման համար այս անչափ կարևոր մատենաշարը 1990 թվականից հետո նոր հրապարակումներ չունեցավ: Եվ ահա, մեծ ընդմիջումից հետո, շնորհիվ **«Գալուստ Գյուլբենկյան» հիմնարկության** և նրա հայկական բաժնի անխոնջ տնօրեն, **դոկտոր Զավեն Եկավյանի** ազնիվ նախաձեռնության, հրատարակվեց պրոֆեսոր Արամ Տեր-Ղևոնդյանի անտիպ մնացած գործը, կազմելով «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի հերթական հատորը:

Գիրքը հրատարակության պատրաստելու, մանավանդ ծանոթագրությունները կազմելու (առաջնորդվել ենք գոնե անհրաժեշտ նվազագույնը ապահովելու սկզբունքով) ընթացքում մեծապես օգտվել ենք վերոհիշյալ մատենաշարի նախորդ հրատարակություններից (հատկապես արաբական աղբյուրներից): Մասնագիտական խորհուրդների և աջակցության համար երախտագիտությունս եմ հայտնում ԵՊՀ Արաբագիտության ամբիոնի դոցենտ Դավիթ Հովհաննիսյանին և նույն ամբիոնի ասպիրանտ Մարատ Յավրումյանին:

Ներկա գիրքը ընդհանուր մատենաշարի մեջ 16-րդն է, իսկ արաբական աղբյուրների շարքում՝ 3-րդը:

*Վահան Տեր-Ղևոնդյան*

## ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

*Հայաստանի և հայ ժողովրդի միջնադարյան պատմության ուսումնասիրման համար հին հունական, բյուզանդական, ասորական, պարսկական, լատինական, վրացական, թուրքական և այլ պատմական աղբյուրներին առընթեր կարևոր նշանակություն ունեն արաբ մատենագիրների (պատմիչներ և աշխարհագրագետներ) երկերը, որոնք հորինվել են հիմնականում Թ-ԺԵ դարերում:*

*Սույն հատորում քաղվածաբար տեղեկություններ ենք թարգմանել Թ դարի թե՛ աշխարհագրական, թե՛ պատմական երկերից: Դրանց հեղինակներն են աշխարհագրագետներից՝ Խորեզմի (780-847), Ֆարղանի (Թ դար), Ջահիզ (775-869), Իբն Խորդադբեհ (820-912), Յակուբի (մահ. 897), Իբն ալ-Ֆակիհ (մահ. 903-ից հետո), Իբն Ռուստա (մահ. 913-ից հետո) և Կուդամա իբն Ջաաֆար (մահ. 932-ից հետո). պատմիչներից՝ Աբու Յուսուֆ (մեռ. 798), Իբն Հիշամ (մահ. 828/833), Վակիդի (մահ. 822), Խալիֆա իբն Խայյաթ (մահ. 854/855), Իբն Կուտայբա (մահ. 889), Դինավարի (մահ. 895) և Բալազուրի (մահ. 892). ապա Յակուբին, որն ունի թե՛ աշխարհագրական, թե՛ պատմական երկ:*

*Իններորդ դար հասկացությունը տվյալ դեպքում հարաբերական է: Իբն Խորդադբեհը, Իբն ալ-Ֆակիհը, Իբն Ռուստան և Կուդաման մահացել են տասներորդ դարի առաջին տասնամյակներում, սակայն աշխարհագրական գրականության մեջ համարվում են իններորդ դարի աշխարհագրական դպրոցի ներկայացուցիչներ: Աբու Յուսուֆին նույնպես կարելի է համարել իններորդ դարի պատմիչների շարքում, քանզի նրա իրավագիտական տեղեկությունները խիստ կարևոր նշանակություն ունեն Թ դարի պատմության համար և առնչվում են այս դարի իրադրությանը:*

*Սույն դարի արաբ մատենագիրների երկերում շարադրված է համաշխարհային պատմության այն ժամանակաշրջանը (Է-Թ դարեր), երբ աշխարհի հզոր տերություններից էր Արաբական խալիֆայությունը, իսկ Հայաստանը սերտ քաղաքական ու տնտեսական առնչության մեջ էր այդ պետության հետ:*

**Արամ Տեր-Ղևոնդյան**

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

## ԴԱՐԱՇՐՋԱՆԸ

### ա. Խալիֆայությունը

Դարեր շարունակ քաղաքակիրթ աշխարհից գրեթե մեկուսացած, վաչկատուն արաբը է դարում հանկարծակի մտավ պատմության ասպարեզ, անհավատալի արագությամբ կազմեց մի կայսրություն, որն իր ժամանակի ամենից ընդարձակն էր և արաբացրեց մեկ տասնյակից ավելի երկրներ, իսկ նրա կրոնը տարածվեց արևմուտքում մինչև Ատլանտյանի ափերը և արևելքում՝ Խաղաղ օվկիանոս: Սա պատմության տարօրինակություններից է:

Արաբական խալիֆայությունը որպես պետություն սաղմնավորվեց Արաբիայում: Այստեղ դեռևս Ք. ա. Ժ-Ը դարերում թերակղզու հարավում գտնվող Եմեն երկրամասում ծնունդ էր առել սեմական ազգաբնակչություն ունեցող մի թագավորություն Սաբա կոչված, որին հաջորդեց Հիմյարը (վերացավ 525 թ.): Այս հին սեմական ժողովուրդը դարերի ընթացքում արաբացավ, սակայն իր մշակույթով ազդեց վաչկատուն արաբի վրա:

Բուն արաբական ցեղերը դարեր շարունակ թափառել են իրենց թերակղզում և հայտնի են եղել դեռ ասորեստանյան ու բաբելական արձանագրություններում: Հելլենիստական դարաշրջանում հաճախ են ասպատակել և հաստատվել Ասորիքի ու Միջագետքի կողմերը[1]: Պետրան ու Պալմիրան (արաբ. Թադմոր) արաբական ծագումով բնակչություն ունեին, որն արամեացել էր, թեև Պետրայի արաբները կապված էին արաբական միջավայրին, մանավանդ որ Պետրայի նաբաթական գիրը հիմք էր դարձել արաբական գրի հնագույն ձևի առաջացմանը:

Դ-Է դարերում հեթանոս արաբների կյանքում փոփոխություններ էին կատարվում: Ցեղային կարգերը թեև մնում էին, սակայն տեղի էր ունենում շերտավորում և հարաբերությունները արտաքին աշխարհի հետ սերտանում էին: Ասորիքի հարավ-արևելյան կողմում հաստատվում է արաբական Ղասսան ցեղը, որը ենթարկվում է Բյուզանդիային, իսկ Միջագետքի հարավային Հիրա քաղաքում հաստատվում է Տաննուխ

[1] Ph. Hitti, History of the Arabs, London, 1958, pp. 74-78.

ցեղը, որը ենթարկվեց Սասանյան Իրանին: Ղասսան ցեղը պաշտոնապես ընդունել էր քրիստոնեությունը միաբնակ (հակոբիկ) ասորիներից, իսկ Տաննուխը թեև ընդունել էր քրիստոնեությունը նեստորականներից, այսուհանդերձ Լախմ վերնախավը (տոհմը) պաշտոնապես մնում էր հեթանոս: Այս երկու ցեղերը[2] միջնորդ հանդիսացան քաղաքակիրթ աշխարհի և դարեր շարունակ մեկուսացած ցեղերի միջև: Ղասսանի ու Հիրայի ցեղապետերը հովանավորում էին անապատի արաբ բանաստեղծներին Ե-Զ դարերում:

Բուն Արաբիայի ցեղերի մեջ որոշ չափով տարածվել էր քրիստոնեությունը (Բաքր, Տաղլիբ և այլն) և մովսիսականությունը (հրեական կրոն), սակայն հիմնական զանգվածը միշտ մնում էր հեթանոս: Հիջազի արաբների կրոնը, որն ընդունված էր ամբողջ արաբական թերակղզում, բազմաստվածությունն էր: Գլխավոր աստվածությունը (ալլահը) երեք դուստր ուներ, որոնք հավանաբար Հիջազի երեք քաղաքների (Մեքքա, Թաիֆ և Յասրիբ՝ հետագայում Մադինա) դիցուհիներն էին:

Հիջազի քաղաքները և հատկապես Մեքքան առևտրական հարաբերություններ ունեին Ասորիքի հետ, ընդ որում մի քանի հազար ուղտերից բաղկացած կարավանները երթևեկում էին Հիջազի ու հյուսիսային երկրների միջև: Այս կարավանների տեր ցեղապետերը արդեն մեծապես տարբերվում էին ցեղի մյուս անդամներից և բավական նկատելի շերտավորում էր կատարվել ցեղերի ներսում: Հիջազը, որ համեմատաբար առավել զարգացած շրջանն էր Արաբիայում, բնականաբար ձգտում էր իր ազդեցությանը ենթարկելու մյուս շրջանները՝ Նաջդը (կենտրոնական Արաբիայում), Եմենը, Օմանը և այլն:

Արաբիայի միավորումը Հիջազի հովանու տակ իրականացավ նոր կրոնի՝ իսլամի (մահմեդականության) առաջացման շնորհիվ, որի հիմնադիրն էր Մուհամմադը: Նա 630 թվականին Մեքքայում տապալեց հեթանոսական կուռքերը և դարձավ Հիջազի մարգարեն և տիրակալը: Նույն թվին Արաբիայի տարբեր մասերից եկան հպատակություն հայտնելու և այսպիսով պատմության մեջ երբեք չմիավորված Արաբիան դարձավ մեկ իշխանության ենթակա:

Մուհամմադը մեռավ 632 թվականին: Նրա հաջորդները կոչվեցին խալիֆա (հաջորդ):

633-ին արաբները իրենց առաջին հարձակումը գործեցին բյուզան-

---

[2] Նախամահմեդական Արաբիայի մասին տես՝ C. de Perceval, Essai sur l' histoire des Arabes avant l' Islamisme, 3 vol., Paris, 1847:

դական Պաղեստին նահանգի վրա: Աներևակայելի արագությամբ անապատի ցեղերը նվաճեցին Բյուզանդական կայսրության հողերի մեծ մասը և ամբողջ Սասանյան Իրանը: Դա պայմանավորված էր ներքին ու արտաքին ազդակներով:

Ներքին ազդակներից պիտի հիշել տնտեսականը, քանի որ աղքատիկ Արաբիան բոլորովին ի վիճակի չէր գոհացնելու իր ռազմունակ ցեղերին, որոնք դարեր շարունակ ձգտել էին դուրս գալ և ասպատակել Միջագետքի, Պաղեստինի ու Ասորիքի արգավանդ ու բարեբեր հողերը: Նոր կրոնի դրոշի տակ միավորվելով, դարեր շարունակ իրար բզկտող արաբական ցեղերը իրենց սլաքն ուղղեցին արտաքին ուժերի դեմ: Իսլամը նպաստեց արաբների նվաճումներին հատկապես նաև այն պատճառով, որ նա հայտնի կրոններից միակն է, որ հանում հավատի պատերազմը (ջիհադ) այլահավատների դեմ, հենց իր սրբազան մատյանում՝ Ղուրանում, համարում է ամեն մի հավատացյալի կրոնական պարտականությունը:

Այսուհանդերձ արաբական ցեղերի միավորումը և արաբական պետության կազմավորումը, որին անմիջապես հաջորդեցին նվաճումները, բոլորովին չէին տա այն առասպելական հաջողությունները, որոնց հասան արաբները, եթե չլինեին նաև արտաքին նպաստավոր գործոնները: Արաբների հաջողության երաշխիքը այն քաղաքական, տնտեսական ու հասարակական ճգնաժամն էր, որը համակել էր Բյուզանդիային ու Իրանին՝ արաբների ճանապարհը դեպի Ասորիք ու Միջագետք փակող պետություններին:

571 թվականից մինչև 629, միայն կարճատև ընդմիջումով (591-603) Բյուզանդիան ու Իրանը, կես դար գոտեմարտելով, լրիվ սպառել էին իրենց ռազմական հնարավորությունները: 629 թվականի հաշտությունից հազիվ չորս տարի էր անցել, երբ արաբները խուժեցին Պաղեստին ու Միջագետք իրենց առջև գտնելով ուժասպառ ու հյուծված զորքեր:

Երկու հզոր տերությունները նաև ներսից էին քայքայված: Քաղկեդոնի (451) տիեզերական ժողովից հետո կայսրության կողմից ընդունված երկաբնակությանը հակադրվեցին միաբնակ ուսմունքի կողմնակից (կամ երկաբնակությունը մերժող) եկեղեցիները՝ ղպտականը, ասորականը և հայկականը: Այնպիսի լարված տրամադրություններ էին ստեղծվել, որ Ասորիքում ու Եգիպտոսում նույնիսկ նախապատվությունը տալիս էին արաբներին: Սասանյան Իրանը նույնպես ներքուստ մաշված էր (չորս տարվա ընթացքում տասը արքաներ իրար

հաջորդեցին) մազդակյան աղանդավորական շարժման առաջացրած հակասությունների հետևանքով:
Այսպիսով արաբական պետության կազմավորումը և երկու հզոր տերությունների լիակատար քայքայումն (որը սոսկ պատահականություն էր) այնպիսի նպաստավոր իրադրություն ստեղծեցին, որ դարեր շարունակ միայն դրացի երկրներն ասպատակել երազող քոչվորը հանկարծ կարողացավ այնպիսի երկրներ նվաճել, որոնց գոյության մասին նվազագույն պատկերացումն իսկ չուներ:
Օմար խալիֆայի օրոք (634-644) Խալիդ իբն ալ-Վալիդ և Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահ զորավարները նվաճեցին Պաղեստինն ու Ասորիքը (633-640), Սաադ իբն Աբու Վակկասը գրավեց Միջագետքը և մտավ արևմտյան Իրան 637 և 641 թվականների հաղթանակներով, իսկ Ամր իբն ալ-Ասը նվաճեց Եգիպտոսը (640-642)[3]: Օգտվելով Յարմուքի ճակատամարտում Բյուզանդական կայսրության և Կադիսիայի ճակատամարտում Սասանյան զորքերի պարտությունից, Թեոդորոս Ռշտունին 639 թվականին միավորեց Հայաստանի երկու մասերը: Օմարի օրոք տեղի ունեցան 640 և 642-643 թվականների արշավանքները դեպի Հայաստան:
Օմարի սպանությունից հետո նրան հաջորդեց Օսման իբն Աֆֆանը (644-656), որն Օմայան տոհմից էր: Արա օրոք շարունակվեցին նվաճումները և Իրանն ամբողջովին նվաճվեց, իսկ փախստական Հազկերտ Գ սպանվեց Մերվի մոտ: Թեոդորոս Ռշտունու և Մուավիայի 652-ին կնքած հաշտությունից ընդամենը երկու տարի անց՝ 654 թվականին ժամանակավորապես նվաճվեց Հայաստանը Հաբիբ իբն Մասլամայի ձեռքով: Եգիպտոսի կառավարիչ Ամրը նվաճել էր Լիբիան, իսկ դարի վերջին՝ 698-ին արաբները գրավեցին Աֆրիկա նահանգը (այժմյան Թունիսը) Կարթագեն մայրաքաղաքով[4]:
Սակայն Օսմանը շատ հակառակորդներ ուներ, որի գլխավոր պատճառը Օմայան տոհմից կառավարիչներ նշանակելն էր և նրան սպանեցին: Ասպարեզ իջան Ալիի կողմնակիցները, պահանջելով, որ խալիֆան լինի Մուհամմադի տնից, քանի որ Ալին նրա հորեղբորորդին

---

[3] **Ph. Hitti**, History of the Arabs, pp. 160-167.

[4] Հյուսիսային Աֆրիկան և Իսպանիան (Անդալուս) նվաճելուց հետո արաբներն անցան Պիրենեյան լեռնաշղթան ու ներխուժեցին Ֆրանկների թագավորությունը, սակայն Կարլ Մարտելը 732 թվականին (Մուհամմադի մահվանից ուղիղ հարյուր տարի անց) Տուրի, կամ Պուատիեի ճակատամարտում ետ շպրտեց նրանց մինչև Պիրենեյան լեռնաշղթան, որը հիմնականում դարձավ Խալիֆայության և ֆրանկների սահմանը:

ու միակ դստեր՝ Ֆաթիմայի ամուսինն էր: Հայաստանում այդ ժամանակ իշխում էր Համազասպ Մամիկոնյանը:

Խալիֆա ընտրված Ալիի (656-661) դեմ ապստամբեցին Հիջազում և այլ նահանգներում: Նրա դեմ պայքարի դուրս եկավ Օմայան տոհմից Մուավիան: 661-ին սպանվեց Ալին, երբ արդեն Մուավիան 660-ին իրեն խալիֆա էր հռչակել Ասորիքում: Ալիի հակառակորդների դեմ կռիվների ընթացքում և նրա մահվանից անմիջապես հետո «ուղղահավատ» սուննի մահմեդականության կողքին երկու նոր ընդդիմադիր ճյուղեր առաջացան՝ Շիայի հոսանքը (Ալիի կողմնակիցներ) և խարիջիների հոսանքը (Ալիից հիասթափված ապստամբներ): Այս երկու ճյուղերն ամբողջ միջնադարում հակադրվել են մահմեդական աշխարհում միշտ տիրապետող սուննա (հետևորդները՝ սուննի) հիմնական ճյուղին:

Մուավիա Ա խալիֆայից (661-680) սկսած արաբների պատմության մեջ մի նոր ժամանակաշրջան սկսվեց[5]: Առաջին չորս խալիֆաներն ընտրվել էին մահմեդական համայնքի մեծամեծների կողմից: Մուավիան հիմք դրեց Օմայանների ժառանգական իշխանությանը (661-750) և այնուհետև այդ սկզբունքն ընդմիշտ գոյատևեց: Նա նստավայր ընտրեց Դամասկոսը, մինչդեռ նախկինում Մադինան էր մայրաքաղաքը և այդ օրվանից Արաբիան դադարեց խալիֆայության կենտրոնը լինելուց: Արտաքին ասպարեզում Մուավիան իր սլաքն ուղղեց Բյուզանդիայի դեմ և արաբական նորակազմ նավատորմիղը ցամաքային զորքի հետ միասին հարձակվեց Բյուզանդիայի վրա, հասնելով ընդհուպ մինչև Կոստանդնուպոլիս: Այդ տարիներին Հայոց իշխանն էր Գրիգոր Մամիկոնյանը (661-685), ապա՝ Աշոտ Բագրատունին (685-689): Սրանց օրոք Հայաստանը ուներ բավականաչափ ինքնուրույն վիճակ:

Օմար Ա և Մուավիա Ա խալիֆաները կազմակերպել էին արաբական խալիֆայությունը, սակայն Օմայան Աբդ ալ-Մալիք խալիֆան (685-705) էր, որ վերջնականապես ձև տվեց այս նորակազմ պետությանը[6]: Նա ընդհանուր պարտադիր պետական լեզու դարձրեց արաբերենը: 695 թվականին Դամասկոսում թողարկվեցին առաջին զուտ արաբատառ ոսկի և արծաթ դրամները, կարգավորվեցին հարկերը:

Արաբական նվաճումները շարունակվեցին Վալիդ (705-715) խալիֆայի օրոք: Արևմուտքում, ինչպես տեսանք, արաբները հասան Պիրենեյան լեռնաշղթային, իսկ արևելքում խալիֆայության զորքերն անցան



---

[5] H. Lammens, La Syria, précis historique, Beyrouth, 1921, p. 66-71.

[6] Տես A. Vasiliev, Byzance et les Arabes, t. I, La dynastie d'Amorium, Bruxelles, 1935, p. 1-21:





Ամու Դարիա գետը և սկիզբը դրեցին իրանալեզու ազգաբնակչություն ունեցող Սողդ, Ֆերղանա, Խորեզմ և այլ նահանգների նվաճմանը:

Բյուզանդիայի հետ գոտեմարտը բորբոքվեց Սուլայման խալիֆայի (715-717) օրոք, երբ արաբները երրորդ հարձակումը գործեցին Կոստանդնուպոլսի դեմ, սակայն շուտով նահանջեցին: Բյուզանդիայից հետո խալիֆայության երկրորդ վտանգավոր ախոյանը խազարներն էին: Եզիդ Բ (720-724) և հատկապես Հիշամ (724-743) խալիֆաների օրոք խազարների հետ կատաղի ընդհարումների մի ամբողջ շարք է արձանագրված արաբ և հայ պատմիչների[7] մոտ, որը վերջացավ խալիֆայության հաղթանակով: Հիշամի ժամանակ վերջնականապես նվաճվեցին Միջին Ասիայի իրանական նահանգները և կազմակերպվեց մի մեծ նահանգ, որը կոչվեց Մավերաննահր (մա վարա ան-նահր) այսինքն «Գետից (Ամու Դարիա) այն կողմ [գտնվող երկրամաս]»:

Հիշամի մահվանից հետո Օմայան պետությունն ընթացավ քայքայման ուղիով: Կային ներքին լուրջ հակասություններ, որոնց հետևանքով Օմայյանները կորցրեցին ամեն մի հենարան: Նրանց կատաղի թշնամիներն էին Ալիի կողմնակից Շիայի հետևորդները, որոնց իմամները (առաջնորդ) մնում էին Մադինայում: Անհաշտ պայքար էին մղում նաև խարիջիները: Օմայյանները հենարան չունեին նաև սուննի մահմեդականների մոտ, քանի որ Մուհամմադի հորեղբայր՝ Աբբասից սերող Աբբասյանները, օգտվելով Շիայի հետևորդների ու խարիջիների պայքարից, ճարպկորեն սեղմում էին օղակը Օմայյանների շուրջը: Կարևոր էր նաև այն պարագան, որ Օմայյանները ոչ միայն ոչ մահմեդականների, այլև նույնիսկ ոչ արաբ մահմեդականների նկատմամբ խտրականության քաղաքականություն էին վարում, որի հետևանքով ոտքի կանգնեցին նաև պարսիկները՝ Աբբասյանների դատը պաշտպանելով:

747-ին ապստամբություն ծագեց Իրանի արևելյան Խորասան նահանգում Աբու Մուսլիմի գլխավորությամբ, որը պարզեց Աբբասյանների սև դրոշը Օմայյանների սպիտակ դրոշի փոխարեն: Նրա կողմնակիցներն էին թե՛ պարսիկ դեհկանները (հողատեր), թե՛ գյուղացիությունը (մահմեդական և զրադաշտական) և թե՛ արաբներ: Նույն տարում ապստամբություն ծագեց նաև Հայաստանում:

749 թվականին Աբբասյան տոհմից Աբու-լ-Աբբասը Քուֆայի մզկիթում հռչակվեց խալիֆա: 750-ի հունվարի վերջին Զաբի ճակատամար-

[7] Իբն ալ-Ասիր, Երևան, 1982, էջ 83-84, 87-88, Պատմութիւն Ղևոնդեայ Մեծի վարդապետի Հայոց, Պետերբուրգ, 1887:

տում Օմայան խալիֆա Մարուան Բ պարտություն կրեց Աբբասյանների զորքից ու փախավ, սակայն բռնվեց ու սպանվեց:

Իշխանությունն Աբբասյանների ձեռքն անցնելուց հետո խալիֆայության մեջ մեծ փոփոխություններ կատարվեցին: Արաբն այլևս մենակ չէր իշխում[8] լայնածավալ տերության մեջ, այլ նրա հետ մասնակցություն ունեին մահմեդականությունն ընդունած բոլոր ժողովուրդները և հատկապես պարսիկները: Ուստի Աբբասյան խալիֆայությունը համամահմեդական բնույթ ուներ և հենց դրա հետևանքով ոչ մահմեդական (զիմմի) ժողովուրդների վիճակը շեշտակիորեն վատթարացավ: Պարսիկներն այլևս ընդդիմադիր ուժ չէին, այլ ընդհակառակը, դարձել էին պետության հենարանը և քրիստոնյա ժողովուրդները մենակ մնացին խալիֆայության ճնշող քաղաքականության հանդեպ:

Աբբասյան պետության ժամանակ սահմաններն ավելի նեղ էին, քան Օմայանների օրոք: 754-ին Օմանն անկախ դարձավ, իսկ 756-ին Օմայանների մի ճյուղը Իսպանիայում (Անդալուս) հզոր պետություն հիմնեց: Հյուսիսային Աֆրիկայում՝ Մաղրիբի արևմտյան մասում Աբբասյանների իշխանությունը ձևական էր և 788-ին այն լրիվ անջատվեց դառնալով անկախ պետություն (Իդրիսիներ):

Առաջին Աբբասյան խալիֆան՝ Աբու-լ-Աբբասը (750-754) թեև սկզբում մնում էր Քուֆայում, շուտով նոր մայրաքաղաք կառուցեց՝ Հաշիմիյան (նույնպես Իրաքում): Սակայն Աբբասյան պետության իսկական հիմնադիրը դարձավ նրա եղբայր Աբու Ջաաֆար ալ-Մանսուրը (754-775), որն արյան մեջ խեղդեց ամեն մի ապստամբություն: 762-ին նա հիմնեց Բաղդադ մայրաքաղաքը: Հենց Մանսուր խալիֆայի իշխանության վերջին տարիներին՝ 774-775 բռնկվեց արաբական տիրապետության դեմ հայերի ամենահզոր ապստամբությունը Մուշեղ Մամիկոնյանի գլխավորությամբ, որը սակայն 775-ի գարնանը ճնշվեց:

Սասանյանների Տիզբոն մայրաքաղաքից ոչ հեռու գտնվող Բաղդադը նոր հորիզոններ բացեց պարսիկների առջև, որոնք ներթափանցեցին հասարակական կյանքի բոլոր ասպարեզները՝ հատկապես քաղաքական ու մշակութային: Արքունիքում ստեղծվեց մի նոր պաշտոն՝ վեզիրությունը, որը գալիս էր Սասանյանների օրերից և այն ժառանգաբար վարեցին պարսիկ Բարմաքյանները, որոնցից առաջինը Խալիդն

[8] Գերմանացի արաբագետ Յ. Վելհաուզենը Օմայանների վերացումը համարում է արաբական պետության անկում: Տես J. Wellhausen, Arab Kingdom and its fall, London, 1973:

էր: Ձեխ բարքերը, երգչուհիների հետ գինարբուքի գիշերները սովորական երևույթներ դարձան պալատում:

Նրա որդին ու հաջորդը՝ Մահդին (775-785) երկրի ներսում համեմատաբար մեղմ քաղաքականություն էր վարում, իսկ դրսում՝ Բյուզանդիայի դեմ ուժեղ պայքար սկսվեց[9]:

Մահդիի երկրորդ որդու՝ Հարուն ալ-Ռաշիդի (786-809) անձնավորությունը պարուրված է հեքիաթային շղարշով, շնորհիվ «1001 գիշերներ» ժողովածուի, սակայն իրականում նա ագահ և բռնակալ էր ոչ պակաս, քան իր պապը՝ Մանսուրը: Հարունի օրոք հարկերը աննախընթաց չափերի էին հասել: Նա անհանդուրժող գտնվեց Բարմաքյանների հանդեպ, որոնք մեծ փառքի էին տիրացել: 803-ին գլխատել տվեց վեզիր Ջաաֆարին և հարքունիս գրավեց նրանց առասպելական հարստությունը: Հարունը վերսկսեց պայքարը Բյուզանդիայի դեմ և վճռական հաղթանակներ տարավ: Ըստ լատին պատմիչների՝ Հարունը դիվանագիտական հարաբերությունների մեջ է եղել ֆրանկների Շարլեմանի (Կարլոս Մեծ) կայսեր հետ:

Հարունի օրոք Բաղդադն արդեն դարձել էր փարթամ քաղաք և համաշխարհային խոշոր կենտրոններից մեկը. արքունիքում իշխում էր զեխությունն ու շռայլությունը: Այս երևույթն առավել նկատելի դարձավ նրա որդու՝ Ամինի օրոք (809-813), որը զվարճանում էր Տիգրիս գետի վրա ծփացող կենդանակերպ ու թռչնակերպ շքեղ նավերի վրա:

Իր մահվանից առաջ Հարունը գահաժառանգ էր նշանակել Ամինին, որին պետք է հաջորդեր մյուս որդին՝ Մամունը[10]: Սակայն Ամինը խախտելով հոր կտակը գահաժառանգ հայտարարեց իր որդուն: Մամունը, որը ծնված էր պարսիկ մորից և Խորասանի փոխարքան էր, վայելում էր տեղի ազնվականության համակրանքն ու օժանդակությունը և այդ բանի շնորհիվ հաղթեց իր եղբորը ու գրավեց իշխանությունը:

Մամունի օրոք (813-833) քաղաքական իրավիճակն անհանգիստ էր: Նա արշավանքներ ձեռնարկեց Բյուզանդիայի դեմ, սակայն ինքն սպանվեց 833 թվականին՝ Տարսոնի մոտ: Մամունը պատմության մեջ հայտնի դարձավ որպես գիտության և մշակույթի մեկենաս, քաջալերելով ու կազմակերպելով հունարենից արաբերեն թարգմանական աշխատանքը:

Հարունի երրորդ որդին՝ Մուտասիմը (833-842) ծնված թյուրք

---

[9] **Tabari**, Tarikh, VIII, p. 152-153:

[10] **Yaqubi**, Tarikh, II, p. 436:

ստրկուհուց, մեծ չափով օգտագործեց միջինասիական թյուրք ստրուկներին, նրանցից կազմելով պահակազորք, որն այնքան նեղություն պատճառեց մայրաքաղաքին, որ խալիֆան 836-ին իր նստավայրը փոխադրեց Սամառա (արաբ. Սուռա ման ռաա):

Օտար ազդեցության և մշակութային զարթոնքի դեմ դուրս եկավ Մուտավաքքիլ խալիֆան (847-861), որը վստահություն չունենալով թյուրք պահակազորքի վայրագ զորապետերի վրա, հենարան փնտրեց սուննի պահպանողական հոգևորականության մոտ: Չգտելով փրկել Աբբասյան պետությունը մասնատվածությունից, նա դաժան միջոցներ ձեռնարկեց միասնականությունը ամրապնդելու համար: Սրա օրոք՝ 850-852 թթ. ևս մի ապստամբություն բռնկվեց Հայաստանում, որը թեև ճնշվեց, սակայն անկախացման ընթացքն արդեն անշրջելի էր դարձել:

Մուտավաքքիլի[11] սպանությամբ վերջացավ Աբբասյանների հզորության շրջանը և սկիզբ առավ պետության թուլացման փուլը: Աբբասյաններից բաժանվեցին և անկախ պետություններ կազմեցին Սաֆֆարյանները Խորասանում (861), Բագրատունիները Հայաստանում (862), Ալիականները Թաբարիստանում (864), Թուլունիները Եգիպտոսում (868) և ապա Սամանիները Մավերաննահրում (875):

Աբբասյանների խալիֆայության քայքայման պատճառներն էին խոշոր հողատիրության, լինի սեփականատիրական (մուլք) թե պարգևական (իկթա), արագ զարգացումը ի հաշիվ պետականի, տեղական ոչ արաբ հողատեր դասի (պարսիկ դեհկաններ, հայ նախարարներ) հզորացումն ու անջատողական ձգտումները և ժողովրդական ազատագրական ապստամբությունները:

Աբբասյանների պետությունը իր գոյությունը պահպանեց որպես ոչ զորեղ քաղաքական միավոր 861-945 թվականներին, ընդգրկելով միայն Իրաքն ու Արևմտյան Իրանը: 945-ին Շիրազում իշխող պարսիկ Բուիները (Բուայհիներ) Բաղդադում իրենց ձեռքը վերցրին իրական իշխանությունը:

## բ. Մշակույթը

Առաջին հայացքից դժվար է պատկերացնել, թե ինչպես է դարում անապատից դուրս եկող բավականին հետամնաց վաչկատուն արաբի լեզվով երկու հարյուրամյակ անց ստեղծվեց մի ճոխ և զարգացած

[11] W. Muir, The Caliphate, its rise, decline and fall, Edinburg, 1924:

գրականություն ու մշակույթ, որի կարևոր մասն էին կազմում աշխարհագրությունն ու պատմագրությունը: Այս հանելուկն ըմբռնելու համար անհրաժեշտ է հետադարձ ակնարկ նետել արաբական մշակույթի զարգացման ընթացքի վրա Է-Թ դարերում:

Սեմական բոլոր ժողովուրդների (բաբելացիք, ասորեստանցիք, փյունիկեցիք, արամեացիք կամ ասորիներ, եբրայեցիք, հարավարաբացիք[12] և եթովպիացիք) մեջ ամենաուշը գիր ու գրականություն ունեցողը արաբն է: Մահմեդականության (իսլամ)[13] երևան գալու ժամանակ արաբներն արդեն կազմավորված գիր ունեին: Ե դարի վերջից և հատկապես Զ դարում և է դարի սկզբին հեթանոս արաբների մոտ առաջացավ բանավոր բանաստեղծական արվեստ: Հեթանոս արաբ բանաստեղծների բանավոր ստեղծագործությունները գրի առնվեցին միայն Թ-Ժ դարերում և համարվում են արաբական գրականության երախայրիքը:

Դ-Է դարերում քրիստոնյա (ասորի) քարոզիչները ջանքեր թափեցին Արաբիայում քրիստոնեությունը տարածելու համար և որոշ հաջողություն ունեցան: Դա, ի վերջո, չհաջողվեց, սակայն քրիստոնեության և մովսիսականության ազդեցության տակ (բայց նրանց հակադրվող) մի նոր կրոն ծնվեց՝ իսլամը:

Արաբական մշակույթի այն հուշարձանը, որն իր ժամանակին գրի էր առնվել և իշխել միջնադարյան (մասամբ նաև նոր) գրականության վրա Ղուրանն (Կուրան) էր: Մուհամմադն (մահ. 632-ին) իր քարոզչական գործունեության ընթացքում, տարբեր առիթներով, թե՛ Մեքքայում, թե՛ Յասրիբում (Մադինա) բանավոր ձևով ժողովրդին հաղորդել էր (որպես ալլահի կողմից հայտնություն) իր նոր ուսմունքը, որը սակայն գրի առնվեց ու խմբագրվեց Օսման (644-656) խալիֆայի օրոք: Այս մատյանը կոչվել է Ղուրան (Կուրան) ընթերցվածքի իմաստով և պարունակում է 114 սուրա (փոքր գլուխ) դասավորված ոչ ժամանակագրական կարգով, ոչ էլ ըստ բովանդակության, այլ սոսկ ըստ ծավալի՝ ամենամեծից՝ ամենափոքրը:

Ըստ Ղուրանի և մահմեդական աստվածաբանության, երկնքում կա մի սրբազան մատյան (Գիրք), որից, ժամանակ առ ժամանակ, հայտնություններ են իջեցվում մարգարեներին: Այսպես, Տաուրատը (Թորա, Հին

---

[12] Եմենի բնիկ հին սեմական ժողովուրդը, պայմանականորեն հարավարաբացի կոչված, արաբանալով, նոր թափ հաղորդեց արաբական վաչկատուն ցեղերին, նպաստեց նրանց մակարդակի բարձրացմանը և արաբական մշակույթի սաղմնավորմանը: (Ա. Տ.-Դ.)

[13] *Ներկայում ընդունված է նաև «Մուսուլմանություն»:*

Կտակարան, Հնգամատյան) ի վերուստ իջեցվել է Մովսեսին, իսկ Ավետարանը (Ինջիլ) Հիսուսին, և այդ պատճառով հրեաներն ու քրիստոնյաները կոչվում են Գրքի ժողովուրդ (Ահլ ալ-Քիտաբ): Սակայն այս երկու մարգարեների հետևորդներն աղավաղել են երկնային Գրքից ի վերուստ իջեցված հայտնությունները, ուստի վերջին հայտնություններն իջեցվեցին Մուհամմադին և դա Ղուրանն է: Բանն այն է, որ Ղուրանն իր մեջ ներծծել էր Աստվածաշնչի (Հին (Տաուրատ) ու Նոր (Ինջիլ) Կտակարաններ) նյութը. հիշվում են Ադամը, Նոյը, Աբրահամը, Հակոբը, Հովսեփը, Մովսեսը, Դավիթը և ուրիշներ Հին Կտակարանից և Զաքարիան, Հովհաննես Մկրտիչը, Մարիամը և Հիսուսը՝ Նոր Կտակարանից: Ղուրանն արաբական պետության համար «օրենսգիրք» էր, իսկ լեզվական տեսակետից՝ անվիճելի հեղինակություն:

Սակայն այս ցածր մակարդակը չէր կարող բավարարել աշխարհակալ պետության պահանջները, քանզի արաբին վիճակված էր իշխել իրենից շատ ավելի բարձր ու հին մշակույթ ունեցող ժողովուրդների (պարսիկներ, հայեր, ասորիներ, ղպտիներ և այլն) վրա: Ուստի անհրաժեշտ էր շատ բան փոխ առնել, հատկապես օրենսդրական ասպարեզում: Արաբները (կառավարիչներ, հոգևորական դատավորներ) ծանոթացան և օգտվեցին իրենց նվաճած երկրներում եղած իրավական ավանդույթներից, որոնք մնացորդներն էին հռոմեաբյուզանդական և սասանյան-իրանական իրավունքի, բայց, որպեսզի դա ընդունելի լինի մահմեդական հասարակությանը, այդ ավանդույթները միահյուսել էին Մուհամմադին վերաբերող ավանդություններին, որոնք կոչվում էին հադիսներ (զրույցներ): Դրանք հարյուր հազարներով էին և հատուկ կերպով ուսումնասիրվում էին:

Հադիսների եվրոպացի ուսումնասիրողները, ինչպես հունգարացի Ի. Գոլդցիերը և հոլանդացի Ա. Հուրգրոնյեն, գտնում են, որ հադիսների ճնշող մեծամասնությունը հորինված է խալիֆայության կազմավորումից հետո: Դրանց մեջ կային ծիսակատարությանը, առք ու վաճառքին, տարբեր բնույթի պայմանագրերին, ստրուկների վաճառքին և այլ նյութերին վերաբերող զրույցներ, նույնիսկ հրեական ու քրիստոնեական հավատալիքներ և հունական փիլիսոփայության տարրեր: Սրանց հիման վրա ստեղծվեց մահմեդական իրավագիտությունը (ֆիկհ), որով առաջնորդվում էր գործնական օրենսդրությունը՝ շարիաթը:

Աբբասյանների հզորության ժամանակաշրջանում (750-861) պարսիկները ներթափանցեցին կյանքի բոլոր ասպարեզները, լինի քաղաքական, թե մշակութային, քանզի Աբբասյանները լրիվ բացել էին

դռները պետության բոլոր մահմեդական ժողովուրդների առջև՝ անկախ ծագումից:

Քաղաքական ասպարեզում պարսիկ Բարմաքյանները մուտք գործելով արքունիք նոր փայլ տվեցին նրան: Արաբական մշակույթի ասպարեզում չկա մի ճյուղ ուր պարսիկները պատվավոր դեր կատարած չլինեն: Հայտնի է նշանավոր քերականագետ Սիբավայհը (մահ. 796), իսկ բանաստեղծական արվեստի ասպարեզում Բաշշար իբն Բուրդը (714-784) և Աբու Նուվասը (762-813):

Արաբական գեղարվեստական արձակի զարգացմանը մեծ նպաստ բերեց պարսիկ Իբն ալ-Մուկաֆֆայի կողմից հնդկական առակների թարգմանությունը պահլավերենից արաբերենի:

Վերոհիշյալ հադիսների հիման վրա ստեղծվեց մահմեդական իրավագիտությունը, որի ամենատարածված դպրոցի (մազհաբ) հիմնադիրն է պարսիկ Աբու Հանիֆան (696-767): Նրա երկու հայտնի աշակերտները թողել են կարևոր ժողովածուներ՝ Աբու Յուսուֆը (մահ. 795) որը հեղինակն է հարկերի ու հողատիրության կարևորագույն աղբյուր «Հարկերի մատյանի» (Քիտաբ ալ-Խարաջ) և Շայբանին (մահ. 804) «Իրավագիտական փոքր ժողովածուի» (ալ-Ֆիկհ ալ-Սաղիր) հեղինակը: Հանիֆիների կրոնա-իրավագիտական դպրոցը տարբերվում է նրանով, որ ճկուն է, համեմատաբար հանդուրժող ոչ մահմեդականների նկատմամբ, թույլ է տալիս կրոնական կանոններին առընթեր օգտագործել աշխարհիկ սովորույթը (ադատ) և աշխարհիկ տիրակալների օրենքները (կանուն):

Մահմեդական կրոնաիրավագիտական մյուս երեք հայտնի դպրոցներն (մազհաբ) են՝ մալիքիները (պահպանողական), շաֆիիները (չափավոր պահպանողական) և հանբալիները (ծայրահեղ պահպանողական):

Սակայն պարսիկների եռանդուն մասնակցությունը քաղաքական ու մշակութային ասպարեզներում բավական չէր արմատական փոփոխություն մտցնելու արաբների մշակութային կյանքում: Իսկական հեղաշրջումը կատարվեց միայն այն բանից հետո, երբ հին հունական հարուստ մատենագրությունից բազմաթիվ գիտական երկեր թարգմանվեցին արաբերենի: Այստեղ ևս արաբն անզոր էր, քանզի լիովին անտեղյակ էր հունաց լեզվին և այս հարցում օգնության հասավ հին մշակույթի տեր ասորին:

Խալիֆայության ներսում, հարկավ, կային հելլեն մշակույթի կենտրոններ (Անտիոք, Եդեսիա, Ալեքսանդրիա), այսուհանդերձ Աբբասյան-

ները մեծ ջանքեր գործադրեցին Փոքր Ասիայից նոր ձեռագրեր բերելու համար: Դեռևս Մանսուր խալիֆան Բյուզանդիայի կայսրից ստացել էր հունարեն ձեռագրեր, որոնց մեջ եղել են Եվկլիդեսի երկերը: Հարուն ալ-Ռաշիդ խալիֆան (786-809) Փոքր Ասիա կատարած արշավանքների ժամանակ բազմաթիվ հունարեն ձեռագրեր էր ավարել հատկապես Ամորիոն և Անկիրիոն քաղաքներից: Մամունը պատվիրակություն էր ուղարկել Լևոն Հայկազն կայսրին հունարեն ձեռագրեր խնդրելով: Որպես հելլենական մշակույթի սիրահար Մամունն ամեն կերպ ձգտում էր իսլամը հաշտեցնել հունական փիլիսոփայության հետ: Ըստ Ժ դարի մատենագիր Իբն ալ-Նադիմի վկայության, Մամունը երազում տեսել էր Արիստոտելին, որը նրան համոզում էր, թե փիլիսոփայությունը կրոնին բոլորովին հակառակ չէ:

830 թվականին Մամունը Բաղդադում հիմնեց Իմաստության տունը (բայտ ալ-հիքմա), որն ուներ ճոխ մատենադարան և միաժամանակ կազմակերպեց մի ակադեմիա ու թարգմանական կենտրոն: Այդ օրվանից թարգմանական գործը ամուր հիմքերի վրա դրվեց, քանզի նա առատաձեռն վարձատրում էր թարգմանիչներին:

Արաբներին հետաքրքրում էր հունական բժշկությունը, փիլիսոփայությունը և ճշգրիտ գիտությունները:

Թարգմանիչների մեջ խոշորագույն դեմքը նեստորական ասորի Հունայն իբն Իսհակն (809-873) էր: Մամուն խալիֆան նրան դարձրել էր Իմաստության տան վերատեսուչ, որտեղ նա ղեկավարում էր թարգմանիչների մի խումբ: Թարգմանվեցին Գալենոսի, Հիպոկրատեսի, Դիոսկորիդեսի երկերը, ինչպես նաև Պլատոնի ու Արիստոտելի աշխատությունները: Հունայնը թարգմանել է նաև Հին Կտակարանը հունարենից (Յոթանասնից), սակայն այն մեզ չի հասել: Հունայնը հռչակ ուներ նաև իբրև բժիշկ և ծառայել է Մուտավաքքիլ խալիֆայի արքունիքում:

Եթե Հունայնը նեստորական թարգմանիչների գլխավոր դեմքն է, ապա Սաբիտ իբն Կուռան (836-901) գլխավորում էր Խառանի սաբի (աստղապաշտ) թարգմանիչներին: Սաբիները թարգմանեցին Արքիմեդեսի և Ապոլոնիուս Պերգացու աստղաբաշխական և մաթեմատիկական գործերը: Միաժամանակ նրանք վերանայում էին նախորդների թարգմանած երկերը:

Թարգմանական գործը շարունակվեց նաև Ժ դարում մելքիտ ու հակոբիկ ասորի թարգմանիչների կողմից:

Միայն հունարենից կատարված այս հսկայական քանակությամբ թարգմանություններից հետո էր, որ ծնվեց այն արաբական (իրականում

արաբալեզու) մշակույթը, որը միջնադարյան արևելյան մշակույթի բաղկացուցիչ մասն է: Ի հարկե, արաբական կոչելը պայմանական է, քանի որ տեսանք թե ինչպիսի կարևոր դեր կատարեցին այդ մշակույթի կերտման մեջ պարսիկները, ասորիները և այլ ժողովուրդներ: Պատահական չէ, որ արաբական մատենագրության կարևորագույն ուսումնասիրության հեղինակ Կ. Բրոկելմանը[14] մինչև 750 թվականն ստեղծված մատենագրությունը կոչում է արաբական ազգային գրականություն, իսկ 750 թվականից մինչև ուշ միջնադար գոյացած մատենագրությունը՝ արաբալեզու մահմեդական գրականություն:

Թ-ԺԵ դարերի արաբական մշակույթի բաղկացուցիչ մասերն են (բացի չափածո և արձակ գեղարվեստական գրականությունից, դավանաբանական մատենագրությունից, քերականությունից ու բառարանագրությունից) **փիլիսոփայությունը, բժշկությունը, ճշգրիտ գիտությունները, աշխարհագրությունը և պատմագրությունը:**

## ԱՐԱԲ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

### ա. Պատմագրությունը

Կարելի էր ենթադրել, որ արաբական պատմական ավանդությունների հնագույն շերտը պետք է կազմավորված լիներ հնադարյան Եմենում, որից մեզ հասել են սաբայական ու հիմյարական արձանագրություններ պատմական բովանդակությամբ: Եմենի հինավուրց սեմական ժողովուրդը (հարավարաբացիք) ձուլվելով պետք է արաբներին փոխանցեր իր պատմական զրույցները: Այդ կատարվել է, սակայն բանն այն է, որ միջնադարյան արաբական պատմական աղբյուրներում մեզ հասել են սոսկ թագավորների անուններ և շատ աղոտ ու չափազանցված բանավոր առասպելներ այդ հնագույն շրջանի մասին: Այս զրույցներն ու առասպելները հավաքել ու գրի են առել «Թագերի մատյանի» (Քիտաբ ալ-Տիջան) Վահբ իբն Մունաբբիհը (մահ. 728/734) և Ուբայդա իբն Շարին, որոնց մատյանները մեզ չեն հասել, այլ նրանցից քաղվածքներ ենք գտնում հետագա արաբ մատենագիրների աշխատություններում: Այս երկուսի և հատկապես Վահբ իբն Մունաբբիհի գործե-

---

[14] **C. Brockelmann,** Geschichte der Arabischen Litteratur, I, Weimar, 1898, S. 9, 69.

րից կարևոր մասեր պահպանվել են Աբդ ալ-Մալիք իբն Հիշամի (մահ. 828/833) մոտ:

Հյուսիսային արաբների մոտ հավաքվել են զրույցներ հեթանոս ցեղերի արյունալի ընդհարումների, կռիվների մասին «Այյամ ալ-Արաբ» («Արաբների օրեր», այսինքն հիշատակելի [կռիվների] օրեր) կոչված, որոնք մահմեդական շրջանում հավաքել են Աբու Միհնաֆը (մահ. 774), Ավանա իբն ալ-Հաքամը (մահ. 763), Աբու Ուբայդան (մահ. մոտ 825): Հետագայում Հիշամ իբն Մուհամմադ ալ-Քալբին (մահ. 819) զբաղվել է այս զրույցներով, ինչպես նաև օգտագործել է Հիրայի քրիստոնյա արաբների դիվանատները: Նրանից քիչ բան է մեզ հասել:

Վաղ իսլամի շրջանի ուսումնասիրման համար հարուստ նյութ էին պարունակում Մուհամմադի մասին առաջացած բազմահազար զրույցները, որոնք կոչվում էին «հադիս»: Հայտնի է ալ-Զուհրին (մահ. 741/742), որն Օմայյան խալիֆաների պատվերով գրի է առել հադիսները և դրանք, թեև պահվել են արքունի գանձարանում, սակայն հետագայում ոչնչացել են: Նման նյութերի հիման վրա շարադրվել են Մուհամմադի կենսագրությունը (Սիրա) և արշավանքների (Մաղազի) մասին գրականությունը: Մուհամմադի կենսագրությունը շարադրել է Մուհամմադ իբն Իսհակը (մահ. 768), սակայն այն մեզ չի հասել: Մուհամմադի կենսագրության հիմնական աղբյուրն է Աբդ ալ-Մալիք իբն Հիշամի երկը, որը գրված է իբն Իսհակի կորած աշխատության հիման վրա:

Իններորդ դարի սկզբին[15] արդեն աստիճանաբար նյութեր են կուտակվում խալիֆայության առաջին արշավանքների մասին: Առաջին արշավանքների և խալիֆայության նվաճումների մասին գրել է Վակիդին[16] (747-822) սակայն մեզ հասել է միայն չնչին մասը: Նման աշխատություններ գրել է նաև բասրացի ալ-Մադաինին (մահ. 830/849), սակայն մեզ չեն հասել:

Այս ամբողջ գրականությունը, որը մեծ մասամբ մեզ չի հասել կամ քաղվածաբար է հաղորդվել, իր ժամանակին օգտագործվել է պատմիչների կողմից, որոնք իրենց աշխատություններում հաճախ հիշում են թե քաղել են այսինչից կամ այնինչից: Այս վկայակոչելու (իսնադ) սովորությունը չափազանց տարածված է արաբական պատմագրության մեջ:

Այսպիսով Ը դարի և Թ դարի սկզբի պատմական աշխատություններից շատ քիչ բան է մեզ հասել: Սակայն կարևորագույն աշխատու-

[15] Х. А. Р. Гибб, Арабская литература, стр. 43.

[16] Վակիդիի նյութերի մեծ մասն օգտագործել է նրա քարտուղար Իբն Սաադը (մահ. 844/845) «Կարգերի գիրք» (Քիտաբ ալ-Թաբակատ) աշխատության համար:

թյունը, որը պահպանվել է Աբու Յուսուֆի (մահ. 798) «Հարկերի մատյանն» է:

Իր կազմավորման շրջանում արաբ պատմագրությունը կրեց պարսկական, հրեական ու քրիստոնեական (հունաասորական) ազդեցությունները:

Պարսկական ազդեցությունը ներթափանցեց շնորհիվ իրանական վեպի՝ «Արքայից մատյանի» (Խվաթայ նամակ) արաբերեն թարգմանվելուն: Ըստ ավանդության, այն վերջնականապես գրի է առնվել Սասանյան արքա Հազկերտ Գ-ի (632-651) օրոք, ավելի ճիշտ՝ 632-637/641 թվականներին, այսինքն արաբական արշավանքների նախօրեին, քանզի 637-ին Կադիսիյայի և 641-ին Նեհավենդի պարտություններից հետո հազիվ թե նման աշխատանք կատարվեր: Այս մատյանն արաբերեն թարգմանվեց պարսիկ Աբդալլահ իբն ալ-Մուկաֆֆայի ձեռքով (721-757), սակայն ոչ պահլավերեն (միջին պարսկերեն) բնագիրը, ոչ արաբերեն թարգմանությունը չեն պահպանվել: Արաբերեն թարգմանությունից (Խուդայ նամե կամ Սիյար Աուլուք ալ-Ֆուրս՝ Վարք պարսից արքաների) օգտվել են Իբն Կուտայբան (մահ. 889), Աբու Հանիֆա ալ-Դինավարին (մահ. 895), Յակուբին (մահ. 897), Թաբարին (մահ. 923), Մասուդին (մահ. 956) և Համզա Իսֆահանին (մահ. 970): Արաբ մատենագրության և հատկապես պատմագրության մեջ շատ հաճախ նկատվում է շուուբիյյա (ժողովուրդների) կոչված այն հոսանքը, որը շեշտում է նվաճված ժողովուրդների գերազանցության զգացումը արաբների հանդեպ: Այսպիսի տրամադրություններ ունեն պարսկական ծագում ունեցող Իբն Կուտայբան, Դինավարին, Բալազուրին, Թաբարին ու Համզա Իսֆահանին:

Հրեաքրիստոնեական սուրբգրային նյութերն առատորեն գտնում ենք Ղուրանում, հավանաբար բանավոր աղբյուրներից քաղված: Իսկ Ը-Թ դարերում Աստվածաշունչն արդեն թարգմանվել է արաբերենի: Տասներորդ դարի մատենագիր Իբն ալ-Նադիմը վկայում է, որ Հարուն ալ-Ռաշիդի օրոք (786-809) Ահմադ իբն Աբդալլահ իբն Սալամ ալ-Ինջիլին Աստվածաշունչը (Տաուրատ) արաբերենի էր թարգմանել: Հունայն իբն Իսհակի (809-873) մասին նույնպես ասվում է, թե Աստվածաշնչի հունարեն «Յոթանասնից» բնագրից թարգմանել է Հին Կտակարանը: Այս թարգմանությունները մեզ չեն հասել, սակայն նույն դարում դրանք օգտագործել են Ալի ալ-Թաբարին (785-861) «Գիրք կրոնի ու տերության» (Քիտաբ ալ-Դին ուա լ-Դաուլա) աշխատության մեջ, ինչպես նաև Ջահիզը «Պատասխան քրիստոնյաներին» (ալ-Ռադդ

ալա-լ-Նասարա) երկում: Չին Կտակարանից բառացի երկարապատում մեջբերումներ ունեն Իբն Կուտայբան և Յակուբին:

Ինչ վերաբերում է հռոմեական ու բյուզանդական կայսրերի պատմությանը, որ գտնում ենք Յակուբիի մոտ, ապա դրանք հավանաբար ասորիների կողմից բանավոր կերպով հաղորդված նյութեր են:

Այսպիսով, Ը դարում և Թ դարի առաջին կեսում կուտակված պատմական նյութերը, միանալով օտար ազդեցությունների հետ, տվեցին արաբ պատմագրության զարգացման առաջին շրջանի պսակը հանդիսացող երկեր:

Իններորդ դարի երկրորդ կեսից մեզ են հասել չորս պատմիչների կարևոր երկեր՝ Իբն Կուտայբայի (մահ. 889) «Գիրք իմացությանը» (Քիտաբ ալ-Մաարիֆ), Աբու Հանիֆա ալ-Դինավարիի (մահ. 895) «Գիրք երկարապատում ավանդությունների» (Քիտաբ ալ-Ախբար ալ-Թիվալ), Բալազուրիի (մահ. 892) «Երկրների նվաճումը» (Ֆուտուհ ալ-Բուլդան) և Յակուբիի (մահ. 897) «Պատմությունը» (Տարիխ): Այս դարում սկիզբ առավ նաև տեղական պատմագրությունը, ինչպես Իբն Աբդ ալ-Հաքամի (մահ. 871) «Եգիպտոսի նվաճման պատմությունը»[17], Իբն Թայֆուրի (մահ. 893) «Բաղդադի պատմությունը»[18] և այլն:

Արաբական պատմագրության երկրորդ շրջանն ընդգրկում է Ժ դարը և ԺԱ դարի առաջին տասնամյակները (կարելի է ասել մինչև սելջուկյան արշավանքները):

Առաջին խոշոր դեմքը Աբդ ալ-Կադիր ալ-Թաբարին է (838-923), որը պարսիկ է և ծնվել է Թաբարիստանում: Գրել է «Գիրք մարգարեից ու թագավորաց» երկը, դեպքերի շարադրանքը տալով ըստ հիջրի տարիների: Նույն դարում համառոտ տարբերակով թարգմանվել է պարսկերենի:

Վերջերս հայտնի դարձավ Ժ դարի մի պատմիչի գործը, որը երկար ժամանակ մնում էր անտիպ. դա Քուֆին է, որի մասին հայտնի էր միայն, որ մահացել է 926 թվականին: Քուֆիի «Պատմությունը» բազմահատոր հետաքրքրական աշխատություն է: Որպես պատմիչ կարելի է հիշել նաև Ջահշիարիին (մահ. 942), որի «Վեզիրների ու քարտուղարների պատմությունը» Աբբասյանների օրոք եղած հարկային դրության մասին

---

[17] The History of the Conquest of Egypt, North Africa and Spain known as the Futuh Misr of Ibn al-Hakam. Ed. by **Ch. C. Torrey**. New Haven, 1922 (Yale Oriental Series, Researches 3).

[18] Sechster Band des Kitab Bagdad von **Ahmad ibn abi Tahir Taifur**. Hrsg. und ubers. von **H. Keller**, t. I: Arabischer Text; t. II: Deutsche Ubersetzung, Leipzig, 1908.

կարևոր տեղեկություններ ունի:
Եթե Թաբարին հայտնի է իր աշխատանքի մեծ ծավալով ու ընդգրկումով (տալով ամբողջ խալիֆայության մանրամասն պատմությունը), ապա Մասուդին հայտնի է որպես բազմակողմանի պատմիչ, որին նույնիսկ կոչել են արաբների Հերոդոտոս: Ունի «Ոսկե լվացարաններ ու գոհարների մարգագետիններ» հայտնի աշխատությունը, որը նրա գրած համառոտ պատմությունն է, իսկ նույնի ընդարձակ և միջին խմբագրությունները մեզ չեն հասել: Մահացել է Եգիպտոսի Ֆուսթաթ քաղաքում՝ 956-ին: Հիմնականում Իրանի պատմությանն է նվիրված Համզա Իսֆահանիի (մահ. 961) «Ազգերի պատմությունը» աշխատությունը:
Ժ դարում արաբ պատմագրության մեջ մի նոր երևույթ էր քրիստոնյա արաբ պատմիչների երևան գալը: Եվտիքիոս Սաիդ իբն ալ-Բաթրիկը (876-939) Ալեքսանդրիայի պատրիարքը իր «Գոհարների շարք» երկում շարադրել ՝է Արևելքի պատմությունը մինչև 933 թվականը: Նույն դարում Սևերոս իբն ալ-Մուկաֆֆա եպիսկոպոսը գրել է Ալեքսանդրիայի ղպտի պատրիարքների պատմությունը: Ագապիոս (Մահբուբ) ալ-Մանբիջին գրել է Տիեզերական պատմություն մինչև Ժ դարի կեսերը: Առավել հայտնի է Յահիա իբն Սաիդ ալ-Անթաքին (980-1066), որը շարունակել է Եվտիքիոսի գործը՝ հասցնելով մինչև ԺԱ դարի կեսը:
Ժ դարի պատմիչների շարքը կարելի է դասել պարսիկ Իբն Միսքավայհին (մահ. 1038), որն իր «Ազգերի փորձը» գրել է դարի վերջերին, ինչպես նաև Բիրունիին (մահ. 1048), որն իր պատմական երկը գրել է 1000 թվականին:
Պատմագրությունը զարգացավ նաև հեռավոր Անդալուսում (Արաբական Իսպանիա), ուր Իսպանիայի արաբական նվաճման պատմությամբ հայտնի է Իբն Կութիյյան (մահ. 977):
ԺԱ դարի կեսերին կանգ առավ արաբ պատմագրության զարգացման բնականոն ընթացքը, քանզի սելջուկյան ավերիչ արշավանքները մոտավորապես մեկ հարյուրամյակ ամլության մի շրջան առաջացրին: Կարելի է միայն հիշել Հիլալ ալ-Սաբիին (970-1056), որը Պատմության հեղինակ է և Բաղդադի մանրամասն պատմության հեղինակ ալ-Խաթիբ ալ-Բաղդադիին (մահ. 1071), որոնք վերջին հաշվով, նախորդ շրջանին են պատկանում: Սակայն հեռավոր Իսպանիայում շարունակվում էր մատենագրության զարգացումը. հայտնի պատմիչ է Իբն Հայյանը (մահ. 1074), իսկ հատկապես երևան եկան Կենսագրական բառարաններ, որոնք պատմական կարևոր աղբյուրներ են:
Սերձավոր Արևելքում միայն ԺԲ դարի կեսերից որոշ աշխուժություն

է ընկատվում պատմագրության մեջ: Իբն ալ-Կալանիսին (1073-1160) գրում է «Դամասկոսի պատմության հավելվածը», քանի որ նրանից առաջ Հիլալ ալ-Սաբին գրել էր «Դամասկոսի պատմությունը»: Հուշերի ձևով է գրված Ուսամա իբն Մունկիզի (1095-1188) աշխատությունը, որը կարևոր աղբյուր է խաչակիրների ու մահմեդականների հարաբերությունների մասին:

ԺԲ դարի կեսերից մինչև ԺԳ դարի կեսերը (մոնղոլական արշավանքները և մամլուքների իշխանության հաստատումը Եգիպտոսում) պատմագրությունը ծաղկեց տարբեր կենտրոններում: Կարևոր դեմք է Իբն ալ-Ջաուզին (մահ. 1200), որը եղել է Սալահ ալ-Դինի քարտուղարը և հեղինակ է բազմահատոր պատմության: Նրան ժամանակակից է Իմադ ալ-Դին ալ-Իսֆահանին (մահ. 1201), որը 1194-ին արաբերենի էր թարգմանել և ընդարձակել պարսիկ Անուշիրուան իբն Խալիդի աշխատությունը, իսկ նրա գործը մեզ հասել է ԺԳ դարում Բունդարիի կատարած համառոտ խմբագրությամբ: Այստեղ շարադրված են ԺԱ-ԺԲ դարերի դեպքերը: ԺԳ դարի սկզբին է գործել Սադր ալ-Դին ալ-Հուսայնին, որը նույնպես այդ շրջանի մասին է գրել: Յուրահատուկ տեղ ունի Իբն ալ-Ազրակ ալ-Ֆարիկին (1117-1226), որը ծնվել է Նփրկերտում և գրել է ԺԲ դարի դեպքերի մասին:

Սակայն այս շրջանի խոշորագույն դեմքն է Իբն ալ-Ասիրը (1160-1233), որի «Լիակատար պատմությունը» արաբ պատմագրության մեջ մեծ երևույթ է: Ջալալ ալ-Դին Խորեզմիի քարտուղար Նասավին (մահ. 1249) շարադրել է նրա գործունեության պատմությունը: Մուհամմադ ալ-Համավին (ԺԳ դ. առաջին կես) հեղինակ է ԺԲ-ԺԳ դարերի պատմության մասին աշխատության: Իբն ալ-Ջաուզիի թոռ Աբբ իբն ալ-Ջաուզին (1186-1257) գրել է «Ժամանակի հայելի» կոչված աշխատությունը: Նրա ժամանակակից Իբն ալ-Ադիմը (1192-1262) շարադրել է Հալեբի պատմությունը մինչև 1243: Այս շրջանում Արևմուտքում (Մաղրիբ) հայտնի դեմք էր Մարրաքուշին, որը 1224-ին գրել է Հյուսիսային Աֆրիկայի քաղաքական իրադարձությունների մասին:

Արաբ պատմագրության զարգացման վերջին շրջանը համընկնում է մամլուքյան ժամանակաշրջանին (1250-1517), երբ արաբ մշակույթի հիմնական կենտրոնը Եգիպտոսն էր: Այստեղ ծաղկեց քրիստոնյա արաբ (ղպտի) պատմիչ ալ-Սաքինը (1205-1273), որը հեղինակ է «Օրհնյալ ժողովածու» կոչված տիեզերական պատմության: Նրան հաջորդեց Ասորիքում Աբու-լ-Ֆարաջ իբն ալ-Իբրին, կամ Բար Հեբրեոսը՝ (1226-1286) հակոբիկ ասորիների պատրիարքի տեղակալը, որի «Պե-

տությունների համառոտ պատմությունը» նույնպես տիեզերական պատմություն է: Կենսագրական բառարանների ասպարեզում կարկառուն դեմք է Իբն Խալլիքանը (1211-1282):

ԺԴ դարի առաջին կեսում իրար հաջորդեցին ալ-Զահաբին (1274-1348) իր «Իսլամի պատմությամբ» և Աբու-լ-Ֆիդան (1273-1357) իր «Մարդկության համառոտ պատմությամբ»:

Դարի երկրորդ կեսում հայտնի է Իբն Քասիրը (1301-1373) և վերջապես արաբական պատմագրության մեծագույն դեմքը՝ Իբն Խալդունը (1332-1406), որի բազմահատոր «Պատմության» Առաջաբանը (Մուկադդիմա) բացառիկ արժեք ունի որպես պատմության փիլիսոփայություն:

ԺԵ դարը արաբ պատմագրության վերջին կարևոր դեմքերն է տվել՝ Կալկաշանդի (1355-1418), Մակրիզի (1364-1442), Այնի (1360-1451), Իբն Տաղրիբիրդի (1411-1466) և Սույութի (1445-1505):

Արաբ պատմագրությունը հիմք դարձավ պարսկական, թուրքական ու այլ մահմեդական ժողովուրդների պատմագրության համար: Պարսիկ պատմիչների երկերը ներծծված են արաբ պատմագրության ավանդույթներով: Նույնը կարելի է ասել նաև թուրք պատմիչների մասին, որոնցից Մունաջջիմ Բաշին (մահ. 1702) արաբ պատմագրության նյութերը հանրագումարի բերող մի շատ կարևոր արաբերեն աշխատության հեղինակ է:

## բ. Աշխարհագրությունը

Արաբական աշխարհագրական գրականությունը երկակի բնույթ ունի: Մի կողմից սերտորեն կապված է ճշգրիտ գիտությունների՝ աստղաբաշխության ու մաթեմատիկայի հետ, իսկ մյուս կողմից առնչվում է պատմագիտության և գեղարվեստական գրականության հետ:

Արաբները սովորություն ունեին որոշակի ձևով խմբավորելու կամ դասակարգելու գիտությունները: Նման մի դասակարգմամբ՝ դրանք բաժանում էին երկու խմբի՝ հին գիտությունների (ալ-Ուլում ալ-Կադիմա) և նոր գիտությունների (ալ-Ուլում ալ-Յադիսա): Առաջինների մեջ էին մտնում դպրությունը, դավանաբանական գրականությունը, իրավագիտությունը (ֆիկհ) և պատմությունը, որոնք Օմայյանների օրոք առաջացած էին համարվում, իսկ երկրորդ խմբի մեջ էին դասում աստղաբաշխությունը, մաթեմատիկան, բժշկությունը, փիլիսոփայությունը, համարելով, որ սրանք ավելի ուշ են զարգացել՝ Աբբասյանների շրջանում:

Ահա այս երկրորդ խմբի մեջ էր նաև աշխարհագրությունը, որն իրոք սկսեց զարգանալ Աբբասյանների օրոք:

Աշխարհագրության առաջացումն ու զարգացումը արաբների մոտ սերտորեն կապված է խալիֆայության գործնական պահանջների հետ: Յարկահանության կազմակերպումը պահանջում էր պետության բոլոր նահանգների քաղաքների ու գյուղերի մանրակրկիտ հաշվառում: Թեպետ Իրանում եղել էին հարկամատյաններ, նույնպես և Բյուզանդիայում, այսուհանդերձ նոր պայմաններում անհրաժեշտ էր նոր ձևով կազմակերպել այն: Արդեն Ը դարում առաջացան արաբերեն հարկամատյաններ (ինչպես Աբու Յուսուֆի «Քիտաբ ալ-Խարաջը»), որոնք այնքան անհրաժեշտ էին հարկային դիվանի համար:

Լայնածավալ պետությանն անհրաժեշտ էին ճշգրիտ տեղեկություններ ճանապարհների, փոստային կայանների և հաղորդակցության միջոցների, ինչպես նաև ծովային ուղիների վերաբերյալ: Խալիֆայությանն անհրաժեշտ էին նաև բազմատեսակ տեղեկություններ այլ պետությունների, հատկապես Բյուզանդիայի մասին:

Այսպիսով Թ դարում պահանջն ստեղծեց մի գիտություն, որը հունարեն բառով կոչվեց «ջաղրաֆիյա», կամ «ջուղրաֆիյա»: Երբեմն արաբներն իրենց համար առավել հասկանալի ձևով ասում էին «Երկարությունների ու լայնությունների գիտություն» (Իլմ ալ-Աթուալ ու-ալ-Աարադ), կամ «Քաղաքների դրության որոշման գիտություն» (Իլմ Տակուիմ ալ-Բուլդան): Ավելի որոշակի իմաստ ուներ «Ճանապարհների ու թագավորությունների գիտություն» (Իլմ ալ-Մասալիք ու-ալ-Մամալիք) արտահայտությունը, իսկ ոմանք արևելյան երևակայությամբ կոչում էին «Երկրների հրաշալիքների գիտություն» (Իլմ Աջաիբ ալ-Բիլադ):

## Մաթեմատիկական աշխարհագրություն

Արաբների մոտ աշխարհագրության այս ճյուղն առաջացավ մասամբ հնդկական ու պարսկական, բայց հատկապես հունական ազդեցության տակ:

Աբբասյանների օրոք արքունիքում երևան եկավ աստղագուշակի (մունաջջիմ) պաշտոնը, որպես Սասանյան Իրանից եկող ավանդույթ: Երբ 762-ին հիմնադրվեց Բաղդադը, Մանսուր խալիֆան քաղաքի հիմնադիր ճարտարապետների (մուհանդիս) և վերակացուների հետ նշանակել էր նաև երկու աստղագուշակի, որոնք սակայն, ըստ էության,

աստղաբաշխներ էին: Մեկը՝ պարսիկ Նաուբախտն էր, որի սերունդը հետագայում հայտնի դարձավ տարբեր ասպարեզներում, մյուսը՝ հրեա Մաշաալլահն էր:

Պարսկական աստղաբաշխական երկերը, որոնք այս շրջանում հասնում էին արաբներին, քիչ չափով ինքնուրույն էին, քանզի հիմնականում արտահայտում էին հնդկական գիտությունը, որն, ի դեպ, նաև ուղղակիորեն էր ներթափանցում արաբական միջավայր:

Ըստ արաբ մատենագիրների, 771 կամ 773 թվականին Մանսուրի արքունիքը ժամանեց հնդկական մի դեսպանություն, որի կազմում էր գիտնական Մանքան կամ Քանքան. սա իր հետ էր բերել հնդկերեն աստղաբաշխական մի երկ, որի մեջ աղյուսակներ կային: Այս գործի արաբերեն մշակումը Ֆազարիի ու Յակուբ իբն Թարիկի կողմից կոչվել է «Սինդհինդ գիրք» (Քիտաբ Սինդհինդ): Այժմ պարզված է, որ այս հնդկերեն աշխատության հեղինակն է եղել Բրահմագուպտան, որը 628-ին գրել է «Սիդդհանտա» կոչված գիրքը: Ահա այս գրքի անունը արաբական միջավայրում աղավաղվելով դարձել է Սինդհինդ, որի մեջ արտահայտված են Հնդկաստանի երկու մասերի արաբական անունները՝ Սինդ (Ինդոսի հովիտ) և Հինդ (Հնդկաստան): Սիդդհանտա նշանակել է գիտելիք, գիտություն, սակայն ժամանակի ընթացքում այս բառն օգտագործվել է ամեն մի աստղաբաշխական երկի համար:

Ֆազարին, օգտագործելով հնդկական նյութերը, կազմել է աստղաբաշխական աղյուսակներ՝ զիջ կոչված: Պահպանելով հանդերձ Սինդհինդի համակարգը, միաժամանակ լրացումներ է կատարել, հնդկական ժամանակի հաշվումը վերածելով արաբական տարիների և այլն: Նրա աստղաբաշխական աղյուսակից (զիջ) մի հատված պահպանվել է Ժ դարի պատմիչ Մասուդիի մոտ, որի հիման վրա եզրակացրել են թե դա գրված է եղել 786-ից անմիջապես հետո: Ֆազարին և նրա ժամանակակիցները կարևոր դեր կատարեցին արաբական աստղաբաշխության սկզբնավորման մեջ: Նա և Մաշաալլահը առաջիններն էին որ աստրոլաբներ (աստղագիտական չափիչ գործիքներ) կազմեցին:

Նախքան հունական ազդեցությունը արաբները երկարությունները չափում էին ըստ Արինի կամ «երկրի գմբեթի (կուբբատ ալ-արդ) միջօրեականի», որը գտնվում էր ինչ որ տեղ արևելքում: Ըստ հնդիկ գիտնականների տեսության, երկարությունները հաշվվում էին ըստ միջօրեականի, որն անցնում էր Լանկա (արաբ. Սարանդիբ, նոր ժամանակներում՝ Ցեյլոն) կղզու վրայով, որն, իբր, հասարակածի վրա է գտնվում: Ըստ հնդիկների՝ Լանկայի միջօրեականն անցնում էր Ուժայյինայի

(այժմ՝ Ուջայն Կենտրոնական Հնդկաստանի Մալվա գավառում) վրայով, ուր կա հայտնի աստղադիտարան: Արաբներն այս Ուջայնը դարձրին Ուզայն, աղավաղելով՝ Արին: Այսպիսով արաբների մոտ տեղ գտավ այն տեսությունը, որ երկարությունների հաշիվն սկսում է Արինի միջօրեականից: Արին բառը ժամանակի ընթացքում պարզապես կենտրոնի իմաստ ստացավ:

Հնդկական աստղաբաշխական և աշխարհագրական տեսություններից բացի արաբական միջավայր ներթափանցեցին նաև իրանական համապատասխան նյութեր: Օրինակ, զիջ (աստղաբաշխական աղյուսակներ) բառը ծագում է պարսկերեն զիգից, պահլավերեն՝ զիկից, որն սկզբում նշանակել է հիմք: Արաբների մոտ յոթ իկլիմների հայտնի տեսությունը ծագել է իրանական յոթ քիշվարների (երկրներ) պատկերացումից, թեև այս տեսությունն ամրացավ միայն հունական ազդեցությունից հետո:

Պարսկերեն (պահլավերեն) հորինված երկերից մեկն էր, որ զգալի ազդեցություն է թողել արաբական աշխարհագրության մեջ: Դա արաբական միջավայրում «Զիջ ալ-Շահ» կամ «Զիջ ալ-Շահրիար» կոչված աշխատությունն է, որի հիմքում ընկած է պահլավերեն «Զիկ-ի Շատրոայար» երկը՝ գրված 632-ին, Հազկերտ Գ-ի օրոք: Այն օգտագործել է Մաշաալլահը, ծանոթ է եղել նաև Խորեզմին:

Իններորդ դարի սկզբից հունական աշխարհագրությունը եկավ դուրս մղելու հնդկականն ու պարսկականը, իսկ դարի կեսին այն արդեն տիրապետող էր: Տեսական վերլուծությամբ ու գիտական հիմնավորումով զինված հունական աշխարհագրությունը բնականաբար պիտի ետ մղեր իր նախորդներին:

Հույն մեծ աշխարհագրագետ աստղաբաշխ Կլավդիոս Պտղոմեոսի (90-168) և քարտեզագետ Մարին Տիրացու (Ա դ. վերջ - Բ դ. սկիզբ) աշխատությունների թարգմանությունները և նրանց ծանոթացումը ծնունդ տվեցին արաբալեզու մաթեմատիկական աշխարհագրությանը: Պտղոմեոսից թարգմանվել են նախ նրա երկու հիմնական երկերը՝ Մեծ ժողովածուն, որն արաբները կոչում էին Մաջիսթի, կամ Միջիսթի (միջնադարյան Եվրոպայում Almagest) և Աշխարհագրական ուղեցույցը, որը պարզապես կոչվել է աշխարհագրություն:

Ալմագեստն առաջին անգամ թարգմանվել է Բարմաքյան վեզիր Յահիա իբն Խալիդի պատվերով՝ նախքան 803 թվականը: Դա կոչվում է հին թարգմանություն և բավարար մակարդակ չի ունեցել: Մամուն խալիֆայի օրոք կատարվել է նոր, որակով թարգմանություն մոտավորա-

պես 827/828 –ին: Ապա կրկին է թարգմանել Յունայն իբն Իսհակը (810-873), իսկ հետո այն խմբագրել է Սաբիթ իբն Կուռան (834-901): Ալմագեստը արաբերենից լատիներենի է թարգմանել Ժերար Կրեմոնացին 1175-ին:

Պտղոմեոսի երկրորդ աշխատությունը՝ Աշխարհագրությունը նախ թարգմանել է փիլիսոփա Քինդին (մահ. 874), ապա Սաբիթ իբն Կուռան ավելի ընտիր թարգմանություն է կատարել, իսկ Իբն Խորդադբեհը այն խմբագրել է: Բացի այս երկու մեծ աշխատություններից արաբերենի են թարգմանվել նաև Պտղոմեոսի մանր աշխատություններ, որոնք առնչվում են Ալմագեստին: Կա նաև մի արաբական երկ «Քիտաբ ալ-Մալհամա» (Պայքարի գիրք) կոչված, որը կապում են Պտղոմեոսի անվան հետ: Ըստ երևույթին սա Պտղոմեոսի և արաբական նյութերի մի խառնուրդ է, որին հղում է նաև ԺԳ դարի աշխարհագրագետ Յակուտը:

Այս բոլորի հետևանքով արաբների մոտ սկիզբ առան աստղագիտական պրպտումները: Բաղդադի ու Դամասկոսի աստղադիտարաններում կատարված դիտարկումների հիման վրա կազմվում են «Մամունի աստղաբաշխական աղյուսակները» Մամուն խալիֆայի օրոք, որոնք օգտագործվել են Խորեզմիի ու Ֆարղանիի կողմից: Կազմվել է նաև «Մամունի քարտեզ», որն անկասկած ազդված է եղել Պտղոմեոսի քարտեզներից:

Արաբական մաթեմատիկական աշխարհագրության առաջին խոշոր դեմքը Խորեզմին է, ապա՝ Ֆարղանին (երկուսն էլ Թ դարում), իսկ Ժ դարում հայտնի է Սուհրաբը, որի աշխատությունն այնքան նման է Խորեզմիի «Երկրի պատկերը» (Քիտաբ Սուրատ ալ-Արդ) գրքին, որ կարելի է այն Խորեզմիի երկի երկրորդ խմբագրությունը համարել: Նրան նախկինում կոչել են Իբն Սերապիոն՝ շփոթելով նույնանուն բժշկի հետ:

Նույն դարում ապրած, Աստղաբաշխական աղյուսակների հեղինակ է խառանցի աստղապաշտ սաբիների կրոնի հետևորդ ալ-Բատտանին (մահ. 929): Աստիճանաբար մաթեմատիկական աշխարհագրության կենտրոնները Բաղդադյան շրջանակներից տեղափոխվում են արևմուտք: Ֆաթիմյան Եգիպտոսում Իբն Յունուսը (մահ. 1009) աղյուսակներ է կազմում աշխատելով Մուկաթթամ լեռան (Կահիրեի մոտ) աստղադիտարանում: Իսպանիայում ալ-Զարկալին (մահ. 1087) մասնակցել է «Տոլեդոյի աստղաբաշխական աղյուսակների» հորինմանը, որի համար գրել է նաև մեկնություններ: Այս աղյուսակները ԺԲ դարում լատիներեն է թարգմանել Ժերար Կրեմոնացին:

Արևելքում մոնղոլական արշավանքներից հետո Մարաղայի աստ-

դադիտարանում դիտումներ է կատարել Նասիր ալ-Դին Թուսին (մահ. 1274) և գրել «ալ-Զիջ ալ-Իլխանի» (Իլխանական աստղաբաշխական աղյուսակներ): Նա գրել է պարսկերեն և արաբերեն: Վերջապես կարելի է հիշել Ուլուղբեկին (մահ. 1449), որը 1428-ին հիմնել է Սամարղանդի աստղադիտարանը: Իր «Զիջե ուլուղբեկի» երկը գրել է պարսկերեն, սակայն շուտով այն թարգմանվել է արաբերենի:

### Նկարագրական աշխարհագրություն

Եթե Թ դարի առաջին կեսում հանդես եկավ մաթեմատիկական աշխարհագրությունը, որի առաջին կարևոր դեմքը Խորեզմին (մահ. 847) է, ապա դարի երկրորդ կեսում կազմավորվեց նկարագրական աշխարհագրությունը, և նրա հիմնադիրն էր Իբն Խորդադբեհը (մահ. 912):

Մաթեմատիկական աշխարհագրությունը ուղղակի հունական ազդեցության տակ ծնունդ առավ, սակայն դժվար է նկարագրական աշխարհագրության համար մեկ որոշակի աղբյուր նշել: Վերջինս դեռ Թ դարի առաջին կեսում աստիճանաբար սաղմնավորվեց, թեև կրեց նաև հունական և պարսկական ազդեցությունը:

Իններորդ դարի առաջին կեսում արաբ մատենագրության մեջ առաջանում են «Քիտաբ ալ-Անուաա» (Գիրք լուսնի երեսների) կոչված աշխատություններ, որոնց մեջ բանասերները լեզվաբանական մեկնաբանությունների հետ մեկտեղ տալիս են եղանակի ու բնության մասին տեղեկություններ: Այսպիսի աշխարհագրաբանասիրական աշխատություններ է հորինել անապատի հին ավանդությունների գիտակ Հիշամ ալ-Քալբին (մահ. 820): Նման երկերը մեծ մասամբ նվիրված էին լինում Արաբիայի աշխարհագրությանը, կլիմայական պայմաններին, թեև եղել են աշխատություններ, որոնք դուրս են եկել Արաբիայի սահմաններից:

Բազմակողմանի գրող ու մտածող Ջահիզը (մահ. 869) իր երկերում հաճախ է անդրադառնում աշխարհագրական երևույթներին, սակայն ժամանակի ընթացքում պարզվեց, որ զուտ աշխարհագրական բնույթի գրքեր էլ է հորինել: Արդեն հայտնի է նրա «Հայացք վաճառականության վրա» աշխատությունը:

Արաբները հեռավոր երկրների մասին գաղափար էին կազմում արշավանքների ընթացքում, կամ թշնամու ձեռքը գերի ընկնելով և կամ որոշ քաղաքական հանձնարարությամբ հեռավոր երկրներն այցելելով: Նման ճանապարհորդություններից (ցամաքային թե ծովային) վերադառնալով՝ տալիս էին իրենց տեսած երկրների նկարագրությունը:

Առևտուր կատարելու համար արաբներն ու պարսիկները ծովային ճանապարհորդություններ էին կատարում մինչև հեռավոր Մալայա և Չինաստան, իսկ Միջերկրական ծովում արաբական նավերը միշտ շրջագայության մեջ էին: Հայտնի է Սուլայման վաճառականի Հնդկաստան ու Չինաստան կատարած ճանապարհորդության նկարագրությունը, որը վերաբերում է 851 թվականին, թեև գրի է առնվել հաջորդ դարում:

Իններորդ դարի երկրորդ կեսում արդեն ձեռքի տակ ունենք լուրջ աշխարհագրական երկեր, որոնցից առաջինն է Իբն Խորդադբեհի աշխատությունը: Ապա պետք է հիշել Յակուբիի (մահ. 897) երկը, իսկ հաջորդ դարի սկզբին գործել են Իբն ալ-Ֆակիհը (մահ. 903-ից հետո), Իբն Ռուստան (մահ. 913-ից հետո) և Կուդաման (մահ. 932-ից հետո):

Տասներորդ դարում սկսում է մի նոր շրջան, երբ երևան եկավ «Դասական դպրոցը» արաբ աշխարհագրության մեջ: Սրա հիմնադիրն է Բալխին (850-934), որի աշխատությունը մեզ չի հասել: Ապա իրար են հաջորդում Իսթախրին (մահ. 951-ից հետո), Իբն Հաուկալը և Մուկադդասին (946-1000): Դասական դպրոցը հայտնի է իր քարտեզներով: Այս դարում հայտնի են նաև Աբու Դուլաֆը, Մակդիսին (մահ. 956) և հատկապես Մասուդին (մահ. 956): Այս խմբին կարելի է միացնել նաև բազմակողմանի գիտնական Բիրունիին:

Սելջուկյան արշավանքների կատարած ավերածության հետևանքով մշակույթի կենտրոնները (և հենց աշխարհագրության) Իրաքից ու Իրանից տեղափոխվում են արևմուտք՝ Իսպանիա և Եգիպտոս ու Սիրիա: ԺԱ-ԺԲ դարերում արաբական Իսպանիայում ծաղկում են աշխարհագրական բառարանի հեղինակ Բաքրին (մահ. 1094), Աբու Համիդ ալ-Ղարնաթին (մահ. 1169/1170) և հատկապես հռչակավոր Իդրիսին (1100-1165), որն ապրել է Սիկիլիայում և հեղինակ է հարուստ քարտեզների:

Եգիպտոսում ու Սիրիայում ծաղկել են Յակուտը (մահ. 1229) աշխարհագրական հայտնի բառարանի հեղինակը և Աբդ ալ-Լաթիֆը (մահ. 1231):

ԺԳ դարի երկրորդ կեսում և ԺԴ դարում աշխարհագրության զարգացման կենտրոններն էին Եգիպտոսն ու Սիրիան: Հայտնի են Իբն Սաիդը (մահ. 1274), Զաքարիա ալ-Կազուինին (մահ. 1283), որն ունի երկու աշխատություն՝ Տիեզերագիտություն և Աշխարհագրություն, ապա Դիմաշկին (մահ. 1327), Աբու-լ-Ֆիդան (մահ. 1331), ալ-Նուայրին (մահ. 1332), ալ-Օմարին (մահ. 1349) և ճանապարհորդ Իբն Բաթթութան (մահ. 1377):

ԺԵ դարում Իբն ալ-Վարդիով (մահ. 1457) և ծովագնաց Իբն Մաջիդով

վերջանում է արաբ աշխարհագրության զարգացումը, քանզի հաջորդ դարից, Օսմանյան տիրապետության հետևանքով սկսում է անկության մի երեքդարյա շրջան թե՛ աշխարհագրության ու պատմության և թե՛ ընդհանրապես արաբ մատենագրության մեջ:

## ԲՆԱԳՐԵՐԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ՊԱՏՄԱԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ա. Արաբերեն պատմաաշխարհագրական բնագրերի հրատարակություններ

Թեև ԺԱ-ԺԳ դարերում Իսպանիայի Տոլեդո քաղաքում և Եվրոպայի այլևայլ վայրերում արաբերենից լատիներեն թարգմանության եռանդուն գործունեություն ծավալվեց, այսուհանդերձ, միջնադարյան Եվրոպային հետաքրքրում էր առաջին հերթին արաբական փիլիսոփայությունը, բժշկությունը և ճշգրիտ գիտությունները, իսկ պատմական և աշխարհագրական երկերը դեռ չէին հետաքրքրում:

Թարգմանվել էին միայն մաթեմատիկական աշխարհագրությանը վերաբերող գործերը, ինչպես Ֆարղանիի (Alfraganus) և Բատտանիի (Albategnius) երկերը:

Հետաքրքրությունը արաբական պատմագրության և աշխարհագրության նկատմամբ առաջացավ միայն ԺԶ և ԺԷ դարերում, արաբերեն տպագրության սկզբնավորումից անմիջապես հետո, երբ վերածննդի ազդեցության տակ եվրոպացի գիտնականները ավելի խորը և բազմակողմանի հետաքրքրություն սկսեցին ցուցաբերել Արևելքի նկատմամբ: Այդ ժամանակ արաբերենի և արաբական մատենագրության ուսումնասիրությունը սերտորեն կապված էին աստվածաբանության հետ և մտնում էին ընդհանուր արևելագիտության և սեմագիտության ոլորտների մեջ: Արաբերենի ուսումնասիրման կենտրոններն էին Հռոմը, Փարիզը, Լեյդենը (Հոլանդիա), Օքսֆորդը և Քեմբրիջը, որտեղ կային արաբերեն ձեռագրերի հավաքածուներ:

Արաբական տպագրության սկզբնավորումը Իտալիայում մեծ նշանակություն ունեցավ արաբագիտության և արևելագիտության սաղմնավորման համար: 1580-ական թվականներին Հռոմում (Մեդիչիների տպարանում) լույս տեսան առաջին արաբերեն գրքերը[19]: Շուտով լույս

[19] J. Fuck, Die Arabischen Studien in Europa, Leipzig, 1955, S. 53-59.

տեսավ հոլանդացի բանասեր Թ. Էրպենիուսի (1584-1624) արաբերեն քերականությունը[20] և ապա Գ. Գոլիուսի (1596-1667) արաբերեն-լատիներեն բառարանը [21]:

Աշխարհագրական առաջին աշխատությունը, որին Եվրոպան ծանոթացավ Հասան իբն Մուհամմադի (լատինական անունով Լևոն Աֆրիկացի) «Աֆրիկայի նկարագրությունն» է: Հեղինակը 1526 թվականին այն իտալերենի էր թարգմանել և 1550-ին հրատարակել Հռոմում, իսկ արաբերեն բնագրի վերաբերյալ տեղեկություններ չկան[22]:

1592 թվականին Հռոմի Մեդիչիների տպարանում լույս տեսավ ԺԲ դարի աշխարհագրագետ Իդրիսիի աշխարհագրությունը[23] (քաղվածաբար), որն արաբերեն աշխարհագրական բնագրի առաջին տպագրությունն էր: 1619-ին նրան հաջորդեց լատիներեն թարգմանությունը:

Առաջին արաբական պատմական երկը լույս տեսավ Լեյդենում (Հոլանդիա) Թ. Էրպենիուսի ջանքերով: Դա ԺԳ դարի քրիստոնյա արաբ (ղպտի) պատմիչ ալ-Մաքինի պատմության լատիներեն թարգմանությունն էր[24]:

Սակայն հոլանդացի Յ. Գոլիուսն էր, որ լույս ընծայեց առաջին արաբերեն պատմական երկի բնագիրը՝ ԺԵ դարի պատմիչ Իբն Արաբշահի «Լենկթիմուրի պատմությունը»[25]:

Նա հետագայում հրատարակեց նաև Թ դարի արաբ աշխարհագրագետ Ֆարղանիի երկը արաբերեն բնագրով[26]:

Անգլիացի արևելագետ Է. Պոքոքիոսը (1604-1691) հրատարակեց երկու քրիստոնյա արաբ մատենագիրների բնագրերը՝ Թ դարի պատմիչ, Ալեքսանդրիայի մելքիտ (հունադավան) պատրիարք Եվտիքիոսի[27] և ԺԳ դարի ասորի պատրիարքի փոխանորդ (մափրիան) Աբու-լ-Ֆարաջ

---

[20] Th. Erpenius, Grammatica Arabica, Leiden, 1613.

[21] J. Golius, Lexicon Arabico-Latinum, Lugd. Bat., 1653.

[22] И. Крачковский, Избранные сочинения, IV, 1957, стр. 445-450.

[23] Idrisi, Oblectatio desiderantis in descriptione civitatum principalium et tractuum et provinciarum et insularum ... mundi, Romae, 1592.

[24] Historia Saracenica ... Arabice olim exarata a Georgio Elmacino ... et Latine reddita opera et studio Thomae Erpenii, Lugd. Bat., 1625.

[25] Ahmedis Arabsiadae vitae et rerum gestarum Timuri. Historia, Lugd. Bat., 1636.

[26] J. Golius, Muhammedis fil. Ketiri Ferganensis, qui vulgo Alfraganus dicitur. Elementa astronomica, Arabice et Latina, Amstelodami, 1669.

[27] Contexio gemmarum sive Eutychii ... Annales, Interprete E. Pocockio t. 1-2, Oxoniae, 1658-59.

Բար Յեբրեոսի[28] պատմական երկերը: Վերջինը հրատարակված է արաբերեն բնագրով ու լատիներեն թարգմանությամբ:

Այդ դարում հրատարակվել է նաև ԺԴ դ. մատենագիր Աբու-լ-Ֆիդայի աշխարհագրության մի հատվածը[29] Թ. Գրավիոսի (1612-1676) կողմից:

ԺԷ դարում արաբական մատենագրության ուսումնասիրության բնագավառում ակնառու նվաճում էր արևելագետ Բ. Դ'Էրբելոյի (1625-1695) «Արևելյան գրադարան» ֆրանսերեն աշխատությունը[30], որը մի հանրագիտարան է արաբների, պարսիկների, թուրքերի լեզվի, մատենագրության, պատմության, մշակույթի և այլ բնագավառների մասին, այբբենական շարակարգությամբ:

ԺԸ դարում սկիզբը դրվեց արաբական գրչագրերի նկարագրմանը. հրատարակվեցին ձեռագրացուցակներ լիբանանցի մարոնի Ասսեմանի ընտանիքի երեք անդամների կողմից. Ժ. Ասսեմանին (1687-1768) նկարագրեց Վատիկանի արևելյան ձեռագրերը[31], Ս. Է. Ասսեմանին (1707-1782) նկարագրեց Ֆլորենտիայի արևելյան գրչագրերը, իսկ Ս. Ասսեմանին (1752-1821) Վենետիկի ձեռագրերն ու դրամները: Կարևոր է նույնպես մարոնի Մ. Ղազիրիի (լատ. Քազիրի, 1720-1791) էսկուրիալի (Իսպանիա) արաբերեն ձեռագրերի ցուցակը[32]:

Այս դարում արաբերեն բնագրեր հրատարակեց գերմանացի արևելագետ Յ. Յ. Ռայսկեն (1716-1774), որը կարևոր դեր կատարեց Գերմանիայում արաբագիտության զարգացման գործում: Նա հրատարակել է ԺԴ դարի մատենագիր Աբու-լ-Ֆիդայի պատմությունը[33]: Դարի վերջում լույս է տեսել Աբդ ալ-Լաթիֆի պատմաաշխարհագրական աշխատության բնագիրը Եգիպտոսի մասին[34]:

Յաջորդ դարի սկզբներին Յ. Ռայսկեի աշակերտ Ք. Ֆ. Շնուռերը (1742-1822) կազմեց արաբագիտական հրատարակությունների մատե-

---

[28] Historia compendiosa Dynastiarum authore Gregorio Abul-Farajio ... arabice edita, et latine versa ab Ed. Pocockio, Oxoniae, 1663.

[29] Chorasmiae et Mawaralnahrae...descriptio ex tabulis Abulfedae, (Th. Gravius), Londini, 1650.

[30] Bibliotheque orientale, par B. d'Herbelot, Paris, 1697.

[31] Bibliotheca Orientalis, Clementino-Vaticana, Romae, 1719-1728.

[32] Bibliotheca Arabico-Hispana Escurialensis, M. Casiri, Matriti, t. I-II, 1760-1770.

[33] Abulfedae Annales muslemici arabice et latine. Opera et studiis J. J. Reiskii. ed. J. G. Ch. Adler, t. I-V, Hafniae, 1789-1794.

[34] Abdallatif's compendium memorabilium Aegypti, ed. J. White, Tubingae, 1789.

նագիտություն, որը կոչվեց Արաբական Գրադարան[35]:

19-րդ դարում ծնվեց բուն արաբագիտությունը անջատվելով ընդհանուր արևելագիտությունից, աստվածաբանությունից և սեմագիտությունից: Ֆրանսիայում արաբագիտության հիմնադիրը դարձավ Սիլվեստր դը Սասին (1758-1838)[36]: Լավ իմանալով սեմական լեզուները, ինչպես նաև արաբերենը, պարսկերենն ու թուրքերենը, նա հանդես եկավ լայն գործունեությամբ: Դասավանդել է 1795-ին հիմնադրված Փարիզի «Արևելյան կենդանի լեզուների դպրոցում», Կոլեժ դը Ֆրանսում, որի տնօրենն է եղել 1823 թվականից, իսկ 1824-ից նաև վերոհիշյալ դպրոցի: 1821-ին հիմնել է «Ասիական ընկերությունը», որի առաջին նախագահն է եղել, ինչպես նաև «Ասիական հանդեսի» խմբագիրը (1822-1838):

Խիստ արժեքավոր է նրա արաբագիտական գործունեությունը: Նրա «Արաբերենի քերականությունը»[37] և «Արաբերենի հատընտիրը»[38] երկար ժամանակ արաբերենի ուսումնասիրման դասական ձեռնարկներ են եղել: Արաբական աղբյուրներից ֆրանսերենի է թարգմանել Աբդ ալ-Լաթիֆի երկը, ճոխ ծանոթագրություններով:

Սիլվեստր դը Սասին ամուր հիմքեր դրեց արաբագիտության և արաբական աղբյուրների ուսումնասիրման համար և Փարիզը դարձավ արաբագիտության կարևոր կենտրոն: Նրա աշակերտ է. Կատրըմերը (1782-1852)[39] հրատարակեց արաբ պատմիչ Սակրիզիի պատմության ֆրանսերեն թարգմանությունը[40], Իբն Խալդունի պատմության ներածության արաբերեն բնագիրը[41]: Ս. դը Սասիի մի ուրիշ աշակերտը Ժ. Ռենոն (1795-1867) նախ Մ. Գ. դը Սլենի (1801-1878) հետ հրատարակեց Աբու-լ-Ֆիդայի աշխարհագրությունը արաբերեն բնագրով[42], ապա ինքը տվեց նրա ֆրանսերեն թարգմանությունը: Դը Սլենը լույս ընծայեց նաև Իբն Խալդունի պատմության մի մասը[43] և Իբն Խալլիքանի կենսագրա-

---

[35] Bibliotheca Arabica. ed. D. Ch. F. Schnurrer, Halae, 1811.

[36] J. Fück, Die Arabischen Studien in Europa, S. 140-152.

[37] Sylvestre de Sacy, Grammaire arabe, pt 1-2, Paris, 1810.

[38] Idem, Chrestomathie arabe, v. 1-3, Paris, 1826.

[39] J. Fück, Die Arabischen Studien, S. 152-153.

[40] Histoire des Sultans Mamlouks de l'Egypte, écrite en arabe par Makrizi, traduite par Quatremère, 2 vol., Paris, 1837-1845.

[41] Prolégomènes d'Ebn Khaldoun. Texte arabe par Quatremère, Paris, 1858.

[42] Géographie d'Aboulféda, texte arabe publié par M. Reinaud et M. G. de Slane, Paris, 1840.

[43] Histoire des Berbères et des dynasties musulmanes de l'Afrique septentrionales par Ibn Khaldoun, éd. Par de Slane, t. I-II, Alger, 1847-1851.

կամ բառարանի թարգմանությունը[44]:

3. Ռայսկեից հետո արաբագիտությունը ամուր հիմքեր ուներ Գերմանիայում: Վ. Ֆրայտագը (1788-1861) հիմնովին վերամշակելով 3. Գոլիոսի արաբերեն-լատիներեն բառարանը, կազմեց արաբերեն-լատիներեն նոր բառարան: Արաբ մատենագրության ուսումնասիրման համար հույժ կարևոր նշանակություն ունեցավ Ժ դարի մատենագիր Իբն ալ-Նադիմի «Ֆիհրիստ»[45] (ցուցակ) և ԺԷ դ. մատենագիր Քյատիբ Չելեբիի «Քաշֆ ալ-զունուն»[46] (կասկածների փարատում) երկերի հրատարակությունը Գ. Ֆլյուգելի (1802-1870) ջանքերով: Այս երկու մատենագիտական աշխատությունները հիշատակում են ոչ միայն մեզ հայտնի, այլև կորած կամ դեռ չհայտնաբերված բազմաթիվ աշխատություններ և հեղինակներ:

Արաբական աղբյուրների հրատարակման ասպարեզում բեղուն գործունեություն է ծավալել Ֆ. Վյուստենֆելդը (1808-1899): Մի ամբողջ գրադարան են կազմում նրա լույս ընծայած բնագրերը՝ Իբն Խալլիքանի կենսագրական բառարանը[47], Աեքքայի ժամանակագրությունները[48], Իբն Կուտայբայի պատմությունը[49], Նավավիի կենսագրական բառարանը[50], Յակուտի աշխարհագրական բառարանը[51], Բաքրիի աշխարհագրությունը[52], Կազվինիի տիեզերագիտությունը[53] և աշխարհագրությունը[54]:

Ֆրանսիայից ու Գերմանիայից բացի արաբագիտությունը ԺԹ դարում զարգացավ նաև Հոլանդիայում, Անգլիայում, Իտալիայում, Իսպանիայում, Ռուսաստանում և Շվեդիայում:

---

[44] Ibn Khallikan's Biographical Dictionary, tr. by M. G. de Slane, v. I-IV, Paris, 1842-1871.

[45] Kitab al-Fihrist von an-Nadim, hrsb. von. G. Flügel, 2 Bde, Leipzig, 1871-1872.

[46] Lexicon bibliographicum et encyclopedicum (Haji Khalfa), ed. G. Flugel, 7 vol., Leipzig-London, 1835-1858.

[47] Ibn Challican, Vitae illustrium virorum, ed. F. Wüstenfeld, Goetingae, 1835-1850.

[48] Die Chroniken der Stadt Mekka, ed. F. Wüstenfeld, I-IV, Leipzig, 1857-1861.

[49] Ibn Cuteiba's Handbuch der Geschichte, hrsg. von F. Wüstenfeld, Gottingen, 1850.

[50] The biographical dictionary of illustrious men, by al-Nawawi, ed. by F. Wüstenfeld, Gottingen, 1842-1847.

[51] Jacut's Geographisches Worterbuch, hrsg. von F. Wüstenfeld, 6 Bde, Leipzig, 1866-1873.

[52] Das geographische Worterbuch des el-Bekry, hrsg. von F. Wüstenfeld, 2 Bde, Gottingen, Paris, 1876, 1877.

[53] Cazwinis Kosmographie, Erster Theil, hrsg. von F. Wüstenfeld, Gottingen, 1848.

[54] Cazwinis Kosmographie, Zweiter Theil, Die Denkmaler der Lander, hrsg. von F. Wüstenfeld, Gottingen, 1849.

Հոլանդիայում Ռ. Դոզին (1820-1883) հրատարակեց արաբական Իսպանիայի վերաբերյալ մի քանի բնագրեր, որոնցից է Մ. դե Գույեի հետ լույս ընծայած Իդրիսիի աշխարհագրության Հյուսիսային Աֆրիկային ու Իսպանիային վերաբերող հատվածը[55]: Անգլիայում արաբագետ Է. Վ. Լեյնը (1801-1876) հրատարակեց արաբական աղբյուրների ուսումնասիրման համար շատ անհրաժեշտ արաբերեն - անգլերեն ութ հատորանոց բառարանը[56], ուր հին արաբական բառարանների (հատկապես Ֆիրուզաբադիի «Կամուս ալ-Մուհիթի») նյութերի հիման վրա մատուցված է դասական արաբերենի ամբողջ բառապաշարը:

Ռուսաստանում գործող գերմանացի արևելագետ Ք. Մ. Ֆրենը (1782-1851) դեռևս դարի սկզբին լույս էր ընծայել Իբն ալ-Վարդիի (ԺԵ դ.) աշխարհագրությունը[57] և ուսումնասիրել Իբն Ֆադլանի բնագիրը: [58]

Վերջապես հույժ կարևոր հրատարակություն էր արաբ պատմագրության ամենահայտնի դեմքերից Իբն ալ-Ասիրի (ԺԳ դ.) պատմության[59] բնագրի լույս ընծայումը շվեդացի արաբագետ Յ. Թորնբերգի (1807-1877) կողմից 14 հատորով:

Վերոհիշյալ հրատարակությունները իրականացվեցին Եվրոպայի տարբեր քաղաքներում գոյություն ունեցող ձեռագրական հավաքածուների օգտագործման շնորհիվ և բնականաբար այդ աշխատանքին զուգահեռ կազմվեցին ձեռագրացուցակներ, որոնք մեծ չափով դյուրացրին բնագրերի հետագա հրապարակումը: Գրեթե բոլոր խոշոր եվրոպական արևելագիտական կենտրոնների հավաքածուներն ունեցան պատշաճ ձեռագրացուցակներ:

Հոլանդիայում կազմվեց արևելագիտական կարևորագույն կենտրոն Լեյդենի հավաքածուի ձեռագրացուցակը Ռ. Դոզիի. Մ. Յ. դե Գույեի և այլոց ջանքերով[60]:

Լոնդոնի Բրիտանական թանգարանի ձեռագրացուցակը նախ

---

[55] Description de l'Afrique et de l'Espagne. ed. par R. Dozy et M. J. de Goeje. Leyde, 1886.

[56] Maddu-l-Kamus, an arabic-english Lexicon, by E. W. Lane, 1-8, London, 1863-1893.

[57] Aegyptus auctore Ibn al-Wardi, ed. Chr. M. Fraehn, Halae, 1804.

[58] Fraehn C. M., Ibn Fozlan's und anderer Araber Berichte über die Russen älterer Zeit., SPb., 1823.

[59] Ibn el-Athiri Chronicon quod perfectissimum inscribitur. ed. C. J. Tornberg, 14 vol. Lugd. Bat., 1851-1876.

[60] Catalogus codicum orientalium Bibliothecae academiae Lugduno Batavae, I-IV, auctoribus R. Dozy, M. de Goeje, P. de Long, M. Houtsma. Lugd. Bat., 1851-1877.

կազմվեց անցյալ դարի կեսերին[61], ապա դարի վերջում լրացվեց[62], իսկ շարունակությունը կազմել են Ա. Էլիսը և Է. Էդուարդզը[63]: Կազմվել են նաև Օքսֆորդի ու Քեմբրիջի ձեռագրերի ցուցակները:

Գերմանիայում հատկապես հիշատակության է արժանի Բեռլինի արաբերեն գրչագրերի տասհատորանոց ձեռագրացուցակը, որի կազմողն է Վ. Ալվարդտը[64]: Ձեռագրացուցակներ ունեն նաև Հալլեի, Դրեզդենի, Մյունխենի[65], Լայպցիգի և այլ քաղաքների հավաքածուները:

Ֆրանսիայում արաբերեն ձեռագրերը կենտրոնացած են հիմնականում Փարիզի Ազգային գրադարանում, որի ձեռագրացուցակները կազմել են Մ. Գ. դը Սլեյնը և Է. Բլոշեն[66]:

Իտալիայում կազմվել են Վատիկանի[67], Ֆլորենտիայի, Միլանի, Վենետիկի և այլ քաղաքների հավաքածուների ձեռագրացուցակներ: Իսպանիայում կազմվել են Էսկուրիալի ձեռագրերի նոր ցուցակ[68], ինչպես նաև Մադրիդի, Գրանադայի և այլ քաղաքների հավաքածուների ձեռագրացուցակները: Պետերբուրգի արաբերեն ձեռագրերի ցուցակը կազմել է բարոն Վ. Ռոզենը[69]:

ԺԹ դարում ձեռագրացուցակներ կազմվեց նաև Կահիրեի Խեդիվա-

---

[61] Catalogus codicum manuscriptorum orientalium qui in Museo Britannico asservantur. Pars secunda codices arabicos. Londini, 1846.

[62] Ch. Rieu, Supplement to the Catalogue of the arabic manuscripts in the British Museum, London, 1894.

[63] A descriptive List of the Arabic manuscripts acquired by the trustees of the British Museum since 1894 composed by A. G. Ellis and Edward Edwards, London, 1912.

[64] Die Handschriftenverzeichnisse der koniglichen Bibliothek in Berlin. Verzeichnis der arabischen Handschriften von W. Ahlwardt, 10 Bde, Berlin, 1887-1899.

[65] Die arabischen Handschriften der K. Hof- und Staatsbibliothek in Munchen, beschrieben von J. Aumer, Munchen, 1866.

[66] Catalogue des manuscripts arabes de la Bibliothèque Nationale par le Baron de Slane, Paris, 1883-1895.

[67] Catalogo dei Codici manoscritti orientali della Biblioteca Naniana (Venice), compilato dall'abbate S. Assemani, 2 Part., Padova, 1787-92.

[68] Les manuscripts arabes de l'Escurial décrits par H. Derenbourg et B. Levi-Provencal, I-III, 1884-1928, Madrid.

[69] Notices sommairs des manuscrits arabes du Musee asiatique par le Baron V. Rosen, St. Petersbourg, 1881.

կան Գրադարանի[70] հավաքածուի համար:

ԺԹ դարի երկրորդ կեսում նոր թափ ստացավ արաբերեն պատմական և աշխարհագրական երկերի հրատարակման գործը և դրվեց ավելի բարձր հիմքերի վրա: Կարևոր նորություն էր այն, որ եթե նախապես (և դեռ ԺԷ դարից) բանասերների ուշադրությունը սևեռված էր հիմնականում ուշ շրջանի (ԺԲ-ԺԵ դդ.) արաբ պատմիչների և աշխարհագրագետների, իսկ Թ և Ժ դարերի հեղինակները գրեթե անծանոթ էին, ապա ժամանակի ընթացքում, շնորհիվ ձեռագրատներում հայտնաբերված եզակի ձեռագրերի, ուշադրության կենտրոնում գտնվեցին վերջիններս: Այս նոր շրջանում հատկապես աչքի ընկավ հոլանդացի հռչակավոր արաբագետ Մ. Յ. դե Գույեն (1836-1909): Նա հրատարակեց Թ դարի կարևորագույն պատմիչ Բալազուրիի «Երկրների նվաճումը»[71], ապա կազմակերպեց և ինքն էլ մասնակցեց Ժ դարի խոշոր պատմիչ Թաբարիի բազմահատոր երկի լույս ընծայմանը եվրոպայի լավագույն արաբագետների հետ միասին[72]: Սակայն նրա բեղուն գործունեության թագն է «Արաբ աշխարհագրագետների գրադարան» [73]ութհատորանոց մատենաշարը, ուր ընդգրկված են Թ դարի (Իբն Խորդադբեհ, Յակուբի, Իբն ալ-Ֆակիհ, Իբն Ռուստա, Կուդամա) և Ժ դարի (Իսթախրի, Իբն Հաուկալ, Մասուդի, Մուկադդասի) երկերը:

Թ-Ժ դարերի աղբյուրների հրատարակումը մեծ նշանակություն ուներ պատմության և բանասիրության համար, քանի որ դրանք հնագույն և ստույգ սկզբնաղբյուրներ են, որոնցից օգտվել են հետագա բոլոր դարերի հեղինակները:

Շուտով լույս տեսավ Թ դ. երկրորդ կարևոր պատմիչ՝ Յակուբիի երկը[74] հոլանդացի արաբագետ Մ. Թ. Հաուցմայի (1851-1943) ջանքերով, իսկ դրանից առաջ լույս էր տեսել Ժ դարի պատմիչ Մասուդիի

---

[70] Fihrist al-kutub al-arabiya al-mahfuza bil-kutubkhana al-khediwiya, I-VII, Cairo, 1301-1308 (1883-1890).

[71] Liber expugnationis regionum auctore al Beladsori ed. M. J. de Goeje, Lugd. Bat., 1866.

[72] Annales auctore Abu Djafar al-Tabari, quos ediderunt J. Barth, Th. Noldeke ... et M. J. Goeje, Lugd. Bat., 1879-1901.

[73] Bibliotheca Geographorum Arabicorum, edidit M. J. de Goeje.
I, Viae regnorum (Istakhri). II, Viae et regna (Ibn Haukal), III, Descriptio imperii Moslemici (Mocaddasi), IV, Continens indices V, Compendium libri Kitab al-Boldan (Ibn al-Fakih) VI, Kitab al-Masalik w-al-mamalik (Ibn Khordadhbeh) et exerpta e Kitab al-Kharaj (Kodama ibn Djafar) VII, Kitab al-alak an-nafisa (Ibn Rosteh) et Kitab al-boldan (Yakubi) VIII, Kitab al-tanbih w-al-ishraf (Masudi), Lugduni Batavorum, 1870-1894.

[74] Ibn Wadbih qui dicitur al-Jaqubi Historiae, 2 partes, ed. M. Houtsma, Lugd. Bat., 1883.

երկը[75] Բ. դը Մեյնարի ու Պ. դը Կուրտեյի կողմից: Ռուս արաբագետ Վ. Գիրգասը հրատարակեց Թ դ. պատմիչ Դինավարիի պատմությունը[76], որի համար հետագայում անվանացանկ կազմեց Ի. Կրաչկովսկին[77]:

Այսպիսով ստեղծվեց հավասարակշռություն ԺԱ դարից առաջ և ԺԱ դարից հետո ապրած մատենագիրների երկերի հրատարակման հարցում: Դրանից հետո անցյալ դարի վերջին և քսաներորդ դարի սկզբին իրար հաջորդեցին պատմիչների երկերի նոր հրատարակություններ: Մ. Հաուցման լույս ընծայեց ԺԲ դ. պատմիչ Իմադ ալ-Դին ալ-Իսֆահանիի (վերամշակված Բոնդարիի կողմից) սելջուկների պատմությունը[78]: Իտալացի արաբագետ Կ. Նալլինոն (1872-1938) լույս ընծայեց Բատտանիի (Ժ դ.) աստղագիտական և աշխարհագրական երկը[79]: Կարևոր էր ԺԱ դ. նշանավոր պատմիչ Իբն Միսքավայհի կրկնակի հրատարակությունը դարի սկզբին: Իտալացի բանասեր Լ. Կաետանին (1869-1935) հրատարակեց նրա բնագիրը[80], իսկ հետո անգլիացի արաբագետներ Հ. Ֆ. Ամեդրոզը (1854-1917) և Դ. Ս. Մարգոլիուսը (1858-1940) լույս ընծայեցին նրա պատմության այն մասը, որ նրա ինքնուրույն շարադրանքն է[81] (սկզբնական մասը Թաբարիից է արտագրած) բնագրով ու թարգմանությամբ (անգլերեն):

20-րդ դարի սկզբին արաբագիտության մեջ հատուկ ուշադրություն դարձվեց քրիստոնյա արաբ մատենագիրներին, որոնց երկերը հրատարակվեցին «Քրիստոնյա արևելյան մատենագիրների ժողովածու» և «Արևելյան հայրաբանություն» մատենաշարերում, որի մեջ ընդգրկված են բոլոր քրիստոնյա արևելյան (հայ, ասորի, ղպտի, արաբ, եթովպացի և այլն) մատենագիրների երկերը: Լիբանանցի բանասեր Լ. Շեյխոն հրատարակել է Եվտիքիոսի (Սաիդ իբն ալ-Բաթրիկ, Ժ դ.) պատմությունը և նրա շարունակությունը հանդիսացող Յահիա Անտիոքացու «Հավելվածը»[82]: Վերջինիս երկը, այլ ձեռագրի հիման վրա լույս է

---

[75] Macoudi, Les prairies d'or. Texte et trad. par C. Barbier de Meynard et P. de Courteille, 9 tomes, Paris, 1861-1877.

[76] Abu Hanifa ad-Dinawari, Kitab al-Akhbar at-Tiwal, publ. par V. Guirgas, Leide, 1888.

[77] Preface, var. et index publ. par I. Kratchkovsky, Leide, 1912.

[78] Recueil de textes relatifs a l'histoire des seljoucides par M. Th. Houtsma, I-IV, Leyde, 1886-1902

[79] C. Nallino, Al-Battani sive Albatenii opus astronomicum, Milano, 1904.

[80] The Tajarib al-Umam of Ibn Miskawayh by L. Caetani, v. I, V, VI, Leyden, London, 1909-1917

[81] H. Amedroz and D. Margoliouth, The Ecclipse of the Abbasid Caliphate, 7 vol., London, 1920/21.

[82] Eutichii Patriarchae Alexandrini Annales, I-II, ed. L. Cheikho, Corpus Scriptorum Christianorum Orientalium, Scriptores Arabici, III, t. VI, VII, Beryti, 1906, 1909. Cheiko L., Carra

ընծայել նաև ռուս բյուզանդագետ-արաբագետ Ա. Վասիլևը[83]:

Առաջին աշխարհամարտից հետո բնագրերի հրապարակման ասպարեզում հիշատակության արժանի է ավստրիացի արաբագետ Հ. ֆոն Մժիկի մատենաշարը, որն ընդգրկում է Թ և Ժ դդ. սկզբնաղբյուրներ (Խորեզմի, Ջահշիարի, Սուհրաբ)[84]:

Վերջերս լույս տեսան ԽՍՀՄ Գիտությունների Ակադեմիայի Արևելագիտության հաստատության Լենինգրադի բաժանմունքի արաբերեն գրչագրերի ժողովածուի ձեռագրացուցակի մի քանի հատորներ, որոնցից արժեքավոր են պատմության[85] և աշխարհագրության[86] վերաբերյալ հատորները:

Քանանական թվականներից արաբագետների ուշադրությունը սևեռված է արևելյան երկրների հավաքածուներին, որոնք դեռ կարոտ են մանրազնին քննության: Արդեն հրատարակված են արաբական երկրներում գտնվող գրչագրերի ձեռագրացուցակներ[87]: Հատկապես կարևոր են Կոստանդնուպոլսի ձեռագրական հավաքածուները, որոնք գոյացել են դեռևս արաբական երկրների նվաճման շրջանից (ԺԶ դ.) փոխադրված բազմահազար ձեռագրերից: Չնայած տեղական իշխանությունների չկամության հետևանքով այդ ձեռագրերի դժվարամատչելի լինելուն, այսուհանդերձ որոշ բանասերներ հաջողել են ձեռք բերել ու լույս ընծայել արաբերեն բնագրեր: Այսպես, հոլանդացի արաբագետ Յ. Հ. Կրամերսը (1891-1954) լույս ընծայեց Իբն Հաուկալի (Ժ դ.) բնագրի մի նոր հրատարակություն, Կոստանդնուպոլսում պահվող մի արաբերեն առավել հին և բնագրային տարբերություններ ունեցող գրչագրի հիման վրա[88]: ԺԷ դարի պատմիչ Մունաջջիմ բաշիի ընդարձակ պատմական երկը, որի մեջ օգտագործված են բազմաթիվ կորած, կամ դեռ անհայտ,

de Vaux, Zayyat H., Annales de Jahia Ibn Said Antiochiensis, C. S. C. O., Scriptores Arabici, ser. III, t. VII, Beryti, 1909.

[83] Histoire de Yahia ibn Said d'Antioche, ed. et trad. en francais par I. Kratchkovsky et A. Vasiliev, Patrologia Orientalis, t. 18, P. 1924, t. 23, 1932.

[84] Mžik, Hans von, Bibliothek arabischer Historiker und Geographen I. Kitab al-Wuzara. al-Ğahšiyari III. Kitab Surat al-ard des Khwarizmi, 1926. V Kitab Agaib al-Akalim as-saba des Suhrab, 1930.

[85] Каталог арабских рукописей института народов Азии, в. 2, А. И. Михайлова, Географические сочинения, Москва, 1961.

[86] Каталог арабских рукописей института народов Азии, в. 3, А. И. Михайлова, История, Москва, 1965.

[87] Լույս են տեսել Կահիրեի, Բեյրութի, Դամասկոսի, Բաղդադի, Թունիսի և այլ արաբական քաղաքների ձեռագրացուցակները:

[88] Opus geographicum auctore Ibn Haukal secundum textum, ed. J. H. Kramers, Lugd. Bat., Lipsiae, 1938.

արաբերեն աղբյուրներ, հիմնականում մնում է անտիպ և միայն Վ. Մինորսկին հաջողել է մեծ դժվարությամբ երկու փոքրիկ հատված[89] ձեռք բերել և լույս ընծայել ընդարձակ ուսումնասիրությամբ հանդերձ:

ԺԹ-րդ դարի վերջից ու Ի դարի սկզբից արաբական երկրներում ևս սկսել են հրատարակել միջնադարյան պատմիչների ու աշխարհագրագետների երկերի բնագրերը: Արժեքավոր է Աբու Յուսուֆի «Հարկերի մատյան»[90] աշխատության հրատարակումը Կահիրեում (Բուլակ): Կահիրեում ու Բեյրութում լույս են տեսել մի շարք պատմիչների բնագրերը Աբու-լ-Ֆարաջ իբն ալ-Իբրի[91] (Բար Հեբրեոս, ԺԳ դ.), Կալկաշանդի (ԺԴ-ԺԵ դդ.)[92], Աբու-լ-Մահասին իբն Տաղրիբիրդի (ԺԵ դ.)[93], Իբն ալ-Ադիմ (ԺԳ դ.)[94], Իբն ալ-Ջաուզի (ԺԲ դ.)[95], Իբն Խալդուն (ԺԴ դ.)[96], Քուֆի (Ժ դ.)[97], Խալիֆա իբն Խայյաթ (Թ դ.) [98]և այլն:

Եղել են նաև Եվրոպայում կատարված հրատարակությունների նոր տպագրություններ, ինչպես Յակուբիի[99] ու Յակուտի[100] (ԺԳ դ.) երկերի վերահրատարակությունները: Կահիրեում լույս տեսավ Թաբարիի (Ժ դ.) քննական բնագիրը[101], ըստ նոր ձեռագրերի:

Դեռ շատ նորություններ կարող են ի հայտ գալ արաբական պատմագրության և աշխարհագրության ասպարեզում, շարունակելով պրպտումները Եվրոպայի և հատկապես արաբական երկրների ու Կոստանդնուպոլսի ձեռագրատներում:

---

[89] V. Minorsky. Studies in Caucasian History, London, 1953, p. 1-18 (ar.). Idem, A History of Sharvan and Darband, Cambridge, 1958, p. 1-32 (ar.).

[90] Abu Yousouf, Kitab al-kharadj, Bulaq, 1302 (1884-1885).

[91] Abu-l-Farag Gregorius Ibn al-Ibri, ed Salhani, Beyrouth, 1890.

[92] Kitab Subh al-Asha. talif al-Qalqashandi, I-XIV, al- Qahira, 1913-1919.

[93] An-Nudjum al-zahira, talif Abu-l-Mahasin ibn Taghribirdi, al-Qahira, 1348-1355 (1929/30-1936/37).

[94] Ibn al-Adim. Zubdat al-Halab, ed. Sami al-Dahhan, Dimashq, 1954.

[95] Ibn al-Gawzi, Kitab al-Muntazam, v. V-X, Haydarabad. 1937/38.

[96] Kitab al-Ibar. talif Ibn Khaldoun, t. 1-7, Bulaq, 1867/1868.

[97] Kufi. Kitab al-futuh, I-VIII, Haydarabad. 1968-1975.

[98] Tarikh, Khalifah ibn Khayyat, Beyrouth-Damas, 1977.

[99] Yaqubi, Tarikh, I-II, Beyrouth, 1960.

[100] Yaqut al-Rumi. Mudjam al-buldan, Beirut, I-V, 1977.

[101] Tarikh al-Tabari, ed. cririque par M. Abu-l-Fath Ibrahim, I-X, Le Caire, 1960-1969.

**բ. Արաբ պատմագրության ուսումնասիրությունը**

Առաջին ծավալուն ուսումնասիրությունը արաբ պատմագրության մասին կազմել է Ֆ. Վյուստենֆելդը, որը հայտնի է բազմաթիվ պատմական բնագրերի հրատարակությամբ: Նրա «Արաբ պատմագիրները և նրանց գործերը»[102] աշխատության մեջ ժամանակագրական կարգով հիշված են բոլոր արաբ պատմիչները, նույնիսկ ամենաիետինը, կամ միայն անունով հայտնին, տալով մատենագիտական տեղեկություններ: Թեև անցած հարյուրամյակում շատ նորություններ են հայտնաբերվել, այսուհանդերձ, քանի որ նույն բնույթի մանրամասն (լիակատար) մատենագիտական նոր աշխատություն չկա, ուստի Ֆ. Վյուստենֆելդի՛ երկը պահպանում է իր արժեքը:

Կ. Բրոկելմանի հռչակավոր «Արաբական գրականության պատմություն»[103] երկասիրության մեջ, ի շարս այլ մատենագիրների հիշվում են նաև պատմագիրներն ու աշխարհագրագետները, սակայն պատմագիրները ոչ այնքան մանրամասն են հիշվում, ինչքան նախորդ աշխատության մեջ: Բրոկելմանի այս դարակազմիկ գործը մնում է արաբական մատենագրության պատմությանը (սկզբից մինչև մեր օրերը) նվիրված կարևորագույն երկը:

Արաբ պատմագրությանը նվիրված երկրորդ մենագրությունը Դ. Ս. Մարգոլիուսի «Դասախոսություններ արաբ պատմիչների մասին»[104] աշխատությունն է, ուր պատմագրության պատմությունը շարադրված է ժամանակագրական կարգով՝ սկզբնավորումից մինչև ժե դար: Մարգոլիուսը տալիս է պատմիչների կենսագրությունը և վերլուծում նրանց երկերը, սակայն պետք է նշել, որ սա պատմագրության մանրակրկիտ պատմություն չէ, այլ ընդհանուր ակնարկ զարգացման շրջանների մասին:

Հետաքրքրական է Ֆ. Ռոզենտալի «Մահմեդական պատմագրության պատմությունը»[105] մենագրությունը, որը նվիրված է պատմության ընդհանուր հարցերին, ինչպես պատմագրության ծագման պարագաները, նրա դերը ընդհանուր մատենագրության մեջ, պատմագրության դասակարգումն ըստ բովանդակության՝ տոհմաբանություն, կենսագրական բառարաններ, քաղաքական և տնտեսական վիճակի նկարագրություն և

---

[102] F. Wüstenfeld, Die Geschichtschreiber der Araber und ihre Werke, Gottingen, 1882.

[103] C. Brockelmann, Geschichte der Arabischen Literatur, I-II, Weimar, 1898, Berlin, 1902. Supplement 3 Bde, Leiden, 1937-1942.

[104] D. S. Margoliouth, Lectures on Arabic Historians, Calcutta, 1930.

[105] F. Rosenthal, History of the Muslim Historiography, Leiden, 1952.

այլն: Առանձին գլխում քննարկվում են տիեզերական պատմությունները (Յակուբի, Թաբարի, Մասուդի, Իբն ալ-Ասիր և այլն): Հատուկ ուշադրություն է դարձնում քրիստոնյա արաբ պատմիչներին, նշելով նրանց կապը բյուզանդական պատմագրության հետ:

Յ. դը Սոմոձիի հոդվածը[106] մի յուրահատուկ վերլուծում է, ուր պատմագրությունը մի քանի շրջանների է բաժանվում: Զարգացման առաջին շրջանը մինչև Թ դարի վերջն է (Իբն Հիշամ, Իբն Սաադ, Վակիդի, Մադաինի, Բալազուրի): Երկրորդը դասական շրջանն է, երբ հանդես են գալիս Թաբարին, Մասուդին, Իբն Միսքավայհը, Իբն ալ-Ասիրը, Աբու-լ-Ֆարաջ Բար Հեբրեոսը և պատմակենսագրական բառարանների հեղինակներ Իբն Խալլիքանը, Կիֆթին: Նա հատուկ ուշադրություն է դարձնում Իբն ալ-Ջաուզիին ու նրա թոռ Սիբթ իբն ալ-Ջաուզիին: Ջահաբին մի նոր շրջան է բացում ունենալով բազում հետևորդներ: Սակայն խոշորագույն դեմքը արաբ պատմագրության մեջ Իբն Խալդունն է:

Հակիրճ, բայց շատ բովանդակալից աշխատություն է Հ. Ա. Գիբի «Մահմեդական պատմագրություն»[107] հոդվածը գրված Իսլամի հանրագիտարանի հավելվածի համար: Սա բառիս բուն իմաստով պատմագրության պատմություն է և մենագրության արժեք ունի: Ըստ նրա ժամանակագրության պատմագրության առաջին շրջանը հասնում է մինչև Ժ դարի սկիզբը (ընդգրկելով Թաբարին): Երկրորդ շրջանն ընդգրկում է Ժ-ԺԲ դարերը, իսկ երրորդ շրջանը՝ ԺԲ դարի վերջից ԺԵ դարի վերջը, իսկ ԺԶ-ԺԸ դարերի մասին խոսում է կանգ առնելով պարսկական ու թուրքական պատմագրության վրա՝ որպես արաբականի հիման վրա զարգացած ճյուղեր:

Կան նաև արաբ պատմիչների և աշխարհագրագետների հակիրճ կենսագրություններ և պատմագրության կամ աշխարհագրության համառոտ ակնարկներ, արաբական սկզբնաղբյուրներից քաղված հատվածներ պարունակող ժողովածուներում, որոնցից հատկապես պետք է հիշել Վ. Ի. Բելյաևի արաբ պատմագրության ակնարկը նման մի աշխատության մեջ[108]:

---

[106] J. de Somogyi, The development of Arabic Historiography, Journal of Semitic Studies, v. III, 1958, No 4, October, p. 373-387.

[107] H. A. R. Gibb, Muslim Historiography, The Encyclopaedia of Islam, Supplement, Leiden-London, 1938, p. 233-245.

[108] В. И. Беляев, Арабские источники по истории туркмен и Туркмении, Материалы по истории туркмен и Туркмении, т. I, М.-Л., 1939, стр. 12-40.

Այս բնագավառում լուրջ ներդրում են կատարել Ֆուադ Սեզգինը[109] և խորհրդային գիտնականներ Կ. Բոյկոն[110] և Ս. Պրոզորովը[111]:

Վերջերս լույս տեսավ արաբ մատենագրության պատմության մի նոր ծավալուն մենագրություն (հասնում է մինչև հիջրի 430 (1038/1039) թվականը), ուր տրված է արաբ պատմագրության պատմությունը և մատենագրական տվյալներ:

ԽՍՀՄ Գիտությունների Ակադեմիայի Արևելագիտության ինստիտուտի Լենինգրադյան բաժանմունքը ձեռնարկել է հրատարակել բազմահատոր «Վաղ միջնադարյան արաբական պատմական գրականությունը» մատենաշարը, որից ցայժմ երեք հատոր է լույս տեսել:

## գ. Արաբ աշխարհագրական երկերի ուսումնասիրությունը

Արաբական աշխարհագրությունը նույնպես ունեցել է իր հատուկ ուսումնասիրողները: Առաջինը համարվում է Մ. Ռենոն[112], որի ներածությունը (գրված Աբու-լ-Ֆիդայի հրատարակության առթիվ) մի շատ լուրջ ուսումնասիրություն է, որը երկար ժամանակ իր այժմեականությունը չկորցրեց:

Հետաքրքրական է Ա. Ֆոն Կրեմերի «Արևելքի մշակութային պատմությունը»[113] հայտնի աշխատության մեջ աշխարհագրության վերաբերյալ գլուխը: Նույն բնույթի աշխատություն է նաև Կարրա դը Վոյի «Իսլամի մտածողներ»[114] աշխատության մեջ համապատասխան բաժինը: Առավել հետաքրքրական է հոլանդացի արաբագետ Յ. Կրամերսի «Աշխարհագրություն և առևտուր» հատվածը «Իսլամի ժառանգությունը» աշխատության մեջ[115]:

Հեղինակների ու տարբեր հարցերի մասին ավելի մանրամասն տեղեկություններ է տալիս Յ. Ռուսկան իր «Իսլամի աշխարհագրական

---

[109] F. Sezgin, Geschicte des arabischen Schrifttums, Bd I, Leiden, 1967.

[110] К. А. Бойко, Арабская историческая литература в Испании (VIII - первая треть XI в.), Москва, 1977.

[111] С. М. Прозоров, Арабская историческая литература в Ираке, Иране и Средней Азии в VII- середине X вв. Шиитская историография, Москва, 1980.

[112] M. Reinaud, Géographie d'Aboulfeda, I, Introduction générale à la Géographie des Orientaux, Paris, 1848.

[113] A. von Kremer, Culturgeschichte des Orients unter den Chalifen, II, Wien, 1877.

[114] Carra de Vaux, Les penseurs de l'Islam, II, Paris, 1922, p. 1-101.

[115] J. H. Kramers, Geography and Commerce, (The Legacy of Islam), Oxford, 1931, p. 79-107.

գրականության մասին»[116] երկասիրության մեջ, ուր հատկապես ուշադրություն է դարձրել նկարագրական աշխարհագրությանը և ճանապարհորդություններին:

Ֆ. Վյուստենֆելդի ու Մ. դե Գույեի աշխարհագրական բնագրերի հրատարակությունների հիման վրա լուրջ ուսումնասիրություններ ի հայտ եկան աշխարհագրության մասին, ինչպես օրինակ Հ. ֆոն Մժիկի Պտղոմեոսի և արաբական քարտեզագրության մասին հոդվածը[117], է. Հոնիգմանի աշխատությունը յոթը կլիմաների մասին[118] և այլն: Լույս տեսավ այնպիսի լուրջ քարտեզագրական ուսումնասիրություն ինչպիսին է Կ. Միլլերի «Արաբական քարտեզները» ծավալուն գործը:

Սակայն Ի. Կրաչկովսկին ամփոփեց աշխարհագրության վերաբերյալ ամբողջ եվրոպական գրականությունը և կազմեց մի մեծ մենագրություն[119]: Արաբական աշխարհագրության կազմավորման հարցը քննարկելուց հետո նա ժամանակագրական պարբերացումը տալիս է ըստ դարերի: Թ դարի աշխարհագրագետներին երեք մասի է բաժանում՝ հունական դպրոցի աշխարհագրագետներ (Խորեզմի, Ֆարղանի, Սուհրաբ, Բատտանի և այլն), ապա Թ դարի բանասեր աշխարհագրագետներ և ճանապարհորդներ (Ջահիզ, Սալլամ Տարջուման, Սիրաֆի և այլն) և Թ դարի ընդհանուր աշխարհագրությունների հեղինակներ (Իբն Խորդադբեհ, Յակուբի, Իբն ալ-Ֆակիհ, Իբն Ռուստա, Կուդամա): Առանձնացնելով Մասուդիին հատուկ գլխում անցնում է դասական դպրոցին (Իսթախրի, Իբն Հաուկալ, Մուկադդասի), ապա բաժանում է արևելյան՝ Իրան ու Միջին Ասիա (Բիրունի) և արևմտյան՝ Իսպանիա ու Սիկիլիա (Բաքրի, Իդրիսի, Ղարնաթի) դպրոցների: ԺԳ դարը բաժանում է առաջին (Յակուտ և այլն) և երկրորդ (Կազվինի և այլն) կեսերի: ԺԴ դարն ամբողջովին է վերցնում (Դիմաշկի, Աբու-լ-Ֆիդա) և վերջապես ԺԵ դարին նվիրված մի քանի գլուխներով (Նուայրի, Օմարի, Իբն Խալդուն, Մակրիզի, Իբն ալ-Վարդի) վերջացնում է զարգացման շրջանը և պարսկական ու թուրքական աշխարհագրության պատմությունը շարադրելուց հետո նորից է անցնում ԺԶ, ԺԷ, ԺԸ դարերի արաբական աշխարհագրությանը:

Նորագույն աշխատությունը Ֆր. Տեշների «Աշխարհագրություն»

---

[116] J. Ruska, Zur geographischen Literatur im islamischen Kulturbereich, Geographische Zeitschrift, Leipzig, XXXIII, 1927, S. 519-528, 589-599.

[117] H. von Mzik, Ptolemaeus und die Karten der arabischen Geographen, Mitt. der k. k. Geogr. Ges. in Wien, LVIII, 1915, S. 152-176.

[118] E. Honigman, Die sieben Klimata, Heidelberg, 1929.

[119] И. Крачковский, Избранные сочинения, т. IV, М. -Л., 1957.

հոդվածն է Իսլամի հանրագիտարանի նոր հրատարակության մեջ[120]: Հեղինակը նշելուց հետո հնդկական, պարսկական և հատկապես հունական ազդեցությունները արաբ աշխարհագրական գրականությունը բաժանում է երկու շրջանի՝ դասական շրջան (Թ-ԺԱ դդ.), որի մեջ մտնում են Թ դարի Իրաքի դպրոցը (Իբն Խորդադբեհ, Յակուբի և այլն), որն Իրանշահրը 4 մասի է բաժանում և սկսում է Սավադի նկարագրությամբ. նրանց հակառակորդները, որոնք ըստ երկրների են բաժանում նկարագրությունն սկսելով Արաբիայից, ապա Ժ դարը, որը կոչում է Բալխիի դպրոցը (Իսթախրի, Իբն Հաուկալ, Մուկադդասի): Երկրորդ շրջանն ընդգրկում է ԺԲ-ԺԶ դարերը և իր մեջ ունի ստորաբաժանումներ ըստ բովանդակության՝ ընդհանուր աշխարհագրություններ (Իդրիսի, Աբու-լ-Ֆիդա և այլն), տիեզերագիտական երկեր (Կազվինի, Դիմաշկի, Իբն ալ-Վարդի), ճանապարհորդություններ (Իբն Բաթութա), ծովագնացություններ (Իբն Մաջիդ) և այլն:

Անհրաժեշտ է հատկապես ընդգծել, որ արաբ պատմագրության և աշխարհագրության ուսումնասիրման համար չափազանց կարևոր են Իսլամի հանրագիտարանի բարձր որակի հոդվածները առանձին պատմիչների և աշխարհագրագետների մասին:

## դ. Արաբների պատմության ուսումնասիրությունը նոր դարերում

Արաբերեն պատմական ու աշխարհագրական բնագրերի հրատարակմանը զուգընթաց հետաքրքրություն է առաջանում դրանց հիման վրա շարադրելու արաբների պատմությունը:

Առաջին փորձը կատարվում է ԺԷ դարում Իսպանիայում: Ռ. Խիմենեսը (Տոլեդոյի արքեպիսկոպոս) գրում է մի լատիներեն երկ[121], որն ընդգրկում է արաբների պատմությունը Մուհամմադից մինչև Օմայանների վախճանը, ապա շարադրում է Իսպանիայի Օմայանների պատմությունը, ինչպես նաև Ալմորավիդների և Ալմոհադների շրջանը, որոնց անկումով վերջացավ մավրերի (արաբների) տիրապետությունը Իսպանիայում:

ԺԸ դարում Քեմբրիջի համալսարանի արաբերենի դասախոս Ս. Օքլին լույս է ընծայում «Սարակինոսների պատմություն»[122] մենագրու-

---

[120] Fr. Taeschner, Djughrafiya, Encyclopaedia of Islam, v. II, Leiden-London, 1965, p. 575-590.
[121] Roderici Ximenez archiepiscopi Toletani Historia Arabum, Lugduni Batavorum, 1625.
[122] S. Ockley, History of the Saracens, London, 1708.

թյունը, շարադրանքն սկսելով Մուհամմադից ու հասցնելով մինչև Օմայան Աբդ ալ-Մալիքի մահը (705): Ապա մի քանի էջում հիշում է մնացած Օմայաններին ու բոլոր Աբբասյաններին մինչև 1258, ամեն մեկի շրջանը հակիրճ խոսքերով բնորոշելով: Օգտագործել է մինչ այդ հրատարակված արաբ պատմիչներին (Աբու-լ-Ֆարաջ, Մաքին), ոմանց էլ ձեռագիր վիճակում է ծանոթացել:

Արաբների առաջին ընդհանուր պատմությունը գրում է Ֆրանսիացի աբբա դը Մարինյին իր քառահատոր մենագրության[123] մեջ, օգտագործելով իր ժամանակ հրատարակված աղբյուրները: Շարադրանքն սկսում է Մուհամմադից ու հասցնում մինչև Աբբասյանների վերջնական անկումը՝ 1258 թվական:

ԺԹ դարում, արդեն բոլորովին այլ որակի մենագրություններ իրար են հաջորդում քառասնական-հիսնական թվականներին: Գ. Վայլը (1808-1889) արաբական աղբյուրների հիման վրա հորինում է իր «Խալիֆաների պատմություն» եռահատոր աշխատությունը[124], ուր շարադրանքն սկսում է Մուհամմադի մահվանից հասնելով մինչև Աբբասյանների վերջնական վախճանը (1258): Նույն ժամանակ լույս է տեսնում Կուսեն դը Պերսեվալի (1795-1871) նախամահմեդական Արաբիայի[125] մասին լուրջ մենագրությունը: Քիչ անց հրատարակվեց L. Ա. Սեդիյոյի «Արաբների պատմություն»[126] աշխատությունը ուր շարադրված է նախամահմեդական Արաբիայի, Մուհամմադի, առաջին խալիֆաների, Օմայանների, Աբբասյանների և Հյուսիսային Աֆրիկայի ու Իսպանիայի Օմայանների պատմությունը: Արաբական մշակույթի ընդհանուր պատկերը ևս տալուց հետո, հեղինակը նկարագրում է արաբական ժողովուրդների վիճակը ԺԹ դարում:

Շարունակելով իր պրպտումները L. Ա. Սեդիյոն երկու տասնամյակ անց լույս է ընծայում երկհատորանոց մի մեծ աշխատություն «Արաբների ընդհանուր պատմություն»[127], ուր առավել մանրամասն շարադրված է նախորդ երկի նյութը, սակայն ավելացնելով Եգիպտոսի Ֆաթիմյանների ու մամլուքների պատմությունը, ապա հասցնելով մինչև ԺԹ դար: Մի խոշոր, ճոխ բաժին է հատկացված արաբական մշակույթի բոլոր ճյուղերին, վերջապես ընդհանուր ակնարկ նետելով ժամանակակից արաբների վիճակին:

---

[123] Histoire des Arabes sous le gouvernement des Califes, par l'Abbé de Marigny, t. I-IV, Paris, 1750.

[124] G. Weil, Geschichte der Chalifen, 3 Bde, Mannheim, 1846-1851.

[125] C. de Perceval, Essai sur l'histoire des Arabes avant l'Islamisme, 3 vol. Paris, 1847.

[126] L. A. Sedillot, Histoire des Arabes, v. I-II, Paris, 1854.

[127] L. A. Sedillot, Histoire génerale des Arabes, I-II, Paris, 1877.

Որոշ ժամանակ անց լույս տեսավ Ա. Մյուլլերի (1848-1892) «Իսլամը Արևելքում և Արևմուտքում»[128] մենագրությունը, որը մասամբ հենվում է նախորդների նվաճումների վրա: Նա շարադրանքն սկսում է նախամահմեդական շրջանից (ընդգրկելով հարավարաբական թագավորության պատմությունը) և մատուցում խալիֆայության պատմությունը մինչև 1258 թվականը (Բաղդադի ավերումը մոնղոլների կողմից): Գ. Վայլից տարբերվում է նրանով, որ Աբբասյանների պատմությանը զուգահեռ շարադրում է նրանից անջատված պետությունների (Կարմաթներ, Ֆաթիմյաններ, Հյուսիսային Աֆրիկա) պատմությունը:

Շուտով նրան հաջորդեց Վ. Մյուիրի (1819-1905) «Խալիֆայությունը, նրա բարձրացումը, թուլացումն ու անկումը»[129], որն ընդգրկում է խալիֆայության պատմությունն սկզբից մինչև անկումը և դրանից հետո առաջացած պետությունների (Կարմաթներ, Ֆաթիմյաններ, Մամլուքներ) զարգացումը մինչև Օսմանյան նվաճումը:

Երբ արաբների ընդհանուր պատմության ուսումնասիրությունը հասավ որոշակի մակարդակի, բնականաբար անհրաժեշտություն էր դառնում նրա առանձին կարևոր նահանգների հատուկ ուսումնասիրությունը: Դեռևս անցյալ դարի վաթսունական թվականներին հոլանդացի արաբագետ Ռ. Դոզին (1820-1883) հանդես էր եկել «Իսպանիայի մահմեդականների պատմությունը»[130] մենագրությամբ: Ապա երևան եկան Ֆ. Վյուստենֆելդի (1808-1899) «Ֆաթիմյան խալիֆաների պատմությունը»[131] և Մ. Յ. դե Գույեի (1836-1909) «Բահրայնի Կարմաթների ու Ֆաթիմյանների պատմությունը»[132] մենագրությունները: 19-րդ դարի վերջին լույս տեսավ Պ. Շվարցի (1867-1938) «Իրանը միջնադարում, ըստ արաբ աշխարհագրագետների»[133] ինննհատոր աշխատության առաջին հատորը, ինչպես նաև Ն. Ա. Մեդնիկովի (1855-1918) Պաղեստինի մասին աշխատությունը[134]: 20-րդ դարի սկզբին Կ. Բեքերը (1876-1933) լույս ընծայեց «Իսլամի օրոք Եգիպտոսի պատմության մասին»[135]

---

[128] A. Müller, Der Islam im Morgen- und Abendland, 2 Bde, Berlin, 1885, 1887.

[129] W. Muir, The Caliphate its rise, decline and fall, London, 1891.

[130] R. Dozy, Histoire des musulmans d'Espagne, I-IV, Leyde, 1861.

[131] F. Wüstenfeld, Geschichte der Fatimiden-Chalifen, Gottingen, 1881.

[132] M. J. de Goeje, Memoire sur les Carmathes du Bahrain et les Fatimides, Leide, 1886.

[133] P. Schwarz, Iran im Mittelalter nach den arabischen Geographen. Bd I-IX, Leipzig-Zwickau, Stuttgart, 1896-1936.

[134] Н. А. Медников, Палестина от завоевания ее арабами до крестовых походов, т. 1-4 (Пр. Пал. Сб. т. 17, в. 2, СПб, 1897-1903).

[135] C. H. Becker, Beitrage zur Geschichte Aegyptens unter dem Islam, I-II, Strassburg, 1902-1903.

երկհատորանոց մենագրությունը: Խալիֆայության սկզբնական շրջանի պատմության է վերաբերում Լ. Կաետանիի (1869-1935) «Իսլամի տարեգրությունը»[136] աշխատությունը:

Նորից անդրադառնալով խալիֆայության պատմությանը Յ. Վելհաուզենը (1844-1918) հորինեց «Արաբական պետությունը և նրա անկումը»[137] մենագրությունը, ուր խալիֆայության պատմությունը հասցված է մինչև Օմայյանների անկումը, որը նա համարում է զուտ արաբական պետության վախճանը (750): Ապա Կ. Հյուարը (1854-1919) տվեց իր երկհատոր «Արաբների պատմությունը»[138], որը կառուցվածքով հիշեցնում է Լ. Ա. Սեդիյոյի մեծ աշխատությունը, բայց ավելի ճոխ է նյութերով:

Առաջին աշխարհամարտից հետո իրար հաջորդեցին մի քանի մենագրություններ խալիֆայության առանձին նահանգների մասին: Ժ. Լորանը գրեց «Հայաստանը Բյուզանդիայի և իսլամի միջև»[139] բելգիացի Հ. Լամմենսը «Սիրիա, համառոտ պատմություն»[140], իսկ Հ. Ա. Ռ. Գիբը «Արաբական նվաճումները Միջին Ասիայում»[141] աշխատությունները:

Երեսնական թվականներին հրատարակվեցին Շ. Ժյուլիենի «Հյուսիսային Աֆրիկայի պատմությունը»[142] և Գ. Վիեթի «Արաբական Եգիպտոսը արաբական նվաճումից օսմանյան նվաճում (640-1517)»[143] պատմական ուսումնասիրությունները:

Արաբների ընդհանուր պատմության մասին վերջին արժեքավոր մենագրությունը լիբանանցի Ֆ. Հիտտիի «Արաբների պատմությունն»[144] է, որը ճոխ փաստերով նորագույն մեկնաբանությունն է տալիս արաբների բարդ պատմությանը, սկսելով Եմենի Սաբա ու Հիմյար թագավորություններից հասցնում է մինչև մեր դարը:

Ի միջի այլոց կարելի է հիշել նաև Կ. Բրոկելմանի[145] (1868-1956) և Բ. Շպուլերի[146] ամբողջ մահմեդական աշխարհի պատմությանը նվիրված հանրամատչելի աշխատությունները: Այս տեսակետից լուրջ նվաճում

[136] L. Caetani, Annali dell'Islam, I-X, Milano, 1905-1927.
[137] J. Wellhausen, Das arabische Reich und sein Sturz, Berlin, 1902.
[138] C. Huart, Histoire des Arabes, I-II, Paris, 1912-1913.
[139] J. Laurent, L'Armenie entre Byzance et l'Islam, Paris, 1919.
[140] H. Lammens, La Syrie, précis historique, I-II, Beyrouth, 1921.
[141] H. A. R. Gibb, The Arab conquests in central Asia, London, 1923.
[142] Ch. -A. Julien, Histoire de l'Afrique du Nord, Paris, 1931.
[143] G. Wiet, L'Egypte arabe de la conquete arabe a la conquete ottomane, Paris, 1938.
[144] Ph. Hitti, History of the Arabs, London, 1937.
[145] C. Brockelmann, Geschichte der islamischen Volker und Staaten, München-Berlin, 1939.
[146] B. Spuler, Geschichte der islamischen Lander, I-II, 1952, 1953.

պետք է համարել Քեմբրիջի հայտնի պատմագիտական շարքի մեջ «Իսլամի պատմության»[147] հրատարակումը, որն ընդգրկում է ոչ միայն հանրահայտ մահմեդական երկրների (արաբական աշխարհը, Իրանը, Թուրքիան և երբեմն Հնդկաստանը) այլև Ինդոնեզիական կղզիների ու Մալայայի մահմեդական պետությունների պատմությունը:

Աբբասյան խալիֆայությունից բաժանված տեղական պետությունների պատմության նկատմամբ հետաքրքրությունն ավելացավ երկրորդ աշխարհամարտից հետո ևս: Հատկապես հիշատակության արժանի է Լ. Պրովանսալի եռահատոր լուրջ մենագրությունը «Մահմեդական Իսպանիայի պատմությունը»[148] խորագրով, որը ոչ միայն քաղաքական, այլև տնտեսական ու հասարակական կյանքի պատմությանը նվիրված արժեքավոր գործ է: Մ. Կանարը լույս ընծայեց «Ջազիրայի ու Սիրիայի Համդանյանների պատմությունը»[149] աշխատությունը, որը շատ կարևոր է Հայաստանի Բագրատունյաց ժամանակաշրջանի պատմության ուսումնասիրման համար: Բ. Շպուլերի «Իրանը վաղ իսլամական շրջանում»[150] աշխատությունը ընդգրկում է Իրանի պատմությունը արաբական նվաճումից մինչև սելջուկյան արշավանքները, ուր հատուկ ուշադրություն է նվիրված Իրանի պետական, ռազմական, իրավական, հասարակական ու մշակութային կյանքի հարցերին:

Արաբների միջնադարյան պատմությամբ զբաղվել են նաև արաբական երկրների պատմաբանները, որոնցից հատկապես պետք է հիշել «Մահմեդական քաղաքակրթության պատմություն» աշխատության քրիստոնյա արաբ հեղինակ Ջիրջի Զայդանին (1861-1914): Հասան Իբրահիմ Հասանը շարադրել է «Իսլամի քաղաքական պատմությունը», իսկ Ալի Իբրահիմ Հասանը «Իսլամի ընդհանուր պատմությունը»:

Արաբական աշխարհի և մահմեդական երկրների պատմության ուսումնասիրման համար չափազանց կարևոր են տոհմաբանական աշխատությունները: Հայտնի են հատկապես է. Ցամբաուրի[151], Ս. Լեյն-Պուլի[152] և վերջերս նաև Բոսվորտի[153] տոհմաբանական տախտակները, որոնք արաբական աղբյուրների հիման վրա են կազմված:

---

[147] Cambridge History of Islam, v. I-II, Cambridge, 1970.
[148] E. Levi-Provencal, Histoire de l'Espagne musulmane, t. 1-3, Paris-Leiden, 1950-1953.
[149] M. Canard, Histoire de la dynastie des Hamdanides de Jazira et de Syrie, Paris, 1951.
[150] B. Spuler, Iran in fruh-islamischer Zeit, Wiesbaden, 1952.
[151] E. de Zambaur, Manuel de genéalogie et de chronologie pour l'histoire de l'Islam, Hannover, 1927.
[152] St. Lane-Poole, The Mohammadan Dynasties, London, 1894.
[153] C. E. Bosworth, The islamic Dynasties, Edinburgh, 1967.

Դեռևս անցյալ դարի յոթանասնական թվականներից, քաղաքական պատմությանը զուգահեռ, զարգացավ նաև արաբական խալիֆայության և այլ մահմեդական պետությունների տնտեսական ու հասարակական կյանքի ուսումնասիրությունը և դա նշանավորվեց մի շատ արժեքավոր մենագրության երևան գալով: Ավստրիացի արաբագետ Ալֆրեդ ֆոն Կրեմերը (1828-1889) լույս ընծայեց իր երկհատոր մենագրությունը «Արևելքի մշակութային պատմությունը խալիֆայության ներքո»[154], որը մի յուրահատուկ հանրագիտարան է, ուր ներկայացված են արաբների պատմության ու մշակույթի տարբեր կողմերը՝ Օմայաններին, Աբբասյանների քաղաքական կյանքը, պետական ու հասարակական կարգը, զորքը, հարկերը և մահմեդական իրավագիտության կազմավորումը: Շատ արժեքավոր են խալիֆայության քաղաքների, հասարակական կազմի, առևտրի ու արհեստների զարգացմանը վերաբերյալ գլուխները: Վերջում խոսում է գեղարվեստական, գիտական ու պատմական գրականության մասին:

Նման կառուցվածք ունի Գ. լը Բոնի «Արաբների քաղաքակրթությունը»[155] ստվար հատորը, որը շքեղ է և արվեստի հուշարձանների նկարներով հարուստ, սակայն գիտահանրամատչելի բնույթ ունի, եթե համեմատենք նրան նախորդող Ա. ֆոն Կրեմերի խորը գիտական երկի հետ:

Ա. ֆոն Կրեմերի հոյակապ աշխատությունը խթան հանդիսացավ, որ ուժեղանա հետաքրքրությունը տնտեսական կյանքի հարցերի նկատմամբ: Վ. Հեյդը հանդես եկավ «Արևելքի միջնադարյան առևտրի պատմությունը»[156] աշխատությամբ, իսկ Մ. վան Բերշեմը (1863-1921) «Հողային սեփականությունը և հողային հարկը առաջին խալիֆաների օրոք»[157] երկով, ուր քննության են առնված հողատիրության ձևերը (պետական, մուլք, վակֆ) և հարկերը:

Առաջին աշխարհամարտից հետո կրկին աշխուժացավ հետաքրքրությունը մահմեդական հասարակության կառուցվածքի և հողատիրության հարցերի նկատմամբ: Ա. Մեցի (1869-1914) «Իսլամի վերածնունդը»[158] բազմաբովանդակ աշխատության մեջ շոշափված են Թ-Ժ դարերի խալիֆայության պետական ու հասարակական կյանքի

---

[154] **A. von Kremer**, Culturgeschichte des Orient unter den Chalifen, I-II, Wien, 1875-1877.
[155] **G. Le Bon**, La civilisation des Arabes, Paris, 1884.
[156] **W. Heyd**, Histoire du commerce du Levant au Moyen Age, Leipzig, 1885.
[157] **M. v. Berchem**, La propriété territoriale et l'impot foncier sous les premiers califes, Geneve, 1886.
[158] **A. Mez**, Die Renaissance des Islams, Heidelberg, 1922.

տարբեր կողմերը՝ արքունիքը, կառավարիչները, քրիստոնյաներն ու հրեաները, հարկերը, ստրուկները, իրավագիտությունը, արհեստներն ու առևտուրը և այլն: Երեսնական թվականներին լույս տեսան Ա. Ն. Պոլիակի «Մահմեդական ավատատիրությունը»[159] և «Հողերի դասակարգումն, ըստ մահմեդական իրավունքի»[160] աշխատությունները: Առաջին ծավալուն հոդվածում հեղինակը տալիս է արևելյան ավատատիրության (ֆեոդալիտետ) բնորոշումը՝ ավատատերերի քաղաքում կենտրոնացած լինելը, պայքարը ավատատիրոջ ու տիրակալի (խալիֆայի) միջև, գյուղացիության անձնական ազատությունը, իսկ մոնղոլների ու մամլուքների օրոք ճորտացումը և այլն:

Երկրորդ աշխարհամարտից հետո արաբագիտության մեջ մեծ չափով ուժեղացավ տնտեսական ու հասարակական կյանքի ուսումնասիրման ձգտումը: Մ. Գոդֆրուա-Դեմոմբինի «Մահմեդական հաստատությունները»[161] երկը պետական ու հասարակական կառուցվածքի մասին մի հետաքրքրական մենագրություն է: Արժեքավոր է Ֆ. Լյոքքեգաարդի «Հարկերը մահմեդական աշխարհում դասական շրջանում»[162] աշխատությունը, ուր քննության են առնված տարբեր հարկատեսակներ: Ռ. Լևին լույս ընծայեց «Իսլամի հասարակական կառուցվածքը»[163] մենագրությունը: Գյուղացու իրավական վիճակին է վերաբերում Ա. Ք. Ս. Լեմբտոնի «Հողատերն ու գեղջուկն Իրանում»[164] երկը: Հետաքրքրական է է. Տիանի «Մահմեդական քաղաքացիական (հանրային) իրավունքի հաստատությունները»[165] և Լ. Գարդեի «Մահմեդական քաղաքը. հասարակական ու քաղաքական կյանք»[166] երկասիրությունները:

Միջնադարյան հասարակական կյանքի ու հողատիրության հարցերն ըմբռնելու համար չափազանց կարևոր է մահմեդական իրավունքի (իրավագիտության, ֆիկհ) ուսումնասիրությունը: Դեռևս անցյալ դարում Ա. ֆոն Կրեմերը իր «Տիրապետող գաղափարները իսլամում»[167] մենագրության մեջ էր դրել իրավագիտության ու դավանանքի հարցերի հետազոտման հիմքերն: Այս ասպարեզում մեծ վաստակ ունի հուն-

---

[159] **A. N. Pollak**, La féeodalité Islamique, R. des Et. Isl., 1936, cahier III, p. 247-264.

[160] **A. N. Poliak**, Classification of Lands in the Islamic Law and its technical terms, The Amer. Jour. of Sem. Lang. and Lit., v. LVII Jan. 1940, I, p. 50-62.

[161] **M. Godefroy-Demombines**, Les institutions musulmans, Paris, 1946.

[162] **F. Lökkegaard**, Islamic taxation in the classic period, Copenhagen, 1950.

[163] **R. Levy**, The social Structure of Islam, Cambridge, 1957.

[164] **A. K. S. Lambton**, Landlord and peasant in Persia, Oxford, 1953.

[165] **E. Tyan**, Institutions du droit public musulman, Paris, 1954.

[166] **L. Gardet**, La cité musulmane, vie sociale et politique, Paris, 1954.

[167] **A. von Kramer**, Geschichte der herrschenden Ideen des Islams, Leipzig, 1868.

գարացի արաբագետ Ի. Գոլդցիերը (1850-1921) իր «Իսլամագիտական ուսումնասիրություններ»[168] և այլ աշխատություններով: Կարևոր է հիշել նաև Բ. Կառա դը Վոյի «Իսլամի մտածողները» երկը[169]:

Մահմեդական իրավագիտության ձևավորման նախնական աստիճաններին է նվիրված Ջ. Շախտի «Մահմեդական իրավագիտության ծագումը»[170] երկը: Օգտակար աշխատություն է Ի. Պ. Պետրուշևսկու «Իսլամն Իրանում է-ժե դարերում»[171] աշխատությունը:

Վերոհիշյալ խնդիրների հետ սերտորեն կապված է ոչ-մահմեդականների (զիմմի՝ քրիստոնյաներ, հրեաներ և այլն) իրավական գոյավիճակի հարցը, որին նվիրված մենագրություններ են Ա. Ս. Տրիտոնի «Խալիֆաներն ու նրանց ոչ մահմեդական հպատակները»[172] և Ա. Ֆատտալի «Ոչ մահմեդականների իրավական գոյավիճակը մահմեդական երկրներում»[173]: Այս հարցերին և իսլամի ու քրիստոնեության պատմական հարաբերություններին է նվիրված Գ. ֆոն Գրյունեբաումի «Միջնադարյան իսլամը»[174] աշխատությունը:

Վերջերս լույս տեսավ Դ. և Ժ. Սուրդելների ծավալուն աշխատությունը (ճոխ լուսանկարներով) «Դասական իսլամի քաղաքակրթությունը»[175], որն ընդհանուր պատկերացում է տալիս մահմեդական միջնադարի տնտեսության ու մշակույթի տարբեր ճյուղերի մասին:

Ետպատերազմյան շրջանում արաբների պատմության մեջ տնտեսական ու հասարակական կյանքի հարցերին նվիրված աշխատություններ են Ե. Ա. Բելյաևի «Արաբները, իսլամը և արաբական խալիֆայությունը»[176] և հատկապես Ի. Պ. Պետրուշևսկու տարբեր աշխատություններում վերոհիշյալ հարցերին նվիրված մասերը[177]: Արաբների պատմությունը շարադրվել է նաև հայ պատմաբան Գ. Աստարճյանի կողմից[178]:

Արաբական աշխարհի պատմության ու մշակույթի բազմազան հար-

---

[168] I. Goldziher, Muhammedanische Studien, I-II, Halle, 1889-1890.

[169] B. Carra de Vaux, Les Penseurs de l'Islam, Paris, 1921-1926.

[170] J. Schacht, The Origins of Muhammadan jurisprudence, Oxford, 1950.

[171] **И. П. Петрушевский**, Ислам в Иране в VII-XV вв., Ленинград, 1966.

[172] A. S. Tritton, The Caliphs and their non-muslim subjects, London, 1930.

[173] A. Fattal, Le statut legal des non-Musulmans en pays d'Islam, Beyrouth, 1958.

[174] G. von Grunebaum, Medieval Islam, Chicago, 1946.

[175] D. et J. Sourdel, La civilisation de l'Islam classique, Paris, 1976.

[176] **Е. А. Беляев**, Арабы, ислам и арабский халифат, Москва, 1965.

[177] **И. П. Петрушевский**, в кн. История стран Зарубежной Азии в средние века, Москва, 1970, стр. 122-156, 364-379.

[178] Գ. Աստարճեան, Ընդարձակ, ընդհանուր արաբական պատմութիւն, Պեյրութ, 1961:

ցերի գիտական ուսումնասիրման համար բացառիկ նշանակություն ունի «Իսլամի հանրագիտարանը», որի առաջին հրատարակությունը չորս ստվար հատորներով և երեք լեզվով (գերմաներեն, անգլերեն, ֆրանսերեն) իրականացավ 1913-1936 թվականներին[179]: Ապա լույս տեսավ «Իսլամի համառոտ հանրագիտարանը» գերմաներեն ու անգլերեն[180], իսկ 1960 թվականից լույս է տեսնում Իսլամի հանրագիտարանը նոր հրատարակությամբ, դարձյալ երեք լեզուներով: Մինչ այժմ լույս են տեսել հինգ ստվար հատորներ, բայց աշխատանքը դեռ չի ավարտված: Նոր հանրագիտարանը ոչ միայն շատ ավելի ընդարձակ է, այլև կարևոր տեղ է գրավում տնտեսական ու հասարակական կյանքի երևույթների բացատրությունը:

## ՀԱՅ - ԱՐԱԲԱԿԱՆ ԲԱՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

Թեև հին հայերը Վերին Միջագետքի արաբական վաչկատուն ցեղերին ծանոթ էին՝ կոչելով տաճիկ և նույնիսկ, ըստ հույն պատմիչ Պլուտարքոսի, Մեծն Տիգրանի զորքում հռոմեացիների դեմ կռվել են նաև արաբներ, այսուհանդերձ հայերի ու արաբների կանոնավոր առնչությունները սկիզբ են առել սոսկ է դարից: Դարերի ընթացքում եղել են քաղաքական, տնտեսական ու մշակութային փոխհարաբերություններ, սակայն տվյալ դեպքում մեզ հետաքրքրում են մշակութային առնչությունները:

Հարկավ հայ-արաբական մշակութային առնչությունները, հասկանալի պատճառներով (կրոնական պատվարը և այլն), այնքան սերտ չեն եղել, ինչպես հայ-հունական և հայ-ասորական հարաբերությունները էին, այսուհանդերձ եղել են մշակութային փոխհարաբերությունների հետաքրքրական փաստեր, որոնք արժանի են ուսումնասիրման:

Է-Ը դարերից արդեն հայ մատենագիրները որոշակի պատկերացում ունեն արաբների ու նրանց կրոնի մասին: Սեբեոսը հնագույն պատմիչն է, որ խոսում է Մուհամմադ մարգարեի և արաբների երևան գալու մասին: Ղևոնդ պատմիչը Ղուրանը կոչում է փուրկան[181], որը նրա սուրաներից (գլուխներից) մեկի վերնագիրն է (Ֆուրկան) և միաժամանակ ամբողջ գիրքն է այդպես կոչում: Նրա մեջբերած Լևոն Գ կայսեր

[179] The Encyclopaedia of Islam, v. 1-4, Leyden-London, 1913-1936.
[180] Shorter Encyclopaedia of Islam, by H. A. R. Gibb and J. H. Kramers, Leiden, 1953.
[181] «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Պետերբուրգ, 1887, էջ 58:

նամակում հիշվում են իսլամի բազում աղանդներ և աստվածաբանական հոսանքներ: Ղևոնդն օգտագործում է նաև «կուռա» (գրակարդաց, բարեպաշտ) արտահայտությունը, մահմեդական հոգևորականների մասին խոսելիս: ԺԳ դարի պատմիչ Վարդանը[182] հիշում է Ղուրանի սուրաներից՝ «սուրաք ալբակարայ» (Կովի սուրա), նաև՝ մուդին (մուազզին, մինարեից աղոթքի հրավիրող, հայ. հաւատադիր): Սեբեոսից հետո բազում հայ պատմիչներ հիշում են Մուհամմադի զրույցի տարբերակներ:

է-Ը դարերում նվաճող արաբը, բացի Ղուրանից ու բանաստեղծություններից ոչինչ չուներ և շատ ավելի ցածր մշակութային մակարդակ ուներ, քան նրա լծի տակ գտնվող ժողովուրդները: Սակայն երբ Թ դարում գոյացավ արաբական ճոխ մշակույթը, արդեն նույն դարում սկսեցին հայերի և քրիստոնյա արաբների (տվյալ դեպքում արաբախոս ասորիների) առաջին մշակութային հարաբերությունները: Հաջորդ դարում Բագրատունյաց թագավորության շրջանում Հայաստանում հետաքրքրություն առաջացավ առաջին հերթին արաբական բժշկության նկատմամբ: Ժ դարի վերջին, կամ ԺԱ դարի սկզբին է վերաբերում այն բժշկարանը, որն արաբերենից հայերեն էր թարգմանվել Հայոց հաղթական թագավոր Գագիկի օրոք: Բնականաբար խոսքը Գագիկ Ա-ի (990-1020) մասին է: Այս բժշկարանը քաղված է արաբական բժշկական երկերից: Նույնը կարելի է ասել մյուս բժշկարանի մասին, որի համար ձեռագրում ասված է, թե թարգմանվել է սուրբ թագավոր Հովհաննեսի հրամանով, այսինքն Հովհաննես Սմբատի (1020-1041) օրոք:

Կիլիկյան Հայաստանում շարունակվող և զարգացող հայ բժշկությունը էլ ավելի մեծ հետաքրքրություն ցուցաբերեց արաբական բժշկության նկատմամբ: ԺԲ դարում ասորի բժիշկ Աբու Սաիդը մարդակազմության վերաբերող իր գիրքը գրեց հայերեն, իսկ նույն դարում հանդես եկավ առաջին խոշոր դեմքը հայ բժշկության մեջ՝ Մխիթար Հերացին, իր «Ջերմանց մխիթարություն» աշխատությամբ: Երկրորդ խոշոր դեմքը Ամիրտովլաթ Ամասիացին է (ԺԵ դար), որը հայտնի է իր «Օգուտ բժշկութեան»[183] և «Անգիտաց անպէտ»[184] բժշկական երկերով: Սրանք, ինչպես նաև այլ հայ բժիշկներ օգտվել են արաբ նշանավոր բժիշկների աշխատություններից, միաժամանակ ներդնելով իրենց պրպտումների արդյունքները և կարևոր է նշել, որ նրանց բառապա-

---

[182] «Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն տիեզերական», Մոսկվա, 1861, էջ 92:

[183] Օգուտ բժշկության, Երևան, 1940:

[184] Անգիտաց անպետ կամ բառարան բժշկական նիւթոց, Վիեննա, 1926:

շարը լի է բազմաթիվ արաբերեն փոխառություններով:

Կիլիկիայում հայերեն է թարգմանվել նաև Դ դարի հույն մատենագիր Անատոլիոս Բերիտացու (առաջին խմբագրող) «Գիրք վաստակոց» (Geoponica) երկրագործական երկը, նրա արաբերեն թարգմանությունից:

Հետաքրքական է նշել, որ հայ մեծանուն մատենագիր Գրիգոր Մագիստրոս Պահլավունին մոտիկից ծանոթ է եղել արաբական բանաստեղծական արվեստին (տաղաչափությանը) և հատկապես Ժ դարի արաբ հռչակավոր բանաստեղծ Մուտանաբբիին: ԺԳ դարում Առաքել Անեցին հայերեն է թարգմանել արաբական հանրահայտ «Հազար ու մեկ գիշեր» ժողովածուի շրջանակներին պատկանող «Պղնձե քաղաքի պատմությունը»: Թարգմանություններ են կատարվել նաև արաբական փիլիսոփայությունից:

Հայտնի է, որ արաբ մատենագիրները այցելելով Հայաստան բանավոր կերպով տեղեկացել են հայկական զրույցների մասին և գրի են առել իրենց երկերում: Արաբական տիրապետության վերջին շրջանում և Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանում Հայաստան են այցելել Յակուբին, Մասուդին, Աբու Դուլաֆը: Ժ դարում Հայաստան (Վասպուրական) է այցելել և որոշ ժամանակ մնացել քրիստոնյա արաբ մատենագիր Կուսթա Բաալբաքին:

Արևելյան փիլիսոփայության պատմության մեջ նշվում է, որ Արիստոտելը արաբներին ծանոթ էր նորպլատոնականների (Պորփյուր, Դավիթ Հայկազն, այսինքն Դավիթ Անհաղթ) մեկնություններով: Դավիթ Անհաղթի հունարեն աշխատությունները նույն դերն են կատարել նաև Սասանյան Իրանում:

Հայերը մշակութային սերտ հարաբերություններ են ունեցել քրիստոնյա արաբների (Ասորիքի միաբնակ (հակոբիկ) ասորիների, հունադավան մելքիտների, Վերին Միջագետքի նեստորականների, մասամբ Լիբանանի մարոնականների (մարոնիներ) և Եգիպտոսի ղպտիների) հետ: Այս առնչությունները առաջին չորս համայնքների համար շարունակությունն էին հայ-ասորական վաղեմի բազմակողմանի հարաբերությունների, որոնք նոր ձևով արտահայտվեցին արաբացած ասորիների մոտ: Վերոհիշյալ հինգ քրիստոնյա արաբ համայնքների մոտ Ագաթանգեղոսի «Հայոց Պատմությունը» տարբեր խմբագրություններով հունարենի կամ ասորերենի միջոցով թարգմանվել է (ընդարձակ կամ համառոտ) արաբերենի: Ուղղակի հայերենից արաբերեն է թարգմանվել Վարդան Այգեկցու «Աղվեսագիրքը»:

Արաբերենի իմացությունը Հայաստանում անհրաժեշտ էր ոչ միայն խալիֆայության և այլ մահմեդական պետությունների տիրապետության շրջաններում, այլև հայկական անկախ պետականության պայմաններում, քանի որ արաբերենը միջազգային լեզու էր Արևելքում: Մեզ հասել են արաբերեն արձանագրություններ թե՛ Բագրատունյաց թագավորության, թե՛ Զաքարյան իշխանապետության օրերից: Արաբերենի իմացությունը առավել ևս անհրաժեշտ էր Կիլիկյան Հայաստանում:

ԺԵ-ԺԸ դարերում հայ իրականության մեջ որոշ հետաքրքրություն է արթնանում արևելյան լեզուների ու դպրության նկատմամբ: ԺԴ դարում Կիլիկիայի Հայոց թագավորության անկման և Հյուսիսային Հայաստանում Զաքարյան իշխանապետության քայքայման հետևանքով առավել ևս ուժեղացավ աղետալի արտագաղթը և աստիճանաբար գոյացան Հայաստանից դուրս մշակութային կենտրոններ: ԺԵ դարում այդ երևույթը պարզ դարձավ, երբ արևմտահայության համար մշակութային կենտրոն դարձավ Կոստանդնուպոլիսը, իսկ արևելահայության (Իրանի հայության) համար՝ Սպահանի արվարձան Նոր Ջուղան: Որոշ նշանակություն ստացավ նաև Հալեպը, որն արդեն արաբական միջավայրում էր: Որպես կարևոր մշակութային կենտրոն Լվովը (Լեհական թագավորության մեջ) ևս մասնակցություն ունեցավ այս շարժմանը: Ահա այս կենտրոններում ԺԵ-ԺԸ դարերում հետաքրքրություն է նկատվում արաբերենի նկատմամբ, մանավանդ որ Օսմանյան պետության մեջ և Իրանում արաբերենը դեռ կենդանի գրական լեզու էր, թեկուզ իրավագիտության և կրոնական գրականության ասպարեզներում: ԺԵ դարում Կոստանդնուպոլսում եղան նույնիսկ արաբագիր հեղինակներ (պատմիչ Մունաջջիմ Բաշի և մատենագիր Հաջի Խալիֆա Քյաթիբ Չելեպի):

Տյուբինգենի (Գերմանիա) հայերեն ձեռագրերից մեկում տեղեկություն կա այն մասին, որ Հովհաննես քահանա Տիգրանակերտցին (ասորի) արաբերենից հայերեն է թարգմանել քրիստոնյա արաբ բժիշկ Յահիա իբն Ջազլայի (մահ. 1100) «Տակվիմ ալ-Աբդան» (Մարմինների կարգավորում) աշխատությունը, որը գրի է առնվել 1628 թվականին Լվով քաղաքում, բժշկապետ Հովհաննես խոջա Ջուղայեցու համար: Հիշվում է նաև մի փոքրիկ թարգմանություն արաբ (ծագումով պարսիկ) նշանավոր բժիշկ Ռազիի երկերից: Այս փաստը վկայում է հայ բժիշկների արաբական բժշկության նկատմամբ հետաքրքրությունը, որ սկսվել էր դեռևս Բագրատունյաց թագավորության շրջանից, շարունակվել է ԺԵ դարում:

Լվովում ծնված, բայց էջմիածնում հաստատված Ստեփանոս Լեհա-

ցին (մեռ. 1669) լատիներենից հայերեն է թարգմանել Ղուրանը, որի ձեռագիրն այժմ գտնվում է Երևանի մատենադարանում:

ԺԷ դարում Նոր Ջուղայում հայտնի դարձավ Հովհաննես Մրքուզ վարդապետ Ջուղայեցին (1642-1716), որը Նոր Ջուղայում ուսումն ավարտելուց հետո գնացել է արաբական երկրներ և տիրապետել արաբերենին: Նա թարգմանել է Նոր Կտակարանը պարսկերեն և արաբերեն:

Արաբերեն իմացել եւ հավանաբար թարգմանություններ է կատարել Ավետիք ընթերցող Տիգրանակերտցի Բաղդասարյանը, որի աշխատանքները ծանոթ են 1684-1719 թվականներից: Տարբեր երկրներում շատ է թափառել, ընդ որում եղել է «Արապիստանում» և շեշտում է, որ գրասիրության պատճառով ուսումնասիրել է տարբեր լեզուներով գրքեր (ամենայն ազգաց գրոց) և առաջին հերթին հիշում է «արապաց»: Թարգմանել է «Ըստուրլաբի արուեստ» (աստրոլաբի արվեստ), «Թուրքին զիճն» (արաբ. զիջ՝ աստղաբաշխական աղյուսակներ) հավանաբար արաբերենից:

ԺԸ դարում Ղուկաս Խարբերդցին ձեռնամուխ եղավ Իսպանիայում (Անդալուս) ստեղծագործող արաբ նշանավոր փիլիսոփա բժիշկ Իբն Ռուշդի (Ավերրոյես Կորդուբացի, ԺԲ դար) բնագիտական երկերի լատիներենից հայերեն թարգմանությանը: Նրա այդ աշխատանքներից մեզ հասել է Արիստոտելի «Զմասանցն կենդանեաց» երկի թարգմանությունը՝ «ըստ ոճիւ Աւեռոսի Գօռտուպէնսիոյ»: Հայտնի է որ Ղուկաս Խարբերդցին Կոստանդնուպոլսի Հովհաննես Բաղիշեցի պատրիարքի (1715-1741) պատվերով լատիներենից և իտալերենից բազմաթիվ (20) գրքեր է թարգմանել: Հավանաբար այս աշխատությունը ևս պատրիարքի հանձնարարությամբ է թարգմանել:

Հայերը ԺԷ-ԺԸ դարերում անմիջական շփում ունեցան արաբական միջավայրի հետ Հալեբում և ընդհանրապես Սիրիայում ու Լիբանանում, ընդ որում այդ հարաբերությունները հիմնականում քրիստոնյա արաբների (արաբացած ասորիների) հետ էին: Հալեբն այդ դարերում արաբական մշակույթի և հատկապես քրիստոնյա արաբների մշակութային կարևորագույն կենտրոնն էր և արևելագետների կողմից հորջորջվել է «Ասիայի Աթենք»:

Սիրիայի (Հալեբ, Ալեքսանդրեթ, Բեյլան, Լաոդիկե) և Լիբանանի տարբեր վայրերում հաստատված հայերը սերտ հարաբերություններ ունեին տեղացի արաբների հետ, սակայն այդ առնչություններն առավել սերտ էին կաթոլիկության հարած հայերի միջավայրում, որոնց մի զգալի մասը արաբախոս էր դարձել: Հայերը ԺԷ-ԺԸ դարերում գաղթում

են Լեռնային Լիբանան և 1749-ին հիմնում Զմմառի հայ կաթոլիկ վանքը: Դրանից առաջ արդեն սկիզբ էր առել հայ կաթոլիկների կաթողիկոսությունը, որի աթոռակալները մինչև 1866 նստում էին Զմմառում: Ահա այս միջավայրում հայերը ոչ միայն արաբախոս են դառնում, այլև հանդես են գալիս հայազգի արաբագիր հեղինակներ: Գերմանացի արաբագետ Գ. Գրաֆը քրիստոնյա արաբական գրականությանը նվիրված իր բազմահատոր մենագրության մեջ հատուկ ենթագլուխ է նվիրել հայ կաթոլիկ հեղինակներին: ԺԷ դարի վերջում և ԺԸ դարի սկզբին հայտնի են Մկրտիչ ալ-Քասիհը (կաղ), ապա Աբրահամ Արծիվյանը, որը եղել է հայ առաքելական վարդապետ, ապա հարելով Հռոմի եկեղեցուն դարձել է հայ կաթոլիկ եկեղեցու հիմնադիր (մեռ. 1749): ԺԸ դարի վերջին ապրել է արաբագիր հեղինակ Հակոբ Յուսիֆյանը: ԺԹ դարից հայտնի են Գաբրիել Հադիդը, Իբրահիմ Քուրալին (Աբրահամ Քյուփելյան), Սաբուֆին (Սերովբե) Այվազը, Անթուն Խանջին, Մելքոն Նազարյանը, Պողոս Բալիթը: Սրանք գրել են հիմնականում կրոնադավանաբանական գործեր, սակայն միաժամանակ Գաբրիել Հադիդը (երկաթ) արաբերեն է թարգմանել Ներսես Լամբրոնացու «Գիրք սիրոյ և խաղաղութեան» երկը, իսկ Անթուն Խանջին (Անտոն Խանջյան) գրել է «Համառոտ պատմություն Հայոց»:

Այսպիսով, միջնադարում և ԺԷ-ԺԸ դարերում հայ-արաբական առնչությունները որոշ շոշափելի արդյունքներ տվեցին: Սակայն հայ արևելագիտությունը և արաբագիտությունը սկզբնավորվեցին միայն ԺԹ դարում: Արևմտյան Եվրոպայի երկրներում ԺԶ-ԺԷ դարերի ընթացքում մեծ առաջընթաց կատարվեց արաբերեն բնագրերի հրատարակության և պատմության ու բանասիրության հարցերի ուսումնասիրման ասպարեզում, որը բնականաբար հետաքրքրություն պիտի արթնացներ նաև արևելյան (հատկապես քրիստոնյա) ժողովուրդների և, ի շարս այլոց, հայ ժողովրդի մոտ:

Հայ արևելագիտության և արաբագիտության հիմնադիր կարելի է համարել Գևորգ դպիր պալատցի Տեր Հովհաննեսյանին (1737-1812): Նա հեղինակ է պարսկերեն-հայերեն և արաբերեն-հայերեն բառարանների, պարսկերենի և արաբերենի քերականությունների, Օսմանյան պետության պատմության և այլ աշխատությունների: Նա քաջ գիտեր, բացի հայերենից ու թուրքերենից, հունարեն, լատիներեն, պարսկերեն, արաբերեն ու եբրայերեն: Ըստ Այվազյանի, նրա արաբերեն-հայերեն բառարանի ձեռագիրը գտնվում է Վենետիկի Մխիթարյան վանքում: Այս

բոլորից տպագրվել են պարսկերեն- հայերեն բառարանը[185] (որի վերջում տրված է 400 հայերեն բառերի համեմատությունը պարսկերենի հետ) և Օսմանյան պատմությունը:

Եթե Գևորգ դպիրը արաբերենի բառարանի և քերականության առաջին հեղինակն է, ապա Մ. Չամչյանը որպես հայ պատմագիտության հիմնադիր, առաջինն է, որ տվել է Հայաստանի արաբական շրջանի գիտական շարադրանքը, օգտագործելով հայկական և բյուզանդական աղբյուրները: Հետաքրքրական է արաբական շրջանի ժամանակագրությունը նրա մոտ: Նա է դարը (640-ական թթ. մինչև դարի վերջը) չի համարում արաբական տիրապետության շրջան (ինչպես նրանից հետո ուրիշներ սխալ կերպով համարեցին), այլ կոչում է «ժամանակ իշխանութեան կիւրապաղատից» և «ժամանակ իշխանութեան պատրկաց», իսկ արաբական տիրապետության շրջանը (ժամանակ իշխանութեան ոստիկանաց) սկսելով 691/693-ից, որը շատ մոտ է ճշմարտության, քանզի է դարում Հայաստանը կիսանկախ և, որոշ ժամանակ, նույնիսկ անկախ իշխանապետություն էր[186]:

Ղ. Ինճիճյանն առաջինն է, որ մասամբ դիմել է արաբական աղբյուրներին: Նա մասնակցել է Գ. Ագոնցի 1806 թվականին լույս տեսած բազմահատոր աշխարհագրական աշխատությանը, գրելով «Հայաստան» հատորը, որի շարադրման համար օգտագործել է արաբ հեղինակների եվրոպական լեզուներով եղած թարգմանությունները և, բացի այդ, Կոստանդնուպոլսում պատվիրել է արաբ աղբյուրների թարգմանություններ կատարել, սակայն վստահություն չունենալով թարգմանիչների հմտության վրա քիչ է օգտագործել դրանք: Իր եռահատոր «Հնախոսության»[187] մեջ «Աշխարհագիրք յայլոց ազգաց» վերնագրի տակ հիշում է ԺԲ դարի աշխարհագրագետ Իդրիսիին և ԺԴ դարի Աբուլ-Ֆիդային: Այս աշխատության մեջ տարբեր գլուխներում անդրադառնում է արաբական շրջանի դեպքերին: Տալիս է արաբական արշավանքների և տիրապետության համառոտ պատմությունը, նկարագրում է հարկապահանջությունը և հայերի ապստամբությունները արաբական տիրապետության դեմ: Հիշում է Հայաստան գաղթած արաբ ցեղերին (Կայսիկք, Ութմանիկ, Զուրարիկ):

ԺԷ-ԺԸ դարերում հայագիտությունը որոշ զարգացում ապրեց թե՛ հայ-

[185] **Գևորգ Դպիր**, Պարսկերեն-հայերեն բառարան, Կ. Պոլիս, 1826:
[186] Տե՛ս **Հայր Միքայէլ Չամչեանց**, Պատմութիւն Հայոց, հ. 1-3, Վենետիկ, 1784-1786:
[187] **Ղ. Ինճիճեան**, Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, Ա, Բ, Գ, Վենետիկ, 1835:

կական միջավայրում, թե՛ Արևմտյան Եվրոպայում, ուր հատկապես զարգացավ նաև արաբական աղբյուրագիտությունը: Ահա այս հիման վրա սկսվեց արաբական աղբյուրների օգտագործումը հայագիտության մեջ:

Առաջին կարևոր դեմքը, որին կարող ենք այս աղբյուրագիտական բնագավառի հիմնադիրը համարել Մ. Ժ. Սեն Մարտենն է (1791-1837), որն իր «Հիշատակագիրք Հայաստանի մասին» մենագրության[188] առաջին հատորում շարադրում է Հայաստանի համառոտ պատմությունը և ժամանակագրությունը, սակայն հիմնականում նվիրված է Հայաստանի (Մեծ և Փոքր Հայք) պատմական աշխարհագրությանը: Այս աշխատության մեջ նա օգտագործել է հունարեն, արաբերեն, ասորերեն, պարսկերեն, թուրքերեն բազմաթիվ պատմաաշխարհագրական երկեր, ընդ որում առատորեն մեջ բերելով արաբ հեղինակների գործերը Մասուդիի (Ժ դար) պատմությունն ու աշխարհագրությունը, Իբն Հաուկալի (Ժ դար), Իդրիսիի (ԺԲ դար) աշխարհագրությունները, Իբն ալ-Ասիրի, Գրիգորիուս Աբու-լ-Ֆարաջի պատմական երկերը, Յակուտի (ԺԳ դար) աշխարհագրական բառարանը, Աբու-լ-Ֆիդայի (ԺԴ դար) աշխարհագրությունը: Պարսիկ հեղինակներից օգտվել է Համդալլահ Ղազուինիից, իսկ թուրք մատենագիրներից Քյատիբ Չելեբիի (ԺԷ դար) Ջիհաննումայից: Նյութեր է քաղել նաև Աբու-լ-Ֆարաջ Բար Հեբրեոսի ասորերեն պատմությունից: Երկրորդ հատորում զետեղված են հայ պատմիչներից թարգմանություններ, որոնց ծանոթագրություններում ևս օգտագործված են արաբ հեղինակները:

Մ. Սեն Մարտենի այս արժեքավոր երկի հրապարակումից հետո ավելացավ հետաքրքրությունը Հայաստանի և դրացի երկրների նկատմամբ: Ժ. Կլապրոտը լույս ընծայեց մի փոքրիկ ուսումնասիրություն Սև և Կասպից ծովերի միջև ընկած տարածքի մասին Մասուդիի հաղորդած տեղեկությունների շուրջը:

Ինքնատիպ աշխատություն է հայազգի Մուրաջա դ'Օհսոնի (1740-1807) «Կովկասի ժողովուրդները» հետմահու հրատարակված աշխատությունը[189], ուր տարբեր արաբ մատենագիրներից քաղված տեղեկությունները ի մի բերելով միաձուլել է, միաժամանակ տողատակ նշելով աղբյուրները. Թ դարից՝ Բալազուրի, Ժ դարից՝ Մասուդի, Թաբարի, Իբն Ֆադլան, Իբն Հաուկալ, ԺԳ դարից՝ Իբն ալ-Ասիր, Զաքարիա Կազուինի, Յակուտ, ԺԴ դարից՝ Դիմաշկի, Աբու-լ-Ֆիդա, ԺԵ դարից՝ Իբն ալ-Վար-

---

[188] St. Martin, Memoires historiques et geographiques sur l'Arménie, 2 vol., Paris, 1818-1819.
[189] M. D'Ohsson, Les peuples du Caucase, Paris, 1828.

դի: Օգտագործել է նաև Մունաջջիմ Բաշիի (ժէ դար) արաբերեն ծավալուն պատմության սամաներեն թարգմանությունը (Ահմեդ էֆենդի) և այլն:

Շուտով հետաքրքրություն առաջացավ արաբական դրամների տվյալները Հայաստանի քաղաքական պատմությանն ի սպաս դնելու նպատակով: Ք. Մ. Ֆրենի (1782-1851) և այլոց դրամագիտական աշխատությունների[190] հիման վրա Յ. Հ. Պետերմանը (1801-1876) կազմեց Հայաստանի (Արմինիա) արաբ կառավարիչների առաջին ստույգ ցուցակը[191]:

Բ. Գ. Նիբուրը արաբերենից գերմաներենի թարգմանեց Կեղծ-Վակիդիի «Ասորիքի նվաճումները» երկից Վերին Միջագետքին (Ջազիրա) և Հայաստանին վերաբերող հատվածները[192]: Դա կարևոր է ոչ այնքան, որպես աղբյուր Հայաստանի նվաճման պատմության համար (քանի որ նրա անանուն հեղինակը ԺԲ դարում է հորինել) ինչքան անգնահատելի արժեք ունի Սասնա ծռեր վեպի հնագույն խավի ուսումնասիրման համար[193]:

Շարունակելով արաբական աղբյուրների տեղեկությունները հայագիտությանն ի սպաս դնելու գործը Շ. Դեֆրեմերին Ֆրանսիական Ասիական հանդեսում հոդվածների մի շարքով թարգմանաբար հրատարակեց արաբ (Բաքրի, Իբն ալ-Ասիր, Իբն Խալդուն) և պարսիկ (Խոնդեմիր, Միրխոնդ) մատենագիրներից քաղվածքներ Կովկասի (նաև Հայաստանի) և հարավային Ռուսաստանի մասին[194]:

Գերմանացի արևելագետ Ա. Դ. Մորդտմանը հավաքեց մի քանի արաբ պատմիչների տեղեկությունները Հայաստանի մասին: Նա քաղվածաբար հատվածներ թարգմանեց հետևյալ պատմիչներից՝ Բալազուրի, Թաբարի, Իբն ալ-Ասիր և Իբն Խալդուն:

Արաբական գրավոր պատմողական աղբյուրներին ու դրամներին

---

[190] Ch. M. Fraehnii, Recensio Numorum muhammedanorum, Petropoli, 1826, Quinque centuriae numorum anecdotorum Chalifarum cum Umeijadarum tum Abbasidarum, St. Petersb. 1837.

[191] J. H. Peterman, De Ostikanis, arabicis Armeniae Gubernatoribus, Berolini, 1840.

[192] "Geschichte der Eroberung von Mesopotamien und Armenien von Mohammed ben Omar el-Wakedi". Aus dem arabischen ubersetzt und mit Anmerkungen begleited von B. G. Niebuhr, Hamburg, 1847.

[193] Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Աղջիկ Տարոնի զրույցը ԺԲ դարի արաբական աղբյուրում, «Պատմաբանասիրական հանդես», 1978, 3 (82), էջ 265-286, *կամ Ա. Տեր-Ղևոնդյան, Հոդվածների ժողովածու, Երևան, 2003, էջ 414-435:*

[194] C. H. Défrémery, Fragments de géographes et d'historiens arabes et persans inédits, relatifs aux anciens peoples du Caucase et de la Russie meridionale, Paris, Journal Asiatique, 1849, t. 13, 14. 1850, t. 16, 1851, t. 17.

առըՆթեր սկսեց հետաքրքրությունը նաև Հայաստանի արաբերեն և արաբատառ արձանագրությունների նկատմամբ: Ն. Վ. Խանիկովը (1822-1878) զբաղվեց Անիի աշտարակի պատի վրա Աբու Սաիդ իլխանի արձանագրությամբ[195], որը նրա յարլիղն է:

Կիլիկյան Հայաստանի քաղաքական պատմության համար կարևոր փաստաթուղթ է Հայոց Լևոն Գ թագավորի և Եգիպտոսի մամլուք սուլթան Կալաունի միջև 1285 թվականին կնքված դաշնագիրը, որի բնագիրը Վ. Լանգլուան, պատմիչ Մակրիզիի բնագրից բերելով, հրատարակեց Կիլիկիայի հայկական թագավորության արքունի հրովարտակների և դաշնագրերի ժողովածուի[196] մեջ ֆրանսերեն թարգմանությամբ:

Հայաստանին վերաբերյալ արաբական մշակույթի և աղբյուրների նկատմամբ հետաքրքրություն արթնացավ նաև հայ իրականության մեջ ԺԹ դարի երկրորդ կեսում:

Դարի կեսերին լույս էր տեսել Մ. Բժշկյանի բազմալեզու քերականությունը, ուր առանձին գլուխներում (անուն, դերանուն, բայ և այլն) տրված են օսմաներենի, պարսկերենի և արաբերենի խոսքի մասերը և ընդհանրապես քերականությունը: Այդ տարիներին Վենետիկի «Բազմավեպ» և Կոստանդնուպոլսի «Երևակ» հանդեսներում լույս են տեսնում մի շարք հանրամատչելի հոդվածներ արաբների և նրանց մշակույթի մասին:

1869-ին լույս տեսավ Ղ. Ալիշանի «Յուշիկք հայրենեաց Հայոց» աշխատության[197] առաջին հատորը, ուր մի քանի գեղարվեստական դրվագներ կան Հայաստանի արաբական շրջանի մասին, որոնք ըստ էության պատմական ուսումնասիրություններ են, ինչպես Բագրևանդի կռիվը, Ստեփանոս Սյունեցի, Աշոտ առաջին: Այս երկը գրված է հայ (թե արաբ) պատմիչների տեղեկությունների հիման վրա, որոնց նույնիսկ հղում է: Կիլիկյան Հայաստանի և արաբական երկրների հարաբերությունների մասին կարևոր տեղեկություններ ունի Ղ. Ալիշանի «Սիսուան» արժեքավոր մենագրությունը: Իսկ նրա «Սիսական», «Այրարատ» և «Շիրակ» մենագրությունները նույն բնույթի տեղեկություններ են հաղորդում Հայաստանի արաբական շրջանի և Բագրատունյաց ժամանակաշրջանի մասին:

---

[195] M. N. Khanykoff, Inscriptions musulmanes d'Ani et les environs de Bakou, Bulletin de l'Academie des Sciences de St. Petersbourg, 1849. Idem, Mémoires sur les inscriptions musulmanes du Caucase, Journale Asiatique, 1862, t. 20, p. 57-155.

[196] V. Langlois, Le Tresor des chartes d'Armenie au Cartulaire de la chancellerie royale des Roupeniens, Venise, 1863.

[197] Ղևոնդ Ալիշան, Յուշիկք հայրենեաց հայոց, հ. 1-2, 1869-1870:

Ապա իրար ետևից երևան եկան աղբյուրագիտական բնույթի աշխատություններ: Ա. Տեր-Հովհաննեսյանը հայերենի թարգմանեց արաբ պատմիչ Արաբշահի (ԺԵ դար) Լենկթիմուրի պատմությունը[198]: Դրանից մեկ տարի անց լույս տեսավ Ա. Դ. Մորդտմանի վերոհիշյալ ժողովածուի (արաբ պատմիչները Հայաստանի մասին) հայերեն թարգմանությունը: Ա. Տեր-Հովհաննեսյանը շուտով լույս ընծայեց Երուսաղեմի պատմությունը[199], որի մեջ օգտագործել է արաբական աղբյուրներ, արաբերեն վավերագրեր և արձանագրություններ:

Հայ-արաբական մատենագրական առնչությունների ուսումնասիրման հարցում կարևոր տեղ ունեն Ղ. Ալիշանի պրպտումները արաբերենից թարգմանված «Գիրք վաստակոց» կոչված աշխատության[200] մասին: Նախ Ղ. Ալիշանը գտնում է, որ «Գեոպոնիկա» աշխատության հեղինակն է Անատոլիոս Բերիտացին, որի հունարեն երկը թարգմանվել է արաբերեն և սրանից էլ հայերեն, իսկ հայերեն թարգմանչի անունը և թարգմանության վայրը մնում են անորոշ: Երեք տարի անց նա հրատարակում է «Գիրք վաստակոցի» բնագիրը և միաժամանակ հանգամանալից հոդված է գրում «Բազմավեպում», որոշելով որ թարգմանության վայրը Կիլիկիան է, իսկ ժամանակը ԺԳ դարը:

Այս հարցին անդրադարձել է հռչակավոր արաբագետ Կ. Բրոկելմանը[201], որը համեմատելով հայերեն և հունարեն բնագրերը եկավ այն եզրակացության, որ հավանաբար Անատոլիոս Բերիտացու հունարեն երկը թարգմանվել է արաբերեն և ապա սրանից էլ հայերեն, բայց այս հարցը պետք է չլուծված համարել, քանի դեռ հայերենը չի համեմատված բազմաթիվ գեոպոնիկաների հետ: Իսկ Կ. Բասմաջյանը կարծում է, թե «Գիրք վաստակոցը» թարգմանել է Մխիթար Հերացին ԺԲ դարի արաբ մատենագիր Իբն ալ-Ավամի երկրագործական երկից (Քիտաբ ալ-Ֆիլահա):

Հայերեն «Գիրք վաստակոցի», նրա արաբերեն բնագրի. իսկ վերջինիս հունարեն բնագրի (գեոպոնիկաների) փոխհարաբերության հարցը դեռ չի լուծված:

Հայ պատմիչների տեղեկությունները Մուհամմադի մասին կարևոր

---

[198] «Պատմութիւն Լենկ Թեմուրայ», թարգմ. Ա. Տէր-Յովհաննէսեանց, Երուսաղէմ, 1873:

[199] Ա. Տէր-Յովհաննէսեանց, Ժամանակագրական պատմութիւն Երուսաղէմի, Ա, Բ, Երուսաղէմ, 1890:

[200] Գիրք Վաստակոց, թարգմանութիւն նախնեաց յարաբացի լեզուէ, Վենետիկ,1877:

[201] C. Brockelmann, Geschichte der arabischen Litteratur, I-II, Weimar-Berlin, 1898-1902. Supplementband, I-III, Leiden, 1936-1942.

նշանակություն ունեն արաբների պատմության ուսումնասիրման համար: Ք. Պատկանյանը Սեբեոսի պատմության 1879-ի հրատարակության վերջում զետեղել է Մխիթար Անեցու պատմությունը (ուր մեծ տեղ է գրավում Մուհամմադի մասին զրույցը) և ապա «Յաւելուածք որ ինչ յաղագս Մահմետի են բանք առ մատենագիրս մեր», ուր հատվածներ կան Վարդան, Սամուել Անեցի, Կիրակոս, Մովսես Կաղանկատուացի, Թովմա Արծրունի պատմիչներից:

Հայ-արաբական գրական առնչությունների հարցի առաջին լուրջ ուսումնասիրողը Գ. Հովնանյանն է (1817-1897), որն իր հոդվածներով այդ հարցին անդրադառնալուց հետո հանդես եկավ երկհատոր մենագրությամբ, որը թեև նվիրված է միջին հայերենի (նախնեաց ռամկօրէն) ուսումնասիրությանը[202], սակայն քանի որ արաբերենից հայերեն թարգմանությունները մեծ մասամբ միջին հայերեն են գրված և արաբերենից փոխառությունները հայերենում հիմնականում հենց միջին հայերենում են արտահայտված, ուստի նա շատ հաճախ անդրադառնում է հայ-արաբական մշակութային առնչություններին: Գ. Հովնանյանը հորինել է նաև արաբերեն-հայերեն ընդարձակ բառարան, որն ընտիր գործ է համարվում:

Ղ. Ալիշանն ուսումնասիրել և թարգմանաբար հայերեն հրատարակել է ԺԲ-ԺԳ դդ. արաբագիր հայազգի հեղինակ Աբու Սաիլի (Աբու Սալիհ) պատմական երկը[203], որտեղ նկարագրված են Եգիպտոսի վանքերը և միաժամանակ տեղեկություններ է հաղորդում Ֆաթիմյան Եգիպտոսում գործած հայ վեզիրների մասին:

ԺԹ դարի երկրորդ կեսում երևան եկան եվրոպացի հեղինակների դրամագիտական լայն ընդգրկումով կազմված ուսումնասիրություններ, որոնք հետագայում հնարավորություն տվեցին ճշտելու Հայաստանի քաղաքական պատմության որոշ կողմեր և հատկապես հարստացնելու Արմինիայի կառավարիչների (ոստիկանների) ցուցակը:

Հայ-արաբական երկարատև առնչությունների հետևանքով հայերենը փոխառություններ է վերցրել արաբերենից, որոնք առաջին անգամ ուսումնասիրության առարկա դարձան Հ. Հյուբշմանի հայերենում սեմական փոխառություններին նվիրված աշխատության մեջ[204]: Նա հի-

---

[202] Գ. Յովնանեան, Յետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, Վիեննա, 1897:

[203] Աբուսաիլ Հայ (Աբու Սալիհ Հայ), Պատմութիւն եկեղեցեաց և վանօրէից Եգիպտոսի, Վենետիկ, ս. Ղազար, 1933:

[204] H. Hübschmann, Die semitischen Lehnworter im Armenischen, Zeitschrift der Deutschen Morgenlandischen Geselschaft, 1892.

շում է 75 փոխառություններ՝ արաբերենից հայերենին անցած և իրավացիորեն ավելացնում, որ բուն արաբական տիրապետության շրջանում քիչ փոխառություններ են անցել. միայն ԺԲ դարից նկատվում է արաբական փոխառությունների առատությունը (Մխիթար Հերացու մոտ, Գիրք Վաստակոց երկում և այլն): Նկատել է նաև, որ արաբերեն փոխառությունները ավելի հաճախ միջին (ռամիկ) հայերենով շարադրված երկերում են:

Հայերենում առկա արաբերեն փոխառությունների ուսումնասիրման համար կարևոր նպաստ է Ղ. Ալիշանի «Հայբուսակ» աշխատությունը[205], ուր առաջաբանում նշվում է, որ բուսաբանությունը սերտորեն կապված լինելով բժշկագիտության հետ, բնականաբար վերջինիս նման փոխ է առել բույսերի արաբերեն անուններ: Նա հիշում է 3400 բույսերի հայերեն անուններ, որոնց մեջ բազմաթիվ արաբերեն փոխառություններ կան:

Դարի վերջում ուժեղացավ ձգտումը ուսումնասիրելու Հայաստանի արաբական շրջանի պատմությունը: Համառոտ, բայց բովանդակալից է Պ. (հավանաբար Ս. Պալասանյան) ստորագրությամբ «Ակնարկ արաբական շրջանի Հայոց պատմության վրա» հոդվածը: Նկարագրված են Հայաստանի նվաճումը, արաբական վարչական համակարգը, ոստիկանների պարտականությունները, հարկային քաղաքականությունը և նույնիսկ հայ-արաբական մշակութային առնչությունները: Հ. Դաղբաշյանը Բագրատունյաց թագավորության հիմնադրմանը նվիրված աշխատության[206] մեջ քննարկում է Հայաստանի Թ դարի առաջին կեսի պատմությունը, հասցնելով այն մինչև Աշոտ Ա-ի կողմից Հայաստանի ազատագրումը: Սասունի պատմությանն է վերաբերում Վ. Տոմաշեկի «Սասունը և Տիգրիսի ակունքների սահմանները» աշխատությունը[207], ուր արաբական աղբյուրների հիման վրա (Կեղծ Վակիդի, Բալազուրի, Թաբարի, Իբն ալ-Ասիր, Աբու-լ-Ֆիդա և այլն) Հայաստանի արաբական շրջանի շատ հարցեր է շոշափում:

Հետաքրքրական է Հ. Ֆ. Ամեդրոզի Հայաստանի Աղձնիք նահանգի և Նփրկերտի պատմության աղբյուրների մասին հոդվածները:

Հայաստանի արաբական շրջանի մասին առաջին մենագրությունը

---

[205] **Ղևոնդ Ալիշան**, Հայբուսակ կամ հայկական բուսաբառութիւն, Վենետիկ, 1895:
[206] **A. Daghbaschean**, Grundung des Bagratidenreiches durch Aschot Bagratuni, Berlin, 1893.
[207] **W. Tomaschek**, Sasun und das Quellengebiet des Tigres, Wien, 1896. Հայերեն թարգմ.՝ Վ. Տոմաշեկ, Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, պատմական և տեղագրական հետազօտութիւն, Վիեննա, 1896:

Մ. Ղազարյանի «Հայաստանն արաբական տիրապետության տակ» աշխատությունն[208] է, որը գրված է արաբական աղբյուրների լայն օգտագործմամբ: Այստեղ շարադրված է Հայաստանի քաղաքական, տնտեսական, հասարակական կյանքի պատմությունը պատշաճ մակարդակով, Արմինիայի կառավարիչների (ոստիկանների) առավել մանրամասն ցուցակը և քննության են առնված Հայաստանի տեղանունների արաբական ձևերը:

Այս շրջանում արաբ պատմագրության նկատմամբ հետաքրքրությունն այնքան ուժեղ էր, որ Ղ. Ալիշանը հայ պատմագրության պատմությանը նվիրված «Հայապատում» աշխատության[209] մեջ ի շարս Հայաստանի մասին այլ աղբյուրների հիշում է հետևյալ արաբ պատմիչներին և աշխարհագրագետներին՝ Բալաձուրի, Յակուբի, Կուդամա, Թաբարի, Մասուդի, Իբն Հաուկալ, Մուկադդասի, Իբն ալ-Ջաուզի, Կազուինի, Իբն ալ-Ասիր, Յակուտ, Աբու-լ-Ֆիդա, Իբն ալ-Վարդի, Մակրիզի:

Հայաստանի արաբական և բագրատունյաց ժամանակաշրջանների պատմության հետ սերտ աղերս ունի բյուզանդագետ-արաբագետ Ա. Վասիլևի արժեքավոր մենագրությունը «Բյուզանդիան և արաբները»[210] կոչված, ուր արաբաբյուզանդական երեքհարյուրամյա պատերազմների մոտ հարյուրքառասունամյա (820-959) ժամանակաշրջանի մանրակրկիտ պատմությունն է շարադրված: Առատ կերպով օգտագործված են բոլոր արաբ պատմիչները և աշխարհագրագետները, որոնք տեղեկություններ են պարունակում այս հարցի շուրջը: Հետագայում Մ. Կանարը վերահրատարակեց այս աշխատությունը, թարգմանելով ֆրանսերենի և ճոխացնելով նոր ուսումնասիրությունների տվյալներով ու հարուստ

---

[208] M. Ghazarian, Armenien unter der Arabischen Herrschaft, Marburg, 1903. Մկրտիչ Ղազարյանը ծնվել է 1864 թ., Կարսում: Ավարտել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը, սովորել է Պետերբուրգի և ապա Բեռլինի համալսարաններում: Վերջինս ավարտելով գրել է «Հայաստանը արաբական տիրապետության տակ» դոկտորական թեզը (հրատարակվել է 1903-ին՝ Մարբուրգում): 1906-1912 թթ. քահանայագործել է Պետերբուրգի հայոց ս. Կատարինե եկեղեցում, միաժամանակ դասավանդելով տարբեր ուսումնական հաստատություններում: 1910 թ. հոգեհանգիստ է կատարել պաշտոնապես բանադրված Լև Տոլստոյի համար՝ նրա թաղման օրը, հայ համայնքի և ցուցարար ուսանողների խնդրանքով: Նա հանդես է եկել Պետերբուրգի մամուլում ("Новое время"), պատասխանելով սևհարյուրակային հեղինակների՝ հայ ժողովրդի դեմ գրած զրպարտիչ հոդվածներին: 1912-ից Հայաստանում զբաղվել է մանկավարժական աշխատանքով, եղել է Գևորգյան ճեմարանի տեսուչի օգնական: 1914-1919 թթ. եղել է տեսուչ Շամախիի և Ալեքսանդրապոլի ուսումնարաններում: Մահացել է 1919-ին Ալեքսանդրապոլում: (Տես Ա. Տեր-Ղևոնդյան, Լ. Տոլստոյի հոգեհանգիստը Պետերբուրգի Հայոց եկեղեցում, «Գրական թերթ», 22 սեպտ. 1978: Գ. Ստեփանյան, Կենսագրական բառարան, հ. Բ, Երևան, 1981, էջ 239):

[209] Ղևոնդ Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901:

[210] A. Vasiliev, Byzance et les Arabes, Bruxelles, t. I,1935 (1959),t. II (1968).

թարգմանություններով՝ արաբական աղբյուրներից:

Նույն սկզբունքներով են շարադրված Յ. Մարկվարտի Հայաստանի պատմությանը վերաբերող երկերը: Նախ իր «Արևելաեվրոպական և արևելաասիական հետազոտություններ» աշխատության[211] մեջ մի գլուխ է հատկացրել Հայաստանի պատմության այն շրջանին, որը կապվում է Բագրատունյաց գործունեության հետ: Հանդես Ամսօրյայում 1913-1915 թվականներին լույս տեսած և ապա առանձին հատորով հրատարակված «Հարավային Հայաստանը և Տիգրիսի ակունքները» աշխատության[212] մեջ արաբական և Բագրատունյաց շրջանների հարցերին է անդրադառնում, քննարկելով հատկապես Վասպուրականի ու Տարոնի պատմությանը վերաբերյալ բազում դրվագներ:

Հ. Թոփչյանն ուսումնասիրել է վիճակը Հայաստանում արաբական արշավանքների նախօրեին և նվաճումից հետո, ինչպես նաև արաբական տիրապետության վախճանը և Բագրատունյաց թագավորության ծնունդը[213]:

Հայաստանի և դրացի երկրների մասին արաբ աշխարհագրագետների տեղեկությունները, արաբերեն բնագրով և ռուսերեն թարգմանությամբ հրատարակել է Ն. Ա. Կարաուլովը Կովկասին նվիրված մատենաշարի մի քանի համարներում[214]: Նա ընդգրկել է Թ դարից Իբն Խորդադբեհին, Յակուբիին, Իբն Ռուստային, Իբն ալ-Ֆակիհին և Կուդամային, իսկ Ժ դարից Իսթախրիին, Իբն Հաուկալին, Մասուդիին և Մուկադդասիին: Այս աշխատանքը մեղալի է արժանացել և ապա Վ. Ռոզենի կողմից վերանայվելուց հետո լույս է տեսել վերոհիշյալ մատենաշարում: Այս աշխատանքը գովելի է նրանով, որ մինչև այժմ միակն է, ուր թարգմանությանը զուգահեռ տրվել է արաբերեն բնագիրը:

Նույն ժամանակ Բ. Խալաթյանցը Հանդես Ամսօրյայի էջերում (1903-1909) հրատարակեց մի խումբ արաբ պատմիչների (Բալազուրի, Թաբարի, Իբն Աիսքավայի, Իբն ալ-Ասիր) Հայաստանին վերաբերյալ հատվածների թարգմանությունը: Հետագայում այս աշխատանքը լույս

---

211 J. Marqwart, Osteuropaische und ostasiatische Streifzüge, Leipzig, 1903.

212 J. Marqwart, Sudarmenien und die Tigrissqwellen, Wien, 1930.

213 H. Thopdschian, Armenien vor und während der Araberzeit, Zeit. für arm. Phil., Marburg, 1903.

214 Н. А. Караулов, Сведения арабских географов IX и X вв. По р. Х. о Кавказе, Армении и Адербейджане, в Сборнике материалов для описания местностей и племен Кавказа, Тифлис, XXIX (Истахри), 1901, XXXI (Ибн ал-Факих), 1902, XXXII (Ибн Хордадбех, Кудама, Ибн Русте, Якуби), 1903, XXXVIII (Мукаддаси, Масуди, Ибн Хаукал), 1908.

տեսավ առանձին հատորով[215]:

Մ. Օրմանյանն իր կոթողային «Ազգապատում» աշխատության մեջ մի շատ արժեքավոր բաժին ունի արաբական շրջանի մասին[216]: Թեպետ 1946-ին լույս տեսած, սակայն առաջին աշխարհամարտի սկզբին ավարտված աշխատանք է Լեոյի «Հայոց պատմության» երկրորդ հատորը[217], ուր մանրամասն շարադրված է արաբական շրջանի պատմությունը: Նա արաբական աղբյուրներից օգտվել է թարգմանություններով, սակայն նրա երկերում պատմական դեպքերի զարգացման ընթացքը մեծ հմտությամբ է պարզաբանված: Արաբական աղբյուրների լայն ընդգրկումով է գրված «Իսլամի Հանրագիտարանում» Մ. Շտրեքի «Հայաստան» ծավալուն հոդվածը[218], ուր է-ԺԳ դարերի քաղաքական, վարչական, տնտեսական կյանքի տարբեր կողմերն են ուսումնասիրված:

Հայ-արաբական մշակութային առնչությունների ասպարեզում իր լուման ունի Ն. Մառը: Կարևոր է նրա ներհուն աշխատությունը Վարդան Այգեկցու առակների (Աղվեսագիրք) և, հատկապես, վերջինիս արաբերեն թարգմանության մասին: Լոնդոնի «Ինդիա օֆիս» գրադարանի ձեռագրացուցակում նշված է եղել մի ձեռագիր, որն ասորատառ արաբերեն (քարշունի) էր և ուներ «Քիտաբ Ամսալ ալ-Սաալաբ» (Աղվեսի առակների գիրք) անվանումը, որին թեև ոմանք ուշադրություն էին դարձրել, սակայն նրա էությունը չէր պարզվել: Ն. Մառը պրպտելով ձեռագիրը, պարզում է, որ այդ արաբերեն առակները հայերենից են թարգմանված Վարդանի Աղվեսագրքից: Այս կարևոր աշխատությունն անմիջապես ուշադրության առարկա դարձավ և Հ. Տաշյանը նախ «Հանդես Ամսօրյայի» էջերում, ապա առանձին հատորով ամփոփեց նրա բովանդակությունը:

1905 թվականին Ն. Մառը հրատարակեց Ագաթանգեղոսի Հայոց պատմության մի նոր արաբերեն խմբագրություն, որի ձեռագիրը հայտնաբերվել էր Եգիպտոսի Սինայի թերակղզու Ս. Կատարինե վանքում: Պարզվեց, որ մեզ հայտնի հայերեն բնագրից ու նրանից թարգմանված կամ ամփոփված խմբագրություններից բացի եղել է մեկ այլ հայերեն բնագիր, որի արաբերեն թարգմանությունն էր մեզ հասել: Ն. Մառը հրատարակեց արաբերեն բնագիրը, ռուսերեն թարգմանությունը հատուկ

---

[215] Արաբացի մատենագիրներ Հայաստանի մասին, հաւաքեց և թարգմանեց Բագրատ Խալաթեանց, Ազգային Մատենադարան, ՉԴ, Վիեննա, 1919:

[216] Մաղաքիա արք. Օրմանեան, Ազգապատում, հատոր Ա, Պէյրութ, 1959:

[217] Լեո, Հայոց պատմություն, Բ, Երևան, 1967:

[218] M. Streck, Armenia, The Encyclopaedia of Islam, Leyde-London, I, 1913, p. 435-449.

ուսումնասիրությամբ[219]: Հետագայում հայտնաբերված, բայց այս խմբին պատկանող բնագրերը «Վարք» անունը կրեցին, որպես մեկ խումբ:

Ն. Մառը գտնում է նաև, որ Մովսես Խորենացու հիշած Մար Աբաս Կատինան իրոք գրել է ժամանակագրություն, սակայն այդ ասորերեն բնագիրը կորել է և մեզ հասել է նրանից քաղված արաբերեն մի հատված:

Անդրադառնալով հայ միջնադարյան արձակի հարցերին, Ն. Անդրիկյանը քննության առավ երեք հայերեն բնագիր՝ «Պղնձե քաղաքի պատմությունը», որը նա վստահ է, թե թարգմանված է արաբերեն Հազար և մեկ գիշեր ժողովածուից, «Ֆարմանի Ասմանին» համարում է անորոշ ծագումով զրույց, իսկ «Հարցմունք աղջկանը» արաբական ծագում է վերագրում[220]: Ա. Չոպանյանը նույն «Պղնձե քաղաքի պատմությունը» և «Հարցմունք աղջկանը» համարում է Հազար և մեկ գիշեր ժողովածուից թարգմանված:

Որոշ ժամանակ անց Հ. Լորանտին ևս անդրադարձավ «Պղնձե քաղաքի պատմությանը» համարելով այն «Հազար և մեկ գիշեր» ժողովածուից Մխիթար Անեցու կողմից կատարված թարգմանություն[221]:

Ք. Չրաքյանի կողմից Նանա ասորու Հովհաննու ավետարանի մեկնության հայերեն բնագրի հրատարակումից հետո ֆրանսիացի արևելագետ Լ. Մարիեսը մի հետաքրքրական հոդված հրատարակեց այս նյութի շուրջը, նշելով որ Նանան արաբերեն բնագիրը գրել է մոտավորապես 840 թվականին, իսկ հայերեն թարգմանությունը կատարվել է մոտավորապես 852-ին: Այս հարցի շուրջը Ն. Ակինյանը հանդես եկավ հատուկ ուսումնասիրությամբ, ուր մանրամասն վերլուծում է մեկնության գրության և թարգմանության հանգամանքները: Նանա ասորին Հայաստան էր հրավիրվել իշխանաց իշխան Բագարատ Բագրատունու կողմից, բանավիճելու երկաբնակ Թեոդորոս Աբիկուռայի հետ: Ապա Բագարատը պատվիրեց նրան գրել Հովհաննու ավետարանի մեկնությունը, որը նա գրեց արաբերեն և հետագայում այն թարգմանվեց հայերեն:

Մեր դարի սկզբին կրկին սկսեց հետաքրքրությունը Հայաստանի

---

[219] Н. Марр, Крещение Армян, Грузин, Абхазов и Аланов святым Григорием (Арабская версия), Петербург, 1908.

[220] **Ն. Անդրիկեան**, Ազգային վէպերն, Բազմավէպ, Վենետիկ, 1906, 7, 8:

[221] H. Laurentie, La version arménenne du conte de la ville d'airain, Revue des Etudes Arméniennes, 1921, t. I, fasc. 3.

արաբական արձանագրությունների նկատմամբ: Հայտնի վիմագրագետ Մ. վան Բերշեմը, որի արաբերեն արձանագրությունների դիվանը հետաքրքրական նյութեր է պարունակում Հայաստանի պատմության համար, հրատարակեց Նփրկերտի, Ամիդի և այլ վայրերի արաբական արձանագրությունները, որոնք վերաբերում են Արտուխյաններին և այլոց[222]: Ապա Մ. Տեր-Մովսիսյանը հրատարակեց Զվարթնոցի պատերի ծեփի վրա գրված արաբերեն արձանագրությունների գծանկարները Վ. Բարթոլդի որոշ դիտողություններով[223]:

Նշանակալի երևույթ է Ժ. Լորանի (1870-1955) մենագրությունը[224] Հայաստանի արաբական շրջանի մասին: Նա քննության է առնում երկրի ներքին վիճակը (վարչական, տնտեսական, նախարարական տիրույթներ, եկեղեցի, ապստամբություններ և այլն), ապա արաբաբյուզանդական պատերազմները և Աշոտ Ա Բագրատունու ջանքերով Հայոց թագավորության վերականգնումը: Հետագայում լույս տեսավ աշխատության վերամշակված և ճոխացված հրատարակությունը Մ. Կանարի կողմից, ուր որպես հավելված զետեղված են արաբ մատենագիրներից (Բալազուրի, Յակուբի, Իբն ալ-Ֆակիհ, Թաբարի, Իսթախրի, Իբն Հաուկալ, Մուկադդասի, Տաննուխի) քաղված հատվածների թարգմանություններ:

Դիմելով հայ բժշկության պատմության հարցերին Ղ. Տայանը Վենետիկի մատենադարանի ձեռագրերում հայտնաբերելով Մխիթար Հերացու մի փոքրիկ աշխատությունը արժեքավոր քարերի բուժիչ հատկանիշների մասին, հրատարակում է այն: Այստեղ ևս առատ են արաբական փոխառությունները, ինչպես Հերացու բժշկական հայտնի երկում: Հայ բժշկության ակնառու դեմքերից Ամիրտովլաթ Ամասիացու դեղաբանական «Անգիտաց անպէտ» և ախտաբանական «Օգուտ բժշկութեան» աշխատություններում լի են արաբերեն բժշկական և դեղագործական հատուկ բառերը: Այս երկու երկերի մեջ ամփոփված են հայերենում արաբերենից կատարված բժշկական փոխառությունների զգալի մասը:

Քսանական-երեսնական թվականներին նորից երևան եկան աշխատություններ նվիրված Հայաստանի արաբական շրջանին, կամ մահմե-

---

[222] M. van Berchem, Materiaux pour l'épigraphie et l'histoire musulmanes du Diyar-Bekr, dans "Amida", Heidelberg, Paris, 1907.

[223] Մ. Տէր-Մովսիսեան, Էջմիածին և Հայոց հնագոյն եկեղեցիները, «Ազգագրական Հանդէս», ԺԷ, 1907, էջ 87-132, տախտ. ԺԲ, 8, 9, 10, 11, 12:

[224] J. Laurent, L'Armenie entre Byzance et l'Islam, depuis la conquête arabe jusq'en 886, Paris, 1919.

դական միջնադարին:

Արաբների պատմության հայտնի գիտակ Կ. Հյուարը «Հայկական ուսմանց հանդեսում» (REA) հրատարակեց մի հոդված[225], ուր քննության է առնում 938 թվականին Ատրպատականի զորավարներից Լաշքարիի Հայաստան կատարած ասպատակության և պարտության մասին Իբն Միսքավայհի (ԺԱ դար) տեղեկությունները: Ղ. Տայանը նույն ժամանակ Բազմավեպի էջերում հրատարակեց Իբն Մուլյասսարի (ԺԳ դար) հայ վեզիրներ Բադր ալ-Գամալիի, Աֆդալի և Վահրամ Պահլավունու մասին տեղեկությունների թարգմանությունը[226]:

Արաբական շրջանի որոշ հարցերով զբաղվել է Հ. Զորյանը, որն արաբական աղբյուրների օգտագործմամբ, ուսումնասիրել է արաբների հարկային քաղաքականությունը Հայաստանում և գյուղի ու քաղաքի միջև ստեղծված հակասությունը[227]:

Ինքնատիպ աշխատություն է Ժ. Միլդերմանսի Վարդան պատմիչի երկի արաբական շրջանին վերաբերող հատվածի ուսումնասիրությունը, ֆրանսերեն թարգմանությամբ և տարբեր հարցերի հետազոտմամբ:

Ժամանակի ընթացքում հրատարակված դրամագիտական նյութերը հնարավորություն տվեցին դրամագետ Ռ. Ֆասմերին (1888-1936) մի նոր քայլ կատարելու Արմինիայի կառավարիչների (ոստիկանների) ցուցակը լրացնելու և ամբողջացնելու հարցում: Նրա ցուցակն ընդգրկում է Աբբասյան ժամանակաշրջանը[228]:

Իսլամին վերաբերող բնագրերը նույնպես զբաղեցրին հայ բանասերներին: Բ. Կյուլեսերյանի հրատարակած հայերեն ձեռագիրը Մուհամմադի կենսագրության մասին[229], հավանաբար արաբերենից է թարգմանված, մանավանդ որ վերնագրում նշված է նրա քարշունի (ասորատառ արաբերեն) լինելը:

Արաբական աղբյուրներն օգտագործված են Հ. Մանանդյանի Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին աշխատության[230] արաբա-

---

[225] Cl. Huart, Une razzia en Arménie au Xe siecle, Revue des l'Etudes Armeniennes, I, Paris, 1921, fasc. 4.

[226] Ղ. Տայան, Իպն Մուլյասսարի տարեգրութիւնները Եգիպտոսի երեք հայ նախարարաց մասին, Բազմավէպ, 1921, էջ 205-208:

[227] Հ. Զորյան, Արաբների հարկային քաղաքականությունը ֆեոդալական Հայաստանում, Երևանի համալսարանի տեղեկագիր, 2-3, Երևան, 1927:

[228] R. Vasmer, Chronologie der arabischen Statthalter von Armenien unter den Abbasiden, Wien, 1931.

[229] Բ. Կիւլեսէրեան, Իսլամը հայ մատենագրութեան մէջ, Վիեննա, 1930:

[230] Я. Манандян, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Ереван, 1954.

կան և Բագրատունյաց թագավորության շրջաններին վերաբերյալ գլուխներում: Նույնը կարելի է ասել նրա արաբների Հայաստանում կատարած արշավանքների և ժողովրդական ապստամբությունների մասին աշխատությունների առնչությամբ:

Արաբաբյուզանդական սահմանային ընդհարումներին կրկին անդրադարձավ է. Հոնիգմանը կայսրության արևելյան սահմանների մասին իր մենագրության[231] մեջ, ուր նույնպես օգտագործված են արաբական մեծ թվով աղբյուրներ: Ի տարբերություն Վասիլևի, նա հատկապես ծանրանում է սահմանային ամրությունների հարցի վրա և այսպիսով շատ օգտակար է Հայաստանի արևմտյան գավառների դրության ուսումնասիրման համար:

Ինքնատիպ է Պ. Ժուզեի մենագրությունը Հայաստանում հաստատված արաբ կենտրոնախույս ուժերի (ամիրների) մասին[232]: Թ դարի առաջին կեսում, երբ թուլանում էր Աբբասյանների հեղինակությունը, տեղում հողային տիրույթներ ձեռք բերած արաբ զորավարներն ու ցեղապետերը, ձգտում էին ինքնուրույնության, հետևելով հայ նախարարների օրինակին: Դրանք արաբ պատմագրության մեջ կոչվում էին մուտաղալլիբներ (բռնացողներ):

Ն. Մառը Անիի պատմության մասին իր ուսումնասիրության[233] մեջ անդրադառնում է Անիի հայ (Զաքարյան) կառավարիչների մոնղոլական շրջանում թողարկած դրամների վրա գտնվող արաբերեն մակագրություններին, որպես իր ժամանակի համար օրինաչափ երևույթի:

Այդ ժամանակ նոր հրատարակված արաբերեն բնագրերից Հայաստանի Բագրատունյաց ժամանակաշրջանի ուսումնասիրման համար կարևոր են Մ. Կանարի հրատարակած նյութերը Համդանյան ամիր Սայֆ ալ-Դաուլայի (944-969) գործունեության մասին[234]: Կան հատվածներ ԺԲ-ԺԳ դարերի պատմիչներ Ֆարիկիից, Իբն Զաֆիրից, Զահաբիից: Հայաստանի առևտրի և արհեստների ուսումնասիրման համար կարևոր է նաև այդ շրջանում լույս տեսած Ջահիզի (775-868) Աբբասյան շրջանի առևտրի մասին փոքրիկ երկը[235]:

---

[231] E. Honigmann, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, Corp. Brux. Hist. Byz.,III, Bruxelles, 1935.

[232] П. Жузе, Мутагаллибы в Закавказье в IX —XI вв., материалы по истории Грузии и Кавказа, вып. III, Тифлис, 1937.

[233] Н. Марр, Ани, Ленинград,1934.

[234] M. Canard, Les Hamdanides et l'Arménie, Annales de l'Institut d'etudes orientales, VII, Alger, 1943.

[235] Djahiz, at-tabassur bi-l-tidjara, Damas, 1932.

Իբն Խալլիքանի (1211-1282) հայտնի կենսագրական բառարանից ընդարձակ հատվածներ է թարգմանել Գ. Մըսրլյանը Հայաստանի պատմությանն առնչվող արաբ կառավարիչների ու զորավարների կենսագրություններից[236]:

Քառասնական թվականների սկզբին Երևանի համալսարանը հրատարակեց «Օտար աղբյուրները հայերի մասին» մատենաշարը, որի մեջ լույս է տեսել Հ. Աճառյանի թարգմանած Իբն Բաթութայի (ԺԴ դար) ուղեգրությունից տեղեկությունները Հայաստանի ու Կիլիկիայի մասին, ընդ որում հայերեն թարգմանության դիմաց տրված է արաբերեն բնագիրը[237]: Հետաքրքրական է Կ. Ղաֆադարյանի հին Հայաստանում ալքիմիայի զարգացման հարցին նվիրված մենագրությունը[238], ուր հայ ալքիմիկոսներից քաղված մեջբերումներից երևում է, որ նրանք օգտագործել են արաբ ալքիմիկոսների գործերը, քանզի հիշված են նշանավոր Ջաբիր իբն Հայյանը և ուրիշներ:

Դեռևս երեսնական թվականներից հետաքրքրություն էր առաջացել հայ-արաբական մշակութային առնչությունների նկատմամբ: Անդրադառնալով գեղարվեստական հարաբերություններին, Հ. Քյուրտյանը հատկապես կանգ է առնում գործագործության ասպարեզում արևելքում հայերի կատարած կարևոր դերի վրա[239]:

Ն. Մառի հայտնաբերած արաբերեն Ագաթանգեղոսի (Վարք) ուսումնասիրման համար մեծ նշանակություն ունեցավ Ժ. Գարիթի հայտնաբերած և հրատարակած հունարեն մի նոր ագաթանգեղյան բնագիր (հունարեն Վարք, Էսկուրիալ Իսպանիա)[240], որի մի մասը լինելով արաբերեն Վարքի աղբյուրը, հնարավորություն տվեց ճշտելու շատ անհասկանալի տեղեր արաբերեն բնագրում: Ժ. Գարիթը հրատարակեց նաև ԺԴ դարի արաբերեն մի համառոտ Վարք, որն ըստ նրա թարգմանված է ղպտերենից: Ն. Մառի հրատարակած ձեռագիրն սկզբում պակասավոր է եղել: Ամբողջական ձեռագիրը հայտնաբերեց և սկզբի պակասող հատվածը հրատարակեց Ա. Տեր-Ղևոնդյանը:

Ագաթանգեղոսի պատմության արաբերեն (ձեռագիրը՝ Սինայի Կա-

---

236 Իպն Խալլիքան, Վեֆայաթ ալ-Այան (անհետացած երևելիներ), թարգմ. Գ. Մըսըլեան, Կահիրե, 1935:

237 Իբն-ի Բատուտա, Օտար աղբյուրները հայերի մասին, 2, քաղեց և թարգմանեց Հ. Աճառյան, Երևան, 1940:

238 Կ. Ղաֆադարյան, Ալքիմիան պատմական Հայաստանում, Երևան, 1940:

239 Յ. Քիւրտեան, Հայ եւ Արաբ Գեղարուեստի Յարաբերութիւնը, Փարիզ, 1932:

240 G. Garitte, Une Vie grecque inedite de Saint Grégoire d'Armenie, Analecta Bollandiana, t. 83, fasc. 3-4, Bruxelles, 1965.

տարինե վանք) ամբողջական թարգմանությունը (կատարված նրա հունարեն թարգմանությունից), որի հայտնաբերման մասին ժամանակին ժ. Գարիթը հողվածով հայտնել էր, հրատարակվեց արաբերեն բնագրով և ուսումնասիրությամբ Ա. Տեր-Ղևոնդյանի կողմից[241]: Ագաթանգեղոսի բնագրերի Վարք կոչված խմբից մի նոր արաբերեն ձեռագիր (Երուսաղեմի ս. Մարկոսի վանքում) լույս ընծայեց Մ. վան էսբրուքը[242]: Շուտով Դամասկոսի հունադավան պատրիարքության շենքում հայտնաբերվեց սրա ասորերեն բնագիրը, որից թարգմանված էր: Ըստ նրա, ասորերենն իր հերթին պետք է հայերենից թարգմանված լինի:

Արաբական կնքագիտության ասպարեզում մի կարևոր գյուտ էր Հյուսիսային Կովկասի Կարաչայ (Կարաչայ-չերքեզական ԻՄ) մարզում 1940 թ. պեղումների ընթացքում հայտնաբերված արաբատառ կնիքը հասարակ քուֆի գրությամբ և «Աշութ իբն Աինբաթ» մակագրությամբ[243]: Վ. Ա. Կրաչկովսկայան գտնում է, որ այն պատկանել է Բագրատունյաց թագավորության հիմնադիր Աշոտ Ա Բագրատունուն, քանզի նրա օրոք դեռ սերտ էին Աբբասյան խալիֆայության հետ հարաբերությունները: Դվինի հնագիտական պեղումների ընթացքում ևս գտնվել են արաբերեն կնքադրոշմներ, որոնք անկասկած առևտրական գործարքների հետ են կապված:

Հայաստանի արաբական շրջանի ուսումնասիրման համար կարևոր են Ա. Ալպոյաճյանի (1879-1962) մի քանի աշխատությունները, ինչպես Կեսարիայի հայոց[244], Մալաթիայի հայոց[245], հայ գաղթականության պատմությունները[246], ինչպես նաև Հայաստանի պատմական սահմանների մասին ուսումնասիրությունը:

Հայ-արաբական առնչությունների բնագավառի մի կարևոր մասն է արաբական երկրներում գտնվող հայ գաղթավայրերի պատմությունը, ինչպես Տ. Սավալանյանցի Երուսաղեմի հայոց[247], Գ. Մըսրլյանի միջնա-

---

[241] **Ա. Տեր-Ղևոնդյան,** Ագաթանգեղոսի արաբական նոր խմբագրությունը, Երևան, 1968:

[242] **M. Van Esbroeck,** Un nouveau témoin du livre d'Agathange, "Revue des Etudes Arméniennes", VIII, Paris, 1971.

[243] **В. А. Крачковская,** Печать Багратида Ашота с арабской надписью, Краткие сообщения института истории материальной культуры, вып. XV, 1946, стр. 112-117.

[244] **Ա. Ալպոյաճեան,** Պատմութիւն հայ Կեսարիոյ, հ. 1-2, Կահիրե, 1937:

[245] **Ա. Ալպոյաճեան,** Պատմութիւն Մալաթիոյ հայոց, Կահիրե, 1961:

[246] **Ա. Ալպոյաճեան,** Պատմութիւն հայ գաղթականութեան, հ. 1-3, Կահիրե, 1941-1961:

[247] **Սաւալանեանց,** Պատմութիւն Երուսաղէմի, հ. 1, Երուսաղէմ, 1931:

դարյան Եգիպտոսի նշանավոր հայերի[248], Ա. Գարտաշյանի, Ա. Ալպոյաճյանի[249] և Հ. Թոփուզյանի եգիպտահայության, Ա. Սյուրմեյանի հալեպահայության[250], Ս. Վարժապետյանի լիբանանահայության[251], Ա. Սանջյանի օսմանյան շրջանի սիրիահայության[252] պատմությունները[253]:

ԺԵ-ԺԹ դարերում արաբական երկրներում (Սիրիա և Լիբանան) ապրող հայերի մշակութային կյանքի մասին հետաքրքրական տեղեկություններ ունի Ա. Կրիմսկին իր «Նոր արաբական գրականության պատմության»[254] մեջ: Այս բնագավառում շատ ավելի մեծ նշանակություն ունի Գ. Գրաֆի քրիստոնյա արաբների մատենագրության պատմության մեջ արաբագիր հայ մատենագիրներին հատկացված բաժինը[255]:

Ետպատերազմյան շրջանում կարևոր նորությունն այն է, որ Հայաստանի պատմության վերաբերյալ մի շարք նոր արաբերեն բնագրեր հրատարակվեցին: Վ. Մինորսկին կարողացավ ձեռք բերել երկու փոքր հատված Մունաջջիմ բաշիի (ԺԷ դար) «Ջամի ալ-տավարիխ» ծավալուն արաբերեն պատմությունից, որի ձեռագրերը փականքի տակ են Կոստանդնուպոլսում: Առաջինը Հայաստանին և արևելյան Անդրկովկասին վերաբերող մի հատված է, ուր խոսվում է Շադդադյանների մասին: Վ. Մինորսկին այն հրատարակեց բնագրով, անգլերեն թարգմանությամբ և լուրջ ուսումնասիրությամբ[256]: Երկրորդը վերաբերում է Շիրվանին (Շարվան) ու Դարբանդին և նույն սկզբունքներով է հրատարակված[257]: Նա անգլերեն թարգմանությամբ հրատարակեց Իբն ալ-Ազրակ ալ-Ֆարիկիի ձեռագրից հատվածներ, որոնց մի մասը լույս ընծայեց անգլիա-

---

[248] Գ. Մըսրլեան, Ականաւոր հայեր Եգիպտոսի մէջ, Կահիրե, 1947:

[249] Ա. Ալպոյաճեան, Արաբական միացեալ հանրապետութեան Եգիպտոսի նահանգը և հայերը, Կահիրե, 1960:

[250] Ա. Սիւրմէեան, Պատմութիւն Հալէպի հայոց, հ. Ա, Հալէպ, 1940, հ. Բ, Պէյրութ, 1946, հ. Գ, Փարիզ, 1950:

[251] Սիսակ Վարժապետեան, Հայերը Լիբանանի մէջ, Պէյրութ, 1951:

[252] A. K. Sanjian, The Armenian Communities in Syria under Ottoman Dominion, Cambridge,1965.

[253] *Արաբական աշխարհում կարևոր դեր կատարած հայ գործիչների, հայկական համայնքների և ընդհանրապես հայ-արաբական բազմաբնույթ կապերի պատմությանը մեծ տեղ է հատկացրել Նիկոլայ Հովհաննիսյանը իր «Արաբական երկրների պատմություն» եռահատոր հիմնարար աշխատության մեջ, որի առաջին երկու հատորներն արդեն հրատարակված են: (Տե՛ս, Նիկոլայ Հովհաննիսյան «Արաբական երկրների պատմություն», Երևան, հ. 1, 2003, հ. 2, 2004):*

[254] А. Е. Крымский, История новой арабской литературы, Москва, 1971.

[255] G. Graf, Geschichte der Christlichen Arabischen Literatur, Vatican, 1951,IV, S. 82-93.

[256] V. Minorsky, Studies in Caucasian History, London, 1953.

[257] V. Minorsky, A History of Sharvan and Darband, Cambridge, 1958.

կան արևելագիտական հանդեսում, իսկ այլ մասը Մունաջջիմ բաշիի վերոհիշյալ առաջին հատվածին նվիրված հատորում[258]: Վ. Մինորսկին մեշհեդյան կոչված հայտնի գրչագրից հրատարակեց Աբու Դուլաֆի (Ժ դար) աշխարհագրական երկը[259], ուր մատենագիրը հետաքրքրական տվյալներ է հաղորդում հայ եկեղեցական և աշխարհիկ երաժշտության ու սովորույթների մասին:

Կարևոր աշխատանք է կատարված նաև արաբերեն աղբյուրներից հայերեն թարգմանությունների ասպարեզում: Ա. Ադամյանը թարգմանել է հատվածներ Բալազուրիից և Յակուբիից[260]: Այս ասպարեզում հատկապես մեծ է Հ. Նալբանդյանի վաստակը, որը թարգմանել է Յակուտի (ԺԳ դ.) աշխարհագրական բառարանից, Աբու-լ-Ֆիդայի (ԺԴ դ.) պատմությունից և Իբն Շադդադի (ԺԳ դ.) «Սալահ ալ-Դինի կենսագրությունից» Հայաստանին և հայերին վերաբերյալ հատվածներ[261]: Ա. Տեր-Ղևոնդյանը թարգմանել է Մունաջջիմ Բաշիի այն հատվածը, որը վերաբերում է Դվինի ու Գանձակի Շադդադյաններին[262], ալ-Ֆարիկիից մինչ այժմ հրատարակված հատվածները[263] և Իբն ալ-Ասիրի երկերը «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարում, որտեղ հրատարակվել է նաև Հ. Նալբանդյանի վերոհիշյալ հատորը:

Արաբական աղբյուրների տեղեկությունների լայն ընդգրկումով են գրված Մ. Կանարի (1882-1982) Վերին Միջագետքի ու Սիրիայի Համդանյանների և Հայաստանի հարաբերություններին նվիրված աշխատությունները[264] և բազմաթիվ հայագիտական թեքումով կամ նրան առնչվող հոդվածները: Հիշատակության արժանի են նրա հոդվածները

---

[258] V. Minorsky, Caucasica in the History of Mayyafariqin, Bulletin of the School of Oriental and African Studies, XIII, 1949. Idem, Studies in Caucasian History, London, 1953, p. 86-99.

[259] "Abu Dulaf Misar ibn Muhalhil's Travels in Iran (circa A. D. 950), Arabic text", trans., comm., by V. Minorsky. Cairo, 1955.

[260] Ա. Ադամեան, Պելաաիորի Արաբ պատմագիրը և հայերը, Բազմավէպ, 1953, էջ 77-82, 130-134: Նույնի, Եակուբի արաբ պատմագիր և հայերը, Բազմավէպ, 1957, էջ 153-159, 207-212, 262-266:1958, էջ 96-104:

[261] Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, կազմեց Հ. Թ. Նալբանդյան, Երևան, 1965:

[262] Ա. Տեր-Ղևոնդյան, Մունաջջիմ Բաշիի 11-12-րդ դարերի անանուն աղբյուրը Դվինի և Գանձակի Շադդադյանների մասին, Բանբեր Մատենադարանի, 1962, 6, էջ 471-486:*Տես նաև Ա. Տեր-Ղևոնդյան, Հոդվածների ժողովածու, էջ 70-85:*

[263] Ա. Տեր-Ղևոնդյան, Ֆարիկիի «Նփրկերտի պատմությունը» (12-րդ դար) Հյուսիսային Հայաստանի դեպքերի մասին, «Մերձավոր և Միջին Արևելքի երկրներ և ժողովուրդներ», Երևան, 6, Արաբական երկրներ, 1974, էջ 195-212: *Տես նաև Ա. Տեր-Ղևոնդյան, Հոդվածների ժողովածու, էջ 266-283:*

[264] M. Canard, Les Hamdanides et l'Armenie, Annales de l'Inst. d'Et. Or., Alger, VII, 1948, Histoire de la dynastie des Hamdanides de Jazira et de Syrie, Paris, 1951.

Ֆաթիմյան Եգիպտոսի հայ վեզիրների և հատկապես Վահրամ Պահլավունու մասին[265]: Նույն բնույթի են Հ. Նալբանդյանի Հայաստանում արաբների հարկային քաղաքականության[266] և ոստիկանների մասին[267] հոդվածները, Ա. Տեր-Ղևոնդյանի «Արաբական ամիրությունները Բագրատունյաց Հայաստանում»[268] և «Հայաստանն ու արաբական խալիֆայությունը»[269] մենագրությունները և արաբ հեղինակ Ադիբ ալ-Սայյիդի «Հայաստանը արաբների պատմության մեջ» աշխատությունը[270]: Հայ-արաբական քաղաքական առնչությունների ուսումնասիրման համար կարևոր է Գ. Միքայելյանի մենագրությունը Կիլիկյան Հայաստանի պատմության մասին[271]:

Այս շրջանում շատեր զբաղվեցին հայ-արաբական մշակութային առնչություններով: Ս. Ճեվահիրճյանը արաբամահմեդական ճարտարապետության մեջ տեսնում է բյուզանդահայկական ազդեցություն, որն ընդունված է նաև այլ ուսումնասիրողների կողմից: Հայ ճարտարապետների դերը Եգիպտոսի Ֆաթիմյան շրջանի ճարտարապետության մեջ ընդգծում է նաև Ա. Օրագյանը:

Արաբական տաղաչափությանը և նշանավոր արաբ բանաստեղծ Մուտանաբբիին քաջ ծանոթ է եղել հայ մեծանուն մատենագիր Գրիգոր Մագիստրոս Պահլավունին, որը նշում է, թե նախ բազում ջանքեր թափելով սովորել է արաբների գիրն ու լեզուն և ապա տաղաչափական արվեստը, որին անդրադարձել է Բաբկեն Չուգասզյանը: Պահլավունի իշխանը անձնական կապեր է ունեցել արաբ ամիրների (Մանուչե, Իբրահիմ) հետ և սրանց նամակագրությանն է անդրադարձել Հ. Թորոսյանը:

Կարևոր է հայերենում գտնվող արաբական փոխառությունների հարցը, որով առաջին անգամ զբաղվել է Հ. Հյուբշմանը[272]: Մեծանուն հայագետ Հ. Աճառյանն իր հայերենի պատմությանը նվիրված մենա-

---

[265] M. Canard, Un vizir chretien a I'epoque fatimide: l'Armenien Bahram. Annales de l'Institut d'Etudes Orientales, t. XII, Alger, 1954.

[266] Հ. Նալբանդյան, Արաբների հարկային քաղաքականությունը Հայաստանում, ԳԱ Տեղեկագիր (հասարակական գիտությունների),1956, 12:

[267] Հ. Նալբանդյան, Արաբ ոստիկանները Հայաստանում, ԳԱ Տեղեկագիր (հասարակական գիտությունների),1958, 8:

[268] Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երևան, 1965:

[269] А. Н. Тер-Гевондян, Армения и Арабский халифат, Ереван, 1977.

[270] Adīb al-Sayyid, Arminiya fi l-Tarikh al-Arabi, Halab, 1972.

[271] Г. Г. Микаелян, История Киликийского армянского государства, Ереван, 1952.

[272] H. Hübschmann, Die semitischen Lehnworter im Armenischen, Zeitschrift der Deutschen Morgenlandischen Geselschaft, 1892.

գրության[273] մեջ հատուկ գլուխ է հատկացրել արաբական փոխառություններին, որոնց թիվը հասնում է 702-ի: Այս հարցին անդրադարձել են նաև Մ. Մուրադյանը և Ն. Մկրտչյանը[274]:

Միջնադարյան հայ պատմագրությունը հարուստ տեղեկություններ ունի արաբների պատմության մասին, հատկապես Օմայան, Աբբասյան խալիֆայությունների և Եգիպտոսի սուլթանության մասին: Հատկապես կարևոր են պատմիչների տեղեկությունները Մուհամմադի կյանքի և գործունեության մասին, որի մատենագիտությունը տրված է Ա. Տեր-Ղևոնդյանի կողմից[275]:

Ա. Դարյանն իր բովանդակալից գրքույկով[276] փորձեց ի մի բերել հայ-արաբական միջնադարյան առնչություններին վերաբերող նյութերը: Կարևոր հայտնագործություն է այն, որ Ժ դարի արաբական Իխուան ալ-Սաֆայի (մաքրության եղբայրներ) «Թղթեր» կոչված հանրագիտարանից որոշ մասեր ԺԳ դարի հայ ականավոր մատենագիր Հովհաննես պլուզ Երզնկացին հայերեն է թարգմանել: Այդ մասին հետաքրքրական հոդված հրապարակեց Ս. Պարսումյան-Տատոյանը[277]:

Վերջին տարիներին լույս ընծայվեցին բնագրեր, որոնք կարևոր նյութ են պարունակում գիտական առնչությունների վերաբերյալ: Հայ բժշկության մասին իր պրպտումների ընթացքում Ս. Վարդանյանը լույս ընծայեց Աբու Սաիդի մարդակազմությունը, որն ունի արաբական փոխառություններ և Իշոխի գիրքը բնության մասին[278], ուր ակներև է առնչությունը արաբական մշակույթին: Հատկապես հետաքրքրական է արաբ աշխարհագրության մեջ հայտնի 7 կլիմաների (եօն կլիմ) հիշատակումը: Իր տեսակի մեջ առաջինն է Բ. Չուգասզյանի լույս ընծայած ձիաբուժության կարևոր երկը[279], որն առնչվում է արաբական ձիաբուժությանը, բայց հայ հեղինակների գործ է, շարադրված Կիլիկյան Հայաստանում:

«Հազար ու մի գիշեր» արաբական ժողովածուի մաս կազմող և միջ-

---

[273] Հ. Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, մ. 2, Երևան, 1951:

[274] *Տե՛ս, Н. Мкртчян, Семитские языки и армянский, Ереван, 2005.*

[275] A. Ter-Ghevondian, Auteurs armeniens chretiens, Bibliographie du dialogue islamo-chretien, Islamochristiana, 6, Roma, 1980, p. 279-287.

[276] Ա. Դարեան, Ակնարկ հայ-արաբ մշակութային կապերուն վրայ, Պէյրութ, 1972:

[277] Ս. Պարսումեան-Տատոյեան, Յովհաննէս Պլուզ Երզնկացիի «Ի Տաճկաց Իմաստասիրաց Գրոց քաղեալ Բանք»ին Աղբիւրը՝ «Րասա'էլ Իխուան Ալ-Սաֆա», Հայկազեան Հայագիտական Հանդէս, Պէյրութ, հ. Զ, 1977-1978, էջ 51-70:

[278] Իշօխ, Գիրք ի վերայ բնութեան, քննական բնագիրը, թարգմ. գրաբարից ռուսերեն և առաջաբանը՝ Ս. Վարդանյանի, Երևան, 1979:

[279] Բժշկարան ձիոյ և առհասարակ գրաստնոյ, ԺԳ դար, աշխ. Բ. Լ. Չուգասզյանի, Երևան, 1980:

նադարյան հայ արձակի մեջ հայտնի «Պղնձե քաղաքի պատմությունը» զրույցի թարգմանության ժամանակի հարցը նոր մեկնաբանություն ստացավ Ն. Ակինյանի կողմից իր հայտնաբերած բնագրի ուսումնասիրման հիման վրա[280]:

Հ. Անասյանի «Հայկական մատենագիտություն» կոչված հայագիտական ճոխ հանրագիտարանում նշված են միջնադարից հասած բնագրեր, որոնք առնչվում են հայ-արաբական բանասիրության բնագավառին, ինչպես՝ Ախրապատին, Աղավետ (ախտարական), Աղեկախոս (երազահան) և այլ նյութեր[281], դրանք կարոտ են ուսումնասիրման:

Բավական հաջողություններ արձանագրվեցին դրամագիտության բնագավառում: Ա. Բիկովը 330 (941/942) հիջրի թվականին Դվինում թողարկված մի արաբատառ դրամի ուսումնասիրման միջոցով ճշտումներ կատարեց Դվինի և Բագրատունյաց Հայաստանի պատմության որոշ հարցերում:

Կիլիկյան Հայաստանի թագավոր Հեթում Ա-ի (1226-1269) երկլեզվյան (հայերեն-արաբերեն) դրամներին (Հեթում-Քայկուբադ, Հեթում-Քայխոսրով), որոնք Սիս մայրաքաղաքում են թողարկված, շատերն են (ինչպես Վ. Լանգլուա) անդրադարձել: Վերջերս այդ հարցով զբաղվեցին Պ. Պտուկյանը և հատկապես Պ. Սապպաղյանը[282]: Վերջինս ապացուցում է, որ ճիշտ չէ նախորդ ուսումնասիրողներից ոմանց կարծիքը, թե այդ դրամների առկայությունն արդյունք է նրա կախմանը Իկոնիայի սուլթանությունից: Նա զարգացնում է Կ. Սիպիլյանի[283] այն դրույթը, թե դրամները երկու լեզվով են թողարկված առևտրական հարաբերությունների աշխուժացման նպատակով:

Հայաստանի վերաբերյալ արաբական դրամների ուսումնասիրման ասպարեզում մեծ վաստակ ունի Խ. Մուշեղյանը, որի «Դվինի դրամական շրջանառությունը դրամագիտական տվյալներով» (ռուսերեն) մենագրությունը[284] հարուստ նյութեր է պարունակում Հայաստանի պատ-

---

280 Ն. Ակինեան, Զրոյց Պղնձէ քաղաքի, Հանդէս ամսօրեայ, Վիեննա, 1958, 1-4: *Տես նաև Հ. Մկրտչյան, Արաբական գեղարվեստական արձակի նմուշների հայ միջնադարյան թարգմանությունները, Երևան, 1998:*

281 Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, Երևան, h. Ա, 1959, h. Բ, 1976:

282 Պ. Սապպաղեան, Հեթում Ա-ի Հեթում-Զապել և երկլեզուեան դրամներու մասին, Հայկազեան հայագիտական հանդէս, h. Ը, Պէյրութ,1980: Տես նաև նույն հեղինակի հոդվածների ժողովածուն՝ Պ. Սապպաղեան, Դրամագիտական հարցեր, Պէյրութ,1986:

283 Կ. Սիպիլեան, Դասաւորութիւն Ռուբէնեան դրամոց, Վիեննա, 1892, Հավելված, էջ 19-20:

284 Х. А. Мушегян, Денежное обращение Двина по нумизматическим данным, Ереван, 1962.

մության տարբեր շրջանների մասին: Արժեքավոր է նրա ծավալուն հոդվածը Արմինիա նահանգում Աբբասյան շրջանում թողարկված դրամների մասին[285] և Հավելվածը, որի նյութերի հիման վրա Ա. Տեր-Ղևոնդյանը կազմեց Արմինիայի կառավարիչների (ոստիկանների) նոր ցուցակը[286]:

Պ. Սապպաղյանը իր «Հայ-արաբական դրամագիտության մի քանի հարցերու շուրջը» ծավալուն հոդվածում[287] ընդգծելով նոր հրատարակված դրամագիտական աշխատությունների նշանակությունը (Խ. Մուշեղյան) միաժամանակ մեջ է բերում Արմինիայում թողարկված և մինչ այդ անհայտ մնացած դրամների լրացուցիչ ցուցակը (26 դրամ):

Հետաքրքրական աշխատանքներ են կատարվել նաև վիմագրության ասպարեզում: Վ. Ա. Կրաչկովսկայան հրատարակեց Ն. Մառի Անիում կատարած պեղումների ընթացքում հայտնաբերված մի արաբերեն արձանագրություն (քուֆի գրաձևով), որը գտնվել է Անիի միջնաբերդի դռան վերևում և գրված է ԺԲ դարում Շադդադյանների կողմից: Դեռևս 1935 թվականին Ն. Մառի հիշատակին նվիրված ժողովածուի մեջ Ի. Յու. Կրաչկովսկին և նա հրատարակել էին մի հոդված Մանուչեի մզկիթի (աշտարակի) վրա Մանուչեի արաբերեն արձանագրության մասին[288]: Հ. Փափազյանը լույս ընծայեց Արաքսի հովտում իշխող Փիր Հուսայնի 1413 թ. արձանագրությունը դամբարանի վրա, ուր գուցե նրա հայրը՝ ամիր Սաադն է թաղված[289]:

Միջնադարում արաբերենը եղել է միջազգային լեզու և պատահական չէ, որ մեզ են հասել հայ տիրակալների թողած արաբերեն արձանագրություններ: Հայոց արքա Սմբատ Բ (977-990) Բագրատունին Հաղբատի վանքի Ս. Նշան եկեղեցու գմբեթի վրա գտնվող իր քանդակի ապարոշին փորագրել է տվել իր տիտղոսը «Շահնշահ Անիի թագավոր»[290], իսկ Հյուսիսային Հայաստանի իշխանապետության տիրա-

---

285 Խ. Մուշեղյան, Աբբասյան դրամների թողարկումը Արմինիա նահանգում, VIII-IX դարերում, Պատմաբանասիրական հանդես, 1973, 4 :

286 Ա. Տեր-Ղևոնդյան, Արմինիայի ոստիկանների ժամանակագրությունը, Պատմաբանասիրական հանդես, 1977, 1, էջ 117-128:

287 Պ. Սապպաղեան, Հայ-արաբական դրամագիտութեան մէկ քանի հարցերու շուրջը, «Հայկազեան հայագիտական հանդէս», հ. Ե, Պէյրութ, 1974, էջ 161-181:

288 В. А. Крачковская, И. Ю. Крачковский, Из арабской эпиграфики в Ани (надпись на мечети Манучехра), "АН СССР — академику Н. Я. Марру", Москва-Ленинград, 1935.

289 А. Д. Папазян, Арабская надпись на гробнице туркменских эмиров в селе Аргаванд, "Ближний и Средний Восток", Москва, 1962.

290 Ա. Տեր-Ղևոնդյան, Հաղբատի արաբերեն արձանագրությունը և Բագրատունի թագավորների տիտղոսները, «Լրաբեր հասարակական գիտությունների», 1979, 1, էջ 73-80: *Տես նաև Ա. Տեր-Ղևոնդյան, Հոդվածների ժողովածու, Երևան, 2003, էջ 436-443:*

կալներ Զաքարիան և Իվանեն Անբերդ ամրոցի ազատագրումից (1196) հետո արաբերեն արձանագրություն են թողել «Ամիրսպասալար Զաքարիա, Իվանա Արծրունի» բովանդակությամբ[291]:

Երկու արձանագրություն է հրատարակել Ա. Խաչատրյանը Թալինում Շադդադյանների թողած 570 (1174) հիջրի թվականի արձանագրությունը[292] և այն եռալեզու (արաբերեն, պարսկերեն, հայերեն) վիմագիր գրվածքը, որ գտնվում է Եղեգիսում[293]:

Վերջապես կուզենայինք հիշել «Իսլամի հանրագիտարանի» թե առաջին, թե երկրորդ հրատարակության մեջ Հայաստանին վերաբերող հոդվածները: Առաջին հրատարակության մեջ, բացի Մ. Շտրեքի «Հայաստան» ծավալուն գրվածքից, հոդվածների մի ամբողջ շարք ունի Վ. Բարթոլդը միջնադարյան Հայաստանի քաղաքների մասին: Նոր հրատարակության մեջ Մ. Կանարն ունի «Արմինիա» ծավալուն հոդվածը[294] և բազմաթիվ այլ հոդվածներ (Բահրամ ալ-Արմանի՝ Վահրամ Պահլավունի և այլն):

Դեռևս անցյալ դարի վերջից սկսել են հրատարակվել հայերեն-արաբերեն և արաբերեն-հայերեն բառարաններ: Ս. Դարբինյանը 1896 թվականին Կահիրեում լույս է ընծայում հայերեն-արաբերեն բառարան, ուր արաբերեն բառերը հայատառ են գրված: Ապա երկար ընդմիջումից հետո հիսնական թվականներին Հալեպում լույս են տեսնում մի քանի բառարաններ՝ դարձյալ հայերեն-արաբերեն՝ Հ. Նազարյան, Հ. Հովսեփյան և այլոց (Հ. Շատ, Ա. Մաթար) և Բ. Չաթոյանի աշխատությունները: Հատկանշական է, որ փոխանակ սկսելու արաբերեն-հայերեն բառարաններով, առաջին հեղինակները կազմում են հայերեն-արաբերեն բառգրքեր, հավանաբար արաբական երկրներում հաստատված հայության արաբերեն արտահայտվելու հարցում օգնելու նպատակով:

Նույն ժամանակ արդեն արաբերեն-հայերեն բառարաններ են հրատարակվում Բեյրութում՝ Հ. Թովմասյանի «Մշակ» մատենաշարի և Ժ. Թազպազյանի կողմից: Վերջինս կազմում է նաև հայերեն-արաբերեն

---

[291] Ա. Տեր-Ղևոնդյան, Զաքարիայի և Իվանեի արաբատառ արձանագրությունը Անբերդում, «Պատմաբանասիրական հանդես», 1971, 1, էջ 185-187: *Տե՛ս նաև Ա. Տեր-Ղևոնդյան, Հոդվածների ժողովածու, Երևան, 2003, էջ 206-208:*

[292] А. А. Хачатрян, Нижнеталинская арабская надпись 570/1174 г., «Պատմաբանասիրական հանդես», 1979, 4.

[293] А. А. Хачатрян, Трехъязычная надпись из Елегиса, Кавказ и Византия, вып. 3, Ереван, 1982. Տես նաև А. А. Хачатрян, Корпус арабских надписей Армении, VIII-XVI вв., вып. 1, Ереван, 1987. *Տե՛ս նաև А. А. Хачатрян, Корпус арабских надписей Армении. VIII — XVI вв., вып. I, Ереван, 1987:*

[294] *M. Canard. Arminiya (I:634a), Encyclopaedia of Islam, CD-ROM edition.*

բառարան: Այս բոլորի մեջ հատկապես աչքի են ընկնում Ժ. Թազպազյանի բառարանները: Երևանում կազմվել է նաև Ա. Չուլճյանի և Հ. Սարգսյանի արաբերեն-հայերեն բառարանը, որը լույս է տեսել Բեյրութում:

Մեր օրերում Երևանում հրատարակվել են[295] արաբերեն և արաբատառ բնագրեր, որոնցից հատկապես պետք է հիշատակել Հ. Փափազյանի հրատարակած Մատենադարանի պարսկերեն վավերագրերի շարքը[296], որոնց մեջ կան հենց արաբերեն գրված վավերագրեր և կամ լրիվ արաբերեն տողեր պարսկերեն վավերագրերի մեջ: Որպես արաբերեն բնագրերի հրատարակություն կարելի է նշել Ա. Տեր-Ղևոնդյանի վերոհիշյալ Ագաթանգեղոսի ամբողջական բնագրի միջնադարյան արաբերեն թարգմանությունը[297] և Հ. Ժամկոչյանի՝ Իբն ալ-Ֆակիհի (Թ դար) աշխարհագրական երկի ընդարձակ խմբագրության որոշ հատվածների լույս ընծայումը, ըստ մեշհեդյան ձեռագրի[298]:

Հայ-արաբական բանասիրությունը, որպես հայագիտության օժանդակ ճյուղերից մեկը, դեռ կարող է օրըստօրե զարգանալ, քանզի արաբագիտության և հայագիտության ընդհանուր առաջընթացին առընթեր բնականաբար պետք է առավել ևս ուսումնասիրվեն այս երկու բնագավառներին առնչվող հարցերը:

---

[295] *Արամ Տեր-Ղևոնդյանը այս գրքի ներածությունը գրել է 1980-ականների կեսերին, ուստի, բնականաբար, այստեղ ընդգրկված չեն վերջին քսանամյակում հրատարակված ուսումնասիրությունները: Մեր կողմից փորձել ենք որոշ մասնակի լրացումներ կատարել, որոնք տպված են շեղատառերով (կազմողի կողմից):*

[296] Մատենադարանի պարսկերեն վավերագրերը, Հրովարտակներ, պրակ Ա (ԺԵ-ԺԶ դդ.), կազմեց Հ. Դ. Փափազյան, Երևան, 1958, պրակ Բ, Երևան, 1959:

Մատենադարանի պարսկերեն վավերագրերը, Կալվածագրեր, պրակ Ա, կազմեց Հ. Դ. Փափազյան, Երևան, 1968:

[297] Ա. Տեր-Ղևոնդյան, Ագաթանգեղոսի արաբական նոր խմբագրությունը, Երևան, 1968: Նույնի, Ագաթանգեղոսի արաբական խմբագրության (Վարք) նորահայտ ամբողջական բնագիրը, «Պատմաբանասիրական հանդես», 1, 1973: *Տե՛ս նաև Ա. Տեր-Ղևոնդյան, Հոդվածների ժողովածու, Երևան, 2003, էջ 237-265:*

[298] Ибн ал-Факих, Ахбар ал-Булдан (Известия о странах), Введение, перевод с арабского, издание текста и комментарии А. С. Жамкочяна, Ереван, 1979.

## ԱԲՈՒ ՅՈՒՍՈՒՖ (731 – 798)

*Յակուբ իբն Իբրահիմ ալ-Անսարի ալ-Քուֆի Աբու Յուսուֆը ականավոր կրոնական իրավագետ էր, հանիֆիական կրոնա-իրավագիտական դպրոցի (մաղհաբի) հիմնադիրներից մեկը: Նա ուսանել է Քուփայում ու Մադինայում, որտեղ նրա ուսուցիչներն են եղել Աբու Հանիֆան, Մալիք իբն Անասը, ալ-Լայս իբն Սաադը և ուրիշներ: Հետագայում ապրել է Քուփայում, մինչև որ դատավոր նշանակվեց Բաղդադում, որտեղ նա վարեց այդ պաշտոնը մինչև իր մահը՝ 798 թվականին: Տեղեկություն կա, որ նա իր կյանքի ընթացքում այցելել է նաև Բասրա քաղաքը: Աբու Յուսուֆը ժամանակի ընթացքում դարձավ Հարուն ալ-Ռաշիդ խալիֆայի մերձավոր և վստահելի անձանցից մեկը, այն աստիճան, որ խալիֆան, իսլամի պատմության մեջ առաջին անգամ, նրան շնորհեց Դատավորաց դատավոր (կադի լ-կուդատ) կոչումը: Սա մի պատվավոր տիտղոս էր և որևէ կոնկրետ ֆունկցիա չէր նախատեսում: Միաժամանակ հատկանշական է, որ Հարուն ալ-Ռաշիդը նրա հետ խորհրդակցում էր ոչ միայն մահմեդական իրավունքի, այլև ֆինանսական քաղաքականության և նման այլ հարցերում: Ավելին, նրա հետ քննարկում էր խալիֆայության տարբեր մասերում դատավորների նշանակման հարցը:*

*Հարուն ալ-Ռաշիդի գլխավոր դատավոր Աբու Յուսուֆի «Հարկերի մատյանը» (Քիտաբ ալ-Խարաջ) կազմվել է խալիֆայի պատվերով: Այս երկը իր անվանումից ավելի լայն բովանդակություն ունի, քանի որ անդրադառնում է ողջ կառավարման ոլորտին՝ ջրային իրավունքից մինչև ռազմական գործը:*

*Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. Abu Yusuf, Kitab al-Kharaj, Cairo, 1302/1885. (Abu Yusuf, J. Schacht, EOI, CD-ROM, (I: 164a), X. A. P. Гибб, Арабская литература, Москва, 1960, стр. 43)*

*Տե՛ս նաև. - Edmond Fagnan, Livre de l' impot foncier, Paris, P. Geuthner, 1921, 352 p. Абу Йусуф, Китаб ал-Харадж, С-Пб, 2001, 399 с.*

## ԱԲՈՒ ՅՈՒՍՈՒՖ

## ՀԱՐԿԵՐԻ ՄԱՏՅԱՆ
## (ՔԻՏԱԲ ԱԼ-ԽԱՐԱՋ)

### ԳԼՈՒԽ ԵԿԱՄՈՒՏԻ (ԱՎԱՐ) ՈՒ ՀՈՂԱՀԱՐԿԻ (ԽԱՐԱՋ) ՄԱՍԻՆ

*էջ 13–15*

*Հարցրել են Բիլալն ու իր բարեկամները Օմար իբն ալ-Խաթթաբ[1] [խալիֆայից], թե արդյոք պետք չէ՞ բաժանել այն, ինչ Ալլահը որպես եկամուտ (ավար)* տվել է մահմեդականներին Իրաքում և Ասորիքում (Շամ) և մեր հողը չպե՞տք է բաժանել [որպես սեփականություն] նվաճողների միջև, ինչպես բաժանվում է զորքի ռազմավարը: Օմարն այդ բանը մերժեց և ասաց՝ Ալլահը ձեզանից հետո [սերունդներին] էլ է մասնակից դարձրել այդ եկամուտին, ու եթե հողը բաժանեմ, ձեզանից հետո եկողներին ոչինչ չի մնա, իսկ եթե հողերը մնան ինչպես որ կան, նույնիսկ [հեռավոր] Սանաայի[2] հովիվը իր բաժինը կունենա այդ եկամուտից առանց դրա համար կարմրելու:*

*Ինձ պատմել են մեր շեյխերից (ծերունիներից) ոմանք լսելով Եզիդ իբն Աբու Հաբիբից, թե Օմարը գրել է Սաադ [իբն Աբու Վակկասին], երբ նվաճել էր Իրաքը, ասելով՝ ստացել եմ քո նամակը, որի մեջ հարցնում ես իմ կարծիքն այն մասին, թե մարդիկ (զորականները) խնդրել են քեզ, որ հողը բաժանես նրանց միջև որպես ռազմավար, քանի որ Ալլահն այն տվել է իբրև եկամուտ: Երբ ստանաս նամակս, թե ինչքան անասուն (մալ) ու հարստություն է հավաքվել ճամբարում և բաժանիր կռվի մասնակիցների միջև: Սակայն հողերն ու գետերը (ջրերը) թող մշակողների ձեռքում, որպեսզի մահմեդականները դրանցից հասույթ ստանան: Եթե դու [հողերը] բաժանես կռվի մասնակիցներին, ապա հետագա սերնդին ոչինչ չի մնա:*

*Ինձ պատմել են Մադինա[3] քաղաքի մեկից ավելի գիտուններ, թե երբ Սաադ իբն Աբու Վակկասի ղեկավարած Իրաքի զորքից [ներկայացուցիչներ] եկան Օմար իբն ալ-Խաթթաբի մոտ, վերջինս խորհրդակցեց Մուհամմադի[4] մտերիմների հետ դիվաններ կազմակերպելու ու հողը բաժանելու հարցերի շուրջը, քանզի Ալլահը որպես եկամուտ մահմեդականներին տվել էր Իրաքն ու Ասորիքը: Մարդիկ*

---

** Խոսքը Ֆայի մասին է:*

այդ մասին խոսեցին ու կամեցան, որ իրենց իրավունքը, այսինքն նվաճված հողերը բաժանվեն ու տրվեն (իբրև սեփականություն): Սակայն Օմարն ասաց՝ իսկ ինչ կլինի մահմեդականների եկող (սերունդների) վիճակը, չէ որ նրանք կտեսնեն, որ հողն իր գեղջուկներով (ուլուջ) բաժանվել է, դարձել սերնդե սերունդ ժառանգական սեփականություն: Սա սխալ կարծիք է: Հարցրեց Աբդ ալ-Ռահման իբն Աուֆը՝ իսկ ո՞րն է ճիշտ կարծիքը՝ չէ որ Ալլահը որպես եկամուտ տվել է նրանց (նվաճողներին) այդ հողն իր գեղջուկներով: Պատասխանել է Օմարը՝ այնպես չէ ինչպես ասում ես, համաձայն չեմ. Ալլահը վկա, որ ինձանից հետո հազիվ թե նվաճվեն այնպիսի երկրներ, որ մեծ հարստություն ունեն, նույնիսկ գուցե նվաճվեն երկրներ, որոնք մահմեդականների վրա բեռ կլինեն: Եթե բաժանեմ Ասորիքի ու Իրաքի հողերը իրենց գեղջուկներով, ապա ինչպես կարելի կլինի ապահովել սահմանային ամրությունների (սուղուր)[5] ծախսերը և ոչինչ չի մնա հաջորդ սերնդին, այրիներին այս երկրում, ինչպես նաև Ասորիքում և Իրաքում:

Իսկ նրանք (զորականները) մեղադրեցին Օմարին ասելով, թե զրկում ես մեզ այն եկամուտից, որն Ալլահը հնարավորություն է տվել նվաճել մեր սրերով և դա այնպիսի մարդկանց օգտին է, որոնք ոչ մասնակցել են կռիվներին, ոչ տեսել և նրանց որդիներն ու թոռները նույնպես չեն մասնակցել:

Ասաց (Օմարը)՝ լսեցիք այս մարդկանց խոսքը, թե անիրավություն եմ անել, իսկ ինձ Ալլահը թող թույլ չտա որ անիրավություն գործեմ: Ես ըմբռնում կլինեմ, եթե անիրավությամբ մեկի ունեցվածքը մյուսին տամ: Սակայն ես զտնում եմ, որ այլևս ոչինչ չի մնում նվաճելու Խոսրովի[6] (Քիսրա) հողերը գրավելուց հետո: Ալլահը մեզ ավար է տվել նրա ունեցվածքը, հողերը և գեղջուկները: Ավար ընկած ունեցվածքը ես բաժանեցի մարդկանց (ռազմիկներին)՝ ինձ վերցնելով մեկ հինգերորդը: Բայց հողերը իրենց գեղջուկներով որոշեցի թողնել, նրանց վրա հողահարկ (խարաջ) նշանակելով, իսկ նրանց վզին՝ գլխահարկ (ջիզիա), որը պարտավոր են վճարել: Այսպիսով, այդ հողերը կդառնան եկամուտի աղբյուր մահմեդականների թե՛ ռազմիկների, թե՛ որդիների ու նրանցից հետո եկողների համար: Չե՞ք տեսնում, որ սահմանային ամրությունները կարիք ունեն ռազմիկների, որպեսզի այնտեղ հաստատվեն: Չե՞ք մտածում, որ այս խոշոր քաղաքները (երկրները), ինչպես Ասորիքը, Վերին Միջագետքը (Ջազիրա), Քուֆան, Բասրան ու Եգիպտոսը կարիք ունեն, որ այնտեղ զորք կուտակվի և ապահովվի ռոճիկներով: Որտեղի՞ց կարելի կլինի այդ բոլորը հասցնել, եթե հողերն ու գեղջուկները բաժանվեն: Ամենքը միաբերան ասացին՝ ճիշտ է քո կարծիքը:

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԻ (ԱՀԼ ԱԼ-ՀԱՐԲ) ԵՎ ԱՆԱՊԱՏԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐՈՆՔ ՍԱՀՄԵԴԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՆ ԸՆԴՈՒՆՈՒՄ ՊԱՀՊԱՆԵԼՈՒ ՀՈՂԵՐԸ ԵՎ ՈՒՆԵՑՎԱԾՔԸ

էջ 35–36

Հարցրել ես ով իշխանդ Հավատացյալոց[7], պատերազմի երկրի մարդկանց մասին, որոնք ընդունել են մահմեդականությունը իրենց անձերը, հողերը պահպանելու պայմանով և թե ինչ է օրենքն այդ մասին:

Նրանց կյանքը երաշխավորված է, իսկ այն ինչ ունեցել են նախքան մահմեդականանալը, ինչպես ունեցվածքը, ապա իրենցն է, նույնպես և հողերն իրենց [սեփականությունն]* են և դա տասանորդ[8] վճարող հող է:

Նույնը և անապատի բնակիչների (բեդևի) մասին, որոնք մահմեդականությունն ընդունելով պահպանում են իրենց ջրերը, երկիրը, որը մնում է որպես նրանց [սեփականությունը]: Նրանց հողը նույնպես տասանորդային հող է (արդ ուշր), որից նրանց չի կարելի հեռացնել և նրանք կարող են այն ժառանգել և պայմանագրով վաճառել: Այսպես է նաև ամեն մի երկիր, որի ժողովուրդը մահմեդականացել է և իր ամեն ունեցածը [սեփականություն] է:

Իսկ ամեն մի հեթանոս (շիրք)[9] ժողովուրդ, որի հետ իմամը (խալիֆան) հաշտության պայմանագիր է կնքել առ այն, որ ընդունելով նրա իշխանությունը և բաժանումները վճարի հողահարկ (խարաջ), ապա դրանք [այդ ժողովրդին պատկանող մարդիկ] զիմմեր (հովանավորյալներ) են[10], (ահլ զիմմա), իսկ նրանց հողը հողահարկային (արդ խարաջ) է, նրանցից [հարկ] կվերցվի այնքան, ինչքան որ հաշտության պայմանագրում նշված է, սակայն դա պետք է կատարվի բարեխղճորեն, առանց ծանրաբեռնելու ավելի քան որոշված է:

Ամեն մի հող, որ իմամը բռնի ուժով գրավել է, կարող է բաժանել նվաճող ռազմիկների միջև: Դա կանի ըստ իր ցանկության և նա իրավասու է: Այդ հողը կկոչվի տասանորդային հող (արզ ուշր): Սակայն եթե չկամենցավ բաժանել այդ հողը և հարմար գտավ այն թողնել [ոչ մահմեդական] տեղական ժողովրդի ձեռքում, ինչպես արեց Օմար իբն ալ-Խաթթաբը Սավադում[11], ապա նա իրավունք ունի այդպես վարվելու: Դա կլինի հողահարկային հող և դրանից հետո չպետք է հետ վերցնի նրանցից: Դա նրանց սեփականությունն (մուլք)[12] է, որը նրանք կժառանգեն և կամ պայմանագրով կվաճառեն: Նրանց վրա հողահարկ է դրվում, և ավելին, որը նրանց ուժից վեր է, չպետք է պահանջվի:

---

* Համաձայն իսլամական օրենքի հողը պատկանում է Ալլահին, իսկ մարդկանց այն տրվում է օգտագործելու համար:

## ՏԱՍԱՆՈՐԴԱՑԻՆ ՀՈՂԻ (ԱՐԴ ԱԼ-ՈՒՇՐ) ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՀՈՂԱՀԱՐԿԱՅԻՆ ՀՈՂԻՑ (ԱՐԴ ԱԼ-ԽԱՐԱՋ)

*էջ 39*

*Իսկ ինչ վերաբերում է քո այն հարցին, ով իշխանդ հավատացելոց, թե ինչպիսին է սահմանը (տարբերությունը) տասանորդային հողի ու հողահարկային հողի միջև, ապա պետք է ասեմ, որ ամեն մի հող, որի ժողովուրդը նրա վրա մահմեդականացել է, լինի արաբների հող, թե օտարների (ոչ արաբներ – աջամ), դա նրանցն է և տասանորդային հող է, ինչպես Մադինան, երբ մահմեդականությունն ընդունեց այդ նպատակով, և Եմենը, ինչպես նաև ամեն մեկը, որից չի կարելի գլխահարկ պահանջել և միայն պետք է ընդունի մահմեդականությունը կամ կռիվը, ինչպես արաբ կռապաշտներն են:*

*Ամեն մի օտարի (ոչ արաբի) հող, որը նվաճել է իմամը և թողել անդական (ոչ մահմեդական) բնակիչների ձեռքում, հողահարկային հող է: Եթե այն բաժանի նվաճող ռազմիկներին, ապա կդառնա տասանորդային հող: Չէ որ այն հողերը, որ Օմար իբն ալ-Խաթթաբը նվաճել է օտարներից (ոչ արաբներից) և թողել է նրանց ձեռքում, հողահարկային են: Ընդհանրապես օտարների ամեն մի հող, որի [ոչ մահմեդական] ժողովուրդը պայմանագիր ունի և դարձել է զիմմի, հողահարկային է:*

## ՏԱՂԼԻԲ ՑԵՂԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ԵՎ ԱՅԼ ԶԻՄՄԻՆԵՐԻ (ՀՈՎԱՆԱՎՈՐՅԱԼՆԵՐԻ)[13] ԴՐՈՒԹՅԱՆ ՈՒ ՆՐԱՆՑ ՆԿԱՏՄԱՄԲ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ

*էջ 68–69*

*Ամեն մի տասանորդային [մահմեդականին պատկանող] հող, որը կգնի Տաղլիբ ցեղի քրիստոնյան, դրա տասանորդը կկրկնապատկվի, ճիշտ այնպես, ինչպես կրկնապատկվում է նրանց (Տաղլիբ ցեղի մարդկանց) հարկը այն ունեցվածքի համար, որով առևտուր են անում: Ամեն ինչ, որի համար մահմեդականը մեկ է վճարում, Տաղլիբ ցեղի քրիստոնյան պետք է կրկինը վճարի:*

*Իսկ եթե մի որևէ զիմմի մարդ, բացի Տաղլիբ ցեղի քրիստոնյաներից, գնի տասանորդային հող, ապա Աբու Հանիֆան[14] գտնում է, որ պետք է այդ դեպքում հողահարկ պահանջվի և այդ որոշումը չփոխվի: Բանն այն է, որ երբ քրիստոնյան գնում է՝ մահմեդականից, ապա քանի որ զիմմին զաքատ[15] (բարեգործական հարկ) չի կարող վճարել, իսկ տասանորդը զաքատ է, ուստի այն վերածվում է հողահարկի:*

*Նման դեպքում ես նրան կպարտադրեի տասանորդ կրկնակի չա-*

փով, որը համասար է հողահարկի [նվազագույնին]: Եթե հողը նորից մահմեդականի վաճառվի, կամ քրիստոնյան մահմեդականանա, հողը նորից տասանորդային պետք է համարվի, ինչպես նախկինում եղել է:

Ինձ պատմել են մեր ծերունիներից ոմանք, թե Հասանը և Աթան ասել են, թե այս պարադային տասանորդը պարզապես կրկնապատկված է:

Այս կարծիքն ինձ համար նախընտրելի է քան Արու Հանիֆայինը: Չէ որ, երբ միջոցներն օգտագործվում են մահմեդականի կողմից առևտրի համար, նա վճարում է տասանորդի քառորդը տասանորդիչ [պաշտոնյայի] մոտով անցնելիս, ապա երբ այդ միջոցները (մալ) գնում է զիմմին առևտուր անելու համար, տասանորդիչ [պաշտոնյայի] մոտով անցնելիս նրանից պահանջվում է տասանորդի կեսը, այսինքն մահմեդականի վճարածի կրկինը, իսկ եթե [միջոցները] կրկին անցնեն մահմեդականին, նորից պահանջվում է նրանից միայն տասանորդի քառորդը: Այստեղ հարցը վերաբերում է նույն միջոցներին (մալ), որոնց էությունը փոխվում է ըստ սեփականատիրոջ բնույթի:

Այդպես է նաև տասանորդային հողը: Չէ որ, եթե զիմմին գնի արաբների երկրում (Արաբիայում) մի հող, որը խարաջային չի եղել [ինչպես Մեքքայում, Մադինայում և այլ նման վայրերում], ապա նման դեպքում ես խարաջ չեմ նշանակի, քանի որ սուրբ երկրում է գտնվում, այլ պետք է կրկնապատիկ սադակա[16] (ողորմության տասանորդ) գրվի, քանի որ զիմմիները կրկնակի են վճարում այն արժեքների համար, որով առևտուր են անում: Իսկ նրանցից ով մահմեդականանա, ապա նրա հողը նորից տասանորդային կդառնա, քանզի արդեն չի կարելի հողահարկ վերցնել:

## ԳԼԽԱՀԱՐԿ (ՋԻԶԻԱ) ՎՃԱՐԵԼՈՒ ՊԱՐՏԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ՄԱՍԻՆ

*էջ 69–72*

Գլխահարկը պարտադիր է բոլոր զիմմիների համար, լինեն հրեաներ (յահուդ), քրիստոնյաներ (նասարա), զրադաշտականներ (մաջուս), սաբիներ[17] ու սամարացիներ[18], որոնք ապրում են Սավադում և այլ վայրերում, ինչպես նաև Հիրայի[19] և այլ քաղաքների բնակիչների համար, բացի Տաղլիբ ցեղի քրիստոնյաներից ու հատկապես Նաջրանի[20] [քրիստոնյա] բնակիչներից:

Գլխահարկը պարտադիր է տղամարդկանց, բայց ոչ կանանց և երեխաներին: Հարուստներից (բարեկեցիկ) վերցվում է քառասունութ դիրհեմ[21], միջակներից՝ քսանչորս դիրհեմ, իսկ կարիքավոր, ձեռ-

քով աշխատող հողագործից՝ տասներկու դիրհեմ: Դա գանձվում է նրանցից ամեն տարի: Եթե գրամի փոխարեն բերեն գրաստ, ապրանքներ (իրեր) և այլ բաներ, դրանք կընդունվեն ըստ արժեքի: Սակայն որպես գլխահարկ չեն ընդունվի մեռելը-տի, խոզ, ոչ էլ գինի: Ումար իբն ալ-Խաթթաբը արգելել է նման բաներ վերցնելը որպես գլխահարկ: Նա ասել է՝ վերադարձրեք այդ բաներն իրենց տերերին, որ ծախեն և վերցրեք արժեքը: Սա գլխահարկի ենթակա մարդկանց վերաբերվելու ավելի դիջող ձևը կլինի: Ալի իբն Աբու Թալիբը[22], ինչքան տեղեկացել ենք, որպես գլխահարկ վերցնում էր ասեղներ, ձյութայար (մոմած թել) և այն հաշվում էր որպես գլխի հարկ (խարաջ ռուուսիհիմ):

Գլխահարկ չի վերցվում աղքատից, որին ողորմություն են տալիս, ոչ էլ կույրից, որը չունի ապրուստի միջոց կամ գործ, ոչ էլ ողորմություն ստացող դիմմիից կամ հաշմանդամից: Սակայն եթե հաշմանդամը կամ անկարողը ունեն եկամուտ, ապա նրանցից պետք է գլխահարկ վերցվի, նույնպես և կույրը կամ վանականները, որոնք ապրում են վանքերում (դիարատ), եթե ունեն եկամուտ պետք է գլխահարկ վերցվի, իսկ եթե իրոք չքավոր են և բարեկեցիկ մարդիկ նրանց ողորմություն են տալիս, գլխահարկ չի վերցվի: Նույնը վերաբերում է մենաստանների ճգնավորներին (ահլ ալ-սավամի), որոնք եթե ունեն հարստություն ու եկամուտ և իրենց ունեցածը տալիս են այլոց, որ ծախսեն վանքերի, վանականների ու տնօրինողների համար, ապա նրանցից գլխահարկ պետք է գանձվի՝ այն վերցնելով վանահորից (սահիբ ալ-դայր): Իսկ եթե վանահայրը, որի ձեռքում է այս բոլորը գտնվում ուրանա թե դա ճիշտ չէ ու երդվի Աստուծով և այնպիսի երդումով, որով երդվում են նրա կրոնակիցները, թե իր մոտ այդպիսի բան չկա, պետք է թողնել ու ոչինչ չվերցնել:

Մահմեդականից գլխահարկ (ջիզիա ռաս) չի վերցվում: Միայն այն դեպքում, երբ մարդը մահմեդականացել է տարին լրանալուց հետո, ապա պարտավոր է գլխահարկ վճարել, քանի որ այդ գումարը մահմեդական համայնքին է պատկանում, ուստի նա պետք է վճարի: Իսկ եթե մահմեդականանա տարին վերջանալուց թեկուզ մեկ-երկու օր կամ մեկ-երկու ամիս և առավել կամ նվազ ժամանակով առաջ, ապա նրանից գլխահարկ չի վերցվի, միայն թե մահմեդականացած լինի նախքան տարին լրանալը: Կամ եթե նա պարտական է լինում գլխահարկը, սակայն մեռնում է նախքան վճարելը և կամ մի մասը վճարած լինի, իսկ մյուս մասը մնացած, ապա այն չի վերցվի ոչ նրա ժառանգորդներից, ոչ էլ նրա թողած ժառանգությունից: Նույն ձևով, եթե մեկը մահմեդականանա և գլխահարկի մի մասը պարտք մնացած լինի, ապա այն նրանից չի պահանջվի:

Գլխահարկ չի վերցվում նաև զառամյալ ծերունուց, որն

աշխատելու ի վիճակի չէ և ոչինչ չունի, ինչպես նաև տկարամիտ մարդուց: Ջիմմիին պատկանող ուղտերից, կովերից, ոչխարներից դաքատ չի վերցվում: Այս հարցում տղամարդիկ ու կանայք հավասար են:

Պատմել է Սուֆիանը, լսելով Արդալլահ իբն Թաուսից, իսկ նա՝ իր հորից և վերջինս՝ Արդալլահ իբն Աբբասից, թե ջիմմիները չունեն ոչ մի ունեցվածք բացի այն բանից, որը թողնված է որպես ողորմություն:

Ջիմմիի, լինի տղամարդ թե կին, ունեցվածքից դաքատ չի վերցվում, բացի այն բանից, որով առևտուր են անում և այս դեպքում պետք է տասանորդի կեսը վճարեն: Սա վերցվում է այն դեպքում, երբ նրանց ունեցվածքի արժեքը երկու հարյուր դիրհեմի կամ ոսկու քսան մսխալի է հասնում և կամ նույն արժեքն ունեցող առևտրի իրեր (ապրանքներ) են ունենում:

Ջիմմիներից ոչ ոքի չի կարելի ծեծել գլխահարկն ստանալու համար, և ոչ էլ նրանց կանգնեցնել արևի տակ, կամ այլ ձևով տանջել: Չի կարելի նրանց մարմնական տանջանքների ենթարկել, այլ անհրաժեշտ է գթասիրտ վերաբերմունք ցուցաբերել: Սակայն կարելի է նրանց բանտարկել, մինչև վճարեն այն ինչ պարտավոր են, և բանտից դուրս չեն գա, մինչև լրիվ չգանձվի գլխահարկը: Կառավարիչը (վալի) չպետք է թողնի ոչ մի քրիստոնյայի, հրեայի, զրադաշտականի, սաբիի և սամարացու, որը չվճարի գլխահարկը, կամ թույլ տա մի մասը չվճարել: Թույլատրելի չէ, որ մեկին թողնեն ու մյուսից ստանան, դա չի կարելի անել, քանզի նրանց կյանքն ու ունեցվածքը պաշտպանվում են միայն այն պայմանով, որ վճարեն գլխահարկը: Այնպես որ գլխահարկը խարաջային փողերի դրությունն ունի:

Ինչ վերաբերում է մեծ քաղաքներին (ամսար), ինչպես Մադինատ ալ-Սալամը (Խաղաղության քաղաք, Բաղդադ), Քուֆան, Բասրան և նմանները, ապա իմ կարծիքով իմամը (խալիֆան) պետք է ամեն մի մեծ քաղաքում [վերակացու] նշանակի բարեպաշտ, բարեգործ մարդու, որի աստվածավախության և պատվախնդիր լինելուն կարելի է վստահել, տալով նրան օգնականների, որոնք նրա մոտ կհավաքեն տարբեր կրոնների մարդկանց՝ հրեաներին, քրիստոնյաներին, զրադաշտականներին, սաբիներին և սամարացիներին, և նա (վերակացուն) նրանցից կգանձի [գլխահարկը] ըստ դասերի (թարակատ), ինչպես ասել ենք՝ քառասունութ դիրհեմ ունևորներից, ինչպիսիք են դրամափոխները (սարրաֆ), ցամբակն ու քաթանն կտրողնի վաճառականը (բազզազ), կալվածատերը (սահիբ ալ-դայա), վաճառականը (տաջիր) և բուժող բժիշկը: Ով զբաղվում է արհեստով (սինաա) կամ առևտրով, որով ապրուստ է ձեռք բերում, ապա ամեն մի արհեստով ու առևտրով զբաղվողից, ըստ նրա արհեստի ու առևտրի,

կվերցվի քառասունութ դիրհեմ ունևորից և քանչորս դիրհեմ միջակ՝ համույթ ունեցողից: Իսկ ում արհեստը հնարավորություն է տալիս քառասունութ դիրհեմ վճարելու, նրանից պետք է այդ գումարը վերցվի, իսկ ով ի վիճակի է միայն քանչորս դիրհեմ վճարելու, թող այդքան առնվի նրանից: Տասներկու դիրհեմ է վերցվում ձեռքով աշխատողից՝ ինչպես դերձակը (խայյաթ), ներկարարը (սաբբաղ), հնակարկատ կոշկակարը (իսքաֆ), կոշկակարը (խառազ) և նմանները:

Երբ գլխահարկը հավաքվում է վերակացուների մոտ, նրանք տանում են այն արքունի գանձարան (բայտ ալ-մալ):

Ինչ վերաբերում է Սավադին, ապա հրամայիր քո հարկահան պաշտոնյաներին, որ իրենց կողմից ուղարկեն այնպիսի մարդկանց, որոնց աստվածավախությանը, հավատարմությանը վստահ են: Սրանք գնալով գյուղ կհրամայեն նրա տիրոջը (սահիբ) հավաքել բոլոր հրեաներին, քրիստոնյաներին, զրադաշտականներին, սաբիններին ու սամարացիներին և երբ հավաքվեն ուղարկված [հարկահանները], ըստ իմ նկարագրած դասավորության նրանցից կվերցնեն [գլխահարկը]: Հրամայիր նրանց, որ պահպանեն այն կարգը, որ ես որոշել ու նկարագրել եմ, որպեսզի չխախտեն սահմանված չափը և ոչինչ չպահանջեն այն մարդուց, որն ի վիճակի չէ գլխահարկ վճարելու և վերջապես անիրավություն չգործեն ու չճնշեն:

Իսկ եթե գյուղապետը նրանց ասի՝ ես ձեզ հետ կհամաձայնեմ նրանց (գլխահարկ վճարողների) մասին և այն կվճարեմ ձեզ, թող չհամաձայնեն այդ առաջարկին, քանզի նման դեպքում գլխահարկի գումարը կպակասի: Օրինակ դույցե գյուղապետը համաձայնության կգա [հարկահանների] հետ հինգ դիրհեմի չափով, իսկ գյուղում այնքան հովանավորյալներ (զիմմի) կան, որ եթե բոլորը վճարեն գլխահարկ, գումարը կդառնա հազար դիրհեմ և ավելի: Այսպես վարվել չի կարելի և աններելի է: Բացի վերոհիշյալ կորուստից, հնարավոր է, որ գյուղապետը այնպես հավաքի գլխահարկը իր շրջանում (կալված) ապրող զիմմիներից, որ ամեն մեկի բաժինը տասներկու դիրհեմից պակաս ստացվի, մինչդեռ այդ թվից պակաս չպետք է լինի: Կամ էլ նրանց մեջ կարող են լինել ունևորներ, որոնք պարտավոր են քառասունութ դիրհեմ վճարել:

Հավաքած գումարը հարկային վերակացուները (վալի ալ-խարաջ) հողահարկի հետ միասին տանում են արքունի գանձարան (բայտ ալ-մալ), քանզի դա բոլոր մահմեդականների եկամուտն (ֆայ) է:

Սրան ավելացվում է նաև այն, որ վերցվում է զիմմիների այն միջոցներից (մալ, ապրանք), որ նրանք օգտագործում են առևտրի մեջ և նրանցից ովքեր գալիս են մեզ մոտ երաշխավորագիր (աման) խնդրելով, ինչպես նաև այն, որ վերցվում է զիմմիներից, երբ տասանորդային հողը անցնում է նրանց ձեռքը [դառնալով խարաջային]:

*Այս բոլորը գնում է որպես հողահարկ և բաժանվում է ինչպես հողահարկը, սակայն հատկացումը նույնը չէ, ինչ սազակայինն է (ողորմության տուրք) կամ մեկ հինգերորդինը (խումս):*

*Ով իշխան հավատացելոց, պետք է հրամայես [հարկահաններին] մեղմ վերաբերվել քո մարգարեի ու հորեղբորորդու Մուհամմադի դիմմիներին, ուշադրություն դարձնելով, որ անարդարություն չգործեն, չնեղեն, ուժից վեր չծանրաբեռնեն նրանց և ունեցվածքից ոչինչ չվերցվի, եթե պարտական չեն: Չէ որ առաքյալի մասին պատմվել է, թե ասել է՝ ով անիրավություն գործի պայմանագիր կնքողին կամ կարողությունից վեր ծանրաբեռնի նրան, ես կբողոքեմ [վերջին դատաստանի օրը]: Օմար իբն ալ-Խաթթաբն ասել է մահվան բոպեին՝ իմ մահվանից հետո եկող խալիֆային կտակում եմ առաքյալի դիմմիներին, թող նա պահպանի նրանց հետ կնքված պայմանագիրը, կռվի նրանց համար և չծանրաբեռնի կարողությունից վեր:*

*Հիշամ իբն Ուրուան մեզ պատմել է, լսելով իր հորից, իսկ սա Սաիդ իբն Զայդից, թե Ասորիքում անցնելիս տեսել է մարդկանց, որոնց կանգնեցրել էին արևի տակ և հարցրել է թե սրանք ինչ են արել, պատասխանել են թե կանգնեցրել են արևի տակ գլխահարկի պատճառով: Իսկ նա չհամաձայնելով դրան գնացել է նրանց պետի (ամիր) մոտ և ասել՝ ես լսել եմ առաքյալին, որ ասել էր՝ ով տանջի մարդկանց, Ալլահը նրան կտանջի:*

*Մեր ծերունիներից ոմանք մեզ պատմել են լսելով Ուրուայից, որը լսել էր Հիշամ իբն Հաքիմ իբն Հիզամից, թե ինքը տեսել է, որ Իյադ իբն Ղտնմը[24] հովանավորյալ մարդկանց (ահլ ալ-դիմմա) կանգնեցրել է արևի տակ գլխահարկի [չվճարման] պատճառով: Ասել է՝ ով Իյադ, ի՞նչ է սա, չէ որ առաքյալը ասել է, ովքեր այս աշխարհում մարդկանց կտանջեն, այն աշխարհում (հանդերձյալում) իրենք կտանջվեն:*

*Ինձ պատմել է Հիշամ իբն Ուրուան, լսելով իր հորից, թե Օմար իբն ալ-Խաթթաբ [խալիֆան] վերադառնալով Ասորիք կատարած ճանապարհորդությունից, ճանապարհին տեսել է մարդկանց, որոնց արևի տակ էին կանգնեցրել և գլխին ձեթ քսել: Հարցրել է, թե սրանք ինչ հանցանք են գործել: Պատասխանել են, թե պարտավոր են գլխահարկ, բայց չեն վճարել, ուստի պետք է տանջվեն, մինչև վճարեն: Ասել է Օմարը՝ իսկ ինչ են ասում, ինչպես են արդարանում գլխահարկի համար: Պատասխանում են՝ ասում են, թե միջոցներ չունենք: Ասել է [Օմարը]՝ թողեք դրանց և ուժից վեր մի ծանրաբեռնենք, քանզի լսել եմ առաքյալին, որն ասում էր՝ մի տանջեք մարդկանց, իսկ ովքեր տանջում են այս աշխարհում, Ալլահը կտանջի նրանց մեռյալների հարության օրը: Ապա հրամայեց արձակել դրանց:*

*Պատմել է Ումայր իբն Նաֆին, լսելով Աբու Բաքրից, թե Օմար իբն ալ-Խաթթաբն ասել է, որ անցնելով մի տան դռան մոտով, ուր*

կանգնած էր սև դառամյալ, մուրացիկ ծերունի Թույլ տեսողությամբ. խփել է ետևից նրա ուսին և ասել՝ դու Գրքի ժողովրդի (ահլ ալ-քիտաբ)-ից ո՞ր (խմբից) ես: Պատասխանել է՝ հրեա եմ: Հարցրել է Օմարը՝ ի՞նչը քեզ հասցրել է այս աստիճանին, որում տեսնում եմ: Պատասխանել է՝ գլխահարկը, կարիքը և տարիները: Օմարը բռնել է ձեռքից, տարել իր տունը, ինչ-որ բան հաղցրել, ապա կանչել արքունի գանձարանի վերակացուին (խազին բայտ ալ-մալ) ասել է՝ երդվում եմ Ալլահով, մենք արդար չենք եղել նրա նկատմամբ, կերել ենք նրա երիտասարդությունը, իսկ ծերության ժամանակ անպաշտպան ենք թողել: Սադական նշանակված է կարիքավորների ու աղքատների համար: Կարիքավորները դրանք մահմեդականներ են, իսկ սա Գրքի ժողովրդի աղքատներից է: Նա ազատել է նրան ու նմաններին գլխահարկից: Աբու Բաքրն ասել է, Թե ինքն ականատես է եղել Օմարի այս արարքին և տեսել է այդ ծերունուն:

## ԳԼՈՒԽ ԶԻՄՄԻՆԵՐԻ ՀԱԳՈՒՍՏԻ ՈՒ ՏԱՐԱԶԻ ՄԱՍԻՆ

Ի դեպ անհրաժեշտ է կնիք դնել զիմմիների վզին, գլխահարկը հավաքելու ժամանակ, մինչև ավարտվի նրանց ստուգումը: Ապա այդ կնիքները ջարդում են, ինչպես արել է Օսման իբն Հանիֆը, եԹե նրանք խնդրեն ջարդել:

Պետք է հրամայել, որ նրանցից ոչ ոք չնմանվի մահմեդականներին իր հագուստով, դրաստով և իր արտաքինով: Նրանց պետք է պարտավորեցնել, որ զուննար կոչված գոտին կապեն, որը նման է կոպիտ պարանի և որով ամեն մեկը պետք է գոտևորվի: Նրանց կոնաձև գլխարկները (կալանսուա) պետք է մարակված (մուզառաբա) լինեն, նրանց Թամբերին պետք է կեռի ու մեջքի միջև նռան նման փայտե զունդ կախեն, իրենց մույկերին (ոտնաման) կրկնակի փոկեր կապեն և ոչ Թե այն ձևել մահմեդականների նման, նրանց կանանց պետք է արգելված լինի ուղտ հեծած գնալ:

Նրանք իրավունք չունեն նոր տաճարներ կամ եկեղեցիներ կառուցել, բացի նրանից որ պահել են ըստ պայմանագրի, երբ դարձել են զիմմի և այսպիսով տաճարն ու եկեղեցին նրանց է պատկանել: Նման պայմաններում ինչ որ կա, Թողնվում է նրանց և չի քանդվի: Նույնը վերաբերում է ատրուշաններին (բայտ ալ-նիրան, կրակատուն): Զիմմիներին Թույլատրվում է ապրել մահմեդականների քաղաքներում ու շուկաներում, վաճառել ու գնել, ընդ որում, նրանք չպետք է գինի վաճառեն, ոչ էլ խոզ, և կամ քաղաքում բացահայտ ցուցադրեն իրենց խաչերը: Նրանց կոնաձև գլխարկները ցցուն կերպով մարակված լինեն: Հրամայիր քո կառավարիչներին, որ նրանք զիմմիներին

այսպիսի տարազ պարտադրեն: Այսպես է հրամայել Օմար իբն ալ-Խաթթաբը, որ ստիպեն զիմմիներին այսպիսի տարազ կրել, ավելացնելով՝ որպեսզի ըստ տարազի հնարավոր լինի նրանց տարբերել մահմեդականներից:

Ինձ պատմել է Աբդ ալ-Ռահման իբն Սաբիթ իբն Սաուբանը, որը լսել է իր հորից, թե Օմար իբն Աբդ ալ-Ազիզը գրել է իր կառավարիչներից մեկին՝ չթողնես, որ խաչը հայտնի նրա [դրսում], իսկ եթե [ցույց տան], ջարդիր ու ոչնչացրու: Ոչ քրիստոնյան, ոչ էլ հրեան չպետք է ձիու թամբին հեծած ման գան, այլ ավանակ նստեն, նրանց կանայք թող ուղտ չհեծնեն, սակայն կարող են ավանակ հեծնել: Այս մասին ամենախիստ հրաման տուր և քո անունից արգելք հրապարակիր, որ քրիստոնյան չկրի ոչ պարեգոտ (կաբա), ոչ թանկ կերպասից (խազզ) զգեստ, ոչ էլ փաթթոց: Ինձ պատմել են, որ քեզ մոտ եղած քրիստոնյաներից շատերը սկսել են նորից գլխին փաթթոց կապել, իսկ մեջքին գոտի չեն կապում, աչքի են ընկնում չքեղությամբ ու փարթամությամբ՝ մոռանալով համեստությունը: Երդվում եմ կյանքովս, եթե դա կատարվում է քեզ մոտ, ապա պարզապես արդյունք է քո թուլության, անկարողության ու զիջողամտության, իսկ եթե վերականգնես նախկին վիճակը, նրանք կիմանան թե ինչ մարդ ես դու: Ուստի մտածիր այն ամենի մասին, որ արգելեցի, և ինքդ արգելիր նրանց այդ բաները կրկնել: Խաղաղությունը քեզ հետ:

Ինձ պատմել է Ուբայդալլահը լսելով Նաֆիից, որը լսել էր Օմարի մաուլա Ասլամից, թե Օմարը հրամայել էր իր կառավարիչներին, որ զիմմիների վզին կնիք դնեն:

Քամիլ իբն ալ-Ալան պատմել է Հաբիբ իբն Աբու Սաբիտից, թե Օմար ալ-Խաթթաբը ուղարկել է Օսման իբն Հանիֆին Սավադի հողը չափելու և նրանց հողի ամեն մի ջարիբին[26], լինի մշակված, թե անմշակ, մեկ դիրհեմ և մեկ կաֆ[27] [ցորեն] է նշանակել և կնքել է Սավադի [այլահավատ] գեղջուկների: Նա կնքել է հինգ հարյուր հազար գեղջուկների ըստ դասերի՝ քառասունութ, քսանչորս և տասներկու [դիրհեմ հաշվով]: Երբ նա ստուգումը վերջացնելով նրանց հանձնել է դեհկաններին (գավառապետ հողատեր), կոտրել են կնիքները:

Պատմել է Ուբայդալլահը լսելով Նաֆիից, իսկ սա Օմար [խալիֆայի] մաուլա Ասլամից, թե Օմար իբն ալ-Խաթթաբը գրել է [գերի ընկած] անհավատների մասին՝ սպանեցեք ում վրայից որ անցել է սուրը (ածելի), իսկ նրանց կանանցից ու երեխաներից գլխահարկ վերցրեք միայն չորս դինար[28] կամ քառասուն դիրհեմ: Պահանջեց նրանցից ամեն մեկից մեկ մոդ[28] ցորեն հարկ վերցնել և վզին կնիք դրոշմել:

Ինձ պատմել է ալ-Ամաշը, լսելով Ումարա իբն Ումայրից կամ Մուսլիմ իբն Սուբայհ Աբու լ-Դուհայից, իսկ սա Մասրուկից և վեր-

ջինս Մուսադ իբն Ջաբրյից, թե մարգարեն երբ ինձ ուղարկեց Եմենի կառավարիչ, հրամայեց ամեն մի չափահաս [այլահավատից] մեկ դինար պահանջել:

## ԳԼՈՒԽ ԶՐԱԴԱՇՏԱԿԱՆՆԵՐԻ, ԿՌԱՊԱՇՏՆԵՐԻ ՈՒ ՀԱՎԱՏԱՓՈԽՆԵՐԻ ՄԱՍԻՆ

էջ 73-76

Բոլոր հեթանոսները (ահլ ալ-շիրք) ինչպես զրադաշտականները, կռապաշտները, կրակապաշտները, քարապաշտները, սաբիններն ու սամարացիք վճարում են գլխահարկ (ջիզիա), բացի մահմեդական հավատափոխներից ու արաբ կռապաշտներից, որոնց պետք է առաջարկվի մահմեդականություն և եթե ընդունեն լավ, ապա թե ոչ, նրանց տղամարդիկ կկոտորվեն, իսկ կանայք ու երեխաները կգերեվարվեն: Հեթանոսները, ինչպես կռապաշտները, կրակապաշտները, զրադաշտականները, իրենց մորթած անասունների ու ամուսնության հարցում նույն վերաբերմունքին ենթակա չեն, ինչ որ Գրքի ժողովրդի [նկատմամբ կա]:

Նրանք վճարում են գլխահարկ, սակայն թույլատրելի (հալալ) չէ նրանց կանանց հետ ամուսնանալ կամ նրանց մորթած անասունների միսն ուտել:

Մերուններից մեկը պատմել է լսելով Ջաաֆար իբն Մուհամմադից, իսկ սա իր հորից թե Օմար իբն ալ-Խաթթաբին հարցրել են այն մարդկանց մասին, որոնք կրակապաշտներ են, ոչ հրեա, ոչ քրիստոնյա, այսինքն Գրքի ժողովուրդ (ահլ ալ-քիտաբ) չեն: Ասել է Օմարը չգիտեմ ինչպես վարվել նրանց հետ: Այդ ժամանակ Աբդ ալ-Ռահման իբն Աուֆը ասել է՝ վկա եմ, որ առաքյալն ասել է, թե նրանց դատեցեք Գրքի ժողովրդի մասին եղած օրենքներով:

Պատմել է Իսմայիլ իբն Աբու Խալիդը, վերցնելով ալ-Շաաբիից, թե հարցրել են մի քրիստոնյա ստրուկի մասին, որին ազատագրել է մահմեդական տերը: Ասել է Շաաբին, նրան հողահարկ չի հասնում, քանզի օգտվում է իր տիրոջ գոյավիճակից (հովանավորությունից): Ես այս հարցի շուրջը հարցրել եմ Աբու Հանիֆային և նա պատասխանեց՝ ազատագրված ստրուկը պետք է վճարի հողահարկ քանզի իսլամի երկրում չի կարող լինել այնպիսի դիմմի, որը հողահարկ չվճարի իր անձի համար: Աբու Հանիֆայի կարծիքը հավանաբար լավագույնն է, որ լսել եմ այս հարցի շուրջը:

## ԳԼՈՒԽ ՏԱՍԱՆՈՐԴԻ (ՈՒՇՈՒՐ) ՄԱՍԻՆ

էջ 76-80

*Իսկ տասանորդի (մեկ տասներորդ, մաքս) հավաքման համար կարծում եմ, որ պետք է նշանակես բարեպաշտ, աստվածավախ մարդկանց. Հրամայելով նրանց ուսնձգումթյուններ չգործել մարդկանց նկատմամբ անարդարություն չանել, որոշված [հարկից] ավելին չվերցնել. Հետևել մեր տված ծրագրին, ապա ստուգես թե ինչպես են գործում և վերաբերվում [իրենց հսկած կետերից] անցնողներին և արդյոք կատարում են իրենց հրամայվածը: Եթե զանցանքներ են թույլ տալիս, հեռացրու և պատժիր նրանց:*

*Հրամայիր նրանց (պաշտոնյաներին), որ տարբեր ապրանքների գները պետք է գումարել իրար վրա, այն հաշվով, որ տասանորդիչի (մաքս հավաքողի) առջևից անցնելիս, առևտրի նպատակով տարված ամեն ինչի համար մահմեդականից պետք է վերցնել տասանորդի (մեկ տասներորդի) քառորդ արժեքը (2. 5 տոկոս), զիմմիից տասանորդի կեսը (5 տոկոս), իսկ օտարից (հարբի, պատերազմի երկրի մարդ) տասանորդ (10 տոկոս): Եթե [ապրանքի] արժեքը երկու հարյուր դիրհեմ կամ ավելի է, ապա [տուրքը] վերցվում է, իսկ եթե արժեքը երկու հարյուր դիրհեմից պակաս է, տուրք չի գանձվում: Այլ կերպ ասած, եթե [ապրանքի] արժեքը քսան մսխալի է հասնում վերցվում է տուրքը. իսկ եթե արժեքը քսան մսխալից պակաս է ոչինչ չի գանձվում: Եթե [վաճառականը] մի քանի անգամ անցնի և ամեն անգամին երկու հարյուրից պակաս արժեք ունեցող [ապրանք] ունենա, ոչինչ չի վերցվում, թեկուզ մի քանի անգամ տարածի արժեքը գումարելով հասնի հազար [դիրհեմի], միևնույնն է ոչինչ չի գանձվի, քանզի տարբեր անգամների արժեքները չեն գումարվում:*

*Ուստի եթե [վաճառականն] անցավ նրա (տասանորդիչի) մոտով երկու հարյուր կանխիկ (դրամահատված, մաղրուբա) դիրհեմով կամ քսան մսխալ ձույլ ոսկով (տիբր) և կամ էլ երկու հարյուր դիրհեմ ձույլ [արծաթով] կամ քսան մսխալ կանխիկ (դրամահատվածով), ապա մահմեդականից կվերցվի տասանորդի քառորդը (2. 5 տոկոս), զիմմիից տասանորդի կեսը (5 տոկոս), իսկ օտարերկրացուց (հարբի) ամբողջ տասանորդը (10 տոկոս): Հետո ոչ մի բան չի վերցվի մինչև հաջորդ տարվա նույն ժամանակը, եթե նույնիսկ անցնի [վաճառականը] մի քանի անգամ:*

*Նույն բանը գանձվում է, եթե [վաճառականն] անցնի վաճառքի համար գնված ապրանքով: Եթե ապրանքի արժեքը հավասար է երկու հարյուր դիրհեմի կամ քսան մսխալի, ապա նրանից [տուրք] կվերցվի, իսկ եթե նրա արժեքը հավասար չէ երկու հարյուր դիրհեմի կամ քսան մսխալի [մաքսից] ազատ է: Եթե օտարերկրացին*

տասանորդը վճարելուց հետո մտնի օտար երկիր, ապա եթե սեկ ասխս անց կրկին անցնի տասանորդիչի մոտով, վերջինս նրանից կվերցնի տասանորդը, եթե իր հետ ունեցած [ապրանքը] արժի երկու հարյուր դիրհեմ կամ քսան մսխալ, քանզի վերադառնալով օտար երկիր, կորցնում է սահմանդական [պետության] օրենքներից (ահքամ) օգտվելու իրավունքը. սակայն եթե իր մոտ եղածը երկու հարյուր դիրհեմից կամ քսան մսխալից պակաս է, նրանից ոչինչ չի վերցվի. քանզի օրենքը (սուննա) պահանջում է, որ նվազագույնը լինի երկու հարյուր դիրհեմ կամ քսան մսխալ:

Այսպես, սահմնդականը վճարում է երկու հարյուրից հինգ դիրհեմ, զիմմին՝ երկու հարյուրից տաս դիրհեմ, իսկ օտարերկրացին՝ երկու հարյուրից քսան դիրհեմ: Այս հաշվով, եթե ոսկի վճարվի, մահմեդականից վերցվում է կես մսխալ, զիմմիից՝ մեկ մսխալ, օտարերկրացուց՝ երկու մսխալ:

Եթե ապրանքը վաճառքի նպատակով չի տարվում, ապա տասանորդիչի մոտով անցնելիս ոչինչ չի վճարվի: Սակայն եթե հովանավորյալն անցնի տասանորդիչի մոտով իր հետ ունենալով գինի կամ խոզ, այն կգնահատվի և նրանից կվերցվի կես տասանորդ (5 տոկոս), նույնպես և օտարերկրացի մարդիկ եթե անցնեն տանելով խոզեր ու գինիներ, այն կգնահատվի և նրանից տասանորդ (տաս տոկոս) կվերցվի: Եթե մահմեդականն անցնի տասանորդիչի մոտով տանելով ոչխարներ, կովեր, ուղտեր և ասի, որ դա արածացնելու համար է, պետք է երդվի և այդ դեպքում նրանից ոչինչ չի պահանջվի: Նույնպես և ամեն մի ուտելիք, որն անց է կացնում մարդը և ասի թե սա իմ ցանածն (մշակածն) է, նաև արմավի համար ասի, թե իմ արմավենուց է, ոչինչ չի վճարի, քանզի տասանորդը այն բանի համար է, որը գնված է վաճառականության համար: Նույն ձևով են վարվում նաև զիմմիի հետ, սակայն օտարերկրացին այդպիսի իրավունք չունի:

Տագլիբ ցեղի զիմմին, Նաջրան քաղաքի, ինչպես նաև մնացած զիմմիների նման, որոնք Սուրբ Գրքի ժողովուրդ են կոչվում, վճարում են տասանորդ: Իսկ գրադաշտականները և հեթանոսները այս բանում նրանց հավասար են:

Եթե [մահմեդական] վաճառականն անցնի տասանորդիչի մոտով ունենալով անասուններ (մալ) կամ ապրանք, և ասի, թե վճարել եմ զաքաթը և այդ մասին երդվի, ապա դա կընդունվի և ոչինչ չի վճարի: Սակայն այս բանը զիմմիից և օտարերկրացուց չի ընդունվի, քանզի նրանք չեն կարող ասել, թե զաքաթ են վճարել:

Իսկ եթե մեկն անցնի իր հետ ունենալով դրամ (մալ) և հավաստի, թե ուրիշի դրամով է առևտուր անում (մուդարաբա) կամ ապրանքը [ապրուստի միջոց] է և երդվի, տուրքը չի վճարի: Նույնպես և ստրուկը, որն անցնի իր տիրոջ և իր ապրանքներով, տասանորդ չի վճարի,

մինչև իր տերը դա: Նաև պայմանագրով ազատագրված ստրուկը (մուքատաբ) իր ապրանքի համար տասանորդ չի վճարի: Իսկ վաճառականը, որը տանում է վաճառելու. սակով գնած խաղող, արմավ (ռութբ), կամ թարմ պտուղ և արժեքը հավասար լինի երկու հարյուր դիրհեմի կամ ավելի, ապա նրանից կվերցվի տասանորդի քառորդը (2. 5 տոկոս), եթե մահմեդական է, տասանորդի կեսը (5 տոկոս) եթե զիմմի է և տասանորդ (10 տոկոս) եթե օտարերկրացի է: Իսկ եթե արժեքը երկու հարյուր դիրհեմից պակաս լինի. ոչինչ չի վճարի. եթե նույնիսկ մի քանի անգամ անցնի և ամեն անգամ էլ երկու հարյուր դիրհեմից պակաս լինի և կամ մի քանի անգամ անցնելուց հետո նրա գումարը հաշվելով հասնի հազարի. դարձյալ գաքատ (ուշը) չի վճարվի: Զպետք է մի քանի անգամ անցնելու համար արժեքները գումարել:

Տասանորդը (ուշուր) հաստատել է Օմար իբն ալ-Խաթթաբը և դա լավ է. եթե [պաշտոնյաները] խախտումներ չկատարեն և որոշվածից ավելին չվերցնեն: Տասանորդը, որ մահմեդականից է վերցվում. նույն սադական է, իսկ բոլոր զիմմիներից ու օտարերկրացիներից վերցվածը իր էությամբ հողահարկ (խարաջ) է: Նույնպես և ինչ որ բոլոր զիմմիներից վերցվում է ինչպես գլխահարկը և ինչ որ Տաղլիբ ցեղի մարդկանցից է վերցվում արջառի համար, հավասար է հողահարկի և բաժանվում է ինչպես հողահարկը:

Լսել եմ Իսմաիլ իբն Իբրահիմ իբն Մուհաջիրից, որը լսել է Աբու Ցագքուրից, իսկ սա Զիյադ իբն Հադիրից, թե առաջինը. որին Օմար իբն ալ-Խաթթաբը ուղարկել է որպես տասանորդիչ ես եմ եղել և ինձ հրամայել էր, որ ոչ ոքի չստուգեմ և ով անցնի ձեռքիս տակով նրանից գանձեմ քառասուն դիրհեմից մեկ դիրհեմ, եթե մահմեդական է, զիմմիներից՝ քսանից մեկ դիրհեմ, իսկ ով զիմմի չէ (օտարերկրացի է)՝ տասից մեկ դիրհեմ:

Պատմել է Ասիմ իբն Սուլայմանը, վերցնելով ալ-Հասանից, թե Աբու Մուսա ալ-Աշարին գրել է Օմար իբն ալ-Խաթթաբին՝ մեր մահմեդական վաճառականները գնում են օտար (պատերազմի) երկիր և նրանցից տասանորդ են վերցնում: Օմարը գրել է նրան՝ դու էլ նրանցից վերցրու այնպես, ինչպես նրանք մահմեդական վաճառականներից են վերցնում և վերցրու զիմմիներից մեկ տասանորդի կեսը, մահմեդականներից՝ քսան դիրհեմից մեկ դիրհեմ, իսկ ինչ երկու հարյուր դիրհեմից ցածր է, դրանից ոչինչ մի վերցրու: Բայց եթե երկու հարյուր դիրհեմ է, դրանից հինգ դիրհեմ վերցրու, և ինչ ավելի է, նույն ձևով հաշվիր:

Ինձ պատմել է Ամր իբն Մայմուն իբն Միհրանը լսելով իր հորից. իսկ սա իր տատից. թե անցնում էի Մասրուկ [տասանորդիչի] մոտով ալ-Սիլ-սիլայի հետ, որը պայմանագրով ազատագրյալ ստրկուհի էր

(սուքատարա) և չատ ապրանք ուներ: Հարցրեց նրան՝ ինչ ես դու, պատասխանեց՝ պայմանագրով ազատագրյալ ստրկուհի: Նա պարսկուհի էր և նույնը կրկնեց թարգմանին պարսկերեն: Մասրուկն ասաց՝ ստրուկի (մամլուք) ունեցվածքից զաքատ չի վերցվում և թողեց նրան որ գնա:

Պատմել է Աբու Հանիֆան՝ վերցնելով Համմադից, իսկ սա Իբրահիմից, որ եթե գիմմիները գինի տանեն վաճառականության համար, նրա արժեքի համար պետք է վերցվի տասանորդի կեսը (5 տոկոս) և չի կարելի ընդունել դիմիի խոսքը նրա գնի մասին, այլ պետք է գիմմիներից երկու հոգի բերել, որ գնահատեն այն և ապա կգանձվի տասանորդի կեսը:

## ԳԼՈՒԽ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԻ, ՏԱՃԱՐՆԵՐԻ ՈՒ ԽԱՉԵՐԻ ՄԱՍԻՆ

Էջ 80-88

Իսկ ինչ վերաբերում է, ով իշխանդ հավատացյալոց, քո այն հարցին գիմմիների դրության մասին և թե ինչպես մահմեդականների կողմից նվաճման ժամանակ նրանց թողնվել են տաճարները (հրեական), եկեղեցիները քաղաքներում ու մայրաքաղաքներում (ամսար) ու չեն քանդվել և թե ինչպես նրանց թույլատրվել է իրենց խաչերը տոն օրերին դուրս բերել:

Բանն այն է, որ մահմեդականների ու գիմմիների միջև կնքվել է հաշտության պայմանագիր ջիզիա վճարելու պայմանով և քաղաքները նվաճվեցին այն պարտավորությամբ, որ նրանց տաճարներն ու եկեղեցիները, թե՛ քաղաքի ներսում, թե՛ նրանից դուրս չպետք է քանդվեն, որ նրանց կյանքը (արյունը) նրաշխավորվում է նրանով, որ [մահմեդականները] նրանց համար կռվելու են ու թշնամիներից պաշտպանելու: Այս բոլորի դիմաց գիմմիները պետք է մահմեդականներին ջիզիա վճարեն: Այս պայմաններով հաշտության դաշնագիր է կնքվել և գրվել պայմանագիր՝ պարտավորվելով նոր տաճարներ ու եկեղեցիներ չկառուցել: Նման պայմաններով են նվաճվել ամբողջ Ասորիքն ու Հիրան, բացի մի փոքր մասից: Ահա թե ինչու նրանց տաճարներն ու եկեղեցիները չեն քանդվել:

Ասել է Աբու Յուսուֆը՝ ինձ պատմել է մի գիտուն մարդ լսելով Մաքհուլ ալ-Շամիից, թե Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը մտնելով Ասորիք, գիմմիների հետ հաշտության պայմանագիր կնքեց, ընդունելով, որ նրանց եկեղեցիներն ու տաճարները պետք է թողնեին, սակայն չպետք է կառուցեին ո՛չ նոր տաճարներ, ո՛չ էլ նոր եկեղեցիներ, որ նրանք պարտավոր էին ճանապարհ ցույց տալ մոլորված [մահմե-

դականին] և կամուրջներ կառուցել գետերի վրա. իրենց դրամով. մահմեդական անցորդին երեք օր կերակրել. չհայհոյել. չծեծել մահմեդականին. իրենց խաչերը բարձր չցուցադրեին իսլամի հետևորդների հավաքույթներում. խոզերին իրենց տներից դուրս չբերել մահմեդականների գտնված վայրերը. ազդանշանային կրակներ վառել Ալլահի համար պայքարի գնացող ռազմիկներին. իսկ թշնամուն ցույց չտալ մահմեդականի թույլ կողմերը: Նրանք չպետք է իրենց [եկեղեցիների] զանգակները (նակկուս) հնչեցնեն ոչ ադանից[20] առաջ. ոչ էլ ազանի ժամանակ. տոնական օրերին խաչադրոշներ դուրս չբերեն. զենք չկրեն տոնական օրերին և ոչ էլ տանը պահեն այն: Այս բոլոր [արգելվածներից] եթե որևէ մեկն անեն, ապա կպատժվեն և նրանցից [տուգանք] կգանձվի: Ահա այս պայմաններով հաշտություն կայացավ:

Այնժամ [զիմմիներն] ասացին Աբու Ուբայդային՝ մեզ համար տարվա մեջ մի օր սահմանիր, որ կարողանանք մեր խեղերը դուրս բերել առանց խաչադրոշների և դա թող լինի մեր ամենամեծ տոնի օրը: Մահմեդականները գտան, որ պետք է կատարել այն ինչ պայմանավորված են և այս պայմաններով քաղաքները նվաճեցին:

Երբ դիմմիները տեսան, որ մահմեդականները հավատարիմ կերպով կատարում են խոստումները և թե ինչքան լավ է նրանց վերաբերմունքը, ապա նրանց թշնամիների դեմ խստասիրտ դարձան և օժանդակեցին մահմեդականներին: Ամեն մի քաղաքի բնակչություն, որը հաշտության պայմանագիր ուներ մահմեդականների հետ, մարդկանց ուղարկեց լուրեր հավաքելու հոռոմների ու նրանց թագավորի մասին, թե ինչ են կամենում ձեռնարկել: Այս ամեն քաղաքների բնակիչների առաքած սուրհանդակների կողմից լուր հասավ, թե հոռոմները այնպիսի զորք են հավաքել, որի նմանը չի տեսնված: Ամեն մի քաղաքի պետը (ռաիս) եկավ այն ամիրի մոտ, որին Աբու Ուբայդան փոխանորդ էր նշանակել և նրան հաղորդեց այդ մասին, իսկ ամեն մի քաղաքի տեղական նշանակված կառավարիչը դրեց Աբու Ուբայդային տեղեկացնելով այդ մասին և լուրերն իրար ետևից հասան Աբու Ուբայդային: Սակայն Աբու Ուբայդան և մահմեդականները դանում էին, որ իրենց դրությունը վտանգավոր է: Աբու Ուբայդան գրեց իր նշանակած փոխանորդներից ամեն մեկին այն քաղաքներում, որոնց հետ հաշտության պայմանագիր էր կնքել, հրամայելով վերադարձնել դիմմիներին նրանցից հավաքված ջիզիան ու խարաջը և հանձնարարեց ասել նրանց՝ մենք վերադարձնում ենք ձեր դրամները, քանզի մեզ տեղեկություն է հասել, որ թշնամին զորք է հավաքել մեր դեմ. դուք մեզ հետ պայմանավորվել էիք որ պաշտպանենք ձեզ, բայց քանի որ մենք ի վիճակի չենք այդ անել, ապա վերադարձնում ենք այն ինչ վերցրել էին ձեզանից: Մենք պարտավորվում ենք հարգել

այն պայմաններով, որ ձեզ հետ կնքել ենք, եթե Ալլահը մեզ հաղթանակ պարգևի թշնամու դեմ:

Երբ մահմեդականներն այս բանը ասացին և վերադարձրին այն դրամները, որ նրանցից հավաքել էին, դիմմիներն ասացին՝ Թող Աստված ձեզ վերադարձնի մեզ մոտ և հաղթանակ պարգևի նրանց դեմ, եթե ձեր տեղում նրանք (հոռոմները) լինեին, ոչինչ չէին վերադարձնի և մեր եղածն էլ կտանեին, ոչինչ չթողնելով:

Աբու Ուբայդան սովորություն ուներ նրանց հետ պայմանագիր կնքել այս ձևով, տալով ինչ խնդրում էին, քանզի կամենում էր այս եղանակով սիրաշահել նրանց, որպեսզի այդ մասին լսելով նաև այլ քաղաքների բնակիչները, որոնց հետ դեռ հաշտության պայմանագիր չէր կնքել, շտապեին իրենք ևս հաշտության պայմանագիր կնքել:

Սակայն քաղաքների շուրջը գտնվող գյուղերից վերցված դրամները, դերիները և իրեղենները Աբու Ուբայդան չէր վերադարձնում տերերին և մեկ հինգերորդն առնելուց հետո մնացած չորս հինգերորդը բաժանում էր մահմեդականների միջև:

Մահմեդականներն ու հեթանոսները (մուշրիքուն) բախվեցին և կատաղի պատերազմ տեղի ունեցավ, երկու կողմից շատեր կոտորվեցին, ապա Ալլահն օգնեց մահմեդականներին հեթանոսների դեմ, որոնց [մահմեդականների] ձեռքը հանձնեց և փախուստի մատնեց: Մահմեդականներն այնպիսի կոտորած սարքեցին, որի նմանը հեթանոսները չէին տեսել:

Երբ այն քաղաքի բնակիչները, որոնք պայմանագիր չունեին Աբու Ուբայդայի հետ, տեսան, թե ինչպես կոտորվեցին իրենց հեթանոս ընկերները, լուր ուղարկեցին Աբու Ուբայդային հաշտություն խնդրելով և նա հաշտություն (դաշինք) կնքեց նույն պայմաններով, որ տվել էր նախորդներին, միայն թե նրանք խնդրեցին ավելացնել այն պայմանը, որ եթե իրենց մոտ լինեն հոռոմներ, որոնք եկած լինեն կռվի և ապաստանած լինեն իրենց մոտ, երաշխիք ստանան, որ կարող են իրենց իրեղեններով, ունեցվածքով ու ընտանիքներով հեռանալ Ռումի երկիրը[31] և ոչ ոք չխանգարի նրանց: Աբու Ուբայդան համաձայնեց և նրանք ջիզիա վճարեցին ու բացին նրա առջև քաղաքի դռները:

Աբու Ուբայդան վերադարձավ և ամեն մի քաղաքի կողքով անցնելիս, որի բնակիչները դեռ իր հետ հաշտության [պայմանագիր] չէին կնքել, ապա դրանց քաղաքապետը (ռաիս) լուր էին ուղարկում, հաշտություն խնդրելով և նա համաձայնում էր, տալով նրանց այն, ինչ նախկիններին էր տվել և դրում էր իր ու նրանց միջև պայմանագրեր: Իսկ ամեն անգամ, որ անցնում էր այն քաղաքների կողքով, որոնց բնակիչներն արդեն նախապես նրա հետ հաշտություն էին կնքել և իր կողմից նշանակված կառավարիչներն իր անունից դիմմիներին վերադարձրել էին նրանցից վերցրած [հարկը], ապա

բնակիչները նորից կին տալիս նրան այդ վերադարձված գումարները և այն ջիզիայի ու խարաջի ձևով վճարելու պայմանով հաշտություն էր կնքվում և նրան դիմավորում էին շուկաներում ու վաճառքի վայրերում: Նա թողնում էր նույն պայմանները, որոնք տրվել էին նախապես, չփոխելով ու չպակասեցնելով:

Աբու Ուբայդան գրեց Օմարին հեթանոսների փախուստի և այն մասին, թե ինչ է Ալլահը մահմեդականներին տվել որպես ավար, զիմմիների հետ հաշտության պայմանագրի մասին, ինչպես նաև այն բանի վերաբերյալ, թե մահմեդականները ցանկություն ունեն իրենց միջև բաժանելու [զիմմիների] քաղաքները, դրանց բնակչությունը, հողը՝ նրա վրա գտնված գյուղերով ու ցանքսերով, և թե ինքը մերժել է այդ բանը՝ որոշելով գրել Օմարին ու նրա կարծիքը հարցնել:

Օմարը նրան գրեց՝ ես մտածեցի Ալլահի կողմից քեզ տրված ավարի մասին, որի մասին հիշել էիր և այն պայմանագիրը, որով հաշտություն ես կնքել քաղաքների ու մայրաքաղաքների (ամսար) հետ, այդ մասին խորհրդակցեցի Ալլահի առաքյալի մտերիմների (ասհաբ) հետ և նրանցից ամեն մեկն իր կարծիքն ասաց: Իմ կարծիքը համաձայն է Ալլահի Գրքին (Ղուրանին), բարձրյալն Ալլահն ասել է. «Ալլահը նրանց, որոնք եկան նրանցից (առաջին հավատացյալներից) հետո ընդունեցին իսլամը, դարձրեց ավարի (փայ) մասնակիցներ, մինչև [վերջին] հարության օրը»: Ուրեմն այն, ինչ Ալլահը տվել է որպես ավար (փայ), բաժանիր նրանց միջև, որոնք այն ձեռք են բերել: Իսկ զիմմիներին ջիզիա նշանակիր ըստ նրանց կարողության և այն բաժանիր մահմեդականների միջև: Իսկ զիմմիները պետք է հողը մշակեն, քանզի նրանք քաջ ծանոթ են դրան և շատ լավ են մշակում: Ոչ դու, ոչ քեզ մոտ եղած մահմեդականները չեք կարող բռնել ու [որպես ծառա] բաժանել նրանց, չէ՞ որ նրանց հետ հաշտության պայմանագիր ես կնքել և ջիզիա ես վերցրել, ըստ նրանց կարողության: Ալլահը մեզ և ձեզ բացատրել է ասելով իր Գրքում. «պատերազմեցեք Գիրք (Հայտնություն) ստացածներից նրանց դեմ, որոնք չեն հավատում Ալլահին, վերջին [դատաստանի] օրվան և արգելված չեն համարում այն, ինչ արգելել է Ալլահը և նրա առաքյալը ու չեն հավատում ճշմարիտ հավատով, մինչև որ վճարեն ջիզիան իրենց ձեռքով և ստորացած վիճակում»: Ուստի քանի որ դու նրանցից վերցրել ես ջիզիան, դու այլևս ոչինչ չպետք է առնես նրանցից: Արդյո՞ք մտածել ես, որ եթե մենք բռնենք այդ [երկրի] բնակչությունը և [որպես ծառա] բաժանենք, ապա մեզանից հետո եկող մահմեդականներին ինչ կմնա: Երդվում եմ Ալլահով, որ նրանք այլևս մարդ չեն գտնի որ աշխատեցնեն նրան և ոչ մի հնարավորություն չեն ունենա նրա աշխատանքի արդյունքից: Մահմեդականները նրանց հաշվին են ապրում քանի դեռ վերջինները ողջ են, իսկ երբ մեռնենք ու նրանք ես

մեռնեն, ապա մեր որդիները պետք է ապրեն նրանց որդիների հաշվին հավիտյան, քանի դեռ գոյություն ունեն. քանզի նրանք մնալու են իսլամի հետևորդների ծառաները (արիդ, սարուկ). քանի դեռ մահմեդական կրոնը տիրապետում է:

Ուստի նրանց հարկավորիր ջիզիայով ու մի թույլ տուր որ գերեվարեն և արգելիր մահմեդականներին, որ նրանց անիրավություն գործեն, վնաս հասցնեն, ունեցվածքը ուտեն, բացի այն դեպքից, երբ դա թույլատրելի է: Պարկեշտորեն պահպանիր այն բոլոր պայմանները, որոնց համար ուխտ ես կնքել նրանց հետ: Ինչ վերաբերում է տոնական օրերին խաչերը դուրս բերելուն, ապա մի խանգարիր նրանց այդ բանն անել քաղաքից դուրս, բայց առանց խաչադրոշների ու դրոշների և ինչպես արդեն ընդանից խնդրել են՝ տարեկան մեկ օր: Սակայն քաղաքում մահմեդականների ու նրանց մզկիթների շրջապատում թող չցուցադրեն խաչերը:

Այսպիսով Աբու Ուբայդան թույլ տվեց նրանց տարեկան մեկ օր այն տոնին, երբ նրանք ծոմ են պահում, իսկ մնացած օրերին դիմմիները իրավունք չունեին խաչերը դուրս բերել: Ինչ վերաբերում է բնակիչների հետ կնքված հաշտության պայմանագրին, ապա ըստ այնմ նրանց տաճարներն ու եկեղեցիները մնացին ինչպես որ եղել են, դրանք չէին քանդելու և այդ հարցում նրանց նեղություն չպատճառեցին: Ահա թե ինչ էր կատարվել Ասորիքում մահմեդականների ու դիմմիների միջև:

Լ.Ջ 86

Խալիդ իբն ալ-Վալիդը[32] կամենում էր Հիրան իր նստավայրը դարձնել, սակայն ստացավ Աբու Բաքր [խալիֆայի][33] նամակը, որով [նա] հրամայում էր գնալ Ասորիք՝ օգնելու Աբու Ուբայդային և մահմեդական [զորքին]:

[Ասորիքում] Խալիդն անցնում էր Անատի մոտով և նրա պատրիկը դուրս եկավ ու խնդրեց հաշտության պայմանագիր և նա գոհացրեց նրան, այն պայմանով, որ ոչ մի տաճար կամ եկեղեցի չպետք է քանդվեր: [Եկեղեցիների] զանգերը չպետք է ուզած ժամին հնչեցնեին գիշեր թե ցերեկ, այլ միայն աղոթքի ժամանակ, իսկ խաչերը կարող էին դուրս բերել միայն տոնի օրը: Նրանցից պահանջեց, որ մահմեդականներին երեք օր հյուրասիրեն, ուղեցույցներ տան նրանց և ջիզիա վճարեն:

*Նջ 87*

*Այսպիսով թողնվեցին տաճարներն ու եկեղեցիները և չքանդվեցին, ըստ մահմեդականների ու զիմմիների միջև կնքված հաշտության պայմանագրի: Խալիդի այս պայմանագիրը չի մերժվել ոչ Աբու Բաքրի, ոչ էլ նրանից հետո իշխող Օմարի, Օսմանի[32] ու Ալիի[33] կողմից:*

*Ասել է Աբու Յուսուֆը՝ իմ կարծիքով չպետք է ոչ քանդել և ոչ էլ փոխել նրաշխավորվածը: Այս գործը պետք է թողնել այն վիճակում, ինչպես թողել են Աբու Բաքրը, Օմարը, Օսմանը, Ալին, չէ որ նրանք չեն քանդել ոչ մի բան, որը հիշված է եղել պայմանագրում: Ինչ վերաբերում է նոր կառուցված տաճարներին ու եկեղեցիներին, ապա դրանք պետք է քանդվեն: Այս գործը քննարկել են մեկից ավելի անցյալի խալիֆաներ, որոնք կամեցել են քանդել քաղաքներում ու մայրաքաղաքներում գտնվող տաճարներն ու եկեղեցիները: Այն ժամանակ քաղաքների բնակիչները ցույց են տվել այդ գրավոր պայմանագրերը, որով խաղաղություն է կնքվել մահմեդականների ու նրանց միջև: Իրավագետներն (փակիհ) ու [Մուհամմադի] մերձավորների հաջորդները մերժել են խալիֆաների այս ծրագիրը և նրանց մեղադրել այդպիսի նպատակ ունենալու համար, որի շնորհիվ նրանք (խալիֆաները) հրաժարվել են իրենց ցանկությունը կատարելուց: Հաշտության պայմանագիրը պետք է ի զորու ճանաչվի, ինչպես այն ճանաչել է Օմար իբն ալ-Խաթթաբը, մինչև մեռյալների հարության օրը: Ուստի արա ինչ հարմար կգտնես, բայց չէ որ դու թողել ես նրանց տաճարներն ու եկեղեցիները այն հիման վրա, որ արդեն հաղորդել եմ քեզ:*

*Նջ 88*

*Պատմել է Սուլայմանը լսելով Հանաշից, որը լսել է Իքրիմայից, իսկ վերջինս Իբն Աբբասից, որ այլազգիները (աջամ) հարցրել են նրան, թե կարող են նոր եկեղեցիներ ու տաճարներ կառուցել մահմեդական [պետության] մայրաքաղաքներում (ամսար): Նա պատասխանել է՝ ինչ վերաբերում է արաբների կողմից հիմնադրված քաղաքներին, ապա զիմմիները չեն կարող նոր տաճար կամ նոր եկեղեցի կառուցել, չեն կարող [եկեղեցու] զանգր հնչեցնել, չեն կարող գինին հրապարակավ ցուցադրել, ոչ էլ խոզ բուծանել: Իսկ այլազգիների կողմից հիմնադրված քաղաքներում, որոնք արաբների կողմից նվաճվել են և բնակիչներն ընդունել են նրանց տիրապետությունը, ապա այլազգիներն իրավունք ունեն այն ամենին, որ պայմանագրում նշված է և արաբները պարտավոր են հավատարմորեն այն գործադրել:*

## ՀԱՐԿԵՐԻ ՄԱՏՅԱՆ (ՔԻՏԱԲ ԱԼ - ԽԱՐԱՋ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] **Օմար իբն ալ-Խաթթաբ** - *Մուհամմադ մարգարեին հաջորդած չորս ուղղահավատ խալիֆաններից (Աբու Բաքր (632-634), Օմար (634-644), Օսման (644-656) և Ալի (656-661)) երկրորդը: Նրա օրոք տեղի ունեցան Արաբական խալիֆայության ամենակարևոր նվաճումները՝ Սիրիան, Միջագետքը, Եգիպտոսը, Իրանի մի մասը:*

[2] *Սանաա - Հնագույն ժամանակներից Եմենի գլխավոր քաղաքը: Ներկայիս միավորված Եմենի Հանրապետության մայրաքաղաքը: (Smith, Sana. EOI, CD-ROM, (IX: 1a))*

[3] *Մադինա - Մադինան, կամ Յասրիբը գտնվում է Արաբիայի Հիջազ երկրամասում Մեքքայից մոտավորապես 500 կմ դեպի հյուսիս: Գտնվում է այն առևտրական ճանապարհի վրա, որը Եմենից գնում է մինչև Ասորիք: (Hitti, History of the Arabs).*

[4] *Մուհամմադ - Ահմադ իբն Աբդալլահ Մուհամմադը (570-632) Հաշիմ ցեղի Կուրայշ տոհմի ներկայացուցիչ, իսլամի և մահմեդական համայնքի հիմնադիրը: Մահմեդականների պատկերացմամբ Ալլահի մարգարեն և առաքյալ, որի միջոցով մարդկանց է փոխանցվել Ղուրանի՝ մահմեդականների սուրբ Գրքի տեքստը: (*Ислам, энц. словарь, стр. 178-180*):*

[5] *Սուղուր — Սուղուր կամ «իկլիմ ալ-Սուղուր» էր կոչվում արաբական սահմանային ամրությունների գոտին, որն անմիջականորեն սահմանակցում էր Բյուզանդական կայսրության հետ: Սա հատուկ վարչական միավոր էր, որը երկարհարյուրամյա (7-10-րդ դդ.) արաբաբյուզանդական պայքարի ընթացքում գտնվում էր խալիֆայության կազմում: Այն ընդգրկում էր Մեծ Հայքի Բարձր Հայք և Չորրորդ Հայք (Ծոփք) նահանգների որոշ արևմտյան գավառներ, Փոքր Հայքի հարավային կեսը, ինչպես նաև նախկին բյուզանդական նահանգներ Եփրատացիքն ու Կիլիկիան ամբողջությամբ: Սուղուրի նվաճումն ու որպես վարչական միավորում ձևավորման գործընթացը սկսվեց Օմար (634-644) և Օսման (644-656) խալիֆաների օրոք, շարունակվեց Մուավիա Ա-ի ժամանակ (661-680) և իր ավարտին հասավ Աբդ ալ-Մալիքի (685-705) օրոք: Վերջինիս օրոք վերջնականապես ձևավորվեցին Սուղուրի երկու գոտիները՝ Ջազիրայի (Վերին Միջագետք) սահմանային ամրությունների գոտին (ալ-Սուղուր ալ-Ջազարիյյա) և Ասորիքի սահմանային ամրությունների գոտին (ալ-Սուղուր ալ-Շամիյյա): Առաջինի մեջ էին մտնում հետևյալ ամրացված քաղաքները՝ Մալաթիա (վարչական կենտրոն), Հադաս, Մարաշ, Զապետրա և այլն, իսկ երկրորդի մեջ՝ Տարսոնը (վարչական կենտրոն), Ադանան, Մամեստիան, Անազարբան և այլն: Վերջապես այս երկու գոտիներին տվելացվում էր նաև Թեոդոսիուպոլը, կամ Կարնո քաղաքը (Կալիկալա) Հայաստանում և Սամոսատը՝ Դիար Բաքրում: (Տե՛ս Տեր-Ղևոնդյան, Արաբ. սահմ. ամր. գոտին):*

[6] *Խոսրովի հողերը — Նկատի ունի Խոսրով Ա Անուշիրվանի (531-579) պետության տարածքները:*

[7] *Իշխան հավատացյալաց - Արաբերեն՝ «ամիր ալ-մումինին», որ նշանակում է հավատացյալների իշխան, կամ հրամանատար: Այս անունը տրվում էր խալիֆային: Առաջին անգամ այն կրել է Օմար իբն ալ-Խաթթաբը, որին հետևել են Օմայյան ու Աբբասյան խալիֆաները: Այս տիտղոսը իրենց են վերագրել նաև մի ամբողջ շարք այլ մահմեդական տիրակալներ (Կարմատներ, Ֆաթիմյաններ, Ալմոհադներ և ուրիշներ): (Shorter Enc. of Islam p. 42):*

[8] *Տասանորդ - կամ ուշր կոչվում է այն հարկը որ վճարվում է հողագործությունից ստացված ապրանքներից: Վճարում են մահմեդականները, այն հողերից, որոնք*

խալիֆայի կողմից նվիրաբերված յինելու պատճառով ազատված են խարաջից (հողահարկ) (Ислам, энц. словарь, стр. 247-248):

[9] Շիրք (հեթանոս) – նշանակում է հեթանոս, բազմաստվածյան: Բուն իմաստը՝ Ալլահի կողքին ընդունել մի այլ աստծո գոյությունը, կամ պաշտել առարկաների ու մարդկանց, մի բան որ համարվում էր շեղում միաստվածությունից (մոնոթեիզմից) և համարվում էր մեծագույն մեղք: Բայց այս բառը տրվում էր նաև բոլոր ոչ մահմեդականներին, որոնք (ինչպես հրեաներն ու քրիստոնյաները) կարող էին և մոնոթեիստներ լինել: Ավելին, այս անունը իսլամի մի ուղղության հետևորդը տալիս էր մի այլ՝ հակառակորդ ուղղության հետեորդին (ինչպես սուննիները շիաներին և այլն): (Ислам, энц. словарь, стр. 300):

[10] Ահլ զիմմա – Հովանավորյալներ: Այսպես են կոչվում այն ոչ մահմեդականները, որոնք ընդունել են մահմեդականների տիրապետությունը, վճարում են ջիզիա (գլխահարկ) և դրանով հանդերձ ստացել են մահմեդականների հովանավորությունը (զիմմա), որը կայանում է արտաքին թշնամիներից պաշտպանության, ինչպես նաև անձի և գույքի անձեռնմխելիության մեջ: (Ислам, энц. словарь, стр. 27):

[11] Սավադ – Սավադ, Սաուադ (սեահող), այսպես մահմեդական վաղ շրջանում կոչվում էր Իրաքը, կամ նրա հարավային մասը, ավելի ճիշտ Եփրատ և Տիգրիս գետերի միջև ոռոգված ու մշակված հողերը (մանավանդ հարավում): Այս բառը օգտագործվում էր նաև պարբերաբար մշակված ու ոռոգված ցանկացած հողատարածքի վերաբերյալ, ինչպես օրինակ Սավադ ալ-Բասրա, Սավադ ալ-Բուխարա և այլն:

Արաբները առաջին հերթին այսպես կոչեցին Իրաքի հարավը, ի նշան այն հակադրության, որ կար Արաբիայի «սպիտակ» անապատի ու Իրաքի կանաչապատ ու սև հողերի միջև: (H. H. Schaeder, Sawad, EOI, CD-ROM, (IX: 87a)):

[12] Մուլք – Սեփականություն, ինչպես նաև հողատիրության տեսակ, որն առաջանում է ժառանգման, գնման, նվիրատվության, ինչպես նաև յուրացման (ոչ բերրի հողերի յուրացում և այլն) և ռազմական ավարի խլման ճանապարհով: (Ислам, энц. словарь, стр. 169):

[13] Ջիմմի – Ջիմմիները նրանք են, որոնք օգտվում են Ջիմմայից, իսկ Ջիմման, մի տեսակ անվերջ նորոգվող, պայմանագիր է, որի միջոցով մահմեդական համայնքը ապահովում է հյուրընկալություն և պաշտպանվածություն (անվտանգություն) այլ կրոնների հետևորդների համար, որոնք ընդունել են իսլամի գերիշխանությունը: (Cl. Cahen, Dhimma, EOI, CD-ROM, (II: 227a)):

[14] Աբու Հանիֆա – Աբու Հանիֆան (699-767) մահմեդական կրոնի և իրավագիտության մասնագետ է: Նրա անունով է կոչվում Մահմեդական կրոնա-իրավագիտական չորս դպրոցներից (մազհաբներ) մեկը՝ Հանաֆիների (հանիֆիական) մազհաբը: (Ислам, энц. словарь, стр. 11, տե՛ս նաև սույն գրքի ներածության մեջ):

[15] Զաքատ – Ոչ մեծ հարկ, որը գանձվում է հօգուտ ումմայի (մահմեդական համայնք): Սկզբում այս «զաքատը» տրվել է իբրև բարեգործություն, ոչ պարտադիր, կամավոր նվիրատվություն, որ տրվում էր յուրատեսակ փոխօգնության «ֆոնդին»: Հետագայում այն դարձավ պարտադիր, սակայն զաքատի չափը ժամանակի ընթացքում փոփոխվում էր: (Ислам, энц. словарь, стр. 74):

[16] Սադակա – ողորմություն, որը տալիս են ունևորները չունևոր մարդկանց համար: Համարվում է որ այն մաքրող ու սրբագործող նշանակություն ունի մահմեդականի համար: Հադիսներում և իրավագիտական գրականության մեջ սադակա է կոչվում զաքատը (Տե՛ս ծանոթագր. 15): Սադակա է կոչվում նաև զաքատի այն տեսակը, որը տրվում է անասուններից, նրանց մի մասը (ըստ ընդհանուր գլխաքանակի) հանձնելով որպես օգնություն: Սակայն հաճախ սադական և զաքատը չվտրվում են: (Ислам, энц. словарь, стр. 202, T. H. Weir [ A. Zysow], Sadaka, EOI, CD-ROM, (VIII: 708b))

[17] *Սաբիներ – Արաբերեն աս-սաբիուն, կամ աս-սաբիյա: Կրոնական համայնք, որը «Ահլ ալ-Քիտաբի» կամ «Ահլ ալ-Զիմմայի» մաս կազմելով, միջանկյալ դիրք է գրավում հավատացյալների ու հեթանոսների միջև, հետևաբար վայելում է մահմեդական համայնքի հովանավորությունը:*

*Այս անունը տրվել է առնվազն երեք տարբեր կրոնական համայնքների: Այս համայնքի մասին հիշատակություն կա նաև Ղուրանում, սակայն մինչև այժմ հստակ չէ, թե հատկապես ո՞ր համայնքը կամ աղանդն էր նկատի առնվում: Մուհամմադի ժամանակներում սա հավանաբար Արաբիայում բնակվող մի համայնքի անվանում էր, որ հետևում էր մանիքեականության նման մի ուսմունքի: Մյուս համայնքը, որին տրվում է «Սաբիներ» անվանումը Հարավային Իրաքում (Բաթաիհ) բնակվող հրեա-քրիստոնեական մի հին աղանդ էր: Եվ վերջապես հայտնի են Խառանի սաբիները, Վերին Միջագետքում, որոնք հետագայում (8-11-րդ դդ.) Ղուրանի այդ հիշատակությունն իրենց վերագրեցին: Նրանք հաստատվեցին նաև Բաղդադում և Իրաքի տարբեր մասերում: Սրանք հետևորդներն էին հին սեմական բազմաստվածյան մի կրոնի, ունեին մեծապես հելլենացած վերնախավ: Սրանք սկսեցին անվանվել Սաբիներ, ըստ երևույթին ս. Գրքի ժողովրդի շարքում դասվելու և հալածանքներից ազատվելու համար: (F. C. de Blois, Sahi, EOI, CD-ROM, (VIII: 672a),* Ислам, энц. словарь, стр. 74*):*

[18] *Սամարացիներ – Սամարացիները Իսրայելի ժողովրդի մաս են կազմում, բայց հրեական կրոնի հետևորդներ չեն: Իսլամի շրջանում սամարացիները, հրեաների ու քրիստոնյաների պես, համարվել են «Գրքի ժողովուրդ»: Սամարացիները օգտագործում էին եբրայերենը, որպես կրոնական արարողությունների լեզու, արաբական նվաճման ժամանակ նրանք արամեախոս էին և շատ շուտով սկսեցին խոսել արաբերեն: Արաբ մատենագիրները հաճախ հիշում են սամարացիներին, որպես հմուտ բժիշկներ: Սամարացիները միշտ համարվել են շատ փակ, խստակյաց ու մաքրակենցաղ համայնք: (S. Noja Noseda, al-Samira, EOI, CD-ROM, (VIII: 1044a)):*

[19] *Հիրա – Սասանյան Իրանի ազդեցության տակ գտնվող արաբական իշխանություն, կամ թագավորություն, Եփրատից արևելք ընկած տարածքներում: Այն ձևավորվել է 3-4-րդ դարերում: Պետությունը հիմնել է արաբական Լախմ տոհմը: Հիրան առավել կարևորություն ձեռք բերեց 5-րդ դարում, երբ Սասանյանների հետ միասին պայքարում էր ընդդեմ Բյուզանդիայի: Հիրայի բնակչությունը հիմնականում քրիստոնյաներ էին, իսկ տիրակալները սկզբում հեթանոս, իսկ վերջին շրջանում՝ քրիստոնեացան: Հիրան գոյատևեց մինչև 7-րդ դարի սկիզբը: Հիրայի տիրակալները հովանավորեցին նախամահմեդական (ջահիլիյայի) շրջանի արաբ նշանավոր բանաստեղծներին: (Hitti, History of the Arabs, p. 81-84):*

[20] *Նաջրան – Նաջրանը Արաբիա թերակղզու հարավային կեսում ամենակարևոր քրիստոնեական կենտրոնն էր 6-րդ դարում: Ընդ որում, գերակշռում էր միաբնակությունը: Կարելի է ասել, որ Նաջրանը վերածվել էր բոլոր քրիստոնյա արաբների սրբազան քաղաքի: Նաջրանի քրիստոնյաների ինքնուրույնությունը վտանգվեց իսլամի հանդես գալով: Սկզբում մահմեդականները հանդուրժում էին նրանց, ապա Մուհամմադ մարգարեն թույլ տվեց նրանց հետևել իրենց կրոնին, դրա փոխարեն պահանջելով հատուկ հարկ վճարել, իսկ Օմար խալիֆայի (634-644) օրոք պահանջվեց, որ նրանք թողնեն իրենց քաղաքն ու գաղթեն: Սրանց մեծ մասը հաստատվեց Իրաքի Նաջրանիյա քաղաքում, Քուֆայից ոչ հեռու: Սակայն, ըստ երևույթին, դրանից հետո էլ Նաջրանում դեռ մնում էր բավական թվով քրիստոնյա բնակչություն, այնքան, որ 9-10-րդ դարերում կային եպիսկոպոսներ: (Irfan Shahid, Nadjran, EOI, CD-ROM, (VII: 871b)):*

[21] *Դիրհեմ – արաբական արծաթե դրամ:*

[22] **Ալի իբն Աբու Թալիբ** *– Ալի իբն Աբու Թալիբը (մահ. 661 թ. հունվարի 21-ին) չորրորդն ու վերջինն է ուղղահավատ խալիֆաներից: Նա Մուհամմադ մարգարեի*

դարմիկն ու փեսան էր, որի անվան հետ է կապվում իսլամի շիայական ուղղության ծագումը: (Ислам, энц. словарь, стр. 18):

[23] Առաքյալի – Մուհամմադը Ղուրանում երբեմն անվանվում է «ռասուլ» (առաքյալ), երբեմն «նաբի» (մարգարե): Տվյալ դեպքում խոսքը Մուհամմադի ասույթներից, կամ այսպես կոչված «հադիսներից» մեկի մասին է: «Հադիսները» Մուհամմադի խոսքերի կամ գործերի մասին վկայություններ են, որոնք մահմեդական համայնքի համար Ղուրանից հետո իրավունքի երկրորդ աղբյուրն են հանդիսանում (Ислам. энц. словарь, стр. 262):

[24] Իյադ իբն Ղանմ – Իյադ իբն Ղանմ իբն Զուհայր իբն Աբու Շադդադ իբն Ռաբիա իբն Հիլալ ալ-Կուրաշի ալ-Ֆիհրին մահացել է հիջրի 20 թվականին: Աբու Բաքրի թիկնապահն էր և Օմար խալիֆայի զորավարը: Մասնակցել է Յարմուքի վճռական ճակատամարտին (20 օգոստոս, 636) և կատարել է արշավումներ Հյուսիսային Ասորիքում: Գլխավոր դերակատարն է եղել Միջագետքի նվաճման մեջ: Նա է գրավել Ամիդն ու Ռակկան: (Տե՛ս Նալբանդյան, Արաբական աղբյուրներ, էջ 122):

[25] Ահլ ալ-քիտաբ – Գրքի ժողովուրդը (ահլ ալ-քիտաբ) հիշատակվում է Ղուրանում որպես մարդիկ, որոնք միջանկյալ դիրք են գրավում մահմեդական հավատացյալների ու հեթանոսների միջև: Այս կատեգորիայի մեջ են մտնում առաջին հերթին հրեաներն ու քրիստոնյաները, ինչպես նաև սաբիները, սրանց ավելացվում են նաև զրադաշտականները: (Ислам, энц. словарь, стр. 28):

[26] Ջարիբ – այն հավասար է շուրջ 2500 քառ. մետրի: (Тер-Гевондян, Армения, стр. 199).

[27] Կաֆ – կամ կաֆիզ: Մեծ չափի կաֆիզը (ցորենի կշռման չափ է) Իրաքում կշռում էր 48, 75 կգ, իսկ փոքրը՝ մոտավորապես 24, 108 կգ: (Хинц, Меры и веса, стр. 50-52):

[28] Դինար – արաբական ոսկեդրամ:

[29] Մոդ – կամ մուդդ՝ ցորենի ծավալը հաշվելու միավոր է, որը սովորաբար հավասար էր 1, 053 լիտրի, թեև տարբեր երկրներում այն փոփոխվում էր: (Хинц, Меры и веса, стр. 56).

[30] Ազան – կոչ որով հավատացյալներին հրավիրում են աղոթքի:

[31] Ռումի երկիր – Բյուզանդական կայսրություն:

[32] Խալիդ իբն ալ-Վալիդ – Մուհամմադ մարգարեի ժամանակակիցն էր, հռչակավոր զորավար: Նա բազմաթիվ հաղթանակներ է տարել Արաբիայի ներսում, ինչպես նաև ընդդեմ Բյուզանդիայի և Իրանի թե՛ Մուհամմադի, թե՛ Աբու Բաքրի և թե՛ Օմարի օրոք: Մահացել է 641/642 թվականին: (Shorter Enc. of Islam p. 236):

[33] Աբու Բաքր – Աբու Բաքր ալ-Սիդդիկը (572 – 634 օգ. 23) առաջինն է չորս ուղղահավատ խալիֆաներից: Առաջիններից էր, որ ընդունեց իսլամը և մշտապես աջակցում էր մահմեդական համայնքին: Նա ուղեկցում էր Մուհամմադին թե՛ Մեքքայում և թե՛ Մադինայում: Աբու Բաքրը իր դստերը՝ Աիշային կնության տվեց Մուհամմադին: Երբ Մուհամմադը հիվանդացավ Աբու Բաքրին նշանակեց աղոթքի ղեկավար: Մուհամմադի մահից հետո համայնքը Աբու Բաքրին ընտրեց խալիֆա, որը իշխեց երկու տարի (632-634) (Ислам, энц. словарь, стр. 8):

[34] Օսման – Օսման իբն Աֆֆանը (575 – 656) երրորդն է ուղղահավատ խալիֆաներից: Նա հարուստ վաճառական էր Օմայան տոհմից: Մուհամմադի առաջին հետևորդներից էր: Օմար խալիֆայի մահից հետո ստեղծված խորհուրդը խալիֆա ընտրեց Օսմանին, որը իշխեց 644-656 թվականներին: Նրա օրոք ավարտին հասցվեց Իրանի նվաճումը: Հենց Օսմանի նախաձեռնությամբ էր, որ կազմվեց Ղուրանի համահավաք տեքստը: 656-ին Օսմանի դեմ դավադրություն կազմակերպվեց ու խալիֆան սպանվեց:

[35] Ալի – Տե՛ս . Աբու Յուսուֆ. ծնթգր. 22:

## ՎԱՀԲ ԻԲՆ ՄՈՒՆԱԲԲԻՀ (մահ. 728/734) / ԻԲՆ ՀԻՇԱՄ (մահ. 828/833)

*Եմենցի Աբու Աբդալլահ Վահբ իբն Մունաբբիհը Հարավային Արաբիայի ավանդությունների ու զրույցների պատմող ու ասացող է: Նա ուներ պարսկական ծագում և ծնվել էր Զիմարում, Սանաայից ոչ հեռու՝ 654/655 թվականին: Նրա հայրը՝ Մունաբբիհը, ըստ ավանդության, ընդունել էր իսլամ դեռևս Մուհամմադի կենդանության օրոք: Ինքը՝ Վահբը աշխատել է որպես դատավոր Սանաա քաղաքում: Իր կյանքի վերջում, ինչ-որ պատճառով, Եմենի կառավարիչը Վահբին պատժում է մտրակի հարվածներով, որի հետևանքով նա մահանում է:*

*Վահբ իբն Մունաբբիհը (մահ. 728/734) առաջիններից է, որ հավաքել ու գրի է առել հին Արաբիայի (հին Եմենի) պատմությանը վերաբերող բանավոր զրույցները, որոնք սակայն առասպելախառն էին, որից հետագայում օգտվել են այլ պատմիչներ և առաջին հերթին Աբդ ալ-Մալիք իբն Հիշամը (մահ. 828/833), որը վերամշակել ու խմբագրել է Վահբի «Թագերի մատյանը» երկը, որը մեզ հասել է հենց Իբն Հիշամի խմբագրությամբ:*

*Աբու Մահամմադ Աբդ ալ-Մալիք Իբն Հիշամը առավել հայտնի է որպես Մուհամմադ մարգարեի կենսագրության հեղինակ: Ասվում է, որ նրա ընտանիքը հիմյարական ծագում ուներ և Բասրայից տեղափոխվել է Եգիպտոս, որտեղ նա ծնվել ու ապրել է: Իբն Հիշամը տոհմաբանության ու քերականության փայլուն գիտակ էր: Նա մահացավ Եգիպտոսում 828 կամ 833 թվականին:*

Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ բնագրից. Wahb ibn Munabbih, Kitab attijan fi muluk Himyar, ed. Krenkow, Haydarabad, 1347 (1928).

*(Encyclopaedia of Islam, Wahb ibn Munabbih, R. G. Khoury, v. XI, pp. 33-36, Ibn Hisham, W. Montgomery Watt, v. III, pp. 800-801,* Х. А. Р. Гибб, Арабская литература, Москва, 1960, стр. 123-124)

## ԹԱԳԵՐԻ ՄԱՏՅԱՆ

## (ՔԻՏԱԲ ԱԼ- ՏԻՋԱՆ)

### ԹԱԳԵՐԻ ՄԱՏՅԱՆ ՀԻՄՅԱՐԻ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Վահբ իբն Մունաբբիհից: Պատմել է Աբու Մուհամմադ Աբդ ալ-Մալիք իբն Հիշամը լսելով Ասադ իբն Մուսայից, իսկ սա Աբու Իդրիս իբն Սինանից, սա էլ իր մոր կողմից պապ Վահբ իբն Մունաբբիհից:*

*էջ 46*

*Նա (Կահթանը)* գրոհեց Բաբելոն (Բաբիլ)[1] հետապնդելով ալ-Իսքանանին Ատրպատականում, իսկ վերջինս նրա դեմ կանգնեց Հաբեթի որդիների հետ: Կահթանը հաղթեց ու սպանեց Իսքանանին, նրա Հաբեթի որդիներից բաղկացած զորքը ցրեց, ապա գնաց Հայաստան երկիրը և նրանից այն կողմ:*

*էջ 47*

*Նա (Աբդ Շամսը)** շարժվեց դեպի Բաբելոն, նվաճեց, կոտորեց նրանում եղած իժոխքի (բավար) որդիներին, մինչև հասավ Հայաստանի հողը ու նվաճեց Հաբեթի որդիների հողը:*

*էջ 63*

*Նա (Մուաֆիր իբն Յաաֆուրը) նվաճում էր երկրներ, հարկ պահանջելով ու հասավ Եփրատ, անցավ դեպի Հայաստան, որը նվաճեց ու կոտորեց նրա այն թագավորներին, որոնք չէին հնազանդվում: Նա այստեղ գտավ տարբեր թագավորների, ապա անցնելով կամուրջը (կանթարա) անցավ Ասորիքի (Շամ) հողը:*

---

** Հարավարաբական ցեղերի առասպելական նախահայրը:*

*** Համանուն ցեղախմբի առասպելական նախահայրը:*

Լ,Ձ 65

Ասել է, Վահրը երբ [Շադդադ իբն Աադը] թագավոր դարձավ հավաքեց իր զորքը: Նա կռովի մարդ էր և անցավ երկիրը տրորելով ու հասավ Մեծ Հայք (Արմինիա ալ-Քուբրա), ուր սպանեց ամեն մի ըմբոստի: Այսպես անցավ Եփրատը դեպի արևելք, հասնելով նրա հեռավոր ծայրերը: Ով նրա դեմ կանգնում էր, սպանում էր նրան: Հասավ Սամարկանդի ափերը և մինչև Տիբեթ երկիրը: Ապա դիմեց Հայաստան և այնտեղից անցավ Ասորիք (Շամ):

Լ,Ձ 80

Ասել է Վահրը՝ երբ Ռաիշը հասավ Խորասանի լեռները. ստացավ Հայաստանի նվերները, քանզի նրանք (Հայերը) զգուշանում էին նրանից՝ իմանալով Հնդկաստանում կատարվածը: Հայաստանի թագավորները ուղարկել էին սպիտակ բազեներ, մետաքսեղեն (դիբաջ), ժամբեր ու. դարմանալի ապրանքներ, որ թագավորներին էին արժանի: Նա հարցրեց դեսպաններին՝ այս բոլորը ձեր երկրից է. ասացին՝ այո ո՜վ արքա: Ասաց՝ մենք այլևս ոչ մի բան չենք գրավի, մինչև Հայաստանը չգրավենք: Նա առաջ շարժվեց դեպի Հայաստանի հողը: Նրա մոտ եկավ Շամմար իբն ալ-Աթթաֆ ալ-Հիմյարին հարյուր հազարով ու նրան հետևեց իր զորքով: Նվաճեցին Հայաստանը ու գրավեցին երկրի լեռնացքները մինչև երկրի մյուս կողմը, ինչ որ կար Արջ համաստեղության տակ և երկրի անկյուններում: Ասրս վերադարձավ Ատրպատական:

ԼՁ 100

Այսպես [Երկկոտոշավորը][2] նվաճեց Գոգն ու Մագոգը, Ջարիրսայի ու Ջարիրկայի ժողովուրդը, կոտորեց ում կարողացավ կոտորել, ում կամեցավ՝ նրանց հարկատու դարձրեց: Նվաճեց Հայաստանը և այնտեղ եղած [ժողովուրդը], ապա թեքվեց դեպի Նեհավենդի կիրճը (հովիտը) և այն կոչեց Բաբ ադ-Աբուաբ (դռների դուռ, Դարբանդ) և նույն ձևով մինչև օրս կոչվում է:

Երկկոտոշավորը նվաճելով Գոգն ու Մագոգը կովեց ու հաղթեց նրա ժողովրդին և մի ազգի, որը Նոյի որդի Հաբեթի որդի Իլջանից է սերում, թողեց Հայաստան կոչվող Ջարիրսայի կողմերում: Սրանք կոչվեցին թուրքեր[3] (արաբ. տուրք), քանզի երկկոտոշավորը թողեց (տարավ) նրանց ու դիմեց Գոգի ու Մագոգի երկիրը [նվաճելու]:

*Էջ 110*

*Ալեքսանդր Հռոմը (Հույնը)[4] ազնիվ, իմաստուն մարդ էր. Իկրիտիս ծոցի[5] ափին շինեց երկու փարոս՝ մեկը Բաբելոնի հողում, մյուսը՝ նրանից արեմուտք Հայաստանում: Իկրիտիսի ծով է կոչվել արեմտյան ծովը:*

*Էջ 131*

*Ապա [Աբրահան][6] դիմեց դեպի Ասորիք ու Հասավ լեռնանցքը: Այստեղ ընդունեց Հռոմների ու Հայաստանի ժողովրդի նվերները. Հետո գնաց Հասավ Մեքքա:*

*Էջ 222*

*Շամմար Յուրիշ իբն Նաշիր ալ-Նաամ Թագավորը Հզոր էր. աՀաղդու, ուստի սուղերը, քրդերը, խուզերը (խուզիստանցի՞ք), ղուԹԹերը (գնչուներ), գոԹերը, որոնք բոլորը Նոյի որդի ՀաբեԹի որդիներն են, լուր ուղարկեցին իրենց ՀաբեԹորդի եղբայրներին, որոնք Հայաստանի Հողում են՝ Բալջային ու Ջաջային և ասացին նրանց:*

*Էջ 223*

*Ապա [Շամմար Յուրիշը] չարժվեց Թողնելով Իրաքը, որտեղ Ֆարսի ու ՀաբեԹի որդիների բազմուԹյունը կար և դիմեց Ջաղիրա, ապա գնաց դեպի Եփրատ՝ կամենալով Հասնել Հայաստան:*

*Էջ 225*

*Տուբբա* Շամմար Յուրիշը Հասավ Հայաստան, իսկ Կավատը[7] (Կուբաղ) լսելով այդ մասին Հրամայեց Թուրքերին Հարձակվել Հայաստանի վրա: Առաջ չարժվեցին Թուրքերը՝ կամենալով Հայաստանի վրա Հարձակվել: Նա (Եմենի Թագավորը) կատաղի պատերազմ մղեց, ապա փախուստի մատնեց և խիստ կոտորեց, բացի նրանցից, ովքեր լեռներում ապաստանեցին: Նա Հայաստանի Հողում գերեվարեց, քաղաքներ ավերեց, իսկ Կավատը լսելով, որ Տուբբա Շամմար Յուրիշը Հայաստանում է իր տեղից չարժվել էր, իր Հետ եղող պարսիկների, ֆերղանացիների, սուղերի, քրդերի, ղուԹԹերի, խուզերի բազմուԹյամբ, կամենալով արշավել արարաց երկիրը:*

---

* *Թագավորի տիտղոսը Եմենում:*

# ՎԱՀԲ ԻԲՆ ՄՈՒՆԱԲԲԻՀ / ԻԲՆ ՀԻՇԱՄ

## ԹԱԳԵՐԻ ՄԱՏՅԱՆ (ՔԻՏԱԲ ԱԼ-ՏԻՋԱՆ)

### ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Բաբելոն (Միջագետքի) – Արաբ մատենագիրները Բաբելոն, կամ Բաբիլ են անվանում ինչպես Բաբելոն քաղաքը, այնպես էլ Բաբելոնիա երկիրը: (Տե՛ս Babil, G. Awad EOI, CD-ROM, (I: 846a)):*

[2] *Երկկոտոշավորը – Ալեքսանդր Մեծը, կամ Ալեքսանդր Մակեդոնացին մահմեդական մատենագիրների մոտ նույնացվում է Ղուրանի XVIII սուրայում հիշատակվող «Զու-լ-կառնայն»-ի, այսինքն «երկկոտոշավորի» հետ: Երկկոտոշավորին տրվեց իշխանություն երկրի վրա ծայր արևմուտքից մինչև ծայր արևելք և նա, ի պատասխան հնչված ժողովուրդների խնդրանքի, մի հսկա պատնեշ կառուցեց երկաթից ու պղնձից ընդդեմ առասպելական Գոգ ու Մագոգի (Յաջուջ և Մաջուջ) հարձակումների: (al-Iskandar, W. Montgomery Watt, EOI, CD-ROM, (IV: 127a)):*

[3] *Թուրքեր – Այսպես էին արաբները կոչում խազարներին և նրանց ցեղակիցներին, որոնց լեզուները թյուրքական լեզվաընտանիքին են պատկանում:*

[4] *Ալեքսանդր Հռոմ – Նկատի ունի Ալեքսանդր Մակեդոնացուն, տես ծնթգր. 2: Տվյալ դեպքում «Հռոմ» բառը օգտագործված է հույն, հելլեն իմաստով, մինչդեռ այլ դեպքերում արաբ մատենագիրներն այս բառը օգտագործում են «Բյուզանդացի» իմաստով:*

[5] *Իկրիտիս ծով – Իկրիտիսը կամ Իկրիտիշը Կրետե կղզին է: Իկրիտիսի ծովը Միջերկրականն է, իսկ Իկրիտիսի ծոցը հավանական է Կրետեի մոտակա ծովն է: Պետք է նկատի ունենալ նաև, որ երբեմն, արաբ պատմիչները Կրետեն շփոթում են Կիպրոս կղզու հետ: (Ikritish, R. Mantran, EOI, CD-ROM, (III: 1082a)):*

[6] *Աբրահա – 6-րդ դարի Արաբիայի քրիստոնյա թագավոր, որն ըստ ավանդության, մի մեծ արշավանք է կատարել դեպի Մեքքա, Մուհամմադ մարգարեի ծննդյան տարին (570): Արժանահավատ աղբյուրների տեղեկությունների համաձայն Եթովպիայի թագավորը՝ Հելլեսթեյոսը, արշավեց դեպի հարավային Արաբիա 531 թվականից մի քանի տարի առաջ, սպանեց այդ երկրի թագավորին, նշանակեց մի խամաճիկ թագավոր ու վերադարձավ իր երկիրը: Ապա տեղի ունեցավ հակաեթովպական ապստամբություն, որի հետևանքով գահին բազմեց Աբրահան: Նա փորձեց ինքնուրույն դահակալ մնալ չենթարկվելով ո՛չ Եթովպիային, ո՛չ Բյուզանդիային և ո՛չ էլ Սասանյան Իրանին: Սակայն նրա հեռահար արշավանքների մասին արձանագրություններն ու այլ պատմական աղբյուրները չեն հաղորդում: Մնացածը հետագայի առասպելական պատմություններ են, որ վերագրվել են Աբրահային: (Abraha, 'A. F. L. Beeston, EOI, CD-ROM, (I: 102a)):*

[7] *Կավատը – Հավանաբար սա Սասանյանների արքա Կավատ Ա-ն է (488–496, 498/409–531):*

## ՎԱԿԻԴԻ (747-822)

*Աբու Աբդալլահ Մուհամմադ իբն Օմար ալ-Վակիդին ծնվել է Մադինայում, եղել է Բաղդադի դատավորը: Նրան այդ պաշտոնին նշանակեց Մամուն խալիֆան դահին բարձրանալուն պես: Տեղեկություններ կան, որ նա շատ առատաձեռն անձնավորություն է եղել, փորձել է պլրադվել հացահատիկի առևտրով, բայց ձախողվել է և ընկել պարտքերի տակ: Վակիդին մահմեդական իրավադիտության մասնագետ էր: Հեղինակ է «Մաղյան արշավանքների մասին» (Քիթաբ ալ-Մաղազի) գրքի, որտեղ շարադրում է Մուհամմադի կյանքի օրոք իրականացված արշավանքների պատմությունը:*

*Վակիդիին է վերագրվում նաև «Ասորիքի նվաճումը» (Ֆուտուհ ալ-Շամ) երկը, որից էլ կատարված են թարգմանություններ ներկա հատորում: Թեև կան գիտնականներ (Լեդեր), որոնք այդ վերագրումը համարում են ոչ ճիշտ:*

(Вакыди, Е. А. Беляев, Сов. ист. энц., т. 2, М. 1962, стр. 930, *Encyclopaedia of Islam, v. XI, pp. 101-103, al-Wakidi, S. Leder).*

*Տե՛ս նաև.*

*- History of Muhammeds campaigns by al-Wakidy, ed. By A. Kremer, Calcutta, 1856.*

*- Futuh ash-Sham, 1-2 v. Cairo, 1302 hijriyya.*

*- W. Nassau Less, 3 vols., Calcutta 1854-1862.*

### ՎԱԿԻԴԻ

## ԱՍՈՐԻՔԻ ՆՎԱՃՈՒՄԸ (ՖՈՒՏՈՒՀ ԱԼ-ՇԱՄ)

### ԳԻՐՔ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ

*էջ 12*

*Նոյն այդ բանը կատարեց (կառուցեց տապանը) և Ալլահն ուղարկեց ջրհեղեղը երկրի վրա:*

*[Տապանը] մնաց ջրերի վրա հարյուր հիսուն օր:*

*Վեցերորդ ամսում կանգնեց Կարդա[1] լեռան վրա, իսկ տասներորդ ամսում երևացին լեռների գագաթները:*

*Իսկ Վահբն ասել է, թե ինձ պատմել են, որ տապանը (նավը) ճանապարհ ընկավ Ռաջաբ[2] ամսի վերջից տասն օր մնացած (Ռաջաբի 20) և մնաց տապանի վրա հարյուր հիսուն օր, ապա մեկ ամիս կանգնեց Արարատ (Ջուդի)[3] լեռան վրա, որը լեռ է Ջազիրա[4] երկրում և [մարդիկ] դուրս եկան Մուհառամ[5] ամսի վերջից տասն օր մնացած (Մուհառամի 20):*

*Երբ դուրս եկան, կառուցեցին Կարդա գյուղը, որը կոչվեց Սամանին[6] (Թամանին, ութսուն), քանզի նրանում կար ութսուն տուն, յուրաքանչյուրը ամեն մեկի համար, որը նրա (Նոյի) հետ ազատվել էր: Մինչև օրս էլ կոչվում է Սամանինի շուկա:*

### ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

*Խորասանը[7] նվաճվեց Օսման խալիֆայի օրոք հաշտության [պայմանագրով]: Ինչ վերաբերում է Թարարիստանին[8], Վրկանին (Ջուրջան)[9] ու Ռեյին[10], ապա վերջինս նվաճվել է Օսման իբն Աֆֆանի խալիֆայության ժամանակ հաշտության [պայմանագրով] Աբու Մուսա ալ-Աշաարիի կողմից, իսկ Թարարիսաանը նվաճել է Սաադ իբն ալ-Ասր հաշտության [պայմանագրով]՝ Օսմանի օրոք:*

*Քիրմանն[11] ու Սիջիստանը[12] նվաճել է Արդալլահ իբն Ամիր իբն Քարիզը հաշտության [պայմանագրով], Ջարայն[13] ամբողջովին նվաճվել է բռնի ուժով, իսկ Ահուազը[14], Ֆարսը[15] նույնպես նվաճվել են բռնի ուժով:*

Սավայն ամրոցովին բռնի ուժով նվաճել է Սաադը Օմարի խալիֆայության ժամանակ. Ջազիրան հաշտության [պայմանագրով] նվաճել է Իյադ իբն Ղանմը: Ինչ վերաբերում է Ասորիքին (Շամ), ապա Աջնադեյնը նվաճվեց հաշտության [պայմանագրով] Աբու Բաքրի խալիֆայության ժամանակ, իսկ Օմար իբն ալ-Խաթթաբը նվաճեց Սուրբ քաղաքը (Երուսաղեմ): Ասորիքի բոլոր քաղաքները նվաճվել են Օմարի օրոք հաշտության [պայմանագրով], սակայն ոչ նրա հողային տիրույթները, որոնք բռնի ուժով են նվաճվել Յազիդ իբն Աբու Սուֆիանի, Շուրահբիլ իբն Հասանայի, Աբու Ուբայդայի ու Խալիդ իբն ալ-Վալիդի ձեռքով: Եգիպտոսը նվաճվել է հաշտության [պայմանագրով] Ամր իբն ալ-Ասի[16] ձեռքով: Մաղրիբը[17], որն Աֆրիկան (Իֆրիկիա)[18] է, նվաճվել է բռնի ուժով: Սահմանային ամրությունների գոտին (Սուղուր) և Կեսարիան նվաճվել են Օմարի օրոք՝ բռնի ուժով:

ՀՁ 199

Այս Մամունը[19] գնաց Տարսոն (Թարսուս)[20] երկու հարյուր տասնհինգ թվականի Մուհառամ ամսին (28 փետրվար – 29 մարտ 830): Նա հարձակվեց հոռոմների վրա ու նվաճեց Կուռա, Խարսիանոն (Խարշանա) և Սամալու ամրոցները: Ապա վերադարձավ Դամասկոս (Դիմաշկ), հետո գնաց Եգիպտոս ու կրկին եկավ Դամասկոս:

Նա կրկին արշավեց հոռոմների դեմ երկու հարյուր տասնյոթ թվականին (7 փետրվար 832 – 26 հունվար 833): Այդ տարի նվաճվեց Լուլուան և նա հրամայեց կառուցել Տիանան (Թուանա): Վերջապես Մամանը վերադարձավ ու գնաց Ռակկա:

Ապա նա վերստին դիմեց հոռոմների երկիրը և մեռավ Պոդանդոն (Բադանդուն) գետի մոտ երկու հարյուր տասնյոթ թվականի Ռաջաբ ամսի տասնյոթին (7 օգոստոս 833): Նրա մարմինը փոխադրվեց Տարսոն և այնտեղ թաղվեց:

[Մուտասիմի[21] օրոք] հոռոմները պաշարեցին Զապետրան (Զիբաթրա): Ապա Իսհակն արշավեց նրանց դեմ, ասպատակեց Ռումի երկիրը երկու հարյուր քսաներեք թվականի Ջումադա Ա ամսին (31 մարտ – 29 ապրիլ 838) և գրավեց Ամորիոնը (Ամմուրիյա)՝ նույն տարվա Ռամազան ամսին (27 հուլիս – 25 օգոստոս 838):

## ՎԱԿԻԴԻ

# ԱՍՈՐԻՔԻ ՆՎԱՃՈՒՄԸ (ՖՈՒՏՈՒՀ ԱԼ-ՇԱՄ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Կարդա լեռ – Կարդան արաբական ձևն է Կորդուք անվան: (Հ. Հյուբշման. «Հին Հայոց տեղւոյ անունները». էջ 203. Երեմյան. Աշխարհացույց. էջ 60 (Տե՛ս Իբն ալ-Ասիր. էջ 364 ))

[2] Ռաջաբ ամիս – Մահմեդական օրացույցի 7-րդ ամիսը:

[3] Արարադ (Ջուդի) լեռ – Ջուդի արաբական անունն է Կորճայք նահանգի Արարադ լեռան, որի վրա, ըստ Ղուրանի, կանգ առավ Նոյյան տապանը: (Տե՛ս Իբն ալ-Ասիր. էջ 364):

[4] Ջազիրա – Ջազիրա, որը նշանակում է կղզի (այսինքն Միջագետք), ընդգրկում է Վերին Միջագետքը և արաբական խալիֆայության կարևոր նահանգներից էր: Ուներ ասորի, քուրդ, արաբ և մասամբ նաև Հայ ազգաբնակչություն: Բաժանվում էր 3 մասի և կոչվում էր այնտեղ հաստատված արաբական ցեղերի անուններով: Այսպես Դիար Ռաբիա, այսինքն Մոսուլի շրջան, Դիար Բաքր Ամիդ կենտրոնով և Դիար Մուդար Եդեսիա (Ռուհա) կենտրոնով: Ջազիրայի կազմում էին Հին Հայկական Աղձնիք և Կորճայք նահանգները: Ամբողջ նահանգի կենտրոնն էր Մոսուլը, սակայն միշտ չէ, որ Ջազիրան մեկ վարչական միավոր էր, այլ Ը դարում բաժանվեց երկու մասի Մոսուլ և Ջազիրա ( Տե՛ս Իբն ալ-Ասիր. էջ 367):

[5] Մուհառամ ամիս – Մահմեդական օրացույցի առաջին ամիսը:

[6] Սամանին – կամ Թամանին Հայկական Թման գյուղն է Արարադ լեռան մոտ: Արաբերեն սամանին նշանակում է ութսուն: (Տե՛ս Երեմյան. Աշխարհացույց, էջ 53. Իբն ալ-Ասիր. էջ 364):

[7] Խորասան – Այսօր այսպես է կոչվում Իրանի հյուսիս-արևելյան նահանգը Մաշհադ վարչական կենտրոնով: Սակայն միջնադարում Խորասանը ավելի մեծ տարածք էր ընդգրկում իր մեջ ներառելով նաև այսօրվա Միջին Ասիայի և Աֆղանստանի մի մասը: Խորասանը միշտ հանդիսացել է Իրանի պատվարը հյուսիսից սպառնացող վաչկատուն, հիմնականում թյուրքալեզու ցեղերի դեմ ու թեև տարբեր ազգեր ու ցեղեր ժամանակի ընթացքում հաստատվել են Խորասանում, այն պահպանել է իր պարսկական դիմագիծը: (Khurasan, C. E. Bosworth, EOI, CD-ROM, (V: 55b)):

[8] Թաբարիստան – Նահանգ Հյուսիսային Իրանում Կասպից ծովի հարավային ափին, ընդգրկելով թե՛ ափամերձ նեղ շերտը և թե՛ Էլբուրսի լեռնաշղթայի շերտը: Այն միջնադարում սահմանափակվում էր արևմուտքում Դիլան և Դայլամ նահանգներով, իսկ արևելքում՝ Ջուրջան (Գուրգան): Հետագայում (մոնղոլական շրջանից հետո) օգտագործվել է Մազանդարան անվանումը: (Tabaristan, (Ed.), EOI, CD-ROM, (X: 18b)):

[9] Ջուրջան – Պահլավերեն Վրկանա, արաբերեն Ջուրջան, անտիկ Հյուրկանիա: Նահանգ է Կասպից ծովի հարավ-արևելյան անկյունում: (Gurgan, R. Hartmann [J. A. Boyle], EOI, CD-ROM, (II: 1141a)):

[10] Ռեյ – Հին դարերում կոչվում էր Ռագա և գտնվում էր Հին Մարաստանում: Արաբական շրջանում Ջիբալ նահանգում: Հարուն ալ-Ռաշիդ խալիֆան ծնվել է Ռեյում: Եղել է կարևոր առևտրական կենտրոն: (al-Rayy, V. Minorsky [C. E. Bosworth], EOI, CD-ROM, (VIII: 471a)):

[11] Քիրման – Այսպես է կոչվում իրանական նահանգը և նրա մայրաքաղաքը: Անունը ծագում է Հին Կարմանիայից: Քիրման նահանգը գտնվում է Իրանի կենտրոնական մեծ անապատ Դաշտ-ի-Լութից դեպի հարավ-արևմուտք: Քիրմանից հյուսիս գտնվում է Յազդը և Խորասանը, իսկ արևելքում Սիստանն ու Մակրանը (Բալուջիստանը): (Kirman, A. K. S. Lambton, EOI, CD-ROM, (V: 147a)):

[12] Սիջիստան – Սիջիստան կամ Սիստան: Արևելյան Իրանի մի նահանգ, որը գտնվում է Խորասանից հարավ և Բալուջիստանից հյուսիս: Ներկայումս վարչակա-

նորևն բաժանված է Իրանի և Աֆղանստանի միջև: Արաբական տարբերակը Սիջիստան, ծագում է «Սակերի երկիր» կամ «Սակաստան» անվանումից: (Sistan, C. E. Bosworth, EOI, CD-ROM, (IX: 681b)):

[13] Զարայ - Զարայ կամ Զիրայ նահանգը Համադանի շրջանն է: Հետագայում խալիֆայության մեջ այս անվամբ նահանգ կար (Իբն ալ-Ասիր, էջ 364):

[14] Ահուազ - Քաղաքը գտնվում է Քարուն գետի վրա, Խուզիստանի դաշտավայրում: Սասանյան շրջանում կոչվում էր Հորմուզդ Արդաշիր, իսկ երբ արաբները գրավեցին այն կոչեցին «Սուկ ալ-Ահուազ», այսինքն «Հուզիների կամ Խուզիների շուկա» այն ցեղի անունով, որ ժամանակին այստեղ ապրել էր: (al-Ahwaz, L. Lockhart, EOI, CD-ROM, (I: 305b)):

[15] Ֆարս – Պարս բառի արաբացված ձևն է: Ֆարսը արևմուտքից և հարավարևմուտքից ողողվում է Պարսից ծոցի ջրերով և սահմանակից է Խուզիստանին: (Fars, L. Lockhart, EOI, CD-ROM, (II: 811a)):

[16] Ամր իբն ալ-Աս - Ամր իբն ալ-Աս ալ-Սահմին Մուհամմադի ժամանակակիցն էր և խալիֆայության սկզբնական շրջանի ամենանշանավոր զորավարներից մեկը: Նա պատմության մեջ է մտել, որպես Եգիպտոսի նվաճումն իրականացնող, որը տեղի ունեցավ 640 թվականին: Ամր իբն ալ-Ասը մահացավ 663 թվականին, երբ իննսունն անց էր: (Shorter Enc. of Islam, p. 42):

[17] Մաղրիբ - Այսպես են կոչել արաբները Աֆրիկայի այն մասը, որն իր մեջ ընդգրկում է Տրիպոլիտանիան, Թունիսը, Ալժիրը և Մարոկկոն: Մաղրիբը (արևմուտք) օգտագործվում է հակադրելով այն Մաշրիկին (արևելք, Լևանտ): Որոշ մատենագիրներ Մաղրիբ հասկացության մեջ ընդգրկում են նաև Իսպանիան և Սիցիլիան: (al-Maghrib, G. Yver, EOI, CD-ROM, (V: 1183a)):

[18] Իֆրիկիա - Մաղրիբի արևելյան մասը: Իֆրիկիա անվանումը ծագում է Provincia Africa անվանումից: Այդպես էր կոչվում Կարթագենի պետության նախկին տարածքը Հռոմեական կայսրության կազմում: Շատ անորոշ են Իֆրիկիայի սահմանները: Երբեմն այն չվերցվել է այլ Մաղրիբի հետ, կամ դիտարկվել որպես նրանից դուրս մի միավոր: Այն հիմնականում ընդգրկել է Թունիսը, Ալժիրի մի մասը և Լիբիայի զգալի մասը, բայց միշտ կրել է փոփոխություններ: (Ifrikiya, M. Talbi, EOI, CD-ROM, (III: 1047a)):

[19] Մամուն - Աբբասյան խալիֆա Աբու-լ-Աբբաս Աբդալլահ ալ-Մամունը (786 – 833) որդին էր Հարուն ալ-Ռաշիդի: 809-813 թվականներին Խորասանի կառավարիչն էր, իսկ 813-ին իր եղբոր՝ Ամինի հետ ներքին պայքարում հաղթանակելուց հետո, բարձրացավ խալիֆայի գահին: Մամունը հայտնի է որպես գիտությունների հովանավոր: Կողմնակից էր մութազիլիների ռացիոնալիստական ուսմունքին: Հաջող պատերազմներ է մղել ընդդեմ Բյուզանդիայի: Մահացավ 833-ին Տարսոնում (Сов. Ист. Энц. т. 9, стр. 19):

[20] Թարսուս – Տարսոն, քաղաք Կիլիկիայի հարավ-արևմտյան կողմում, Կյուդնոս գետի ափին: (ՀՀՇՏԲ, հ. 5, էջ 59-60):

[21] Մութասիմ - Աբու Իսհակ Մուհամմադ իբն Հարուն ալ-Ռաշիդը իշխեց 833-842 թվականներին: Նա որդին էր Հարուն ալ-Ռաշիդի, ծնված մի թուրքուհուց: Իր եղբոր և նախորդի՝ Մամուն խալիֆայի օրոք, ալ-Մութասիմը օժտված զորավարի անուն վաստակեց Փոքր Ասիայում կռվելով և ռեալական կառավարման փորձ ձեռք բերելով որպես Եգիպտոսի կառավարիչ: Ալ-Մութասիմի գահակալության օրոք առաջին ռազմական գործողությունները հաջողություն բերեցին Աբբասյաններին: Նախ ճնշվեց Խուռամյանների ապստամբությունը Բաբեկի գլխավորությամբ, ապա անձամբ գլխավորելով զինված ուժերը ալ-Մութասիմը հաջողությունների հասավ Բյուզանդիայի դեմ պայքարում: Ճնշվեցին նաև մի շարք հուզումներ ու ապստամբություններ խալիֆայության տարբեր մասերում:

Նա մահացավ Սամառայում 842 թ. հունվարի 5-ին: Նրան փոխարինեց որդին՝ Հարուն ալ-Վասիկը: Մութասիմը իր մշակութային մակարդակով զիջում էր Մամունին, բայց տաղանդավոր զորավար էր և կարողացավ պահպանել Աբբասյան խալիֆայությունը որպես ուժեղ և միասնական պետություն:

## ԽԱԼԻՖԱ ԻԲՆ ԽԱՅՅԱԹ
## (776/777 - 854/855)

Խալիֆա իբն Խայյաթ ալ-Ուսֆուրին, որը հայտնի է նաև Շաբաբ անվամբ, ծնվել է 776 կամ 777 թվականին Բասրայում (Իրաք)։ Նրա հայրը և պապը ուսումնասիրել են ավանդությունները (հադիս) Մուհամմադի կյանքի մասին։ Խալիֆան ուսումնառությունն անց է կացրել Բասրայում, ուր նրա ուսուցիչներն են եղել Հիշամ ալ-Քալբին, ալ-Մադաինին և ուրիշներ, իսկ նրա աշակերտներից կարելի է հիշատակել Բուխարիին (որն իր կրոնական աշխատության մեջ հիշում է նրան) և Իբն Հանբալին։ Խալիֆան մահացել է հիջրի 240 (854/855) թվականին, թեև որոշ մատենագիրներ այլ թվականներ են նշում։ Ըստ որոշակի տվյալների նա ապրել է 80 տարի։

Խալիֆա իբն Խայյաթը հայտնի էր որպես «Կենսագրությունների դասակարգում» (Թաբակատ) աշխատության հեղինակ։ Հայտնի էր, որ նա գրել էր նաև պատմական մի երկ, որը սակայն կորած էր համարվում։ Սակայն 1963 թվականին Մարոկկոյի մի հեռավոր մենաստանում, հայտնաբերվեց մի ձեռագիր, որը ինչպես պարզեց Բաղդադի համալսարանի իսլամի պատմության դասախոս, բանասեր Աքրամ Դիա ալ-Օմարին, Խալիֆա իբն Խայյաթի կորած համարվող պատմական երկն է, որը նա հրատարակեց 1967 թվականին Բաղդադում։ Այս հայտնագործությունը մի բացառիկ երևույթ էր արաբագիտության մեջ, քանի որ աշխատությունը ամբողջովին պահպանված հնագույն արաբական պատմական երկն է։

Նրա պատմական երկը մեզ է հասել եզակի ձեռագրով, որը Ռաբաթի մատենադարանում 199 թվահամարն է կրում։ Ունի 336 էջ և գրված է մաղրիբյան հստակ գրությամբ։ Որոշ տեղերում ձեռագիրը խոնավությունից տուժել է և ինչ-որ բառեր չեն կարդացվում։ Գրչագրի վերջում կա ընդօրինակողի անունը՝ Ահմադ իբն Մուհամմադ ալ-Աշաարի և թվականը՝ հիջրի 477 (1085)։ Այս պատմական երկը մեզ է հասել Բակիյ իբն Մախլադի (817-889) խմբագրությամբ, որը Խալիֆայի աշակերտն էր Իրաքում։

Հեղինակն իր այս գիրքն սկսում է սահմանելով՝ թե ինչ բան է Պատմությունը, ապա անդրադառնալով Մուհամմադ մարգարեի ծննդին, անցնում է Հիջրային (գաղթը Մեքքայից Մադինա 622-ին) դանց առնելով Մուհամմադի կյանքի մեքքայական շրջանը, որից հետո շարադրում է պատմությունը ընդհուպ մինչև 846 թվականը։ Պատմիչը հատուկ ուշադրություն է դարձրել Օմայան խալիֆայության և Աբբասյան խալիֆայության արտաքին նվաճումներին։

Ներկա թարգմանությունը կատարված է 1977 թվականի Բեյրութ-Դամասկոսյան հրատարակությունից՝ Tarikh Khalifah ibn Khayyat. Beyrouth-Damas, 1977.

*(Խալիֆա իբն Խայյաթը որպես Հայաստանի և Խալիֆայության է-Թ դդ. պատմության աղբյուր: - Արևելյան աղբյուրագիտություն. 1, ՀՍՍՀ ԳԱ հրատ. 1988, էջ 134-150. կամ Ա. Տեր-Ղևոնդյան. Հոդվածների ժողովածու, Երևան, 2003, էջ 643-659, Ibn Khayyat al-Usfuri, Khalifa, S. Zakkar, EOI, CD-ROM, (III: 838b)):*

**Տե՛ս նաև.**

- *The History of Khalifah ibn Khayyat, v. 1-2, ed. By Akram D. al-Umari, 1967 (Baghdad).*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ (ՏԱՐԻԽ)

## ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
*(25 փետրվար 635 – 13 փետրվար 636)*

## ԴԱՄԱՍԿՈՍԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*Լ,ց 125-126*

*Այդ տարում նվաճվեց Դամասկոսը:*

*Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը Խալիդ իբն ալ-Վալիդի հետ գնացին ու պաշարեցին [Դամասկոսը]: Հաշտության պայմանագիր կնքեցին ու գրավեցին Ջաբիա դուռը (բաբ): Խալիդը [քաղաքի] դռներից մեկը գրավել էր բռնի ուժով, իսկ Աբու Ուբայդան [քաղաքի հետ] վերջնական հաշտության պայմանագիր կնքեց:*

*Ինձ պատմել է Վալիդ իբն Հիշամը, լսելով իր հորից, իսկ նա պապից, թե Խալիդը հրամանատարն էր և բնակչության հետ պայմանագիր կնքեց, սակայն հազիվ էր կնքել, երբ հանվեց ու նրա փոխարեն հրամանատար դարձավ Աբու Ուբայդան և նա ճանաչեց Խալիդի հաշտության պայմանագիրը և չփոխեց գրվածքը: Այնպես, որ նրանց մոտ եղած գրվածքը (քիտաբ) Խալիդի անունով էր: Սա ճիշտ չէ, քանզի Ումարը Խալիդին հեռացրեց հենց որ խալիֆա դարձավ:*

*Ինձ պատմել է Աբդալլահ իբն Մուղիրան, լսելով իր հորից, թե Աբու Ուբայդան նրանց հետ հաշտության պայմանագիր կնքեց այն պայմանով, որ պահպանվեն նրանց եկեղեցիները, բնակարանները, նրանց անձերը, նրանց արգելք չդրվի տոնակատարություններ կատարել, նրանց եկեղեցիներից ոչինչ չքանդել: Այս պայմանագիրը կնքեց միայն քաղաքի հետ, իսկ մնացած երկիրը բռնի ուժով գրավեց:*

*Ասել է Իբն ալ-Քալբին՝ հաշտության պայմանագիրը կնքվել է կիրակի օրը, տասնչորս թվականի Ռաջաբ ամսի կեսին (4 օգոստոս 635) և պայմանագիրը կնքողն է եղել Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը:*

*Ինձ ասել է Բաքրը, լսելով Իբն Իսհակից, թե Աբու Ուբայդան պայմանագիրը կնքել է Ռաջաբ ամսին:*

## ԵՄԵՍԱՅԻ (ՀԻՄՍ) ՈՒ ԲԱԱԼԲԵԿԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 127*

*Ասել են Իբն Իսհակը և ուրիշներ, թե այդ տարում, այսինքն տասնչորս թվականին Եմեսան ու Բաալբեկը հաշտության պայմանագրով նվաճվել են Աբու Ուբայդայի կողմից Զու-լ-Կաադա ամսին (17 դեկտեմբեր 635 – 15 հունվար 636): Ասվում է, թե դա կատարվել է տասնհինգ թվականին:*

## ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
**(14 փետրվար 636 – 1 փետրվար 637)**

## ՀՈՐԴԱՆԱՆԻ, ԲԻԿԱԱՅԻ, ԲԱԱԼԲԵԿԻ ԵՎ ԵՄԵՍԱՅԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 129-130*

*Ինձ պատմել է Աբդալլահ իբն Մուղիրան լսելով իր հորից, թե Շուրահբիլ իբն Հասանան նվաճել է ամբողջ Հորդանանը (Ուրդուն) բռնի ուժով, բացի Տիբերիայից (Թաբարիյա), որի ժողովուրդը հաշտության պայմանագիր էր կնքել: Դա կատարվել էր Աբու Ուբայդայի հրամանով: Իբն ալ-Քալբին նույնն է ասել:*

*Նրանք երկուսով ասել են, թե Աբու Ուբայդան ուղարկել էր Խալիդ իբն ալ-Վալիդին, որ նվաճի Բիկաայի հողը և Բաալբեկի ժողովուրդը նրա հետ հաշտության պայմանագիր կնքեց և նա նրանց գրավոր պայմանագիր տվեց:*

*Ասել է Իբն Մուղիրան, լսելով իր հորից, թե նա հաշտության պայմանագիր կնքեց խոստանալով պահպանել նրանց բնակարանները, եկեղեցիները և հարկ (խարաջ) նշանակեց: Ասել է Իբն ալ-Քալբին, թե Աբու Ուբայդան դուրս եկավ Եմեսա (Հիմս) գնալու նպատակով և նրան հանդիպեց Խալիդը: Նրանք սաստիկ կռվեցին [հոռոմների] դեմ, ապա հոռոմները փախուստի դիմեցին ու մտան իրենց քաղաքը: Նա (Աբու Ուբայդան) պաշարեց, իսկ նրանք հաշտության պայմանագիր խնդրեցին, որ երաշխավորվեն իրենց ունեցվածքը, անձերը, եկեղեցիները և Եմեսայի հողերը հարյուր յոթանասուն հազար դինար [հարկով]:*

*Ինձ պատմել է Աբդալլահ իբն Մուղիրան, լսելով իր հորից, թե Աբու Ուբայդան հաշտության պայմանագիր էր կնքել քաղաքի (Եմեսայի) համար, ըստ Դամասկոսի բնակչության հետ կնքած պայմանագրի, իսկ նրանց մյուս քաղաքներր բռնի ուժով նվաճեց:*

## ՅԱՐՄՈՒՔԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

*Էջ 130-131*

*Այդ տարում տեղի ունեցավ Յարմուքի[1] ճակատամարտը:*

*Բաքրը լսելով Իբն Իսհակից ասել է, թե Ռումի զորքերը Յարմուքում հանդես եկան հարյուր հազար հոռոմներով և Կուդաա ցեղի [արաբներով]:*

*Նրանց հրամանատարն էր Սակելարիոսը[2] (սակիլլար), որը Հերակլի[3] ներքինիներից էր:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե հոռոմները երեք հարյուր հազար էին և նրանց հրամանատարն էր Վահանը[4] (Բահան), որը Պարսից որդիներից էր և քրիստոնեություն ընդունելով միացել էր հոռոմներին: Աբու Ուբայդան [արաբական զորքերին] ավելացրեց ծայրամասային գնդերը և ռազմտկայանների (աջնադ) հրամանատարներին: Օմարը նրան օգնության ուղարկեց Սաիդ իբն Ամիր իբն Հուզայմին և սաստիկ պատերազմից հետո Ալլահը բազմաստվածյաններին (մուշրիքուն) պարտության մատնեց և նրանց մեծ թվով կոտորեց:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե ճակատամարտը տեղի ունեցավ երկուշաբթի օրը տասնհինգ թվականի Ռաջաբ ամսից հինգ օր անց (14 օգոստոսի 636):*

## ՏԻԶԲՈՆԻ (ՄԱԴԱԻՆ) ՆՎԱՃՈՒՄԸ

*Էջ 133*

*Ապա եկան Սաադն ու մահմեդականները և պաշարեցին Տիզբոնն ու նվաճեցին [...]*

*[Արաբները պատմում էին], թե նրանց կովերը բռնում և մորթում էինք, իսկ մարդիկ (արաբները) քամփորան (քաֆուր) մսի վրա էին ցանում և ասում՝ ինչ դառն է պարսիկների աղը: Ասվել է նաև, թե մենք ոսկե ամաններ էինք ձեռք բերում և եղան մարդիկ (արաբներ), որոնք դեղինը փոխում էին սպիտակով, այսինքն՝ ոսկին արծաթով:*

## ՏԱՍՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ
## (2 փետրվար 637 – 22 հունվար 638)

## ՀԱԼԵՊԻ, ԱՆՏԻՈՔԻ, ՄԱՆԲԻՋԻ ՈՒ ՍՈՒՐԲ ՔԱՂԱՔԻ (ԵՐՈՒՍԱՂԵՄ) ՆՎԱՃՈՒՄԸ

*Էջ 134-135*

*Այդ տարում նվաճվեցին Հալեպը, Անտիոքը և Մանբիջը:*

*Աբդալլահը. լսել է Մուղիրայից, որին պատմել է նրա հայրը, թե՝*

*Աբու Ուբայդան Յարմուքի ճակատամարտը վերջացնելուց հետո ուղարկել է Ամր իբն ալ-Ասին Կիննասրին և նա Հալեբի, Մանբիջի (Մամբուկ) և Անտիոքի (Անթաքիա) հետ հաշտության պայմանագրեր կնքեց, իսկ Կիննասրինի մնացած մասերը բռնի ուժով գրավեց:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե Աբու Ուբայդան հաշտության պայմանագիր կնքեց Հալեբի բնակչության հետ և նրանց գրավոր ձևով տվեց: Ապա շարժվեց Աբու Ուբայդան իր [զորքի] առաջապահում ունենալով Խալիդ իբն ալ-Վալիդին և պաշարեց Երուսաղեմը (Իլիյա), իսկ նրանք հաշտություն խնդրեցին այն պայմանով, որ ինքը, Օմար [խալիֆան] տա [պայմանագիրը] և նրաշխավորագիր (աման) պատրաստի իրենց համար: Աբու Ուբայդան գրեց Օմարին և նա եկավ ու հաշտության պայմանագիր կնքեց նրանց հետ, ապա մի քանի օր մնալով, վերադարձավ Մադինա:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, որ դա պատահել է տասնվեց թվականին:*

*Ինձ պատմել է Բաքրը, լսելով Իբն Իսհակից, թե Մուհամմադ իբն Թալհան իբն Ռուքանան լսելով Սալիմ իբն Աբդալլահ իբն Օմարից ասել է՝ Երուսաղեմի (Իլիյա) բնակչությունը դուրս եկավ Օմարի մոտ և նա հաշտության պայմանագիր տվեց գլխահարկ (ջիզիա) վճարելու պայմանով ու նրանք բացեցին [քաղաքի դռները]:*

*Այդ տարում մեռավ Ալլահի առաքյալի որդի Իբրահիմի մայրը՝ Մարիամը:*

## ՏԱՍՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
## (12 հունվար 639 – 1 հունվար 640)

## ԵԴԵՍԻԱՅԻ (ՌՈՒՀԱ), ՍԱՄՈՍԱՏԻ (ՍՈՒՄԱՅՍԱԹ) ԵՎ ՋԱԶԻՐԱՅԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*Ասել է Իբն Իսհակը, թե Եդեսիան նվաճվեց տասնութ թվականին:*

*Ինձ պատմել է Հատիմ իբն Մուսլիմը, թե Աբու Մուսա ալ-Աշարին նվաճել է Եդեսիան, Սամոսատը հաշտության պայմանագրով, իսկ մնացյալը՝ բռնի ուժով:*

*Նա ասել է, որ Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը Ջաբիրա էր ուղարկել Իյադ իբն ալ-Ղանմ ալ-Ֆիհրիին: Վերոհիշյալ քաղաքների նվաճումից հետո նա համաձայնեց ուղարկել նաև Աբու Մուսային: Նա (Իյադը) գնաց և նրա հետ էր Աբու Մուսան: Նրանք գրավեցին Խառանը (Հառան), Մծբինը (Նասիբին) և Ջազիրայի համայնքներին (Թավաիֆ) բռնի ուժով: Ասվում է նաև, որ Աբու Ուբայդան Խալիդ իբն Վալիդին ուղարկեց Ջազիրա և Աբու Մուսան համաձայնեց ու նվաճեցին Եդեսիան և Սամոսատը: Իսկ Խալիդը Աբու Մուսային և Իյադին*

ուղարկեց Խառան և ժողովրդի հետ հաշտության պայմանագիր կնքվեց: Ապա Խալիդը շարժվեց դեպի Մծբին ու նվաճեց, ապա վերադարձավ դեպի Ամիդ և հաշտության պայմանագրով նվաճեց, իսկ երկուսի արանքում եղած հողերը ուժով նվաճեց:

Ինձ պատմել է Ջազիրայի ծերունիներից մեկը, թե Իյադ իբն Ղանմն է այդ բոլոր քաղաքների և Ջազիրայի այլ քաղաքների հետ հաշտության պայմանագիր կնքել: Նա գրավոր պայմանագրեր է տվել նրանց, որոնք մինչև օրս Իյադի անունով մնում են նրանց մոտ:

Մեզ պատմել է Վաքի իբն ալ-Ջառահը, լսելով Սաուրից, որը լսել էր Արդ ալ-Ռահմանից, իբն Ասիդից, թե Խալիդ իբն ալ-Վալիդը Ամիդում մասն է մի բաղնիք և այդ մասին որոշ գրույց է հիշել:

Ինձ պատմել է մի մարդ, լսելով Մուգիրա իբն Զիյադ ալ-Մաուսիլիից, որը լսել էր Իրադա իբն Նիսիյյից, թե Աբու Մուսան Քուփայից օգնական զորք ստանալով պաշարել էր Սամոսատը և այդ մասին որոշ գրույց է հիշել:

Մուաղ իբն Հիշամը պատմել է, թե լսել է իր հորից, որը լսել է Կատադայից, իսկ նա Յունիսից, սա էլ Զուրայրից, թե Աբու Մուսան Դարայում աղոթել է վախի աղոթքը, իսկ Դարան Ջազիրայի երկրում է և նրա ու Մծբինի միջև մի քանի փարսախ[5] է:

Ինձ պատմել է Հատիմ իբն Մուսլիմը, թե Օմար [խալիֆան] ուղարկել է Իյադին, որը նվաճել է Մոսուլը: Նա Ուտբա իբն Ֆարկադին իր փոխարեն ուղարկել է երկու բերդերից մեկը նվաճելու և սա ամբողջ երկիրը նվաճել է բռնի ուժով, բացի մի բերդից, որի բնակիչների հետ հաշտության պայմանագիր է կնքել: Դա կատարվել է տասնութ թվականին:

## ՔՍԱՆ ԹՎԱԿԱՆ
## (21 դեկտեմբեր 640 – 9 դեկտեմբեր 641)

## ԵԳԻՊՏՈՍԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 142-144*

Ինձ պատմել է Վալիդ Իբն Հիշամը, լսելով իր հորից և սա էլ պապից, ինչպես նաև Աբդալլահ իբն Մուղիրան լսելով հորից և ուրիշներից, թե Օմար [խալիֆան] դրել է Ամր իբն ալ-Ասին, որ գնա Եգիպտոս [արշավանքի] և նա գնացել է: Օմարը Զուբայր իբն ալ-Ավվամին նրան օգնության է ուղարկել ընկերակցությամբ Ումայր իբն Վահբ ալ-Ջամհիի և Բիսր իբն Արթատ ալ-Ամիրիի և Խարիջա իբն Հանաֆայի: Նրանք հասան Բաբիլոնի[6] (Ալյուն) դուռը, սակայն նրան [պաշտպանները] դիմադրեցին և նա (Ամրը) բռնի ուժով նվաճեց:

Բնրդի մարդիկ հաշտություն խնդրեցին:

Զուբայրն առաջինն էր, որ բարձրացել էր քաղաքի պարիսպը և մարդիկ նրան հետևել էին: Զուբայր իբն ալ-Ավվամը խոսել էր Ամրի հետ, որ [Երկրի հողերը] բաժանվեն նվաճողների միջև: Ամրը այդ մասին գրել էր Օմարին, իսկ Օմարը պատասխանեց՝ ուտելն ավելի լավ է քան առանց ուտելիքի մնալը:

Պատմել է Սամ իբն Լահիյան, լսելով Իբրահիմ իբն Մուհամմադ ալ-Հադրիից, որը լսել էր Իբն Աբու Ալիյայից, իսկ սա հորից, թե լսել եմ Ամր իբն ալ-Ասին, որ մզկիթի բեմից (մինբար) ասել է՝ նստել եմ [իշխանության] աթոռին և Եգիպտոսի ոչ մի ղպտի ինձ հետ պայմանագիր (ահդ) կամ համաձայնագիր (իկդ) չունի. կամենամ կկոտորեմ նրանց, կամենամ կվաճառեմ, կամենամ [նրանց հողերը] կհինգերորդեմ (խամմաստու), բացի Անթաբուլսի[7] ժողովրդից, որն ինձ հետ հուսալի պայմանադիր ունի:

Լսել եմ Սամ Աբդալլահ իբն Սալիհից, որը լսել էր Իբն Լահիայից, իսկ նա Հարիս իբն Յազիդ ալ-Հադրամիից, սա էլ Ալի իբն Ռիբահից թե [խալիֆա] Աբու Բաքր Սիդդիկը (ճշմարտարան) ուղարկել էր Հաթիր իբն Աբու Բալտային Եգիպտոսի Մուկաուկիսի[8] (պատրիարք) մոտ, Շարկիյա նահանգի գյուղերից մեկը և նա տվել էր [պայմանագիր] և այդպես էլ մնաց, մինչև որ Ամր իբն ալ-Ասը մտավ [Եգիպտոս] և կռվելով նրանց հետ այդ պայմանագիրը մերժեց:

Լսել եմ Սամ Աբդալլահ իբն Սալիհից, որը լսել էր ալ-Լայսից, իսկ նա Յազիդ իբն Աբու Հաբիբից, թե Մուկաուկիսը Ամր իբն ալ-Ասի հետ պայմանադիր էր կնքել այն պայմանով, որ ամեն մի ղպտի (եգիպտացի քրիստոնյա) երկու դինար վճարի: Այդ բանը լսելով Հերակլը զորք ուղարկեց, որը ամրացավ Ալեքսանդրիայում և Ամրին պատերազմի հրավիրեց: Նա կռվեց նրանց դեմ [ու հաղթեց] և ապա գրեց Օմար [խալիֆային]՝ Ալլահը մեզ պարգևեց Ալեքսանդրիայի նվաճումը բռնի ուժով, առանց որևէ պայմանագրի, կամ համաձայնագրի:

Սակայն ասվում է. վերցնելով Յազիդ իբն Աբու Հաբիբից, թե Եգիպտոսը ամբողջովին նվաճվեց հաշտության պայմանագրով, բացի Ալեքսանդրիայից: Այս նույն խոսքերն է ասել նաև Լայսը:

## ԱՆԹԱԲՈՒԼՍԻ ՆՎԱՃՈՒՄԸ

էջ 144

Լսել են Սամ Աբդալլահ իբն Սալիհից, որը լսել է Լայսից, իսկ սա Սահլ իբն Ուկայլից, նա էլ Աբդալլահ իբն Հուբայրայից, թե Օմարը Անթաբուլսի ժողովրդի հետ հաշտության պայմանադիր էր կնքել, իսկ դա Բարկա[9] երկիրն է Իֆրիկիայի ու Եգիպտոսի միջև՝ գլխահարկ

*(ջիզիա) վճարելու, կամ իրենց զավակներին, ում որ կամենան, գլխահարկի դիմաց վաճառելու պայմանով:*

*Լսել են Սամ իբն Արու Մարիամից, որը լսել է Իբն Լահիյայից, իսկ նա Մուրսիդ իբն Աբդալլահ ալ-Հազրամիից, թե Անթաբուլսի ժողովուրդը եկավ, երբ [Ամրը] դարձավ Անթաբուլսի կառավարիչ և ընրեց իր գրավոր պայմանագիրը:*

*Լսել են Սամ Աբդալլահ իբն Սալիհից, որը լսել էր Իբն Լահիյայից, իսկ նա Յազիդ իբն Աբու Հաբիբից, թե Եգիպտոսի մարդիկ (մահմեդականները) ու սևամորթները (ասաուիդ) իրար հետ պայմանագիր, կամ համաձայնագիր չունեն, այլ կա պարզապես զինադադար (հուդնա) մեր և նրանց միջև. մենք նրանց որոշ ցորեն և ոսպ ենք տալիս, իսկ նրանք տալիս են ստրուկներ և մենք պետք է գնենք նրանց ստրուկներին:*

**ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ**
**(30 նոյեմբեր 642—18 նոյեմբեր 643)**

## ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*Էջ 151*

*Այդ տարում նվաճվեց Ատրպատականը (Ադարբայջան):*

*Ինձ պատմել է նա, ով լսել է Իբն Իսհակից, թե դա նվաճվել է քսաներկու թվականին, իսկ հրամանատարն է եղել Մուղիրա իբն Շուբան:*

*Պատմել է Ալի իբն Մուհամմադը, թե Հուզայֆան հաշտության պայմանագիր է կնքել քսաներկու թվականին ութ հազար [դիրհեմի՞] դիմաց:*

*Ասել է Աբու Ուբայդան, թե այն նվաճել է Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին[10] Ասորիքի զորքով, բռնի ուժով: Նրա հետ են եղել նաև Քուֆայի զորքերը և Հուզայֆան. նվաճումը կատարվել է Օմար խալիֆայի օրոք, սաստիկ ճակատամարտից հետո: Ասվում է նաև, թե այն նվաճել է Ուտբա իբն Ֆարկադը:*

*Մեզ պատմել է Յազիդ իբն Զուրայը լսելով Տիմիից, իսկ նա Աբու Օսմանից, թե՝ մենք ստացանք Օմարի նամակը [հարձակման մասին] երբ Ուտբա իբն Ֆարկադի հետ էինք:*

*Ատրպատականից գերիներ տանողներն էին՝ Աբդալլահի տոհմը, Յահիա իբն Աբու Իսհակը և քատիբ (քարտուղար) Աբու ալ-Ալիյայի տոհմը:*

## ՔՍԱՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
**(19 նոյեմբեր 643 – 6 նոյեմբեր 644)**

## ԵԳԻՊՏՈՍ ԵՎ ՋԱԶԻՐԱ

*էջ 155-156*

*[Օմարը] գրեց Ամր իբն ալ-Ասին, և նա շարժվեց դեպի Եգիպտոս ու նվաճեց այն՝ մնալով նրա կառավարիչը մինչև Օմարի մահը: Օմարն ուղարկել էր Իյադ իբն Ղանմին Ջազիրա, որի մասին գրել ենք, ապա հեռացրեց ու նշանակեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին, նրան հանձնարարելով Հայաստանի և Ատրպատականի նվաճումը: Ապա հեռացրեց նրան և նշանակեց Ումայր իբն Սաիդ ալ-Անսարիին և Սաիդ իբն Ամիր ալ-Հիդյամին:*

## ՔՍԱՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
**(28 հոկտեմբեր 645 – 16 հոկտեմբեր 646)**

## ԱԼԵՔՍԱՆԴՐԻԱՅԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ՎԵՐԱՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 158*

*Այդ տարում Ալեքսանդրիայի բնակչությունը ապստամբեց և նրա դեմ արշավեց Ամր իբն ալ-Ասը, որը Եգիպտոսի կառավարիչն էր: Նա կոտորեց, գերեվարեց, սակայն Օսման [խալիֆան] գերեվարվածներին վերադարձրեց և նորից տվեց զիմմիի [իրավական վիճակ]:*

*Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաիդ ալ-Բահիլին, թե այդ տարում Ռումի թագավորը ներքինի Մանուելին[11] նավերով ուղարկեց Ալեքսանդրիա: Նրա բնակչությունն ապստամբեց, բացի Մուկաուկիսից: Ամր իբն ալ-Ասը քսանհինգ թվականի Ռաբի Ա ամսում (26 դեկտեմբեր 645 – 24 հունվար 646) արշավեց ու բռնի ուժով նվաճեց Եգիպտոսի հողը, բացի Այն Շամսից, որի հետ հաշտության պայմանագիր կնքեցին:*

*էջ 157-158*

*Այդ տարում Օսման իբն Աֆֆան [խալիֆան] Քուֆայից հեռացրեց Սաադ իբն Մալիքին և նշանակեց Վալիդ իբն Ուկբա իբն Աբու Մուայթին: Վալիդը Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիին, որը Կուտայբա իբն Մաան իբն Մալիքի տոհմից էր, տասներկու հազարով ուղարկեց Պարտավ (Բարդաա)[12] և նա կոտորեց ու գերեվարեց:*

*Ասել է Աբու Ուբայդան լսելով Սամրիից, թե Օմար [խալիֆան] էր ուղարկել Սալման իբն Ռաբիային Պարտավ և նա նվաճեց:*

## ՔՍԱՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
## (14 սեպտեմբեր 649 – 3 սեպտեմբեր 650)

### ԻՍԹԱԽՐԻ[13] ՆՎԱՃՈՒՄԸ

*Էջ 163*

*Այդ տարում Օսման իբն Աֆֆան [խալիֆան] Վալիդ իբն Ուկբային հեռացրեց Քուֆայից և նշանակեց Սաիդ իբն ալ-Ասին, որն արշավեց Հայաստան. նրա մի մասն արշավել էր Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլին: Սաիդն այնտեղ թշնամիների հանդիպեց: Սալմանն առա՞ջխաղաց դեպի Բալանջար[14] և այնտեղ վիրավորվեց:*

*Ասվում է, որ Օմարն էր Սալմանին ուղարկել Բալանջար:*

### ԲԱՅԼԱԿԱՆ[15], ՊԱՐՏԱՎ, ՎԻՐՔ, ՀԻԶԱՆ[16] ԵՎ ԲԱԼԱՆՋԱՐ ԱՐՇԱՎԱՆՔԸ

*Էջ 163*

*Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու-լ-Բառայից, թե Սալմանն արշավեց Բայլական և հաշտության պայմանագիր կնքվեց, ապա եկավ Պարտավ և հաշտության պայմանագիր կնքելով գրավեց այն: Նա իր հեծյալների պետին ուղարկեց Վիրք (Ջուրզան) և հաշտության պայմանագիր կնքվեց: Սալմանը գնաց Հիզան (Խայզան) և հաշտության պայմանագիր կնքվեց, ապա հասավ Մազքութք[17] (Մասկաթ) և բնակիչների հետ պայմանագիր կնքվեց: Նա վիրավորվեց (հարված կրեց) Բալանջարում:*

*Օսման [խալիֆան] գրեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին, որ Ասորիքից մեծ զորքով շարժվի: Հաբիբը Հաղասի լեռնանցքի[18] կողմից գալով հասավ Վիրք, որի բնակչության հետ հաշտության պայմանագիր կնքեց: Նա ցորենի շտեմարանների (մաթամիր) համար [Փոքր Ասիայու՞մ] համաձայնեց և նրանց գրավոր [թուղթ] տվեց:*

## ԵՐԵՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
## (24 օգոստոս 651 – 11 օգոստոս 652)

*Էջ 166*

*Այդ տարում Իբն Աբու Սարհը արշավեց Միսր, Ջանդանի Մամնստիայի (Մասսիսա)[19] կողմից:*

## ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
**(2 օգոստոս 653 – 22 հուլիս 654)**

### *ԱՐՇԱՎԱՆՔԸ ՄԱԼԱԹԻԱ[20] ԵՎ ԱՖՐԻԿԱ (ԱԲՐԻԿ)*

*էջ 167*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Մուավիա իբն Աբու Սուֆիանը արշավանք կատարեց Մալաթիա և Աֆրիկա (Աբրիկ): Արշավեց նաև Հիսն ալ-Մարաթ, որը Ռումի հողում է:*

### ՕՍՄԱՆ ԻԲՆ ԱՖՖԱՆԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 178-180*

*[Հիշված են՝ Մեքքա, Մադինա, Բասրա, Քուֆա, Եգիպտոս, Ասորիք, Եմեն, Խորասան, Սիջիստան, Սինդ, Բահրայն]*

*էջ 180*

*Ամառային արշավանքը (սաիֆա) – Օսմանը գրել էր Մուավիային, որ արշավանք ուղարկի Ռումի երկիրը և նա առաքեց Յազիդ իբն ալ-Հուռ ալ-Աբսիին, ապա Աբդ ալ-Ռահման իբն Խալիդ իբն ալ-Վալիդին՝ երկու ամառային արշավանքի, հետո նրան հեռացրեց ու նշանակեց Սուֆիան իբն Աուֆ ալ-Ղամդիին: Սուֆիանը հարձակման էր դուրս գալիս ցամաքում, իսկ ծովի վրա իր փոխարեն նշանակել էր Ջունադա իբն Աբու Ումայյային: Այսպես շարունակվեց մինչև Սուֆիանի մահը, երբ Մուավիան նշանակեց Աբդ ալ-Ռահման իբն Խալիդ իբն Վալիդին, ապա Ուբայդալլահ իբն Ռիբահին, որը ձմեռեց Ռումի երկրում:*

## ՔԱՌԱՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
**(7 մայիս 661 – 25 ապրիլ 662)**

*էջ 205*

*Այդ տարում Մուավիան (խալիֆան) հաշտության պայմանագիր կնքեց Ռումի հետ:*

## ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
**(26 ապրիլ 662 – 14 ապրիլ 663)**

*Այդ տարում Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին մնաց Հայաստանի հողում:*

## ՔԱՌԱՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
(3 մարտ 667 – 19 փետրվար 668)

*էջ 208*

*Ասել է Իբն ալ-Ասիրին, թե այդ տարում Մալիք իբն Հուբայրան ձմեռեց Ռումի երկրում, իսկ Աբու Աբդ ալ-Ռահման ալ-Կինին՝ Անտիոքում:*

## ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
(20 փետրվար 668 – 8 փետրվար 669)

*էջ 209*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Աբու Աբդ ալ-Ռահման ալ-Կինին (Կայնի) ղարձյալ ձմեռեց Անտիոքում: Ոմանք էլ ասում են, թե [ձմեռել է] Իբն Մուքասիրը, որը Բանու Աժիր իբն Լուի տոհմից է:*

## ՔԱՌԱՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
(9 փետրվար 669 – 28 հունվար 670)

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Մալիք իբն Հուբայրան ձմեռել է Ռումի երկրում: Ոմանք ասում են, թե ձմեռել է Ֆուդալա իբն Ուբայդ ալ-Անսարին, իսկ Աբդալլահ իբն Մասաադան՝ ցամաքում:*

## [ՄՈՒԱՎԻԱՅԻ] ՆԱՄԱԿՆԵՐԻ, ԴԻՎԱՆԻ, ՍԵՆԵԿԱՊԵՏՈՒԹՅԱՆ (ՀԻՋԱԲԱ), ԱՌԱՋԱՊԱՀ ԶՈՐԱՄԱՍԻ (ՇՈՒՐԹԱ), ՊԱՀԱԿԱԶՈՐՔԻ (ՀԱՐԱՍ) ԵՎ ԿՆԻՔԻ (ԽԱՏԱՄ) ՎԵՐԱԿԱՑՈՒՆԵՐԸ

*էջ 228*

*Նրա (Մուավիայի) օրոք նամակների քարտուղար (քատիբ ալ-ռասաիլ) էր Ուբայդ իբն Աուս ալ-Ղասսանին:*

*Դիվանի և բոլոր գործերի վերակացու էր Սարջուն իբն Մանսուր Հոռոմը (ալ-Ռումի):*

*Նրա սենեկապետն (հաջիբ) էր իր մաուլա Աբու Այյուբը:*

*Նրա առաջապահ զորամասի (շուրթա) հրամանատարն էր իր մաուլա Յազիդ իբն ալ-Մուռը: Երբ մեռավ Յազիդը, նա նշանակեց Կայս իբն Համզա ալ-Համադանիին, ապա հեռացրեց ու նրա փոխարեն նշանակեց Զիհլ իբն Ամր ալ-Ուզրիին:*

*Նա (Մուավիան) առաջինն էր, որ ստեղծեց [արքունի] պահակազորք (հարաս) և հիմնեց կնիքի (խատամ) դիվանը: Պահակազորքի*

հրամանատարն էր Հիմյար ցեղի մաուլա Մուխտարը, իսկ կնիքի [դիվանի] պետն էր Աբդալլահ իբն Ամր ալ-Հիմյարին:

## ՎԱԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
## (20 սեպտեմբեր 681 – 9 սեպտեմբեր 682)

*էջ 236*

*Այդ տարում Աբդալլահ իբն Ասադ իբն Քարազ ալ-Կիսրին արշավեց Կեսարիա, որը Հաղասի [լեռնանցքից] այն կողմ է: Նույն տարում տեղի ունեցավ Ալի Հուսայն իբն Նումայր ալ-Սուքունիի արշավանքը, որը կատարեց Սուրիայում (Հյուսիսային Ասորիք):*

## ՅՈԹԱՆԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
## (2 մայիս 694 – 20 ապրիլ 695)

*էջ 272*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում ամառային արշավանք կատարեց Մուհամմադ իբն Մարուանը[21], այն ժամանակ, երբ հոռոմները հարձակվել էին Մարաշի գավառի Ամկ [վայրի] վրա:*

## ՅՈԹԱՆԱՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
## (10 ապրիլ 696 – 29 ապրիլ 697)

*էջ 276*

*Ասել է Իբն Քալբին, թե Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավել է Ռումի հողը և հասել Մալաթիայի ու Մամեստիայի արանքը:*

## ՅՈԹԱՆԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
## (30 մարտ 697 – 19 մարտ 698)

*էջ 277*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում տեղի ունեցավ Մուհրիզ իբն Աբու Մուհրիզի արշավանքը Ռումի երկիրը: Նա նվաճեց Ազկալան և երբ վերադառնում էր, նրա զորքն ընկավ տեղատարափ անձրևի տակ Հաղասի լեռնանցքից այն կողմ և շատերը տուժեցին:*

## ՈՒԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
## (26 փետրվար 700 – 14 փետրվար 701)

*Հջ 288*

*Այդ տարում Աբդ ալ-Մալիքը[22] իր եղբորը՝ ՄուՀամմադին ուղարկեց Հայաստան և այնտեղ բնակիչները դիմադրեցին, իսկ նա Հաղթեց նրանց: Ապա նրանք Հաշտություն խնդրեցին և նա Հաշտության պայմանագիր կնքեց և նրանց կառավարիչ նշանակեց Նաբիհ իբն Աբդալլահ ալ-Անազիին[23]: Նրանք դավաճանեցին ու սպանեցին նրան: Այդ տարում Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը Մամեստիայի կողմից գրավեց Սիննան բերդը Ռումի երկրում:*

## ՈՒԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
## (4 փետրվար 702 – 23 Հունվար 703)

*Հջ 288*

*Այդ տարում Հաջջաջը ՄուՀամմադ իբն ալ-Կասիմին Ֆարսի կառավարիչ նշանակեց ու Հրամայեց կոտորել քրդերին:*

*Հջ 289*

*Այդ տարում Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը իր եղբորը՝ ՄուՀամմադին ուղարկեց Հայաստան և նրանք (Հայերը) Հաշտության պայմանագիր ստացան: Նա կառավարիչ նշանակեց Աբու Շայխ իբն Աբդալլահ ալ-Ղանավիին[24] և Ամր իբն ալ-Սադի (Սադա) ալ-Ղանավիին[25], սակայն երկուսին էլ դավաճանեցին ու սպանեցին:*
*Այդ տարում Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը արշավեց Ռումի երկիրը և ընդՀարվեց Հոռոմների Հետ Սուրիայում և Լուլուայում, իսկ Հոռոմները փախուստի դիմեցին:*

## ՈՒԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
## (24 Հունվար 703 – 13 Հունվար 704)

*Հջ 290*

*Ինձ պատմել է Աբու Խալիդ իբն Սաիդը, լսելով Աբու Բառա ալ-Նումայրիից, թե Հոռոմները Հարձակվեցին Հայաստանի վրա ՄուՀամմադ իբն Մարուանի դեմ. ԱլլաՀը պարտության մատնեց նրանց և դա կրակի (Հրդեհի) տարին է[26]: Բանն այն է, որ ՄուՀամմադը*

զորքի [83 թվականի] պարտությունից հետո [հայերի դեմ] ուղարկեց Օսման իբն Աֆֆանի մաուլա Զիյադ իբն ալ-Ջառահին և Հուրայրա իբն ալ-Սարաջ ալ-Հաղրամիին և նրանք վառեցին նրանց իրենց եկեղեցիներում, տաճարներում և գյուղերում: Հրկիզումը կատարվեց Նախճավանում (Նաշավա) և Վասպուրականում (Բասֆուռաջան):
Աբու Բառան ասել է, թե այդ արշավանքի ժամանակ էր, որ Սիսականից (Սիսաջան) գերեվարվեց Յազիդ իբն Ուսայդի մայրը, որը Սիսականի պատրիկի դուստրն էր:

էջ 291

Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը արշավեց Ռումի երկիրը, մինչև որ հասավ Տարենտեի (Թուրանդա) հողը:
Այդ տարում Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիքը կառուցեց Մամեստիան (Մասսիսա):

## ՈՒԹՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
(14 հունվար 704 – 1 հունվար 705)

Այդ տարում Մուհամմադ իբն Մարուանը արշավեց Հայաստան և այնտեղ անցկացրեց ամառն ու ձմեռը:
Ինձ պատմել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառա ալ-Նումայրիից, թե Մուհամմադ իբն Մարուանը վերադառնալով [Արմինիայի կառավարիչ] նշանակեց Աբդալլահ իբն Հատիմ իբն ալ-Նուման ալ-Բահիլիին[27]: Սակայն վերջինս մեռավ և Մուհամմադ իբն Մարուանը նշանակեց նրա եղբորը՝ Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմին[28], որը վերակառուցեց Դվին (Դաբիլ), Նախճավան և Պարտավ քաղաքները:
Ասել է Իբն ալ-Քալբին, թե ութսունհինգ թվականին Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիքը, որը Մամեստիայում էր, [արշավանքի] ուղարկեց Յազիդ իբն Հունայնին: Հոռոմները մեծ բազմությամբ նրա դեմ դուրս եկան և [արաբ] ռազմիկները հարվածներ կրեցին Սաուսանայում[29] և վիրավորվեց Մայմուն ալ-Ջուրջումանին, Անտիոքի (Անթաքիա) ռազմիկներից մոտավորապես հազար հոգու հետ Տիանայի (Թուանա) մոտ:

## ՈՒԹՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ
(2 հունվար – 22 դեկտեմբեր 705)

էջ 292

Ասել է Իբն ալ-Քալբին, թե ութսունվեց թվականին Մասլամա իբն

Արդ ալ-Մալիքը արշավեց Ռումի երկիրը և նվաճեց Տուլակ (Բուլակ) բերդը, Ախրամ բերդը Արդ ալ-Մալիք [խալիֆայի] մահվանից առաջ:
Այդ տարում Մուսա իբն Նուսայրը[30] Մուղիրա իբն Աբու Բուրդա ալ-Արղիին նավերով ուղարկեց և նա նվաճեց Աուլիյան՝ առաջինը Սիկիլիայի քաղաքներից Մաղրիբում:

## ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 293*

Ջազիրա - Աբդ ալ-Մալիքը կառավարիչ նշանակեց իր եղբորը՝ Մուհամմադ իբն Մարուանին և նա մնաց մինչև Աբդ ալ-Մալիքի և Վալիդի[31] մահը:
Հայաստան (Արմինիա) և Ատրպատական – [Աբդ ալ-Մալիքը] այս երկու [նահանգների] կառավարիչ (փոխարքա) նշանակեց [կցելով Ջազիրային] Մուհամմադ իբն Մարուանին ութսուներեք թվականին, մնաց մինչև Աբդ ալ-Մալիքի մահը: Ութսունհինգ թվականին Մուհամմադ իբն Մարուանը հանվեց և Հայաստանի (Արմինիա) ու Ատրպատականի կառավարիչ նշանակվեց Աբդալլահ իբն Հատիմ իբն Նուման ալ-Բահիլին: Երբ Աբդալլահը մեռավ, Մուհամմադ իբն Մարուան [փոխարքան] նշանակեց Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նումանին[32]:
Ամառային արշավանքի (սաիֆա) հրամանատար – Մալիք իբն Աբդալլահ ալ-Խանաֆի, ապա [Աբդ ալ-Մալիքը] նշանակեց իր որդուն՝ Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքին, ապա Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամին, հետո Ամր իբն Մուհրիզ ալ-Աշջաիին:

*էջ 299*

Առաջապահ զորքի (շուրթա) հրամանատար – [Աբդ ալ-Մալիքը] նշանակեց Յազիդ իբն Աբու Քաբշա ալ-Սաքսաքիին, ապա հանեց նրան ու նշանակեց Աբու Նաիլ Ռիյահ իբն Աբդ ալ-Ղասսանիին, ապա հեռացրեց ու նշանակեց Աբդալլահ իբն ալ-Հաքամիին, հետո հանեց նրան ու նշանակեց Քաաբ իբն Համիդ ալ-Աբսիին մինչև Աբդ ալ-Մալիքի մահը:
Նամակագրության քարտուղար – նշանակեց իր մաուլա Աբու-լ-Զուայզաային:
Հարկերի (խարաջ) և զորքի (ջունդ) [վերատեսուչ] – Սարջուն իբն Մանսուր ալ-Ռումին (հոռոմ) էր, ապա երբ Սարջունը մեռավ, նա նշանակեց Սուլայման իբն Սաադին՝ Բանու Խաշին ցեղի (Կուդաայի

մի ճյուղը) մաուլային և նա առաջինն էր, որ Ասորիքի դիվանի [գրագրությունը] արաբերենի վերածեց:

Կնիքի, գանձարանների (բույութ ալ-մալ) և գանձատների (խազաին) [վերատեսուչը] — Կաբիսա իբն Զուայբ ալ-Խուզաին էր. երբ մեռավ Կաբիսան, նա նշանակեց Օմար իբն Հաբիսին:

Սենեկապետ (հաջիբ) — նրա մաուլա Աբու Յուսուֆը:

Արքունի պահակազորի (հարաս) [պետը] — Հիմյար ցեղի մաուլա Ադի իբն Այաշը, ապա Աբու-լ-Զուայզաային այս պաշտոնն էլ տվեց, հետո նշանակեց [...]

Աբդ ալ-Մալիքի իշխանության տևողությունը հենց սկզբից հաշվելով տասներեք տարի երեք ամիս և քսանութ օր էր:

## ՈՒԹՍՈՒՆՑՈՐԹ ԹՎԱԿԱՆ
## (23 դեկտեմբեր 705 — 11 դեկտեմբեր 706)

Էջ 301

Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը նվաճեց Ֆիղամը (Ֆիկամ) և Ֆուրսան (ձիավորների) լիճը: Նրա զորքը հասավ Կալաուդիմասուլուս և կոտորեց ու դերեվարեց:

## ՈՒԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
## (12 դեկտեմբեր 706 — 30 նոյեմբեր 707)

Էջ 302

Այդ տարում Մուհամմադ իբն Մարուանը արշավեց Հայաստան և այնտեղ անցկացրեց ամառն ու ձմեռը:

Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը և Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավանքի ելան և կանդ առան Անտիոքում, ուր ձմեռեցին: Հոռոմները մեծ զորք հավաքեցին ու դրոհեցին նրանց դեմ, իսկ Ալլահը հոռոմներին պարտության մատնեց և մեծ կոտորած տվեց, ասվում է հիսուն հազար մարդ [զոհվեց] և Ալլահը նվաճեց Ջուրսուման ու Տիանան (Թուանա):

## ՈՒԹՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
## (1 դեկտեմբեր 707 – 19 նոյեմբեր 708)

*Հջ 302*

*Այդ տարում Կուտայբա իբն Մուսլիմը արշավեց Բուխարայի թագավոր Վարդան Խուդահի դեմ, սակայն չկարողացավ հաղթել ու վերադարձավ:*

*Այդ տարում Մուսա իբն Նուսայրը իր որդուն՝ Աբդալլահ իբն Մուսայրին [ծովային] արշավանքի ուղարկեց և նա հասավ Մայորկա (Մայուրկա) և Մինորկա (Մինուրկա) կղզիները, որոնք գտնվում են Սիկիլիայի ու Անդալուսի (Իսպանիա) միջև ու նվաճեց: Այս արշավանքը կոչվում է ազնվականաց արշավանք, քանզի նրա հետ մասնակցում էին ազնվական (աշրաֆ) ռազմիկներ:*

*Այդ տարում Մուսա իբն Նուսայրը իր որդուն Մարուան իբն Մուսա իբն Նուսայրին արշավանքի ուղարկեց Հեռավոր Սուս (Սուս ալ-Ակսա): Նա քառասուն հազար գերեվարեց:*

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Ամորիոն (Ամմուրիյյա) և բախվելով բազմաստվածյանների (մուշրիքուն) զորքի հետ, Ալլահը նրանց պարտության մատնեց:*

## ԻՆՆՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ
## (20 նոյեմբեր 708 – 8 նոյեմբեր 709)

*Հջ 303*

*Այդ տարում Կուտայբա իբն Մուսլիմը երկրորդ անգամ արշավեց Վարդան Խուդահի դեմ, իսկ վերջինս օգնության կանչեց սողդերին ու թուրքերին և շրջակա [ցեղերին]: Կուտայբան բախվեց նրանց հետ և Ալլահը նրանց պարտության մատնեց ու ցաք ու ցրիվ արեց:*

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Սուրիա (Հյուսիսային Ասորիք) և այնտեղ հինգ բերդեր գրավեց:*

*Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց և հասավ Արզն (Արզան)*[33]*, ապա վերադարձավ:*

## ԻՆՆՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
## (9 նոյեմբեր 709 – 28 հոկտեմբեր 710)

*Հջ 303*

*Այդ տարում Վալիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] հեռացրեց Մուհամմադ իբն Մարուանին Ջազիրայից, Հայաստանից (Արմինիա) և*

*Ատրպատականից ու նշանակեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին: Մասլաման իննսունմեկ թվականին, Ատրպատականի կողմից արշավեց Թուրքերի դեմ, մինչև որ հասավ Դարբանդ (ալ-Բաբ)[34]: Նա նվաճեց քաղաքներ ու բերդեր և Դարբանդից այն կողմ էլ նրան հպատակվեցին:*

## ԻՆՆՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
**(29 հոկտեմբեր 710 – 18 հոկտեմբեր 711)**

*էջ 304*

*Այդ տարում Մուսա իբն Նուսայրը իր մաուլա Թարիկին[35] ուղարկեց արշավանքի: Նա եկավ Տանժեր (Թանջա), որը ծովի ափին է, անցավ Անդալուս (Իսպանիա), որի թագավորը դուրս եկավ նրա դեմ: Նա (Թարիկը) կոտորեց, գերեվարեց ու գերեց ու սպանեց թագավորին:*

## ԻՆՆՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
**(19 հոկտեմբեր 711 – 6 հոկտեմբեր 712)**

*էջ 305*

*Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Ռումի երկիրը և Ալլահը նրա ձեռքով նվաճեց մի բերդ, իսկ Մարուան իբն ալ-Վալիդը նույնպես արշավեց ու հասավ Խանջարա:*

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց և նվաճեց ալ-Հիսն ալ-Ջադիդի (Նոր բերդ) երկու դռները՝ Մալաթիայի կողմերում:*

## ԻՆՆՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
**(7 հոկտեմբեր 712 – 25 սեպտեմբեր 713)**

*էջ 306*

*Այդ տարում Կուտայբա իբն Մուսլիմը արշավեց Քաբուլ, պաշարեց բնակիչներին, մինչև որ նվաճեց:*

*Այդ տարում Կուտայբան արշավեց Ֆարղանա, պաշարեց բնակիչներին, գրավեց ամրոցները, իր հեծյալ դնդերը ուղարկեց ու գրավեց Շաշը:*

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Ռումի երկիրը և նվաճեց Սանդարան:*

*Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդը արշավեց Ռումի երկիրը, գրավեց Անտիոքը, Կարիթան ծովի ափին:*

*Իննսունչորս թվականին Աբդ ալ-Ազիզ իբն ալ-Վալիդը արշավեց Ռումի երկիրը, մինչև որ Հասավ Ղաղալա:*

**ԻՆՆՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ**
**(25 սեպտեմբեր 713 – 15 սեպտեմբեր 714)**

*էջ 307*

*Այդ տարում Մուհամմադ իբն ալ-Կասիմը գրավեց Մուլտանը:*

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը նվաճեց Դարբանդ (ալ-Բաբ) քաղաքը Հայաստանում և քանդեց նրա [ներքին] քաղաքը և կործանեց այն: Ասես ինը տարի անց Մասլաման վերակառուցեց այն:*

## ՄԱՍԼԱՄԱՆ ՆՎԱՃՈՒՄ Է ՇԻՐՎԱՆԸ[36], ՋՈՒՄՐԱՆԸ, ԲԱՌԱՆԸ, ՁՈՂԸ (ՍՈՒԼ)[37] ԵՎ ԴԱՐԲԱՆԴԸ

*Ինձ պատմել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառայից, որ նրան ասել է Յազիդ իբն Ուսայդը, թե Մասլաման արշավեց Շիրվան (Շարվան), Ջումրան, Բառան, Ձողա (Սուլ) քաղաք և նվաճեց՝ Հասնելով Դարբանդ (Բաբ):*

*Ասել է ինձ Աբու Մարուան ալ-Բաhիլին, լսելով իր տոհմի մի մարդուց, որը եղել է Մասլամայի մոտ, թե Մասլաման պաշարեց Դարբանդը (Բաբ) և նրա մոտ եկավ մի մարդ ու խնդրեց, որ իրեն երաշխավորագիր (աման) տա իր անձի, ընտանիքի (աhլ բայտ) Համար, իսկ ինքը [փոխարենը] ցույց կտա քաղաքի [պարսպի] ճեղքվածքը: Նա տվեց [երաշխավորագիր] և մահմեդականները մտան քաղաք և [մարդը] տեղեկացրեց թշնամու [դիրքի] մասին և կատաղի պատերազմ տեղի ունեցավ. երբ արշալույսը բացվեց, մի ծերունի մահմեդական գոռաց՝ Ալլահ աքբար (մեծ է Ալլահը) և Ալլահը հաղթանակ պարգևեց մահմեդականներին:*

## ՎԱԼԻԴ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ԵՎ ՀԱՋՋԱՋԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 311*

*Ջազիրա – Նրա և Հայաստանի (Արմինիա) կառավարիչ նշանակվեց Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամը, որը մնաց մինչև [Աբդ ալ-Մալիքի] մահը:*

*էջ 312*

*Ամառային արշավանքի (Սաիֆա) հրամանատար – Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը, ապա որդին՝ Աբբասը, ապա մյուս որդին՝ Օմարը:*

**ԻՆՆՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ**
**(16 սեպտեմբեր 714 – 4 սեպտեմբեր 715)**

*էջ 313*

*Սուլայման իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան][38] ամառային արշավանքի [Բյուզանդիա] ուղարկեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին:*

*Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդը արշավեց և գրավեց Թուբբուսը (Թուլուս) և Մարզուբանայնը: Բիշր իբն ալ-Վալիդը արշավեց ու վերադարձավ, իսկ Վալիդն այն ժամանակ մեռավ: Այդ տարում վերավորվեց Ջիգարը, որը նրա (Բիշրի) հետ էր Ռումի երկրում:*

**ԻՆՆՍՈՒՆՑՈՒԹ ԹՎԱԿԱՆ**
**(5 սեպտեմբեր 715 – 24 օգոստոս 716)**

**ՅԱԶԻԴ ԻԲՆ ՄՈՒՀԱԼԼԱԲԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՎՐԿԱՆ (ՋՈՒՐՋԱՆ)[39]**

*էջ 314*

*Այդ տարում Յազիդ իբն Մուհալլաբը արշավեց Վրկան:*

*Պատմել է Աբու-լ-Հասանը, թե Յազիդը Վրկան արշավեց Սուլայման իբն Աբդ ալ-Մալիքի խալիֆայության ժամանակ: Այդ ժամանակ դա (Վրկանը) քաղաք չէր, այլ լեռներով շրջապատված [վայր] էր և հասնում էր մինչև Զողա (Սուլ) երկիր: Նա պաշարեց Բուհայրան (լիճ), որը ծովում կղզի էր: Յազիդը երեսուն հազար [զորք] ուներ: Նա մտավ, սակայն դժվարությունների հանդիպելով դուրս եկավ Բուհայրա և պաշարեց Զողա երկիրը: Զողա մարդիկ դուրս էին գալիս որոշ օրեր և կռվի բռնվում: Այսպես մնացին ամիսներ և նա հեռացավ նրանցից Ռամադան ամսին (7 ապրիլ – 6 մայիս):*

*Ինձ պատմել է Վալիդ իբն Հիշամը, լսելով հորից, սա էլ պապից, թե Յազիդը նրանց հետ հաշտության պայմանագիր կնքեց հինգ հարյուր հազար դիրհեմ վճարելու [պայմանով], որն ամեն տարի պետք է վճարել:*

*Ինձ պատմել է Հատիմ իբն Մուսլիմը, լսելով Յունիս իբն Աբու Իսհակից, թե ինքը ականատես է եղել Յազիդ իբն Մուհալլաբի հետ: Ասել է, նա (Յազիդը) հաշտության պայմանագիր է կնքել հինգ հար-*

յուր հազար գիրհեմ հինգ կշռով և նրան ուղարկեցին [բնակիչներ] պգեստներ (սխյար), պարսկական կանաչ թիկնոցներ (թայալիսա) և հազար գլուխ [արջա՞ռ]:
Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Բարջամա և այն հողը, որը նվաճել էր Վաղդահը, որն Իբն Աուֆի բերդն է: Մասլաման նվաճեց նաև Հիսն ալ-Հադիդը (Երկաթե բերդ) Սարդաուսայը, որը Ռումի երկրի ծայրամասում (դաուահի՝ արվարձան) է:
Օմար իբն Հուրայրան ձմեռեց ծովի վրա:

## ԻՆՆՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
### (25 օգոստոս 716 – 13 օգոստոս 718)

## ՅԱԶԻԴ ԻԲՆ ՄՈՒՀԱԼԼԱԲԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԹԱԲԱՐԻՍՏԱՆ

*Էջ 315-316*

Այդ տարում Յազիդ իբն ալ-Մուհալլաբը արշավեց Թաբարիստան և սպահապետը (իսրահրադ) հաշտություն խնդրեց, իսկ նա մերժեց: Սպահապետը օգնության կանչեց Ջիրալի ու Դայլամի[40] (Դեյլմկաց) ժողովրդին: Նրանք ընդհարվեցին լեռան լանջին և կատաղի կռիվ եղավ, ապա Ալլահը պարտության մատնեց բազմաստվածյաններին (մուշրիքուն), որոնք լեռ բարձրացան: Յազիդն ուղարկեց Հայյան ալ-Նաբթիին և սպահապետը նրա հետ հաշտության պայմանագիր կնքեց յոթ հարյուր հազար գիրհեմ և չորս հարյուր բեռ (ուկր՝ անասնաբեռ) քրքում (զաաֆարան), կամ նրա գինը կանխիկ դրամով (այն) և չորս հարյուր մարդ տալու պայմանով, ընդ որում ամեն մի մարդուց մեկական սև բարձր գլխանոց (բուրնուս), պարսկական կանաչ թիկնոց (թայլասան), արծաթե բաժակ (ջամ), մետաքսի հակ (սարկա) և զգեստ (քիրսուա): Յազիդն ընդունեց այն և նրանցից հեռացավ:
Ասել է Աբու-լ-Հասանը, թե Վրկանի (Ջուրջան) ժողովուրդը դավաճանեց Յազիդի՝ իր փոխարեն թողած մահմեդականներին և կոտորեցին նրանց: Երբ նա (Յազիդը) վերջացրեց Թաբարիստանի հաշտության գործերը, շարժվեց նրանց մոտ, իսկ նրանք ամրացան բերդերում ու նրանց պետն էր մարզպանը: Յազիդը մի քանի ամիս կռվեց, ապա նրանք եկան հպատակվեցին և իրենց ձեռքով տվեցին [հարկը]: Նա կոտորեց նրանց ռազմիկներին, ընտանիքները գերեվարեց ու երկու փարսախ հեռավորության վրա խաչեց նրանց: Տասներկու հազար հոգու քշեց տարավ Անդար՝ Վրկանի ձորը ու կոտորեց նրանց. ջուրը բաց թողեց նրանց արյան վրա և ջաղացքում նրանց արյունը [ջրերենի հետ] աղաց և հաց թխեցին ու կերան, քանզի նա

ներգվել էր այդպես վարվել:
Իննսունութ թվականին Մասլաման ձմեռեց Ռումի ծայրամասում, իսկ Օմար իբն Հուբայրան ծովի վրա ձմեռեց: Մասլաման դուրս եկավ իր ձմեռանոցից և հասավ մինչև Կոնստանդնուպոլիս թե՛ ծովի, թե՛ ցամաքի կողմից: Նա անցավ ծոցը (խալիջ)[41] և նվաճեց սլավոնների (սակալիբա)[42] քաղաքը և [Դանուբի] բուլղարների[43] (բուրջան) զորքը հարձակվեց Մասլամայի վրա, սակայն Ալլահը փախուստի մատնեց նրանց ու Մասլաման քարուքանդ արեց այն ամենը, ինչ գտնվում էր ծոցի և Կոստանդնուպոլսի միջև:

## ԻՆՆՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
### (14 օգոստոս 717 – 2 օգոստոս 718)

*էջ 316*

Այդ տարում խազարներն[44] ասպատակեցին Հայաստանը, Ատրպատականը, որոնց կառավարիչն էր Արդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նուման ալ-Բահիլին: Սակայն Ալլահը կոտորեց բոլոր խազարներին և այդ մասին Աբդ ալ-Ցազիզը գրեց Օմար իբն Աբդ ալ-Ազիզին, երբ նա ստացավ խալիֆայական իշխանությունը: Օմարը Հայաստանի (Արմինիա) կառավարիչ նշանակեց Ագի իբն Ադիին: Սա փորել տվեց մի գետ, որը մինչև օրս էլ կոչվում է Ագիի գետ:

## ՍՈՒԼԱՅՄԱՆ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 319*

Հայաստան (Արմինիա) – Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նուման: Հայաստանում կառավարչի փոփոխություն չկատարվեց մինչև Սուլայման [խալիֆայի] մահը:
Ամառային արշավանքներ – Այյուբ իբն Սուլայման իբն Աբդ ալ-Մալիք, ապա Մասլամա իբն Աբդ ալ-Մալիք:

*էջ 319- 320*

Այդ տարում Օմար իբն Աբդ ալ-Ազիզը (խալիֆան)[45] կներակուր և գրաստ ուղարկեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին Ռումի երկիրը և հրամայեց բոլոր նրանց, ովքեր իրենն բարեկամ էին, իր մոտ հավաքել: Այսպիսով նա օգնական զորք առաքեց և այսպիսով օժանդակեց մարդկանց (զորքին) և թույլ տվեց վերադառնալ:

*Այդ տարում Թուրքերը (խազարները) հարձակվեցին Ատրպատականի վրա:*

*Ինձ պատմել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառայից և ուրիշներից, թե Թուրքերը մարդկանց (զորքի) վրա հարձակվեցին և Արդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նուման ալ-Բահիլին գնաց նրանց դեմ, Ալլահը կոտորեց Թուրքերին և նրանցից միայն փախստականը փրկվեց: Նա (Արզ ալ-Ադիզը) եկավ Օմար [խալիֆայի] մոտ, որը գտնվում էր Խունասիրայում:*

## ՀԱՐՅՈՒՐ ՄԵԿ ԹՎԱԿԱՆ
## (24 Հուլիս 719 – 11 Հուլիս 720)

## ՕՄԱՐ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ԱԶԻԶԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 323*

*Ջազիրա, Հայաստան (Արմինիա), Ատրպատական* – *Հայաստանի (Արմինիայի) կառավարիչ էր նշանակված Արդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նումանը*[46], *ապա նշանակվեց Ադի իբն Ադին*[47], *որն իրեն փոխանորդ նշանակեց Ջազիրայում՝ Սավադա Աբու-լ-Սաբահ իբն Սավադա ալ-Քինդիին:*

*էջ 324*

*Ամառային արշավանքներ* – *Բաժանված էին Վալիդ իբն Հիշամի և Ամր իբն Կայս ալ-Սուքունիի միջև:*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
## (12 Հուլիս 720 – 30 Հունիս 721)

*էջ 327*

*Այդ տարում Աբբաս իբն Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը նվաճեց Դաբսան Ռումի երկրում:*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
## (1 Հուլիս 721 – 20 Հունիս 722)

*էջ 328*

*Այդ տարում Յազիդ իբն Աբդ ալ-Մալիքը (խալիֆան) Իրաքի կա-*

ռավարիչ նշանակեց Օմար իբն Հուբայրա ալ-Ֆիզարիին: Սա հեռացրեց Արդ ալ-Ազիզ իբն Հաթիմ իբն ալ-Հաքամ իբն Աբու-լ-Ասին և [Խորասանի] կառավարիչ նշանակեց Սաիդ իբն Ամր ալ-Հարաշիին: Եվ ահա սողդերը (ալ-սուղդ) դավաճանեցին և իրենց ընտանիքներով և ունեցվածքով գնացին իրենց երկրից: Նրանց դեմ դուրս եկավ Սաիդ իբն Ամր ալ-Հարաշին: Նրանք հաշտության պայմանագիր խնդրեցին այն պայմանով, որ վերադառնան իրենց երկիրը և գլխահարկ (ջիզիա) վճարեն: Նրանց մի մասը գնաց, մյուս մասը մնաց: Իսկ արաբական զորքը հարձակվեց նրանց վրա աջ ու ձախ կոտորելով և Սաիդը նրանց ի սպառ կոտորեց՝ գերեվարելով նրանց ընտանիքները:

Այդ տարում Միլակ իբն Սուֆար ալ-Բահրանին արշավեց Հայաստան (Արմինիա):

Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառայից, թե խազարները ընդհարվեցին Միլակ իբն Սուֆարի հետ Մարջ ալ-Հիջարայում և մահմեդականների մի խումբ կոտորվեց, Ռամադան ամսին (22 փետրվար – 23 մարտ) հարյուր երեք թվականին: Այդ տարի ձմեռ կատաղի էր և խազարները գրավեցին մահմեդականների ճամբարը:

Մուհամմադ իբն Մարուանը ամառային մեծ արշավանք կատարեց, իսկ Օսման իբն Հայյանը՝ ամառային փոքր արշավանք:

Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդը արշավեց Ռումի երկիրը:

էջ 329

Հարյուր երեք թվականին մեռավ Բանու Սաադ ցեղի մաուլա Վասսարը, որը Քուֆայի բնակիչ էր, Մուսաաբ իբն Սաադ իբն Մալիքը, Մայմունայի մաուլա Աթա իբն Յասարը և Արդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նուման ալ-Բահիլին՝ Հայաստանում:

## ՀԱՐՅՈՒՐ ՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
## (21 հունիս 722 – 9 հունիս 723)

## ՋԱՌԱՀԻ[48] ՀԱՅԱՍՏԱՆԻ (ԱՐՄԻՆԻԱՅԻ) ԿԱՌԱՎԱՐԻՉ ԴԱՌՆԱԼԸ ԵՎ ԲԱԼԱՆՋԱՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ

էջ 329-330

Այդ տարում Յազիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան][49] հեռացրեց Միլաք իբն Սաֆֆարին[50] Հայաստանի (Արմինիա) կառավարչի պաշտոնից և նշանակեց Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին: Ջառահը արշավեց, նվաճեց Բալանջարը կիրակի օրը՝ Ռաբի Ա ամսից երեք օր

*անց (22 օգոստոս) հարյուր չորս թվականին: Ապա Ջառահը հանդիսվեց Խաքանի[51] որդուն Դարրանդից (Բար) երկու փարսախ այն կողմ, Առան գետի վրա: Նրանք սաստիկ ճակատամարտ տվեցին և Խաքանի որդին փախուստի դիմեց, իսկ մահմեդականները հետապնդեցին նրանց, կոտորելով, մեծ թվով սպանելով ու գերեվարելով:*

*Ինձ պատմել է Արու Խալիդը, լսելով Աբու-լ-Բառա ալ-Նումայրիից, թե նրա ժողովուրդը (խազար) Ջառահից հաշտություն խնդրեց այն պայմանով, որ նա իրենց փոխադրի ու հաստատի Հիզանի (Խայզան) մերձակա շրջանում (ռուստակ) և նա փոխադրեց նրանց: Ապա եկավ Ցաղու ռուստակը և օրերով մնաց, իսկ նրանք հաշտություն խնդրեցին այն պայմանով, որ Ֆիլա ռուստակը փոխադրի:*

*Ասել է Արու Բառան, որ իրեն պատմել է Սավադան՝ մի ճշմարտաբան ծերունի, թե Ջառահի հետ էինք Բալանջարում և մի մահմեդական վեր կացավ ու ասաց՝ ո՞վ իր անձը կդոհի (յաշրի) Ալլահի սիրուն: Երեսուն մարդ արձագանքեց նրան, որոնք իրենց սրերի պատյանները ջարդեցին, հարձակվեցին արվարձանի սայլերի վրա, և [թշնամի] զորքը հեռացնելով վերցրեցին սայլերը, որոնք իրար էին կապված: Երբ մի սայլը ցած գլորվեց, բոլոր մնացածները նույնպես գլորվեցին, այնպես, որ սայլերը ընկան մահմեդականների ճամբարը (ասքար) և դրանք երեք հարյուր սայլեր էին:*

*Ապա [սայլերը] չուռ տվեցին դեպի Բալանջարի բնակիչները և մարդիկ [քաղաքի] ղռնից փախան և Բալանջարի տերը (սահիբ) ձի հեծած ծլկեց: Ջառահը գրավեց Բալանջարը, ապա շարժվեց թուրքերի դեմ, որոնք քառասուն ընտանիք (ահլ բայտ) էին և նրանից թույլտվություն խնդրեցին միանալ նրա հետ խազարների դեմ և նա (Ջառահը) ընդունեց ու գնացին Վարդանակերտ (Վարսան)[52]:*

*Այդ տարում Օսման (Ուսման) իբն Հայյան ալ-Մուռին և Արդ ալ-Ռահման իբն Սուլայմ ալ-Քալբին արշավեցին ու Սիսարան պաշարելով գրավեցին: Օսմանը նվաճեց Կեսարիան (Կայսարիյա), որը հռոմեների ամրոցներից էր:*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
## (10 հունիս 723 — 28 մայիս 724)

*էջ 331*

*Այդ տարում Ջարանը թուրքերի մեծ զորքով արշավեց Հայաստան (Արմինիա): Նրա դեմ գրոհեց Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին և ընդհարվեցին մի վայրում, որը կոչվում է Ռլղամ (մնա) և գտնվում է Կուրի ու Արաքսի (ալ-Ռաս) միջև, Ռամադան ամսին (1 փետրվար — 1 մարտ): Մի քանի օր կռվեցին և ապա Ալլահը փախուստի մատնեց*

*բազմաստվածյաններին (մուշրիքուն):*

*Ասել է Աբու Խալիդը, որ լսել է Աբու-լ-Բառայից, իսկ նա Մալիք իբն Աղհամից, թե Ջառահի հետ էինք ու կռվեցինք մինչև որ գիշերը մեզ իրարից անջատեց, սակայն Ալլահը մահմեդականների նվաճումն իրագործեց:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Ջառահ իբն Աբդալլահը արշավեց Ալանաց երկիրը (ալ-Լան)[53], ապա հասավ մինչև Բալանջարի ետևում գտնվող քաղաքները: Մի քանիսը նվաճվեցին, իսկ մյուսների բնակիչները հնազանդվեցին: Նա կոտորեց ու ավարեց և դա կատարվեց հարյուր հինգ թվականին:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Մարուան իբն Մուհամմադը ամառային աջ արշավանք կատարեց ու նվաճեց Ռումի երկրում մի քաղաք Անաջի կողմերում:*

## ՅԱԶԻԴ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 333*

*<u>Հայաստան (Արմինիա)</u> – Յազիդ իբն Աբդ ալ-Մալիքը կառավարիչ նշանակեց Միլաք իբն Սաֆֆար իբն Ֆալհաս իբն Ջանբ ալ-Ջամմար իբն Մաուկիդ ալ-Նար ալ-Բահրանիին, Եմեսայի (Հիմս) բնակիչներից, հարյուր երեք թվականին, ապա հեռացրեց նրան ու հարյուր չորս թվականին նշանակեց Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին[54]:*

*Ջազիրա - Ֆաիդ իբն Մուհամմադ ալ-Քինդին և ալ-Աբս իբն Կայս իբն Շուբա իբն ալ-Արկամ ալ-Քինդին:*

## ՀԱՐՅՈՒՐ ՎԵՑ ԹՎԱԿԱՆ
**(29 մայիս 724 – 18 մայիս 725)**

*էջ 336-337*

*Այդ տարում Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին Հայաստանից արշավեց [խազարների դեմ]:*

*Ինձ պատմել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառա ալ-Նումայրիից, թե Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին ներխուժեց խազարաց երկիրը [Ալանաց դռների կողմից][55]: Ալանները հաշտության պայմանագիր կնքեցին և վճարեցին գլխահարկ (ջիզիա) և խարաջ (հողահարկ): Նա առաջինն է, որ վերադարձել է Ալանաց դռների (Բաբ ալ-Լան) կողմից:*

*Այդ տարում Իֆրիկիայի (Մաղրիբի) կառավարիչ Բիշր իբն Սաֆուանը Մուհամմադ իբն Աբու Բաքրին, որը Ջամհ տոհմի մաուլան է,*

արշավանքի ուղարկեց և նա ասպատակեց Կորսիկան ու Սարդինիան:
Այդ տարում Սաիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Ռումի երկիրը:
Այդ տարում Մուավիա իբն Հիշամը ամառային արշավանք կատարեց:

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹ ԹՎԱԿԱՆ
## (19 մայիս 725 – 7 մայիս 726)

*էջ 337*

Այդ տարում Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքը հեռացրեց Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին Հայաստանի (Արմինիա) և Ատրպատականի կառավարչի պաշտոնից և նշանակեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին: Մասլաման արշավանքի ուղարկեց ալ-Հարիս իբն Ամր ալ-Թաիին[56]:

Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառայից, թե Հարիսը արշավեց ու Կուրի շրջանում (երկրում) գրավեց մի դավառ (ռուստակ), որը կոչվում էր Խաշղան:

Ասել է Աբու Բառան՝ Մասլաման այդ տարվանից սկսեց արշավել: Նա Մալաթիայից հարձակվեց ու պաշարեց Կեսարիան ու ըոնի ուժով գրավեց և դա կատարվեց հարյուր յոթ թվականի Ռամադան ամսից չորս օր անց (14 հունվար):

Ասել է Իբն ալ-Քալբին՝ այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը և նրա զորքը առաջացավ. նա ուղարկեց Վադդահին, Վադդահիյայի տիրոջը, որը վառեց գյուղերն ու ցանքսերը և կտրատեց ծառերը:

Ասել է Իբն ալ-Քալբին՝ թե այդ տարում սաստիկ ժանտախտ կար Ասորիքում, այնպես որ մեծ վնաս հասավ դրաստին ու կովերին:

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը և հասավ Աբուլիյա (Աղրուլիյա):

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹ ԹՎԱԿԱՆ
## (8 մայիս 726 – 27 ապրիլ 727)

*էջ 338*

Այս տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը ամառային աջ արշավանք կատարեց, իսկ Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալին՝ ամառային ձախ արշավանք:

Այս տարում Խաքանի որդին ներխուժեց Ատրպատական:

Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառայից, թե հարյուր ութ

Թվականին Մարտիք իբն Խաքանը ներխուժեց Ատրպատական ու պաշարեց Վարդանակերտ (Վարսան) քաղաքը, այն ոմբակոծեց քարանետ մեքենաներով (մանջանիկ) և լուրը հասավ ալ-Հարիս իբն Ամրին, որն առաջ խաղաց, կտրեց անցավ Արաքսը (ալ-Ռաս). Վարդանակերտը վերևի կողմից: Խաքանի որդին լսելով այդ մասին եկավ ալ-Հարիսի դեմ ու նրանք բախվեցին և Ալլահը փախուստի մատնեց Խաքանի որդուն ու նրա մերձավորներին և նրանցից մեծ բազմություն կոտորվեց և ալ-Հարիս իբն Ամրը սպանվեց. Ալլահը ողորմի նրան:

Այդ տարում Բիշր իբն Սաֆուանը Իֆրիկիայից արշավանքի ուղարկեց Կուսամ իբն Ավանա ալ-Քալբիին և ավար վերցնելով ապահով վերադարձավ:

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը և ուղարկեց Բաթթալին՝ Խանջարա, որը նվաճեց այն:

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆԸ ԹՎԱԿԱՆ
## (28 ապրիլ 727 – 15 ապրիլ 728)

էջ 339

Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց և զորքերը տարածեց Ատրպատականում ու նրանք այնտեղ ձմեռեցին:

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը ու նվաճեց մի բերդ, որը կոչվում է ալ-Ղաթթասին:

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍԸ ԹՎԱԿԱՆ
## (16 ապրիլ 728 – 4 ապրիլ 729)

## ԹԻՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

էջ 339-340

Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց խաղարաց երկիրը և սրանք այն արշավներն են, որ կոչվում են Թինի արշավանքներ:

Ասել է Աբու Խալիդը, լսելով Իբն Բառա ալ-Նումայրիից, թե Մասլաման դիմեց Տալմիս (Տաֆլի՞ս) և Դարբանդի (Բաբ) մոտերքում հանդիպեց խաղարաց բռնակալին (Թաղիա), որը բազմամարդ զորքով էր և նրանք շատ օրեր պատերազմեցին, ապա Ալլահը նրանց փախուստի մատնեց և պատահեց հարյուր տասը թվականի Ջումադա Բ ամսի յոթին, հինգշաբթի օրը (18 օգոստոս 728):

Ասել է Աբու Բառան, լսելով Աբդալլահ իբն Ուսայդ ալ-Քիլաբիից, թե Մասլաման անցավ Ալանաց դռնով (Բաբ ալ-Լան) և նրա դեմ ելան խազարները, որոնք գոտեմարտեցին նրա հետ այնքան, մինչև գիշերը անջատեց նրանց և Մասլաման անվնաս վերադարձավ:

Ասել է Իբն ալ-Քալբին, թե Մասլամայի պատերազմը նրանց հետ մոտավորապես մեկ ամիս տևեց, խիստ անձրևային պայմաններում:

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը և գրավեց նրանց բերդերից երկուսը՝ Սիմյան ու ալ-Բուվվան (ալ-Մուվվա):

Ասել է Աբու Խալիդը, թե այդ տարում Ուբայդա իբն Աբդ ալ-Ռահման ալ-Զաբուանին Սուլայմ ցեղից, եկավ Իֆրիկիա և Օսման իբն Աբու Ուբայդային յոթ հարյուր հոգով ուղարկեց արշավանքի. նա հարձակվեց Սիկիլիայի Սիրակուզա (Սարակուս) քաղաքի վրա: Նրանք բախվեցին ու գերի ընկավ նրանց պատրիկը և Ալլահը նրանց պարտության մատնեց:

Այդ տարում մեռավ ալ-Ֆարազդակը, իսկ Ջարիրը*՝ նրանից մեկ ամիս անց:

Այդ տարում մեռավ Վահբ իբն Մունաբբիհը:

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
### (5 ապրիլ 729 – 25 մարտ 730)

*Լջ 341*

Այդ տարում Աշրաս իբն Աբդալլահ ալ-Սուլամին [լուր] ուղարկեց Թոխարիստանի[57] թագավորներին ու նրանք եկան ներկայացան և արշավանք տեղի չունեցավ:

Այդ տարում Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան][58] իր եղբորը՝ Մասլամային հանեց Հայաստանի (Արմինիա) ու Ատրպատականի կառավարչի պաշտոնից և նշանակեց ալ-Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին[59] երկրորդ անգամ:

Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու-լ-Խաթթաբից, թե ալ-Ջառահը երկրորդ անգամ կառավարիչ դարձավ հարյուր տասնմեկ թվականին ու եկավ Տփղիս (Տաֆլիս) և արշավեց խազարների մի քաղաքի վրա, որը կոչվում է ալ-Բայդա, գրավեց այն, ապա մեկնեց: Խազարները մեծ բազմությամբ զորք հավաքեցին Խաքանի որդու հետ ու մտան Հայաստան և Խաքանի որդին առաջ շարժվեց ու պաշարեց Արդաբիլի[60] ժողովրդին:

Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Մուավիա իբն Հիշամը

---

* Ֆարազդակ, Ջարիր – Օմայան շրջանի բանաստեղծներ:

ամառային ձմեռ արշավանք կատարեց [Ռումի երկիրը]. սակայն հեռացավ. ոչ մի թակարդի չհանդիպելով:
Այդ տարում Սաիդ իբն Հիշամը նույնպես ամառային արշավանք կատարեց Ջաղիրայից այն կողմ ու հասավ Կեսարիա (Կայսարիա):

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
**(26 մարտ 730 – 14 մարտ 731)**

*եջ 442 – 443*

Այդ տարում Աշրաս իբն Արդալլահ ալ-Սուլամին արշավեց Ֆարղանա և գրոհի հանդիպեց՝ նրան շրջապատեցին Թուրքերը: Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] տեղեկանալով այդ մասին, նշանակեց [կառավարիչ] ալ-Ջունայդ իբն Աբդ ալ-Ռահման ալ-Մուռիին:
Այդ տարում Ջառահը հարյուր տասներկու թվականին Պարտավից (Բարդաա) եկավ Ատրպատական և Սաբալանի դաշտում (Մարջ Սաբալան) բանակ դրեց: Այստեղ կա մի գետ, որի վրա կամուրջ կապեց և դա այսօր կոչվում է Ջառահի կամուրջ:
Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառայից, թե Ջառահը տասներկու թվականին գրոհեց Խաքանի որդու դեմ, որը պաշարել էր Արդաբիլի ժողովրդին: Սաստիկ պատերազմ տեղի ունեցավ և Ջառահն սպանվեց, Ալլահը ողորմի նրան, հարյուր տասներկու թվականին Ռամադան ամսից ութ օր մնացած (8 դեկտեմբեր 730):
Խազարները նվաճեցին Ատրպատականը և նրանց հեծյալները ասպատակեցին, մինչև որ հասան Մոսուլի մոտերքը: Նրանք Արդաբիլի դեմ քարանետ մեքենաներ (մանջանիկ) օգտագործեցին, իսկ Արդաբիլի ժողովուրդը կռվում էր նրանց դեմ: Սակայն, երբ պաշարումը երկարեց, հանձնեցին այն (քաղաքը): Խազարները մտան, կոտորեցին ռազմիկներին և նրանց ընտանիքներին գերեվարեցին:
Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու-լ-Խաթթաբից, իսկ նա Սուլայմ ցեղի մի մարդուց, թե Ջառահը սպանվել է Արշակում:
Ասել է Աբու-լ-Խաթթաբը, թե Ջառահը երբ սպանվեց, Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] Սաիդ իբն Ամր ալ-Հարաշիին ուղարկեց և նրա հետ տվեց արաբ ձիավորներ՝ փոստի (բարիդ) ձիերով: Սաիդ իբն Ամրը շարժվեց և հասավ Պարտավ:
Ասել է Աբու-լ-Խաթթաբը, լսելով Աբու Ալկամա ալ-Սակաֆիից, իսկ նա՝ Եմեսայի (Հիմս) բնակիչներից՝ մի ծերունուց, թե լսել է Սաբիտ ալ-Բահրանիից, թե Հարաշին մեզ մոտ՝ Պարտավ եկավ փոստի ձիերով և մենք միասին գնացինք Բայլական, իսկ նրանք գնացին Ատրպատական: Եվ ահա նրանց դեմ դուրս եկավ խազարների զորքը, բազում սայլերով, որոնց վրա կային Արդաբիլի բնակիչներից

գերեվարվածներ ու կողոպուտ:

Ասել է Սարիտը, թե Հարաշին ինձ որպես հետախույզ ուղարկեց և եկա [խազարների] բանակատեղի ու տեսա, որ [զորքը] քնած էր: Հետացա ու նրանց տեղեկացրի: Սա իր զինակիցներին զարթնեցրեց և հարձակվեց ու փրկեց սայլերը՝ նրանց վրա եղածներով:

Ասել է Սարիտը, թե նա ինձ ուղարկեց Բայլական քաղաքը և Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքին գրեց հաղթանակի մասին, ապա լուր ստացավ, թե Վարզանակերտի կողմերը բազում սայլեր են բերել, որոնց վրա գերեվարվածներ և կողոպուտ կա: Նա գիշերանց հարձակվեց նրանց վրա և թշնամիներից ով կար, կոտորեց, իսկ սայլերը մտցրեց Վարզանակերտ: Նա Հիշամին գրեց հաղթանակի մասին:

Նա առաջ խաղաց ու բախվեց խազարաց բանակալի (թաղիա) հետ և Ալլահը նրանց պարտության մատնեց ու բանակալը փախավ և Հարաշին ձեռք բերեց նրանց մոտ եղած բոլոր մահմեդական գերեվարվածներին և ավարը:

Ասել է Աբու Խալիֆը, լսելով Աբու Բառայից, իսկ նա Աբդալլահ իբն Աբդալլահ ալ-Ամիրիից, թե Սաիդ իբն Ամր ալ-Հարաշին բախվեց խաքանի որդու հետ և գիշերանց հարձակվելով սաստիկ կոտորած տվեց: Խազարաց բանակալը փախավ, իսկ Հարաշին հաղթանակի մասին գրեց Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքին:

Ասել է Իբն ալ-Քալբին, թե Ջառահը և նրա զինակիցները նահատակվեցին Արդաբիլի դաշտում (Մարջ Արդաբիլ)[61]: Նա իր եղբորը ալ-Հաջջաջ իբն Աբդալլահին իրեն փոխանորդ էր նշանակել: Սակայն եկավ ալ-Հարաշին և Ալլահը նրանց պարտության մատնեց ու նրանցից ամեն ինչ ազատեց:

Ասել է Իբն ալ-Քալբին, թե Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը հարյուր տասներկու թվականի Շավվալ ամսին (17 դեկտեմբեր 730 – 14 հունվար 731) դուրս եկավ պատերազմի թուրքերի դեմ, երբ սաստիկ անձրև ու ձյուն էր տեղում: Նա անցավ Դարբանդը (ալ-Բաբ), իսկ սա էլ ալ-Թաիին թողել էր, որ կառուցապատի Դարբանդը և ամրացնի և այդ բանի համար զորքեր թողեց: Ապա զորքեր ուղարկեց, որոնք քաղաքներ ու բերդեր գրավեցին և Ալլահի թշնամիները իրենք իրենց կրակով վառեցին իրենց քաղաքներում:

Նույն հարյուր տասներկու տարում, ըստ Աբու Խալիդի, Ուբայդա իբն Աբդ ալ-Ռահմանը Իֆրիկիայից արշավանքի ուղարկեց Սաբիտ իբն Խասիմին, որը Հորդանանի բնակիչներից էր, հարձակվելու Սիկիլիայի վրա. նա գերեվարեց, ավար վերցրեց և ապահով վերադարձավ:

Իբն ալ-Քալբին ասել է, թե այդ տարում Մուավիա իբն Հիշամը Մալաթիայի կողմից ամառային արշավանք կատարեց [Ռում] և նվաճեց Խարսիանոնը (Խարշանա):

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
## (15 մարտ 731 – 2 փետրվար 732)

*էջ 344*

*[Հարյուր] տասներեք տարում Հիշամ [խալիֆան] իր եղբորը Մասլամային Հայաստանի (Արմինիա) և Ատրպատականի կառավարիչ նշանակեց, հանելով Սաիդ իբն Ամր ալ-Հարաշիին: Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը կառավարչի պաշտոնն ստանձնելուց հետո գնաց և ձերբակալեց Սաիդ իբն Ամրին, շղթայեց նրան ու բանտարկեց: Սակայն Հիշամը մարդ ուղարկեց ու նրան բանտից դուրս բերեց:*

*Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու Բառայից, թե Մասլաման եկավ և Հիդանի (Հայդան) ժողովրդին հաշտություն առաջարկեց, սակայն մերժեցին և նա կոտորեց նրանց: Նրանք նրաշխավորադիր (աման) խնդրեցին և նա երդվեց, որ նրանցից մի մարդ կամ մի շուն չի սպանի: Նրանք հանձնվեցին, իսկ նա բոլորին կոտորեց բացի մի մարդուց և մի շնից ու գրավեց բերդը: Նա շարժվեց դեպի Սուրան երկիրը, որի թագավորը հաշտություն խնդրեց և նա հաշտություն կնքեց նրա հետ, ինչպես նաև Մասկաթի (Մազքութք) ու Կուրի (ալ-Քուռ) ժողովրդի հետ:*

*Մասլաման բախում ունեցավ Խաքանի հետ և սաստիկ պատերազմ տեղի ունեցավ, ապա Մասլաման հեռացավ ու գնաց Ղազալա և խազարների զորքերը պաշարեցին նրան. սաստիկ պատերազմից հետո Ալլահը խազարներին փախուստի մատնեց, իսկ Խաքանը փախավ:*

*Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու-լ-Խաթթաբից, թե երբ Մասլաման եկավ, խազարները նրա դեմ դուրս եկան և Մասլաման չանդրադարձավ այդ բանին, մինչև որ նրան հայտնեցին և նա պատերազմեց նրանց դեմ, սակայն գիշերը խանգարեց նրանց: Մահմեդականները ամբողջ գիշերը մնացին գոռում ղոչումներ արձակելով: Խազարները հեռացան, իսկ Մասլաման վերադարձավ ու նրա փոխարեն նշանակվեց Մարուան իբն Մուհամմադը:*

*Այս բոլորը կատարվել էր հարյուր տասներեք թվականին:*

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
## (3 մարտ 732 – 20 փետրվար 733)

*էջ 345*

*Այդ տարում Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին հանեց Հայաստանի (Արմինիա), Ատրպատականի ու Ջազիրայի կառավարչի պաշտոնից և նշանակեց Մարուան իբն*

*Մուհամմադին, հարյուր տասնչորս թվականի Մուհառամ ամսի (3 մարտ – 1 ապրիլ) սկզբին:*

*Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու-լ-Բառայից, թե Մարուանը եկավ հարյուր տասնչորս թվականին, մինչև որ անցավ ալ-Ռամմ գետը և արշավեց սլավոնների (սակալիբա) դեմ ու կոտորեց:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը: Աբդալլահ իբն ալ-Բաթթալը զորքով ընդհարվեց Կոստանդինի (Կուսթանթին) հետ և Ալլահը փախուստի մատնեց թշնամուն, իսկ Կոստանդինը գերի ընկավ:*

*էջ 346*

*Այդ տարում Մասլամա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը Ջազիրայից այն կողմ, գնալով, մինչև որ հասավ Կեսարիա (Կայսարիյա):*

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
**(21 փետրվար 733 – 9 փետրվար 734)**

*էջ 346*

*Այդ տարում Մուավիա իբն Հիշամը Ռամադան ամսին (15 սեպտեմբեր – 13 նոյեմբեր 733) արշավեց ու հասավ մինչև Պափղագոնիա (Աֆլաջունիա)[62]:*

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
**(19 մայիս 725 – 7 մայիս 726)**

*էջ 348*

*Ասել է Աբու Խալիդը, լսելով Աբու-լ-Բառայից, թե այդ տարում Մարուան իբն Մուհամմադը, որը Հայաստանի, Ատրպատականի կառավարիչ էր, երկու զորք ուղարկեց Կովկասյան լեռները: Զորքերից մեկը գրավեց ալաններից երեք բերդեր, իսկ մյուս զորքը պաշարեց Տուման շահին: Տուման շահը իջավ ու հպատակվեց Մարուան իբն Մուհամմադին: Մարուանը նրան ուղարկեց Հիշամ Աբդ ալ-Մալիքի մոտ: Սակայն Հիշամը ետ ուղարկեց նրան և Մարուանը նորից նստեցրեց նրան իր թագավորության մեջ:*

*Ասել է Իբն ալ-Քալբին, թե այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը, մինչև որ հասավ Սայբարա և նրա հեծյալ ջոկատները հասան Սարդա և գերեվարեցին:*

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
## (20 հունվար 736 – 7 հունվար 737)

*Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը արշավանք կատարեց Հայաստան ու մտավ Վրթաննսի (Վարտնիս, Վարտանիս) հողը երեք դռներից և Վրթաննսը փախավ խազարների մոտ՝ թողնելով ամրոցը: Մարուանը նրա առջև քարաննտ մեքենաներ դրեց: Խումրինի բնակիչները սպանեցին Վրթաննսին ու նրա գլուխն ուղարկեցին Մարուանին: Մարուանը Վրթաննսի գլուխը ցուցադրեց ամրոցի բնակիչներին և նրանք իջան հանձնվեցին Մարուանին, որը կոտորեց ռազմիկներին ու գերեվարեց նրանց ընտանիքները:*

*Այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը:*

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
## (3 հունվար – 28 դեկտեմբեր 737)

*էջ 349*

*Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը երրորդ արշավանք կատարեց և մտավ Ալանաց դռները: Նա անցավ ամբողջ Ալանաց երկիրը, այնպես որ նրանից դուրս եկավ դեպի խազարաց երկիրը: Անցավ Բալանջարով ու Սամանդարով և հասավ ալ-Բայդա, ուր լինում էր Խաքանը, սակայն Խաքանը փախավ:*

*Այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը և հասավ Բոլոնիա (Բուլունիա): Սուլայման իբն Հիշամը նույնպես արշավեց Ռումի երկիրը՝ Ջազիրայի կողմից:*

*Այդ տարում Արդ ալ-Մալիք իբն Մարուանը իբն Մուհամմադը սպանեց Հազար Թարխանին և նրա բոլոր զինակիցներին Հայաստան երկրում:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆ ԹՎԱԿԱՆ
## (29 դեկտեմբեր 737 – 16 դեկտեմբեր 738)

*էջ 350*

*Մասլամա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
### (18 դեկտեմբեր 738 – 6 դեկտեմբեր 739)

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ

*Էջ 351 – 352*

*Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը Հայաստանից արշավանք կատարեց, երբ նրա կառավարիչն էր: Նա հասավ Բայտ ալ-Սարիր (Գահի տունը) ամրոցը[63], կոտորեց ու գերեվարեց: Ապա եկավ մի ուրիշ բերդ, կոտորեց ու գերեվարեց: Մտավ Ղումիկ, որը մի բերդ է, ուր կա թագավորի տունը և այնտեղ կա թագավորի գահը (սարիր): Թագավորը դուրս եկավ ու փախավ մինչև այն բերդը, որ կոչվում է Խայդաջ, ուր կա ոսկե գահը: Մարուանն այնտեղ մի ձմեռ ու ամառ անցկացրեց և հաշտության պայմանագիր կնքեց տարեկան հազար գլուխ [անասուն] և հարյուր հազար մոդ [ցորեն] տալու պայմանով: Մարուանը գնաց մտավ Տումանի երկիրը և Տումանը՝ նրա թագավորը հաշտություն կնքեց նրա հետ: Գնաց Մարուանը և մտավ Զարիքրան (Զարուրիքրան) երկիրը, որի թագավորը հաշտություն կնքեց: Ապա Մարուանը եկավ Համզին (Խումրին), որի թագավորը մերժեց հաշտություն կնքել: Նա կռվեց Համզինի բերդերից մեկի դեմ մեկ ամիս, ապա ավերեց Համզին երկիրը և Համզինը հաշտություն խնդրեց և նա տվեց հաշտություն (սուլհ): Ապա Մարուանը եկավ Մասդար երկիրը և հաշտությամբ նվաճեց, գրավեց Քիրանը և Թաբարսարանի ու Ֆիլանի ժողովուրդը հաշտություն կնքեց:*

*[Հարյուր] քսանմեկ թվականին Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը ամառային արշավանք կատարեց ու գնաց հասավ Մալաթիա:*

*Այդ տարում սպանվեց Բաթթալը Ռումի երկրում:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
### (7 դեկտեմբեր 739 – 25 նոյեմբեր 740)

*Էջ 353*

*Ինձ պատմել է Աբու-լ-Յակզանը, թե այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավել է Ռումի երկիրը, իսկ Սուլայման իբն Հիշամը արշավել ու պաշարել էր բոլոր հոռոմներին և սահմնդականները խիստ սով և գների սղություն ունեցան:*

*Էջ 354*

*Մուհամմադ իբն Հիշամը ամառային արշավանք կատարեց:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
**(26 նոյեմբեր 740 – 14 նոյեմբեր 741)**

*էջ 354*

*Այդ տարում Սուլայման իբն Հիշամը ամառային արշավանք (սաիֆա) կատարեց:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
**(4 նոյեմբեր 742 – 24 հոկտեմբեր 743)**

## ՀԻՇԱՄ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 360*

*Ամառային արշավանքը (սաիֆա) - Այն գլխավորել է Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը, ապա Հիշամի երկու որդիները՝ Մուավիան ու Սուլայմանը:*

*էջ 361*

*Հայաստան (Արմինիա) - Երբ Յազիդ [խալիֆան] մեռավ, նրա կառավարիչն էր ալ-Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին, որին Հիշամ [խալիֆան] հաստատեց: Սակայն հարյուր յոթ թվականին հեռացրեց նրան և նշանակեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին, ապա նրան ևս հեռացրեց [հարյուր] ինը թվականին ու երկրորդ անգամ կառավարիչ նշանակեց Ջառահին: Ջառահն սպանվեց հարյուր տասներկու թվականին և նա (Հիշամը) կառավարիչ նշանակեց Սաիդ իբն Ամր ալ-Հարաշիին, ապա [հարյուր] տասներեք թվականին հեռացրեց ու նշանակեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին: Երբ Մասլաման վերադարձավ, իրեն հաջորդ նշանակեց Մարուան իբն Մուհամմադին: Վերջինս կառավարչի պաշտոնն ստանձնեց հարյուր տասնչորս թվականի սկզբին:*

## ԴԱՏԱՎՈՐՆԵՐԸ ՀԻՇԱՄ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՕՐՈՔ

*Ասորիքի առաջապահ պահակազորքի (շուրթա) պետը – Քաաբ իբն Համիդ ալ-Ուրսիին հաստատեց տասներեք տարի, ապա նրան Հայաստանի կառավարիչ նշանակեց, իսկ առաջապահ պահակազոր-*

*րի (չուրթա) պետ նշանակեց Յազիդ իբն Յաալա իբն Դալմ ալ-Աբսիին:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ
**(25 հոկտեմբեր 743 – 12 հոկտեմբեր 744)**

## ՎԱԼԻԴ ԻԲՆ ՅԱԶԻԴԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 367*

*Ջազիրա, Հայաստան (Արմինիա), Ատրպատական – Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուանը մինչև Վալիդի սպանությունը: Մարուանը Հայաստանի ու Ատրպատականի վրա իրեն փոխանորդ նշանակեց Ասիմ իբն Արդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալիին[64] ու մեկնեց Ասորիք:*

*Ամառային արշավանքի [ղեկավարը] - ալ-Ղամր իբն Յազիդ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը:*

## *ՍԱԻԴ ԻԲՆ ԲՈՒՀԴՈՒԼԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ՋԱԶԻՐԱՅՈՒՄ*

*էջ 371*

*Այդ տարում, այսինքն հարյուր քսանվեց թվականին, Սաիդ իբն Բուհլուլը, որը Նիմր իբն Կասիթ ցեղից էր, ապստամբեց Ջազիրայում Շաաբան ամսին (19 մայիս – 16 հունիս), ապա կտրեց Տիգրիսը և անցավ Կարդա: Առաջ խաղաց և պաշարեց Մոսուլի գավառներից Մարջը: Սաիդի մոտ հավաքվեցին մոտավորապես հինգ հարյուր մարդ և նա պաշարեց Մոսուլը:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
**(13 հոկտեմբեր 744 – 2 հոկտեմբեր 745)**

## ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴԻ ԽԱԼԻՖԱ ԴԱՌՆԱԼՈՒ ՀԱՎԱՏԱՐՄՈՒԹՅԱՆ ԵՐԴՈՒՄ ՍՏԱՆԱԼԸ (ԲԱՅԱԱ) ԵՎ ԻԲՐԱՀԻՄ ԻԲՆ ԱԼ-ՎԱԼԻԴԻ ՀԱՆՎԵԼԸ

*էջ 382*

*Այդ տարում կատարվեց խռովությունը (ֆիտնա):*

*Ասել է Իսմաիլ իբն Իբրահիմը, թե Վալիդ իբն ալ-Վալիդը սպանվեց, երբ Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուանը Հայաստանի*

*(Արմինիա) կառավարիչն էր: Երբ նա լսեց Վալիդի սպանության մասին՝ մարդկանց կոչ արեց իրեն հավատարմության երդում (բայաա) տալ, որպես մահմեդականների կողմից ընդունվածի և նրան երդում տվեցին: Երբ նա լսեց Յազիդ իբն Վալիդի մահը, նա կոչ արեց Կայս և Ռաբիա ցեղերին և Կայսից պահանջեց քսանվեց հազար [ռազմիկ] և Ռաբիայից յոթը հազար [ռազմիկ] և տվեց նրանց ռոճիկները: Կայսի վրա [հրամանատար] նշանակեց Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլիին, իսկ Ռաբիայի վրա՝ ալ-Մուսավիր իբն Ուկբային: Ապա մեկնեց Ասորիք և Ջազիրայի վրա իրեն փոխանորդ նշանակեց իր եղբորը՝ Աբդ ալ-Ազիզ իբն Մուհամմադ իբն Մարուանին:*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
## (3 հոկտեմբեր 745 – 31 սեպտեմբեր 746)

## ԲԻՍԹԱՄ ԻԲՆ ԼԱՅՍ ԱԼ-ՍԱԱԼԱԲԻԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ԱՏՐՊԱՏԱԿԱՆՈՒՄ

*էջ 381-382*

*Այդ տարում, որ հարյուր քսանութ թվականն է, Բիսթամ իբն Լայս ալ-Սաալաբին, որը Զայդ ցեղից էր, Ատրպատականում ապստամբեց: Նա [Աբբասյանների կողմնակից] Բայհասինների կարծիքին էր և սպանեց Մարուանի նշանակած կառավարչին: Ապա եկավ Բալադ մոտավորապես քառասուն մարդկանցով: Նրա դեմ դուրս եկավ Յահիա իբն Աբու-լ-Հուռը Մոսուլի զորքով, իսկ նա հաղթեց նրանց, ապա եկավ Կարդա, ուր նրա կողքով անցավ Ասորիքի մարդկանցից բաղկացած մի ավազակախումբ հազար հոգուց ավելի, սակայն նա գիշերային հարձակումով կոտորեց նրանց: Ապա գնաց Մծբին (Նասիբին) և այնտեղ սպանեց Շայբանի ցեղից մի մարդու, որը կոչվում էր Թարիկ ալ-Ահդաբ: Ապա գնաց Հայաստան և Ատրպատական և Ասիմ իբն Զայդը իր եղբորը՝ Աբդ ալ-Մալիքին վեց հազար զորքով ուղարկեց նրա դեմ, իսկ ինքը (Բիսթամը) ուներ մոտավորապես երկու հարյուր մարդ, սակայն նա սպանեց Աբդ ալ-Մալիքին ու նրան ընկերացողների գլուխները կտրեց: Դրանից հետո գնաց Շահրազուր, ուր կար Մարուանի նշանակած կառավարիչ Ջիդար իբն Կայսը:*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
**(20 օգոստոս 749 – 3 օգոստոս 750)**

## ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 407*

*Հայաստան (Արմինիա) – Մարուանը Վալիդ [խալիֆայի] սպանության ժամանակ հեռացել էր Հայաստանից և թողել Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալիին: Դահհաք իբն Կայսը ուղարկեց Մուսաֆիր իբն ալ-Կասսարին, որն սպանեց Ասիմ իբն Աբդալլահին: Լուրը հասավ Մարուանին և նա կառավարիչ նշանակեց Աբդալլահ իբն Մուսլիմին, որը մնաց: Ապա նա (Մարուանը) կառավարիչ նշանակեց Իսհակ իբն Մուսլիմին, սակայն Իսհակն ապստամբեց և Պարտավի ժողովուրդը ընտրեց Մուսաֆիր իբն Բուջայրին, մինչև որ հանգես եկավ Աբու-լ-Աբբաս [խալիֆան][65]:*

## ԴԱՏԱՎՈՐՆԵՐԸ

*էջ 408-409*

*Մարուանի առաջապահ պահակազորքի հրամանատարն էր Քաուսար իբն ալ-Ասուադ ալ-Ղանավին:*

*Նամակների քարտուղարը - Աբդ ալ-Համիդ ալ-Քաբիր:*

*Փոքր կնիքը (կնքապահ) - Աբդ ալ-Աալա իբն Մայմուն իբն Միհրան:*

*Խալիֆայության կնիքը (կնքապահ) – իր մաուլաններից մեկը:*

*Սեննեկապետը (հաջիբ) – Սակլաբ, որը կոչվում էր Միկլաս, նրա մաուլաններից:*

*Խալիֆայի նամակների [քարտուղար] – Յահիա իբն Բաքիր իբն Աբու Ռիբահ իբն Աբու Ամարա:*

## ՍԱՖՖԱՀԻ[66] ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅՈՒՆԸ

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
**(9 օգոստոս 750 – 29 հուլիս 751)**

*էջ 410*

*Այդ տարում Ռումի բռնակալ (թաղիա) Կոստանդինը՝ Լևոնի որդին (Կուսթանթին իբն Ալյուն) հարձակվեց, պաշարեց Մալաթիան և նրա*

դեմ կատաղի պատերազմ եղավ: Նա սեղմեց նրանց այն աստիճանի, որ հանձնվեցին երաշխավորագիր (աման) խնդրելով: Նա կործանեց քաղաքը, մայր մզկիթը և կառավարչի նստավայրը (դար ալ-իմարա), իսկ մահմեդական բնակչությանը ձիավորների ընկերակցությամբ իրենց տեղերը հասցրեց:

Այդ տարում Աբու-լ-Աբբաս [խալիֆան] Մուհամմադ իբն ալ-Նադը իբն Յարիմ ալ-Հիմյարիին արշավանքի ուղարկեց և նա հասավ Տիանա (Թուալա, Թուանա) Ռումի երկրում:

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
## (30 հուլիս 751 – 17 հուլիս 752)

էջ 411

Այդ տարում Աբու-լ-Աբբաս [խալիֆան] մայրաքաղաքը Քուֆայից փոխադրեց ալ-Անբար:

Այդ տարում Աբդալլահ իբն Ալին, որն Ասորիքում էր, արշավանքի ուղարկեց ալ-Հարիս իբն Աբդ ալ-Ռահման ալ-Հարաշիին, իսկ հոռոմները Քուսան (Գուսան)[67] պատրիկի գլխավորությամբ նրա դեմ դուրս եկան, հարյուր երեսունչորս թվականի Ջումադա Բ ամսին (25 դեկտեմբեր 751 – 22 հունվար 752): Մուկատիլ իբն Հաքիմ ալ-Անաքին իր որդուն՝ Մուխալլադ իբն Մուկատիլին ուղարկեց, որը հոռոմների հետ բախվեց Չորրորդ Արմինիայում[68], Մուխալլադը փախուստի մատնվեց, իսկ զորքը հանձնվեց:

## ԱԲՈՒԼ-Լ-ԱԲԲԱՍ [ԽԱԼԻՖԱՅԻ] ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

էջ 414

Ջազիրա - Երբ Մարուանը Զաբի[69] [ճակատամարտում] պարտվեց, Աբդալլահ իբն Ալին մտավ Ջազիրա, ապա իր փոխարեն թողեց Մուսա իբն Քաաբ ալ-Մարային: Հետո Աբու-լ-Աբբաս [խալիֆան] իր եղբորը՝ Աբու Ջաաֆարին[70] նշանակեց Ջազիրայի, Հայաստանի (Արմինիա) և Ատրպատականի կառավարիչ: Ապա հրամայեց նրան գնալ Մեքքա՝ ուխտագնացության և նա գնաց՝ փոխանորդ թողնելով Մուկատիլ իբն Հաքիմ ալ-Անաքիին, որը մնաց մինչև Աբու-լ-Աբբասի մահը:

Ամառային արշավանքների (Բյուզանդիա) հրամանատարներն էին՝ ալ-Նադր իբն Յարիմը և ապա Սալիհ իբն Ալին:

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
**(27 հունիս 754 – 15 հունիս 755)**

* էջ 416*

*Այդ տարում Սմբատը (Սինրադ) Ռեյի բնակիչներին պայքարի հրահրեց և նրանք ապստամբեցին։*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
**(16 հունիս 755 – 4 հունիս 756)**

*էջ 417*

*Այդ տարում Մուլաբբադ իբն Հարմալան, Աբու Ռաբիա ցեղից, Մոսուլում ապստամբեց։ Աբու Ջաաֆարը նրա դեմ ուղարկեց Խադիմ իբն Խուզայմային, որը սպանեց նրան։ Ասվում է, որ Մուլաբբադը ապստամբեց հարյուր երեսունյոթին։*

*Այդ տարում Սալիհ իբն Ալին արշավեց և պաշարեց Դաբիկը։ Եկավ Կոստանդինը՝ Լևոնի որդին, Ռումի բռնակալը, հարյուր հազարով և Սալիհը բախվելով նրա հետ կոտորեց ու գերեվարեց և ապահով դուրս եկավ։*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
**(5 հունիս 756 – 24 մայիս 757)**

*էջ 418*

*Ջաաֆար իբն Հանդալան դուրս եկավ արշավանքի և հասավ Մալաթիա, որը ավերակ էր և այնտեղ բանակ դրեց։ Դուրս եկավ Մալաթիա նաև Աբդ ալ-Վահիդը, որը ցանեց ու շատ կիր եփեց [փռում], ապա վերադարձավ։ Եկավ [Ռումի] բռնակալը և վառեց ցանքսերը։*

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ
**(25 մայիս 757 – 13 մայիս 758)**

*էջ 418*

*Այդ տարում հավատացյալոց իշխան (ամիր ալ-մումինին) Աբու Ջաաֆարը գրեց Սալիհ իբն Ալիին, հրամայելով վերակառուցել Մամեստիա (Մասսիսա) քաղաքը։ Նա ուղարկեց Ջիբրիլ իբն Յահիային, որը եկավ ու ճամբար դրեց նրա կողքին, մինչև որ կառուցեց այն։ Նա*

այդ գործն ավարտեց հարյուր քառասունմեկ թվականին:

Այդ տարում Աբու Ջաաֆարը (խալիֆան) ուղարկեց Արդ ալ-Վահհաբ իբն Իբրահիմ իբն Մուհամմադ իբն Ալիին, որ վերակառուցի Մալաթիան: Նա այնտեղ մնաց մեկ տարի, մինչև որ կառուցեց ու մարդկանց բնակեցրեց:

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
**(11 ապրիլ 761 – 31 մարտ 762)**

*էջ 421*

Այդ տարում Սալիհ իբն Ալին ուղարկեց Մասլամա իբն Յահիային՝ Ջիբրիլ իբն Յահիայի եղբորը, որը վերակառուցեց Ադանա ամրոցը[71]:

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
**(1 ապրիլ 762 – 20 մարտ 763)**

*էջ 421*

Այդ տարում Սալիհ իբն Ալին Իսա իբն Քասիր ալ-Նակկաշին նշանակեց [զորքի] հրամանատար: Սա արշավեց Սելևկիա (Սալուկիա), ապա եկավ Տիանա (Թուանա), ապա Կարմա և կոտորեց ու գերեվարեց:

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
**(16 փետրվար 766 – 5 փետրվար 767)**

*էջ 424*

Այդ տարում Աբու Ջաաֆար [խալիֆան] Հասան իբն Կահթաբային[72] ուղարկեց արշավանքի: Նա եկավ Կամախ[73] (Քամախ), որը Ջազիրայի երկրում է: Նրան [բերդի մարդիկ] դիմադրեցին և նա ձեռնունայն վերադարձավ:

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
**(14 հունվար 769 – 3 հունվար 770)**

*էջ 426*

Ամառային արշավանքը (սաիֆա) կատարեց Արդ ալ-Վահհար իբն

Իբրահիմ իբն Մուհամմադը, որը սակայն Թշնամու երկիր չկարողացավ մտնել:

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
## (4 հունվար 770 – 23 դեկտեմբեր 771)

*Էջ 427*

*Ամառային արշավանքի (Բյուզանդիա) հրամանատարն էր Մաայուփ իբն Յահիան, որը չկարողացավ Թշնամու երկիրը մտնել:*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
## (24 դեկտեմբեր 770 – 12 դեկտեմբեր 771)

*Էջ 427*

*Աբու Ջաաֆար [խալիֆան] ամառային արշավանքի հրամանատար նշանակեց Զուֆար իբն Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալիին և նա մտավ Մամեստիա, ապա հասավ ալ-Կուզզա: Նա իր ձիավոր ջոկատները ցրեց ամեն կողմ և ավար վերցնելով դուրս եկավ (վերադարձավ) Մարաշի լեռնանցքից:*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
## (13 դեկտեմբեր 771 – 1 դեկտեմբեր 772)

*Էջ 427*

*Այդ տարում Շիհար իբն Աբդալլահը ծովակալն էր:*
*Այդ տարում Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամին դուրս եկավ արշավանքի և գա կոչվում է Դան Կիշշա արշավանքներ Խազարաց ծովի[74] կողմերում:*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ
## (2 դեկտեմբեր 772 – 20 նոյեմբեր 773)

*Էջ 428*

*Զուֆար իբն Ասիմ ալ-Հիլալին արշավեց Ռումի երկիրը, ասպատակեց Կանբան ու Իկոնիան (Կոնիա):*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
**(21 նոյեմբեր 773 – 10 նոյեմբեր 774)**

*Ամառային արշավանք կատարեց Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամին, ավար վերցրեց և ապահով վերադարձավ:*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
**(11 նոյեմբեր 774 – 30 հոկտեմբեր 775)**

*էջ 429*

*Եվ հաջողություն ունեցավ Իբն Հումայդը, որը Մաայուֆ իբն Յահիային ուղարկել էր Ռում արշավանքի: Սա հարձակվեց Հադասի լեռնանցքից և ապահով վերադարձավ Դարբ ալ-Ռահիբից (վանականի լեռնանցք):*

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ
**(19 հոկտեմբեր 776 – 8 հոկտեմբեր 777)**

*էջ 430*

*Ամառային արշավանքի հրամանատարն էր Սումամա իբն ալ-Վալիդ իբն ալ-Կաակաա իբն Խալիդ ալ-Աբսին, որը ավար վերցրեց ու գերեվարեց:*
*Այդ տարում մեռավ Խալիֆա իբն Խայյաթը:*

## ԱԲՈՒ ՋԱԱՖԱՐԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 433*

*Ջազիրա – Աբու Ջաաֆարը [փոխարքա] նշանակել էր Մուկաթիլ իբն Հաքիմ ալ-Աքքիին Աբու-լ-Աբբասի խալիֆայության օրոք:Աբու-լ-Աբբասի մահվանից հետո Աբդալլահ իբն Ալին հարձակվեց ու պաշարեց Մուկաթիլ իբն Հաքիմին Խառան քաղաքում, որը հաշտության պայմանագրով հանձնվեց: Աբու Ջաաֆար [խալիֆան] Աբու Մուսլիմին ուղարկեց Աբդալլահ իբն Ալիի դեմ: Նրանք պատերազմեցին Մծբինում հարյուր երեսունյոթ թվականի Ջումադա ամսին (23 հոկտեմբեր – 21 նոյեմբեր 754): Աբդալլահ իբն Ալին պարտվեց և Աբու Ջաաֆարը Ջազիրայի կառավարիչ նշանակեց Մուխարիկ իբն ալ-Ակկարին, ապա կառավարիչ դարձան Հումայդ իբն Կահթաբան, ալ-*

*Արրաս իբն Սուհասմադ իբն Ալի իբն Ուբայդալլահ իբն Աբբասը, Մուսա իբն Սուլայմը, որը Խորասանի բնակիչներից է և Մուսա իբն Սուսաւրը՝ Եմենի [ցեղի] մաուլան:*

## ԴԱՏԱՎՈՐՆԵՐԸ

[.......................]

*էջ 435-436*

*Առաջապահ զորքի հրամանատարը - Աբու Ջաաֆարը նշանակեց Աբուլ ալ-Ջարրար իբն Աբդ ալ-Ռահման ալ-Ազդիին [...........]*

*Նամակագրության վրա (ալ-ռասաիլ) - Աբու Այյուբ ալ-Մաուրիյանին:*

*Հարկերի քարտուղարը (քատիբ ալ-խարաջ) — Յազիդ իբն ալ-Ֆայզի:*

*Նվաճումների նամակագրությունը (ռասաիլ ալ-ֆուտուհ) - Արդալլահ իբն Հումայդ:*

*Արքունի գանձարաններ (բույուտ ալ-ամուալ) - Աբբան իբն Սաղական մինչև Աբու Ջաաֆարի մահը:*

*Գանձարաններ (խազաին, պահեստներ) — Սուլայման իբն Մուջալիդը, որի մահվանից հետո պաշտոնը վերցրեց եղբորորդին՝ Իբրահիմ իբն Սալիհ իբն Մուջալիդը՝ մինչև Աբու Ջաաֆարի մահը:*

*Խորասանի, [Ռումի] երկիրն ու նրա տիրույթները ամառային արշավանքների դիվանը - Աբդ ալ-Մալիք իբն Հումայդ [........]*

*Զորքի (ջունդ) վերսկացությունը — Իսհակ իբն Սալիհ իբն Մուջալիդ:*

*Կնիքի դիվանի (դիվան ալ-խատամ) վրա - Աբու Մանսուր ալ-Քատիբը (քարտուղար) Խորասանի բնակիչներից:*

*Սենեկապետը (հաջիբ) — Իր (Մանսուրի) մաուլաններից՝ Իսա իբն Նաջիհը, ապա Աբու Խասիբը և Ռաբիան և վերջապես [գահաժառանգ] Մահդին:*

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԱԼ-ՄԱՀԴԻԻ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

**(9 հոկտեմբեր 777 — 27 սեպտեմբեր 778)**

*էջ 436*

*Այդ տարում Միքայել (Միխայիլ) պատրիկը Հադասի լեռնանցքի կողմից հարձակվեց ու հասավ Հիրտանա լեռնանցքը, հաղթեց բնակիչներին, ապա եկավ Անզուրան գյուղը, կոտորեց, գերեվարեց ու*

կրակով այրեց: Հետո եկավ Մարաշ, ուր Իսա իբն Ալին կայազոր էր դրել: Նրա (Միքայելի) դեմ դուրս եկավ Սալիմ ալ-Բուրնուսին ու կռվեց, սակայն ոչ մի արդյունքի չհասավ: Ապա եկավ Պիրամոս (Ջայհան)[75] գետը: Ումամա իբն ալ-Վալիդը, որ ռազմի էր դուրս եկել, Ռումի դեմ ուղարկեց Մալալա իբն Հիքմային Միքայելին հետապնդելու և հասավ նրան լեռնանցքի մոտ, սակայն Մալալան ու զինակիցները պարտվեցին:

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
(28 սեպտեմբեր 778 – 16 սեպտեմբեր 779)

էջ 437

Այդ տարում ալ-Հասան իբն Կահթաբան արշավեց և հասավ Բաթնա: Նա իր հեծյալ ջոկատներն ամեն կողմ ուղարկեց և կործանեց ու գերեվարեց: Նա իր որդուն՝ Մուհամմադ իբն ալ-Հասանին ուղարկեց Ամորիոն (Ամմուրիյա), ապա ինքը՝ Հասանը, եկ հասավ ու նրանց միջև ընդհարում տեղի ունեցավ, ապա նա հեռացավ:

Այդ տարում Մուհամմարաններն[76] ապստամբեցին Վրկանում (Ջուրջան):

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
(17 սեպտեմբեր 779 – 5 սեպտեմբեր 780)

Այդ տարում [ապագա] հավատացյալաց իշխան Հարունն[77] իր հոր խալիֆայության օրոք ամառային արշավանք կատարեց, մեծ թվով գերեվարեց և ձեռք բերեց տնային կահկարասի ու ապրանքներ:

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
(6 սեպտեմբեր 780 – 25 օգոստոս 781)

էջ 438

Այդ տարում Աբդ ալ-Քաբիր իբն ալ-Համիդը իբն Աբդ ալ-Ռահման իբն Յազիդ իբն ալ-Խաթթաբը ամառային արշավանք կատարեց [Ռում] ու պարտվեց: Մահդին նրա վրա զայրացավ ու բանտարկեց Մաթբակում և կամեցավ սպանել նրան:

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
**(26 օգոստոս 781 – 14 օգոստոս 782)**

*Այդ տարում [ապագա] հավատացյալների իշխան Հարունը իր հոր խալիֆայության օրոք ամառային արշավանք կատարեց, մինչև որ իջավ Ծոցը [Կոստանդնուպոլսի՞] և վերադարձավ հարյուր վաթսունվեց (782-783) թվականին:*

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
**(5 օգոստոս 783 – 23 հուլիս 784)**

*էջ 439*

*Այդ տարում հռոմների հետ գերիների փոխանակում կատարվեց Աբդ ալ-Համիդ իբն ալ-Դահհաքի ձեռքով:*

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
**(24 հուլիս 784 – 13 հուլիս 785)**

*էջ 439*

*Այդ տարում Մահդի [խալիֆան][8] դրեց Ալի իբն Սուլայման իբն Ալիին հրամայելով վերակառուցել (կառուցել) Հադաս քաղաքը: Սա ուղարկեց Ալի ալ-Մուսայյիբ իբն Զուհայրին՝ հրամայելով վերակառուցել այն:*

## ՄԱՀԴԻԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 441*

*Ջադիրա - Երբ մեռավ Աբու Ջաաֆարը, նրա կառավարիչն էր Մուսա իբն Մուսաաբը, իսկ Մահդին նրան հեռացրեց և նշանակեց ալ-Մուսայյիբ իբն Զուհայրին: Ապա հանեց նրան ու նշանակեց Աբդ ալ-Սամադ իբն Ալիին, ապա՝ ալ-Ֆադլ իբն Սալիհին, Ալի իբն Սուլայման իբն Ալիին, Ումրան իբն ալ-Մինհալին, Ալի իբն Սուլայմանին՝ երկրորդ անգամ, Աբդ ալ-Մալիք իբն Սալիհին՝ երկու անգամ և Աբդալլահ իբն Սալիհին:*

## ԱԲԴ ԱԼ-ՍԱԼԱՄ ԱԼ-ՅԱՇՔԱՐԻԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

*Հջ 443*

*Մահդիի խալիֆայության օրոք Աբդ ալ-Սալամ իբն Հաշիմ ալ-Յաշքարին հարյուր վաթսուն թվականին ապստամբեց Բաջարմայում, եկավ Մծբին, ուր կառավարում էր Մինհալ իբն Ումրան իբն Կինան ալ-Քիլաբին Ջաաֆարինների տոհմից, որը հարկերի վերակացու էր: Նա (Աբդ ալ-Սալամը) զորք ուղարկեց քսան հազարով, սակայն չկարողացավ գրավել: Ապա եկավ Ռաս ալ-Այն[79], ուր Յամիմ ցեղի մարդիկ դիմադրեցին նրան: Եկավ Ամիդ, ուր նրան դիմադրեց Իսա իբն Մուսա ալ-Խորասանին, և Աբդ ալ-Սալամի մարդիկ պարտվեցին: Սակայն նա ասաց՝ Ալլահը վկա ձեզանից վրեժ եմ առնելու, քանզի դուք անհավատ (քուֆֆար) մարդիկ եք, հարձակումից փախչում եք և չունեք բազմություն: Նրանք եւ եկան [Ամիդ] և Իսայի մարդիկ պարտվեցին ու Աբդ ալ-Սալամը հարձակվեց, մենամարտեց և սպանեց նրան:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ
## (3 Հուլիս 786 – 21 Հունիս 787)

## ՄՈՒՍԱ [ԱԼ-ՀԱԴԻԻ] ՆՇԱՆԱԿԱԾ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԸ

*Հջ 446*

*Ջազիրա – Այստեղ նշանակել էր Խորասանի բնակիչներից մի մարդու, որի, ըստ որդու, անունն (քունիա) էր Աբու Հուրայրա և այլա կառավարիչ դարձավ Իբրահիմ իբն Սալիհը:*

## ՀԱՐՈՒՆ ԱԼ-ՌԱՇԻԴԻ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅՈՒՆԸ

*Հջ 448*

*Այդ տարում հոռոմները եկան գերիների փոխանակման համար:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
## (22 Հունիս 787 – 10 Հունիս 788)

*Այդ տարում Սուլայման իբն Աբդալլահ ալ-Ասսամը արշավեց ու մտավ Ռումի երկիրը, ավար վերցրեց և ապահով վերադարձավ:*

*Այդ տարում Տարսոնը (Թարսուս) վերակառուցվեց Ֆարաջ ալ-Խիսիյի (ներքինու) ձեռքով:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
**(11 հունիս 788 – 30 մայիս 789)**

*Այդ տարում Զուֆար իբն Ասիմ ալ-Հիլալին ամառային արշավանքի դուրս եկավ և իր որդուն՝ Աբդ ալ-Աղիզ իբն Զուֆարին ուղարկեց [հարձակման]: Սա գնաց, մինչև որ հասավ Պիրամոս (Ջայհան) գետը, սակայն ցրտի պատճառով վերադարձավ:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
**(31 մայիս 789 – 19 մայիս 790)**

*էջ 449*

*Այդ տարում ամառային արշավանքի հրամանատարն էր Աբդ ալ-Մալիք իբն Սալիհ իբն Ալին:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
**(20 մայիս 790 – 9 մայիս 791)**

*Այդ տարում նույնպես ուխտագնացությունը գլխավորեց հավատացյալների իշխան Հարուն ալ-Ռաշիդը: Ամառային արշավանք չեղավ, միայն թե Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը իր որդուն՝ Աբդ ալ-Ռահման իբն Աբդ ալ-Մալիք իբն Սալիհին ուղարկեց [հետախուզական արշավանքի], որը հասավ Ռիքար լեռնանցքը և գերեվարեց ու տնային կահկարասի բերեց:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
**(10 մայիս 791 – 27 ապրիլ 792)**

*Այդ տարում Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը արշավեց Ռումի երկիրը և դա Իկրիթիայի արշավանքն էր սահմանային ամրությունների դոտու (Սուղուր) բոլոր բնակիչների դեմ: Նա հարձակվեց Սաֆսաֆի լեռնանցքից ու կոտորեց տասնիեը հազար գլուխ [մա՞րդ] ու Հադասի լեռնանցքով վերադարձավ:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ
**(28 ապրիլ 792 – 17 ապրիլ 793)**

*Այդ տարում ամառային արշավանք չի եղել: Արդ ալ-Մալիք իբն Սալիհ իբն Ալին գրեց Մուխալլադ իբն Յազիդ իբն Օմար իբն Հուբայրային, հրամայելով, որ առաջ խաղա դեպի Դաբսա, մինչև որ հասնի Աբդ ալ-Ռահման իբն Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը: Աբդ ալ-Ռահմանը հասավ ու նվաճեց և դա երկար պատմություն ունի:*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
**(18 ապրիլ 793 – 6 ապրիլ 794)**

*էջ 450*

*Հարունը (խալիֆան) Աբդալլահ իբն Սալիհ իբն Ալիին ամառային արշավանքի ուղարկեց, իսկ Սուլայման իբն Ռաշիդ ալ-Սակաֆիին՝ ձմեռային արշավանքի: Աբդալլահը ողջ առողջ վերադարձավ: Սաստիկ ձմեռը ներեց Սուլայմանին և նրա զինակիցներից ոմանք ըմբոստացան, ոմանք մեռան, իսկ [մնացածները] հասան Մալաթիա:*

*Այդ տարում Յասար իբն Սակլաբը արշավեց Մամեստիայի բնակիչների դեմ: Նա Սաֆսաֆից հարձակվեց, ապա հասավ Տիանա (Թուանա), հետո վերադարձավ ու իջավ Մարջ ալ-Շահմ, ավար վերցրեց և ողջ վերադարձավ:*

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ
**(16 մարտ 796 – 4 մարտ 797)**

## ՎԱԼԻԴ ԻԲՆ ԹԱՐԻՖ ԱԼ-ՇԱՐԻԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*էջ 451-452*

*Այդ տարում Յազիդ իբն Մազիադն սպանեց Յազիդ իբն Թարիֆ ալ-Շարիին Ջազիրայի երկրում:*

*Վալիդ իբն Թարիֆը Տաղլիբ ցեղին պատկանող Հայյ իբն Ամր տոհմից էր, որոնց կոչում էին շան ատամներ (ադրաս ալ-քիլաբ): Նա Եփրատի ափին երեսուն հոգով ապստամբեց, գնաց Ռաս ալ-Այն և հանդիպեց մի բասրացի մարդու, կոչված Ամր իբն Մանսուր, որը վաճառական էր և իր հետ կար մի քրիստոնյա, կոչված Անասաաս (Նասթաս): Նա հանդիպեց նրանց Ռաս Այնի մոտակայքում, սպանեց Ամր իբն Մանսուրին, վերցրեց նրա ունեցվածքը, իսկ քրիստոնյային բաց թողեց:*

Ապա եկավ Ռաս ալ-Այն, ուր կրակ գցեց, սակայն չկարողացավ պարսպից ներս մտնել: Եկավ Բաարբայա, որը Մծբինի գավառում է և այնտեղ Տալլ Աբու-լ-Ջաուդայի մոտ հանդիպեց Բիզարին, որը Տաղլիբ ցեղից էր: Բիզարը ընդհարման մեջ պարտվեց, նրա մարդկանցից ոմանք սպանվեցին, իսկ նա գնաց Մծբին: Ապա Վալիդը եկավ Դարա և քանի հազարով [դիրհեմո՞վ] վաճառեց (փրկագին առավ) Դարան: Եկավ Ամիդ և նրա համար էլ Իսմատ իբն Իսամից ու նրա տոհմից (ահլ բայտ) ստանալով քանի հազար [դիրհե՞մ] եկավ Նփրկերտ (Մայյաֆարիկին) քանի հազար մարդկանցով: Ապա անցավ Սարրաթը[80], և սա մի գետ է (ձոր, վադի), որը հոսում է Հայաստանից: Նա անցավ գետը դեպի Արզ (Արզան) և այնտեղ կանգ առավ ու նրանք (բնակիչները) քանի հազարով փրկագնեցին քաղաքը: Նա սպանեց այստեղի բնակիչներից մի երևելի մարդու, Շայբան ցեղից, որը կոչվում էր Մուսա: Ապա եկավ Խլաթ[81] (Խիլաթ), որը քանի օր պաշարեց և նրանք (բնակիչները) իրենց անձերը փրկագնեցին երեսուն հազարով [դիրհեմո՞վ]: Շարժվեց դեպի Ատրպատական, ապա եկավ Հուլուան և այնտեղ գտավ Յահիա ալ-Հարաշիին, որին հաղթեց ու զինակիցներին կոտորեց: Հասավ Հաուլայա, հետո ալ-Սուգկանիյյա, անցավ Տիգրիսի արևմտյան ափը, եկավ Բալադ և նրանք (բնակիչները) քաղաքը փրկագնեցին հարյուր հազարով:

Ապա գնաց Մծբին, ուր կային Իբրահիմ իբն Խազիմն ու Բիզարը Տաղլիբ ցեղի մարդկանց հետ: Առաջ խաղաց Վալիդը ու կանգնեց մի բլրի վրա՝ Հոռոմների դռան (Բաբ ալ-Ռում) դիմաց: Նա քաղաքի պարսպի մի ճեղքվածքից, որի գոյությունը [բնակիչները] չէին նկատել, մտավ քաղաք: Իբրահիմ իբն Խազիմը և Բիզարը դուրս եկան Հոռոմների դռնից: Վալիդը հետապնդեց նրանց և, հասնելով Իբրահիմի ետևից, սպանեց նրան հարյուր յոթանասունութ թվականի Ջու-լ-հիջջա ամսին (26 փետրվար – 26 մարտ 795) չորեքշաբթի օրը: Սրան սպանեց մի սևամորթ, որի անունն էր Աբու-լ-Հավարի: Նրա գլուխն ու մորուքը լվացին, դրեցին մի նիզակի ծայրին, երկու օր [ցուցադրեցին], ապա ուղարկեցին Բառիյա:

Վալիդը հինգ օր կողոպտեց Մծբինը և հինգ հազար մարդ կոտորեց, ավարի տալով շատ ունեցվածք ու գրաստ: Նա բռնեց ալ-Մուաֆի իբն Սաֆուանին, որը Բիզարի բարեկամներից էր ու սպանեց նրան: Նրա (Վալիդի) մոտ եկավ Ջաաֆար իբն Աբդալլահ իբն Հաշիմ ալ-Տաղլիբին ու նրանից գնեց քաղաքը հիսուն հազարով:

Սակայն նրա (Վալիդի) դեմ դուրս եկավ Յազիդ իբն Մազիադը և սպանեց նրան Բառիյայում:

## ԲԱՍԻՐԻ, ՍԱՀՍԱՀԻ ՈՒ ՖԱԴԻԼ ԻԲՆ ԱԲՈՒ ՍԱԻԴԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

*ԼՀ 453-454*

*Տամիմ ցեղից մի մարդ, Բասիր անունով, ապստամբեց և երկու ամիս մնաց, մինչև որ Աբու Հուբայրան նրան սպանեց:*

*Ապա ապստամբեց Սահսահ ալ-Շայբանին և նրան սպանեցին Բիշարն ու Դաուդ իբն Իսմայիլը:*

*Ապստամբեց նաև Ֆադիլ իբն Աբու Սաիդը, Ռաղանից, և նա Շայբան ցեղի պետն էր: Նա քսան ձիավորներով ապստամբեց ու եկավ Ջազիրա և նրա հետ հաշտություն կնքեցին հարյուր հազարով ու ոչ ոք չսպանվեց: Ապա նա եկավ Բալադ Նուման, Մծբինից հինգ փարսախ այն կողմ, ուր տասներկու հազար մարդ կոտորեց Տաղլիբ ցեղից: Նա եկավ Մծբին հինգ հարյուրով ու կանգ առավ դրան առջև: Նրա մարդիկ մտան քաղաք և մարդկանց դուրս բերեցին հռոմների դռնից և նա ասաց՝ վաճառեցեք դրանց: Նա տվեց երկու դիրհեմ և ոչ ոք չպատասխանեց, գցեց ես երկու դիրհեմ և նրանց քաղաք վերադարձրեց:*

*Ապա եկավ Դարա և նրանց հետ հաշտություն կնքեց հինգ հազարով [դիրհեմո՞վ]: Եկավ Ամիդ ու հաշտություն կնքեց քսան հազարով: Անցավ [Եփրատը], եկավ Նփրկերտ (Մայյաֆարիկին) և հաշտություն կնքեց տաս հազարով: Եկավ Արզն ու քսան գիշեր մնաց և հաշտություն կնքեց քսան հազարով: Եկավ Խլաթ ու մի քանի օր մնաց, ապա վերադարձավ Մծբին երկու հազարով: Մուհամմադ իբն Իսա ալ-Աբդին նրա դեմ ուղարկեց Ղանմ ցեղից մի մարդու տասներկու հազարով: Ֆադիլը եկավ Մոսուլ, ապա Զաբ. Մուհամմադը նրա ետևից հասավ Զաբի մոտ և Մուհամմադը պարտվեց: Սակայն նրա մարդիկ կրկին հարձակվեցին և Ֆադիլին ու զինակիցներին դետին տապալելով սպանեցին:*

## ՋԱՐԱՇԱ ԻԲՆ ՇԱՅԲԱՆԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

*ԼՀ 454-455*

*Ասել է Աբու-լ-Հասանը, լսելով Ալի իբն Սուլայմից, թե Ջարաշա իբն Շայբանը հարյուր յոթանասունինը թվականին (795/796) ապստամբեց և եկավ Սավադ (Ստորին Միջագետք), ապա Բանդանիջին և այնտեղ սպանեց Օմար իբն Ումրան իբն Ջամիլ ալ-Ֆադարիին [.........]*

Ապա նա եկավ Սինդարաղ և իր մարդկանց ուղարկեց Նիհավանդի ու Համադանի կողմերը, որպեսզի նրանցից հարկեր հավաքեն: Ֆադլ իբն Յահիան նրա դեմ ուղարկեց Իբրահիմ իբն Ջիբրիլին երկու հազարով և հանձնարարեց, որ փիթր (թաթախման) տոնի օրը հարձակվի: Սա եկավ ու հասավ Մահ, ապա դիմեց Ջարաչայի դեմ և Ջարաչան հարյուր ութսուն մարդկանցով բախվեց նրա հետ, իր մոտ ունենալով Արու Սուրը, որը Հայաստանի բնակիչներից էր: Նրանք սաստիկ պատերազմ ունեցան [......]

Ջարաչան սպանվեց քնած վիճակում ու նրա հետ կոտորվեցին նաև նրա տասներեք զինակիցները և Իբրահիմը լսելով նրա մահը, վերադարձավ Հիրա:

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
## (1 փետրվար 800 – 19 հունվար 801)

Էջ 457

Արդյալյահ իբն Սալիհը Ռումի երկիրը արշավանքի ուղարկեց Ահմադ իբն Հարուն ալ-Շայբանիին և նա ավարով ողջ վերադարձավ:

Այդ տարում հավատացյալ իշխան Հարունը Սալիհ իբն Բայհասի ալ-Ֆիյարիին ուղարկեց Ռումի թագուհի Կիսսայի[82], ասվում է նաև Ղիսսայի (Այուսթա) մոտ՝ գերիների փոխանակման համար:

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ
## (20 հունվար 801 – 9 հունվար 802)

Այդ տարում չեղավ ամառային արշավանք [դեպի Ռում]:

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
## (30 դեկտեմբեր 802 – 19 դեկտեմբեր 803)

Էջ 458

Այդ տարում հավատացյալ իշխան Հարունը իր որդուն՝ ալ-Կասիմին ամառային արշավանքի ուղարկեց, նրա հետ առաքելով Աբդ ալ-Մալիք իբն Սալիհին և Սահմանային ամրությունների գոտու (Սուղուր) ռազմիկներին (մարդկանց): Նա մտավ Սաֆսաֆի լեռնանցքը, մինչև որ հասավ Կուռա: Նիկեփորը (Նիկիֆուր)[83] նրա մոտ մարդ ուղարկեց առաջարկելով, որ եթե հեռանա, ինքը նրան երեք հարյուր քսան մահմեդական գերի կտա: Այդպես էլ արեց և նա (Կասիմը) հեռացավ:

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
## (8 դեկտեմբեր 804 – 26 նոյեմբեր 805)

*Էջ 458*

*Այդ տարում [Ռումի] բռնակալը (Թաղիա) արշավեց Անսրղարա[84] (Այն Զարբա), Քանիսա ալ-Սաուդա[85] (Սև եկեղեցի) և Աղանա:*

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ
## (27 նոյեմբեր 805 – 16 նոյեմբեր 806)

*Էջ 459*

*Այդ տարում Հավատացելոց իշխան [Հարունը] արշավեց Ռումի երկիրը և իր զորավարներին ցրեց տարբեր ուղղություններով:*

*Հավատացելոց իշխանը կանգ առավ Տիանայում (Թուանա), իսկ [Ռումի] բռնակալը առաջարկեց նրան հեռանալ՝ խոստանալով դրամական գումար: Նա (Հարունը) մերժեց ու պահանջեց միայն գերիների ազատ արձակում, գլխահարկի (ջիզիա) վճարում իր (կայսեր) գլխի ու որդու գլխի համար: Եվ նա (կայսրը) երեսուն հազար դինար (ոսկեդրամ) գլխահարկ առաքեց:*

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
## (6 նոյեմբեր 807 – 24 հոկտեմբեր 808)

*Էջ 460*

*Այդ տարում խուռամիները ապստամբեցին Ջիբալ [նահանգում] և Հավատացելոց իշխան Հարունը արշավանքի ուղարկեց Խուզայմա իբն Խազիմին, որը կոտորեց ու գերեվարեց:*

## ՀԱՎԱՏԱՑԵԼՈՑ ԻՇԽԱՆ [ՀԱՐՈՒՆԻ] ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԸ

*Էջ 463*

*Ջազիրա – Հարունի կողմից նշանակված կառավարիչներն էին՝ Մուհամմադ իբն Խալիդ իբն Բարմաք, Մուհամմադ իբն Իբրահիմ, Խուզայմա իբն Խազիմ, Յազիդ իբն Մազիադ, Սուլայման իբն Աբու Ջաաֆար և Մուհամմադ իբն Ջամիլ: Խուզայմա իբն Խազիմը երկրորդ կառավարչության շրջան ունեցավ մինչև Հարունի մահը:*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ
(11 մարտ 829 – 27 փետրվար 830)

*էջ 474*

*Այդ տարում խուռամիների կողմից սպանվեց Իբն Հումայդ ալ-Թուսին, որը [խալիֆայի] զորքի հրամանատարն էր:*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ
(16 հունվար 834 – 4 հունվար 835)

*էջ 476*

*Այդ տարում ծաթերը[86] (ալ-զութթ) դուրս բերվեցին Բաթիհայից Բաղդադ Ուջայֆի ձեռքով:*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆ ԹՎԱԿԱՆ
(5 հունվար – 25 դեկտեմբեր 835)

*Այդ տարում Հասան իբն Մուսաարը արշավեց Ռումի երկիրը, սակայն պարտվեց, փախուստի մատնվեց ու նրա ամբողջ զորքը գերի ընկավ:*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ
(14 դեկտեմբեր 836 – 2 դեկտեմբեր 837)

*էջ 477*

*Այդ տարում տեղի ունեցավ Աֆշինի ճակատամարտը անհավատ (քաֆիր) Բաբեկի հետ, որին նա հաղթեց ու սպանեց իր երկրում: Նրա զորքը գերի վերցրեց և դուրս բերեց նրա երկրում եղած բոլոր մահմեդական գերիներին: Բաբեկը փախավ, իսկ նա (Աֆշինը) գերի բռնեց նրան և հաղթանակի մասին գրեց հավատացյալների իշխանին:*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ
(3 դեկտեմբեր 837 – 22 նոյեմբեր 838)

*էջ 477*

*Երկու հարյուր քսաներեք թվականին հավատացյալների իշխան Աբու*

*Իսհակ ալ-Մուտասիմ Բիլլահը մեծ բազմությամբ ներխուժեց Ռումի երկիրը: Աֆշին Հայդար իբն Քաուսը եկավ ու բախվեց [Ռումի] բռնակալի հետ մի վայրում, որը կոչվում է Լուբլա՝ նրանից երկու մղոն հեռավորության վրա: Նա (Աֆշինը) պարտության մատնեց նրան ու կոտորեց նրա զինակիցներից չորս հազար հոգու:*

*Հավատացյալոց իշխանը գնաց ու պաշարեց Ամորիոնը (Ամմուրիյա): Աֆշինը հասավ նրա ետևից և հավատացյալոց իշխանը բռնի ուժով գրավեց այն երեքշաբթի օրը Ռամադան ամսից տասներեք օր մնացած (12 օգոստոս 838): Նա մեծ կոտորած սարքեց և մեծ թվով գերեվարեց, քաղաքը կործանեց ու ավերեց: Մինչ այդ, գեռ Ամորիոն չհասած, հավատացյալոց իշխանը քանդել էր իր անցած բոլոր գյուղերը և հոռոմները ամեն կողմ փախել էին:*

*Այդ տարում կործանվեց Անկարան, ապա հավատացյալոց իշխանը վերադարձավ շաբաթ օրը, Ռամազան ամսից ինն օր մնացած (16 օգոստոս 838): Նա չորս հազար հոգու գլխատել տվեց և այսպես իր ընթացքի ժամանակ անընդհատ կոտորում էր գերիներին ու վառում ամեն ինչ, մինչև որ հասավ իսլամի երկիրը:*

*Այդ տարում հավատացյալոց իշխանը գերի վերցնելով անհավատ Բաբեկին, հրամայեց կտրել ձեռքերն ու ոտքերը, ապա գլխատել տվեց ու խաչեց նրան: Դա կատարվեց երկու հարյուր քսաներեք թվականի Սաֆար ամսին (2–30 հունվար 838):*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
**(7 սեպտեմբեր 845 – 27 օգոստոս 846)**

*էջ 480*

*Այդ տարում գերիների փոխանակում եղավ Ռումի երկրում: Այդ [արարողության] ղեկավարն էր Ահմադ իբն Սաիդ իբն Մուսլիմ ալ-Բահիլին: Մահմեդականներից մոտավորապես չորս հազար վեց հարյուր մարդ, նույնքան էլ կանայք ու երեխաներ փոխանակվեցին:*

## ԽԱԼԻՖԱ ԻԲՆ ԽԱՅՅԱԹ

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ
## (ՏԱՐԻԽ)

### ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Յարմուք – 636 թվականի օգոստոսի 20-ին, Ասորիքի Հարավում, Բուսրա քաղաքից ոչ Հեռու, Յարմուք գետի (Հորդանան գետի վտակ) ափին տեղի ունեցավ վճռական ճակատամարտ բյուզանդական ու արաբական բանակների միջև: Կայսերական բանակը գլխովին ջախջախվեց: Դրանով իսկ վճռվեց Ասորիքի ճակատագիրը, որը բյուզանդացիք, փաստորեն, ընդմիշտ կորցրին (եթե նկատի չունենանք Ժ-ԺԱ դարերում Անտիոքի և որոշ Հյուսիս-արևմտյան շրջանների վերանվաճումը): Կորցնելով իր ամենահարուստ նահանգներից մեկը, Հերակլ կայսրը բացականչեց «Մնաս բարով, ով Սիրիա, և ինչպիսի Հրաշալի երկիր ենք թողնում թշնամուն»: (Hitti, History of the Arabs, pp. 152-154):*

[2] *Սակելլարիոս – Խոսքը Հերակլիոս կայսեր եղբոր՝ Թեոդորոս սակելլարիոսի (կայսերական գանձապետ) մասին է, որը մեծաթիվ զորքով ուղարկվեց Դամասկոսի կողմերը արաբների առաջխաղացումը կանգնեցնելու Համար, բայց ծանր պարտություն կրեց Յարմուքի ճակատամարտում: (Տե՛ս Թեոփանես Խոստովանող, էջ 46):*

[3] *Հերակլ – Հերակլը կամ Հերակլիոսը (575-641) Բյուզանդիայի կայսրն է եղել 610-641 թվականներին: Նա իշխանության է եկել կայսրության ներքին ու արտաքին ճգնաժամի պահին: Հերակլիոսին Հաջողվել է վերակազմակերպել բանակը և կարգավորել կայսրության ներքին կյանքը, որի Հետևանքով Բյուզանդիայի դիրքերը ժամանակավորապես ամրապնդվեցին: 626 թվականին նա ջախջախեց ավարներին, իսկ 627-628 թվականներին՝ իր գլխավոր Հակառակորդ Սասանյաններին՝ նրանց ձեռքից ետ խլելով բյուզանդական տիրույթները Ասիայում և Եգիպտոսում: Սակայն նույն այս կայսրի օրոք էր, որ Բյուզանդիան ծանր պարտություն կրեց արաբներից, կորցնելով Միջագետքը, Սիրիան, Պաղեստինն ու Եգիպտոսը: Հերակլիոսի օրոք էր, որ Հունարենը վերջնականապես դուրս մղեց լատիներենը որպես պետության ու եկեղեցու պաշտոնական լեզու: (*Сов. Ист. Энц., т. 6, стр. 212*):*

[4] *ՎաՀան – Սա Հայ զորավար էր բյուզանդական բանակում, որի մասին Հիշատակում է նաև Թեոփանես խոստովանողը: Հետաքրքիր տեղեկություն է Հաղորդում Թեոփանես Խոստովանողը այս զորավարի մասին «Սակելլարիոսի զորքը պարտություն է կրում: ՎաՀանի զորքերն ապստամբություն բարձրացնելով, ՎաՀանին կայսր են Հռչակում, իսկ Հերակլիոսին՝ գահընկեց Հայտարարում»: (Տե՛ս Թեոփանես Խոստովանող, էջ 46-47): Հետաքրքիր է, որ եթե բյուզանդացի Հեղինակները որպես բյուզանդական բանակի Հրամանատարներ Հիշատակում են ներքինի Թեոդորոսին և ՎաՀանին, ապա արաբ մատենագիրները Յարմուքում կռվող կայսերական բանակի Հրամանատար են Համարում ՎաՀանին և միայն երբեմն Հիշատակում Սակելլարիոսին(այսինքն Թեոդորոսին): (*Большаков, Ист. халифата, т. 2, стр. 55*):*

[5] *Փարսախ – Մեկ փարսախը (պարասանգ) կազմված է 3 մղոնից, այսինքն երկու փարսախը կլորացված ձևով Հավասար է 6 կմ-ի (*Хинц, Меры и веса, стр. 72*):*

[6] *Բաբիլոն (Եգիպտոսի) – կամ Բաբելոն քաղաքը Եգիպտոսում: Ենթադրվում է, որ Հին եգիպտական Pi-Hapi-n-On անվանումը Հույների կողմից աղավաղվելով և նմանեցվելով իրենց արդեն Հայտնի քաղաքի (Միջագետքում) անվանը կոչվել է*

Բաբելոն: Այն գտնվում է Վերին և Ստորին Եգիպտոսի սահմանագլխին: Արաբական նվաճման ժամանակ Բաբելոնի անկումը կարևոր նշանակություն ունեցավ ամբողջ Եգիպտոսի նվաճման համար: Նրանից ոչ հեռու հիմնվեց Ֆուստաթ ռազմական ճամբարը (հետագայում քաղաք), իսկ ավելի ուշ՝ Կահիրեն: Ժամանակի ընթացքում Բաբելոնի և Ֆուստաթի միջև սահմանները ջնջվեցին, իսկ Բաբելոն անվանումը շարունակեցին գործածել միայն ղպտիները: Հետագայում արևմտյան որոշ հեղինակներ Բաբելոն, կամ Բաբիլոնիա ասելով նկատի ունեին Կահիրե քաղաքը:

Տվյալ դեպքում արաբական «Բաբալյուն» ձևը օգտագործված է կրճատ «Ալյուն» ձևով: (Babalyun, C. H. Becker, EOI, CD-ROM, (I: 844b)):

[7] Անթաբուլս – Բարկա քաղաքը Հյուսիսային Աֆրիկայի Կիրենաիկա երկրամասում: Տե՛ս նաև ծնթգր. 9:

[8] Մուկաուկիս – Այն անձը, որ արաբական ավանդության մեջ հիշատակված է որպես ղպտիների ու հույների ղեկավար Եգիպտոսի նվաճման ժամանակ:

Ներկայումս ընդունված է, որ Մուկաուկիս կոչվածը Ալեքսանդրիայի մելքիտ պատրիարք Կյուրոսն է, թեև արաբ պատմիչները Մուկաուկիս ասելով նկատի են ունեցել ոչ միայն նրան, այլև այլ անձանց: Բազմաթիվ փորձեր են արվել վերծանելու այս տարօրինակ բառը: Դրանցից մեկը հետևյալն է, քանի որ Կյուրոս պատրիարքը նախքան Եգիպտոս ուղարկվելը Փասիսի (Կողքիս, Կոլխիդա) եպիսկոպոսն էր, ուստի երբ նրան նշանակեցին Ալեքսանդրիա, տեղական ժողովուրդը նրան կոչեց «կովկասցի» կամ «կողքիսցի», որը իր հերթին արաբական ձև ստանալով դարձավ ալ-Մուկաուկիս: (al-Mukawkis, K. Ohrnberg, EOI, CD-ROM, (VII: 511a)):

[9] Բարկա – Արաբ հեղինակներն այսպես են կոչում թե՛ քաղաքը որ այժմ կոչվում է ալ-Մարջ և թե՛ ողջ Կիրենաիկա երկրամասը: Դա մի թերակղզի է, որը խորանում է Միջերկրական ծովի մեջ, բաժանելով Եգիպտոսը Մաղրիբից: ( Barka, J. Despois, EOI, CD-ROM, (I: 1048 b)): Տե՛ս ծնթգր. 7:

[10] Հաբիբ իբն Մասլամա– Մուավիայի զորավարներից էր: Ծնվել է Մեքքայում մոտ. 617-ին Կուրայշ ցեղին պատկանող Ֆիհրի տոհմում: Նա մասնակցել Ասորիքի նվաճմանը և հռչակավոր դարձավ բյուզանդացիների դեմ պայքարում: Մուավիայի հրամանով նա նվաճեց Հայաստանը 654 թ.-ին, ապա դարձավ Հյուսիսային Ասորիքի կառավարիչ և պայքարեց ընդդեմ Մարդաիտների (Ջարաջիմա) և բյուզանդացիների: Օսման խալիֆայի մահից հետո նա պաշտպանեց Մուավիային ընդդեմ Ալիի: Սիֆֆինի ճակատամարտում Հաբիբը ղեկավարում էր սիրիական բանակի ձախ թևը: Այս հանդես եկավ որպես Մուավիայի ներկայացուցիչ Ալիի հետ բանակցություններում: Հաբիբ իբն Մասլաման մահացավ 662-ին, կամ մի քանի տարի անց՝ չբոլորած 50 տարին (Habib ibn Maslama, J. W. Fuck, EOI, CD-ROM, (III: 12b)):

[11] Ներքինի Մանուել (Մանուիլ) – Մանուել Հայկազնը Հերակլ կայսեր զորավարն էր, որը առաջնորդեց բյուզանդական զորքերը դեպի Եգիպտոս՝ արաբների դեմ: Նրա մասին հիշատակում է Միքայել Ասորին: (Տե՛ս Իբն ալ-Ասիր, էջ 368):

[12] Պարտավ (Բարդաա) – Քաղաք Մեծ Հայքի Ուտիք աշխարհի Ուտի Առանձնակ գավառում, ժամանակակից Բարդա քաղաքից 5-6 կմ հս-արմ.: Արաբական տիրապետության շրջանում եղել է Արմինիա նահանգի երկրորդ կենտրոնը Դվինից հետո (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 319):

[13] Իսթախր – Քաղաք Ֆարս նահանգում: Բուն անունը պահլավերեն Ստախր, հայերեն Ստահր: (Istakhr, M. Streck [ G. C. Miles], EOI, CD-ROM, (IV: 219b)):

[14] Բալանջար – Խազարական կարևոր քաղաքներից մեկը համանուն գետի վրա: Գտնվում էր Դարբանդից, կամ Բաբ ալ-Աբուաբից հյուսիս: Ըստ Մասուդիի Բալանջարը Խազարների մայրաքաղաքն էր մինչև Աթիլը: Բալանջարը հաճախ ենթարկվում էր հարձակումների արաբախազարական պատերազմների ժամանակ

(Balandjar, D. M. Dunlop, EOI, CD-ROM, (I: 985a)):

[15] Բայլական – Քաղաք Մեծ Հայքի Փայտակարան աշխարհում, վերջինիս կենտրոնը: Եղել է թագավորանիստ, քարաշեն և պարսպապատ քաղաք: (ՀՀՇՏԲ. Հ. 5, էջ 230):

[16] Հիզան – Քաղաք կամ գավառ Բիթլիսի նահանգում (ՀՀՇՏԲ. Հ. 3, էջ 412-413):

[17] Մաղրութը – Քաղաք և երկրամաս Կասպից ծովի ափին, Շապորանից հյուսիս և Դարբանդից (Բաբ ալ-Աբուաբ) հարավ:

[18] Հաղասի լեռնանցք – Լեռնանցք Հաղասս բերդաքաղաքի մոտ: Հաղասր կամ Հադաթը բերդաքաղաք է Լեռնային Կիլիկիայում, Մարաշի գավառի հս-արլ կողմում, Այնթապից Մալաթիա տանող ճանապարհի վրա:

[19] Մասիսա կամ Մասսիսա – Դաշտային Կիլիկիայի Մսիս, Մամեստիա կամ Մոպսուեստիա քաղաքն է:

[20] Մալաթիա – Քաղաք Փոքր Հայքում, Եփրատի աջ ափում: (ՀՀՇՏԲ, Հ. 3, էջ 636):

[21] Մուհամմադ իբն Մարուան – Խալիֆայության հյուսիսային երկրամասի (Արմինիա, Ատրպատական, Ջազիրա), ինչպես նաև սահմանային գոտու (Սուղուր) փոխարքա 693-709 թթ.: Ձևականորեն իշխեց 693-ից: Նա իրականացրեց Հայաստանի և հարակից երկրների նվաճումը: Ըստ էության, կանոնավոր կերպով իշխել սկսեց 701 թ.: (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[22] Աբդ ալ-Մալիք – Աբդ ալ-Մալիքը Օմայան դարաշրջանի հինգերորդ խալիֆան էր: Իշխել է 685-705 թթ.: Ծնվել է հիջրայի 26 (646-647) թվականին: (Abd al-Malik ibn Marwan, H. A. R. Gibb, EOI, CD-ROM, (I: 76a)):

[23] Նարիհ իբն Աբդալլահ ալ-Անազի – Սա հավանաբար Հայաստանի կառավարիչ Աբդալլահն է, որի մասին հիշատակում են հայկական աղբյուրները՝ Հովհաննես կաթ. Դրասխանակերտցի, Ասողիկ: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[24] Աբու Շայխ իբն Աբդալլահ ալ-Ղանավի – Արմինիայի կառավարիչն է (հիշատակում է Իբն ալ-Ասիրը), որը կառավարեց 701-703 թթ.: Նրան սպանեցին հայերը 703 թ. ապստամբության ժամանակ: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[25] Ամր իբն ալ-Սադի (Սադա) ալ-Ղանավի – Այլ աղբյուրներում որպես կառավարիչ հիշատակվում է միայն Աբու Շայխ իբն Աբդալլահը, իսկ Խալիֆա իբն Խայաթի տեղեկությունից երևում է, որ այս երկուսը միասին են կառավարել և նույն ժամանակ էլ սպանվել են ապստամբների ձեռքով: (Վ. Տ.-Ղ.):

[26] Կրակի տարին (հարիկ) – 705 թվականը, երբ արաբները, հայ նախարարներին դավադրաբար լցնելով Նախճավանի ու Խրամի եկեղեցիները, հրկիզեցին, դրանով իսկ «պատժելով» 703-ի ապստամբության համար, արաբ պատմիչների կողմից հիշվում է որպես կրակի տարի (սանատ ալ-հարիկ):

[27] Աբդալլահ իբն Հատիմ իբն ալ-Նուման ալ-Բահիլի – Ըստ երևույթին նշանակվել է կառավարիչ, բայց, իր պարտականություններին չանցած, մահացել է: Նրա փոխարեն նշանակվել է եղբայրը՝ Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմ ալ-Բահիլին (705-709):

[28] Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմ – Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմ ալ-Բահիլին (705-709) ըստ Իբն Տաղրիբիրդիի նշանակվել է 85 հ. թ. (704). Ibn Taghribirdi, Ա, 209. սակայն ավելի հավանական է 705 թ.: Վերաշինեց արաբների կողմից ավերված Դվինը: Նրա ջանքերի շնորհիվ Հայաստան վերադարձան հայոց իշխան Սմբատ Բագրատունին և այլ նախարարներ. Ղևոնդ. 35, Ասողիկ. 125: (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[29] Սասուանա – Ամրոց Մամեստիայի կողմերում: (Իբն ալ-Ասիր, էջ 66):

[30] Մուսա իբն Նուսայր – Մուսա իբն Նուսայր Աբդ ալ-Ռահման իբն Զայդ ալ-Լախմին Արևմտյան Մաղրիբի ու Իսպանիայի նվաճողն է: Նա ծնվել է 640 թվականին:

Տարբեր պաշտոններ վարելուց հետո մոտավորապես 698 թվականին նա նշանակվում է Իֆրիկիայի կառավարիչ: Դրանից հետո Մուսան իր ենթակայության տակ գտնվող զինված ուժերով սկսեց մի փառավոր հաղթարշավ: Նախ նա ամրապնդեց արաբական նվաճումը Իֆրիկիայում, ապա նվաճեց Արևմտյան Մաղրիբը՝ իրեն ենթարկելով բերբերական ցեղերին: Այս նվաճումների ժամանակ Մուսայի մոտ զինակիցն ու զորավարն էր Թարիկը: Հենց վերջինս էլ արդեն նոր՝ Վալիդ խալիֆայի օրոք, 711 թվականին ներխուժեց Իսպանիա: Մի տարի անց Մուսան անձամբ մտավ Իսպանիա: Մինչև 714-ը Իսպանիայի մեծ մասը նվաճված էր ու միացված Խալիֆայությանը, իսկ վարչականորեն՝ ենթակա Մաղրիբին Մուսա իբն Նուսայրի գլխավորությամբ: Իսպանիայից վերադառնալով հսկայական ավարով Մուսան վերադարձավ Կայրուան և այստեղից շարունակեց իր ուղին դեպի Սիրիա, Դամասկոս: Մուսան հասավ մայրաքաղաք Վալիդ խալիֆայի մահանալուց անմիջապես առաջ: Այստեղ էլ 1-2 տարի անց նա վախճանվեց (Musa ibn Nusayr, C. Levi-Provencal, EOI, CD-ROM, (VII: 643b)).

[31] Վալիդ – Օմայան շրջանի հզոր խալիֆաներից մեկը, որը հաջորդելով Աբդ ալ-Մալիքին, իշխեց 705-715 թթ. էլ ավելի ընդարձակելով խալիֆայության սահմանները: Նրա օրոք ամենամեծ ձեռքբերումն, անկասկած, Իսպանիայի (Անդալուս) նվաճումն էր, որով արաբները, երկար ժամանակով, հաստատվեցին Եվրոպայում:

[32] Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նուման – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 28:

[33] Արդն (Արդան) – Զչփոթել Արդան ալ-Ռումի (Կարնո քաղաք) հետ: Արճեշ (Աղձնը) քաղաք և գավառ է Մեծ Հայքի Աղձնիք նահանգի հարավ-արևելյան մասում: Արդնը Բիթլիսի լեռնանցքով, կամ Զորա պահակով անցնող ճանապարհով կապվում էր Այրարատ նահանգի հետ: Արդն գավառը եղել է Աղձնիքի ղեկավարության կենտրոնը: (Տե՛ս Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 1, էջ 257):

[34] Դարբանդ – Բաբ ալ-Աբուաբ, Դռների Դուռը: Հսկա ամրություններ կառուցված կովկասյան լեռների և Կասպից ծովի միջև եղած անցուղու վրա պաշտպանվելու համար հյուսիսի ցեղերի հարձակումներից: Այս ամրությունները կառուցված էին դեռևս Սասանյանների օրոք: Ավանդաբար դրա կառուցումը վերագրվում էր Խոսրով Անուշիրվանին (6-րդ դար): Հետագայում չափազանց կարևոր նշանակություն ստացավ Արաբական խալիֆայության օրոք, մանավանդ Խազարների դեմ պայքարում: (Bab al-Abwab, D. M. Dunlop, EOI, CD-ROM, ( I: 835b)):

[35] Թարիկ – Թարիկ իբն Զիյադը ազգությամբ բերբեր մի զորավար էր, որի հրամանատարությամբ Խալիֆայության զորքերը սկիզբ դրեցին Իբերական թերակղզու նվաճմանը (711 թ.): Մինչ այդ նա Տանժերի կառավարիչն էր նշանակված Իֆրիկիայի նահանգապետ Մուսա իբն Նուսայրի կողմից: Օգտագործելով այդ ժամանակ Իբերական թերակղզում իշխող Վեստգոթերի թագավորության ներքին թուլությունն ու կենտրոնախույս տրամադրություններ ունեցող իշխաններին, Թարիկը 4 նավերով մի քանի անգամ գնալ-գալով իր մոտ 12000 զինվորներով, անցավ նվաճման: Թարիկը իր զորքի հետ ափ դուրս եկավ մի լեռան ստորոտի մոտ, որն այնուհետև սկսեց կրել Ջաբալ Թարիկ (աղավաղված Ջիբրալթար), այսինքն «Թարիկի լեռ» անունը, նույն անվանումը տալով նաև Նեղուցին:

[36] Շիրվան – Քաղաք էր Բուն Աղվանքի և Կասպից ծովի միջև: Սկսած Թ դարից Նիրվան, կամ Շարուան անունը տրվեց մերձկասպյան շրջանները ընդգրկող ողջ երկրամասին, որն իր հերթին մտնում էր Խալիֆայության Արմինիա նահանգի (ոստիկանության) մեջ, կազմելով Առաջին Արմինիան (Աղվանքի և Դարբանդի հետ միասին):

[37] Ջումրանը, Բառանը և Զողը ( Սուլ) – քաղաքներ էին Շիրվանի ու Դարբանդի միջև:

[38] Սուլայման իբն Աբդ ալ-Մալիք խալիֆան – Օմայան դինաստիայի 7-րդ խալիֆան (715-717) որդին էր Աբդ ալ-Մալիք իբն Մարուան խալիֆայի և հաջորդեց իր եղ-

րորդ՝ Վալիդին: Իր եղբոր՝ Վալիդի խալիֆայության օրոք, Սուլայմանը Պաղեստինի կառավարիչն էր և աշխատում էր զարգացնել Ռամլան, այն դարձնելով Պաղեստինի նոր մայրաքաղաք: Նա որոշակի հակասությունների մեջ էր փոխարքա Հաջջաջի և հենց խալիֆայի՝ Վալիդի հետ: Եղբոր մահից հետո նա բազմեց գահին: Սուլայմանը շատ կարճ իշխեց և նրա քաղաքականությունը չէր տարբերվում իր նախորդներից: Նրա օրոք տեղի ունեցած կարևոր իրադարձություններից էր Բյուզանդիայի դեմ մեծ արշավանքը, որի ժամանակ թեև առանց հաջողության, բայց պաշարման ենթարկվեց Կոստանդնուպոլիսը: (Sulayman ibn Abd al-Malik. R. Eisener, EOI. CD-ROM. (IX: 821a)):

[39] Ջուրջան – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 9:

[40] Դայլամ – Դայլամները կամ Դեյլեմիկները հին ժողովուրդ են, որոնց մասին հիշատակում են անտիկ հեղինակները: Բնակվում էին հիմնականում Կասպից ծովի հարավային ափերին՝ Իրանի հյուսիսում: Դեյլեմիկները հատուկ աշխուժություն ցուցաբերեցին Ժ դարում, կռվելով տարբեր տիրակալների համար: Դայլամից են ծագում իրանական Զիյարի (927–1090), Սալարյան, կամ Մուսաֆիրի (916–1090) և Բուի, կամ Բուվայհի (935–1055) տոհմերը, որոնք պետություններ կազմեցին Իրանի հյուսիսային և հարավային շրջաններում: ((Daylam, V. Minorsky, EOI, CD-ROM. (II: 189b) և Իբն ալ-Ասիր, էջ 386):

[41] Խալիջ – Հավանաբար նկատի ունի Մարմարա ծովը (Վ. Տ.-Ղ.):

[42] Սակալիբա – Սակլաբ բառի հոգնակին, որ արաբական աղբյուրներում նշանակում է սլավոն, ինչպես նաև Հյուսիսային Եվրոպայի բնակիչ: Քանի որ պավոնական երկրներից շատ ստրուկներ տարվեցին Խալիֆայություն, մանավանդ Մահմեդական Իսպանիա (Անդալուս) Սակալիբա բառը սկսեց գործածվել «ռազմիկ ստրուկներ» կամ «սպիտակամորթ ստրուկներ» իմաստով, նույն իմաստով ինչպես թյուրք ռազմիկները Աբբասյան խալիֆայությունում (al-Sakaliba (VIII: 872b). EOI. CD-ROM. P. Guichard, Mohamed Meouak, ինչպես նաև Իբն ալ-Ասիր, էջ 383):

Տվյալ դեպքում օգտագործված է իր բուն՝ «սլավոններ» իմաստով:

[43] Բուրջան – Դանուբյան Բուլղարիան:

[44] Խազարներ – Վաչկատուն ժողովուրդ, որ բնակվում էր հարավռուսական տափաստաններում: Թյուրքական ծագումով այս ժողովուրդը վերոհիշյալ տարածքներում հայտնվում է 6-րդ դարում Կենտրոնական և Միջին Ասիայից տարբեր ցեղերի գաղթերի հետևանքով: Իրականում դա տարբեր այլթյական ծագում ունեցող ցեղերի՝ հոներ, սարիրներ, օղուրներ, թյուրքեր, մի կոնֆեդերացիա էր: Այս բոլորին միասին կոչում էին խազարներ, իսկ երբեմն էլ դրա փոխարեն օգտագործում էին թյուրքեր տերմինը: Մինչև այժմ էլ հայտնի չէ, թե արդյո՞ք գոյություն է ունեցել խազար անունով ցեղ: Ամեն դեպքում այսպես կոչված արևմտյան թյուրքերը «խազարներ» անունով հանդես են գալիս 7-րդ դարի առաջին տասնամյակներին, պարսկաբյուզանդական պատերազմների ընթացքում: Այդ ժամանակ նրանք Բյուզանդիայի դաշնակիցներն էին՝ ամայացնելով Սասանյան տիրույթները Անդրկովկասում: Նույն 7-րդ դարում առաջացան երկու թյուրքական պետություններ՝ Խազարական խաքանությունը և Բուլղար-Օնողուր պետությունը: Այս երկուսի միջև առաջացած բախումից հաղթող դուրս եկան խազարները, իսկ բուլղարները գաղթեցին հիմնականում երեք ուղղությամբ: Մի մասը շարժվելով դեպի հյուսիս, հիմնեց Վոլգա-Կամայի Բուլղարների պետությունը, մյուս մասը Ասպարուխի գլխավորությամբ ներխուժեց Բալկաններ, հիմնելով Դանուբյան Բուլղարիան, իսկ մի մասն էլ մնաց խազարական տիրապետության տակ, սրանց հետնորդները հետագայում հաստատվեցին Հյուսիսային Կովկասում (Բալկարիա): Դրանից հետո խազարները դարձան տեր ու տիրական Հյուսիսային Կովկասի ու Վոլգայի հարավային ավազանի անծայրածիր տարածքներում: Նրանց միակ լուրջ հակառակորդը Արաբական խալիֆայությունն էր, որի հետ դաժան պայքար ծավալվեց 7–8-րդ

դարերում (Khazar, W. Barthold, P. B. Golden, EOI, CD-ROM, (IV: 1172a)):
45 Օմար խալիֆա - Տե՛ս Արու Յուսուֆ, ծնթգր. 1:
46 Արդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նումանը – Տե՛ս ծնթգր. 28-ը:
47 Ազի իբն Ազի - Ազի իբն Ազի իբն Ամիրա (կամ Ումայրա) ալ-Քինդին կառավարիչ է եղել 715-717 թվականներին: Նրան նշանակեց Սուլայման խալիֆան. Beladsori, 205: (Տեր-Ղեոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):
48 Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամ - Արմինիայի և Ատրպատականի փոխարքա է նշանակվել երկու անգամ 722-725 և 729-730 թվականներին: Փոխարքա դառնալով պայքար սկսեց խազարների դեմ: Սպանվեց 730 թվականին: (Տեր-Ղեոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):
49 Յազիդ խալիֆա - Յազիդ (Եզիդ) Բ -ը Օմայան դինաստիայի խալիֆա է, որ իշխել է 720-724 թվականներին:
50 Միլաք իբն Աաֆֆար – Միլաք իբն Սաֆար ալ-Բահրանին իշխել է շատ կարճ 721 թվականին: (Տեր-Ղեոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):
51 Խաքան – Նախապես կաղան, կամ խաղան: Այս տիտղոսը, որ նշանակում է կառավարող, կամ գերագույն կառավարող, թյուրքերը փոխ առան Ավարներից կամ Հեփթաղներից: Այսպես էր կոչվում խազարների, կամ, որ նույնն է, թյուրքական տարրեր ցեղերի կոնֆեդերացիայի առաջնորդը (Khakan, J. A. Boyle, EOI, CD-ROM, (IV: 915a)):
52 Վարդանակերտ (Վարսան) - Քաղաք Փայտակարանում՝ Արաքս գետի աջ կողմում, նախքան վերջինիս Կուրի հետ խառնվելը: Մյուս Վարդանակերտը գտնվում է Այրարատում, ուր ապստամբ հայերը 703-ին հաղթեցին իրենց հետապնդող արաբական կայազորին: Արար մատենագիրները գիտեն միայն Փայտակարանի Վարդանակերտը, որը գտնվում էր Արաքսից հարավ: (ՀՀՇՏԲ, Հ. 4, էջ 776 և Իբն ալ-Ասիր, էջ 373):
53 Ալանաց երկիր - Արաբերեն սովորաբար հիշատակվում է Ալ-Լան ձևով: Իրանական մի ժողովուրդ, որը հանդիսանում է ներկայիս օսերի նախնին: Սրանք հիշատակվում են առաջին դարից: 371 թվականին ալանները պարտվում են հոներից և նրանց մի մասը վանդալների հետ միասին գաղթում է դեպի արևմուտք, կտրել անցնելով Ֆրանսիան, Իսպանիան, վերջապես մասնակցելով Հյուսիսային Աֆրիկայում վանդալների թագավորության ստեղծմանը: Իսկ տեղում (Հյուս. Կովկաս) մնացած ալանները իրենց հարևանների՝ բուլղարների, թյուրքերի ու խազարների ճնշման տակ դաշտային մասերից տեղափոխվում են լեռները, մոտավորապես այն տարածքը, որտեղ այսօր գոյություն ունի Օսեթիան: (Alan, W. Barthold, V. Minorsky, EOI, CD-ROM, (I: 354a)):
54 Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամի – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 48:
55 Ալանաց դռների - Արար. Բար ալ-Լան կամ Բար Ալլան, Դուռն Ալանաց, պարսկ. Դար-ի Ալան, ներկայիս Դարիալի կիրճը՝ Կովկասյան լեռների միջին մասում: Բար ալ-Աբուարի (Դարբանդ) հետ միասին այս լեռնանցքը ևս արաբների համար կարևոր նշանակություն ուներ խազարների դեմ պայքարում (Bab al-Lan, D. M. Dunlop, EOI, CD-ROM, (I: 837a)):
56 Հարիս իբն Ամր ալ-Թաի – Արմինիայի կառավարիչ 724-725 թվականներին: Յազիդ (Եզիդ) խալիֆայի նշանակած վերջին ոստիկանն էր Արմինիայում. Beladsori, 206: Ըստ Կաղանկատվացու հերթը (Հարիսը) նշանակվեց հայոց 174 թ. ձմռանը (725) և անցկացրեց հայտնի աշխարհագիրը. Մովսես Կաղանկատվացի, 258, Ղևոնդ, 100: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):
57 Թոխարիստան – Սա մի երկիր է որի տարածքն ընդգրկում է ներկայիս Աֆղանստանի Ֆարյար, Ջուզջան, Բալխ, Սանանդան, Կունդուզ, Թախար և Բադախշան նահանգները: Սրանց լեզուն պատկանում էր հնդիրանական լեզվախմբին: Արաբները դժվարությամբ նվաճեցին այս երկիրը(Tukharistan, W. Barthold - [C. E. Bosworth], EOI, CD-ROM, (X: 600b)):

58 Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք – Օմայան դինաստիայի տասներորդ խալիֆան, որը իշխել է 724-743 թվականներին: Նա հաջորդեց իր ավագ եղբայրներին (Վալիդ, Սուլայման, Յազիդ Բ) և իշխեց ավելի երկար: Նրա օրոք ամրապնդվեցին նվաճումներն արևելքում, կատաղի պայքար ծավալվեց խազարների դեմ, մեկ անգամ ևս պաշարման ենթարկվեց Կոստանդնուպոլիսը: Միաժամանակ արաբները պարտություններ կրեցին բյուզանդացիներից, ապստամբական տրամադրություններ կային Մաղրիբում, սկսեցին նկատվել Օմայան պետության քայքայման նախանշանները: (Hisham, F. Gabrieli, EOI, CD-ROM, (III: 493a)):

59 Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 46:

60 Արդաբիլ – Արդաբիլը քաղաք և գավառ է Ատրպատականում: Արաբական նվաճումից հետո այն դարձավ կարևոր կենտրոն և կառավարչի նստավայրը մերթ հաստատվում էր Մարաղայում, մերթ Արդաբիլում: (Ardabil, R. N. Frye, EOI, CD-ROM, (I: 625a)):

61 Մարջ Արդաբիլ – Արդաբիլի դաշտը:

62 Աֆլաջունիա (Պաֆլագոնիա)- Փոքր Ասիայի հյուսիսային երկրամասը, որի ափը ողողում է Սև ծովը:

63 Բաբ ալ-Սարիր (Գահի դուռը) ամրոց – Սարիրը մի խոշոր երկրամաս էր և ավատական իշխանություն Հյուսիսային Կովկասում, Դարբանդից դեպի հյուսիս-արևմուտք, որը, հարևան իշխանությունների հետ մեկտեղ գտնվում էր Խազարական պետության ենթակայության տակ: Իսկ հիշատակված ամրոցը, հավանաբար, Սարիրի իշխանության կենտրոնն էր:

64 Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալի – Նշանակվել է կառավարիչ 744 թվականին. նույն տարում սպանվել է: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

65 Աբու-լ-Աբբաս խալիֆա – Առաջին Աբբասյան խալիֆան (750–754): Քուֆայի մեծ մզկիթում խալիֆա հռչակվելուց հետո նրա առաջին խնդիրն էր լիակատար պարտության մատնել Օմայաններին: Նա հետապնդեց ու սպանեց Մարուան Բ-ին, ապա ճնշեց տարբեր տեղերում ծագած ըմբոստությունները: Օմայան ընտանիքի գրեթե բոլոր անդամները դաժանորեն ոչնչացվեցին: Աբու-լ-Աբբասը իր տոհմի ապստամբական շարժումը դարձրեց իրավացոր իշխանություն և հիմքերը դրեց այն պետության, որն իր վերջնական տեսքը պիտի ձեռք բերեր արդեն հաջորդ խալիֆայի՝ Մանսուրի օրոք (Abu l-Abbas al-Saffah, S. Moscati, EOI, CD-ROM, (I: 103b)):

66 Սաֆֆահ – Առաջին Աբբասյան խալիֆա Աբուլ-լ-Աբբասը կոչվում էր Սաֆֆահ, որը նշանակում է արյունարբու, որովհետև Աբբասյանների իշխանության հաստատումը իրականացավ հրի ու սրի միջոցով (Իբն ալ-Ասիր, էջ 374): Տե՛ս նաև ծնթգր. 65:

67 Քուսան – Հայազգի Քուշանը Չորրորդ Հայքի բնակիչներից էր, մասնակցել էր Բյուզանդիայի՝ արաբների դեմ մղած պատերազմներին: Նրա մասին խոսում են, թե՛ արաբ (Թաբարի, Իբն ալ-Ասիր), թե՛ ասորի (Դիոնիսիոս Տելլմահրեցի) պատմիչները: Ըստ Աճառյանի, սա հայկական Գուսան անունն է: Տե՛ս Հայոց անձնանունների բառարան, Ա, էջ 510: (Denys de Tell Mahre, p. 56. Տե՛ս Իբն ալ-Ասիր, էջ 374):

68 Չորրորդ Արմինիա – Չորրորդ Հայաստանը, այսինքն Չորրորդ Հայքը լավ ծանոթ է արաբներին: Մեծ Հայքի Ծոփք նահանգը այս անունն (Armenia Quarta) ստացավ Հուստինիանոս Ա կայսեր 536 թ. հրովարտակով: Արաբները հենց սկզբից մեծ ուշադրություն դարձրին այս նահանգի վրա Բյուզանդիայի դեմ պայքարում նրա ռազմագիտական կարևոր դիրքի պատճառով: Արաբական արշավանքների նախօրեին Չորրորդ Հայքի կաղմում էր Մարտիրոպոլիսը (Նփրկերտ): (Իբն ալ-Ասիր, էջ 367):

69 Զաբ – Տիգրիս գետի ձախակողմյան վտակը, Մեծ Զաբ:

70 Աբու Ջաաֆար – Աբու Ջաաֆար Աբդ Այլահ իբն Մուհամմադ իբն Ալի ալ-

*Մանսուրը Աբբասյան երկրորդ խալիֆան էր և իշխեց 754-775 թվականներին: Նա հաջորդեց իր եղբորը՝ Աբու լ-Աբբասին, որը նրան նշանակել էր որպես ժառանգորդ: Իր գահակալության առաջին տարիներին Աբու Ջաաֆարը հիմնականում զբաղված էր դահի թեկնածուների ու ապստամբական ուժերի դեմ պայքարելով: Դառնալով դրության տերը, Աբու Ջաաֆարը ծրագրեց ստեղծել մի ուժեղ և կենտրոնացված պետություն: Նրա մեծագույն իրագործումը նոր մայրաքաղաքի՝ Բաղդադի հիմնադրումն էր: Սկզբում այն, հիմնականում, ռազմական ու վարչական կենտրոն էր, բայց շատ շուտով վերածվեց խոշորագույն առևտրական կենտրոնի: Ներքին ու արտաքին հակառակորդների դեմ տարած հաղթանակների համար նա ստացավ ալ-Մանսուր, այսինքն «հաղթական» պատվանունը: (al-Mansur, H. Kennedy, EOI, CD-ROM, (VI: 427a)):*

71 *Աղանա ամրոց – Աղանա ամրոցը, կամ քաղաքը հնում կոչվել է «Անտիոքիա առ Սարոսիւ» ի պատիվ Անտիոքոսի, հետո «Մաքսիմյան Աղաննանք» ի պատիվ Մաքսիմիանոս կայսեր: Ե դարի երկրորդ կեսին ավան, կամ գյուղավան էր, Զ դարում Հուստինիանոսը նորոգեց քաղաքը և կառուցեց կամուրջ: Աղանան մասամբ վերաշինվեց 758 թվականին ալ-Մանսուր խալիֆայի կողմից և դարձավ լավ ամրացված ու բազմարնակ վայր: (Նալբանդյան, Արաբական աղբյուրներ, էջ 127):*

72 *Հասան իբն Կահթաբա – Արմինիայի կառավարիչ 771-775 թվականներին: Հիշվում է դրամների վրա, 154 (770-771), Առան 154, Արմինիա (771-772), Առան, 155: Բոլորի վրա հիշվում է Մահդի փոխարքայի հետ: Հիշված է նաև առանձին Բարդաա, 158 (774-775): Նրա օրոք ծագեց 774-775 թթ. մեծ ապստամբությունը Հայաստանում Մուշեղ Մամիկոնյանի գլխավորությամբ, Ղևոնդ, 137-152: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

74 *Կամախ (Քամախ) – Քաղաք և ամրոց Մեծ Հայքի Բարձր Հայք աշխարհի Դարանաղի գավառում, գտնվում է Արևմտյան Եփրատի ձախ ափին: (ՀՀԾՏԲ, հ. 2, էջ 913):*

75 *Ջայհան գետ – Ջեյհան, գետ Միջերկրական ծովի ավազանում, Կիլիկիայում:*

76 *Մուհամմարաներ – Մուհամմարաներ, կամ Մուհամմիրաները (կարմրազգեստներ) Բաբեկի Խուռամյաններն էին: Խուռամյաններին երբեմն կապում էին Մազդաքյան շարժման հետ, իսկ վերջիններիս կոչում կարմիր հագուստ կրողներ, արաբերեն «մուհամմիրա»: (Իբն ալ-Ասիր, էջ 380 և Mazdak, M. Guidi [M. Morony], EOI, CD-ROM, (VI: 949a)):*

77 *Հարուն – Հարուն իբն Մուհամմադ իբն Աբդ Ալլահ, կամ Հարուն ալ-Ռաշիդը Աբբասյան հինգերորդ խալիֆան է, որի անունը առավել հայտնի է որպես հեքիաթային անձնավորություն: Երիտասարդ տարիքում մասնակցելով բյուզանդացիների դեմ արշավանքների նա իրեն դրսևորեց որպես օժտված զորավար: Նրա ղեկավարությամբ Աբբասյան բանակը հասավ մինչև Բոսֆորի ափերը: 786 թվականին նա հռչակվեց խալիֆա: Հարունը մեծապես հենվում էր իր վեզիրի՝ Յահյա իբն Խալիդի և նրա երկու որդիների՝ ալ-Ֆադլի և Ջաաֆարի վրա: Պարսիկ Բարմաքյանների այս ընտանիքը հմուտ վարչարարությամբ 17 տարի կառավարեցին հսկա կայսրության տնտեսությունը: Այն բանից հետո, երբ 803 թվականին խալիֆան ոչնչացրեց այս ընտանիքը և հարքունիս գրավեց նրանց առասպելական հարստությունը, վեզիրների դերը պակասեց խալիֆայության մեջ: Հարունի գահակալությունը բոլորովին էլ այնպես անամպ չէր ինչպես մնացել է ժողովրդի հիշողության մեջ: Այն իրականում մշտական անհանգիստ քաղաքական վիճակների պատմություն է: Բավական է նշել, որ արդեն խալիֆայությունից անջատված Իսպանիայի Օմայան ամիրությունից բացի, հենց Հարունի օրոք, նախ Մաղրիբում անկախացան Իդրիսիները, ապա Իֆրիկիայում իրենց պետությունը ստեղծեցին Աղլաբիները: Մշտական անհանգիստ վիճակում էին նաև արևելյան նահանգները: Հարուն ալ-Ռաշիդի ձեռք բերած հռչակը կապվում է թերևս այն հանգամանքի հետ, որ նա չեշտում էր Աբբասյանների իշխանության*

կրոնական ընույթը և Հաղթական պատերազմներ սղեց Բյուզանդիայի դեմ: Պարտության մատնելով նախ Իրենե թագուհուն, ապա Նիկեփոր կայսեր, Հարունը ստիպեց վերջինիս ստորագրել ստորացուցիչ Հաշտություն: Իշխեց մինչև 809 թ: (Harun al-Rashid, F. Omar, EOI, CD-ROM, (III: 232b)):

78 Մահդի խալիֆա - Աբու Աբդ Ալլահ Մուհամմադը, կամ ալ-Մահդին Մանսուրխալիֆայի որդին էր և Աբբասյան թվով երրորդ խալիֆան: Նա գահին բազմեց 775 թվականին, Բաղդադում: Նա ևս, իր հոր նման, Հենվում էր խորասանյան բանակի վրա: Նա իր նախորդներից ավելի ընդգծում էր խալիֆայի դերը որպես իսլամի պաշտպան: Նրա այս կրոնապաշտության մի նշանն էլ իր պատվանունն է՝ ալ-Մահդի, որ նշանակում է մեսիա, փրկիչ: Մահդիի գահակալությունն Հիմնականում խաղաղության ու ծաղկման շրջան էր խալիֆայության Համար: Մահդին մահացավ 785 թվականին, որսի ժամանակ, մի պատահարի Հետևանքով: (al-Mahdi, H. Kennedy, EOI, CD-ROM, (V: 1238a)):

79 Ռաս ալ-Այն – Քաղաք Վերին Միջագետքում, Եդեսիայի շրջանում (ՀՀՇՏԲ, Հ. 4, էջ 439):

80 Սարրաթ – կամ Սարրադ. Տիգրիսի վտակներից մեկը, Հոսում էր Աբդն քաղաքի միջով:

81 Խլաթ (Խիլաթ) - Քաղաք և նավաՀանգիստ Բիթլիսի նաՀանգում, Վանա լճի արևմտյան ափին, Հնում Հիշատակվում է որպես Մեծ Հայքի Տուրուբերան աշխարՀի Բզնունիք գավառի բարգավաճ քաղաքներից մեկը: Խլաթը վարչական մեծ նշանակություն ստացավ է դարից, երբ այն Մամիկոնյանների նստավայրն էր: Այստեղ կար միջնաբերդ և Ը դարում արաբական կայազոր էր նստում: (ՀՀՇՏԲ, Հ. 2, էջ 737 և Իբն ալ-Ասիր, էջ 369):

82 Կիսսա - Նկատի ունի Իրենե կայսրուՀուն: Ապրել է 752-803 թթ.: Լևոն Դ կայսեր (775-780) կինն էր: Ամուսնու մաՀվանից Հետո եղավ խնամակալ, ապա նաև աթոռակից իր որդու՝ Կոնստանտին Զ-ին: Ապա կուրացրեց որդուն և ինքը դարձավ կայսրուՀի 792-802 թվականներին: Նրա օրոք Բյուզանդիան պարտվեց արաբներին ու բուլղարներին ու նրանց Հարկ էր վճարում: 802 թ. Կարլոս Մեծը ամուսնական առաջարկ արեց Իրենեին, նպատակ ունենալով միավորել երկու կայսրությունները, սակայն բանակցությունների ընթացքում Իրենեն գաՀընկեց արվեց: (Сов. Ист. Энц., т. 6, стр. 286-287):

83 Նիկիֆուր – Խոսքը Նիկեփոր կայսեր մասին է: Իշխանության գլուխ անցավ 802-ին Իրենե կայսրուՀու գաՀընկեցությունից Հետո: Արաբների դեմ անՀաջող պատերազմից Հետո, 806-ի Հաշտությամբ, ստիպված էր մի շարք քաղաքներ զիջել նրանց: Սպանվեց Բուլղարիայի դեմ պատերազմի ժամանակ: (Сов. Ист. Энц., т. 10, стр. 213).

84 Այն Զարբա - կամ Անազարբա. քաղաք է Կիլիկիայում: Բառը արաբերեն թարգմանվում է որպես «Հոսուն աղբյուր»: Հայերը այն անվանել են «Անաւարզա», կամ «Անարզարա»: Կոստանդիանոսի նոր քաղաքական օրենքով, երբ Կիլիկիան երեք մասերի բաժանվեց, Անարզարան դարձավ Երկրորդ Կիլիկիայի մայրաքաղաքը: «Աշխարհացոյցի» մեջ Անարզարան Հիշատակվում է, որպես Կիլիկիայի մայրաքաղաք՝ Տարսոնի Հետ միասին, որը Առաջին Կիլիկիայի մայրաքաղաքն էր: 525 թ. Հուստինիանոսը նորոգեց երկրաշարժից վնասված քաղաքը և կոչեց Հուստինիանուպոլիս: Արաբների գրավումից Հետո, որպես սաՀմանային գոտու քաղաք, կարևորություն ստացավ: Հարուն խալիֆան վերանորոգեց ու ամրացրեց այն 796 թվականին: (Նալբանդյան, Արաբական աղբյուրներ, էջ 186-187):

85 Քանիսատ ալ-Սաուդա - արաբ. նշանակում է Սև եկեղեցի, Հավանաբար Սև լեռների (Ամանոսյան) լեռների վրա գտնվող վանքերն են: (Վ. Տ. -Ղ.)

86 Ծաթեր ( ալ-գութթ) - Գնչուներին տրված անվանումներից մեկը:

## ԻԲՆ ԿՈՒՏԱՅԲԱ (828-889)

*Աբու Մուհամմադ Աբդալլահ իբն Մուսլիմ ալ-Դինավարի Իբն Կուտայբան 9-րդ դարի արաբ խոշորագույն մատենագիրներից է: Նա հայտնի է որպես կրոնագետ, բանասեր և «ադաբի» (լայն իմաստով հումանիտար գիտությունների ողջ համակարգը) մասնագետ: Նա Խորասանից ծագող մի պարսիկ արաբացած ընտանիքից էր, իսկ մոր կողմից՝ ծագում էր Բասրայից:*

*Իբն Կուտայբան ծնվել է Քուֆայում, 828 թ.: Նրա մանկության ու պատանեկության մասին քիչ բան է հայտնի: Նա ունեցել է նշանավոր ուսուցիչներ մահմեդական աստվածաբանության ու բանասիրության բնագավառում: Նրա աշխատությունները իրենց վրա են հրավիրում ժամանակի վեզիրի ուշադրությունը, որը հավանաբար նպաստում է, որ Իբն Կուտայբան դատավոր նշանակվի Դինավարում, մոտավորապես 851 թ.: 871 թվականից հետո Իբն Կուտայբան նվիրվում է իր իսկ երկերի ուսուցմանը Բաղդադի մի շրջանում, որտեղ նա ապրում է մինչև իր մահը՝ 889 թվականին:*

*Իբն Կուտայբան հեղինակ է մեծ թվով (շուրջ մեկուկես տասնյակ) բազմաժանր աշխատությունների, որոնց մեծ մասը հրատարակված է: Բայց ունի նաև երկու երկեր, որոնք դեռևս անտիպ են:*

*(Ibn Kutayba, G. Lecomte, EOI, CD-ROM, (III: 844b))*

*Տե՛ս նաև.*

**– Ibn Kutayba, Kitab al-Maarif, ed. Ukasha, Cairo, 1960**

## ԻԲՆ ԿՈՒՏԱՅԲԱ

## ԳԻՐՔ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ
## (ՔԻՏԱԲ ԱԼ-ՄԱԱՐԻՖ)

*էջ 12*

*Նոյն այդ բանը կատարեց (կառուցեց տապանը) և Ալլահն ուղարկեց ջրհեղեղը երկրի վրա:*

*[Տապանը] մնաց ջրերի վրա հարյուր հիսուն օր:*

*Վեցերորդ ամսում կանգնեց Կարդա[1] լեռան վրա, իսկ տասներորդ ամսում երևացին լեռների գագաթները:*

*Իսկ Վահբն ասել է, թե մեզ պատմել են, որ տապանը (նավը) ճանապարհ ընկավ Ռաջաբ ամսի վերջից տասն օր մնացած (Ռաջաբի 20) և մնաց տապանի վրա հարյուր հիսուն օր, ապա մեկ ամիս կանգնեց Արարատ (Ջուդի)[2] լեռան վրա, որը լեռ է Ջազիրա երկրում և (մարդիկ) դուրս եկան Մուհառամ ամսի վերջից տասս օր մնացած (Մուհառամի 20):*

*Երբ դուրս եկան, կառուցեցին Կարդա գյուղը, որը կոչվեց Սամանին[3] (Թամանին, ութսուն), քանզի նրանում կար ութսուն տուն, յուրաքանչյուրը ամեն մեկի համար, որը նրա (Նոյի) հետ ազատվել էր: Մինչև օրս էլ կոչվում է Սամանինի շուկա:*

## ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

*Խորասանը նվաճվեց Օսման խալիֆայի[4] օրոք հաշտության [պայմանով]: Ինչ վերաբերում է Թաբարիստանին, Վրկանին (Ջուրջան) ու Ռեյին, ապա վերջինս նվաճվել է Օսման իբն Աֆֆանի[5] խալիֆայության ժամանակ հաշտության [պայմանագրով] Աբու Մուսա ալ-Աշաարիի կողմից, իսկ Թաբարիստանը նվաճել է Սաադ իբն ալ-Ասը հաշտության [պայմանագրով] Օսմանի օրոք:*

*Քիրմանն ու Սիջիստանը նվաճել է Աբդալլահ իբն Ամիր իբն Քարիզը հաշտության [պայմանագրով], Ջարալն ամբողջովին նվաճվել է բռնի ուժով, իսկ Ահուազը, Ֆարսը նույնպես նվաճվել են բռնի ուժով:*

*Սավադն ամբողջովին բռնի ուժով է նվաճել Սաադը Օմարի խալի-*

փայության ժամանակ. Ջաբիրան հաշտության [պայմանագրով] նվաճել է Իյազ իբն Ղանմը: Ինչ վերաբերում է Ասորիքին (Շամ), ապա Աջնադինը նվաճեց հաշտության [պայմանագրով] Աբու Բաքրի խալիփայության ժամանակ, իսկ Օմար իբն ալ-Խաթթաբը նվաճեց Սուրբ քաղաքը (Երուսաղեմ): Ասորիքի բոլոր քաղաքներր նվաճվել են Օմարի օրոք[6] հաշտության [պայմանագրով], սակայն ոչ նրա հողային տիրույթները, որոնք բռնի ուժով են նվաճվել Յազիդ իբն Աբու Սուֆիանի, Շուրահբիլ իբն Հասանայի, Աբու Ուբայդայի ու Խալիդ իբն ալ-Վալիդի ձեռքով: Եգիպտոսը նվաճվել է հաշտության [պայմանագրով] Ամր իբն ալ-Ասի ձեռքով: Մաղրիբը, որն Իֆրիկիան է, նվաճվել է բռնի ուժով: Սահմանային ամրությունների գոտին (սուղուր) և Կեսարիան նվաճվել են Օմարի օրոք՝ բռնի ուժով:

Լջ 199

Ապա Մամունը գնաց Տարսոն (Թարսուս) երկու հարյուր տասնհինգ թվականի Մուհառամ ամսին (28 փետրվար – 29 մարտ 830): Նա հարձակվեց հոռոմների վրա ու նվաճեց Կուռա[7], Խարսիանոն (Խարշանա)[8] և Սամալու[9] ամրոցները: Ապա վերադարձավ Դամասկոս, հետո գնաց Եգիպտոս ու կրկին վերադարձավ Դամասկոս:

Նա կրկին արշավեց հոռոմների դեմ երկու հարյուր տասնյոթ (7 փետրվար 832 – 26 հունվար 833) թվականին: Այդ տարի նվաճվեց Լուլուան[10] և նա հրամայեց կառուցել Տիանան (Թուանա)[11]: Վերջապես Մամունը վերադարձավ ու գնաց Ռակկա:

Ապա նա վերստին դիմեց դեպի հոռոմների երկիրը և մեռավ Պոտանդոն (Բադանդուն) գետի[12] մոտ երկու հարյուր տասնյոթ թվականի Ռաջաբ ամսի տասնյոթին (7 օգոստոս 833): Նրա մարմինը փոխադրվեց Տարսոն և այնտեղ թաղվեց:

[Մուտասիմի օրոք] հոռոմները պաշարեցին Զապետրան (Զիբաթրա)[13]: Ապա Իսհակն արշավեց նրանց դեմ, ասպատակեց Ռումի երկիրը երկու հարյուր քսաներեք թվականի Ջումադա Ա ամսին (31 մարտ – 29 ապրիլ 838) և գրավեց Ամորիոնը (Ամմուրիյա)[14] նույն տարվա Ռամադան ամսին (27 հուլիս – 25 օգոստոս 838):

## ԻԲՆ ԿՈՒՏԱՅԲԱ

# ԳԻՐՔ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ
# (ՔԻՏԱԲ ԱԼ-ՄԱԱՐԻՖ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*[1] Կարդա լեռ – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 1:*

*[2] Արարադ (Ջուդի) լեռ – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 3:*

*[3] Կարդա գյուղ (Սասանին) - Կարդա է կոչվում շրջանը, որ գտնվում է Վերին Միջագետքում (Ջազիրա), որի շուրջ 200 բնակավայրերից (գյուղերից) գլխավորներն են ալ-Ջուդին և Սամանինը: (Karda and Bazabda (Ed.). EOI, CD-ROM, (IV: 639a)):*

*[4] Օսման խալիֆա – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 34:*

*[5] Օսման իբն Աֆֆան – Նույն Օսման խալիֆան է:*

*[6] Օմարի օրոք – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 1:*

*[7] Կուռա - Կուռա կամ Կուրրա բերդը գտնվում էր Կապադովկիայի կողմերում: (Իբն ալ-Ասիր, էջ 378):*

*[8] Խարսիանոն (Խարշանա) - Բյուզանդական բանակաթեմ Փոքր Հայքում (ըստ Ալպոյաճյանի՝ Կապադովկիայում) 9–10-րդ դարերում: Կենտրոնն էր Կեսարիան, մյուս նշանավոր քաղաքներն էին՝ Նյուսա, Թերմա, Հոեկեպոտանդոս (Հոեղեպողանդոս): Մտնում էր Հայկական բանակաթեմի մեջ: Բաղկացած էր առաջին Գալաթիա և առաջին Կապադովկիա քաղաքային վարչություններից: (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 710):*

*[9] Սամալու - ամրոց Փոքր Հայքում: Հնարավոր է, որ համապատասխանում է ուշ շրջանի Սամախի անունով բնակավայրին կամ միջնադարյան Ծամնդավ (Սամանդու) ամրոցին: (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 840, հ. 4 էջ 484):*

*[10] Լուլուա - Բերդ Լեռնային Կիլիկիայում, Լամբրոնի գավառում, Տարսոն տանող ճանապարհին, Գուզլակի լեռնանցքի հյուսիսային ծայրամասում: (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 605):*

*[11] Տիանա (Թուանա) – Քաղաք Կապադովկիայում:*

*[12] Պոտանդոս (Բադանդուն) գետ – Հավանաբար Սարոս գետի վտակներից է, որի վրա է գտնվում նաև համանուն բնակավայրը Տավրոսյան լեռների հարավահայաց լանջին, Տարսոնի ճանապարհին:*

*[13] Զապետրա (Զիբաթրա) — ամրոց Փոքր Հայքում, նրա հարավային կողմում, Սամոսատ – Մելիտինե ճանապարհին: (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 269):*

*[14] Ամորիոն (Ամմուրիյա) - նշանավոր ամրոց Փռյուգիայում: Գտնվում է Բյուզանդիայի ռազմական մեծ ճանապարհի վրա Կոստանդնուպոլսից՝ Կիլիկիա: Տեղադրված է Գորիլեումից՝ հարավ-արևելք և Անկյուրայից՝ հարավ-արևմուտք (Ammuriya, M. Canard, EOI, CD-ROM, (I: 449a)):*

## ԱԲՈՒ ՀԱՆԻՖԱ ԱԼ-ԴԻՆԱՎԱՐԻ
(մահ. 895)

*Աբու Հանիֆա Ահմադ իբն Դաուդ ալ-Դինավարին իրանական ծագումով արաբագիր հեղինակ է: Թեև նրա երկը հետագայում բազմիցս հիշատակվում է այլ պատմիչների կողմից, սակայն Դինավարիի կյանքի վերաբերյալ քիչ բան է հայտնի:*

*Նրա պատմական երկը կոչվում է «Մատյան երկարապատում ավանդությունների» (Քիտաբ ալ-Ախբար ալ-Թիվալ): Դինավարին առաջին հերթին ծանոթ է որպես պատմիչ, բայց հեղինակ է նաև, իր տեսակի մեջ բավական լուրջ, աստղաբաշխական բովանդակությամբ մի աշխատության, որ կոչվել է «Քիթաբ ալ-Անուա» ինչպես նաև բուսանունների վերաբերյալ «Քիտաբ ալ-Նաբաթ» երկի:*

**Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. Abu Hanifa al-Dinawary, al-Akhbar al-Tiwal, Beyrouth, առանց թվականի:**

(Крачковский, IV, стр. 118-119, *al-Dinawari, Abu Hanifa, B. Lewin, EOI, CD-ROM, (II: 300a)).*

*Տե՛ս նաև.*

*- Abu Hanifa ad-Dinaweri, Kitab al-Akhbar at-Tiwal. Preface, variantes et index publiés par Ignace Krarchkovsky. Leide, 1912.*

*- Abu Hanifa ad-Dinaweri, Kitab al-Akhbar at-Tiwal, Publié par Vladimir Guirgass, Leide, 1888.*

## ԱԲՈՒ ՀԱՆԻՖԱ ԱԼ-ԴԻՆԱՎԱՐԻ

## ՄԱՏՅԱՆ ԵՐԿԱՐԱՊԱՏՈՒՄ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԱԽԲԱՐ ԱԼ-ԹԻՎԱԼ)

*էջ 1*

*Ապա Ալլահն ուղարկեց Նոյին իր դարի մարդկանց և նա բնակվեց Իրաքի երկրում: Սա՝ Նոյը որդի Ղամեքի, որդի Մաթուսաղայի, որին մարդիկ սուտ համարեցին, և Ալլահը նրանց խեղդեց, իսկ Նոյին ու տապանում նրա հետ եղածներին փրկեց: Տապանը նստեց Արարատ (Ջուդի) լեռան գագաթին, որը գտնվում է Կարդայում ու Բաղարդայում՝ Ջազիրայի հողում․*

*էջ 3*

*Երբ նրանք դուրս եկան, Նոյի որդիները կամեցան դուրս գալ Բաբելոնից: Դուրս եկավ Խորասանը՝ որդին Ալամի, որդին Սեմի (Սամ) ու հաստատվեց Խորասանում և Ֆարիսը՝ որդին Ասուարի, որդին Սեմի և Ռումը՝ որդին ալ-Յաֆարի, որդին Սեմի և Իրմինը (Արմինը)՝ որդին Նաուրաջի, որդին Սեմի, որը Հայաստանի (Արմինիա, Իրմինիա) տերը դարձավ:*

*էջ 66*

*Ապա Կավատը պատրաստվեց ու գնաց իր զորքով, արշավեց Ռումի երկիրը: Նա գրավեց Ամիդը և Նփրկերտը, գերեվարեց ժողովրդին: Նրա հրամանով կառուցվեց մի քաղաք, Ֆարսի ու Ահուազի միջև, որը բնակեցրեց նրանցով և անվանեց Իրկավատ (Իրկուրաղ), որը Վերին Ոստանն է (Իստան ալ-Ալա) և նրան չորս թասուջ հատկացրեց:*

*էջ 67*

*Ապա Խոսրով Անուշիրուանը[1] իր թագավորությունը բաժանեց չորս մասերի և ամեն մի քառորդում իր վստահելիներից մեկին նշանակեց: Քառորդներից մեկն [ընդգրկում էր] Խորասանը, Սիջիստանը, Քիրմանը, երկրորդը՝ Սպահանը, Կումը, Ջաբալը, Ատրպատականը,*

Հայաստանը, երրորդը՝ Ֆարսը, Աճուագը՝ մինչև Բահրայն, իսկ չորրորդը՝ Իրաքը մինչև Ռումի թագավորության սահմանները: Այս չորս մարդկանց ամեն մեկին բացառիկ պատիվ ու հարգանք ցուցաբերեց:

էջ 78-82

Որմիզդը (Հուրմուզդ)[2] միշտ հաղթական էր, ինչի որ ձգտեր՝ ձեռք էր բերում, նրա զորքերը երբեք չէին պարտվել և միշտ բացակա էր Տիզբոնից (Մադաին)՝ ձմեռելով Սավադում (Ստորին Միջագետք), կամ ամառն անցկացնելով Մահում:

Սակայն նրա թագավորության տասնմեկերորդ տարում թշնամիներն ամեն կողմից շրջապատեցին նրան, ինչպես լարը փաթաթվում է աղեղի երկու ծայրերին: Արևելյան կողմից Թուրքաց Շահինշահը հարձակվեց մինչև Հերատ և վտարեց Որմզդի կառավարիչներին: Արևմտյան կողմից Ռումի (Բյուզանդիայի) թագավորը[3] եկավ ու հասավ Մծբին (Նասիբին), վերագրավելու Ամիդը, Նփրկերտը (Մայյաֆարիկին), Դարան և Մծբինը, իսկ Հայաստանի կողմից եկավ Խազարաց թագավորը[4] և ներխուժեց Ատրպատական և ասպատակ սփռեց:

Երբ այս լուրերը հասան Որմզդին, նախ դիմեց կայսրին (կայսար) ու վերադարձնելով նրան այն քաղաքները, որ իր հայրը խլել էր, հաշտություն ու բարեկամություն խնդրեց: Կայսրը նրան ընդառաջեց ու հեռացավ:

Ապա դրեց Հայաստանի ու Ատրպատականի իր կառավարիչներին, որոնք հավաքվեցին ու դեմ կանգնեցին Խազարաց տիրոջը, մինչև որ հեռացրին իրենց հողից: Երբ այս բոլորը վերջացավ, ուշադրությունը սևեռեց Թուրքաց տիրոջ վրա, որն ամենահզոր թշնամին էր և գրեց Սահմանային ամրությունների [հանդիսացող] Ատրպատականի ու Հայաստանի կառավարիչ Վահրամ Վշնասպի (Բահրամ Ջուշնաշ) որդի Վահրամին, որը կոչվում էր Վահրամ Չուբին[5], հրամայելով նրան ժամանել, իսկ նա շուտափույթ եկավ: [Արքան] թույլ տվեց ու նա մտավ նրա մոտ և նրա աստիճանը բարձրացրեց, մեծ պատիվներ շնորհեց և առանձնանալով տեղեկացրեց գործի մասին, թե պետք է գնար Թուրքաց Շահինշահի դեմ: Վահրամը հայտնեց իր պատրաստակամությունն ու հնազանդությունը: Որմիզդը հրամայեց, որ Վահրամին տանեն գանձարաններն ու զինանոցները և տրամադրության տակ դնեն զորքի դիվանը, որպեսզի ընտրի՝ ում որ հավանի: Եկավ Վահրամը զորքի դիվանը և հավաքեց մարզպաններին ու ազնվականներին (աշրաֆ), ընտրելով տասներկու հազար հեծյալների, միայն քառասունն անց մարդկանցից:

Վահրամը շարժվեց ու մտավ Ահուադի ճանապարհը. իսկ Թուրքաց Թագավորը լսեց իր դեմ պատերազմելու եկող զորքի գալստյան մասին: Սակայն Որմիզդ Թագավորը նախապես Թուրքաց Թագավորին ուղարկել էր իր մարզպաններից մեկին, որը կոչվում էր Հուրմուզդ Զուրաբիդին, որը պարսիկների ամենախորամանկ ու նենգաբարո մարդկանցից էր. ու պատվիրեց նրան, որ հայտնի, թե ինքը Թագավորի (Որմզդի) դեսպանն է և ուղարկված է հաշտություն կնքելու և նրան գոհացնելու: Եկավ Հուրմուզդ Զուրարիգինը և նենգություն բանեցնելով կարողացավ նրան ետ պահել Խորասանն ասպատակելուց: Երբ Որմիզդն իմացավ, որ Վահրամը մոտեցել է Հերատին, գիշերանց շարժվեց ու հասավ Վահրամին:

Երբ Թուրքաց Թագավորն իմացավ զորքի գալուստը, իր պահակների պետին հրամայեց՝ անմիջապես ինձ մոտ կբերես այդ խորամանկ պարսիկին: Սակայն փնտրեցին ու չգտան. քանզի գիշերանց փախել էր:

Խաքանը Հերատից դուրս եկավ Վահրամին հանդիպելու, իսկ նրա առաջապահ զորքը քառասուն հազար էր: Երբ իրար դեմ դուրս եկան՝ նա Վահրամին մարդ ուղարկեց առաջարկելով՝ միացիր ինձ և ես քեզ Իրանշահրի[6] Թագավոր կդարձնեմ և իմ ամենամերձավորը կհամարեմ: Վահրամը պատասխանեց՝ ինչպե՞ս ինձ կարող ես Իրանշահրի Թագավոր դարձնել, երբ նրա Թագավորությունը պատկանում է մի այնպիսի տոհմի, որից ոչ ոք կարող է խլել իշխանությունը, իսկ դու պատրաստվիր պատերազմի:

Զայրացավ Թուրքաց Թագավորն այս խոսքերից ու հրամայեց ռազմի շեփորը հնչեցնել ու երկու զորքերն իրար դեմ դրոհեցին: Թուրքաց Թագավորը նստած էր ոսկե գահին, մի բլրի վերևում, որն իշխում էր երկու կողմերի վրա: Երբ կռիվը բորբոքվեց, Վահրամն իր զորքի քաջերից հարյուր ձիավորներով դիմեց բլուրը, իսկ Թուրքաց Թագավորին շրջապատող մարդիկ ցրվեցին: Երբ Թագավորն այս տեսավ, ուզեց իր ձին, սակայն Վահրամն այդ հասկանալով նետ արձակեց, որը կպավ նրան ու ընկավ մեռած և Թուրքերը փախուստի դիմեցին:

[Վահրամը] Որմիզդ Թագավորին ուղարկեց այն, ինչ Շահինշահի ճամբարում ավարել էր, ինչպես նաև ոսկե գահը և այս ամբողջը երեք հարյուր ուղտի բեռ էր: Երբ ավարը բերվեց Որմզդի մոտ, ցուցադրվեց նրան և նրա շուրջ կանգնած էին նրա վեզիրներն ու մեծամեծ մարզպանները: Այնժամ նրա մեծ վզուրկ (վեզիրների պետ) Եզդան Վշնասպը (Յազդան Ջուշնաս) ասաց՝ ով արքա, արդյոք խնջույքի սեղանն ավելի մեծ չէր, քան այս պատառը: Այս խոսքերը կպան Որմզդի սրտին և սկսեց կասկածել Վահրամի հավատարմությանը ու կարծեց, որ իրոք այնպես է, ինչպես ասաց Եզդան Վշնասպը, և ինչպիսի

աղետներ, պատերազմներ ու դժբախտություններ պատահեցին այս մեկ խոսքի պատճառով:

Որմիզդն այնպես զայրացավ ու կատաղեց Վահրամի դեմ, որ մոռացավ նրա բարի ծառայությունները և Վահրամին ուղարկեց մի շղթա, կանացի գոտի և մանելու ճախարակ: Նա գրեց թե՝ ես իմացա, որ դու այդ ավարից միայն փոքր մասն ես ուղարկել և հանցավորը ես եմ, որ քեզ պատիվներ եմ տվել: Քեզ ուղարկում եմ մի շղթա, որ վզիդ դցես, կանացի գոտի, որ մեջքիդ կապես և մանելու ճախարակ, որ ձեռքիդ սնտոփ է պահես, քանզի դավաճանություն և ուխտադրժություն կանացի բարքեր են:

Երբ այս բաներն ստացավ Վահրամը, սաստիկ վրդովվեց և հասկացավ, որ դա բանսարկություն է: Նա դրեց շղթան իր վզին, գոտին կապեց իր մեջքին, ձեռքը վերցրեց մանելու ճախարակը, ապա թույլ տվեց իր մեծամեծներին ու մերձավորներին, որ իր մոտ գան ու կարդաց նրանց թագավորի նամակը: Երբ մերձավորները լսեցին, հիասթափվեցին թագավորից և իմացան, որ նա երախտապարտ չի եղել իրենց ծառայությունների համար: Ասացին՝ մենք կանենք այն, ինչ մեր հին ապստամբներն են ասել՝ ո՛չ Արտաշիրը թագավոր է, ո՛չ էլ Յազդանը՝ վեզիր: Իսկ մենք կասենք՝ ո՛չ Որմիզդը թագավոր է, ո՛չ էլ Յազդան Վշնասպը ՝ վեզիր: Իսկ հին ապստամբների պատմությունն այս է. Արտաշիր Պապականի[7] մոտ եկել էին քրիստոնյա քարոզիչներ և նա ընդառաջելով նրանց Քրիստոսի կրոնն ընդունեց և նրան հետևեց նաև վեզիրը՝ Յազդանը, իսկ պարսիկները զայրացան և ուզեցին գահընկեց անել Արտաշիրին, սակայն նա հրաժարվեց այդ մտքից և նրան թողեցին թագավորության մեջ:

Վահրամի մերձավորներն ասացին նրան՝ եթե դու մեզ հետ համաձայնես Որմզդին գահընկեց անելու և նրա դեմ ապստամբելու՝ լավ է, ապա թե ոչ, մենք քեզ կհեռացնենք և ուրիշին հրամանատար կդարձնենք: Երբ նա տեսավ նրանց միաբանությունը, համաձայնեց մեծ ցավով, վշտով ու դժկամությամբ:

## էջ 83

Ապա Վահրամը գնաց իր զորքով Իրաք, կռվելու Որմիզդ արքայի դեմ, մինչև որ հասավ Ռեյ ու մնաց այնտեղ: Նա դիրհեմներ կտրեց թագավորի որդու՝ Խոսրով Պարուեզի[8] պատկերով, նկարով և անունով, և թողարկեց հազար դիրհեմ: Նա հրամայեց, որ դիրհեմները գաղտնի տանեն ու գցեն Տիզբոնում և այդպիսով մարդկանց մեջ տարածվեց:

Որմիզդը լսեց այդ մասին և կասկածեց, որ որդին՝ Խոսրովը, փորձում է գրավել թագավորությունը և հենց ինքն է դիրհեմներ թողար-

կնի։ Անա այդ էլ ուզում էր Վահրամը։ Թագավորը վճռեց սպանել իր որդուն՝ Խոսրովին, որը գիշերանց փախավ Տիզբոնից Ատրպատական, ուր հասավ ու մնաց։ Թագավորը կանչեց Բնդոյին (Բինդավայհ) ու Գուստեհեմին (Բիսթամ), որոնք Խոսրովի քեռիներն էին. հայտնեց Խոսրովի մասին, իսկ նրանք ասացին՝ մենք չգիտենք։ Նա կասկածեց ու հրամայեց երկուսին էլ բանտարկել։

էջ 84

Թագավորի զոանը (պալատում) մեծամեծներն ու ազնվականները և մարզպանները լսեցին Յազդան Վշնասպի սպանության մասին, իսկ նա բոլորի մեծն էր։ Նրանք իրար մոտ եկան ու որոշեցին Թագավորին հեռացնել և թագավորեցնել Խոսրովին։ Այս բանին նրանց մղեցին ու համոզեցին Խոսրովի երկու քեռիները՝ Բնդոյն ու Գուստեհեմը, որոնք բանտարկված էին։

Ապա եկան ու Որմիզդ թագավորին տապալեցին գահից, վերցրին նրա թագն ու գոտին, սուրն ու պատմուճանը և ուղարկեցին Խոսրովին, որն Ատրպատականում էր։

էջ 86

Վահրամը Ռեյում էր, երբ լսեց կատարվածը։ Նա սաստիկ զայրացավ Որմզդի համար ու բորբոքվեց, կատաղեց ու ոռնալով իր ատելությունը [արտահայտեց], եկավ իր զինվորների հետ՝ նպատակ ունենալով սպանել Խոսրովին ու նրա կողմնակիցներին և Որմզդին վերստին հանձնել թագավորությունը։

էջ 87

Խոսրովն արագ ընթանալով հասավ Տիզբոն (Մադաին) ու մտավ իր հոր մոտ, սակայն չասաց, թե Վահրամը փորձում է թագավորությունն իրեն տալ, այլ ասաց՝ իմ բոլոր մերձավորները նրա կողմն անցան ու հարցրեց, թե ինչ կարծիք ունի։ Ասաց՝ դու պետք է կայսրի մոտ գնաս և նա կարող է քեզ օգնել ու զորավիգ լինել և դու կկարողանաս քո թագավորությունը վերականգնել։ Խոսրովը հոր ձեռքերն ու ոտքերը համբուրեց ու հրաժեշտ տվեց։

էջ 90

Վահրամն իր մոտ հավաքեց թագավորության երևելիներին և

ասաց՝ «արդեն իմացել եք, թե ինչ մեծ չարիք է գործել Խոսրովն սպանելով իր հորը և ապա փախչել: Համաձա՞յն եք, որ այս թագավորության գործերը ես տնօրինեմ, մինչև Որմզդի որդի Շահրիարը հասունության հասնի և նրան հանձնեմ այն»: Մի խումբ համաձայնեց, սակայն մի ուրիշ խումբ հրաժարվեց: Հրաժարվողներից էր հայազգի Մուշեղը[9] (Մուսիլ ալ-Արմանի), որը մեծ մարզպաններից էր և ասաց Վահրամին՝ «ով սպահպետ (խորհրդ) դու չպետք է այն անես, քանզի Խոսրովը թագավորության տերն է և ողջերի մեջ նրա ժառանգորդը»: Ասաց Վահրամը՝ «ով համաձայն չէ, թող Տիզբոնից հեռանա և եթե երեք օր անց հանդիպեմ մեկին, որը համաձայն չլինելով մնացել է Տիզբոնում, գլուխը կտրելու եմ»: Հեռացավ հայազգի Մուշեղն իր համախոհներով, որոնք մոտավորապես քսան հազար էին և գնացին Ատրպատական ու կանգ առան, սպասելով Խոսրովի դալստյանը Ռումի երկրից:

Էջ 91

[Բնդույը] ծպտված փախավ, գիշերը քայլելով, իսկ ցերեկը թաքստոց մտնելով, մինչև որ հասավ Ատրպատական և մնաց Մուշեղի ու նրա զորքի հետ:

Էջ 92

Ասաց կայսրը, միթե հնարավոր է, որ թագավորներից օգնություն խնդրեն և նրանք չօգնեն: Նա Խոսրովին պայմանագրեր ու վավերագրեր տվեց, որպես բարեկամության նշան և նրան ամուսնացրեց իր Մարիամ դստեր հետ, ապա իր որդուն՝ Թեոդոսին իր քաջարի զինվորների հրամանատար նշանակեց, որոնց մեջ կային տաս [հազար] հոգի հազարմարդին խմբից: Ապահովեց նրանց դրամով և սպառազինությամբ և հրամայեց նրա (Խոսրովի) հետ գնալ, իսկ ինքը՝ երեք օր ուղեկցեց նրանց:

Գնաց Խոսրովն այդ զորքով ու մտավ Հայաստան, ապա երբ հասավ Ատրպատական, նրան միացան իր քեռին՝ Բնդույը և հայազգի Մուշեղը, ինչպես նաև իր մարզպաններն ու Ֆարսի մարզպանները:

Լսեց Վահրամ Չուբինը և եկավ Ատրպատական ու Խոսրովի ճամբարից մեկ փարսախ հեռավորության վրա բանակ դրեց: Ապա սկսեց կռիվը և Խոսրովի ու Թեոդոսի համար ոսկե գահ դրեցին մի բարձունքի վրա:

էջ 93

Չորրորդ օրը երկու զորքերը նորեն կռվի պատրաստվեցին ու պատերազմեցին և Հաղթեց Խոսրովը, իսկ Վահրամը պարտված իր զինվորների Հետ գնաց ճամբար:

էջ 127

Պարսիկները [Կադիսիյայում][10] պարտվեցին ու մտան Տիղրոն և այնտեղ ամրացան: ՄաՀմեդականները Հարձակվեցին նրանց վրա Տիգրիսից այն կողմ: Այս տեսնելով Խուռաղադը արևելյան դռնից գիշերով ելավ իր զինվորների Հետ ու գնաց Ջալուլայի կողմը: Տիզբոնը դատարկվեց և մաՀմեդականները մտան ու մեծ ավար ղտան այնտեղ:

Նրանք մեծ քանակությամբ քափուր[11] գտան ու կարծելով որ աղ է, Հացի մեջ գցեցին, սակայն դառն Համ ունեցավ:

Ասել է ՄիՀնաֆ իբն Սուլայմը՝ այդ օրը լսել եմ, որ մի մարդ գոռում էր՝ ով կառնի կարմիր թերթ (ոսկի) սպիտակ թերթի (արծաթ) փոխարեն, մի ոսկե թերթի Համար, որը չդիտեր ինչ է:

էջ 154

[Ալին] Աշտարին նշանակեց Մոսուլի, Մծբինի, Դարայի, Ախնջարի, Ամիդի, Նփրկերտի, Հիտի, Անատի և Ասորիքից նվաճած բոլոր Հողերի կառավարիչ: Սա գնաց ու նրան Հանդիպեց ԴաՀՀաք իբն Կայս ալ-ՖիՀրին, որը կառավարիչ էր նշանակված Մուավիա իբն Աբու Սուֆիանի կողմից: Նրանք Խառանի ու Ռակկայի միջև պատերազմեցին, Մարջ[12] կոչված մի վայրում, մինչև երեկո: Լսելով այդ մասին, Մուավիան ԴաՀՀաքին օգնելու նպատակով մեծ Հեծելազոր ուղարկեց Աբդ ալ-ՌաՀման իբն Խալիդ իբն ալ-Վալիդի գլխավորությամբ: Այդ լուրն ստանալով Աշտարը Հեռացավ Մոսուլ և այնտեղ դիմագրում էր Մուավիայի[13] ուղարկած զորքերին: Դրանից Հետո տեղի ունեցավ Սիֆֆինի ճակատամարտը[14]:

էջ 281

Մեռավ Յազիդ իբն Մուավիա խալիֆան[15] և այդ ժամանակ ՈւբայդալլաՀ իբն Զիյադը Բասրայի կառավարիչն էր և Հարիս իբն Աբբադ իբն Զիյադը մի բանաստեղծություն գրեց [Յազիդի մաՀվան մասին]:

ՈւբայդալլաՀը Հիացավ իր եղբորորդու խոսքերով, որոնք իմաստալից էին:

Այս նա հրավիրեց լրանաստեղծության մասին կարծիք հարցնելու] իր Միհրան կոչված մաուլային, որն իր հնարամիտ խելքով, կրթությամբ ու մտքով համեմատվում էր Ամր իբն ալ-Ասի մաուլա Վարդանի հետ:

Էջ 296-297

Իբրահիմ իբն ալ-Աշտարը կանգ առավ Մաուսիլում և իր կառավարիչներին ուղարկեց Ջազիրայի քաղաքները. Իսմաիլ իբն Զուֆարին՝ Կիրկիսիայի վրա, Հատիմ իբն Նուման ալ-Բահիլիին՝ Խառանի, Եդեսիայի, Սամոսատի վրա, Ումայր իբն Հուբաբ ալ-Սուլամիին՝ Քաֆր Տուսայի վրա, Սաֆֆահ իբն Քուրդուսին՝ Սինջարի վրա, Աբդալլահ իբն Մուսլիմին՝ Նփրկերտի վրա, Մուսլիմ իբն Ռաբիա ալ-Ուկայլիին՝ Ամիդի վրա, իսկ ինքը գնաց Մծբին և այնտեղ կանգ առավ:

Էջ 316

Աբդ ալ-Մալիքը յոթանասունվեց (21 ապրիլ 695 — 9 ապրիլ 696) թվականին հրամայեց դիրհեմներ թողարկել, ապա հրամայեց դինարներ հատանել և նա առաջինն էր, որ իսլամի պատմության մեջ դրամներ է կտրել:

Իսկ մինչ այդ եղած դիրհեմներն ու դինարները պարսիկների (աջամ) թողարկածներն էին:

Էջ 383

Աբու Ջաաֆարը[16] ցանկացավ իր անձի և իր զինվորների համար մի քաղաք կառուցել և այն դարձնել թագավորության մայրաքաղաք (դար ալ-մամլաքա):

Անձամբ գնաց տեղ փնտրելու, մինչև որ հասավ Բաղդադ, որն այդ ժամանակ մի գյուղ էր, ուր ամեն ամիս շուկա էր բացվում: Նա հավանեց այդ վայրը և իրեն, իր շքախմբի (հաշմ) ու մաուլաների, որդու և իր ընտանիքի համար մի քաղաք հատկացրեց՝ այն կոչելով Խաղաղության քաղաք: Իր ապարանքը նրա մեջտեղում կառուցեց, մեծ մզկիթի կողքին:

Ապա քաղաքի շուրջը ծրագրով բնակեցրեց իր զինվորներին և Խորասանի ամեն մի կողմից եկածի համար մի հատուկ թաղամաս հատկացրեց: Մարդկանց հրամայեց կառուցումներ կատարել և ինքը մեծ գումարներ ծախսեց: Նրա հրամանով Եփրատից մի դետ

(ջրանցք) բերվեց ուղթ փարսախի վրա. որի սկիզբը Դիմմիմայից էր: Այն հասցվեց մինչև Բաղդադ. որպեսզի նրա վրայով փոխադրվեն Ասորիքի ու Ջազիրայի ապրանքները. ինչպես Մոսուլի ու նրա հետ կապված [երկրների] ապրանքները Տիգրիսի վրայով [են փոխադրվում]: Այն կառուցվեց հարյուր երեսունինը (756–757) թվականին:

էջ 390

[Ռաշիդն][17] այնտեղից (Ռակկա) դուրս եկավ արշավելու դեպի Ռումի երկիրը և գրավեց նրանց քաղաքներից մեկը, որը կոչվում է Մաասուֆ, ապա վերադարձավ Ռակկա ու մինչև տարվա վերջը մնաց: Ուխտագնացության ժամանակ գնաց ուխտի և իր պարտքը կատարելուց հետո վերադարձավ Ռակկա ու մնաց այնտեղ: Նա Յազիդ իբն Մազիադին[18] Հայաստանի կառավարիչ նշանակեց, ապա եկավ Ռակկայից հարյուր ութսունչորս (800) թվականին և հասավ Խաղաղության քաղաքը (Բաղդադ):

էջ 391

Հարյուր իննսուն (805–806) թվականին դուրս եկավ Ռումի դեմ արշավանքի, ներթափանցեց այդ երկիրը և հասավ Հերակլիա ու գրավեց:

[...............]

էջ 391–392

Հասավ հարյուր իննսունևերկու (807–808) թվականը և այդ տարում Խուռամիներն (խուռամիյա) առաջին անգամ հանդես եկան Ջարալի հողում: Մուհամմադ ալ-Ամինը ուղարկեց Արդալլահ իբն Մալիք ալ-Խուզաիին, որը նրանց մեծ կոտորած տվեց և մնացածներին տարբեր կողմեր ցրեց:

էջ 401

Նա (Մամունը) եռանդուն էր, գործունյա, հպարտ, Աբբասի տան աստղն էր գիտության և իմաստության մեջ: Ամեն մի գիտությունից մի բան էր վերցրել և ամեն ինչի ընդունակ էր: Նա էր, որ Եվկլիդեսի գիրքը կարողացավ հոռոմների ձեռքից վերցնել և հրամայեց այն թարգմանել ու մանրամասնորեն մեկնել: Ժողով էր գումարում իր

խալիֆայության օրոք վիճելու համար կրոնների և ուսմունքների մասին: Այս բանում նրա ուսուցիչն էր Աբու-լ-Հուդայլ Մուհամմադ իբն Հուդայլ ալ-Ալլաֆը:

Նա մասավ Ջազիրա և Ասորիք ու երկար ժամանակ մնաց, ապա արշավեց Ռումի երկիրը, մեծ նվաճումներ կատարեց և հաջողության հասավ:

Մեռավ Պոտանդոն (Բաղանդուն) գետի մոտ, թաղվեց Տարսոնում չորեքշաբթի օրը, երկու հարյուր տասնութ թվականի Ռաջաբ ամսի ութին (31 հունիս 833):

Նրա իշխանության տևողությունն էր քսան տարի հինգ ամիս տասներեք օր: Նա երեսունինը տարեկան էր:

Նա հավատարմության երդում (բայաա) էր վերցրել իր որդու Աբբաս իբն Մամունի համար, որպես իրենից հետո գահաժառանգի:

Երբ նա մեռավ Պոտանդոն գետի մոտ, նրա եղբայր Աբու Իսհակ Մուհամմադ իբն Հարուն ալ-Մուտասիմ Բիլլահն իր մոտ հավաքեց հայտնի զորավարներին ու զինվորներին և կոչ արեց իր համար հավատարմության երդում տալ և նրանք տվեցին:

Նա եկավ Տարսոնից ու հասավ Բաղդադ, մտավ քաղաքը, հեռացված հայտարարեց Մամունի որդուն՝ Աբբասին, հաղթեց նրան և մարդիկ նրան հավատարմության երդում տվեցին:

Նա Բաղդադ եկավ երկու հարյուր տասնութ թվականի Ռամադան ամսի սկզբին (20 սեպտեմբեր 833): Մնաց երկու տարի, ապա թուրքերի հետ հեռացավ Սամառա[19], կառուցեց այն և իր նստավայրն ու բնակատեղին դարձրեց:

էջ 402

Նրա (Մուտասիմի) խալիֆայության շրջանում այնպիսի նվաճումներ կատարվեցին, որոնց նմանը նախկինում ոչ մի խալիֆայի ժամանակ չէր եղել:

Դրանցից էր Բաբեկի[20] դեմ հաղթանակը, նրա գերի ընկնելը ու սպանվելն ու խաչվելը: Թաբարիստան ամրոցի տեր Մազիարը, որն ամրացել էր բերդերում ու լեռներում, այնքան կռվեց, մինչև որ բռնվեց, սպանվեց ու խաչվեց Բաբեկի կողքին: Ապա Ջաաֆար ալ-Քուրդին, որն ավերել էր երկիրն ու գերեվարել երեխաներին, ահա նրա դեմ հենց այլ գնդեր ուղարկվեցին և այնքան կռվեց մինչև բռնվեց, սպանվեց ու խաչվեց Բաբեկի ու Մազիարի կողքին: Դրանցից էր նաև Ամորիոնի գրավումը, որը փոքրիկ Կոստանդնուպոլիսն է:

Բաբեկի շարժումն սկսեց Մամունի վերջին օրերին: Մարդիկ տարակարծիք են նրա ծագման և ուսմունքի մասին: Առավել հավաստի և հիմնավոր կարող ենք համարել այն, որ նա ծագում էր Մութահհարից, որի մայրն էր Աբու Մուսլիմի դուստր Ֆաթիման, որի անունով էլ նրանք կոչվել են Ֆաթիմիններ Խուռամյաններ և ոչ թե (ծագում է) Ալլահի առաքյալի դուստր Ֆաթիմայից:

Բաբեկն աճեց անվերջ խառնաշփոթության ու դժվարությունների շրջանում: Իր գործունեությունն սկսեց կոտորելով նրանց՝ ովքեր Բադդի[21] շրջակայքում էին գտնվում, ավերեց շրջակա բնակավայրերն ու գյուղերը, որպեսզի տիրի երկրին և դժվարացնի իրեն հետապնդելը և իր մոտ հասնելը: Նրա զորությունն ավելացավ և շարժումը ծավալվեց:

Երբ Մամունը լսեց այդ մասին, ուղարկեց Աբդալլահ իբն Թահիր իբն ալ-Հուսայնին մեծ զորքով: Սա եկավ ու ճանապարհին կանգ առավ Դինավարում, նրա շրջակայքում գտնվող մի բնակավայրում, որը մինչև օրս դեռ հայտնի է Աբդալլահ իբն Թահիրի բերդ անվամբ և բոլորին հայտնի խաղողի այգի է: Նա գնաց ու հասավ Բադդ, իսկ այդ ժամանակ Բաբեկի ուժն ավելացել էր և մարդիկ վախենում էին նրանից: Նրանք կռվեցին նրա (Բաբեկի) դեմ, սակայն չկարողացան հաջողություն ունենալ և նա ցրեց նրանց բազմությունն ու սպանեց նրանց քաջերին:

Հենց որ խալիֆա դարձավ Աբու Իսհակ ալ-Մուտասիմ Բիլլահը, ապա իր ամբողջ եռանդը գործադրեց այս նպատակին: Նա միջոցներ ու զորք պատրաստեց, կանչեց իր մաուլա Աֆշին Հայդար իբն Քաուսին: Աֆշինը մեծ զորքով եկավ Բարդանդ և այնտեղ մնաց, մինչև որ վրա հասավ լավ եղանակը և ճանապարհներում ձյունը հալվեց:

Ապա իր տեղակալ Յուբարային (Բուզբարա) և Ջաաֆար իբն Դինարին, որը հայտնի էր Ջաաֆար ալ-Խայյաթ անվամբ, ձիավորների մեծ զորքով ուղարկեց այն վայրը, ուր կար [Բաբեկի] ճամբարը: Նա նրանց երկուսին էլ հրամայեց ամրացված խրամատ փորել: Նրանք գնացին, այնտեղ կանգ առան ու խրամատներ փորեցին:

Երբ խրամատն արդեն փորվել էր, Աֆշինն իր փոխարեն Բարզանդում թողեց Մուտասիմի մաուլա Մարզուբանին մի խումբ զորավարների հետ և ինքը կանգ առավ խրամատի առջև: Նա Յուրարային ու Ջաաֆար ալ-Խայյաթին ուղարկեց մեծ զորքով մեծ դեռի ակունքը և հրամայեց այնտեղ մի ուրիշ խրամատ փորել: Նրանք գնացին ու փորեցին:

Երբ վերջացրին՝ եկավ Աֆշինը, ապա իր փոխարեն թողնելով Մուհամմադ իբն Խալիդ Բուխարախուդահին, ինքը գնաց Դաըռւաղ

հինգ հազար հեծյալներով, երկու հազար հետևակով ու հազար գործավորներով, մինչև որ իջավ Դարուադ և այնտեղ մեծ խրամատ փորել տվեց ու հսկա պարիսպ կառուցեց: Իսկ Բաբեկն ու հետևորդները բարձրաբերձ լեռների վրա կանգնած նայում էին [Աֆշինի] ճամբարին ու վայնասուն բարձրացնում:

Ապա Աֆշինը երեքշաբթի օրը, Շաաբան ամսի քսանվեցին (3 օգոստոս 837) հանդերձանքով ու քարանետ մեքենաներով (մանջանիկ) հարձակվեց: Բաբեկն Ադինին հրամայեց իր հետ վերցնել երեք հազար հոգու և ամրացնել մի բլուր, որն իշխում էր [Բադդ] քաղաքի վրա, իսկ նախապես նա շուրջը փոսեր էր փորել, որ [թշնամու] հեծյալներին չթողնի իրեն մերձենալու:

Այդ օրն Աֆշինը վերադարձավ իր խրամատը: Հաջորդ օրը՝ ուրբաթ, Ռամազան ամսի մեկին (7 օգոստոս) Աֆշինը քարաշեն մեքենաներ ու պայթուցիկ նյութեր նետող մեքենաներ (առադատ) դրեց քաղաքի դեմ, իսկ զորավարներն ու պետերը ամեն կողմից շրջապատել էին:

Բաբեկն օգնության հասավ իր մարդկանց, դասավորեց նրանց, իսկ զորավարները սաստիկ կռիվ ունեցան նրանց հետ մինչև երեկո, ապա ցրվեցին՝ նրա մարդկանց մեծ վնաս հասցնելուց հետո:

Աֆշինն այսպես մնաց վեց օր, ապա հինգշաբթի օրը Ռամազանի քսաներեքին (29 օգոստոս) նրա դեմ կռվի դուրս եկավ: Բաբեկը նույնպես պատրաստվեց: Նա Բադդի վերևում տեղավորեց հսկայական սայլեր, որպեսզի գլորի Աֆշինի զորքի վրա:

Ապա Բաբեկն Աֆշինի մոտ ուղարկեց մի մարդու, որը կոչվում էր Մուսա ալ-Ակթա (կոնատ), խնդրելով, որ դուրս գա իր մոտ անձամբ բանակցելու և սրտում եղածն ասելու և եթե Աֆշինն իրեն գոհացնի՝ լավ, ապա թե ոչ, կռիվը կշարունակվի: Աֆշինն ընդառաջեց նրան և Բաբեկը դուրս գալով մոտեցավ Աֆշինին, մի վայրում, ուր գետի ձորը բաժանում էր իրենց: Տեսնելով Աֆշինին՝ անհավատ կոչեց նրան (հայհոյեց), սակայն Աֆշինը փորձեց համոզել նրան, որ միայն հնազանդությամբ կարող է փրկություն գտնել թե՛ այս կյանքում, թե՛ հանդերձյալում, իսկ նա՝ չընդունեց:

Նա գնաց իր տեղը և հրամայեց իր մարդկանց կռվել ու նրանք շտապեցին և գլորեցին այն սայլերը, որ պատրաստել էին: Դրանք ջարդվեցին ու Աֆշինի զորքը հետ քաշվեց ու բարձրացավ լեռան գագաթը:

Յուբարան և Ջաաֆար ալ-Խայյաթը կանգնած էին Բաբեկի եղբոր՝ Աբդալլահի դիմաց: Նրանք հարձակվեցին և ամեն կողմից զորավարները գրոհեցին և սաստիկ կոտորած սարքեցին: Բաբեկի մարդիկ փախուստի դիմեցին ու մտան քաղաք, իսկ սրանք մտան ետևից հետապնդելով ու կռիվը բորբոքվեց քաղաքի կենտրոնում: Դա մի

պատերազմ էր. որի նմանը ոչ ոք չէր տեսել. կռվում էին տներում ու պարտեզներում: Բաբեկի եղբայր Աբդալլահը փախավ:

Երբ Բաբեկը տեսավ, որ ինքը շրջապատված է զորքով, գտնվում է անելանելի վիճակում և որ իր կողմնակիցները կամ սպանվել են կամ փախել, ինքն էլ փախավ Հայաստան, անցնելով Արաքս գետը և ուղղվեց դեպի Ռում: Երբ նա անցավ Արաքս գետը նրա մոտ եկավ նահանգի[22] կառավարիչ Սմբատի որդի Սահլը[23] (Սահլ իբն Սինբաթ):

Աֆշինը գրեց մոտակա նահանգների կառավարիչներին, Հայաստանի քրդերին ու պատրիկներին, որ նրանք Բաբեկի ճանապարհը փակեն: Նրա մոտ հայտնվեց Սահլը, իսկ Բաբեկը ծպտված էր, փոխել էր արտաքին տեսքը, ոտքերը կապել էր ցնցոտիներով ու ջորի էր նստել հասարակ թամբով:

Սմբատի որդի Սահլը նետվեց նրա վրա, գերի բռնեց ու ուղարկեց Աֆշինին, որը նրան հսկողության տակ վերցրեց: Նա գրեց Մուտասիմին իր հաղթանակի մասին ու թույլտվություն խնդրեց ներկայանալու: [Խալիֆան] թույլ տվեց և նա եկավ նրա մոտ Բաբեկի ու նրա եղբոր հետ: Իսկ այն, որ Մուտասիմը հրամայեց պատժել Բաբեկին, կտրելով նրա ձեռքերն ու ոտքերը և խաչելով նրան, ապա դա հայտնի է:

# ԱԲՈՒ ՀԱՆԻՖԱ ԱԼ-ԴԻՆԱՎԱՐԻ

# ՄԱՏՅԱՆ ԵՐԿԱՐԱՊԱՏՈՒՄ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԱԽԲԱՐ ԱԼ-ԹԻՎԱԼ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Խոսրով Անուշիրվան – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 6:

[2] Որմիզդ (Հորմուզդ) - Հավանաբար խոսքը Սասանյան արքա Որմիզդ Դ-ի (579-590) մասին է, որը հաջորդեց իր հորը՝ Խոսրով Ա Անուշիրվանին (531-579):

[3] Ռումի թագավորը - Արաբ պատմագիրների մոտ «ռում» բառը, որը «Հռոմ» անունից է ծագում, բազմաթիվ իմաստներով է օգտագործվում: Դա նշանակում է Բյուզանդիա (որը միշտ էլ կոչվել է Հռոմեական կայսրություն), Փոքր Ասիա, ինչպես նաև Հույներ: Այդ անունը տրվում է նաև Իկոնիայի սելջուկ սուլթանությանը, նույնիսկ օսմանյան ժամանակաշրջանում Փոքր Ասիան կոչվում էր Ռում: Երբ խոսքը բյուզանդական տիրապետության կամ Փոքր Ասիային է վերաբերում, մենք հայերենում պահպանել ենք Ռում արտահայտությունը, բայց երբ ժողովրդին է վերաբերում, ապա օգտագործել ենք հայ մատենագրության մեջ արմատացած «Հոռոմ» բառը: (Իբն ալ-Ասիր, էջ 370):

[4] ... եկավ խազարաց թագավորը – Խազարների խաքանը:

[5] Վահրամ Ջուբին – Վահրամ Ջուբինը տաղանդավոր զորավար էր, որին մեծ փառք բերեց փայլուն հաղթանակը Սասանյանների վտանգավոր թշնամու թյուրքական խաքան Շավայի և նրա 300 հազարանոց բանակի հանդեպ 590 թվականին՝ Ամու Դարիա գետի մոտ: Վահրամի ձեռքն ընկավ հսկայական ավար, որը նա չէր պատրաստվում կիսել որևէ մեկի հետ, ավելին նա հավակնում էր Սասանյան գահին: Օգտվելով Վահրամ Ջուբինի ապստամբությունից, ավագանին գահընկեց արեց Հորմիզդ արքային և նրա փոխարեն գահ բարձրացրեց Խոսրովին, սակայն վերջինիս բանակը պարտվեց Վահրամ Ջուբինի զորքին և Խոսրովը ստիպված էր փախչել Բյուզանդական Միջագետք: Որոշ տարածքային զիջումների դիմաց (Հայաստանի որոշ մասերի), բյուզանդացիները հատկացրին օգնություն: Սկսվեց մի յարված պայքար Խոսրովի ու Վահրամի միջև Միջագետքին տիրելու համար: Միջագետքի քաղաքները աստիճանաբար անցան Խոսրովին, իսկ Վահրամի բանակը քայքայվեց: Խոսրովը վերադարձրեց գահը 591 թվականին ու նույն տարում երկարատև հաշտություն կնքեց Բյուզանդիայի հետ: Նա պատմության մեջ մտավ որպես Խոսրով Բ Փարվեզ (591-628) (История Ирана, стр. 67):

[6] Իրանշահր – կամ Երանշահր. այսպես էր կոչվում Սասանյան Իրանը:

[7] Արտաշիր Պապական - Գ դարի սկզբին, երբ Արշակունիների իշխանությունը Իրանում թուլացել էր, հանդես եկավ Արտաշիր Պապականը: Նրա պապը՝Սասանը Անահիտ աստվածուհու տաճարի քուրմն էր, իսկ հայրը՝Պապակը, Իսթախր նահանգի կառավարիչն էր: Նրանք ծագում էին Պարս նահանգից և հենց այնտեղից սկսվեց Արտաշիրի վերելքը: Նա իր տիրույթներին միացրեց Իսֆահանի շրջանն ու Քիրմանը և ի վերջո, ներխուժեց Խուզիստան: 224 թվականի ապրիլի 20-ին Օրմիզդագան հովտում տեղի ունեցավ վճռական ճակատամարտ Արշակունի վերջին արքա Արտավան Ե-ի և Արտաշիր Պապականի բանակների միջև: Վերջինիս հաղթանակով վերջ գտավ Արշակունյաց հարստությունը Իրանում: 226 թվականին Արտաշիր Պապականը հանդիսավորապես հռչակվեց արքայից արքա՝ հիմք դնելով Սասանյան դինաստիայի: (История Ирана, стр. 39):

[8] *Խոսրով Պարուեզ – կամ Խոսրով Բ Փարվեզ. Սասանյան արքա 591-628 թվական-ներին: Է դարի սկզբում Սասանյան տերության միացրեց Բյուզանդիայի արևելյան ու հարավային նահանգները: Է դարի 20-ական թվականներին Բյուզանդիան, խազար-ների ու թյուրքերը դաշինքի մեջ մտնելով, յուրջ հակահարված տվեցին Սասանյաննե-րին, իսկ Բյուզանդական Հերակլ կայսեր արշավանքից ու մայրաքաղաք Տիզբոնի գրա-վումից հետո, Խոսրով Պարուեզը ավագանու կողմից գահընկեց արվեց ու սպանվեց:* (Сов. Ист. Энц., т. 15, стр. 645):

[9] *Մուշեղ – Մուշեղ Մամիկոնյանը, որը Հայաստանի բյուզանդական մասի դուքսն էր Զ դարի վերջին և Է դարի սկզբին: Երբ 589-ին Պարսկաստանում բռնկվեց Բահրամ (Վահրամ) Չուբինի ապստամբությունը, վերջինս օգնություն խնդրեց Մուշեղ Մամիկոնյանից՝ խոստանալով հաջողության դեպքում վերականգնել Հայոց թա-գավորությունն ընդարձակ սահմաններում: Մուշեղ Մամիկոնյանը մերժեց և, բյու-զանդական ու հայկական զորամասերի գլուխն անցած, ճնշեց ապստամբությունը, Խոսրով Բ-ին հաստատեց Սասանյանների գահին (591): Այնուհետև գլխավորեց հայոց այրուձին ընդդեմ Թրակիա ներխուժած ավարների, մի քանի հաղթանակ տարավ, բայց գերվեց նրանց կողմից և սպանվեց: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 8, էջ 81):*

[10] *Կադիսիյա – Այս անունով հայտնի են մի շարք վայրեր Իրաքում և Ջազիրայում: 637 թվականի նշանավոր ճակատամարտի վայրը գտնվում էր Հիրայից հարավ-արևմուտք և ապագա Քուֆայից հարավ: Այս ճակատամարտում արաբները կարևոր հաղթանակ տարան Սասանյանների նկատմամբ: Այն բացեց ճանապարհը դեպի Տիզ-բոն-Սելևկիա (al-Kadisiyya, L. Veccia Vaglerii, EOI, CD-ROM, (IV: 384a)):*

[11] *Քաֆուր – Կամֆորա*

[12] *Մարջ (Միջագետքի) – Գտնվում է Վերին Միջագետքում, Խառանի և Ռակկայի միջև:*

[13] *Մուավիա – Մուավիա իբն Աբու Սուֆիանը հիմնադիրն է Օմայան խալիֆայու-թյան: Իշխեց 661-680 թվականներին: Նա հենց սկզբից թշնամաբար էր տրամադրված Ալի խալիֆայի նկատմամբ և վերջինիս սպանությունից հետո անցավ իշխանության: (Muawiya I ibn Abi Sufyan, M. Hinds, EOI, CD-ROM, (VII: 263b)):*

[14] *Սիֆֆինի ճակատամարտ – Նշանավոր ճակատամարտ, որ տեղի ունեցավ 657 թվականին իրաքցիների (խալիֆա Ալի իբն Աբու Թալիբի գլխավորությամբ) և սիրիացիների (Սիրիայի կառավարիչ Մուավիայի գլխավորությամբ) միջև:*

*Ճակատամարտի վայրը՝ Սիֆֆինը մի ավերված բյուզանդական գյուղ է, որ գտնվում է Ռակկայից ոչ հեռու՝ Եփրատ գետի աջ ափին: Երկու բանակները երկար ժամանակ կանգնած էին դեմ-դիմաց ռազմի դաշտում, չցանկանալով կրոնակցի արյուն թափել: Ավելին, երկու կողմերում կային նույն ցեղի և նույնիսկ նույն ընտանիքի անդամներ: Ի վերջո ճակատամարտը տեղի ունեցավ և դադարեցվեց 657 թ. հուլիսին, առանց կողմերից որևէ մեկի հաղթանակի: Որոշվեց, որ հաշտարար խորհուրդը պիտի վճռի խալիֆայության ճակատագիրը: Ալիի կողմնակիցների մի մասը դեմ էին հաշտությանը, պահանջելով կռվել մինչև կողմերից որևէ մեկի հաղթանակը, դրանք Խարիջիներն էին, որոնք առանձնացան: Սիֆֆինի ճակատամարտը գահի համար մղվող պայքարից բացի իր հիմքում ուներ մահմեդական համայնքի ղեկավարի, կամ մարգարեի փոխանորդի դիրքին հասնելու երկու սկզբունքների – «ժառանգականու-թյան» և «ընտրելիության» սկզբունքների պայքարը: Պատահական չէ, որ հենց այդ ժամանակ ձևավորվեցին իսլամի երեք հիմնական ուղղությունները, որոնց հետևորդները կոչվեցին սուննիներ (ուղղափառ մահմեդականներ), շիիներ (Ալիի կողմնակիցներ) և խարիջիներ (անջատվող, դուրս եկողներ, ապստամբներ): (Siffin, M. Lecker, EOI, CD-ROM, (IX: 552b)):*

[15] *Յազիդ իբն Մուավիա – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 49:*

[16] Աբու Ջաֆար – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 70:

[17] Ռաշիդ – Հարուն ալ-Ռաշիդ: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 77:

[18] Յազիդ իբն Մազյադ – կառավարել է 787–788 թվականներին, սակայն ոչ անմիջապես Խուզայմայից հետո, ինչպես նշում է պատմիչը: Նրանց միջև կարճ ժամանակով Արմինիայի կառավարիչ եղավ Յուսուֆ իբն Ռաշիդ ալ-Սուլամին (787), որը կազմակերպեց արաբական ցեղերի գաղթը Հարավ-արևմտյան Հայաստան. Yaqubi, II, p. 426 (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրությունը):

[19] Սամառա – Քաղաք Տիգրիս գետի միջին հոսանքի արևելյան ափին, Բաղդադից 125 կմ դեպի հյուսիս: Աբբասյան խալիֆայության մայրաքաղաքն էր 836–892 թվականներին: Այդ վայրում հնագույն ժամանակներից կար բնակավայր: 834–835 թվականներին Մուտասիմ խալիֆան փնտրում էր իր համար նոր մայրաքաղաք: Պատճառը միջինասիական թյուրքերից կազմված թիկնազորի ու Բաղդադի բնակչության միջև կոնֆլիկտն էր: Այսպես հիմնվեց նոր մայրաքաղաք, որը կոչվեց՝ Սուռռա ման ռաա (Ով տեսնում հիանում է), ապա կրճատվեց կոչվելով Սամառռա: Սակայն արաբերեն արտահայտությունը պարզապես հարմարեցված մի բան էր, քանի որ իրականում դա աքքադական և շումերական Sur-marrati անվան աղավաղումն էր: (Samarra, A. Northedge, EOI, CD-ROM, (VIII: 1039a)):

[20] Բաբեկ – Սա Խուռռամյան (Խուռռամի) աղանդի ղեկավարն էր: Նրա անունը իրանական Պապակ անվան արաբացված ձևն է: Նրան նկատեց Խուռռամինների աղանդի ղեկավար Ջավիդան իբն Սահլը և նրան ընդգրկեց իր համախոհների մեջ: Շատ չանցած նա վախճանվեց և Բաբեկը հայտարարեց, որ իբր Ջավիդանի հոգին մտել է իր մեջ: Նա նոր շունչ տվեց այդ շարժմանը իր կենտրոնը դարձնելով Ատրպատականի Բազզ ամրոցը: Խուռռամյանների շարժումը մասամբ ծագում էր Մազդաքյան շարժումից: Մամուն խալիֆան այս շարժումը ճնշելու նպատակով մի շարք բանակներ ուղարկեց Բաբեկի դեմ, որոնք բոլորն էլ պարտություն կրեցին: Միայն 837 թվականին՝ Մուտասիմի օրոք, հնարավոր եղավ բռնել ու մահապատժի ենթարկել Բաբեկին: Խուռռամյան շարժումը Բաբեկի մահով վերջ չգտավ. այն իր հետնորդներն ուներ մինչև անգամ 11-րդ դարում: (Babak, D. Sourdel, EOI, CD-ROM, (I: 844a)):

[21] Բազզ – Այս վայրը Բաբեկի կենտրոնն էր հանդիսանում: Գտնվում էր այժմյան Թավրիզի Վիլաջ-չայ գետի վերին հոսանքում. այստեղ էր գտնվում պատմական Առուբեճան գավառը, որի տեղադրությունը որոշվում է այժմյան Արոս գյուղով: (Հակոբ Նալբանդյան. Արաբական աղբյուրներ, էջ 145):

[22] Նահանգի – Հավանաբար նկատի ունի Արցախը:

[23] Սմբատի որդի Սահլ (Սահլ իբն Սինբաթ) – Սահլ իբն Սինբաթը, կամ Սունբաթը հայ պատմիչների մոտ հայտնի է որպես Սահլ Սմբատեան, իսկ արաբ պատմիչները շատ հաճախ նրա անվանը կցում են «ալ-արմանի»՝ հայազգի բառը: Ն. Ադոնցը և ուրիշներ կարծում են, որ նրա հայրը՝ Սմբատը, Բագրատունի է: (Ադոնց, Պատմ. ուսումնասիրություններ, էջ 134–136. Minorsky, Sahl ibn Sunbat, XV/ 3, Բ. Ուլուբաբյան, Խաչենի իշխանությունը, էջ 50–64(Տե՛ս Իբն ալ-Ասիր, էջ 379 )):

## ԲԱԼԱՁՈՒՐԻ
(մահ. 892)

*Ահմադ իբն Յահյա իբն Ջաբիր իբն Դաուդ ալ-Բալադուրին (մահ. 892) պասական շրջանի պատմիչներից է: Նրա ուսուցիչներն էին Իբն Սաադը, ալ-Մադաինին ու Մուսաբ ալ-Զուբայրին, որոնց ազդեցությունն է կրել: Նա ծնվել ու իր կյանքի մեծ մասն անց է կացրել Բաղդադում, կամ նրա շրջակայքում: Ուսման նպատակով եղել է Դամասկոսում, Հոմսում և Անտիոքում:*

*Բալադուրին Մուտավաքքիլ խալիֆայի պալատում նադիմի (սեղանակից ընկեր) պաշտոնն ուներ: Հետագայում ևս նա մուտք ուներ պալատ, սակայն մյուս խալիֆաների հետ չուներ այդքան սերտ հարաբերություններ: Բալադուրին հեղինակ է երկու մեծ պատմական երկերի՝ «Ֆուտուհ ալ-Բուլդան» և «Անսաբ ալ-Աշրաֆ»:*

*«Ֆուտուհ ալ-Բուլդանը», մի այլ, ավելի ընդարձակ աշխատանքի համառոտ սարբերակն է: Այն սկսվում է Մուհամմադի մղած պատերազմների ու «Ռիդդայի» մասին հաղորդումներով, ապա շարադրվում է Ասորիքի, Ջազիրայի, Հայաստանի, Եգիպտոսի ու Մաղրիբի նվաճումը, ինչպես նաև Իրաքի ու Իրանի գրավումը:*

*Կարևոր նշանակություն ունեն Բալադուրիի հաղորդումները պաշտոնական գրասենյակների լեզուն հունարենից ու պարսկերենից արաբերենի անցկացնելու և Եգիպտոսից ուղարկված նամակների վրա մահմեդական սույթներ դնելու շուրջ Բյուզանդիայի հետ վեճի մասին: Արժեքավոր են տեղեկությունները հարկերի, դրամների ու արաբական դրի վերաբերյալ:*

*Մյուս երկը՝ «Անսաբ ալ-Աշրաֆ» անունով ծագումնաբանական բնույթի ծավալուն աշխատություն է:*

**Ներկա թարգմանությունը կատարված է 1959 թվականին Եգիպտոսում հրատարակված բնագրից. Futuh al-Buldan, Imam Abu l-Hasan al-Baladzouri, կազմող՝ Ridwan Muhammad Ridwan, al-Qahira, 1959.**

*(al-Baladhuri, (C. H. Becker [F. Rosenthal]), EOI, CD-ROM, (I: 971b),* Х. А. Р. Гибб, Арабская литература, Москва, 1960, стр. 128.

*Տե՛ս նաև.*

– *Liber expugnationis regionum auctore al-Beladsori. Ed. J. M. dc Goeje. Lugduni Batavorum, 1866.*

## ԲԱԼԱՁՈՒՐԻ

## ԵՐԿՐՆԵՐԻ ՆՎԱՃՈՒՄ
## (ՖՈՒՏՈՒՀ ԱԼ-ԲՈՒԼԴԱՆ)

### ԱՍՈՐԻՔԻ (ՇԱՄ) ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 115 - 116*

*Երբ Աբու Բաքրը[1] վերջացրեց հավատափոխների դեմ պայքարը, որոշեց զորք ուղարկել Ասորիք: Նա գրեց Մեքքայի, Թաիֆի[2], Եմենի ժողովրդին և Նաջդի[3] ու Հիջազի[4] բոլոր արաբ բդուիններին հրավիրելով սրբազան պատերազմի (ջիհադ) ու ոգևորելով հոռոմներից ստանալիք ավարով:*

*Ամեն կողմից եկան մարդիկ՝ շահ տենչացողն էլ, երկնային վարձատրություն ակնկալողն էլ և հավաքվեցին Մադինայում[5]: Նա [հրամանատարության] երեք դրոշ հանձնեց երեք հոգու՝ Խալիդ իբն Սաիդ իբն Ասի իբն Ումայյային, Բանու Ջումահ ցեղի դաշնակից Շուրահբիլ իբն Հասանային և Ամր իբն ալ-Աս իբն Վաիլ ալ-Սահմիին[6]: Այս դրոշները հանձնվեցին տասներեքերորդ տարվա (634-635) Սաֆար ամսի սկզբին (6 ապրիլ 634) հինգշաբթի օրը, այն բանից հետո, երբ զորքերը ճամբարում էին եղել ամբողջ Մուհառամ ամիսը (7 մարտ — 5 ապրիլ) ժայռոտ վայրերում, ուր Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը նրանց հետ աղոթում էր: [.......]*

*Աբու Բաքրը հրամայեց Ամր իբն ալ-Ասին ընթանալ Այլատի ճանապարհով՝ ուղղվելով դեպի Պաղեստին (Ֆիլասթին): Եզիդին հրամայեց Տաբուկի ճանապարհով գնալ, իսկ Շուրահբիլին՝ նույնպես նույն ճանապարհով: Ամեն մի ամիրի (հրամանատարի) սկզբում տվել էր երեք հազարական [զորք], սակայն շուտով Աբու Բաքրը նոր ուժեր ուղարկեց, մինչև որ ամեն մի ամիր ունեցավ յոթ հազար հինգ հարյուր, ապա նրանց ընդհանուր թիվը (գումարը) դարձավ քսանչորս հազար:*

*Վակիդին վկայում է, որ Աբու Բաքրը Ամրին նշանակել էր Պաղեստինի, Շուրահբիլին՝ Հորդանանի (Ուրդուն), իսկ Եզիդին՝ Դամասկոսի կառավարիչներ: Նա նշել էր, որ եթե պատերազմ լինի, ապա ընդհանուր հրամանատարն է այն գավառի կառավարիչը, ուր այդ բոլորն գտնվում էին: Պատմել է նաև [Վակիդին], որ նա Ամրին հրամայել էր,*

որ երբ բոլորը մի տեղում են լինում զինվորների հետ աղոթքը ինքը ղեկավարի. իսկ եթե [նրանք] տարբեր տեղերում են գտնվում, ամեն մեկի ամիրը թող աղոթի իր զինվորների հետ: Նա հրամայեց, որ ամեն մի ցեղն իր դրոշն ունենա:

Երբ Ամր իբն ալ-Ասը հասավ Պաղեստինի առաջին գավառը[7], դրեց Աբու Բաքրին հայտնելով թշնամու թվի մեծությունը, լավ սպառազինությունը, հողերի ընդարձակությունը և ռազմիկների մարտունակությունը: Այն ժամանակ Աբու Բաքրը գրեց Խալիդ իբն ալ-Վալիդ իբն ալ-Մուղիրա ալ-Մախզումիին[8], որն Իրաքում էր, հրամայելով նրան գնալ Ասորիք: Ասվում է, որ նա պատերազմի համար բոլոր ամիրների վրա ամիր (հրամանատար) էր նշանակվել, իսկ ուրիշներ գտնում են, որ Խալիդը ամիր էր միայն իր մարդկանց համար: Սակայն երբ մահմեդականները միասին պատերազմի մեջ էին լինում, պարտավոր էին նրան հրամանատար դարձնել իր քաջության, ռազմական հմտության և իմաստուն խորհուրդների համար:

Առաջին ընդհարումը մահմեդականների ու թշնամու միջև տեղի էր ունեցել Ղազզայի[9] գյուղերից մեկում, որը կոչվում էր Դասին և գտնվում էր նրանց (մահմեդականների) ու Ղազզայի պատրիկի միջև: Սաստիկ կռիվ տեղի ունեցավ, սակայն Ալլահը հաջողություն տվեց իր հավատարիմներին և թշնամիներին պարտության մատնեց, նրանց բազմությունը ցրեց և այս բոլորը կատարվեց նախքան Խալիդ իբն ալ-Վալիդի Ասորիք հասնելը: Եզիդ իբն Աբու Սուֆիանը գնաց այդ պատրիկին փնտրելու և երբ իմացավ, որ Պաղեստինի հողում՝ Արաբայում հռոմների մի ջոկատ կա, նրանց դեմ ուղարկեց Աբու Ումամա ալ-Սուդա իբն Աջլան ալ-Բահիլիին, որը ջարդեց նրանց, սպանեց նրանց պետին ու հեռացավ:

Աբու Միխնաֆը պատմում է, որ Արաբայի կռվի օրը հռոմների վեց զորավարներ եկել էին Արաբա երեք հազարով, իսկ Աբու Ումաման մի խումբ մահմեդական [ռազմիկների] հետ հարձակվեց ու հաղթեց, զորավարներից մեկին սպանեց, ապա մինչև ալ-Դուբբիյա հետապնդեց, ուր հաղթեց նրանց և մահմեդականները մեծ ավար վերցրեցին:

## ՀՈՐԴԱՆԱՆԻ ՄԱՍԻՆ

*էջ 124 – 125*

Պատմել է Մուհամմադ իբն Սահմ ալ-Անթաքին (Անտիոքացի), լսելով ուրիշ ծերունիներից, թե քառասունիեր թվականին (669) հռոմները հարձակվեցին ծովափերի վրա: Այդ ժամանակ նավաշինարան (սինաա) կար միայն Եգիպտոսում, իսկ Մուավիա իբն Աբու Սու-

ֆիանը հրամայեց հավաքել արհեստավորներին, ատաղձագործներին և գործի դրեց ծովափերում: Նավաշինարանը Հորդանանի Ակրա[10] (Աքքա) քաղաքում էր: [..........]

Վակիդին պատմել է, որ նավաշինարանը մնաց Ակրայում մինչև որ Մարուանի որդիները իշխանության գլուխ անցան և այն տեղափոխեցին Տյուրոս (Սուր)[11] և այնտեղ մնում է մինչև օրս: Իսկ հավատացյալոց իշխան Մուտավաքքիլ Ալալլահը երկու հարյուր քառասունյոթ (861-862) թվականին հրամայեց նավեր պատրաստել Ակրայում և բոլոր ծովափնյա վայրերում ու կայազորներ նշանակել:

## ԴԱՄԱՍԿՈՍ ՔԱՂԱՔԻ ԵՎ ՆՐԱ ՀՈՂԵՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ

էջ 127 - 128

Ասում են, որ մահմեդականները ալ-Մարջի[12] մոտ իրենց դեմ հավաքվածների հետ կռիվը վերջացնելուց հետո, տասնհինգ օր սպասեցին: Ապա վերադարձան Դամասկոսի պարիսպների մոտ տասնչորսերորդ տարվա Մուհառամի տասնվեցին (13 մարտ 635): Նրանք կռվով գրավեցին ալ-Ղութան[13] և նրա եկեղեցիները, իսկ [Դամասկոսի] բնակիչներն ամրացան և դարպասները փակեցին: Խալիդ իբն ալ-Վալիդը կանգ առավ քաղաքի Բաբ ալ-Շարկիի (Արևելյան դուռ) առջև՝ հինգ հազար հոգով, որոնց ստացել էր Աբու Ուբայդայից: [..........]

Եպիսկոպոսը, որը ռազմական գործողությունների սկզբին Խալիդին մթերք էր տվել, հաճախ կանգնում էր պարսպի մոտ: Մի անգամ նրան Խալիդի մոտ կանչեցին և երբ վերջինս եկավ, Խալիդը ողջունեց նրան ու զրուցեց նրա հետ: Մի օր եպիսկոպոսն ասաց նրան՝ ով Աբու Սուլայման, ձեր հաղթանակը մոտենում է, իսկ դու ինձ խոստում էիր տվել, ուստի եկ պայմանագիր կնքիր ինձ հետ այս քաղաքի համար: Խալիդը պահանջեց թանաքաման և թուղթ ու գրեց.

Հանուն Ալլահի ամենագութ, ամենողորմ.

Սա տվել է Խալիդ իբն ալ-Վալիդը Դամասկոսի բնակիչներին, առ այն, որ երբ մտնի քաղաքը, կերաշխավորի նրանց կյանքը, ունեցվածքը: Եկեղեցիներն ու քաղաքի պարիսպները չեն քանդվի և ոչ ոք նրանց տներում չի ապրի (չի գրավի): Դրա համար ունեն Ալլահի անվամբ երաշխավորագիրը, մարգարեի, խալիֆաների ու հավատացյալների հովանավորությունը և նրանք միայն բարիք կգտնեն, եթե վճարեն ջիզիան (գլխահարկը):

*Նշ 130 – 131*

*Ինձ պատմել է Աբու Ուբայդը, լսելով Հիշամ իբն Ամմարից, որը լսել էր ալ-Վալիդ իբն Մուսլիմից, իսկ վերջինս ալ-Աուզաիից, թե սկզբնական շրջանում Ասորիքում գլխահարկը վերցվում էր ամեն մի անձից մեկ ջարիբ[14] և մեկ դինար: Ապա Օմար իբն ալ-Խաթթաբը որոշեց ջիզիա վերցնել ոսկի դրամ օգտագործողներից՝ չորս դինար չափով, իսկ արծաթե դրամ օգտագործողներից՝ քառասուն դիրհեմ և դասերի բաժանեց ըստ հարուստի հարստության, աղքատի աղքատության և միջակի միջակության:*

*Հիշամն ասել է, որ լսել եմ, թե ինչպես մեր ծերունիններն ասել էին, որ հրեաները քրիստոնյաների նման դիմմի էին, նրանց հետ խարաջ էին վճարում՝ նրանց հետ ենթարկվելով պայմանագրին:*

*Որոշ զրույցների հեղինակներ ասում են, որ Խալիդ իբն ալ-Վալիդը, երբ պայմանագիր կնքեց Դամասկոսի բնակիչների հետ, ի չարս այլ պայմանների պահանջեց, որ ամեն մեկը պարտավոր է մեկ դինար ջիզիա, մեկ ջարիբ ցորեն, ինչպես նաև քացախ և ձեթ տալ մահմեդականների պարենավորման համար: [......]*

*Ասվել է նաև, թե Օմարը գրեց բոլոր նահանգների ռազմական հրամանատարներին, հրամայելով ջիզիա սահմանել բոլոր հասունացած տղամարդկանց, արծաթ օգտագործողներից պահանջելով քառասուն դիրհեմ ամեն անձից, իսկ ոսկի օգտագործողներից՝ չորս դինար: Նրանք պարտավոր էին որպես պարեն, մահմեդականներին տալ ցորեն ու ձեթ, ընդ որում, երկու մոդ[15] ցորեն և երեք կիսթ[16] (բաժին) ձեթ տալ ամեն ամիս Ասորիքում (Շամ) ու Ջազիրայում ապրող ամեն մահմեդականի: Նա պարտավորեցրեց տալ նաև յուղ, մեղր, չգիտեմ ինչ քանակությամբ: Իսկ Եգիպտոսում պարտավորեցրեց, որ ամեն մարդ ամսական մեկ արդար[17] [ցորեն] ու հագուստ տա և երեք օր հյուրասիրի [մահմեդականի]:*

*Նշ 136*

*Վերջացնելով իր գործը Դամասկոսում Աբու Ուբայդան գնաց Հիմս[18] և անցավ Բաալբեք[19] մոտով: Նրա բնակիչները երաշխավորագիր խնդրեցին ու հաշտություն: Նա հաշտություն կնքեց նրանց հետ, երաշխավորելով նրանց կյանքը, ունեցվածքն ու եկեղեցիները: Նա գրեց.*

*«Հանուն Ալլահի ամենագութ, ամենողորմ.*

*Աա երաշխավորագիր է տրված այսինչի որդի այնինչին և Բաալբեքի բնակիչներին՝ հոռոմներին, պարսիկներին ու արաբներին, ապահովելով նրանց կյանքը, ունեցվածքը, եկեղեցիները և տները,*

թե՛ քաղաքից ներս, թե՛ քաղաքից դուրս և նրանց ջրազացները: Հոռոմներին թույլատրվում է անասուն արածացնել իրենց բնակավայրից տասնհինգ մղոն հեռավորության վրա, սակայն թույլ չի տրվում բնակվել ուրիշ բնակելի վայրերում (գյուղերում): Իսկ երբ անցնեն Ռաբի և Ջումադա Ա ամիսները, կարող են գնալ ուր կամենան: Նրանցից ով ընդունի մահմեդականությունը, նույն իրավունքներն ու պարտականությունները կունենա, ինչ որ մենք ունենք: Վաճառականներին թույլատրվում է գնալ ուր կամենան, այն վայրերում (քաղաքներում), որոնց հետ պայմանագրեր ենք կնքել: Իսկ ով կմնա [իր կրոնին]՝ կվճարի ջիզիա ու խարաջ: Վկա է Ալլահը և նրա վկայությունը բավական է»:

## ՑԱՐՄՈՒՔԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

*ԼՁ 140 – 141*

Ասում են, որ Հերակլը անթիվ զորք հավաքեց, բաղկացած հոռոմներից, սիրիացիներից (Ասորիքի ժողովրդից) և Ջազիրայի ու Հայաստանի ժողովրդից: Նրանց թիվը մոտավորապես երկու հարյուր հազար էր: Նրան հրամանատար նշանակեց իր մերձավորներից մեկին, իսկ առաջապահի հրամանատար դարձրեց Ղասսան[20] ցեղից Ջաբալա իբն ալ-Այհամին, քրիստոնյա արաբների հետ, որոնք ապրում էին Ասորիքում և պատկանում էին Լախմ, Ջուզամ և այլ ցեղերի: Նա նպատակ ուներ կռվել մահմեդականների դեմ և եթե սրանք պարտվեին, ամեն ինչ լավ կլիներ, իսկ հակառակ դեպքում կհեռանար Ռումի երկիրը ու կմնար Կոստանդնուպոլսում:

Մահմեդականները հավաքվեցին և հոռոմների զորքը նույնպես շարժվեց նրանց կողմը: Ցարմուքի մոտ նրանք ամենադաժան ու կատաղի պատերազմն ունեցան, իսկ Ցարմուքը գետ է: Այդ օրը մահմեդականների թիվը քսանչորս հազար էր: Հոռոմները և նրանց հպատակները այդ օրը շղթայվեցին իրար, որպեսզի փախուստի մասին չմտածեն: Ալլահի օգնականությամբ նրանցից յոթանասուն հազար կոտորվեց, իսկ մնացորդները փախան ու պատսպարվեցին Պաղեստինում, Անտիոքում, Հալեպում, Ջազիրայում ու Հայաստանում:

*ԼՁ 141*

Աբու Ուբայդան Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին նշանակեց հեծելազորի հրամանատար, որն առաջ նետվեց ու թշնամուց կոտորեց՝ ում որ պատահեց:

Էջ 142 – 143

Երբ Հերակլը լսեց Յարմուքի ճակատամարտի մասին և թե ինչպես մահմեդականները կատաղի կռիվ էին մղել իր զորքի հետ, Անտիոքից փախավ Կոստանդնուպոլիս և անցնելով լեռնանցքը ասաց՝ մնաս բարով Ասորիք և ինչ հրաշալի երկիր է սա մեր թշնամիների համար, ակնարկելով Ասորիքի հողն ու նրա բազմաթիվ արոտավայրերը: Յարմուքի ճակատամարտը տեղի ունեցավ տասնհինգ թվականի Ռաջաբ ամսին (9 օգոստոս — 7 սեպտեմբեր 636):

Ինձ պատմել է Աբու Հաֆս ալ-Դիմաշկին, լսելով Սաիդ իբն Աբդ ալ-Ազիզից, թե նրան հաղորդել են, որ երբ Հերակլը, նախքան Յարմուքը, հավաքել էր իր զորքը մահմեդականների դեմ և վերջիններս իմացան, որ հոռոմները մոտենում են, ապա Եմեսայի բնակիչներին վերադարձրին այն հարկը (խարաջ), որ նրանցից վերցրել էին, ասելով՝ մենք այլևս ի վիճակի չենք ձեզ օգնել և պաշտպանել, ինքներդ ձեր մասին մտածեցեք: Ասացին Եմեսայի բնակիչները՝ ձեր իշխանությունը և արդարությունը մեզ ավելի դուր են գալիս, քան այն անարդարությունն ու վիրավորանքները, որին ենթարկվում էինք: Ձեր կառավարչի հետ մենք կարող ենք մեր քաղաքը պաշտպանել Հերակլի զորքերից: Հրեաներն ասացին՝ երդվում ենք Աստվածաշնչով (Թորա), որ Հերակլի կառավարիչը մեր քաղաք կմտնի միայն մեր պարտությունից ու ջախջախումից հետո: Եվ նրանք քաղաքի դարպասները փակեցին ու հսկողություն սահմանեցին:

Նույն ձևով վարվեցին նաև այլ քաղաքների քրիստոնյա ու հրեա բնակիչները, որոնք մահմեդականների հետ հաշտության պայմանագրեր էին կնքել: Նրանք ասում էին՝ եթե հոռոմներն ու նրանց հետևորդները մահմեդականներին հաղթեն, մենք կվերադառնանք մեր նախկին վիճակին, իսկ հակառակ դեպքում մենք կմնանք մեր ներկա վիճակում, քանի դեռ մահմեդականները բազմամարդ են: Երբ Ալլահի օգնականությամբ անհավատները փախուստյան մատնվեցին և հաղթանակ տարան մահմեդականները, այդ քաղաքների բնակիչները բացեցին իրենց քաղաքների [դարպասները], կանչեցին երաժիշտներին, որոնք դափ էին նվագում, սկսեցին զվարճանալ ու վճարեցին խարաջը: Ապա Աբու Ուբայդան գնաց Կիննասրինի ջունդը[21] ու Անտիոք և նվաճեց այն:

## ԿԻՆՆԱՍՐԻՆԻ ՋՈՒՆԴԻ ՈՒ ԱՎԱՍԻՄ[22] ԿՈՉՎԱԾ ՔԱՂԱՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*էջ 150 - 151*

Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը Յարմուքի շրջակայքում գործերը դասավորելուց հետո շարժվեց դեպի Եմեսա և կարգավորեց գործերը, ապա եկավ Կիննասրին:

Հալեպ քաղաքի մոտ կար մի բնակավայր, որը կոչվում էր Հալեբի Հադիր, ուր ապրում էին տարբեր մարդիկ՝ Տաննուխ ցեղի արաբներ և ուրիշներ: Աբու Ուբայդան նրանց պայմանագիր էր տվել գլխահարկ վճարելու պայմանով: Ապա նրանք իսլամ էին ընդունել և նրանք ու նրանց հետնորդներն ապրել էին մինչև հավատացյալների իշխան Ռաշիդի մահը: Այդ ժամանակ Հադիրի բնակիչները պատերազմեցին Հալեբի բնակիչների հետ՝ կամենալով նրանց արտաքսել [քաղաքից]: Նրա բնակիչներից հաշիմիները գրեցին իրենց շրջապատող արաբական ցեղերին՝ օգնություն խնդրելով: Առաջինը, որ օգնության հասավ, Աբբաս իբն Զուֆար իբն Ասիմ ալ-Հիլալին էր:

Սակայն Հադիրի բնակիչները չկարողացան դիմադրել Աբբասին ու նրա մարդկանց: Ուստի նրանք դուրս բերվեցին Հադիրից և այն ավերվեց. և սա պատահեց Մուհամմադ իբն Ռաշիդի ապստամբության օրոք: Նրանք տեղափոխվեցին Կիննասրին և բնակիչները ուտելիք ու հագուստ հայթայթեցին նրանց: Սակայն երբ քաղաք մտան, կամեցան գրավել այն, ուստի նրանց արտաքսեցին և երկրում ցրվեցին: Ոմանք Տիքրիտում[23] հաստատվեցին և ես տեսել եմ նրանց, ոմանք էլ՝ Հայաստանում ու տարբեր երկրներում:

## ՄԱՐԴԱՅԻՏՆԵՐԻ (ՋԱՐԱՋԻՄԱ)[24] ՄԱՍԻՆ

*էջ 163 - 167*

Ինձ պատմել են Անտիոքի ծերունիները, թե մարդայիտները (ջարաջիմա) Ամանոս (Լուքքամ)[25] լեռների վրա գտնվող մի քաղաքում էին ապրում, որն ընկած էր Մաադան ալ-Զաջի (արջասպի հանք) մոտ, Բայասի ու Բուկայի միջև և կոչվում էր Ջարջումա:

Երբ հռոմները իշխում էին Ասորիքում և Անտիոքում նրանք (մարդայիտները) ենթակա էին Անտիոքի պատրիկին ու կառավարչին: Իսկ երբ Աբու Ուբայդան եկավ Անտիոք ու նվաճեց, սրանք փակված մնացին իրենց քաղաքում, սակայն վախենալով իրենց անձերի համար, կամեցան գնալ ու միանալ հռոմներին: Մահմեդականները նրանց ուշադրություն չդարձրին և նրանք էլ ուշադրություն չհրավի-

*րեցին: Ապա Անտիոքի ժողովուրդը խախտեց պայմանն ու դավաճանեց և Արու Ուրայդան [զորք] ուղարկեց այն կրկին նվաճելու, կառավարիչ նշանակելով Հարիր իբն Մասլամա ալ-Ֆիհրիին: Սա արշավեց Ջարջումա, սակայն բնակիչները չդիմադրեցին, այլ անմիջապես երաշխավորագիր (աման) ու հաշտություն խնդրեցին: Նրանց հետ հաշտություն կնքվեց այն պայմանով, որ լինեն մահմեդականների օգնականներն ու նրանց լրտեսները և դառնան սահմանային կայազոր (մասալիհ) Ամանոս լեռներում: Ջիզիա չէին վճարելու և կարող էին իրենց պահել թշնամուց վերցված ավարը, եթե նրանց (մահմեդականների) հետ արշավանքների մասնակցեին: Այս պայմանագիրը վերաբերում էր նաև բոլոր նրանց քաղաքում ապրողներին՝ վաճառականներին, ծառայություն կատարողներին, հպատակներին, լինեն արամեացի (նաբթ), թե ոչ, ինչպես նաև գյուղացիներին: Սրանք կոչվեցին հետևորդներ, քանզի պայմանագրում նրանցից (մարդայիաններից) հետո էին հիշված, սակայն նրանցից չէին: Ասվում է նաև թե նրանք հետևեցին [մարդայիտներին], երբ գալիս էին մահմեդականների ճամբարը և այդ պատճառով կոչվեցին հետևորդներ:*

*Մարդայիտները մերթ հպատակ էին կառավարիչներին և մերթ ապստամբում էին ու նամակագրություն ունեին հոռոմների հետ՝ համակրանք ցուցաբերելով նրանց: Իբն ալ-Զուբայրի ապստամբության օրերին, երբ Մարուան իբն ալ-Հաքամը մեռավ և Աբդ ալ-Մալիքը, որը նշանակված էր ժառանգորդ և ձգտում էր խալիֆա դառնալ, պատրաստվում էր շարժվել դեպի Իրաք Մուսաա իբն Զուբայրի դեմ պայքարելու, հենց այդ ժամանակ հեծյալները իրենց զորավարներից մեկի հրամանատարության տակ, հարձակվեցին Ամանոս լեռների կողմը, ապա հասան Լիբանան: Նրանց միացել էին մարդայիտների, արամեացիների և մահմեդականների մոտից փախած ստրուկների մեծ խմբեր: Աբդ ալ-Մալիքը ստիպված եղավ նրանց հետ հաշտություն կնքել շաբաթական հազար դինար վճարելու պայմանով: Նա հաշտություն կնքեց նաև հոռոմների բռնապետի հետ որոշակի գումար վճարել պարտավորվելով, քանզի զբաղված լինելով ի վիճակի չէր պատերազմել նրա դեմ և վախենում էր, որ եթե նա հարձակվի Ասորիքի վրա, կհաղթի: Այսպիսով նա կրկնեց Մուավիային, որը նման պայմանագիր էր կնքել, երբ զբաղված էր Իրաքի մարդկանց դեմ պայքարելով: Նա համաձայնվել էր որոշ գումար վճարել և նրանցից պատանդներ վերցնելով տարել պահել էր Բաալբեքում: Սրան զուգադիպեց այն, որ Ամր իբն Սաիդ իբն Ալ-Ասիը խալիֆայությունը վերցնելու նպատակով փակել էր Դամասկոսի դռները, հենց որ Աբդ ալ-Մալիքը հեռացել էր և սա առավել ևս բարդացրել էր Աբդ ալ-Մալիքի վիճակը: Այս ամենը կատարվել էր յոթանասուն (25 հունիս 689 – 14 հունիս 690) թվականին:*

Ապա Արդ ալ-Մալիքը հռոմի (զորավարի) դեմ ուղարկեց Սահիմ իբն ալ-Մուհաջիրին, որը ծպտված քաղցր խոսեց, սիրաշահեց ու մերձենալով նրան, բարեկամ ձևացավ ու սկսեց բամբասել Արդ ալ-Մալիքին, հայհոյեց նրան և նրա վստահությունը շահեց խաբելով. ապա հանկարծակի հարձակվեց Արդ ալ-Մալիքի մառլաններով ու զինվորներով, որոնց նախապատրաստել էր կռվի համար և պահել հարմար վայրում: Նա սպանեց նրան (զորավարին) և նրա մոտ եղած հռոմներին: Ապա հայտարարեց, որ երաշխավորագիր էր տալու նրանց, ովքեր միացել էին հռոմ զորավարին:

Այսպիսով մարդայիտները ցրվեցին Եմեսայի ու Դամասկոսի գյուղերում, իսկ մեծամասնությունը վերադարձավ իրենց քաղաքը Ամանոս լեռներում, արամեացիք եկան իրենց գյուղերը, իսկ ստրուկները վերադարձան իրենց տերերի մոտ: Վերջիններից էր Մայմուն ալ-Ջուրջումանին, որը Մուավիա իբն Աբու Սուֆիանի քրոջ տոհմի (Սակի ցեղին պատկանող) հռոմ ստրուկն էր և համարվել էր մարդայիտ նրանց հետ շփում ունենալու և Լիբանանի լեռներում միասին կռվելու պատճառով: Արդ ալ-Մալիքը լսելով նրա քաջության ու կորովի մասին, նրա տերերից պահանջեց ազատ արձակել նրան և նրանք այդպես էլ արեցին ու նա բերվեց Անտիոք: Նա Մասլամա իբն Արդ ալ-Մալիքի հետ, հազար անտիոքացի ռազմիկներով արշավեց Տիանա և քաջաբար կռվեց ու նահատակվեց: Արդ ալ-Մալիքը նրա մահվան առթիվ զայրացավ և մեծ զորք ուղարկեց Ռումի զեմ նրա վրեժը լուծելու նպատակով:

Ութսունինը (1 դեկտեմբեր 707–19 նոյեմբեր 708) թվականին մարդայիտները հավաքվեցին իրենց քաղաքում, նրանց մոտ եկան նաև զինված հռոմներ Ալեքսանդրեկից[26] ու Ռոսսիսից[27]: Ապա Վալիդ իբն Արդ ալ-Մալիք [խալիֆան] ուղարկեց Մասլամա իբն Արդ ալ-Մալիքին, որը հարձակվեց մեծ բազմությամբ ու նվաճեց այն [քաղաքը] և պայման դրեց, որ կարող են Ասորիքում բնակվել ուր կամենան, նրանցից ամեն մեկն ստանալու էր ութ դինար, իսկ ամեն ընտանիք ստանալու էր ցորեն ու ձեթ, ընդ որում երկու մոդ ցորեն և երկու կիսոթ ձեթ: Նրանց, ինչպես նաև կանանց ու երեխաներին չէին ստիպելու քրիստոնեությունից հրաժարվել, նրանք կարող էին մահմեդականի տարազ կրել, նրանցից, ինչպես նաև երեխաներից ու կանանցից ջիզիա չպետք է գանձեին: Սակայն նրանք պարտավոր էին մահմեդականների հետ մասնակցել արշավանքներին, թշնամուց վերցրած ավարը կարող էին իրենց պահել, եթե նրա հետ մենամարտել էին: Նրանց առևտրից, հարուստների ունեցվածքից պետք է վերցվեր նույն հարկը, որ վերցվում էր մահմեդականների ունեցվածքից:

Ապա [Մասլաման] կործանեց նրանց քաղաքը, իսկ նրանց իջեցրին

ու բնակչերին Հիմար յեռան շուրջը, և Սունհ ալ-Լուլուն ու Ամկ Տիզին վայրերում: Ոմանք գնացին Եմեսա: Ջարջումա [քաղաքի] պատրիկը մի խումբ մարդկանց հետ գնաց Անտիոք, ապա փախավ հռոմների երկիրը: Հարկահաններից մեկը Անտիոքի մարդայիտներին պարտադրել էր ջիզիա վճարել, սակ նրանք այդ մասին բողոքեցին Վալիդ Բիլյահ խալիֆային և նա հրամայեց այդ բանը չպահանջել:

Ինձ պատմել է մի վստահելի անձնավորություն, որը գրագիր է, թե Մուտավաքքիլ Ալալլահ [խալիֆան] ջիզիա էր վերցրել այդ մարդայիտներից, իսկ սահմանված կերակուրը պետք է տրվեր, քանի որ նրանք սահմանային կայազորի դեր էին կատարում: Աբու-լ-Խաթթաբ ալ-Ազդին գտնում է, թե երբ մարդայիտները Աբդ ալ-Մալիքի օրոք ասպատակում էին Անտիոքի գյուղերը և Ամկը, իսկ երբ ամառային արշավանք էր լինում, ետ մնացող ռազմիկների ճանապարհն էին կտրում, ինչպես նաև ում որ գտնեին զորքի թիկունքում: Նրանք այնքան վնաս էին պատճառել մահմեդականներին, որ Աբդ ալ-Մալիքը հրամայել էր, որ Անտիոքի բնակիչների ու արամեացիների մի մասին ռոճիկ նշանակվի՝ զարձնելով նրանց կայազոր և ստիպելով, որ ամառային արշավանքի վերջապահ զորքի ետևից գնային: Այս պատճառով էլ նրանց կոչել էին հետևորդներ: Սակայն ստույգ է առաջին տեղեկությունը:

Ինձ պատմել է Աբու Հաֆս ալ-Շամին, լսելով Մուհամմադ իբն Ռաշիդից, իսկ սա Մաքհուլից, թե Մուավիան քառասունմեր կամ հիսուն (29 հունվար 670 — 17 հունվար 671) թվականին [Միջերկրական] ծովի ափերը տեղափոխեց Բասրայի ծաթերին (զութթ) և Սիյաբիջաներին[28], իսկ մի մասին՝ հաստատեց Անտիոքում: Ասել է Աբու Հաֆսը, և Անտիոքում կա մի թաղամաս, որը կոչվում է Զութթ: Վալիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] Անտիոք էր փոխադրել Սինդի ծաթերին, որոնց բերել էր Մուհամմադ իբն Կասիմը Հաջջաջի համար, իսկ վերջինս ուղարկել էր Ասորիք:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը վերցնելով Վակիդիից, թե Լիբանանի լեռներում մարդիկ ընդվզեցին Բաալբեքի հարկահանի (ամիլ խարաջ) դեմ: Սալիհ իբն Ալի իբն Աբդալլահ իբն Աբբասը զորք ուղարկեց, որը կոտորեց նրանց ռազմիկներին, մնացածներին թույլ տալով պահել իրենց կրոնը (քրիստոնեությունը) ու վերադառնալ իրենց գյուղերը, իսկ Լիբանանի ժողովրդի մի մասին արտաքսեց:

Ինձ պատմել է Կասիմ իբն Սալամը, լսելով Մուհամմադ իբն Քասիրից, թե Աուզաին երկար նամակ է գրել Սալիհին, որից պահպանվել է հետևյալը. «Դու իմացել ես Լիբանանի լեռներից զիմմայի մարդկանց դուրս քշելու մասին, որոնք ապստամբներ չեն եղել, նրանց մի մասին կոտորել են, իսկ մնացածներին վերադարձրել են գյուղերը:

*Ինչպե՞ս կարելի է առանձին մարդկանց հանցանքի պատճառով բոլորին դատապարտել, արտաքսել իրենց երկրից ու վերցնել ունեցվածքը: Չէ՞ որ Ալլահը դատել է. «Ոչ ոք ուրիշի համար չպետք է պատասխանատու լինի»: Սա է արդար լուծումը, որին պետք է հետևես: Պատգամը, որին պետք է հնազանդվես դա՝ մարգարեի պատգամն է. «Եթե մեկն անիրավություն գործի նրան, ով մեզ հետ պայմանադիր ունի և նրանից պահանջի կարողությունից ավելին, ես նրա հակառակորդն եմ»: Սրան ավելացրել էր նաև այլ մեջբերումներ:*

*Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սահմ ալ-Անթաքին, թե լսել է Մուավիա իբն Ամրից, իսկ սա Աբու Իսհակ ալ-Ֆազարիից, թե Օմայյանները արշավում են Ռումի երկիրը Ասորիքից ու Ջազիրայից հավաքված զորքով՝ կատարելով ամառային ու ձմեռային դրոհներ Ասորիքի ու Ջազիրայի սահմանային ամրություններից այն կողմ: Նրանք նավեր էին կանգնեցնում արշավանքի ժամանակ ու հսկում էին ծովափերը և երբ իմանում էին, որ թշնամին հզոր ու զգաստ է, արշավանքից հրաժարվում էին կամ ուշացնում այն:*

*Երբ Աբու Ջաաֆարը դարձավ խալիֆա, ստուգեց ծովեզերյա բերդերը, քաղաքները, շենացրեց, ամրացրեց, վերակառուցեց ինչ որ նորոգման կարիք էր զգում: Նույնն արեց սահմանային ամրությունների (սուղուր) դոտու քաղաքներում: Երբ խալիֆա դարձավ Մահդին, ավարտեց մնացած քաղաքների ու բերդերի շինարարությունը և ուժեղացրեց կայազորները: Ասել է Մուավիա իբն Ամրը՝ տեսել ենք, թե ինչպես հավատացյալց իշխան Հարունը մեծ ջանասիրությամբ արշավանքներ կատարեց, առաջնորդեց սրբազան պայքարը (ջիհադ) և իրոք մեծ գործեր իրագործեց: Նավաշինարաններ պատրաստեց, որոնք նախկինում չկային, կալվածներ բաժանեց սահմանային ամրությունների գոտում և ծովեզերյա [վայրերում], ճնշեց հռոմեներին ու հաղթեց նրանց: Իսկ Մուտավաքքիլ Ալալլահը հրամայեց նավեր կանգնեցնել բոլոր ծովափերին և ռազմիկներով լցնել: Սա կատարվեց երկու հարյուր քառասունյոթ (17 մարտ 861 – 6 մարտ 862) թվականին:*

## ԱՍՈՐԻՔԻ (ՇԱՄ) ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ԱՄՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ (ՍՈՒՂՈՒՐ) ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 168 - 176*

*Ինձ պատմել են Անտիոքի բնակիչներից ծերունիները և ուրիշներ, որ մահմեդական [պետության] Ասորիքի սահմանային ամրությունների շրջանն, Օմարի ու Օսմանի օրոք և դրանից հետո, բաղկացած է եղել Անտիոքից և այլ քաղաքներից, որոնց ամբողջությունը հետա-*

գայում Ռաշիդը անվանել է Ավասիմ։ Մահմեդականներն արշավում էին դրանցից այն կողմ, ինչպես այժմ արշավում են Տարսոնից այն կույմ [գտնվող հողերը]։ Ալեքսանդրեկի և Տարսոնի միջև եղել են հոռոմների բերդեր ու կայազորներ (մասալիհ), որոնցով այսօր [ազատ] անցնում են մահմեդականները, իսկ մի ժամանակ դրանց բնակչությունը վախից լքել ու հեռացել էր Ռումի երկիրը ու բերվել էին հոռոմ ռազմիկներ զբանք ամրացնելու։ Հերակլը Անտիոքից հեռանալու ժամանակ այս քաղաքների բնակչությունն իր հետ է տարել, որպեսզի մահմեդականները չկարողանան չեն տարածության միջով անցնել Անտիոքից Ռումի երկիրը դնալիս։

Պատմել է Իբն Թուսուն ալ-Բաղրասին, լսելով որոշ ծերունիներից, թե ասել են՝ մեր իմացածն այն է, որ Հերակլը այդ բերդերի մարդկանց իր հետ տարավ ու [բերդերը] կործանեց և երբ մահմեդականներն արշավում էին, այնտեղ ոչ ոքի չէին գտնում։ Երբեմն հոռոմ ռազմիկները դարան էին մտնում և հանկարծակի հարձակվում ետ մնացողների կամ հեռացողների վրա։ Այդ պատճառով ձմեռային ու ամառային արշավանքների զորավարները երբ հարձակվում էին Ռումի երկիրը, մեծաթիվ զորք էին թողնում [որպեսզի հսկեն] մինչև իրենց վերադարձը։

Պատմողները տարակարծիք են այն մասին, թե ով առաջինը կտրեց անցավ լեռնանցքը (դարբ) այսինքն Բաղրասի լեռնանցքը[29]։ Ոմանք ասում են, թե այն անցավ Մայսարա իբն Մասրուկ ալ-Աբսին, որին ուղարկել էր Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը։ Սա հանդիպեց հոռոմների մի զորամասի, որի հետ էին Ղասսան, Տաննուխ և Իյադ ցեղի քրիստոնյա արաբները և կամենում էին միանալ Հերակլին։ Նա հաղթեց նրանց և մեծ կոտորած արեց։ Ապա նրան օգնության հասավ Մալիք ալ-Աշտար ալ-Նախաին, որն ուղարկված էր Անտիոքում գտնվող Աբու Ուբայդայի կողմից։

Ոմանք էլ ասում են, թե առաջինն, որ լեռնանցքն անցավ Օմար իբն Սաադ ալ-Անսարին էր, երբ ուղարկվել էր Ջաբալա իբն ալ-Այհամի հարցով։ Ասել է Աբու-լ-Խաթթաբ ալ-Ազդին՝ լսել եմ, թե Աբու Ուբայդան անձամբ ամառային արշավանք է կատարել, անցել Մամեստիան և Տարսոնը, որոնց ինչպես նաև մերձակա բերդերի բնակչությունը հեռացել էր, իսկ ինքը հարվածելով թշնա-մուն արշավել էր մինչև Զանդա։ Մեկ ուրիշն ասել է, թե իրականում նա ուղարկել է Մայսարա իբն Մասրուկին, որը հասել է Զանդա։

Ինձ պատմել է Աբու Սալիհ ալ-Ֆառան, լսելով Դամասկոսի բնակիչներից մեկից, որը կոչվում է Աբդալլահ իբն ալ-Վալիդ իբն Հիշամ իբն ալ-Ղազ, որը նույնպես լսել է Ուբադա իբն Նասիից, որը համարվում է Իբն Սալիհը, թե երբ Մուավիան քսանհինգ (28 հոկտեմբեր 645 — 16 հոկտեմբեր 646) թվականին արշավեց Ամորիոն, գտավ որ

Անտիոքի ու Տարսոնի միջև գտնվող բերդերը լքված են և այնտեղ Ասորիքի, Ջազիրայի ու Կիննասրինի մարդկանցից զորք տեղավորեց. մինչև արշավանքից վերադառնալը: Սրանից մեկ կամ երկու տարի հետո Եզիդ (Յազիդ) իբն ալ-Հուռ ալ-Արսիին ամառային արշավանքի ուղարկեց ու հրամայեց նույնը կրկնել և բոլոր կառավարիչները նույնը կրկնում էին: Նույն անձնավորությունն ասել է, թե «Մուավիայի արշավանքների գրքում» գտել եմ, որ գրված է թե երեսունմեկ թվին (24 օգոստոս 651 — 11 օգոստոս 652) Մուավիան արշավել է Մամեստիայի կողմից ու հասել Դորիլիում[30] (Դարաուլիյա) և վերադարձի ճանապարհին մինչև Անտիոք, ամեն մի բերդի կողքով անցնելիս քանդել է:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը՝ վերցնելով Վակիդիից և ուրիշներից, թե ութսունչորս (24 հունվար 703 — 13 հունվար 704) թվականին ամառային արշավանքը գլխավորեց Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը, որն անցավ Անտիոքի լեռնանցքից ու հասավ Մամեստիա, ուր վերակառուցեց բերդը հին հիմքերի վրա: Նա տեղավորեց զինվորների, որոնցից երեք հարյուր հոգու ինքն էր ընտրել իբրև անվախ և քաջ [ռազմիկների]: Դրանից առաջ մահմեդականները երբեք այստեղ չէին ապրել: Նա մզկիթ կառուցեց Տալլ ալ-Հիսնի (բերդի բլուր) վրա, ապա իր զորքով հարձակվեց Սինան բերդի վրա ու գրավեց: Նա ուղարկեց Եզիդ իբն Հունայն ալ-Թաի ալ-Անթաքիին, որն արշավեց ու վերադարձավ նրա մոտ:

Ասել է Աբու-լ-Խաթթաբ ալ-Ազդին, թե մահմեդականության օրոք Աբդ ալ-Մալիք [խալիֆան] առաջինն էր, որն իր որդու՝ Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիքի ձեռքով ութսունչորս թվականին կառուցել է Մամեստիայի բերդը հին հիմքերի վրա և կառուցումն ու մատակարարումն [զենքով ու մթերքով] ավարտել է ութսունհինգ (14 հունվար 704 — 1 հունվար 705) թվականին: Բերդում եղել է եկեղեցի, որը շտեմարանի է վերածվել: Անտիոքից դուրս եկող առաջապահ զորքերը ամեն տարի գալիս էին այստեղ, ձմեռում, ապա վերադառնում և նրանց թիվը լինում էր հազար հինգ հարյուրից երկու հազար:

Օմար իբն Աբդ ալ-Ազիզ խալիֆան անձամբ եկավ և այցելեց Մամեստիայի շտեմարանը ու կամեցավ քանդել քաղաքը, ինչպես նաև նրա ու Անտիոքի միջև գտնվող բերդերը: Նա ասել է՝ չեմ սիրում, որ հռոմները պաշարում են նրա բնակիչներին: Սակայն մարզիկ նրան բացատրեցին, որ հենց դրա համար է կառուցված, որ դիմագրի հոռոմներին Անտիոքի դեմ արշավանքի դեպքում և եթե դա քանդվի, թշնամին մինչև Անտիոք արգելքի չի հանդիպի: Նա թողեց ու բնակիչների համար մայր մզկիթ կառուցեց Քաֆարբայայի կողմում: Այստեղ ջրապահեստ (տահրիջ) կառուցել տվեց, որի վրա նրա անունն էր գրված: Մզկիթը, որը կոչվում էր բերդի մզկիթ, Մուտասիմ

խալիֆայի օրոք արդեն քանդվել էր:
Ապա Հիշամ Աբդ ալ-Մալիք [խալիֆան] կառուցեց նրա արվարձանը, իսկ Մարուան իբն Մուհամմադ [խալիֆան] կառուցեց փայտաշեն անեը Պիրամոսի (Ջայհան) արևելյան ափին և նրա շուրջը պարիսպ քաշեց, փայտե դարպաս շինեց ու խրամատ փորեց: Երբ Աբուլ-Աբբասը խալիֆա դարձավ, Մամեստիայի կայազորի վրա հավելյալ չորս հարյուր հոգու համար ռոճիկ նշանակեց ու հողամասեր բաժանեց: Երբ Մանսուրը խալիֆա դարձավ, Մամեստիայում չորս հարյուր հոգու համար ռոճիկ նշանակեց, իսկ հարյուր երեսունհինը (5 հունիս 756 — 24 մայիս 757) թվականին հրամայեց վերակառուցել Մամեստիա քաղաքը, որի պարիսպը երկրաշարժից քանդվել, քայքայվել էր և քաղաքի ներսում քիչ բնակիչներ էին մնացել:Նա քաղաքի պարիսպը վերակառուցեց, հարյուր քառասուն (25 մայիս 757 — 13 մայիս 758) թվականին մարդկանց բնակեցրեց և այն անվանեց ալ-Մամուրա (շենացած), նրանում մայր մզկիթ կառուցեց հին մեհյանի տեղում և Օմարի մզկիթից մի քանի անգամ մեծ դարձրեց: Մամուն [խալիֆան], երբ Աբդալլահ իբն Թահիր իբն ալ-Հուսայնը Մաղրիբի կառավարիչ էր, այն (մզկիթը) ավելի մեծացրեց: Դեռ Մանսուրը հազար ռազմիկի համար ռոճիկ էր նշանակել, ապա փոխադրեց փայտե տների բնակիչներին՝ պարսիկներին, սլավոններին (սակալիբա) և քրիստոնյա նաբաթեներին (արամեացիք), որոնց այնտեղ բնակեցրել էր Մարուանը, հողամասեր հատկացրեց քաղաքում նրանց հին տների փոխարեն, նույն չափով, իսկ հին տները քանդեց ու նորերը կառուցելու օգնեց: Այս զորականներին նա հատկացրեց հողամասեր ու բնակարաններ: Երբ խալիֆա դարձավ Մահդին, Մամեստիայում երկու հազար ռազմիկի համար ռոճիկ նշանակեց, սակայն հողային կալվածներ չտվեց, քանզի քաղաքն արդեն կանոնավոր զորքով ու կամավորներով ապահոված էր: Պարբերաբար եկող առաջապահ զորքերը շարունակեցին ամեն տարի գալ Անտիոքից մինչև Սալիմ ալ-Բարալլուսիի կառավարիչ դառնալը, որը հինգ հարյուր ռազմիկների համար ռոճիկ նշանակեց, որոշելով ամեն մեկին տալ տասական դինար: Այսպիսով քաղաքում եղածները (զորք ու բնակչություն) բազմացան և ուժեղացան: Այս դեպքերը կատարվեցին Մահդի խալիֆայի օրոք:
Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սահմը, լսելով սահմանային ամրությունների շրջանի ծերունիներից (շեյխերից), թե հռոմները ճնշում բանեցրին Մամեստիայի [մահմեդական] բնակիչների վրա, պահանջելով քաղաքից դուրս գալ և նրանք դուրս եկան: Սակայն Սալիհ իբն Ալին ուղարկեց Ջաբրիլ իբն Յահիա ալ-Բաջալիին, որը հարյուր քառասուն (25 մայիս 757 — 13 մայիս 758) թվականին վերաշինեց քաղաքը և մահմեդականների բնակեցրեց: Ռաշիդ [խալիֆան]

կառուցեց Քաֆարբայան, սակայն ասվում է, որ նրա շինությունն սկսվել է Մահդիի խալիֆայության օրոք, իսկ Ռաշիդը բարեփոխել է շինվածքը և ամրացրել խրամատով: Ապա Մամունին բողոք ներկայացվեց քաղաքի տների աղության մասին և նա վերացրեց [վարձը]: Նրանց տները իշխանատների, պանդոկների նման էին: Նա հրամայեց քաղաքի շուրջը պարիսպներ կառուցել և բարձրացնել, սակայն չկարողացավ ավարտել մահվան պատճառով: Մուտասիմ Բիլլահը հրամայեց ավարտել ու պատշաճ բարձրության հասցնել:

Մուսակկաբ բերդը ամրացրել է Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] Հասսան իբն Մաավայհ ալ-Անթաքիի ձեռքով: Երբ եկավ տեսավ, որ փորվող խրամատի մեջ մի սաստիկ երկար սրունքի ոսկոր է գտնվել, ուղարկել տվեց Հիշամին:

Հիշամը կառուցեց Կաթարղաշ բերդը Աբդ ալ-Ազիզ իբն Հայյան ալ-Անթաքիի ձեռքով: Հիշամը կառուցեց նաև Մաուրա բերդը Անտիոքից եկած մի մարդու միջոցով: Սրա կառուցման առիթն այն էր, որ հոռոմները նրա (Հիշամի) դեսպաններից մեկին խանգարեցին Ամանոսի լեռնանցքում ալ-Ակաբա ալ-Բայդայի (սպիտակ լեռնանցք) մոտ, ուստի նա քառասուն հոգու և մի խումբ մարդայիտների (ջարաջիմա) նշանակեց, իսկ Բաղրասում դրանց հիսուն հոգուց կայազոր և դրա համար մի բերդ կառուցեց: Հիշամը կառուցեց նաև Բուկա բերդը Անտիոքի գավառում, որը վերջերս վերանորոգվեց ու բարեկարգվեց: Մուտասիմ Բիլլահի խալիֆայության ժամանակ Մուհամմադ իբն Յուսուֆ ալ-Մարուազին, որը հայտնի է Աբու Սաիդ անվամբ, կառուցեց մի բերդ Անտիոքի ծովի ափին, հոռոմների այնտեղ կատարած հարձակումից հետո:

Ռակկայի[31] դատավոր Դաուդ իբն Աբդ ալ-Համիդը պատմել է լսելով իր հորից, իսկ վերջինս իր պապից, թե Օմար իբն Աբդ ալ-Ազիզը [խալիֆան] կամեցել է քանդել Մամեստիան ու բնակիչներին այնտեղից փոխադրել, քանզի հոռոմներից շատ էին նեղվում, սակայն նախքան իրագործելը մահացել է:

Անտիոքի և Բաղրասի բնակիչներից ոմանք ինձ պատմել են, թե Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը, երբ արշավել էր Ամորիոն, իր հետ էր տարել իր կանանոցը ու նրա մարդիկ ևս իրենց հետ էին տարել իրենց կանանց: Օմայանններն այս բանն անում էին, որպեսզի իրենց կանանց պատվի համար [ռազմիկները] լավ կռվեն: Երբ Բաղրասի լեռնանցքը հասան այն նեղ ճանապարհի մոտ, որն իջնում է հովտին, ժանվարներից (գահավորակ) մեկի վրայից մի կին ընկավ ձորը և Մասլաման հրամայեց բոլոր կանանց, որ քայլեն և նրանք քայլեցին: Այդ լեռնանցքը կոչվեց Ակաբատ ալ-Նիսա (Կանանց լեռնանցք): Հետագայում Մուտասիմը այդ ճանապարհի եզրին քարե ցածր պատ էր կառուցել:

Ասել է Աբու-լ-Նուման ալ-Անթաքին, թե Անտիոքից Մամեստիա ընթացող ճանապարհին կար առյուծներ որը ուր առյուծները մարդկանց նեղում էին: Երբ Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը խալիֆա դարձավ, այդ մասին նրան բողոքեցին և նա բաց թողեց չորս հազար որձ և էգ վայրի գոմեշ և դրանով ցանկալի արդյունքն ստացվեց Ալլահի հաճությամբ:

Բանն այն էր, որ Հաջջաջ [փոխարքայի][32] նշանակած կառավարիչը Սինդում Մուհամմադ իբն ալ-Կասիմ ալ-Սակաֆին այնտեղից հազարավոր [վայրի] գոմեշներ էր ուղարկել նրան, իսկ Հաջջաջը դրանցից ուղարկել էր Վալիդին, որից և վերջինս, ինչպես ասվեց, չորս հազարն այնտեղ ուղարկեց, իսկ մնացածը՝ Քասքարի խիտ անտառներում բաց թողեց: Երբ Յազիդ իբն ալ-Մուհալլաբը հանվեց ու սպանվեց և Յազիդ իբն Աբդ ալ-Մալիք խալիֆան Մուհալլաբ ցեղի ունեցվածքը բռնագրավեց, վերցրեց նաև չորս հազար գոմեշ ու բերեց Տիգրիսի և Քասքարի գավառները: Ահա սրանց ևս Յազիդ իբն Աբդ ալ-Մալիքը ուղարկեց Մամեստիա՝ ծաթերի (զութթ) հետ միասին: Ուստի գոմեշները Մամեստիայում դարձան ութ հազար և Անտիոքի ու Կիլիկիայի ժողովուրդը նրանցից շատերին ընտելացրել և իրենց համար վերցրել էին, Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուան [խալիֆայի] օրոք տեղի ունեցած խռովության ժամանակ: Երբ Մանսուրը դարձավ խալիֆա, հրամայեց այդ բոլորին վերադարձնել Մամեստիա: Իսկ [ինչ վերաբերում է] Անտիոքում եղած գոմեշներին, ապա դրանք ծաթերի կողմից բերվածներն էին, ինչպես նաև Բուկայի գոմեշները:

Աբու-լ-Խաթթաբն ասել է, թե Ադանայից Մամեստիա ընթացող ճանապարհի վրայի կամուրջը, որը Վալիդի կամուրջ (ջիսր ալ-Վալիդ) է կոչվում, և Մամեստիայից ինը մղոն հեռավորության վրա է, կառուցել է Վալիդ իբն Յազիդ իբն Աբդ ալ-Մալիքը [որն սպանվեց] հարյուր քսանհինգ թվականին (4 նոյեմբեր 742 – 24 հոկտեմբեր 743): Սակայն Աբու Նուման ալ-Անթաքին և ուրիշներ ասել են, թե Ադանան կառուցվել է հարյուր քառասունմեկ (14 մայիս 758 – 2 մայիս 759) կամ հարյուր քառասուներկու (4 մայիս 759 – 21 ապրիլ 760) թվականին, երբ այնտեղ ճամբար էր դրել Խորասանի զորքը Մասլամա իբն Յահիա ալ-Բաջալիի գլխավորությամբ, ինչպես նաև Ասորիքի զորքը Իբն Մալիք իբն Ադհամ ալ-Բահիլիի հրամանատարության տակ և այս երկուսն էլ ուղարկված էին Սալիհ իբն Ալիի կողմից:

Հարյուր վաթսունհինգ (26 օգոստոս 781 – 14 օգոստոս 782) թվականին Մահդի [խալիֆան] իր Հարուն ալ-Ռաշիդ որդուն արշավանքի ուղարկեց Ռումի երկիրը: Սա կանգ առավ Խալիջի (ծոց)[33] մոտ, ապա գնաց ու նորոգեց Մամեստիան ու նրա մզկիթը, կայազորն ավելացրեց ու բնակիչներին զինեց: Նա վերակառուցեց պալատը, որն Ադա-

նայի Սարոս (Սայհուն)[34] գետի վրա գտնվող կամուրջի մոտ էր: Նախապես Մանսուրը արշավանքի էր ուղարկել Սալիհ իբն Ալիին Ռումի երկիրը և սա հանձնարարել էր Հիլալ իբն Դայղամին Դամասկոսի, Հորդանանի (Ուրդուն) և այլ վայրերի մի խումբ ռազմիկների հետ այդ բերդը վերակառուցել: Սակայն կառուցվածքն ամուր չէր և Ռաշիդը քանդեց ու վերստին կառուցեց:

Հարյուր իննսունչորս (15 հոկտեմբեր 809 — 3 հոկտեմբեր 810) թվականին Աբու Սուլայմ Ֆարաջ ալ-Խադիմը (ներքինի) կառուցեց Ադանան, որը լավ կառուցապատեց և բերդով ամրացրեց և այնտեղ հաստատեց Խորասանից և այլ վայրերից բերված զորքը, ավելացնելով նաև ռոճիկը: Նա գործում էր Մուհամմադ իբն ալ-Ռաշիդի հրամանով: Նորոգեց նաև Կասր Սայհանը (Սարոսի պալատը): Երբ Ռաշիդը հարյուր իննսուններեքին (25 հոկտեմբեր 808 - 14 հոկտեմբեր 809) մեռավ սահմանային գոտում, նրա նշանակած տասանորդի վերակացուն էր Աբու Սուլայմը, որն այժմ վերահաստատվել էր Մուհամմադ [իբն Ռաշիդի] կողմից: Այս Աբու Սուլայմը Անախոքի նստավայր պալատի տերն էր (սահիբ ալ-դար):

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից, թե Հասան իբն Կահթաբա ալ-Թաիին Ռումի երկիրն արշավեց հարյուր վաթսուներկու (26 սեպտեմբեր 778 — 16 սեպտեմբեր 779) թվականին Խորասանի, Մոսուլի, Ասորիքի զորքերով, Եմենի օգնական գնդերով և Իրաքի ու Հիջազի կամավորներով, հասնելով Տարսոնից այն կողմ: Նա Մահդի [խալիֆային] տեղեկացրեց, թե ինչպիսի նշանակություն ուներ վերջինիս (Տարսոն) վերակառուցումը, ամրացումը, և նրանում կայազորի հաստատումը, որը հնարավորություն կտար մահմեդական պետությանը մեծ անախորժություններից խուսափելու և ճնշելու թշնամուն, երբ վերջինս փորձում է հարձակվել ու ավեր նյութել: Հասանն այս արշավանքների ընթացքում մեծ քաջագործություններ էր կատարել և հոռոմոց երկիրն այնպես էր ասպատակել, որ նրան կոչել էին սատանա (շայտան): Այս արշավանքների ժամանակ նրա հետ էին քուֆացի հադիսագետ Մանդալ ալ-Անազին ու Մուտամիր իբն Սուլայման ալ-Բասրին:

Ինձ ասել է Մուհամմադ իբն Սաադը, որ լսել է Սաադ իբն ալ-Հասանից, թե երբ Հասանը (իբն Կահթաբա) վերադարձավ Ռումի երկրից, իջավ Տարսոնի դաշտը ու ձիով մոտեցավ քաղաքին, որն ավերակ վիճակում էր: Զննեց, բոլոր կողմերից շրջեց և մոտավորապես գնահատեց, որ կարող է հարյուր հազար բնակչություն տեղավորել: Երբ ներկայացավ Մահդի [խալիֆային], նկարագրեց քաղաքի վիճակը և թե ինչպիսի առավելություններ կունենան մահմեդական պետությունն ու նրա բնակիչները և ինչպիսի զայրույթ ու հուսախաբություն կունենա թշնամին, երբ քաղաքը վերականգնվի և կայազոր

ուննա: Նրան անդեկացրեց նաև Հաղասի վիճակը, այնպիսի ձևով, որ համոզեց հրաման տալ վերակառուցելու քաղաքը: Սա հրամայեց որ սկզբում վերակառուցվի Հաղասը, որն իրոք կատարվեց և ապա՝ Տարսոնը:

Հարյուր յոթանասունմեկին (22 հունիս 787 – 10 հունիս 788) Ռաշիդին լուր հասավ, թե հռոմեները իրենց մեջ համաձայնել են դուրս գալ արշավանքի դեպի Տարսոն [այն] գրավելու, այնտեղ ամրանալու և ուսդմիկներ տեղավորելու նպատակով: Նա այդ տարում արշավանքի ուղարկեց Հարսամա իբն Այանին, հրամայելով կառուցել Տարսոնը, բնակչություն հաստատել և ամրացված քաղաքի վերածել: Նա հրամանը գործադրեց Ֆարաջ իբն Սուլայմ ալ-Խադիմի (ներքինի) միջոցով, Ռաշիդից թույլտվություն վերցնելուց հետո: Ֆարաջին հանձնարարվեց հսկել շինարարությանը, իսկ Աբու Սուլայմը գնաց Մադինատ ալ-Սալամ (Խաղաղության քաղաք, Բաղդադ) և ուղարկեց առաջին կայազորը, խորասանյան զորքից՝ երեք հազար հոգի, որը եկավ Տարսոն: Ապա ուղարկեց երկրորդ կայազորը՝ երկու հազար մարդ, որից հազարը Մամեստիայից էր, հազարը՝ Անտիոքից, ամեն մեկի ռոճիկի վրա ավելացնելով տաս դինար: Երկու կայազորները բանակ դրեցին Մադաինում՝ Բաբ ալ-Ջիհադի (սրբազան պատերազմի դուռ) մոտ, հարյուր յոթանասուներկու թվականի Մուհառամ ամսի սկզբին (11 հունիս 788), մինչև որ ավարտվեց Տարսոնի շինարարությունը, ամրացումն ու մզկիթի կառուցումը: Ֆարաջը չափեց երկու գետերի միջև եղած տարածությունը, որը կազմում էր չորս հազար բնակելի հողակտոր, ամեն մի հողակտորը քսան կանգուն քառակուսի: Այդ հողակտորները որպես կալված հատկացրեց Տարսոնի բնակիչներին (կայազորներին): Այսպիսով երկու կայազորները տեղավորվեցին քաղաքում հարյուր յոթանասուներկու թվականի Ռաբի Բ ամսին (8 սեպտեմբեր – 6 հոկտեմբեր 788):

Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը Տարսոնի կառավարիչ նշանակել էր Յազիդ իբն Մուխալլադ ալ-Ֆազարիին, սակայն Խորասանի զորքը նրան քաղաքից վտարեց, վախենալով նրանից, քանզի Հուբայրիյա ցեղին էր պատկանում: Սա իր փոխարեն նշանակեց Աբու-լ-Ֆավարիսին և Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը հաստատեց նրան: Այս դեպքերը տեղի ունեցան հարյուր յոթանասուներեք թվականին (31 մայիս 789 – 19 մայիս 790):

Ասել է Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից, թե Սիսի[35] (Սիսիյա) ժողովուրդը դուրս եկավ իր տներից և Ռումի լեռնային հեռավոր շրջանները հասավ հարյուր իննսունչորս (15 հոկտեմբեր 809 – 3 հոկտեմբեր 810) կամ հարյուր իննսուներեք (25 հոկտեմբեր 808 – 14 հոկտեմբեր 809) թվականներին: Իսկ Սիս քաղաքը (կառուցված) է Անազարբայի[36] բլրի (Տալլ Այն Զարբա) վրա: Կառուցվել է

Մուտավաքքիլ Ալալլահի խալիֆայության օրոք. Ալի իբն Յահիա ալ-Արմանիի[37] կողմից, հետո հոռոմներն ավերեցին այն:

Ասվել է, թե նա որ Ռումի երկրում վառել է Անտիոքը Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքն է, որի պատճառով մահվան է դատապարտվել:

Իսկ Տալլ Ջուբայրն այսպես է կոչվել Անտիոքից մի պարսիկի անվամբ, որն այդ վայրում ընդհարում է ունեցել [հոռոմների հետ]: Այս վայրը (բերդը) Տարսոնից տաս մղոն հեռավորության վրա է:

Ջու-լ-Քիլա անվամբ ծանոթ բերդը, պարզապես Ջու-լ-Կիլա (բերդեր ունեցող) է կոչվել, քանզի այնտեղ երեք բերդ (կալա) կա, սակայն աղավաղվել է: Նրա անունը հունարեն (հոռոմերեն) նշանակում է «աստղավոր բերդ»:

Քանիսատ ալ-Սուլհ (հաշտության եկեղեցի) վայրի անունը մեկնաբանվում է նրանով, որ հոռոմները, երբ եկել էին Ռաշիդ [խալիֆային] հաշտություն առաջարկելու, այստեղ էին իջևանել:

Մարջ Հուսայն վայրն իր անունն ստացել է Հուսայն իբն Մուսլիմ ալ-Անթաքիից, որն այստեղ ընդհարում է ունեցել և հաղթել թշնամուն:

Մահդին իր որդուն՝ Հարուն ալ-Ռաշիդին հարյուր վաթսուներեք (17 սեպտեմբեր 779 — 5 սեպտեմբեր 780) թվականին արշավանքի ուղարկեց և նա պաշարեց Դամալուն, որը հասարակ ժողովուրդը կոչում է Սամալու: Բնակիչները երաշխավորագիր խնդրեցին տաս նշանավոր տոհմի համար, որոնց մեջ էր նաև Կոմսը (կումիս), և նա ընդառաջեց: Պայմաններից մեկն այն էր, որ նրանք իրարից չանջատվեն, ուստի նրանց բոլորին տեղավորեցին Բաղդադի Բաբ ալ-Շամմասիյա դռան մոտ ու նրանց թաղը կոչեցին Սամալու, որն այսօր էլ հայտնի է: Ասվում է նաև, որ նրանք Մահդիին էին հանձնվել, որը նրանց կյանքը խնայեց և բերեց այս վայրը՝ հրամայելով, որ կոչվի Սամալու: Ռաշիդի հրամանով բերդում մնացածներին դուրս բերեցին ու հրապարակորեն վաճառեցին: Բռնել էին մի եթովպացու, որը հայհոյել էր Ռաշիդին ու մահմեդականներին և սրան աշտարակներից մեկի վրա խաչեցին:

Ինձ պատմել է Ահմադ իբն ալ-Հարիս ալ-Վասիթին, լսելով Մուհամմադ իբն Սաադից, իսկ վերջինս՝ Վակիդիից, թե հարյուր ութսուն (16 մարտ 796 — 4 մարտ 797) թվականին Ռաշիդը հրամայեց վերակառուցել Անազարբա քաղաքը, ամրացնել և այնտեղ նշանակել Խորասանից ու այլ վայրերից բերված կայազոր, նրանց բնակարաններ հատկացնելով որպես կալված: Ապա հարյուր ութսուներեքին (12 փետրվար 799 — 31 հունվար 800) հրամայեց կառուցել Հարունիյան[38], որն իրոք կառուցվեց ու կոչվեց նրա անունով: Այնտեղ հաստատվեց ռազմիկների կայազոր, ինչպես նաև եկան կամավորներ: Ասվում է

նաև, թե Ռաշիդը այն կառուցել է Մահդիի խալիֆայության օրոք, ապա ավարտել է իր խալիֆայության տարիներին:

Ալ-Քանիսատ ալ-Սաուդան[39] (սև եկեղեցի) կառուցվել է սև քարից և դա հոռոմների կառուցածն է եղել: Ունեցել է հին բերդ, որը պատերազմների ընթացքին քանդվել է: Ռաշիդը հրամայեց վերակառուցել ալ-Քանիսատ ալ-Սաուդա քաղաքը, ամրացնել և նշանակել ռազմիկների կայազոր, բարձր ռոճիկով:

Սահմանային ամրությունների ղոտու բնակիչներից Ազդուն իբն Սաադն ինձ տեղեկացրել է, թե հոռոմները հարձակվել են այդ քաղաքի վրա, երբ Կասիմ իբն Ռաշիդը Դաբիկում էր: Նրանք բնակիչների հոտերը տարան և շատերին գերեվարեցին: Այստեղ շտապեցին Մամեստիայի զորքերն ու կամավորները և փրկեցին ամեն ինչ որ տարել էին, շատերին սպանեցին, իսկ մնացածները վերադարձան ջարդված, կոտորված: Կասիմը մարդ ուղարկեց ու ամրացվեց քաղաքը, նորոգվեց ու ավելացվեց կայազորը: Այստեղ տեղավորվեց նաև ծաթերի այն մասը, որին Մուտասիմ Բիլլահ [խալիֆան] փոխադրել էր Անազարբա և նրա գավառները բերելով Բաթաիհից (ճահճուտ տափաստան), որը գտնվում է Վասիթի ու Բասրայի միջև:

Ինձ պատմել է Աբու Սալիհ ալ-Անթաքին, թե Աբու Իսհակ ալ-Ֆազարին ատում էր սահմանային ամրությունների շրջանում հողեր գնելը, ասելով՝ նրանք ովքեր սկզբում այդ հողերը խլել են հոռոմների ձեռքից իրենց միջև չեն բաժանել այն և հետագայում ընկել են ուրիշների ձեռքը: Այս բանը մի տեսակ տարակուսանք է առաջացնում, ուստի իմաստուն մարդը պետք է խուսափի դրանից:

## ՋԱԶԻՐԱՅԻ (ՎԵՐԻՆ ՄԻՋԱԳԵՏՔ) ՆՎԱՃՈՒՄԸ

էջ 176 – 185

Ինձ պատմել է Ռակկայի դատավոր Դաուդ իբն Աբդ ալ-Համիդը, լսելով հորից, իսկ նա պապից ու սա էլ Մայմուն իբն Միհրանից, թե Ջազիրան ամբողջովին նվաճվել է Իյադ իբն Ղանմի կողմից Աբու Ուբայդայի մահվանից հետո: Օմար [խալիֆան] նրան նշանակել էր [Ջազիրայի] կառավարիչ: Աբու Ուբայդան [Իյադին] իրեն հաջորդ էր նշանակել Ասորիքում, սակայն Օմար իբն ալ-Խաթթաբը նշանակեց Եզիդ իբն Աբու Սուֆիանին, ապա Մուավիային՝ Ասորիքի կառավարիչ, իսկ Իյադին՝ հրամայեց արշավել Ջազիրա:

Ինձ պատմել է Հուսայն իբն ալ-Ասուադը, լսելով Յահիա իբն Ադամից, որը լսել էր բազմաթիվ ջազիրացիներից, իսկ սրանք Սուլայման իբն Աթա ալ-Կուրաշիից, թե Աբու Ուբայդան Իյադ իբն Ղանմին

ուղարկել էր Ջաղիրա և երբ նա այնտեղ էր, Աբու Ուբայդան մահացել էր. իսկ Օմարը դրանից հետո էր նշանակել [Ղանմին] կառավարիչ [Ջազիրայի]:

Ինձ պատմել է Բաքր իբն ալ-Հայսամը լսելով Աբդալլահ իբն Մուհամմադ ալ-Նուֆայլիից և սա Սուլայման իբն Աթաից, թե Իյադ իբն Ղանմը նվաճեց Եդեսիան (Ռուհա), ուր ուղարկել էր Աբու Ուբայդան, կանգնեց նրա դռան առջև աշխետ նժույգի վրա և նրանք (բնակիչները) հաշտություն կնքեցին նրա հետ առ այն, որ նրանց էր մնում տաճարը իր շրջակայքով, չպետք է նոր եկեղեցի կառուցեին բացի եղածից, պարտավոր էին մահմեդականներին օգնել թշնամիների դեմ, իսկ եթե պայմաններից որևէ մեկն անտեսվեր, այլևս հովանավորություն չէին վայելի: Ջազիրայի բնակչությունն ընդունեց այս նույն պայմանները, որ ընդունել էին Եդեսիայի բնակիչները:

Մուհամմադ իբն Սաադն ասել է, թե Վակիդին հաստատում է այն, որ լսել էինք Իյադի մասին՝ թե Աբու Ուբայդան մահացել է էմմաուսի ժանտախտի տարին 18 (639) թվականին՝ փոխանորդ թողնելով Իյադին: Այդ ժամանակ վերջինիս հասավ Օմար [խալիֆայի] նամակը, որով նա նշանակվում էր Եմեսայի, Կիննասրինի և Ջազիրայի կառավարիչ: Նա արշավեց Ջաղիրա 18 թվականի Շաաբան ամսի կեսին (19 օգոստոս 639) հինգշաբթի օրը, հինգ հազարով, առաջապահ զորքի հրամանատար ունենալով Մայսարա իբն Մասրուկ ալ-Աբսիին, աջ թևին՝ Սաիդ իբն Ամիր իբն Հուզայմ ալ-Ջումահիին, իսկ ձախ թևին՝ Սաֆուան իբն ալ- Մուաթթալ ալ-Սուլամիին: [Կարծվում է թե] Խալիդ իբն ալ-Վալիդն էր ձախ թևին, սակայն ասվում է, որ Խալիդը Աբու Ուբայդայից հետո ոչ ոքի դրոշի տակ չի ընթացել, այլ մնացել է Եմեսայում մինչև իր մահը 21 (641 – 642) թվականին: Նա Օմարին կտակարար էր նշանակել: Ոմանք պնդում են, որ նա Մադինայում է մահացել, սակայն Եմեսայում մեռած լինելն ստույգ է:

Իյադի առաջապահը հասավ Ռակկա (Կալինիկում) և հարձակվեց շրջակայքում գտնվող արաբական մի բնակավայրի ու գյուղացիների վրա և ավար վերցրեց: Ով փրկվեց փախավ ու մտավ Ռակկա քաղաքը:

Եկավ Իյադը իր զորքով և պատրաստությամբ կանգ առավ [Ռակկայի] Եդեսիայի դռան (Բաբ Ռուհա) մոտ, որը նրա դռներից մեկն էր: Մահմեդականներին մեկ ժամ նետահարում էին և ոմանք վիրավորվեցին: Նա ետ քաշվեց նրանցից որպեսզի քարերն ու նետերը իրենց չհասնեն: Նա ձիով շրջեց քաղաքի չուրջը և նրա դռների առջև հեծյալ գնդեր նշանակեց, ապա իր զորքի մոտ վերադարձավ: Նա ձիավոր ջոկատներ ցրեց, որպեսզի գերիներ և ուտեստեղեն բերեն: Հնձի ժամանակ էր, և երբ հինգ կամ վեց օր անցավ, ու նրանք այդ վիճակում էին, քաղաքի պատրիկը լուր ուղարկեց Իյադին ներշխավորագիր (աման)

խնդրելով: Իյադը հաշտության պայմանագիր կնքեց, խոստանալով երաշխավորել բնակիչների անձի, ընտանիքների, ունեցվածքի և քաղաքի պաշտպանությունը: Իյադն ասում էր՝ հողը մերն է և մենք ենք այն նվաճել: Նա թողեց այն (հողը) նրանց ձեռքում խարաջ վճարելու պայմանով: Նա վերցրեց այն հողերը, որ դիմմիները չէին կամենում մշակել և տվեց մահմեդականներին տասանորդ վճարելու պայմանով: Նա ջիզիա դրեց նրանց վրա և ամեն մեկին պարտավորեցրեց տարեկան մեկ դինար վճարել, ազատելով կանանց ու երեխաներին: Դինարից բացի պահանջեց նաև մի քանի կաֆիզ[40] ցորեն և որոշ չափով ձեթ, քացախ ու մեղր, սակայն երբ իշխանությանը տիրացավ Մուավիան, այս բոլորը հաշվեց որպես ջիզիա: Ապա նրանք բացեցին քաղաքի դռները և մահմեդականների համար շուկա սարքեցին Եդեսիայի դռան մոտ: Իյադը դրեց նրանց.

«Հանուն Ալլահի ամենագութ և ամենողորմ,

Սա շնորհեց Իյադ իբն Ղանմը Ռակկայի բնակիչներին իր քաղաք մտած օրը: Երաշխավորագիր տվեց նրանց՝ անձերի, ունեցվածքի համար, նրանց եկեղեցիները չեն քանդվելու կամ բնակվելու, եթե վճարեն ջիզիան, որ նրանց վրա դրված է, կամ չդավաճանեն և կամ նոր եկեղեցիներ, տաճարներ չկառուցեն, [եկեղեցու] զանգը ուժեղ չհնչեցնեն, Զատկի երկուշաբթին բացահայտ չտոնեն, խաչը հրապարակորեն չցուցադրեն: Վկա է Ալլահը և նա բավական է իբրև վկա»:

Եվ Իյադը կնքեց իր կնիքով:

Ասվում է, որ Իյադը Ռակկայի ամեն մի հասունացած [տարիքի] բնակչից պահանջեց չորս դինար: Ճշմարտությունն այն է, որ Օմարը հետագայում գրել էր իր կառավարիչ Ումայր իբն Սաադին, որ ամեն մեկին պարտավորեցնի չորս դինար վճարել, ինչպես պարտավոր էր վճարել ոսկի օգտագործող բնակչությունը:

Ապա Իյադը եկավ Խառան[41] և իջավ Բաջուղդայում և իր առաջապահ զորքին ուղարկեց, սակայն Խառանի բնակիչները փակեցին դռները նրանց առջև և ետ մղեցին: Երբ [Իյադը] պաշարեց այն, բնակիչներից (հեթանոս) խառանցիք տեղեկացրին, որ քաղաքի մի մասն իրենց ձեռքում է գտնվում և թող [Իյադը] գնա Եդեսիա և ինչպիսի պայմանագիր որ կնքի նրանց հետ, իրենք համաձայն են այն ընդունել: Իսկ ինչ վերաբերում է [Խառանի] քրիստոնյաներին, ապա դրանց հետ թող վարվի ինչպես կամենա: Քրիստոնյաներն այդ լսելով [Իյադի] մոտ մարդ ուղարկեցին հայտնելով, որ իրենք համաձայն են [հեթանոս] խառանցիների առաջարկին և հնազանդվեցին:

Ապա նա եկավ Եդեսիա, որի բնակիչները նրա դեմ զորք հավաքեցին և մի ժամ նետահարում էին մահմեդականներին: Նրանց ռազմիկները քաղաքից դուրս եկան, իսկ մահմեդականները փախուստի մատնեցին նրանց, ստիպելով քաղաք ապաստանել: Սակայն շուտով

հաշտություն ու նրաշխավորագիր խնդրեցին և Իյադը համաձայնեց ու դրեց մի թուղթ որի պատճենն է.

«Հանուն ամենագութ, ամենողորմ Ալլահի.

Սա է Իյադ իբն Ղանմի թուղթը Եդեսիայի եպիսկոպոսին առ այն, որ եթե դուք իմ առջև բացեք քաղաքի դուռը, պարտավորվելով ամեն մի մարդու համար ինձ վճարել մեկ դինար, երկու մոդ ցորեն, ապա դուք կարող եք ապահով լինել ձեր անձերի, ունեցվածքի և եկեղեցիների համար: Դուք պարտավոր եք մոլորյալին ճանապարհ ցույց տալ, կամուրջները, ճանապարհները նորոգել և խորհուրդներ տալ մահմեդականներին: Վկա է Ալլահը և նա բավական է իբրև վկա»:

Ինձ պատմել է Դաուդ իբն Աբդ ալ-Համիդը, լսելով իր հորից, իսկ նա՝ իր պապից, թե Իյադի թուղթը Եդեսիայի բնակիչներին հետևյալն է.

«Հանուն ամենագութ, ամենողորմ Ալլահի.

Սա է Իյադ իբն Ղանմի ու նրա ընկերակից մահմեդականների թուղթը Եդեսիայի բնակիչներին առ այն, որ ես երաշխավորում եմ նրանց արյունը (կյանքը), ունեցվածքը, զավակները, կանանց, քաղաքը և ջրաղացները, եթե կատարեն իրենց վրա դրված պարտավորությունները: Նրանք մեզ պարտավոր են կամուրջները նորոգել, մոլորյալներին առաջնորդել: Վկա են Ալլահը, նրա հրեշտակները և մահմեդականները»:

Ապա Իյադը եկավ Խառան և ուղարկեց Սաֆուան իբն Մուաթթալին ու Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին Սամոսատ (Սումայսաթ)[42]: Իյադը հաշտություն կնքեց Խառանի բնակիչների հետ Եդեսիայի հաշտության պայմաններով և նրանք դռները բացեցին: Սա այնտեղ կառավարիչ նշանակեց: Ապա գնաց Սամոսատ և գտավ Սաֆուան իբն Մուաթթալին ու Հաբիբ իբն Մասլամային, որոնք շարունակում էին պաշարումը, նրա գյուղերից ու բերդերից որոշ մասը գրավելուց հետո: [Իյադը] նրա բնակիչների հետ հաշտություն կնքեց Եդեսիայի բնակիչների հետ կնքվածի նման: Իյադը Եդեսիայից արշավանքներ էր կատարում և ապա վերադառնում:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից, իսկ նա Մուամմարից և վերջինս՝ Զուհրիից, թե Ջազիրայում չմնաց ոտք դնելու տեղ որ չնվաճվեր Օմար իբն ալ-Խաթթաբ [խալիֆայի] օրոք, Իյադ իբն Ղանմի ձեռքով նվաճվեցին Խառանը, Եդեսիան, Ռակկան, Կարկիսիան[43], Մծբինն[44] (Նասիբին) ու Սինջարը[45]: Ինձ պատմել է Մուհամմադը, վերցնելով Վակիդիից, իսկ սա՝ Աբդ ալ-Ռահման իբն Մասլամայից, իսկ նա՝ Ֆուրատ իբն Սալմանից և նա էլ՝ Սաբիտ իբն ալ-Հաջջաջից, թե Իյադը նվաճել է Ռակկան, Խառանը, Եդեսիան, Մծբինը, Նիփրկերտը (Մայյաֆարիկինը)[46], Կարկիսիան և

Եփրատի գյուղերն ու քաղաքները հաշտությամբ, իսկ նրա հողերը՝ ըոնի ուժով:
Պատմվում է, որ երբ Իյադը Ռակկայից Խառան եկավ, այն դատարկ գտավ, քանզի նրա բնակիչները տեղափոխվել էին Եդեսիա: Երբ Եդեսիան գրավեց, եկան իրենց քաղաքը և նրա համար հաշտություն կնքեցին, Եդեսիայի հաշտության պայմաններով: Ինձ պատմել է Աբու Այյուբ ալ-Ռակկի ալ-Մուադդաբը, թե Հաջջաջ իբն Աբու Մանի ալ-Ռուսաֆին պատմել է՝ լսելով իր հորից, նա էլ իր պապից, որ Իյադը նվաճեց Ռակկան, Եդեսիան, Խառանը և Սամոսատը հաշտության նույն պայմաններով: Հետո եկավ Սարուջ[47], Ռասքայֆա[48], ալ-Արդ ալ-Բայդա[49] և հողերը նվաճեց, իսկ նրանց բերդերի մարդկանց հետ Եդեսիայի հաշտության պայմաններով հաշտություն կնքեց: Ապա Սամոսատը դավաճանեց և երբ նա լսեց, եկավ պաշարեց մինչև որ գրավեց: Երբ լսեց, որ Եդեսիայի ժողովուրդը խախտել է պայմանը, բանակ ղրկեց նրա առջև: Բացեցին քաղաքի դռները ու նա մտավ և նշանակեց կառավարիչ, զորադնդով հանդերձ:
Նա դիմեց Եփրատի շրջակայքը ուր Ջիսր (կամուրջ) Մանբիջն է իր հարակից մասերով ու նվաճեց նույն պայմաններով: Եկավ Այն ալ-Վարդա, որը Ռաս ալ-Այնն[50] է, բայց երբ սա դիմադրեց, նա թողեց ու հեռացավ Տել Մաուզան[51] ու գրավեց Եդեսիայի պայմաններով: Սա տեղի ունեցավ 19 (640) թվականին:
Իյադը Կարկիսիա ուղարկեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին, որը գրավեց և հաշտություն կնքեց Ռակկայի հաշտության պայմաններով: Իյադը առանց կռվի գրավեց Ամիդը Եդեսիայի հաշտության պայմաններով: Գրավեց Նփրկերտը՝ նույն պայմաններով: Կռվով գրավեց Քաֆար Տուսա ամրոցը և Մծբինը, սակայն Եդեսիայի պայմաններով: Նվաճեց Թուր Աբդինը, Մարդին ամրոցը[52] և Գարան[53]՝ նույն ձևով, իսկ Կարդան[54] ու Բաղաբդան[55]՝ Մծբինի հաշտության պայմաններով:
Նրա մոտ եկավ Ջավազանի (Անձևացյաց) պատրիկը[56] և նա հաշտություն կնքեց նրա հետ հողերի համար հարկ վճարելու պայմանով: Այս բոլորը կատարվեց 19 (640) թվականին և 20-ի Մուհառամ ամսի (31 դեկտեմբեր 640 — 20 հունվար 641) որոշ օրերին: Ապա գնաց Արզն[57] ու նվաճեց այն Մծբինի պայմաններով, մտավ լեռնանցքը[58] ու հասավ Բաղեշ (Բաղլիս)[59], հետո անցավ Խլաթ (Խիլաթ)[60] հաշտություն կնքեց նրա պատրիկի հետ և կանգ առավ ալ-Այն ալ-Համիդայի[61] առջև՝ Հայաստանում, որից այն կողմ չգնաց: Հետո վերադարձավ ու Բաղեշի տիրոջը պարտավորեցրեց երաշխավորել Խլաթի ու նրա գլխահարկի (ջիզիայի) վճարումը և նրա պատրիկի պարտավորությունները: Ապա հեռացավ Ռակկա ու գնաց Եմեսա, որի կառավարիչն էր նրան նշանակել Օմարը և մեռավ 20 (640-641) թվականին:

Օմարը [Ջազիրայի] կառավարիչ նշանակեց Սաիդ իբն Ամիր իբն Հիզյամին, որը քիչ մնալուց հետո մեռավ և Օմարը նշանակեց Ումայր իբն Սաադ ալ-Անսարիին: Սա գրավեց Այն ալ-Վարդան սաստիկ կռվից հետո:

Ասում է Վակիդին, թե պատմել է մեկը, որը լսել է Իսհակ իբն Աբու Ֆարուայից, իսկ սա լսել է Աբու Վահբ ալ-Ջայշանի Դայլամ իբն Մուսայից, որ Օմար իբն ալ-Խաթթաբը գրել է Իյադին՝ հրամայելով Ումայր իբն Սաադին ուղարկել Այն ալ-Վարդա ու նա ուղարկեց նրան, իսկ սա առաջապահ գնդեր առաքեց, որոնք գյուղացիների մի մասի վրա հարձակվեցին և թշնամու հոտերը քշեցին: Այդ քաղաքի բնակիչները [Ռասայի] դռները փակեցին և քարանետ մեքենաներ դրեցին: Մահմեդականներից շատերն սպանվեցին քարերից ու նետերից, և վերջը եկավ նրանց ոստիկներից մեկը ու հայհոյեց ասելով՝ մենք ձեր անասուններից չենք: Այսուհանդերձ հետագայում քաղաքը գրավվեց հաշտության պայմանագրով:

Ինձ պատմել է Ամր իբն Մամունը, լսելով Հաջջաջ իբն Աբու Մանիից, իսկ սա իր հորից և պապից, թե Ռաս ալ-Այնը դիմադրեց Իյադ իբն Ղանմին և այն գրավեց Ումայր իբն Սաադը, որը Օմարի նշանակած կառավարիչն էր Ջազիրայում, մահմեդականների դեմ բնակիչների մղած կատաղի կռվից հետո և մահմեդականները բռնությամբ մտան քաղաքը: Ապա հաշտություն կնքեցին այն պայմանով, որ հողը իրենցը լինի և թող ջիզիա դրվի ամեն մի գլխին չորս դինար, սակայն նրանց կանանց ու երեխաներին չգերեվարեցին: Ասել է Հաջջաջը, լսելով Ռաս ալ-Այնի ծերունիներից, թե հիշում են, որ Ումայրը երբ մտել է [քաղաք] ասել է՝ լավ է լավ, [եկեք] դեպի ինձ, դեպի ինձ և սա նրանց համար երաշխավորագիր է համարվել: Հայսամ իբն Ադին գտնում է, որ Օմար իբն ալ-Խաթթաբը ուղարկել էր Աբու Մուսա ալ-Աշաարիին՝ Այն ալ-Վարդա, որի վրա նա հարձակվեց Ջազիրայի զորքով Իյադի մահվանից հետո: Ճշմարիտն այն է, որ Ումայրն է այն նվաճել սրով, սակայն չի գերեվարել և նրանց պարտավորեցրել է խարաջ ու ջիզիա վճարել: Այս բանը Հայսամից բացի ոչ ոք չի ասել: Հաջջաջ իբն Աբու Մանին ասել է, որ նա (Ումայրը) Ռաս ալ-Այնի բնակիչների մի մասին դուրս քշեց և նրանց հողերի վրա բնակեցրեց մահմեդականների, որոնց հողաբաժիններ (իկթա) բաշխեց:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն ալ-Մուֆադդալ ալ-Մաուսիլին, լսելով Սինջարի ծերունիներից (շեյխերից), որոնք ասել են, թե Սինջարը հռոմեների ձեռքում էր, ապա Խոսրովը, որը ծանոթ է Պարուեզ (Արարուիզ)[62] անվամբ, կամեցավ սպանել հարյուր պարսիկների, որոնց իր մոտ էին բերել ինչ որ խռովության և ըմբոստության պատճառով: Նրանց համար բարեխոսել էին և նա հրամայեց ուղար-

կել Սինջար, որը նա չէր կարողանում գրավել: Նրանցից երկուսը մահացել էին, իսկ իննսունութը հասան ու միանալով այնտեղ կռվող ռազմիկներին, գրավեցին քաղաքը և այնտեղ հաստատվելով սերնդագործեցին: Երբ Իյադը Խլաթից հեռացավ ու հասավ Ջազիրա, զորք ուղարկեց Սինջար, որը գրավեց այն հաշտության պայմանագրով և այնտեղ արաբների բնակեցրեց: Զրուցարաններից (ռավի)* մեկը սյատմել է, որ Իյադը գրավել է Մոսուլի[63] (Մաուսիլ) մոտ մի ամրոց, սակայն դա ճիշտ չէ: [........]

Ասել է Վակիդին, թե ոմանք պատմել են, որ երբ Խալիդ իբն ալ-Վալիդը Օմար [խալիֆայի] կողմից Ջազիրայի որոշ մասի կառավարիչ էր նշանակվել, մի օր Ամիդում թե այլուր բաղնիքում քսվել էր ինչ որ [օծանելիքի], որի մեջ գինի (սպիրտ) կար և երբ Օմարը լսեց, հեռացրեց նրան, սակայն դա ստույգ չէ:

Ամր իբն Նակիդը պատմել է լսելով Հաջջաջ իբն Մանիից, և սա իր հորից ու պապից, իսկ վերջինս՝ Մայմուն իբն Միհրանից, թե [Իյադը] սկզբում Ջազիրայի բնակիչներից, որպես մահմեդականների օգտին տրվող հարկ, որոշ ժամանակ վերցնում էր ձեթ, քացախ և կերակուր, ապա թեթևացրեց ու դոհացավ քառասունութ, քսանչորս և տասներկու դիրհեմով, ըստ մարդու վիճակի: Ամեն մի մարդ, բացի ջիզիայից վճարում էր նաև երկու մոդ ցորեն, երկու քսեստ (կիսթ) ձեթ և երկու քսեստ քացախ:

Ռակկայի բնակիչներից շատերն ինձ պատմել են, թե երբ Իյադը մեռավ և Ջազիրայի կառավարիչ դարձավ Սաիդ իբն Ամիր իբն Հիդյամը, կառուցեց Ռակկայի ու Եդեսիայի մզկիթները, ապա նա մեռավ և Դիար Մուդարում[64] ու Դիար Ռաբիայում[65] մզկիթներ կառուցեց Ումայր իբն Սաադը: Հետո, երբ Մուավիան Ասորիքի և Ջազիրայի կառավարիչ նշանակվեց, Օսման իբն Աֆֆան [խալիֆան] նրան հրամայեց, որ արաբներին տեղավորի քաղաքներից ու գյուղերից հեռու վայրերում և նրանց թույլ տա մշակել միայն այն հողը, որը ոչ ոքի չէր պատկանում: Սա տեղավորեց Տամիմ ցեղի մարդկանց Ռաբիայում, իսկ Մազիհին և Մուդայրիր վայրերում տեղավորեց Կայս, Ասադ և այլ ցեղերից՝ խառն վիճակում: Այս բանն արեց Դիար Մուդարի տարբեր վայրերում, իսկ Ռաբիա ցեղին տեղավորեց նույն ձևով Դիար [Ռաբիայում]: Նա քաղաքների, գյուղերի ու սահմանային կայազորների վրա խնամակալներ նշանակեց, որոնք թոշակ էին ստանում որպեսզի պաշտպանեն նրանց և թողեց իր կառավարիչների հետ:

Ինձ պատմել է Աբու Հաֆս ալ-Շամին, լսելով Համմադ իբն Ամր ալ-Նասիբիից, թե Մծբինի կառավարիչը գրել էր Մուավիային, որը

* Ռավի – բանաստեղծությունների, ինչպես նաև մահմեդական խաբարների (ավանդապատում զրույցների) և հադիսների ասացող և փոխանցող:

Օսմանի կողմից Ասորիքի ու Ջազիրայի կառավարիչ էր, բողոքելով որ իր հետ եղած մահմեդականներից շատերը կարիճներից խայթվել են: Սա գրել նրան, որ քաղաքի ամեն մի թաղի բնակիչներին պարտավորեցնի ամեն գիշեր թանավորված կարիճներ գնել: Այդպես էլ արեցին ու բերում էին կարիճները, որոնց նա հրամայում էր սատկեցնել:

Պատմել է ինձ Աբու Այյուբ ալ-Մուադդաբ ալ-Ռակկին, լսելով Աբու Աբդալլահ ալ-Կալկիսանիից, իսկ սա լսել էր ծերունիներից (շեյխերից), թե Ումայր իբն Սաադը, Ռաս ալ-Այնը նվաճելուց հետո, քայլեց Խաբուր [գետի][66] երկայնքով, մինչև որ հասավ Կարկիսիա, որի բնակիչները խախտել էին [պայմանագիրը], եւ նա նրանց հետ հաշտություն կնքեց նախկին պայմանագրի ձևով: Ապա եկավ Եփրատի բերդերը, մեկ առ մեկ նվաճեց և այս բոլորին սիրացավ Կարկիսիայի հաշտության պայմաններով: Այնտեղ նա մեծ դիմադրության չհանդիպեց. այդ բնակիչներից ոմանք երբեմն քարեր էին նետում: Երբ նվաճեց Տալբասը, Անաթը, եկավ ալ-Նավուսա, Ալուսա և Հիթ ու տեսավ Ամմար իբն Յասիրին՝ Օմար իբն ալ-Խաթթաբի կողմից նշանակված Քուֆայի կառավարչին, որը Սաադ իբն Ամր իբն Հարամ ալ-Անսարիի հրամանատարությամբ, զորք էր ուղարկել՝ Անբարի վերևի կողմերը նվաճելու: Այդ բերդերի բնակիչները եկան երաշխավորագիր (աման) խնդրելու և նա տվեց: Իսկ Հիթի բնակիչներից՝ եկեղեցու կեսը վերցնելուց հետո Ումայրը գնաց Ռակկա:

Որոշ գիտակ մարդիկ ինձ պատմել են, որ Հիթը և այն բերդերը, որոնք Քուֆայից այն կողմ են, նվաճել է Միդլաջ իբն Ամր ալ-Սուլամին՝ Աբդ Շամս ցեղի դաշնակիցը, մի ջոկատի հետ միասին: Նա նվաճեց այն և Եփրատի վրա կառուցեց ալ-Հադիսան[67]: Նրա որդիները մնացին Հիթում և նրանցից մեկը՝ Աբու Հարուն կոչված, դեռ հիշվում է այնտեղ: Ասվել է նաև, թե Միդլաջը Սաադ իբն Ամր իբն Հարամի կողմից էր նշանակված, սակայն ճշմարտությունն Ալլահը գիտի:

Ասել են, որ Սաիդ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանի անվամբ կոչված (սա նա է, որը կոչվել է Սաիդ ալ-Խայր (բարիք), քանզի խստակրոն էր) գետի մոտ մի թփուտ կար, ուր առյուծներ կային: Վալիդը այն պարգևել էր նրան և վերջինս գետ (ջրանցք) փորեց ու բարեկարգեց շրջակայքը: Ոմանք էլ գտնում են, թե Օմար իբն Աբդ ալ-Ազիզ [խալիֆան] էր, որ այդ կալվածը պարգևեց նրան:

Գտնում են, որ Ռաֆիկան հին չէ, այլ կառուցվել է հավատացելոց իշխան Մանսուրի կողմից 155 (771-772) թվականին, ըստ իր [կառուցած] Բաղդադ քաղաքի հատակագծի և Խորասանից բերված զորք նշանակեց այնտեղ, հետո անցավ Մահդիի ձեռքը, երբ գահաժառանգ էր, ապա [Հարուն] ալ-Ռաշիդը ամրոցներ կառուցեց: Ռակկայի ու Ռաֆիկայի միջև կային մշակված դատարկ տարածություններ և երբ

Զայիրայի կառավարիչ դարձավ Ալի իբն Սուլայման իբն Ալին, Ռակկայի շուկաներն այնտեղ փոխադրեց: Անցյալում Ռակկայի մեծ շուկան հայտնի էր Հիշամի հին շուկա անվամբ, ապա երբ Ռաշիդը եկավ Ռակկա, մեծացրեց շուկաների թիվը և մինչև հիմա այդ շուկաների վարձքը բռնագրավված հողերի հարկի հետ միասին հավաքվում է:

Իսկ ինչ վերաբերում է Հիշամի Ռուսաֆային, ապա Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքը [խալիֆան] է այն հիմնել, և նախքան այդ նա իջևանում էր ալ-Զայտունայում: [Հիշամը] փորեց ալ-Հանի և ալ-Սարիս ջրանցքները և այնտեղ հիմնեց Ռակկայի Վասիթ [քաղաքը]: Ապա այդ կայվածը [Աբբասյան] պետության սկզբնական շրջանում բռնագրավվեց, ապա տրվեց Ջաաֆար իբն ալ-Մանսուրի դուստր Ումմա Ջաաֆար Զուբայդային և սա այնտեղ բնակավայր հաստատեց, որը կոչվում է նրա անունով ու շինացրեց:

Կարկիսիայից ցածր գտնվող Ռահբան[68] այնքան էլ հին չէ: Այն կառուցել է Մալիք իբն Թաուկ իբն Ատաար ալ-Տաղլիբին՝ Մամունի խալիֆայության ժամանակ:

Աղրաման Դիար Ռաբիայի հին գյուղերից էր, և այն նվաճեց Հասան իբն Օմար իբն ալ-Խաթթաբ ալ-Տաղլիբին նրա տիրոջ ձեռքից: Սա կառուցեց մի բերդ ու ամրացրեց:

Քաֆր Տուսան հին բերդ էր: Այն վերցրին Աբու Ռիմսայի որդիները, բնակվեցին, քաղաք դարձրին ու ամրացրին:

Ինձ պատմել է Մուսաֆա իբն Թաուսը, լսելով իր հորից, թե հարցրել եմ ծերունիներին Բալադի, Դիար Ռաբիայի և Բառիյայի հողերի տասանորդ [վճարելու] մասին: Ասվել է, թե դրանք տասանորդ վճարող հողեր են, քանի որ դրանց արար տերերը խլամ են ընդունել, կամ անտեր, մեռյալ (խոպան) հողեր են, որ [մահմեդականները] մշակելի են դարձրել և կամ քրիստոնյաները լքել են հողերը և դարձել են անխնամ մեռյալ հողեր ու հատկացվել են արաբներին որպես կալված:

Աբու Աֆֆան ալ-Ռակկին ինձ պատմել է Ռակկայի տարեց քարտուղարներից և ուրիշներից լսելով, թե Այն ալ-Ռումիյան ու նրա ջրերը պատկանում էին Վալիդ իբն Ուկբա իբն Աբու Մուայթին, որը տվեց Աբու Ուբայդ ալ-Թաիին, ապա անցավ հավատացելոց իշխան Աբու-լ-Աբբասին և նա պարգևեց Մայմուն իբն Համդային՝ Ալի իբն Աբդալլահ իբն Աբբասի մաուլային: Ապա այն գնեց Ռաշիդը՝ նրա ժառանգորդներից և այժմ Ռակկայի հողերից է:

Ասում են, որ Իբն Հուբայրան [այսպես կոչված] Հուբայրայի անտառը վերցրել էր որպես տիրույթ, սակայն բռնագրավվեց ու տրվեց որպես տիրույթ Բիշր իբն Մայմունին՝ Բաղդադում Շամի դռան կողմերում գտնվող Թակատի (կամարակապ փողոցի) տիրոջը: Ապա այն գնեց Ռաշիդը և այժմ՝ Սարուջի հողերից է:

Հիշամ [խալիֆան] իր աղջկանը՝ Այիշային, մի տիրույթ էր պարգևել Ռասաֆայում, որը նրա անունով էր հայտնի, սակայն հարքունիքը գրավվեց:

Աբդ ալ-Մալիք և Հիշամ [խալիֆաները] մի գյուղ ունեին Սալուս կոչված և Քաֆր Հայդա կոչված գյուղի կից՝ Եդեսիայի կողմերում:

Իսկ Խառանում Ղամր իբն Յազիդին էր պատկանում Տալլ Ղաֆրան, Տալլ Մազարայի հողերը, ալ-Մուսալլայի (աղոթավայր) հողերը և Խառանի շրջակայքում հարքունիս գրավված հողերն ու հասութաբեր (խանութներ, արհեստանոցներ) հաստատությունները:

Աբդ ալ-Վահիդի մարգագետինը մահմեդականների համար արոտավայր էր նախքան Հիսար[69] և Ջասլարան[70] կառուցվելը, որից հետո այն լքվեց և ջրով ողողվեց, իսկ Հուսայն ալ-Խադիմը (ներքինին) այն միացրեց Ահուադին՝ Ռաշիդի խալիֆայության օրերին: Ապա որոշ մարդիկ ապօրինի կերպով գրավեցին նրա ագարակները, մինչև որ Աբդալլահ իբն Թահիրը եկավ Ասորիք, նորից դրանք դարձրեց [արքունի] կալվածներ: Աբու Այյուբ ալ-Ռակկին ասել է, որ լսել է, թե Աբդ ալ-Վահիդը, որի անունով կոչվել է այս մարգագետինը, նույն Աբդ ալ-Վահիդ իբն ալ-Հարիս իբն ալ-Հաքամ իբն Աբու-լ-Ասին է, որը Աբդ ալ-Մալիք [խալիֆայի] հորեղբորորդին էր: Մարգագետինը նրան էր պատկանում և նա այն դարձրեց միայն մահմեդականներին հատկացված արոտավայր: Նա է, որին Կութաման ներբողել է.

Եթե մահը խնայի Աբդ ալ-Վահիդին,
Քաղաքի այդ բնակիչների մասին մի անհանգստացիր:

## ՏԱՂԼԻԲ ԻԲՆ ՎԱԻԼ ՑԵՂԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

էջ 185 – 187

Պատմել է Շայբան իբն Ֆառուխը, լսելով Աբու Ուվանայից, իսկ նա՝ ալ-Մուղիրայից և վերջինս՝ Սաֆֆահ ալ-Շայբանիից, թե Օմար իբն ալ-Խաթթաբը կամենում էր Տաղլիբ ցեղի քրիստոնյաներից ջիզիա վերցնել, սակայն նրանք վեր կացան ու փախան, մի մասը հեռավոր վայրեր հասավ: Ասում է նրան (Օմարին) Նուման իբն Զուրաան, կամ Զուրաա իբն Նումանը՝ խնդրում եմ քեզ Ալլահի անունով Տաղլիբ ցեղի համար, չէ՞ որ նրանք արաբներ են, որ խորշում են ջիզիայից: Նրանք ուժի տեր են, ուստի թշնամին չպետք է նրանց օգտագործի մեր դեմ: Օմարը փնտրեց ու ետ բերեց նրանց ու կրկնապատկեց սադական[71]:

Պատմել է Շայբանը, լսելով Աբդ ալ-Ազիզ իբն Մուսլիմից, իսկ սա՝ Լայսից, նա էլ՝ մի մարդուց, որը լսել էր Սաիդ իբն Ջուբայրից, իսկ նա՝ Իբն Աբբասից, թե Տաղլիբ ցեղի քրիստոնյաների մորթած զոհերը

չպետք է ուտել, նրանց կանանց հետ չպետք է ամուսնանալ. նրանք մեզանից չեն և ոչ էլ [սուրբ] Գրքի ժողովրդից են: Պատմել է Աբբաս իբն Հիշամը, լսելով հորից, իսկ սա Ուվանա իբն Հաքամից ու Աբու Միհնաֆից, թե Օմայր իբն Սաադը գրել էր Օմար իբն ալ-Խաթթաբին տեղեկացնելով, որ եկել է Եփրատի Ասորիքի կողմերի ափերը, գրավել Անատը և Եփրատի այլ բերդերը ու կամեցել է մահմեդականացնել Տաղլիբ ցեղից նրանց, ովքեր այնտեղ են, սակայն մերժել են և պատրաստվել անցնելու Ռումի երկիրը: Նույն բանն առաջարկել է նաև Եփրատի արևելյան ափին գտնվողներին, սակայն սրանք ևս մերժել են ու խնդրել, որ թույլատրվի հեռանալ: Նա հարցնում էր նրա (Օմարի) կարծիքը:

Օմարը գրեց նրան՝ հրամայելով կրկնապատկել նրանց համար սադական, որը մահմեդականներից է վերցվում ամեն անասունից ու հողից, իսկ եթե մերժեն, ապա կռվել նրանց դեմ, մինչև ոչնչացնելը, կամ ընդունեն՝ իսլամը: Սրանք ընդունեցին կրկնակի սադական, ասելով՝ միայն թե չլինի այնպիսի ջիզիա, ինչպես օտար ռամիկից վերցված ջիզիան է. համաձայն ենք ու կպահպանենք մեր կրոնը:

Պատմել է Ամր ալ-Նակիդը, թե լսել է Աբու Մուավիայից, իսկ սա՝ ալ-Շայբանից և նա՝ ալ-Սաֆֆահից և նա էլ՝ Դաուդ իբն Քուրդուսից, թե Օմար իբն ալ-Խաթթաբը, երբ տեսել էր, որ Տաղլիբ ցեղը Եփրատն անցել էր՝ կամենալով հասնել Ռումի երկիրը, հաշտություն կնքեց այն պայմանով, որ չմկրտեն իրենց երեխաներին, ոչ էլ ստիպեն իրենց կրոնն (քրիստոնեություն) ընդունել, իսկ սադական պետք է կրկնակի չափով վճարեին: Դաուդ իբն Քուրդուսն ասել էր, թե նրանք հովանավորություն (զիմմա) չէին վայելում, քանի որ նրանք իրենց կրոնով ներկել (օծել) էին, այսինքն նկատի ունի մկրտությունը:

Պատմել է ալ-Հուսայն իբն ալ-Ասուադը, լսելով Յահիա իբն Ադամից, իսկ սա՝ Իբն Մուբարաքից, սա էլ՝ Յունիս իբն Եզիդ ալ-Այլիից և նա ալ-Զուհրիից, թե [Սուրբ] Գրքի ժողովրդի անասուններից սադակա չի վերցվում, բացառությամբ Տաղլիբ ցեղի քրիստոնյաներից, կամ ընդհանրապես արաբ քրիստոնյաներից, որոնց ունեցվածքն հիմնականում անասուններից է բաղկացած, ուստի նրանք պարտավոր են մահմեդականների վճարածի կրկինը վճարել:

Պատմել է Սաիդ իբն Սուլայման Սաադավայհը՝ լսելով Զուրաա իբն Նումանից, թե Օմար [խալիֆան] Տաղլիբ ցեղի քրիստոնյաների մասին ասել է, նրանք արաբներ են, որ խորշում են ջիզիայից, սակայն նրանք մշակելի հողերի և անասունների տեր են: Օմարը կամենում էր նրանցից ջիզիա վերցնել, սակայն նրանք երկրով մեկ ցրվեցին ու նա հաշտություն կնքեց այն պայմանով, որ հողերի ու անասունների համար մահմեդականի վճարած սադակայի կրկինը վճարեն, միայն թե իրենց երեխաներին քրիստոնյա չդարձնեն:

Պատմել է Մադաինին, թե Ալի [խալիֆան] ասել է, որ եթե կարողանայի զբաղվել Տաղլիբ ցեղով, կկոտորեի նրանց, կգերեվարեի նրանց զավակներին, քանի որ ուխտը խախտել են և այլևս չեն կարող հովանավորություն վայելել, քանզի նրանք քրիստոնյա են դարձրել իրենց զավակներին: Պատմել է Աբու Նասր ալ-Տամմարը, վերցնելով Զիյադ իբն Հուդայր ալ-Ասադիից, թե՝ ինձ ուղարկեց Օմարը Տաղլիբ ցեղի քրիստոնյաների մոտ, որպեսզի վերցնեմ նրանց ունեցվածքի տասանորդի կեսը, բայց արգելեց տասանորդ վերցնել մահմեդականից, կամ դիմմիից, որը խարաջ է վճարում:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից և ուրիշներից, թե Օսման [խալիֆան] հրամայել էր, որ Տաղլիբ ցեղից ջիզյան գանձվի միայն ոսկով ու արծաթով, սակայն երբ ստուգեց, որ Օմարը սադակայի կրկնակին էր վերցրել, հրաժարվեց դրանից:

Ասել է Վակիդին, թե ասել են Սուֆիան ալ-Սաուրին, Աուզաին, Մալիք իբն Անասը, Իբն Աբու Լայլան, Իբն Աբու Զիբը, Աբու Հանիֆան, ինչպես նաև Աբու Յուսուֆը, թե Տաղլիբ ցեղի մարդը մահմեդականի վճարածի կրկինը պետք է վճարի իր հողի, անասունների և ունեցվածքի համար, սակայն ոչ երեխան ու տկարամիտը, այս Իրաքի [իրավագետ] մարդիկ գտնում են, որ պետք է նրանց հողերից սադակայի կրկինը վերցնել, իսկ անասուններից ոչինչ չառնել: Հիջազի[72] [իրավագետ] մարդիկ գտնում են, որ այդ [հարկը] պետք է անասուններից ու հողից վերցնել: Սակայն բոլորը համաձայն են այն բանում, որ Տաղլիբ ցեղի ունեցվածքից վերցված [հարկը] խարաջային հարկի նման պետք է լինի, քանի որ փոխարինում է ջիզյային:

## ՋԱԶԻՐԱՅԻ ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ԱՄՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

էջ 187 – 189

Ասվում է, որ երբ Օսման իբն Աֆֆանը խալիֆա դարձավ, գրեց Մուավիային, նշանակելով նրան Ասորիքի կառավարիչ, իսկ Ումայր իբն Սաադ ալ-Անսարիին՝ Ջազիրայի կառավարիչ, հեռացրեց սրան ու Մուավիային հանձնեց Ասորիքը, Ջազիրան ու նրանց սահմանային ամրությունները: Հրամայեց նրան արշավել Շիմշաթ[73], որը Չորրորդ Հայաստանն է (Արմինիա)[74], կամ ուրիշին հանձնարարել այն: Սա ուղարկեց Հաբիր իբն Մասլամա ալ-Ֆիհրիին և Սաֆուան իբն Մուաթթալ ալ-Սուլամիին: Նրանք, հասնելուց մի քանի օր անց, նվաճեցին Եդեսիայի հաշտության նման պայմաններով: Սաֆուանը մնաց այնտեղ և վախճանվեց Մուավիայի խալիֆայության վերջում: Ասվել է նաև, թե արշավանքը կատարել է ինքը՝ Մուավիան, իսկ այս երկուսը նրա հետ են եղել. Սաֆուանին նշանակել է կառավարիչ և սա

տեղավորվել է ու այնտեղ էլ մահացել:

Պատմում են, որ Կոստանդին բռնակալը[75] Մալաթիան պաշարելուց հետո 133 (9 օգոստոս 750 – 29 հուլիս 751) թվականին հարձակվել է Շիմշաթի վրա, սակայն ոչինչ չի կարողացել գրավել և ասպատակել է նրա շրջակայքն ու հեռացել:

Շիմշաթը մնաց խարաջային շրջան, մինչև որ Մուտավաքքիլ Ալլահ [խալիֆան] այն դարձրեց տասանորդային այլ սահմանային ամրությունների նման:

Պատմվում է, որ Շիմշաթի նվաճումից հետո Հաբիբ իբն Մասլաման արշավեց Կամախ[76] (Քամխ) ամրոցի դեմ, սակայն չկարողացավ գրավել: Հարձակվեց նաև Սաֆուանը, սակայն չկարողացավ նվաճել: Ապա վերջինս կրկին արշավեց 59 (25 հոկտեմբեր 678 – 12 հոկտեմբեր 679) թվականին, որը նրա մահվան տարին է, իր հետ ունենալով Ումայր իբն Հուբաբ ալ-Սուլամիին: Ումայրը պարսպի վրա բարձրացավ և մենակ կռվեց, մինչև որ հռոմները նահանջեցին և մահմեդականները բարձրացան և այսպիսով Ումայրը նվաճեց այն: Նա սրանով հպարտանում էր և նրան գովում էին:

Ապա հռոմներն այն գրավեցին, իսկ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը վերագրավեց, և այդպես մնաց: Հետո հռոմները կրկին գրավեցին: Եվ ահա 149 (16 փետրվար 766 – 5 փետրվար 767) թվականին Մանսուրն անձամբ եկավ Բաղդադից, իջևանեց Հադիսատ ալ-Մաուսիլում[77] և այնտեղից արշավանքի ուղարկեց Հասան իբն Կահթաբային և նրանից հետո Մուհամմադ իբն Աշաասին, որոնց հրամանատար կարգեց Աբբաս իբն Մուհամմադին և հրամայեց, որ նրանց հետ հարձակվի Կամախի վրա: Սակայն Մուհամմադ իբն ալ-Աշաասը մեռավ Ամիդում և Աբբասն ու Հասանը շարժվեցին ու հասան Մալաթիա և այնտեղից պարենը վերցնելով գնացին ու պաշարեցին Կամախը: Աբբասը հրամայեց քարանետ մեքենաներ (մանջանիկ) դնել, իսկ նրանք (բերդում) գիհի փայտի տախտակներով ծածկեցին ամրոցը, որպեսզի քարանետ մեքենայի քարերը չվնասեն նրան: Նրանք մահմեդականների վրա քարեր գլորեցին ու երկու հարյուր մարդ կոտորեցին: Մահմեդականները փիլիկվան (խոյ) բերեցին և սաստիկ կռիվ տեղի ունեցավ՝ մինչև որ գրավեցին այն: Այս արշավանքների ժամանակ Աբբաս իբն Մուհամմադի հետ էր Մաթար ալ-Վառակը:

Ապա հռոմները կրկին գրավեցին ու փակվեցին Կամախում: Եվ ահա 177 (18 ապրիլ 793 – 6 ապրիլ 794) թվականին Մուհամմադ իբն Աբդալլահ իբն Աբդ ալ-Ռահման իբն Աբու Ամրա ալ-Անսարին, որը Աբդ ալ-Մալիք իբն Սալիհի կողմից Շիմշաթի կառավարիչ էր նշանակված, արշավեց ու գրավեց այն, նույն տարվա Ռաբի Բ ամսի տասնչորսին (30 հուլիս): Այն նվաճված մնաց մինչև Մուհամմադ իբն

Ուշիղի խառվության, երբ նրա բնակիչները վախսան և հռոմները գրավեցին: Ասվում է, որ Ուրմյդալլահ իբն ալ-Ակթան այն հանձնեց հռոմներին, փրկելու համար իր ոլդուն, որը նրանց մոտ գերի էր:

Հետագայում Արդալլահ իբն Թահիրն այն գրավեց Մամունի խալիֆայության ժամանակ ու մնաց մահմեդականների ձեռքում, մինչև որ Շիմշաթի և Կարնո քաղաքի'" (Կալիկալա) քրիստոնյաներից ոմանք և Խլաթի պատրիկ Բագարատ Աշոտի որդին (Բակրաթ իբն Աշութ)[70] խարամանկորեն համոզեցին այն հանձնել հռոմներին և այսպիսով սիրաշահել նրանց, հանուն այն կալվածների [ապահովության], որ ունեին Շիմշաթի գավառում:

## ՄԱԼԱԹԻԱՆ

Էջ 189 - 196

Պատմում են, որ Իյադ իբն Ղանմը Շիմշաթից Մալաթիա ուղարկեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին, որը գրավեց այն, սակայն հետո մահմեդականների ձեռքից գնաց: Երբ Մուավիան Ասորիքի ու Ջազիրայի կառավարիչ դարձավ, ուղարկեց Հաբիբ իբն Մասլամային, որը բռնի ուժով գրավեց և այնտեղ մահմեդական հեծյալների կայազոր ու կառավարիչ նշանակեց: Երբ այնտեղ եկավ Մուավիան, հռոմների դեմ արշավանքի ընթացքում, Ասորիքի, Ջազիրայի և այլ վայրերի զորքերին տեղում [որպես] կայազոր նշանակեց: Այս քաղաքը ամառային արշավանքների ճանապարհի առաջին կայանն էր:

Ապա նրա բնակիչներն այնտեղից տեղափոխվեցին Աբդալլա իբն ալ-Զուբայրի [ապստամբության] օրերին, եկան հռոմները քանդեցին, հետո թողեցին ու հեռացան: Այնտեղ եկան հաստատվեցին քրիստոնյաներ՝ հայեր ու նաբաթացիք (արամեացիք):

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, վկայակոչելով Վակիդիին, թե մահմեդականները Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիքի 83 (4 փետրվար 702 – 23 հունվար 703) թվականի արշավանքից հետո հաստատվել էին Տարենտեում (Թարանդա) և բնակարաններ կառուցել: Սա Մալաթիայից երեք օթևան (մարհալա)[80] հեռավորության վրա է գտնվում դեպի Ռումի երկիրը:

Այդ ժամանակ Մալաթիան ավերակ վիճակում էր, ուր ոչ ոք չէր ապրում, բացի դիմմի մարդկանցից, ինչպես՝ հայեր և ուրիշներ: Ամառները Ջազիրայից այստեղ էր գալիս մի զորամաս ու մնում, մինչև հասնում էր ձմեռը, ձյուն էր իջնում, և այդ ժամանակ հեռանում էին: Սակայն երբ Աբդ ալ-Ազիզը խալիֆա դարձավ, Տարենտեի ժողովրդին բռնի տեղահանեց, քանզի վախենում էր, որ թշնամին հարձակումներ կգործի: Հեռանալիս նրանք ամեն ինչ մեջքի վրա

տարան, սակայն քացախի ու ձեթի կարասները ջարդեցին: Ապա նա տեղավորեց նրանց Մալաթիայում, իսկ Տարենտեն՝ կործանեց: Մալաթիայի կառավարիչ նշանակեց Ջաավանա իբն Հարիսին՝ Ամիր իբն Սաասաա ցեղից մեկին:

Ասում են, որ 123 (26 նոյեմբեր 740 – 14 նոյեմբեր 741) թվականին քսան հազար հոռոմներ եկան ու պաշարեցին Մալաթիան: Բնակիչները դռները փակեցին և կանայք փաթթոցներով ելեցին պարիսպների վրա ու կռվեցին: Մալաթիայի բնակիչների սուրհանդակը դուրս եկավ փոստի ձիով օգնություն խնդրելու և հասավ Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆային] Ռուծափում (Ռուսաֆա)[81]: Հիշամը զորք պատրաստեց Մալաթիա ուղարկելու, սակայն լուր ստացավ, թե հոռոմները հեռացել են և կանչեց սուրհանդակին, լուրը հայտնեց նրան ու նրա հետ ձիավորներ ուղարկեց, որպեսզի այնտեղ (Մալաթիայում) կայազոր գառնան: Ապա Հիշամն անձամբ արշավեց, կանգ առավ Մալաթիայում, բանակ դրեց ու վերակառուցեց այն: Նա անցել էր Ռակկայի միջով և այնտեղ մտել էր սուրը մեջքին, մի բան, որ մինչ այդ երբեք չէր արել:

Ասել է Վակիդին, թե 133 (9 օգոստոս 750 – 29 հուլիս 751) թվականին Կոստանդին բռնակալը եկավ դեպի Մալաթիա, իսկ Կամախն այդ ժամանակ մուհամեդականների ձեռքում էր և նրա կառավարիչն էր Սուլայմ ցեղից մի անձնավորություն: Կամախի բնակիչները օգնության կոչ արեցին Մալաթիայի բնակիչներին և այնտեղից հոռոմների դեմ դուրս եկավ ութ հարյուր ձիավոր: Սակայն հոռոմների հեծելազորը հաղթեց նրանց, փախուստի մատնեց և եկավ հոռոմ (Կոստանդին) ու կանգ առավ, պաշարեց Մալաթիան: Այդ ժամանակ Ջազիրան խռովության մեջ էր, իսկ նրա կառավարիչ Մուսա իբն Քաաբը Խառանում էր: Նրա մոտ [Մալաթիայից] սուրհանդակ ուղարկեցին, սակայն նա չկարողացավ օգնել: Լուրը հասավ Կոստանդինին, որն ասաց նրանց. Ով Մալաթիայի ժողովուրդ, ես եկել եմ տեղյակ լինելով ձեր վիճակի մասին և թե ինչպես ձեր իշխանությունները ի վիճակի չեն ձեզնով զբաղվելու. իջեք և նրաշխավորագիր խնդրեցեք, դատարկելով քաղաքը, որը ես քանդելու եմ և այստեղից հեռանալու եմ: Սակայն նրանք մերժեցին և նա քարանետ մեքենաներ դրեց: Երբ տագնապը սաստկացավ և պաշարումն ուժեղացավ, խնդրեցին նրանից, որ իրենց խնայի: Ապա պատրաստվեցին հեռանալու, տանելով այն, ինչ հնարավոր էր, իսկ ինչ ծանր էր՝ նետեցին ջրհորներն ու թաքստոցները և դուրս եկան: Հոռոմները նրանց համար քաղաքի դռնից մինչև որոշ տարածություն երկու շարք պատրաստեցին և ամեն կողմում կանգնողը իր սուրը մեկնելով դիպչում էր դիմացը կանգնողի սրի ծայրին, այնպես որ սրերով կամար էր կազմվել և դրա տակով անցկացրին ու տարան տեղ հասցրեցին: Նրանք գնացին

Ջազիրա ու տարբեր վայրեր հաստատվեցին, իսկ հոռոմներր կործանեցին Մալաթիան և մնաց միայն մի չտնմարան, որի մի մասն էլ վնասված էր: Նրանք քանդեցին Կլավդին (Կալաուդիյա) ամրոցը[82]:

139 (5 հունիս 756 – 24 մայիս 757) թվականին Մանսուր (խալիֆան) դրեց Սալիհ իբն Ալիին, հրամայելով վերակառուցել ու ամրացնել Մալաթիան: Ապա, որոշեց Արդ ալ-Վահհար իբն Իբրահիմ ալ-Իմամին՝ որպես Ջազիրայի ու նրա սահմանային ամրությունների կառավարիչ: Սա եկավ 140 (25 մայիս 757 – 14 մայիս 758) թվականին իր հետ բերելով Հասան իբն Կահթարային՝ Խորասանի գնդերով: Նա յոթանասուն հազար մարդ հավաքեց Ասորիքից ու Ջազիրայից և բերեց Մալաթիա: Նա տարբեր քաղաքներից գործավորներ էր հավաքել և սկսեց շինարարությունը: Բանն այն է, որ Հասան իբն Կահթարան այնքան ուշադիր էր, որ նույնիսկ քար էր մատուցում որմնադիրներին: Նա կերակրում էր մարդկանց (գործավորներին), վարձատրում էր իր միջոցներից՝ իր խոհանոցները բացելով նրանց: Այս բանը զայրացրեց Արդ ալ-Վահհարին, որը դրեց Աբու Ջաաֆար [Մանսուրին], տեղեկացնելով, որ թեև ինքը [բավարար] կերակրում է մարդկանց, սակայն Հասանը մի քանի անգամ ավելի է կերակրում, որպեսզի այդպիսով փչացնի իր գործը. նա մեղադրում էր նրան չոայլության ու կեղծավորության մեջ և հայտնում, որ մուննտիկներ ունի մարդկանց ճաշի հրավիրելու: Աբու Ջաաֆարը գրեց նրան. Ով երեխա, Հասանն իր փողով է կերակրում, իսկ դու իմ փողով ես կերակրում, դու պարզապես անխելք ես, անհասկացող ու վատ մտքերի տեր: Իսկ Հասանին էլ դրեց, թե չարունակիր կերակրել, միայն առանց մունետիկի:

Հասանը հայտարարում է, թե ով չուտ վերջացնի, կստանա այսքան և այսքան, իսկ մարդիկ ջանք էին թափում աշխատանքի մեջ, այնպես, որ վեց ամսում ավարտեցին Մալաթիայի ու նրա մզկիթի շինարարությունը: Եվ զինվորների ամեն տաս-տասնհինգ հոգիանոց խմբի համար կառուցեց երկու ներքին և երկու վերին տներ (սենյակներ) և մի ախոռ: Կառուցեց նաև մի սահմանային ամրոց երեսուն մղոն հեռավորության վրա և մի այլ ամրոց Կուբակիբ գետի[83] վրա, որը Եփրատ է թափվում: Մանսուրը Մալաթիայում բնակեցրեց չորս հազար ռազմիկ Ջազիրայի բնակիչներից, քանզի սա նրանց սահմանային ամրությունների [գոտին] էր, ավելացնելով ամեն մի մարդու ռոճիկին տաս դինար և, որպես նպաստ հարյուր դինար, բացի այն վարձատրությունից, որ ցեղերն իրենց միջև բաժանում էին: Նա այնտեղ զենքի պահեստ (կայազոր) դրեց, զինվորներին դաշտեր պարգևեց և վերակառուցեց Կլավդիա ամրոցը:

Կոստանդին բռնակալը հարյուր հազարից ավելի զորքով եկավ կանգ առավ Պիրամոս (Ջայհան) գետի մոտ, սակայն լսելով արաբնե-

րի բազմամարդության մասին, նա կանգնեց: Լսել եմ, որ ասել են, թե Աբդ ալ-Վահհաբի հետ արշավանքի ժամանակ եղել են Նասր իբն Մալիք ալ-Խուզաին և Նասր իբն Սաադ ալ-Քաաիբը՝ Անսար ցեղի մարդկանց, բանաստեղծն ասել է.

Քեզ շրջապատում են երկու Նասրները
Նասր իբն Մալիքը
Եվ Նասր իբն Սաադը
Թող քո հաղթանակը (նասր) լինի իսկական:

141 (14 մայիս 758 – 3 մայիս 759) թվականին Մուհամմադ իբն Իբրահիմը Մալաթիայից արշավանքի ուղարկվեց Խորասանի գնդերով, իսկ նրա առաջապահ դնդի պետն էր Մուսայյիբ իբն Զուհայրը: Սա այնտեղ ձիավոր զորք թողեց, որպեսզի թշնամին չփորձվի հանկարծակի հարձակում գործել: [Մալաթիայի] ողջ մնացած բնակիչներն այնտեղ վերադարձան: Ռաշիդի խալիֆայության օրոք հռոմները հարձակվել էին Մալաթիայի վրա, բայց ապարդյուն: Նրանց վրա հարձակվեց Ռաշիդը և հաղթեց ու ճզմեց նրանց:

Պատմել են, որ երբ Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը Մանբիջում[84] էր, Խալիդ իբն ալ-Վալիդին ուղարկեց Մարաշի նահանգը և սա գրավեց նրա բերդը այն պայմանով, որ բնակիչները դուրս գան ու հեռանան և ապա քանդեց: Երբ 30 (4 սեպտեմբեր 650 – 23 օգոստոս 651) թվականին Սուֆիան իբն Աուֆ ալ-Ղամիդին Ռումի երկիրն արշավեց, երթն սկսեց Մարաշից և մի շրջան կատարեց այդ երկրում: Մուավիան վերակառուցեց Մարաշ քաղաքը և զինվորների բնակեցրեց: Եզիդ իբն Մուավիա [խալիֆայի] մահվանից հետո հռոմների հարձակումները հաճախակի դարձան և սրանք (զինվորները) հեռացան այնտեղից: Աբդ ալ-Մալիք [խալիֆան] իր հոր՝ Մարուան իբն ալ-Հաքամի մահվանից հետո, հաշտություն կնքեց հռոմների հետ և որոշ գումար վճարելով՝ ապահովեց իր խալիֆայությունը: Սակայն 74 (13 մայիս 693 – 1 մայիս 694) թվականին Մուհամմադ իբն Մարուանը խախտեց պայմանադիրը և արշավեց հռոմների դեմ: Իսկ 75 (2 մայիս 694 – 20 ապրիլ 695) թվականին Մուհամմադ իբն Մարուանը ամառային արշավանք կատարեց և հռոմները Ջումադա Ա ամսին (28 օգոստոս – 26 սեպտեմբեր) առաջացան Մարաշի կողմերը դեպի Ամակ (փոսեր): Նրանց դեմ դուրս եկան մահմեդականները, որոնց գլխավորում էր Աբան իբն ալ-Վալիդ իբն Ուկբա իբն Աբու Մուայթը՝ իր հետ ունենալով Աբդ ալ-Մալիք իբն Մարուանի մաուլա Դինար իբն Դինարին՝ Կիննասրինի ու նրա գավառների կառավարչին: Նրանք իրար հետ բախվեցին Մարաշի Ամկի (փոս) մոտ և սաստիկ կռիվ տեղի ունեցավ, հռոմները նահանջեցին և մահմեդականները հետապնդեցին՝ կոտորելով ու գերելով: Այդ տարում Դինարը հռոմների մի խմբի էր հանդիպել Յաարայի կամուրջի մոտ, որը

Շիմշաթից մոտավորապես տաս մղոն հեռավորության վրա էր և հաղթել էր նրանց:
Հետագայում Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը գնաց Մարաշ, վերակառուցեց ու ամրացրեց, բնակիչներ բերեց, մայր մզկիթ կառուցեց և Կիննասրինի բնակչությանը պարտավորեցրեց ամեն տարի օգնական զորքեր ուղարկել Մարաշ:
Մարուան իբն Մուհամմադ [խալիֆայի] ժամանակ, երբ նա զբաղված էր Եմեսայի բնակիչների դեմ կռվելով, հոռոմները հարձակվեցին ու պաշարեցին Մարաշ քաղաքը, մինչև որ բնակիչները հաշտություն կնքեցին հեռանալու պայմանով: Նրանք իրենց ընտանիքներով գնացին Ջազիրայի կողմերը և Կիննասրինի գոտին, ապա [հոռոմները] քանդեցին այն: Այդ ժամանակ Մարուանի նշանակած կառավարիչն էր ալ-Քաուսար իբն Զուֆար իբն ալ-Հարիս ալ-Քիլաբին, իսկ [Ռումի] բանակալն էր Կոստանդինը՝ Լևոնի որդին (Կուստանթին իբն Ալիուն): Ապա երբ Մարուանը վերջացրեց Եմեսայի գործը և քանդեց նրա պարիսպը, զորք ուղարկեց Մարաշը վերակառուցելու և իրոք կառուցվեց ու քաղաք դարձավ, սակայն հոռոմները օգտվելով նրա դեմ ծագած խռովության առիթից, կրկին քանդեցին:
Աբու Ջաաֆար ալ-Մանսուրի խալիֆայության ժամանակ Սալիհ իբն Ալին վերակառուցեց, ամրացրեց և կայազորի համար մարդկանց հրավիրեց՝ խոստանալով բարձր վարձատրություն: Ապա, երբ խալիֆա դարձավ Մահդին, ավելացրեց նրա կայազորը և դինեց բնակչությանը: Պատմել է Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից, թե Միխայելը Դարբ ալ-Հադասից[85] հարձակվեց ութսուն հազարով, եկավ Մարաշի ամեր, մահմեդականներից մեծ բազմություն կոտորեց, վառեց ու գերեվարեց և կանգ առավ Մարաշի դռան առջև:
Այդ ժամանակ քաղաքի կառավարիչն էր Իսա իբն Ալին, որն այդ տարին արշավանք էր կատարել: Նրա (Միխայելի) դեմ ելան Իսայի մաուլաները, քաղաքի բնակչությունը և ռազմիկներ ու խփեցին քարերով ու նետերով: Սա նահանջեց, բայց երբ քաղաքից հեռացել էին, հարձակվեց նրանց վրա և Իսայի մաուլաներից ութ հոգու սպանեց, իսկ մնացածները պատսպարվեցին քաղաքում և դռները փակեցին: Նա պաշարեց նրանց, ապա հեռացավ ու հասավ Պիրամոս գետը: Լուրը հասավ Սումամա իբն ալ-Վալիդ ալ-Աբսիին, որը Դաբիկում էր և 161 (9 հոկտեմբեր 777 — 27 սեպտեմբեր 778) թվականին ամառային արշավանք էր կատարել: Սա մեծ հեծելազորք ուղարկեց, որը սակայն կոտորվեց ու մի մասն ազատվեց: Մահդին զայրացավ և պատրաստություններ տեսավ, որ հաջորդ տարի՝ 162 (28 սեպտեմբեր 778 — 16 սեպտեմբեր 779) թվականին արշավանքի ուղարկի Հասան իբն Կահթաբային:
Պատմել են, որ Հադասի բերդը[86] Օմար [խալիֆայի] օրոք նվաճ-

ված բերդերից էր: Այն դրավել էր Հարիր իբն Մասլաման, որն ուղարկված էր Իյաղի կողմից: Սրանից հետո Մուավիան վստահում էր նրան: Օմայանները Հաղասի լեռնանցքը[87] կոչում էին ալ-Սալամա (ապահովություն), որպես չարագուշակ անուն, քանի որ մահմեդականներն այնտեղ պարտվել էին: Այլ մարդիկ ասում են, որ դա (Հաղաս) պատահար խմաստով է օգտագործված: Իսկ ոմանք էլ ասում են, թե այդ լեռնանցքի վրա մի դևոատի (Հաղաս) պատանի դիմադրել է մահմեդականներին ու կռվել իր ընկերների հետ և այդ պատճառով էլ կոչվել է դևոատի պատանու լեռնանցք (Դարբ ալ-Հաղաս): Մարուան իբն Մուհամմադ [խալիֆայի] դեմ ծագած ապստամբության ժամանակ հոռոմները հարձակվեցին ու կործանեցին Հաղաս քաղաքը, իսկ բնակիչներին դուրս բերեցին՝ ինչպես արել էին Մալաթիայում: Ապա 161 թվականին Միքայելը հարձակվեց Մարաշի Ամկի կողմերը, իսկ Մահդին ուղարկեց Հասան իբն Կահթաբային, որն ասպատակեց Ռումի երկիրն ու խիստ ննղեց նրա բնակչությանը, այնքան, որ նրա պատկերն էին դնում իրենց եկեղեցիներում: Երբ նա մտել էր Հաղասի լեռնանցքից, տեսել էր նրա քաղաքի դիրքը: Իմանալով, որ Միքայելը նրանից (քաղաքից) հեռացել է, Հասանն ուսումնասիրել էր քաղաքի դիրքը և վերադարձին՝ Մահդիի հետ խոսել այս քաղաքի, ինչպես նաև Տարսոնի վերակառուցման մասին: Սա հրամայել էր սկսել նախ Հաղաս քաղաքի վերակառուցմամբ:

Հասանի հետ այս արշավանքների մասնակիցներից էին Մանդալ ալ-Անազին՝ քուֆացի [մահմեդական] ավանդություններ հավաքողը (մուհադդիս) և Մուտամիր իբն Սուլայման ալ-Բասրին: [Հաղասը] կառուցեց Ալի իբն Սուլայման իբն Ալին, որը Ջազիրայի ու Կիննասրինի կառավարիչն էր և այն կոչվեց Մուհամմադիյա: Մահդին մեռավ նրա շինարարության ավարտի ժամանակ, ուստի կոչվում էր թե Մահդիյա, թե Մուհամմադիյա: Այն կառուցված է աղյուսով: Նրա (Մահդիի) մահը տեղի ունեցավ 169 (14 հուլիս 785 – 2 հուլիս 786) թվականին:

Նրան հաջորդեց որդին՝ Մուսա ալ-Հադին, որը հեռացրեց Ալի իբն Սուլայմանին և Ջազիրայի ու Կիննասրինի կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Իբրահիմ իբն Մուհամմադ իբն Ալիին: Ալի իբն Սուլայմանը նոր էր ավարտել Հաղասի շինարարությունը և ահա Մուհամմադը այնտեղ հաստատեց Ասորիքի, Ջազիրայի ու Խորասանի զորքերին, ամեն զինվորի տալով քառասուն դինար ռոճիկ: Նա բնակավայրեր հատկացրեց նրանց՝ որպես ավատ (իկթա) և ամեն մի հոգու տվեց երեք հարյուր դիրհեմ: Շինարարությունն ավարտվեց 169 թվականին: Աբու-լ-Խաթթաբը պատմել է, որ Ալի իբն Սուլայմանը չորս հազար մարդու համար ռոճիկ սահմանեց ու նրանց

տեղավորեց, ինչպես նաև երկու հազար մարդ տեղափոխեց Սալամիայից, Շիմշաթից, Սամոսատից, Քեսունից (Քայսում)[88], Տլուքից (Դուլուք)[89] ու Ռաաբանից[90]:

Պատմել է Վակիդին, թե երբ Հադաս քաղաքը կառուցվեց, վրա հասան ձմեռն ու ձյունը, հորդառատ անձրևներ տեղացին, իսկ շենքերը լավ չէին կառուցված, պաշտպանված չէին և պատերը ճաքճքեցին ու քայքայվեցին: Հոռոմները հարձակվեցին, իսկ այնտեղ գտնվող զինվորները և ուրիշները (ժողովուրդ) ցրվեցին: Լուրը հասավ Հադիին, որն օգնություն ուղարկեց Մուսայիբ իբն Զուհայրի հետ մի խումբ, Ռաուհ իբն Հաթիմի հետ մի խումբ և մի խումբ էլ Համզա իբն Մալիքի հետ, սակայն ինքը մեռավ նախքան այդ գործի ավարտը:

Այս խալիֆա դարձավ Ռաշիդը և հրամայեց վերակառուցել քաղաքը, ամրացնել, կայազոր նշանակել, և ռազմիկներին բնակավայրեր ու հողակտորներ հատկացնել: Վակիդիից բացի մեկ ուրիշն էլ պատմել է, որ հոռոմների մեծ պատրիկներից մեկը Հադաս քաղաքը պաշարել էր հենց կառուցման ժամանակ, իսկ սա կառուցված էր հում աղյուսով, իրար վրա դրված (առանց շաղախի) և ձյունից վնասվել էր ու նրա կառավարիչն ու բնակիչներն արդեն փախել էին: Թշնամին մտավ, հրկիզեց մզկիթը, ավերեց քաղաքը և տարավ բնակիչների ունեցվածքը: Իսկ երբ Ռաշիդը խալիֆա դարձավ, վերակառուցեց այն:

Մանբիջի բնակիչներից ոմանք պատմել են, որ Ռաշիդը գրել է Մուհամմադ իբն Իբրահիմին, հաստատելով նրան որպես կառավարիչ և ահա սա էր, որ Ռաշիդի օրոք վերակառուցեց Հադաս քաղաքը, սակայն հետո հեռացվեց:

Պատմում են, որ Մալիք իբն Աբդալլահ ալ-Խասամին, որը կոչվում է «ամառային արշավանքների Մալիք» և Պաղեստինի բնակիչներից է, Ռումի երկիրն էր արշավել 46 (13 մարտ 666 – 2 մարտ 667) թվականին և վերադարձին շատ ավար բերել: Երբ Հադասի լեռնանցքից տասնհինգ մղոն հեռավորության վրա էր, մի վայրում, որը կոչվել է Ռահուա (բարձրադիր վայր), նա երեք օրում վաճառել էր ավարը՝ բաժանելով հասույթը: Այդ վայրը կոչվել է Ռահուատ Մալիք:

Ասվել է, թե Աբդ ալ-Վահիդի մարգագետինը մահմեդական հեծելազորին հատկացված արոտավայր էր եղել, սակայն երբ կառուցվեցին Հադասը և Զիբաթրան[91], լքվեց ու դարձավ վարելահող:

Ասել են, որ Զապետրան (Զիբաթրա) հոռոմների հին բերդերից էր: Այն նվաճել էր Հադասի հին բերդի հետ միասին Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին: Սա (Զապետրան) կանգուն մնաց, մինչև որ Վալիդ իբն Եզիդի օրոք հոռոմները քանդեցին այն, ապա վերակառուցվեց ոչ ամուր ձևով և հոռոմները՝ Մարուան իբն Մուհամմադ [խալիֆայի]

ում ապստամբության ժամանակ պաշարեցին ու քանդեցին: Մանսուրը վերակառուցեց, ապա [հոռոմները] հարձակվեցին ու քանդեցին, սակայն Ռաշիդը Մուհամմադ իբն Իբրահիմի միջոցով վերակառուցեց ու կայազոր նշանակեց: Մամունի խալիֆայության ժամանակ գրոհեցին հոռոմներն ու քանդեցին, հարձակվեցին բնակիչների հոտերի վրա ու մի մասը քշեցին տարան: Մամունը հրամայեց նորոգել այն և ամրացնել: 210 (24 ապրիլ 825 – 12 ապրիլ 826) թվականին Ռումի բռնակալը պատվիրակություն ուղարկեց խաղաղություն խնդրելով, սակայն նա (Մամունը) չընդառաջեց ու դրեց սահմանային ամրությունների կառավարիչներին, որոնք ներխուժեցին Ռումի երկիրը, մեծ կոտորած սարքեցին, ավերեցին և փայլուն հաղթանակ տարան, սակայն Յակզան իբն Աբդ ալ-Ալա իբն Ահմադ իբն Եզիդ իբն Ուսայդ ալ-Սուլամին վիրավորվեց:

Ապա հոռոմները հարձակվեցին Զապետրայի վրա ալ-Մուտասիմ Բիլլահ Աբու Իսհակ իբն ալ-Ռաշիդ խալիֆայի օրոք, կոտորեցին տղամարդկանց, կանանց գերեվարեցին, իսկ քաղաքը կործանեցին: Այս բանը զայրացրեց ու կատաղեցրեց նրան (Մուտասիմին), որն արշավեց նրանց վրա՝ մինչև հասավ Ամորիոն (Ամմուրիյյա)[92], ճանապարհին քանդելով շատ բերդեր: Նա պաշարեց այն, գրավեց, կոտորեց ռազմիկներին, գերեվարեց կանանց ու երեխաներին և ապա կործանեց: Հրամայեց վերակառուցել Զապետրան, ամրացնել և կայազոր նշանակել: Հոռոմները կրկին հարձակվեցին, սակայն հաջողություն չունեցան:

Ինձ պատմել են Աբու Ամր ալ-Բահիլին և ուրիշներ, թե Հիսն Մանսուրը[93] կոչվել է Մանսուր իբն Ջաավանա իբն ալ-Հարիս ալ-Ամիրիի անվամբ, որը Կայս ցեղից էր: Նրան էր հանձնարարված դրա կառուցումն ու նորոգումը և այնտեղ էր հաստատվել Մարուան [խալիֆայի] օրոք, որպեսզի ետ մղի թշնամուն, իր ձեռքի տակ ունենալով Ասորիքի ու Ջազիրայի մարդկանցից բաղկացած մի հոծ բանակ: Այս Մանսուրը Եդեսիայի կառավարիչն էր, երբ [Աբբասյան] պետության սկզբնական շրջանում նրա ժողովուրդը ապստամբեց: Նրանց պաշարեց [Աբու Ջաաֆար] ալ-Մանսուրը, որը Աբու-լ-Աբբաս [խալիֆայի] փոխարքան էր Ջազիրայի ու Հայաստանի (Արմինիա) վրա: Երբ գրավեց այն, Մանսուրը փախավ, ապա ներշնավորագիր (աման) ստացավ ու երևաց: Երբ Աբդալլահ իբն Ալին մերժեց ճանաչել Աբու Ջաաֆար ալ-Մանսուրի [խալիֆայությունը], սրան (Մանսուր իբն Ջաավանային) նշանակեց իր ոստիկանական պահազորքի հրամանատար: Սակայն երբ Աբդալլահը փախավ Բասրա, [Մանսուրը] թաքնվեց, բայց նրան մատնեցին 141 (14 մայիս 758 – 3 մայիս 759) թվականին: Մանսուր [խալիֆան] նրան բերել տվեց ու սպանեց Ռակկայում, երբ գալիս էր Երուսաղեմից: Ոմանք ասում են, որ նա (Մանսուր իբն Ջաավանան)

նրաշխավորագիր ստացավ և նրանց Իբն Ալիի փախուստից հետո, ապա նրա մոտ գտնվեցին հռոմեներին ուղղված նամակներ, ըստ որոնց, նա խալիֆին դավաճանում էր: Երբ Մանսուր [խալիֆան] Երուսաղեմից Ռակկա եկավ 141 թվականին, բերել տվեց նրան և Ռակկայում գլխատեց, ապա ինքը գնաց Կուֆայի մոտ, ալ-Հաշիմիյա քաղաքը:

Ռաշիդը Հիսն Մանսուրը կառուցել և այնտեղ կայազոր էր նշանակել դեռ Մահդիի խալիֆայության ժամանակ:

## ՊԵՏԱԿԱՆ ԳՐԱՍԵՆՅԱԿՆԵՐՈՒՄ ՀՈՒՆԱՐԵՆՆ [ԱՐԱԲԵՐԵՆՈՎ] ՓՈԽԱՐԻՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*էջ 196 – 197*

*Ասորիքի պետական գրասենյակներում լեզուն մնացել էր հունարենը մինչև Աբդ ալ-Մալիք իբն Մարուանի իշխանության գլուխ անցնելը, որը 81 (26 փետրվար 700 – 14 փետրվար 701) թվականին հրամայեց այն փոխարինել [արաբերենով]:*

*Բանն այն է, որ մի հռոմ քարտուղար, կամենալով ինչ որ բան գրել և ջուր չգտնելով, միզել էր թանաքամանի մեջ: Այդ մասին լսելով, Աբդ ալ-Մալիքը պատժել էր նրան և հրամայել Սուլայման իբն Սաադին պետական գրասենյակների (դիվան) լեզուն փոխել: Սա խնդրեց նրանից զիջել Հորդանանի խարաջը [որպես նպաստ] մեկ տարով: Նա այդ բանն արեց ու նրան նշանակեց Հորդանանի կառավարիչ: Տարին դեռ չէր լրացել, երբ լեզվի փոփոխությունը կատարվել էր և նա բերեց Աբդ ալ-Մալիքին [մատյանները]: Նա իր մոտ կանչեց իր քարտուղար Սարջունին (Սերգիոս) և ցույց տվեց նրան, իսկ նա տխրեց և մռայլ դուրս եկավ:Հանդիպելով մի խումբ հռոմ քարտուղարների (գրագիր) ասաց նրանց. Այլ արհեստ փնտրեցեք ապրուստի համար, քանզի Ալլահն այս արհեստը ձեզանից վերցրել է:*

*Հորդանանի ամբողջ տարեկան հարկը, որը [Սուլայմանին] տրված էր որպես նպաստ, հարյուր ութսուն հազար դինար էր, Պաղեստինի տարեկան հարկը՝ երեք հարյուր հիսուն հազար դինար, Դամասկոսի տարեկան հարկը՝ չորս հարյուր հազար դինար, Եմեսայի, Կիննասրինի և այժմ Ավասիմ կոչված շրջանների հարկը՝ ութ հարյուր հազար դինար, սակայն ասվում է նաև, թե յոթ հարյուր հազար դինար էր:*

*Էջ 197 – 213*

*Ինձ պատմել են Մուհամմադ իբն Իսմաիլը Պարտավի (Բարդաա)[94] բնակիչներից և ուրիշներ, լսելով Աբու Բարա Անբասա իբն Բահր ալ-Արմանիից, ինչպես նաև պատմել են Մուհամմադ իբն Բիշր ալ-Կալին (Կարնեցի), լսելով նրա (Կարնո քաղաքի) ծերունիներից (չեյխերից) և Բարմաք իբն Աբդալլահ ալ-Դաբիլին (Դվնեցի). Մուհամմադ իբն ալ-Մուխայիս ալ-Խիլաթին (Խլաթեցի) և ուրիշներ, Հայաստանի վիճակին լավատեղյակ մարդկանցից: Սրանց հետ զրուցել եմ և մաս-մաս իրար կցել նրանց խոսքերը:*

*Ասել են, թե Շիմշաթը, Կարնո քաղաքը (Կալիկալա), Խլաթը, Արճեշը (Արջիշ), Ապահունիքը (Բաջունայս) կոչվում էին Չորրորդ Հայաստան (Արմինիա)[95], Վասպուրականի նահանգը (Բասփուռաջան), Դվինը (Դաբիլ)[96], Շիրակը (Սիրաջ), Տայքը (Թայր) և Բագրևանդը (Բաղրավանդ)[97] կոչվում էին Երրորդ Հայաստան (Արմինիա)[98], Վիրքը (Ջուրզան) կոչվում էր Երկրորդ Հայաստան (Արմինիա)[99], իսկ Սիսականը (Սիսաջան)[100], Աղվանքը (Առան)[101]՝ Առաջին Հայաստան (Արմինիա)[102]: Ասում են նաև, թե միայն Շիմշաթն էր կոչվում Չորրորդ Հայաստան, Կարնո քաղաքը, Խլաթը, Արճեշը և Ապահունիքը կոչվում էին Երրորդ Հայաստան, Շիրակը, Տայքը, Բագրևանդը, Դվինն ու Վասպուրականը կոչվում էին Երկրորդ Հայաստան, Իսկ Սիսականն, Աղուանքն ու Տփղիսը (Տաֆլիս)՝ Առաջին Հայաստան:*

*Վիրքը և Աղուանքը խազարների ձեռքում էին, իսկ Հայաստանի մնացած մասերը՝ հոռոմների ձեռքում և կառավարում էր Արմանիակոսի սերը[103]: Խազարները սովորաբար ասպատակում էին, շատ հաճախ հասնելով Դինավար: Պերոզ արքայի որդի Կավատը ուղարկել էր իր մեծ զորավարներից մեկին տասներկու հազարով, որը եկավ Աղուանք երկիրը և նվաճեց Արաքս կոչված գետից մինչև Շարուան[104]: Ապա Կավատը հասավ նրան և Աղուանքում կառուցեց Բայլական[105] քաղաքը, ինչպես նաև Պարտավ քաղաքը ամբողջ սահմանային ամրությունների համար, իսկ Կապաղակ (Կաբալա)[106] քաղաքը՝ խազարների դեմ: Ապա շինեց հում աղյուսից պատնեշը Շարուանի և Դրունք Ալանացի (Բար ալ-Լան)[107] միջև և աղյուսե պատնեշի վրա երեք հարյուր վաթսուն քաղաք կառուցեց, որոնք կործանվեցին Դարբանդի[108] կառուցումից հետո:*

*Կավատից հետո իշխեց որդին Խոսրով Անուշիրուանը[109] Կավատի որդին, որը կառուցեց Շապորան (Շաբուրան), Մաղքութք (Մասկաթ) քաղաքները, ապա շինեց Դարբանդը և սա կոչվեց Աբուաբ (դռներ), քանզի կառուցվել էր լեռան մեջ եղած ճանապարհի վրա: Այս*

կառուցած վայրերում բնակեցրեց մի ժողովուրդ, որին կոչում էին ալ-Սիյասիջին[110]: Նա Աղուանից երկրում կառուցեց Շաքեի (Շաքան) դռները, Կամբեճանր (Կամբիդան) և Դիդոյից դռները (Դուդանիյա): Սա մի ժողովուրդ է, որն իր ծագումը վերագրում է Դուդան իբն Ասադ իբն Խուզայմայի ցեղին: Կառուցեց նաև Դուրձուկքը (Դուրդուկիյա), որը բաղկացած է տասներկու դռներից, որոնց ամեն մի դուռը քարե ամրոց է:

Վիրք (Ջուրզան) երկրում կառուցեց մի քաղաք, որը կոչվում է Սուղդաբիլ[111], ուր բնակեցրեց Սուղդից (Սողդ) բերված մարդկանց ու պարսից որդիներին և այն դարձրեց ամրակուռ ավան: Վիրք երկրում, Ռումից այն կողմ մի ամրոց կառուցեց, որը կոչվում էր Պերոզապատի դուռ (Բաբ Ֆիրուզ Կուբադ) և մի այլ ամրոց, որը կոչվում էր Լազիկայի դուռ (Բաբ Լազիկա), ևս մի ամրոց, որը կոչվում էր Բարիկայի դուռ (Բաբ Բարիկա) և գտնվում էր Տրապիզոնի (Թարաբուզանդա, Սև) ծովի վրա: Նա կառուցեց Դրունք Ալանացը, Սամցխեի դուռը (Բաբ Սամսախի), շինեց Դարդմանը (Ջարդաման) և Սամշվիլդե (Սամշուլդա, Շամշուլդե) ամրոցները:

Անուշիրուանը Հայաստանից գրավեց այն ամենը, որ հոռոմների ձեռքում էր գտնվում: Շենացրեց ու ամրացրեց Դվին քաղաքը, կառուցեց Նախճավան (Նաշավա) քաղաքը, որը Վասպուրական նահանգի քաղաքն է: Շինեց Վայոց (Վայս) բերդը և ամրոցներ Սիսականի հողում, ինչպես Շնող (Քիլար) և Շահապոնս (Շահարունս)[112] ամրոցները և այս բերդերում ու ամրոցներում բնակեցրեց քաջարի ու կռվի մարդկանց Սիասիջիյյա (սիսականցիներ) կոչվածներից:

Ապա Անուշիրուանը գրեց Թուրքաց (Խազարաց) Թագավորին[113] խաղաղության ու հաշտության կոչ անելով և ասելով, որ ամեն ինչում պետք է միաբան լինեն: Ի նշան մտերմության նա խնդրեց նրա դստեր ձեռքը, ցանկություն հայտնելով դառնալ նրա փեսան: Նրա մոտ ուղարկեց մի աղախնի, որին իր կանանցից մեկը որդեգրել էր, ասելով որ դա իմ դուստրն է: Իսկ Թուրքը՝ նրան ուղարկեց իր դստերը: Նրանք եկան իրար մոտ և հանդիպեցին Բարշալիյայում, որտեղ մի քանի օր խնջույք արեցին: Նրանք մտերմացան ու բարեկամացան: Անուշիրուանն իր հավատարիմ մերձավորներից մեկին հրամայեց, որ [իր մարդիկ] Թուրքի ճամբարի մի ծայրից մոտենան ու կրակ գցեն, և այդպես էլ արեցին: Երբ եղավ առավոտ, սա Անուշիրուանին գանգատվեց, իսկ նա պատասխանեց, թե ոչ հրամայել է, ոչ էլ գիտի, թե անողը իր մարդկանցից է: Մի քանի գիշեր անց նույն մարդկանց հրամայեց կրկնել այն, ինչ առաջ արել էին, և նրանք կրկնեցին: Այդ արարքից Թուրքն այնքան դայրացավ, որ Անուշիրուանն ստիպված սիրալիր ներողություն խնդրեց ու հանգստացրեց նրան: Ապա Անուշիրուանը հրամայեց կրակ գցել իր

ճամրարի մի կողմում, որտեղ միայն չոր խոտից ու թփերից շինված խրճիթներ կային: Երբ առավոտը լուսացավ, Անուշիրուանը գանգատվեց Թուրքին ասելով՝ քո մարդիկ քիչ էր մնում իմ ճամբարը ոչնչացնեին, դու քո կասկածի պատճառով ինձանից վրեժ ես առնում: Սա երդվեց, թե ոչինչ չգիտի դրա պատճառի մասին: Ասաց Անուշիրուանը՝ Ով եղբայր իմ և քո զինվորները ատում են մեր խաղաղությունը, քանզի կտրվեց այն ավարը, որ նրանք ձեռք էին բերում մեր միջև պատահած արշավանքների ու պատերազմների ընթացքում: Ես վախենում եմ, որ նրանք այնպես կանեն, որ մեր սրտերը կոտրեն, այն բանից հետո, երբ միմյանց բարեկամություն և անկեղծություն ենք ցուցաբերել և վերադառնանք թշնամության՝ խնամիանալուց ու մտերմանալուց հետո: Ամենաճիշտն այն կլինի, որ դու ինձ թույլ տաս մի պարիսպ կառուցել իմ ու քո միջև, նրա վրա դուռ կսարքեն և այլևս ոչ մեր կողմից ձեր կողմը կանցնեն, ոչ էլ ձեր կողմից՝ մեր կողմը, բացի այն դեպքից, երբ դու կամ ես թույլ տանք: Նա համաձայնեց ու գնաց իր երկիրը:

Անուշիրուանը ձեռնարկեց պարսպի շինությանը և կառուցեց այն ծովի կողմից՝ ժայռով ու արճիճով, լայնությունը դարձրեց երեք հարյուր կանգուն ու հասցրեց լեռների կատարը: Հրամայեց նավերով քարեր փոխադրել, նետել ջրի մեջ այնպես, որ բարձրանա մինչև ջրի մակերեսը և նրա վրա շինեց պարիսպը, ծովի մեջ երեք մղոն ներս տանելով: Երբ կառուցումն ավարտվեց, պարսպի մուտքի մոտ երկաթե դռներ կախեց և այնտեղ հարյուր հեծյալ նշանակեց պահպանության համար, մինչդեռ նույն այդ տեղը պահպանելու համար [նախկինում] կարիք կար հիսուն հազար զորքի: Նրա վրա նաև խոյ (դաբբաբա) դրեց: Այն ժամանակ ասացին խաքանին, թե քեզ խաբել է. քեզ կնության է տվել ոչ իր դստերը և քեզանից պաշտպանվել է: Իսկ նա ոչ մի հնար չգտավ անելու:

Անուշիրուանը թագավորներ նշանակեց ըստ կարգի և ամեն մեկին տվեց մի գավառի թագավորական իրավունքը (շահիյա): Այսպես՝ լեռան խաքանը, որը Սարիրի (Գահի) տերն էր ու կոչվում էր Վահ-բարղանշահ, ապա Ֆիլանի թագավորը, որը Ֆիլանշահն է, Թաբար-սարանշահը, Լեզգիների (Լաքս) թագավորը, որը կոչվում է Ջար-շանշահ, Մազքթաց (Մասկաթ) թագավորը, որի իշխանությունն այժմ վերացած է, Լիրանի թագավորը, որը կոչվում է Լիրանշահ, և Շա-րուանի թագավորը, որը կոչվում է Շարուանշահ: Բուխխի տիրոջը թագավորեցրեց Բուխխի վրա, իսկ Զարիքիրանի տիրոջը[114]՝ նույն [գավառի] վրա: Կովկասի (Կաբկ) լեռան թագավորներին հաստատեց իրենց թագավորություններում և հաշտություն կնքեց [տարեկան] հարկատվության պայմանով:

Հայաստանը պարսիկների ձեռքում մնաց մինչև մահմեդականու-

թյան երևան գալը և այդ ժամանակ Սիսաիջիններից (Սիսականցի) շատերը լքեցին իրենց բերդերն ու քաղաքները, այնպես որ կործանվեցին և ապա խազարններն ու հոռոմները գրավեցին այն, ինչ նախապես նրանց ձեռքում էր:

Ասում են, թե հոռոմների իշխանությունն ինչ որ ժամանակ բաժան-բաժան էր եղել և դարձել էին գավառական (ինքնագլուխ) թագավորների (մուլուք ալ-թավայիֆ) նման: Նրանցից Արմանիակուս անունով մի մարդ իշխեց և ապա մեռավ ու իշխեց նրա կինը, որի անունն էր Կալի: Նա կառուցեց Կալիկալա քաղաքը և այն կոչեց Կալի Կալա[116], որը նշանակում է Կալիի բարեգործությունը: Ասվում է, որ նա քաղաքի դռներից մեկի վրա քանդակված է և արաբներն արաբացնելով Կալի Կալան, դարձրեցին Կալիկալա (Կարնո քաղաք):

Պատմում են, որ երբ Օսման իբն Աֆֆանը խալիֆա դարձավ, գրեց Մուավիային, որը նրա կողմից կառավարիչ էր Ասորիքի, Ջազիրայի ու Սահմանային ամրությունների վրա, հրամայելով նրան Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին ուղարկել Հայաստան, իսկ Հաբիբն աչքի էր ընկել Ասորիքի նվաճման ու հոռոմների դեմ արշավանքների ժամանակ, որի մասին գիտեին թե՛ Օմարը, թե՛ Օսմանը և թե՛ հաջորդը: Ասվում է նաև, թե Օսմանը գրել է ուղղակի Հաբիբին՝ հրամայելով արշավել Հայաստան, սակայն նախորդ տեղեկությունն է հավաստի: Նա ճանապարհ ընկավ վեց հազարով, ասվում է նաև՝ ութ հազարով՝ Ասորիքի ու Ջազիրայի բնակիչներից բաղկացած [զորքով]: Նա հասավ Կարնո քաղաք (Կալիկալա) ու պաշարեց, իսկ բնակիչները դուրս եկան նրա դեմ և նա պատերազմեց ու ստիպեց նրանց քաղաք ապաստանել: Նրանք նրաշխավորագիր խնդրեցին հեռանալու, կամ [մնալու դեպքում], ջիզիա վճարելու պայմանով: Շատերը գնացին, հասան մինչև Ռումի երկիրը: Հաբիբը յուրայիններով մի քանի ամիս մնաց, ապա լուր ստացավ, թե Արմանիակուսի պատրիկը մահմեդականների դեմ մեծ զորք է հավաքել և նրան օգնելու նպատակով միացել են նաև ալանները, աբխազները և խազարաց երկրում գտնվող Սամանդարի[116] մարդիկ: Նա գրեց Օսմանին՝ օգնություն խնդրելով, իսկ սա գրեց Մուավիային, որ նրան ուղարկի Ասորիքի ու Ջազիրայի բնակիչներից այնպիսի մարդկանց, որոնք ցանկություն ունենն հանուն հավատի և ավարի կռվելու: Մուավիան նրան (Հաբիբին) երկու հազար մարդ ուղարկեց, որոնց նա բնակեցրեց Կարնո քաղաքում և հողակտորներ տվեց ու հեծյալ կայազոր դարձրեց:

Երբ Օսմանը Հաբիբի նամակն ստացավ, գրեց Սաիդ իբն Ասի իբն Սաիդ իբն ալ-Ասի իբն Ումայյային, որը նրա կառավարիչն էր Քուֆայում, հրամայելով օգնել [Հաբիբին] զորքով, որի հրամանատարը պետք է լիներ Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլին՝ Սալման ալ-Խայլ (հեծյալների Սալման) կոչեցյալը: Սա առատաձեռն էր, առաքինի ու

մարտունակ: Սալման ալ-Խայլը գնաց նրա մոտ քուֆացիների վեց հազարանոց զորքով, իսկ հոռոմները և նրանց ընկերացող [զորքերը] եկել ու կանգ էին առել Եփրատի ափին, նախքան Հաբիբին օգնություն հասնելը: Եվ ահա մահմեդականները գիշերով հարձակվեցին, կոտորեցին և սպանեցին նրանց մեծավորին: Հաբիբի կինը՝ Աբդալլահի մայր (Ումմ Աբդալլահ), Յազիդի դուստրը, Քալբ ցեղից (Քալբիյա), գիտմամբ ասաց [Հաբիբին]՝ որտեղ է մեր հանդիպման վայրը. ասաց՝ [հոռոմ] բռնակալի վրանը, կամ դրախտը: Երբ [հաղթելուց հետո] նա (Հաբիբը) գնաց վրանները, նրան այնտեղ գտավ:

Բանն այն է, որ Սալմանը հասավ, երբ մահմեդականները [Հաբիբի գլխավորությամբ] արդեն գործը վերջացրել էին թշնամիների հետ: Քուֆացիք պահանջեցին, որ իրենք ես ավարից բաժին ստանան. սրանք հրաժարվեցին տալ, որի հետևանքով Հաբիբն ու Սալմանը իրար անարգեցին և մահմեդականներից ոմանք սպառնացին սպանել Սալմանին. բանաստեղծն ասաց.

Թե սպանեք Սալմանին, կսպանենք ձեր Հաբիբին.

Թե գնաք Իբն Աֆֆանի (Խալիֆայի) մոտ, մենք ես կգնանք:

Երբ այդ մասին դրեցին Օսման [խալիֆային], նա պատասխանեց, թե դա վաստակած ավար է Ասորիքի զինվորների համար: Նա գրեց Սալմանին՝ հրամայելով արշավել Առան:

Ոմանք պատմում են նաև, թե Սալման իբն Ռաբիան Օսմանի օրոք գնաց Հայաստան, գերեվարեց, ավար վերցրեց և ապա 25 (28 հոկտեմբեր 645 — 16 հոկտեմբեր 646) թվականին հեռացավ ալ-Վալիդ իբն Ուկբայի մոտ, որը հաղթսատ ալ-Մառսիլում (Մոսուլի մոտ հադիսա) էր: Այստեղ ստացավ Օսմանի նամակը, որ հայտնում էր, թե Մուավիան գրել է հիշեցնելով, որ հոռոմները մեծ բազմությամբ հարձակվել են մահմեդականների վրա և օգնություն է խնդրում: Նա հրամայում էր, որ ութ հազար մարդ ուղարկի և սա ուղարկեց՝ Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիի հրամանատարության տակ: Մուավիան նրա հետ ուղարկեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին, նույնքան զորքով, և նրանք միասին բերդեր գրավեցին, գերեվարեցին, սակայն իրար հետ վիճեցին հրամանատարության հարցով: Ասորիքի մարդիկ կամենում էին սպանել Սալմանին և բանաստեղծը ասաց՝ թե սպանեք [...] տողը: Սակայն առաջին տեղեկությունն է ստույգ, որն ինձ պատմել են Կարնո քաղաքի բնակիչ ծերունիներից (չեյխերից) շատեր և այդ մասին ինձ գրել է նրա դատավոր ալ-Աթթաֆ իբն Սուֆիան Աբու-լ-Ասբաղը:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Վակիդիից, իսկ սա Աբդ ալ-Համիդ իբն Ջաաֆարից և սա իր հորից, թե Հաբիբ իբն Մասլաման պաշարեց Դվինի բնակիչներին և բանակ դրեց նրա շուրջը: Նրա դեմ դուրս եկավ հոռոմ Մավրիանոսը (Մաուրիան ալ-

Ռումի)[117], սակայն [Հարիրը] դիչերով հարձակվեց նրա վրա, կոտորեց ու կողոպտեց նրա ճամբարը: Ապա եկավ Սալմանն ու միացավ նրան, բայց ճշմարտությունն այն է, որ նրան միացավ (հանդիպեց) Կարնո քաղաքում:

Ինձ պատմել են Մուհամմադ իբն Բիշր ալ-Կալին ու Իբն Վարդ ալ-Կալին (կարնեցիներ), լսելով Կարնո քաղաքի բնակիչ ծերունիներից, թե Կարնո քաղաքը նվաճման օրից մնացել էր անառիկ ու պաշտպանված իր բնակիչներով հանդերձ, մինչև որ եկավ Բոնակալը 133 (9 օգոստոս 750 – 29 հուլիս 751) թվականին ու պաշարեց Մալաթիայի բնակիչներին, ավերեց նրա պարիսպը և այնտեղ բնակվող մահմեդականներին վտարեց Ջազիրա: Ապա կանգ առավ Սար ալ-Հասա կոչված վայրում և ուղարկեց Հայասդի Գուսանին (Քուսան ալ-Արմանի)[118]: Նա եկավ պաշարեց Կարնո քաղաքը, որի բնակիչներն այդ ժամանակ փոքրաթիվ էին, իսկ կառավարիչն էր Աբու Քարիման: Կարնո քաղաքի հայ բնակիչներից երկու եղբայրներ ծակելով նրա պարսպի մեջ եղած մի ճեղքվածք, դուրս եկան Գուսանի մոտ և նրան քաղաք մտցրեցին: Սա գրավեց քաղաքը, կոտորեց, գերեվարեց ու ավերեց և, ինչ որ կարող էր, տարավ Բոնակալի մոտ, իսկ ավարը բաժանեց իր ընկերակիցներին:

Պատմել է Վակիդին, որ 139 (5 հունիս 756 – 24 մայիս 757) թվականին Մանսուր [խալիֆան] փրկագնով վերցրեց Կարնո քաղաքի բնակիչներից ողջ մնացած գերյալներին: Նա վերակառուցեց Կարնո քաղաքը, շենացրեց ու վերստին բնակեցրեց գերությունից փրկագնածներին: Այստեղ բերեց Ջազիրայից և այլ վայրերից զորքեր: Ռումի բռնակալը Մուտասիմ Բիլլահ խալիֆայի օրոք հարձակվեց Կարնո քաղաքի վրա և սկսեց նրա պարիսպը քարերով հարվածել, այնպես որ քիչ էր մնացել փուլ գար: Ապա Մուտասիմ [խալիֆան] նրա համար ծախսեց հինգ հարյուր հազար դիրհեմ ամրացնելու նպատակով:

Պատմում են, որ երբ Հարիրը գրավեց Կարնո քաղաքը, առաջ խաղաց և բանակ դրեց Մարդաղիում (Մարբալա)[119] և ահա նրա մոտ եկավ Խլաթի պատրիկը Իյադ իբն Ղանմի գրությամբ: Իյադը նրան երաշխավորել էր անձի, ունեցվածքի ու երկրի համար և ճանաչել նրա տիրույթները հարկի դիմաց: Հարիրը հաստատեց այն: Ապա նա իջավ մի կայանում Հարքի (Հարաքի) ու Վարադա դաշտի (Մարջ ալ-Վարակի) միջև, ուր նրա մոտ եկավ Խլաթի պատրիկը, բերեց իր վրա դրված հարկերը և ընծաներ նվիրեց, որը նա (Հաբիբը) չընդունեց: Նա իջավ Խլաթ, ապա շարժվեց դեպի Սիփան (ալ-Սիրանա)[120], ուր նրան դիմավորեց Մոկսի (Մուքս) տերը, որը Վասպուրականի գավառներից է: [Հարիրը] ճանաչեց նրա տիրույթները այդ երկրում (գավառում), նրա հետ մարդ ուղարկեց և նրա համար խաղաղության թուղթ և

նրա։ խավորագիր տվեց: Նա Արճեշի ու Ապահունիսի գյուղերը մարդկանց ուղարկեց նվաճելու և նրանց բնակչությունից՝ ըստ գլխի ջիզիա գանձելու համար: Նրա մոտ եկան նրանց մեծամեծները և նա ճանաչեց նրանց իրավունքները խարաջ վճարելու պայմանով: Իսկ Տաուխի (Թիֆլիս) լճին[121] ձեռք չտվեց և այսպես ազատ մնաց, մինչև որ Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամը Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ դարձավ և իրեն վերապահեց ձկնորսության իրավունքն ու վաճառում էր ձգտելով շահագործել այն: Ապա անցավ Մարուան իբն Մուհամմադին, որից և վերցվեց [Աբբասյանների կողմից]:

Ապա Հաբիբն առաջ շարժվեց ու հասավ Արտաշատ (Արդիսաթ)[122], որը Որդան կարմրի գյուղն է (Կարիատ ալ-Կիրմիզ)[123], անցավ Աբրադ գետը[124], կանգ առավ Դվինա դաշտում ու հեծյալների ուղարկեց քաղաքի դեմ: Ապա հարձակվեց ու կանգ առավ նրա դռների առջև: Բնակիչները պաշտպանվեցին նետեր տեղացնելով, իսկ նա քարանետ մեքենաներ դրեց ու քարկոծեց նրանց, այնքան որ նրաչխավորագիր ու հաշտություն խնդրեցին և նա տվեց: Նրա հեծյալները գնացին ու կանգ առան Գառնիի առջև և ապա հասան Աչոցք (Աշուշ), Ջատ ալ-Լուջում (սանձերի վայր)[125] լեռը և Ագատաց (Ահրար) հովիտը ու նվաճեցին Դվինի բոլոր գյուղերը: Նա մարդ ուղարկեց Շիրակ-Տայք ու Բագրևանդ ու եկավ նրանց պատրիկը և նա հաշտություն կնքեց այդ [գավառների] համար, այն պայմանով, որ հարկ վճարեն, մահմեդականներին խորհուրդներ տան, հյուրընկալեն և օգնեն թշնամիների դեմ:

Դվինի հաշտության պայմանագիրն հետևյալն էր.

«Հանուն ամենագութ, ամենողորմ Ալլահի: Սա է Հաբիբ իբն Մասլամայի գիրը Դվինի քրիստոնյա բնակիչներին, զրադաշտականներին, հրեաներին, նրանց ներկաներին ու բացականերին առ այն, որ նրաչխավորում եմ ձեր անձերը, ունեցվածքը, եկեղեցիները, տաճարները և քաղաքի պարիսպները: Դուք ապահովության մեջ կլինեք և մենք պարտավոր ենք հավատարիմ մնալ այս ուխտին, ինչքան ժամանակ, որ դուք էլ հավատարիմ կլինեք՝ վճարելով ջիզիան ու խարաջը: Սրան վկա է Ալլահը և նա բավական է իբրև վկա»:

Կնքեց Հաբիբ իբն Մասլաման:

Ապա Հաբիբը եկավ Նախճավան գրավեց և Դվինի հաշտության պայմանագրի նմանը տվեց: Նրա մոտ եկավ Վասպուրականի պատրիկը և նա հաշտություն խնդրեց նրա ամբողջ երկրի համար և գոհացրեց նրա զինված ջոկատներին ու ընտիր ձիավորներին տարեկան հարկի դիմաց:

Հետո եկավ Սիսական, որի բնակիչները կռվեցին, սակայն նա հաղթեց նրանց ու գրավեց Վայքը և Սիսականի ամրոցի բնակիչների

հետ հաշտության դաշինք կնքեց՝ խարաջ վճարելու պայմանով: Ապա գնաց Վիրք:

Ինձ ոլսամել են Դվինի բնակիչ ծերունիները, ինչպես Բարմաք իբն Աբդալլահը, թե Հաբիբ իբն Մասլաման առաջ խաղաց իր հետ եղած [զորքով] դեպի Վիրք: Երբ հասան Ջաա ալ-Լուջում, իրենց անասուններն արձակեցին արածելու, իսկ սանձերը հավաքեցին: Հանկարծ հարձակվեցին անհավասա ղեղջուկները ու չթողնելով, որ սանձերը վերցնեն, կռվի բռնվեցին, իրենք վերցրեցին այդ սանձերը և անասուններից ինչ որ կարողացան տանել: Սակայն [արաբները] հարձակվեցին նրանց վրա, կոտորեցին ու վերադարձրին այն ինչ խլել էին: Ուստի այդ վայրը կոչվեց Ջաա ալ-Լուջում (սանձերի վայր): Եվ Հաբիբի մոտ եկավ Վիրքի պատրիկի ու բնակչության սուրհանդակը, բերելով նրանց նամակը և խնդրեց հաշտության թուղթ ու երաշխավորագիր: Հաբիբը նրանց համար գրեց հետևյալը.

«Ձեր սուրհանդակ Նուկլուն (Նիկողայոս) ինձ և իմ ընկերակից հավատացյալներին ներկայացավ և հայտնեց ձեր անունից, թե մենք մի ժողովուրդ ենք, որին Ալլահը պատվել ու գերադասել է: Այսպես է արել Ալլահը, մեծ փառք նրան և նրա օրհնությունը թող լինի իր մարգարեի ու լավագույն արարած Մուհամմադի վրա, խաղաղություն նրան: Դուք նշում եք, թե ուզում եք մեզ հետ խաղաղություն հաստատել: Ես գնահատեցի ձեր ընծան և այն հաշվեցի ջիզիայի մեջ: Ձեզ համար գրեցի երաշխավորագիր, որի մեջ գրել եմ մի պայման ևս. եթե ընդունեք ու հավատարիմ մնաք՝ լավ է, ապա թե ոչ «պատերազմ կհայտարարվի Ալլահի ու նրա առաքյալի կողմից» (Ղուրան, Բ, 279): Թող խաղաղություն լինի նրանց, որոնք ճշմարտության ուղիով են ընթանում»:

Ապա եկավ Տփղիս (Տաֆլիս) և նրա բնակիչներին հաշտության թուղթ գրեց.

«Հանուն ամենագութ ամենողորմ Ալլահի: Սա է Հաբիբ իբն Մասլամայի գիրը Վիրքի (Ջուրզան ալ-Կիրմիզ, ալ-Հուրմուզ) Մանգլիս (Մանջալիս, Մանգլեաց) [գավառի] Տփղիսի բնակիչներին երաշխավորելու նրանց անձերը, տաճարները, վանքերը, ծիսակատարությունները և կրոնը, պայմանով, որ գիտակցեն (ընդունեն) նվաստ (հպատակ) վիճակը և ում վճարել ջիզիա ամեն մի տնից (ծխից) մեկ դինար: Դուք չպետք է ջիզիան թեթևացնելու նպատակով մի քանի տուն (ծուխ) միացնեք, իսկ մենք չպետք է նրանց բաժանենք առավել [հարկ] ստանալու նպատակով: Դուք մեզ տալու եք ձեր խորհուրդները և օժանդակությունը Ալլահի ու նրա մարգարեի թշնամիների դեմ, ինչքան որ կարող եք, պարտավոր եք մեկ գիշեր հյուրընկալել մահմեդականին կարիք ունեցող [Սուրբ] Գրքի ժողովրդի օրինավոր համարված կերակրից [տալով]: Եթե որևէ մահմեդական ճանապարհին

[ընկերներից] ետ մնալով ձեզ մոտ իջեւանի, պարտավոր եք նրան հասցնել ամենամոտ տեղում գտնվող հավատացյալների մոտ, բացի այն պարագայի, երբ դա անկարելի է: Եթե դուք դարձի գաք և [մահմեդականի] աղոթք կատարեք՝ կրոնով մեր եղբայրներն եք, ապա թե ոչ, ջիզիան կծանրանա ձեզ վրա: Եթե որևէ պատճառով մահմեդականները չկարողանան օգնել և ձեր թշնամին նեղի ձեզ, ապա նրանք պատասխանատու չեն և այս պատճառով անվավեր չի համարվի ձեր [ունեցած] պայմանագիրը: Ահավասիկ ձեր իրավունքներն ու ձեր պարտավորությունները: Վկա են Ալլահն ու նրա հրեշտակները, իսկ Ալլահը բավական է իբրև վկա»:

Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին [նույնպես] տվել է գիր (թուղթ) Տփղիսի բնակիչներին, որի պատճենն է.

«Սա է Ջառահ իբն Աբդալլահի գիրը Վիրք նահանգի Մանգլիս գավառի Տփղիսի բնակիչներին, թե ինձ բերեցին Հաբիբ իբն Մասլամայի իրենց տված երաշխավորության գիրը առ այն, որ ընդունենն նվաստ (հպատակ) վիճակում վճարեն ջիզիան և որ նա հաշտություն էր կնքել նրանց հողերի, խաղողի այգիների և ջրաղացների համար, որոնք կոչվում են Վերա (Ավարի. Վերե) և Սարինա Մանգլիս (Մանգլեաց փոր) գավառից և Դիդոմի (Թաամ) ու Դիդուբե (Դիդունա) Վիրք նահանգի Կխեթ (Կուհուիթ, Խվեթ) գավառից այն պայմանով, որ այդ ջրաղացների ու խաղողի այգիների համար վճարեն տարեկան հարյուր դիրհեմ առանց կրկնության (մեկ անգամից): Հաստատեցի նրանց երաշխավորագիրը և հաշտության պայմանագիրը ու հրամայեցի, որ հարկը չավելացվի: Ով կարդա իմ գիրը, թող նրանցից ավելի [հարկ] չվերցվի: Կամոքն Ալլահի գրվեց»:

Հաբիբը նվաճեց Քուստի Փառնես (Քուսփարնիս)[126], Քիսալ[127], Հունարակերտ (Խունան)[128], Սամցխե (Սամասխի)[129], Գարդման (Ջարդաման)[130], Քուստի (Քուստասջի)[131], Շավշեթ (Շաուշիտ)[132] և Բազալեթ (Բազալիտ) [բնակավայրերը] հաշտության պայմանագրով, խնայելով բնակիչների արյունը (կյանքը) և հաստատելով, թե նրանց աղոթարաններն ու պարիսպները չեն քանդվի այն պայմանով, որ հարկ վճարեն իրենց հողերի ու գլուխների համար: Նա հաշտություն կնքեց Կղարջքի (Կալարջիտ)[133], Թռեղքի (Տարիալիտ)[134], Կախեթի (Խախիթ), Ջավախքի (Ջավախիթ)[135], Արտահանի (Արթահալ, Արտահան), Ալանաց դռան (Բաբ ալ-Լան)[136] բնակիչների հետ, ինչպես նաև Ծանարաց (Սաննարիյա)[137] և Դիդոյից (Դուդանիյա)[138] հետ հարկ վճարելու պայմանով:

Երբ Օսման [խալիֆան] Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիին հրամայեց գնալ Առան, սա գրավեց Բայլական քաղաքը հաշտության պայմանագրով, երաշխավորելով նրանց (բնակիչների) արյունը (կյանքը), ունեցվածքը, քաղաքի պարիսպները և պայման դրեց վճա-

ըել ջիզիա ու խարաջ: Ապա Սալմանը եկավ Պարտավ, բանակ դրեց Տրաուի (Սարսուր)[139] ափին, որը մի գետ է նրանից մեկ փարսախից պակաս հեռավորության վրա: Բնակիչները [քաղաքի] դռները փակեցին նրա առջև, իսկ նա օրերով պաշարեց ու ասպատակեց նրա գյուղերը, որոնց ցանքերը հնձվելու էին, հասունացել էին: Նրանք հաշտություն կնքեցին Բայլականի հաշտության պայմաններով, բացին քաղաքի դռները, իսկ նա մտավ և այնտեղ կանգ առավ:

Նա հեծյալներ ուղարկելով նվաճեց Շակաշեն (Շակաշին)[140], Մեծ Կուենք (Միսկուան)[141], Ուտի (Ույ)[142], Մեծ Իրանք (Սիսրիան)[143], Հարճլանք (Հարջալիան)[144] և Տրի (Տիար)[145] գավառները (ռաստիկ), այս նվաճեց Առանի այլ մասերը: Կոչ արեց Բաղասականի (Բալասաջան)[146] բրդերին ընդունել մահմեդականություն, իսկ նրանք կռվի դուրս եկան և նա հաղթեց նրանց, ոմանց պարտավորեցնելով ջիզիա վճարել, իսկ այլոց, որոնք փոքրաթիվ էին՝ սադակա:

Ինձ պատմել են Պարտավի մի խումբ բնակիչներ, թե Շամքորը (Շամքուր)[147] հին քաղաք է: Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլին զորք ուղարկեց ու գրավեց այն: Այս քաղաքը բնակեցված ու շեն դրության մեջ մնաց, մինչև որ Սևորդիք (Սիավարդիյա)[148] կոչված ցեղը կործանեց [այն]: Սրանք Յազիդ իբն Ուսայդի հեռանալուց հետո համախմբվեցին, վտանգավոր դարձան և շատ ավերներ պատճառեցին: Ապա ալ-Մուտասիմ Բիլլահ [խալիֆայի] մաուլա Բուղան[149], որը Հայաստանի, Ատրպատականի ու Շիմշաթի կառավարիչն էր, 240 (2 հունիս 854 — 21 մայիս 855) թվականին շինացրեց այն և բնակեցրեց խազարների, որոնք ապաստանել էին նրա մոտ, ցանկանալով իսլամն ընդունել: Նա Պարտավից այստեղ փոխադրեց վաճառականների և այն անվանեց Մուտավաքքիլիյա:

Սալմանն առաջ խաղաց դեպի Արաքսի և Կուրի միախառնման վայրը՝ Բարդիջի[150] ետևում, անցավ Կուրը, նվաճեց Կապաղակը (Կաբալա), իսկ Շաքեի ու Կամբեճանի տերը նրա հետ հաշտություն կնքեց, հարկ վճարելու պայմանով:

Նրա հետ հաշտություն կնքեց Խայդանի[151] ժողովուրդը, Շարուանի թագավորը և լեռների բոլոր թագավորները, ինչպես նաև Մաղքթաց, և Շապորանի և Դարբանդ քաղաքի բնակիչները: Ապա նրա ետևից սրանք (Դարբանդի բնակիչները) դռները փակեցին:

Նրան հանդիպեց Խաքանը իր հեծյալներով՝ Բալանջար գետից[152] այն կողմ և նա չորս հազար մահմեդականների հետ սպանվեց: Օրհասական պահին լսելի էր նրանց «Ալլահ աքբար» կոչը[153]:

Սալման իբն Ռաբիան առաջինն էր, որ դատավոր էր նշանակվել Քուֆայում: Քառասուն օր մնացել էր, բայց ոչ մի դատ չէր եղել: Նա հադիսներ[154] (ավանդություններ) էր հավաքել ու գրի առել Օմար իբն ալ-Խաթթաբի մասին: Սալմանի ու Կուտայբա իբն Մուսլիմի մասին

*Իբն Ջումանա ալ-Բահիլին ասել է.*

*Երկու գերեզման ունենք, մեկը Բալանջարում,*

*Մյուսը՝ Ջինաստանում. ինչ գերեզմաններ...*

*Ջինաստանինը՝ հաղթություններով է պսակված*

*Իսկ այս մեկն՝ առատ անձրևներ է տեղացնում*.*

*Սալման Հեա Բալանջարում էր Կարբու իբն Քաար ալ-Անսարին, որը նրա մահվան գույժը բերեց Օսմանին:*

*Երբ Հաբիբն իր նվաճումներն ավարտեց Հայաստանի հողում, այդ մասին գրեց Օսման իբն Աֆֆանին, իսկ նրա նամակը հասավ Սալմանի մահվան գույժի հասնելուց հետո: Օսմանը նախ մտածեց նրան ամբողջ Հայաստանի (Արմինիա) կառավարիչ նշանակել, ապա որոշեց Ասորիքի ու Ջազիրայի սահմանային ամրությունների հավատի մարտիկ (ղազի) դարձնել, նկատի ունենալով նրա եռանդուն գործունեությունն այս ասպարեզում՝ բոլոր կողմերից: Ուստի Հայաստան (Արմինիա) սահմանային նահանգի կառավարիչ նշանակեց Հուզայֆա իբն ալ-Յաման ալ-Աբսիին: Սա եկավ Պարտավ և իր տեղական կառավարիչներն ուղարկեց նրա և Կարնո քաղաքի միջև ընկած գավառները, ինչպես նաև Խայզան: Սակայն ստացավ Օսմանի նամակը, որը հրամայում էր հեռանալ ու փոխանորդ նշանակել Սիլատ իբն Զուֆար ալ-Աբսիին, որը նրա մոտ էր: Այդպես էլ արեց:*

*Հաբիբը վերադարձավ Ասորիք և ասպատակ էր սփռում Ռումի երկրում: Նա հաստատվեց Եմեսայում, սակայն Մուավիան նրան փոխադրեց Դամասկոս, ուր նա մնաց 42 (26 ապրիլ 662 – 14 ապրիլ 663) թվականին՝ 35 տարեկան հասակում: Մուավիան Հաբիբին զորքով ուղարկել էր Օսմանին օգնելու, երբ սա պաշարված էր, սակայն հասել էր Վադի ալ-Կուրա, լսելով Օսմանի մահը, վերադարձել էր:*

*Օսմանը Մուղիրա իբն Շուբային նշանակեց Ատրպատականի ու Հայաստանի կառավարիչ, ապա հեռացրեց նրան ու Հայաստանի կառավարիչ նշանակեց ալ-Կասիմ իբն Ռաբիա իբն Ումայա իբն Աբու Սալթ ալ-Սակաֆիին: Ուրիշներն ասում են, որ այնտեղ կառավարիչ նշանակվեց Ամր իբն Մուավիա իբն Մունտաֆիկ ալ-Ուկայլին, իսկ դեռ ուրիշներ ասում են, թե Մուղիրայից հետո 15 տարով կառավարիչ նշանակվեց Քիլաբ ցեղից մի մարդ և ապա՝ Ուկայլին:*

*Ալի իբն Աբու Թալիբի[155] ժամանակ Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ նշանակվեց ալ-Աշաաս իբն Կայսը, ապա Մուավիայի կողմից կառավարիչ դարձավ Արդալլահ իբն Հատիմ իբն Նուման իբն Ամր ալ-Բահիլին, որն այնտեղ էլ մնաց և կառավարիչ դարձավ նրա եղբայրը՝ Արդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նումանը: Սա կառուցեց Դվին քաղաքը, ամրացրեց, մզկիթը մեծացրեց, կառուցեց*

---

* *Այսինքն դրախտ գնացած մարդու գերեզման է:*

Նախճավան քաղաքը, վերականգնեց Պարտավ քաղաքը: Ուրիշներ ասում են, թե նա վերակառուցեց այն և նրա շուրջ խրամասար լոռացրեց: Նա վերակառուցեց Բայլական քաղաքը: Այս բոլոր քաղաքները քայքայված, ավերված վիճակում էին:

Ասվում է, որ Պարտավը վերանորոգողը Մուհամմադ իբն Մարուանն էր, Արդ ալ-Մալիք իբն Մարուանի օրոք: Վակիդին պատմել է, որ Արդ ալ-Մալիքը կառուցել է Պարտավ քաղաքը Հատիմ իբն Նուման ալ-Բահիլիի, կամ նրա որդու ձեռքով: Արդ ալ-Մալիքը Հայաստանի կառավարիչ էր նշանակել Օսման իբն Վալիդ իբն Ուկբա իբն Արու Մուայթին[156]:

Երբ Իբն ալ-Զուրայրի խռովությունն սկսեց, Հայաստանն ապստամբեց և նրա ազատները (ահրար) ու նրանց հետևորդներն ըմբոստացան: Երբ Մուհամմադ իբն Մարուանն իր եղբոր՝ Արդ ալ-Մալիքի կողմից Հայաստանի կառավարիչ նշանակվեց, նրանց դեմ կռվեց ու հաղթեց, կոտորեց, գերեվարեց և երկիրը հնազանդեցրեց: Ապա ողջ մնացած [ազատներին] խոստացավ պատիվներ տալ ու նրանք հավաքվեցին Խլաթ գավառի եկեղեցիներում և նա փակել տալով, դռներին պահապաններ նշանակեց ու վախեցրեց: Այս արշավանքների ժամանակ Սիսականից գերի տարվեց Յազիդ իբն Ուսայդի մայրը, որը նրա պատրիկի դուստրն է:

Սուլայման իբն Արդ ալ-Մալիք [խալիֆան] Հայաստանի կառավարիչ նշանակեց Ադի իբն Ադի իբն Ամիրա ալ-Քինդիին[157]: Այս Ադի իբն Ամիրան նրանցից էր, որ հաստատվել էին Ռակկայում, հեռանալով Ալի իբն [Արու] Թալիբից: Ապա նա Հայաստանի կառավարիչ նշանակվեց Օմար իբն Արդ ալ-Ազիզ [խալիֆայի] կողմից: Սա այն Ադին է, որի անունով կոչվել է Բայլականի Ադի գետը (Նահր Ադի): Ըստ այլոց, Օմարի նշանակած կառավարիչը Հատիմ իբն ալ-Նումանն էր, սակայն սա ստույգ չէ: Յազիդ իբն Արդ ալ-Մալիք [խալիֆան] նշանակեց Միլակ իբն Սաֆֆար ալ-Բահրանիին, ապա հեռացրեց ու նշանակեց ալ-Հարիս իբն Ամր ալ-Թաիին, որն ալ-Լազի երկիրն ասպատակեց ու նվաճեց Հասմադան գավառը:

Ապա Հայաստանի կառավարիչ նշանակվեց ալ-Ջառահ իբն Արդալլահ ալ-Հաքամին[158] Մուղհիջ [ցեղից]: Սա կանգ առավ Պարտավում և նրան տեղեկացրին չափերի ու կշիռների տարբերությունների մասին: Նա արդարություն ու ճշգրտություն հաստատեց և ջառահի կոչված մի չափ մտցրեց, որով բնակիչները մինչև օրս առևտուր են անում: Հետո անցավ Կուրը և ճեղքեց այն գետը, որ Սամուր[159] է կոչվում ու դիմելով Խազարների կողմը, մեծ կոտորած սարքեց, կռվեց Համզին երկրի բնակիչների հետ, ապա հաշտություն կնքեց այն պայմանով, որ նրանց տեղափոխի Խայզան գավառ և այնտեղ նրանց երկու գյուղ հատկացրեց: Հարձակվեց Ղումիք ժողովրդի վրա

ու դերեվարեց ու մնաց Շաբեում, իսկ իր զորքը ձմեռեց Պարտավում ու Բայլականում:

Խազարները հարձակվեցին, անցնելով Արաքսը և նա կռվեց նրանց հետ Վարդանակերտի (Վարսան)[160] դաշտում, ապա նրանք չուռ եկան դեպի Արդաբիլի նահանգը[161]: Ջառահը նրանց հետ երեք օր կռվեց Հայաստանի [սահմանից] չորս փարսախ հեռավորության վրա և նահատակվեց իր ընկերակիցների հետ միասին: Ուստի գետը կոչվեց Ջառահի գետ և նրա վրա եղած կամուրջն էլ նրա անունով կոչվեց:

Ապա Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] Հայաստանի կառավարիչ նշանակեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին, իսկ նա առաջապահ զորքի հրամանատար դարձրեց Սաիդ իբն Ամր իբն Ասուադ ալ-Հարաշիին, որի հետ էր նաև Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլին եղբայրներով հանդերձ, ինչպես նաև Ջաավանա իբն ալ-Հարիս իբն Խալիդը՝ Բանու Ամիր իբն Ռաբիա իբն Սաասաայից և Զուֆաֆան ու Խալիդը՝ Ումայր իբն ալ-Հուբար ալ-Սուլամիի որդիները, ալ-Ֆուրատ իբն Սալման ալ-Բահիլին և Վալիդ իբն ալ-Կաակաա ալ-Աբսին: Նա (Սաիդը) ճակատեց խազարների հետ, որոնք Վարդանակերտն էին պաշարել, ետ մղեց նրանց ու փախուստի մատնեց: Սրանք եկան Մայմա, որն Ատրպատականի գավառներից է:

Երբ Սաիդը կռվի էր պատրաստվում, ստացավ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքի նամակը, որի մեջ նա մեղադրում էր նրան խազարների հետ կռվի և իր գալուստին չսպասելու համար և հայտնում էր, որ նրա փոխարեն զորքի հրամանատար էր նշանակել Աբդ ալ-Մալիք իբն Մուսլիմ ալ-Ուկայլիին: Երբ զորքը [իր հաջորդին] հանձնեց, Մասլամայի սուրհանդակը ձերբակալեց նրան ու տարավ բանտարկեց Պարտավի բանտում: Խազարները հեռացան եւ Մասլաման հետապնդեց նրանց: Այս մասին նա գրեց Հիշամին, իսկ վերջինս պատասխանեց նրան.

Միթե կթողնես նրանց Մայմադում, ուր չես կարող տեսնել նրանց
Հետո կփնտրես նրանց հողից այն կողմ (ավազների մեջ):
Եվ հրամայեց Հարաշիին բանտից հանել:

Մասլաման հաշտություն կնքեց Խայզանի բնակիչների հետ և հրամայեց [քաղաքի] բերդը քանդել: Իսկ իր համար կալվածներ վերցրեց, որոնք մինչև օրս կոչվում են Խայզանի կալվածներ: Նրա հետ հաշտություն կնքեցին լեռնական թագավորները. նրա մոտ եկան Շարուանշահը, Լիրանշահը, Թաբարսարանշահը, Ֆիլանշահը և Ջարշանշահը: Նրան ներկայացավ նաև Մազքեթաց տերը: Նա արշավեց [դեպի] Դարբանդ քաղաքը և նվաճեց, իսկ նրա միջնաբերդում կային հազար տուն խազարներ: Նա պաշարեց նրանց և հարվածեց՝ նախ քարերով, ապա քարաձև երկաթի կտորներով: Սակայն երբ այդ

էլ չօգնեց, նա դիմեց վեսլի այն աղբյուրը, որից Անուշիրվանը ջուր էր բերել նրանց՝ ջրամբարը և այնտեղ մորթեց կովեր, ոչխարներ և նրանց կեղտն ու գարշահոտ խեժը նետեց նրա մեջ: Մի գիշեր այդպես մնալուց հետո ջուրը որդնոտեց, նեխեց ու ապականվեց: Երբ գիշերը վրա հասավ, նրանք փախան ու լքեցին ամրոցները: Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը Դարբանդ քաղաքում Ասորիքի ժողովրդից քսանչորս հազար բերեց բնակեցրեց, նրանց ռոճիկ նշանակելով: Մինչ օրս էլ ոչ մի կառավարչի չեն թողնի իրենց քաղաքը մտնել, եթե իր հետ դրամ չբերի նրանց միջև բաժանելու: Նա (Մասլաման) շինեց ուտելիքի ու գարու շտեմարաններ, զինապահեստ, իսկ ջրամբարը հրամայեց հողով լցնել: Նա քաղաքը շինացրեց ու պարսպապատեց: Մարուան իբն Մուհամմադը Մասլամայի հետ էր և միասին պատերազմել էր խազարների դեմ ու կատաղի կռիվներում աչքի ընկել: Մասլամայից հետո Հիշամ [խալիֆան] այս սահմանային գոտում (Արմինիա) նշանակեց Սաիդ ալ-Հարաշիին, որը մնաց երկու տարի:

Ապա սահմանային գոտում նշանակեց Մարուան իբն Մուհամմադին, որը կանգ առավ Քիսալում[162] և նա էր, որ այս քաղաքը կառուցեց, իսկ սա Պարտավից քառասուն փարսախ հեռավորության վրա է և Տփղիսից՝ քսան փարսախ:

Ապա Ալանաց դռնից այն կողմ մտավ խազարաց երկիր, իսկ Աբու Յազիդ Ուսայդ իբն Զաֆիր ալ-Սուլամիին լեռնական թագավորների հետ ուղարկեց, որ մտնեն Դարբանդի կողմից: Մարուանն արշավեց սլավոնների (սակալիբ) դեմ, որոնք ապրում էին խազարաց հողում և նրանցից քսան հազար ծուխ գերեվարեց ու բնակեցրեց Կախեթում, ապա նրանք սպանեցին իրենց իշխանին ու փախան, սակայն նա, հասնելով նրանց կոտորեց:

Երբ խազարաց տիրակալը լսեց Մարուանի իր երկիրը բերած զորքերի բազմության մասին և այն, թե ինչպես են սպառազինված, ինչպիսի զորություն ունեն, հուսալքվեց ու սարսափեց: Երբ [Մարուանը] մոտեցավ նրան, դեսպան (ռասուլ) ուղարկեց կոչ անելով ընդունել իսլամը, կամ պատերազմը: Նա ասաց՝ ընդունում եմ իսլամը, մարդ ուղարկիր, որ բացատրի ինձ: Այդպես էլ արեց և նա ընդունեց իսլամը: Մարուանը նրա հետ հաշտություն կնքեց, նրան հաստատեց թագավորության մեջ և խազարների մի մեծ բազմություն բերեց ու բնակեցրեց Սամուրի և Շապորանի միջև՝ ալ-Լաքզ երկրի տափաստաններում:

Ապա Մարուանը մտավ Սարիր երկիրը, կոտորեց բնակիչներին, գրավեց ամրոցներ, իսկ Սարիրի թագավորը հնազանդվեց ու հպատակվեց նրան: Նա հաշտություն կնքեց այն պայմանով, որ [թագավորը] պետք է տարեկան [ուղարկի] հազար գլուխ [ստրուկ], հինգ հարյուր զուլամ[163], հինգ հարյուր ազախին (հարճ) սև մազերով ու

հոնքերով և երկար թարթիչներով, ինչպես նաև հարյուր հազար մոդ [ցորեն] լցնի Դարբանդի շտեմարանները: Վերցրեց նա և պատանդներ: Մարուանը հաշտություն կնքեց Տումանի ժողովրդի հետ այն պայմանով, որ վճարի տարեկան հարյուր գլուխ [ստրուկ], հիսուն աղախին (հարճ), հիսուն ղուլամ, ամեն մեկը հինգ տարեկան սև մազերով ու հոնքերով և երկար թարթիչներով, ինչպես նաև քսան հազար մոդ [ցորեն] շտեմարանների համար: Մտավ Զիրիքիրան երկիրը և նրա թագավորը հաշտություն կնքեց այն պայմանով, որ տարեկան վճարի հիսուն գլուխ [ստրուկ] և տասս հազար մոդ [ցորեն] շտեմարանների համար: Ապա եկավ Համզին երկիրը, սակայն Համզինի [բնակիչները] մերժեցին հաշտություն կնքել նրա հետ: Մեկ ամիս պաշարելուց հետո նա գրավեց բերդը և վառեց ու ավերեց: Դաշինք կնքեց այն պայմանով, որ տարեկան ուղարկեն հինգ հարյուր գլուխ [ստրուկ] միայն մեկ անգամ և դրանից հետո ոչ մի նման պարտավորություն չեն ունենա, իսկ բացի այդ պարտավոր են տարեկան երեսուն հազար մոդ [ցորեն] ուղարկել Դարբանդի շտեմարանները:

Եկավ Սինդան[164] և այն գրավեց հաշտությամբ, պայմանով, որ նրա տերը միայն մեկ անգամ ուղարկի հարյուր գլուխ [ստրուկ] և դրանից հետո ոչ մի նման պարտավորություն չունենա, իսկ բացի դրանից տարեկան հինգ հազար մոդ [ցորեն] բերել Դարբանդի շտեմարանները: Նա պարտավորեցրեց Թաբարսարանի բնակիչներին տարեկան տասս հազար մոդ [ցորեն] տանել Դարբանդի շտեմարանները: Սակայն Ֆիլանշահի վրա ոչ մի պարտավորություն չդրեց նրա ռազմական հմտության, գործիմացության և հավատարմության համար: Ապա Մարուանը կանգ առավ Լաքզի ամրոցի առջև, որի տերը հրաժարվել էր որևէ պարտավորություն վերցնել: Սա դուրս եկավ կամենալով գնալ խազարաց տիրոջ մոտ, սակայն մի հովիվ նետով սպանեց նրան առանց ճանաչելու: Լաքզի ժողովուրդը նրա հետ հաշտություն կնքեց այն պայմանով, որ քսան հազար մոդ [ցորեն] տանի շտեմարանները:

Նրանց վրա կառավարիչ նշանակելով Խաշրամ ալ-Սուլամիին, Մարուանը գնաց Շարուանի տիրոջ ամրոցը, որը կոչվում էր Խիրս և գտնվում է ծովի ափին: Սա հպատակություն հայտնեց և պարտավորվեց տափարակ դաշտն իջնել: Նա նրա վրա տարեկան պարտավորություն դրեց տասս հազար մոդ [ցորեն]: Շարուանի տիրոջը պարտավորեցրեց լինել մահմեդական զորքի առաջապահում խազարների դեմ արշավանքի ժամանակ և թիկունքում՝ վերադարձի ժամանակ: Ֆիլանշահին պարտավորեցրեց միայն արշավանքներին մասնակցել, իսկ Թաբարսարանշահին՝ լինել թիկունքում արշավելիս, իսկ վերադարձին՝ լինել առաջապահում: Ապա Մարուանը գնաց Դիղոյք և հաղթեց նրանց:

Երբ նրան Հասավ ալ-Վալիդ իբն Յազիդի սպանման լուրը, նրա դեմ ապստամբեց Սաբիտ իբն Նուայմ ալ-Ջուդամին: Սրա մոտ եկավ Մուսաֆիր ալ-Կասսաբը, որին Դահհաք խարիջին Դարբանդի կառավարիչ էր նշանակել և նրան (Սաբիթին) համամիտ գտնվեց, իսկ վերջինս Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ նշանակեց նրան: [Սաբիտը] ծպտված եկավ Արդաբիլ և նրան միացան տեղի խարիջիները (շուրատ)[165]: Նրանք բոլոր եկան Բաղաբդան և այդտեղ գտան համակիր մարդկանց, որոնք միացան: Եկան Վարդանակերտ, որի բնակիչներից մի մեծ խումբ, որ համամիտ էր նրան (Սաբիտին) միացան, հետո եկան Բայլական, որտեղ նույնպես համակիրների մի մեծ խումբ միացավ: Վերջապես եկան Յունան[166]:

Մարուան իբն Մուհամմադը Իսհակ իբն Մուսլիմին[167] նշանակեց Հայաստանի կառավարիչ և սա երկար կռվեց Մուսաֆիրի դեմ, որը Սիսականի Շնհեր ամրոցում էր:

Հետագայում երբ եկավ օրհնյալ տերությունը (Աբբասյանները) և Աբու Ջաաֆար ալ-Մանսուրը՝ Աբու-լ-Աբբաս ալ-Սաֆֆահ [խալիֆայի] օրոք դարձավ Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ, Մուսաֆիրի ու նրա կողմնակիցների դեմ ուղարկեց Խորասանի բնակիչներից մի զորավարի, որը կռվեց, մինչև որ հաղթեց ու սպանեց Մուսաֆիրին: Բայլականի ժողովուրդն ամրացել էր Շնհեր ամրոցում, ղեկավար ունենալով Կաղաղ իբն Ասֆար ալ-Բայլականիին, սակայն ստիպված եղավ ցած իջնել (ներում շնորհվեց) երաշխավորագիր ստանալով:

Երբ Մանսուրը խալիֆա դարձավ, Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամիին[168] Հայաստանի կառավարիչ նշանակեց և սա նվաճեց Ալանաց դուռը և այնտեղ հաստատեց հենցյալ կայազոր (ռաբիթա) արքունի զորքից (ահլ ալ-դիվան): Նա ճնշեց ծանարներին (ալ-Սաննարիյա) մինչև որ ստիպեց խարաջ վճարել:

Մանսուրը գրեց նրան հրամայելով փեսայանալ խազարաց թագավորին: Այդպես էլ արվեց և նրա դուստրը մի տղա ծնեց, որը մեռավ, իսկ նա (դուստրը) ծննդաբերության ժամանակ մեռավ:

Յազիդը մարդ ուղարկեց Շարուան երկրի նավթահանքերը և աղահանքերը, որպեսզի հարկ դրվի և վերակացու նշանակվի: Յազիդը կառուցեց Արջիլ ալ-Սուղրա (Փոքր) և Արջիլ ալ-Քուբրա (Մեծ) քաղաքները և այնտեղ բնակեցրեց Պաղեստինի ժողովրդից:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Իսմաիլը, լսելով Պարտավի բնակիչ ծերունիներից, թե Շամախի քաղաքը, որը Շարուանի նահանգում է, կոչվել է Շարուանի թագավոր ալ-Շամմախ իբն Շուջայի անվամբ, սա՝ Իբն Սալմ ալ-Բահիլիի Հայաստանի կառավարիչ եղած շրջանում:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Իսմաիլը, լսելով ծերունիներից, թե [Յազիդ] իբն Ուսայդ և Բաքքար իբն Մուսլիմ [կառավարիչների]

Հանվելուց հետո Հայաստանի ժողովուրդն ապստամբեց Հասան իբն Կահթաբա ալ-Թաիի կառավարչության շրջանում: Նրանց պետն էր Հայալզի Մուշեղը (Մուշայիլ ալ-Արմանի)[169]: Մանսուրը նրան օգնական զորք ուղարկեց, որի հրամանատարն էր Ամիր իբն Իսմաիլը: Հասանը կռվեց Մուշեղի դեմ, որն սպանվեց ու նրա զորքը ցրվեց: Նրա (Հասանի) գործերը հաջող գնացին և նրա անունով էր որ կոչվեց Հասան գետը Բայլականում, այն այգին (բաղ), որը կոչվում է Հասանի այգի և Հասանիյա կոչված կալվածները Պարտավում:

Հասան իբն Կահթաբայից հետո կառավարիչ դարձան [հաջորդաբար] Օսման իբն Ումարա իբն Խուրայմը[170], Ռաուհ իբն Հատիմ ալ-Մուհալլիբին[171], Խուզայմա իբն Խազիմը[172], Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանին[173], Ուբայդալլահ իբն ալ-Մահդին[174], ալ-Ֆադլ իբն Յահիան[175], Սաիդ իբն Սալիմը[176], Մուհամմադ իբն Յազիդ իբն Մազիադը[177]: Այս բոլորի մեջ ամենախիստ կառավարիչը Խուզայման էր, որը Դվինում ու Նախճավանում հարկը ըստ տարածության (միսահա) վճարելու [սկզբունքը] հաստատեց, ինչ որ նախկինում չկար:

Հայաստանի պատրիկները իշխում էին իրենց տիրույթներում (երկիրներ, աշխարհներ) և ամեն մեկը պաշտպանում էր իր գավառը: Երբ սահմանային ամրությունը գալիս էր որևէ կառավարիչ, շուրջը սիրտվում (ուսումնասիրում) էին. եթե նա նրանց հետ դուսպ էր, զաժան և ուժ ու սպառազինություն ուներ, վճարում էին խարաջը ու հնազանդվում, այլապես՝ հայհոյում էին ու արհամարհում:

Այսպես, Մամունի խալիֆայության շրջանում կառավարիչ դարձավ Խալիդ իբն Յազիդ իբն Մազիադը, որը նրանցից նվերներ էր ընդունում և նրանց հետ անձամբ բարեկամաբար շփվում էր, իսկ այս բանը փչացրեց նրանց և նրան հաջորդող Մամունի նշանակած մյուս կառավարիչների նկատմամբ հանդուգն դարձրեց: Ապա Մուտասիմ Բիլլահը սահմանային ամրությունների (Արմինիա) կառավարիչ նշանակեց ալ-Հասան իբն Ալի ալ-Բադղիսիին[178], որը հայտնի էր Մամունի անվամբ: Սա անփույթ գտնվեց (ազատ թողեց) նրա պատրիկների և ազատների նկատմամբ, մեղմ վարվեց այնքան, որ առավել ևս անհնազանդ դարձան տիրակալի (սուլթան) հանդեպ և չարացան նրա նշանակած պաշտոնյաների դեմ: Օմայյանների մաուլա Իսհակ իբն Իսմաիլ իբն Շուայբը տեր դարձավ Վիրքին, իսկ Սմբատի որդի Սահլ (Սահլ իբն Սինբաթ)[179] պատրիկն ապստամբեց Հայդար իբն Քաուս ալ-Աֆշինի[180] նշանակած կառավարչի դեմ, սպանեց նրա քարտուղարին, իսկ ինքը հազիվ հոգին ազատեց փախուստով: Ապա Հայաստանի կառավարիչ դարձան պաշտոնյաներ, որոնք բնակիչներից ընդունում էին «ողորմություն» և ինչքան խարաջ էին տալիս, այդքանով գոհանում էին:

Սակայն հավատացյալց իշխան ալ-Մուտավաքքիլ Ալալլահը, իր

*խալիֆայությունից երկու տարի անցնելուց հետո Հայաստանի կառավարիչ նշանակեց Յուսուֆ իբն Մուհամմադ ալ-Մարուազիին[181]: Երբ Խլաթ հասավ, ձերբակալեց նրա պատրիկ Աշոտի որդի Բագարատին[182] (Բակրաթ, Բուկրաթ իբն Աշութ) և տարավ Սամառա[183] (Սուռա ման ռաա): Պատրիկները, ադասինները և բռնի տիրացողները[184] այս բանից զայրացան: Ապա նա իր մի պաշտոնյային, որը կոչվում էր ալ-Ալա իբն Ահմադ[185], ուղարկեց Սիսականում մի վանք, որը կոչվում էր Բաժակների (սկիհ) վանք (Դայր ալ-Ակդահ) և Հայաստանի քրիստոնյաներն այն շատ էին մեծարում ու պարգևներ ընծայում: Սա հափշտակեց ամբողջ ունեցվածքը և բռնություն գործադրեց նրա մարդկանց (վանականների) նկատմամբ: Պատրիկները զայրացան ու համբերությունից դուրս եկան և իրար միջև նամակագրությամբ միմյանց զրդեցին անհնազանդության ու ըմբոստության: Նրանք գաղտնի գրգռեցին խութեցիներին (ալ-Խուայսիյա), և Արթան անունով հայտնի անհավատ գեղջուկին, հարձակվելու Յուսուֆի վրա, քանզի նա գերել էր նրանց պատրիկ Բագարատին: Նրանցից, ինչպես նաև բռնի տիրացողներից ամեն մեկը ձիավորներ ու ռազմիկներ ուղարկեց այդ բանում նրանց օգնելու: Սրանք հարձակվեցին [Յուսուֆի] վրա Տարոնում (Թարուն)[186], իսկ նա իր մարդկանց ցրել էր գյուղերում: Սպանեցին նրան ու նրա ճամբարում եղած ամեն ինչը տարան:*

*Ապա հավատացյալաց իշխան ալ-Մութավաքքիլ Ալալլահը Հայաստան ուղարկեց Բուղա ալ-Քաբիրին (ավագ)[187], որը երբ Բաղեշ (Բադլիս)[188] հասավ, ձերբակալեց Մուսա իբն Զուրարային[189], իսկ սա Յուսուֆի սպանությունը ցանկացողներից էր և այդ նպատակով օգնել էր, քանզի զայրացած էր Բագարատի ձերբակալման համար: Նա (Բուղան) պատերազմեց խութեցիների դեմ, ահռելի կոտորած արեց, մեծ բազմություն գերեվարեց, ապա արշավեց Վասպուրականի պատրիկ Գագիկի որդի Համազասպի որդի Աշոտին[190] (Աշութ իբն Համզա իբն Ջաջիկ), որն Ադքակի (ալ-Բակ)[191] տերն էր, նրաշխավորելով իջեցրեց իր ամրոցից և ուղարկեց Սամառա:*

*Ապա դիմեց Վիրք, հաղթեց Իսհակ իբն Իսմաիլին, ձերբակալեց և անմիջապես սպանեց, նվաճեց Վիրքը և Առանի ու Հայաստանի արտաքին (բարձրադիր) կողմերում՝ Սիսականում ապստամբած ու խռովարար քրիստոնյաներին ու այլոց տարավ իր հետ, մինչև որ այս սահմանային ամրությունների գոտին այնպես հանդարտվեց, որ նախկինում երբեք չէր եղել: Ապա եկավ Սամառա 241 (22 մայիս 855 — 9 մայիս 856) թվականին:*

## ԵԳԻՊՏՈՍԻ ՈՒ ՄԱՂՐԻԲԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 218 – 219*

*Ամր իբն ալ-Ասր[192] նրր նվաճեց Ֆուսթաթը[193]. Աբդալլահ իբն Հուդայֆա ալ-Սահմիին ուղարկեց Այն Շամս (Հելիոպոլիս)[194] և սա նվաճեց նրա հողերը ու դաշինք կնքեց Ֆուսթաթի հետ կնքված պայմաններով: [..........]*

*Եվ Ուկբա իբն Ամիր ալ-Ջահնիին, ասվում է նաև որ ոչ թե նրան, այլ իր մաուլա Վարդանին, որը Կահիրեի (Միսր) Վարդանի շուկայի (Սուկ Վարդան)[195] տերն էր, ուղարկեց երկրի ստորին մասերի բոլոր դյուղերը և սա էլ նույնն արեց: Այսպիսով, Ամր իբն ալ-Ասը ամբողջացրեց Եգիպտոսի նվաճումը և նրա հողերը դարձան հարկատու (արդ խարաջ): [............]*

*Մուավիան դրել է Վարդանին՝ Ամրի մաուլային, թե ավելացրու հարկը ամեն մի դպտի մարդու վրա մի կիրաթ[196]: Սակայն նա պատասխանում է՝ ինչպես կարող եմ ավելացնել, չէ որ նրանք ունեն պայմանագիր առ այն, որ ավելին նրանցից չպետք է պահանջվի:*

## ԱԼԵՔՍԱՆԴՐԻԱՅԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 222 – 223*

*Մուկաուկասը Ամրի հետ դաշինք կնքեց տասներեք հազար դինար վճարել պայմանավորվելով և այն պայմանով, որ ով ուզենա կարող է Ալեքսանդրիայից հեռանալ և ով կամենա, կմնա ու կբնակվի նրանում, ամեն մի չափահաս դպտի պարտավոր է երկու դինար վճարել և այս ձևով դրվեց պայմանագիրը: Ապա Ամր իբն ալ-Ասը Ալեքսանդրիայում իրեն փոխանորդ թողեց Աբդալլահ իբն Հուդայֆա ալ-Սահմիին մահմեդականների մի հեծյալ կայազորով, իսկ ինքը գնաց Ֆուսթաթ:*

*[Ալեքսանդրիայի] հոռոմները դրեցին Հերակլի որդի Կոստանդինին[197], որն այդ ժամանակ նրանց թագավորն էր, տեղեկացնելով, թե մահմեդականները սակավաթիվ են իրենց մոտ և որ իրենք նվաստացած վիճակում են ջիզիա վճարելով: Իսկ նա (Կոստանդինը) իր մերձավորներից Մանուելին[198] ուղարկեց երեք հարյուր նավերով, ռազմիկներով լի և սա մտավ Ալեքսանդրիա, կոտորեց ամբողջ մահմեդական կայազորը ու միայն փախչողները փրկվեցին: Սա տեղի ունեցավ քսանհինգ (28 հոկտեմբեր 645 – 16 հոկտեմբեր 646) թվականին:*

*Երբ Ամրը այս լուրն իմացավ, տասնհինգ հազարով եկավ ու*

տեսավ, որ նրանց ռազմիկները դուրս գալով [քաղաքից] չարագործություններ էին անում եգիպտական գյուղերում Ալեքսանդրիայից այն կողմ: Մահմեդականները բախվեցին նրանց հետ և թեև մեկ ժամ նետերի տարափի տակ ընկան, իրենց վահաններով պաշտպանվեցին: Ապա համարձակ հարձակվեցին ու մեծ ճակատամարտ եղավ, անհավատները փախան և ոչ մի եւք չգտնելով ապաստանեցին՝ Ալեքսանդրիայում ու պաշտպանվեցին: Նրանք քարտնետ մեքենաներ զրեցին և Ամրը կատաղի կռվեց նրանց դեմ և քարանետ մեքենաներ դնելով քանդեց նրա պարիսպները, համառ կռվով մտավ ու սրով նվաճեց: Սա կոտորեց ռազմիկներին, գերեվարեց նրանց երեխաներին: Նրա բնակիչ հոռոմների մի մասը փախավ Ռումի երկիրը, իսկ Ալլահի թշնամի Մանուելը սպանվեց:

Ամրը ու մահմեդականները քանդեցին Ալեքսանդրիայի պարիսպը, քանզի Ամրը երդվել էր, որ գրավելու պարագային այդպես էր վարվելու:

## ՊԱՊԻՐՈՒՍԻ ԳԱԼԱՐՆԵՐԻ (ԿԱՐԱԹԻՍ) ՄԱՍԻՆ

*էջ 241 - 242*

Պապիրուսի գալարները ուղարկվում էին հոռոմաց երկիրը Եգիպտոսից, իսկ արաբները հոռոմներից ստանում էին դինարներ: Աբդ ալ-Մալիք իբն Մարուանն առաջինն էր, որ գալարների (թավամիր) գլխին սովորություն մտցրեց գրել՝ ասա նա է միակ Ալլահը, և այլ բաներ Ալլահի հիշատակությամբ:

Ռումի թագավորը գրեց նրան՝ դուք ձեր պապիրուսի գալարների վրա գրում եք այնպիսի բաներ, որ մենք ատում ենք, եթե դրանից հրաժարվեք՝ լավ, իսկ եթե ոչ, ապա դինարների վրա կգրենք այնպիսի բաներ ձեր մարգարեի մասին, որ դուք կսկսեք ատել:

Սա խիստ զայրացրեց Աբդ ալ-Մալիքին թեև չէր սիրում հրաժարվել մի լավ օրենքից, որը դրել էր, լուր ուղարկեց Խալիդ իբն Յազիդ իբն Մուավիային ասելով՝ ով Աբու Հաշիմ, փորձանք է պատահել և պատմեց եղելությունը: Ասաց նրան [Խալիդը]՝ մի վրդովվիր ով հավատացյալների իշխան, այլ արգելիր նրանց դինարների օգտագործումը և առևտուրը դրանցով ու հատանիր մարդկանց համար [նոր] դրամներ, որոնց վրա անհավատները կտեսնեն այն, ինչ ատում էին տեսնել մեր գալարների վրա: Ասաց նրան Աբդ ալ-Մալիքը՝ դու հանգստացրիր իմ միտքը, թող Ալլահը քո միտքը հանգստացնի:

Ասել է Ավանա իբն ալ-Հաքամը, թե [նախկինում] գալարների գլխին դպտիները հիշում էին Քրիստոսին և նրան վերագրում աստվածություն ու խաչ էին դնում «հանուն Ալլահի ամենագութ, ամե-

նողորմ» խոսքերի փոխարեն:

Այսպիսով Ռումի թագավորը դժգոհ էր և դայրացած Աբդ ալ-Մալիքի փոփոխությունից:

Ասել է Մադաինին, որ Մասլամա իբն Մուհարիբը նշել է, թե Խալիդ իբն Յազիդը խորհուրդ է տվել Աբդ ալ-Մալիքին արգելել նրանց դինարները ու դրանցով առևտուր անելը և թույլ չտալ, որ Ռումի երկիրը պապիրուսի դալարներ (կարաթիս) ուղարկվեն:

Այսպիսով ոչ մի պապիրուսի դալար չուղարկվեց նրանց մոտ:

## ՍԱՎԱԴԻ[199] ՆՎԱՃՈՒՄԸ ԱԲՈՒ ԲԱՔՐ ԱԼ-ՍԻԴԴԻԿԻ[200] ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅՈՒՆԸ

էջ 242

Մուսաննա իբն Հարիսա իբն Սալմա իբն Դամդամ ալ-Շայրանին իր մարդկանցով արշավանքներ էր կատարում Սավադ: Լսելով այդ մասին Աբու Բաքրը հարցուփորձ արեց նրա մասին և Կայս իբն Ասիմ իբն Սինան ալ-Մինկարիից իմացավ, որ նա համբավից զուրկ անձնավորություն չէ, ոչ էլ անհայտ ծագումով ու կամ անզոր, այլ դա Մուսաննա իբն Հարիսա ալ-Շայրանին է: Հետագայում Մուսաննան ներկայացավ Աբու Բաքրին և ասաց՝ ով Ալլահի մարգարեի խալիֆա ինձ դարձրու կառավարիչ իմ տոհմի այն մարդկանց վրա, որոնք ընդունել են իսլամը, որպեսզի կռվեմ այդ օտարների՝ պարսիկների դեմ: Աբու Բաքրը մի վավերագիր տվեց այդ մասին: Մուսաննան առաջ խաղաց մինչև որ հասավ Խաֆֆան և նրա ժողովրդին կոչ արեց ընդունելու իսլամը և նրանք ընդունեցին:

Աբու Բաքրը դրեց Խալիդ իբն ալ-Վալիդ ալ-Մախզումիին հրամայելով գնալ Իրաքի դեմ, ասվում է, թե նա Մադինայից ուղարկեց նրան, իսկ Մուսաննա իբն Հարիսային գրեց, որ նրան ընդունի և հնազանդ լինի:

էջ 244

Ապա Խալիդը գնաց Մուջտամա ալ-Անհար (գետերի միախառնում), ուր հանդիպեց Աղադբիհը՝ հրամանատարը Խոսրովի այն սահմանային ամրությունների (բերդերի), որոնք ընկած էին պարսիկների ու արաբների միջև: Մահմեդականները կռվեցին նրա դեմ ու հաղթեցին: Ապա եկավ Խալիդը ու կանգ առավ Խաֆֆանում: Ուրիշներ ասում են, թե նա ուղիղ գնաց Հիրա[201], ուր հանդիպեց Աբդ ալ-Մասիհ (ծառա Քրիստոսի) իբն Ամր իբն Կայս իբն Հայյան իբն Բուկայլային, իսկ վերջինիս անունը Հարիս և Ազդ ցեղից էր, Հանի իբն

Կուրայսա (Կաւիսա) իբն Մասուդ ալ-Շայբանիին և Իյաս իբն Կաբիսա ալ-Թաիին, որին ուրիշներն ասում են Ֆարուա իբն Իյաս: Սա Խոսրով Պարվեզի կողմից Հիրայի կառավարիչ էր նշանակված Նուման իբն ալ-Մունզիրից հետո:

Սրանք պայմանագիր կնքեցին Խալիդի հետ այն պայմանով, որ տարեկան հարյուր հազար դիրհեմ վճարեն, իսկ ուրիշներն ասում են, թե ութսուն հազար դիրհեմ էր և պարտավորվում էին լրտեսություն անել մահմեդականների համար պարսիկների դեմ, իսկ Խալիդը չպետք է կործաներ նրանց ոչ մի եկեղեցին կամ ամրոցը:

էջ 245

Ինձ պատմել է Աբու Մասուդ ալ-Քուֆին, լսելով Իբն Մուջալիդից, իսկ սա՝ իր հորից, սա էլ՝ Շաաբիից, թե Խուրայմ իբն Աուս իբն Հարիսա իբն Լամ ալ-Թաին ասել է մարգարեին՝ եթե Ալլահի օգնությամբ նվաճես Հիրան, ես քեզ խնդրում եմ, որ ինձ տաս Բուկայլայի դուստրը: Երբ Խալիդն ուզեց պայմանագիր կնքել Հիրայի բնակչության հետ, Խուրայմն ասաց՝ մարգարեն ինձ է տվել Բուկայլայի դստերը և նա չպետք է մտնի քո պայմանագրի մեջ: Այս բանը վկայեցին Բաշիր իբն Սաադը և Մուհամմադ իբն Մասլաման անսարներից[202], ուստի Խալիդը նրան (աղջկան) չհիշեց պայմանագրի մեջ, այլ հանձնեց Խուրայմին: Ապա Խուրայմը նրան վաճառեց հազար դիրհեմով, քանզի ինքը չատ ծեր էր նրա հետ ամուսնության համար: Մեկն ասաց Խուրայմին՝ նա չատ էժան վաճառվեց, նրա տոհմակիցները այդ գումարի մի քանի անգամ ավելին կտային: Իսկ նա պատասխանեց՝ ես երբեք չեմ իմացել, թե տաս հարյուրից (հազար) [մեծ] թիվ կա:

## ԿԱԴԻՍԻՅԱՅԻ[203] ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

էջ 255 – 259

Մահմեդականները գրեցին Օմար իբն ալ-Խաթթաբին տեղեկացնելով, թե պարսիկները (ահլ Ֆարիս) մեծ բազմությամբ հավաքվել են և օգնություն խնդրեցին: Սա ուզեց անձամբ արշավել ու զորք հավաքեց, սակայն Աբբաս իբն Աբու Մութթալիբը և Ալլահի առաքյալի մերձավորներից մի խումբ ծերունիներ նշեցին, որ նա պետք է մնա տեղում ու զորք ուղարկվի և այդպես էլ արեց: Ալի իբն Աբու Թալիբը նրան ուզեց համոզել, որ նա անձամբ գնա, սակայն Օմարն ասաց՝ ես որոշել եմ տեղում մնալ: Օմարն առաջարկեց Ալիին գնալ արշավանքի, իսկ սա մերժեց: Այդ ժամանակ Օմարը կամեցավ, որ

Սաադ իբն Զայգ իբն Ամր իբն Նուֆայլ ալ-Ադավին գնա: Վերջապես որոշեց ուղարկել Սաադ իբն Աբու Վակկասին, ասելով, թե նա քաջ է և լավ նշանառու: Ուրիշներ ասում են, թե այդ ժամանակ Զայդ իբն Ամրը Ասորիքում արշավանքով էր զբաղված:

Սաադը եկավ Իրաք և կանգ առավ Սաալաբիյայում երեք ամիս, որի ընթացքում բոլոր զորքերը հավաքվեցին: Ապա տասնհինգ (14 փետրվար 636 – 1 փետրվար 637) թվականին եկավ Ուզայբ: Այդ ժամանակ Մուսաննա իբն Հարիսան հիվանդ էր և խորհուրդ տվեց Սաադին թշնամուն հանդիպել Կադիսիյայի և Ուզայբի միջև: Նրա վիճակը վատացավ, նրան տարան իր տոհմակիցների մոտ, ուր մեռավ: Սաադն ամուսնացավ նրա կնոջ հետ:

Ասել է Վակիդին, թե Մուսաննան մեռավ Ռուստամի[204] գալուց առաջ: Եկավ Ռուստամը, որը ծագում է Ռեյից, սակայն ասվում է նաև թե Համադանի ժողովրդից է, ապրել է Բուրսում, ապա եկել ու հաստատվել է Հիրայի ու Սայլահինի միջև չորս ամիս: Այստեղ նա ոչ մի ռազմական գործողություն չձեռնարկեց մահմեդականների դեմ, իսկ սրանք ճամբար էին դրել Ուզայբի ու Կադիսիյայի միջև: Ռուստամը առաջ մղեց Զու-լ-Հաջիբին, որը բանակ էր դրել Թիզնաբադում: Կռապաշտները մոտավորապես հարյուր քսան հազար էին, ունեին երեսուն փիղ և իրենց մեծ դրոշը, որը կոչվում է Քավեհի դրոշ (Դիրաֆշիքաբիան): Մահմեդականների զորքը ինը կամ տասը հազարի միջև էր և երբ անասնակերի և ուտելիքի կարիք էին զգում, ձիավորներ էին ուղարկում երկրի ներսը ու Եփրատի ստորին մասերն ասպատակում էին: Օմարը Մադինայից նրանց ուղարկում էր ոչխարներ, ուղտեր մորթելու համար: [........]

Կադիսիյայի ճակատամարտի օրը Օմարը գրեց Աբու Մուսային (Բասրայի կառավարիչ) հրամայելով օգնություն ուղարկել Սաադին և նա ուղարկեց Մուղիրային ութ հարյուր, ասում են նաև չորս հարյուր, ռազմիկներով:[.........]

Օմարը գրեց Սաադին, հրամայելով, որ պարսիկների մեծավորի մոտ պատվիրակություն ուղարկվի իսլամ առաջարկելու նպատակով [......]

Ապա մահմեդականները ուղարկել էին մի խումբ ռազմիկների անասնակեր ճարելու համար, որը [պատահարար] հանդիպեց պարսից հեծյալներին և սա ճակատամարտի պատճառը դարձավ: Պարսիկները կանչեցին իրենց հեծելազորին, իսկ մահմեդականներն՝ անասնակերի համար գնացողներին (հեռացածներին) և մի կատաղի մարտ սկսվեց նրանց միջև: Սա կատարվեց կեսօրից հետո:

Ամր իբն Մաադիքարիբ ալ-Զուբայդին դրոհեց և մի պարսիկ մեծավորի վզից բռնելով դրեց իր առջև թամբի վրա և ասաց՝ ես Աբու Սաուրն եմ, ինձ նման արեք: Ապա փղերից մեկին տապալեց և ասաց՝

ձեր սրերով դրանց կնճիթներին խփեցեք, նրա ամենախոցելի տեղը կնճիթն է:

[Արու Միհջանը] նետելով Սաադի ձին, գրոհեց պարսիկների դեմ ճեղքելով նրանց շարքերը և իր սուրը խրելով սպիտակ փղի կնճիթի մեջ և նրան տապալեց:

Այդ օրը (ճակատամարտին) Թուլայհա իբն Խուայլադ ալ-Ասադին աչքի ընկավ և մի հարվածով կտրեց Գալենոսի (Ջալինուս) սաղավարտից ներքև, սակայն չկարողացավ գլուխը կտրել: Կայս իբն Մաքշուհը դոռաց մարդկանց՝ սպանվեն աղնվականների ճակատագիրն է, մի թողեք որ այս անթլփատները մեռնելու առավել նախանձախնդիր լինեն, քան մենք: Այս ասելով նա հարձակվեց ու կատաղի կռվեց: Ալլահի օգնությամբ Ռուստամն սպանվեց, իսկ մարմինը գտնվեց բաղում հարվածներով ու խոցերով ծածկված, այնպես, որ հայտնի չէր, թե ով է սպանել:[......]

Կադիսիյայի ճակատամարտը տեղի ունեցավ հինգշաբթի, ուրբաթ օրերը և շաբաթի գիշերը ու հետագայում կոչվեց «լայլատ ալ-հարիր» (հառաչանքի գիշեր):[......]

Ըստ Վակիդիի մի խումբ պարսիկներ իրենց դրոշը ամուր խրելով գետին ասացին՝ մենք մեր դիրքերը չենք թողնի մինչև մեռնենք: Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլին հարձակվեց ու սպանեց նրանց, խլելով դրոշը:

## ՏԻԶԲՈՆԻ (ՄԱԴԱԻՆ) ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 262 - 263*

Կադիսիյայից հետո մահմեդականները գնացին ու անցնելով Քասր վանքը հանդիպեցին Նախիր Խանին, որը հայտնվեց Տիզբոնի ժողովրդից մեծ խմբի (ռազմիկների) հետ: Նրանք բախվեցին և Զուհայր իբն Սուլայմ ալ-Ազդին Նախիր Խանին վզից բռնեց ու գետին տապալեց: Նա Նախիր Խանի մեջքից մի դաշույն վերցրեց, պատռեց որովայնը և սպանեց:

Սաադն ու մահմեդականներն առաջ խաղացին և հասան Սաբաթ, ապա հավաքվեցին Բահուրասիրի[205] մոտ, որը Շիկկ ալ-Քուֆայի կողմն է (Տիգրիսի արևմտյան ափին): Այստեղ մնացին ինն ամիս, ասվում է նաև տասնութ ամիս, այնպես որ թարմ արմավը երկու անգամ կերան: Քաղաքի բնակիչները կռվում էին, սակայն երբ նրանք թուլացան [արաբները] մտան քաղաք: Երբ մահմեդականները քաղաքը նվաճեցին, Պարսից թագավոր Հազկերտը[206], Շահրիարի որդին փախուստի դիմեց: Նա Տիզբոնի Աբյադ բերդի պարսպից ղամբյուղով կախվեց և արամեացիք այդ պատճառով նրան Բար

Զարիա (պարսբյունի որդի) կոչեցին: Նա գնաց Հուլուան[207] իր հետ տանելով հայտնի մեծամեծներին (հեծյալներին), ինչպես նաև պետական գանձարանը (բայտ ալ-մալ), թեթև իրերը, անձնական գանձարանը, կանանց ու երեխաներին: Այն տարին, երբ նա փախավ, ամբողջ Պարսկաստանի համար դարձավ սովի ու ժանտախտի տարի: Ասլա մահմեդականներն անցնելով մի ծանծաղուտ, գրավեցին [Տիզբոնի] արևելյան քաղաքը: [......]

Կադիսիյայում պարտվելուց հետո պարսիկների մնացորդները եկել էին Տիզբոն (Մադաին), որի ջրերն այնքան էին հորդել, որ երբեք չէր եղել: Պարսիկները նավերն ու լաստերը քշեցին դեպի արևելյան ափերը և վառեցին կամուրջը, իսկ Սաադը և մահմեդականները տխրեցին, քանզի անցնելու միջոց չունեին: Մահմեդականներն ուղարկեցին մի մարդու, որը ձիուն հեծած լողաց անցավ, նույն ձևով լողացին նաև մյուս մահմեդականները: Ապա նավերի տերերին ստիպեցին բեռներն անցկացնել: Ասացին պարսիկները՝ աստված վկա, մենք պարզապես դևերի (ջինն) հետ ենք կռվում և փախուստի դիմեցին: [............]

Ինձ պատմել է Արդալլահ իբն Սալիհը, լսելով վստահելի մարդկանցից, թե Մուջալիդ իբն Սաիդը, որը լսել է Շաաբիից, ասել է՝ Տիզբոնի գրավման օրը մահմեդականները խլեցին Խոսրովի հարճերից չատերին, որոնք երկրի տարբեր ծագերից էին բերվել և նրա համար չուայլորեն զարդարված էին, իմ մայրը դրանցից մեկն էր: Պատմել է, որ այդ օրը մահմեդականները քաֆուրը (կամֆորա) առնում գցում էին կերակուրի կաթսայի մեջ, կարծելով որ աղ է:

Ասել է Վակիդին, որ Սաադը Տիզբոնի ու Ջալուլայի[208] [նվաճումը] վերջացրել է 16 (2 փետրվար 637 – 22 հունվար 638) թվականին:

## ՋԱԼՈՒԼԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ[209]

էջ 264

Տիզբոնում (Մադաին) մի քանի օր մնալուց հետո մահմեդականները լսեցին, թե Հազկերտը մեծ զորք է հավաքել և ուղարկել է իրենց դեմ, իսկ նրանց հավաքավայրը Ջալուլան էր: Սաադ իբն Աբու Վակկասը նրանց դեմ ուղարկեց Հիշամ իբն Ուտբա իբն Աբու Վակկասին տասներկու հազար զորքով: Մահմեդականները տեսան, որ պարսիկները խրամատներ էին փորել ու ամրացրել իրենց ընտանիքներին և ծանր բեռները թողել էին Խանիկինում[210], որոշած լինելով երբեք չնահանջել: Նրանց օգնական զորքեր էին գալիս Հուլուանից և Ջիբալից[211]: Մահմեդականներն ասացին՝ պետք է աճապարել ու հարձակվել նախքան օգնական զորքերի չատանալը: Նրանք հարձակվեցին,

ընդ որում Հուջր իբն Ադի ալ-Քինդին աջ թևին էր հրամայում, Ամր իբն Մաադիքարիբը հրամայում էր հեծելազորքին, իսկ Թուլայհա իբն Խուվայլիդը՝ հետևակին: Այս անգամ պարսիկների հրամանատարն էր Ռուստամի եղբայրը՝ Խուռազադը:

Սա ամենակատաղի կռիվն էր, որ տեղի էր ունեցել [այդ օրերին], ազնիվներից նետեր չէին արձակում, նիզակներով խոցում չէին մինչև ջարդվելը, սրերով հարվածում չէին մինչև ճկվելը: Ապա մահմեդականներն այնպիսի մեծ հարձակում գործեցին, որ պարսիկներին քշեցին իրենց դիրքերից ու փախուստի մատնեցին: Պարսիկները փախչում էին, իսկ մահմեդականները հետապնդում էին սաստիկ կոտորելով, մինչև որ գիշերը վրա հասավ և նրանք վերադարձան իրենց ճամբարը: Հաշիմ իբն Ուտբան Ջալուլայում թողնելով Ջարիր իբն Աբդալլահին, մեծ հեծելազորքով առաջացավ, որպեսզի լինի թշնամու և մահմեդականների միջև: Սակայն Հազկերտը թողեց Հուլուանը և հեռացավ: [..........]

Այսպիսով, Տիգրիսի Սավադում (Սավադ Դիջլա) չմնաց մի վայր, որ նվաճված չլիներ մահմեդականների կողմից:

էջ 265

Ջալուլայի ճակատամարտը տեղի ունեցավ տասնվեց (2 փետրվար 637 – 22 հունվար 638) թվականին:

Իսլամն ընդունեցին Ջամիլ իբն Բուսբուհրան՝ Ֆալալիջի ու Նահրայնի դեհկանը, Բիսթամ իբն Նարսին (Ներսեհ) Բաբելոնի ու Խաթարնիյայի դեհկանը, Ռուֆայլը՝ ալ-Ալի դեհկանը, Ֆայրուզը Նահր ալ-Մալիքի (Թագավորի գետ) ու Քուսիի դեհկանը և այլ դեհկաններ: Օմար իբն ալ-Խաթթաբը ոչ մի բանի ձեռք չտվեց, այլ թողեց հողերը նրանց ձեռքում և ջիզիան նույնպես վերացրեց:

էջ 268

Պատմել է Ամր ալ-Նակիդը, լսելով ուրիշներից, թե Օմարը Սավադի ամեն մի ջարիբի[212] համար, լինի մշակված, թե անմշակ, ուր ջուր է հասնում, [սահմանեց որ] պետք է վճարել մեկ դիրհեմ և մեկ կաֆիզ[213] [ցորեն], ամեն մի ջարիբ արմավի համար՝ հինգ դիրհեմ ու հինգ կաֆիզ, ծառերի ամեն մի ջարիբի համար՝ տասը դիրհեմ ու տաս կաֆիզ, ընդ որում արմավենիները չեն հիշվում: Իսկ ամեն մի մարդուց քառասունութ, քսանչորս և կամ տասներկու դիրհեմ՝ [որպես ջիզիա]:

## ԴԻՎԱՆԻ [ԼԵԶՈՒՆ] ՊԱՐՍԿԵՐԵՆԻՑ [ԱՐԱԲԵՐԵՆԻ] ՓՈԽՎԵԼԸ

*էջ 298*

*Ինձ պատմել է ալ-Մադաինի Ալի իբն Մուհամմադ իբն Աբու Սայֆը, լսելով ծերունիներից (չեյխեր), թե Սավադի և ամբողջ Իրաքի խարաջի դիվանը (հարկամատյանը) գրվում էր պարսկերեն:*

*Երբ Հաջջաջը[214] դարձավ Իրաքի կառավարիչ՝ Զադան Ֆարուխ իբն Յարրային դարձրեց քարտուղար, որին օգնում էր Սալիհ իբն Աբդ ալ-Ռահմանը՝ Տամիմ ցեղի մաուլան: Սա նրա մոտ գրում էր արաբերեն ու պարսկերեն, իսկ Սալիհի հայրը Սիջիստանից[215] գերեվարվածներից էր: Սալիհը, Զադան Ֆարուխի միջոցով, ծանոթացել էր Հաջջաջին, որը նրան հավանել էր: Մի օր Սալիհը ասաց Զադանին՝ քո միջոցով ես ծանոթացա կառավարչին և զգում եմ, որ նա ինձ հավանեց: Ուստի ես չեմ դարմանա, եթե նա ինձ քեղանից նախընտրի և այդ պարագային դու կընկնես: Երբեք չհավատաս, Ասաց Զադանը, նա ինձ ավելի կարիք ունի քան ես նրան, քանզի բացի ինձանից ոչ ոք նրա հաշիվները չի կարող պահել: Ասաց Սալիհը՝ Ալլահը վկա, եթե կամենաս, որ հաշիվը արաբերենի վերածեմ՝ կանեմ: Ասաց նրանից մի մաս վերածիր, որ տեսնեմ և նա վերածեց: Ասաց Զադանը՝ հիվանդ ձևացիր և նա արեց, իսկ Հաջջաջն իր անձնական բժշկին ուղարկեց նրա մոտ և սա ոչ մի ախտ չգտավ նրա մոտ: Զադան Ֆարուխն այս բանը լսելով հրամայեց նրան իր մոտ գալ:*

*Հետագայում այս Զադան Ֆարուխը Աբդ ալ-Ռահման իբն Մուհամմադ իբն ալ-Աշաաս ալ-Քինդիի օրոք սպանվեց, երբ մեկի տնից դուրս գալով, գնում էր իր տունը, կամ ուրիշի տունը:*

*Հաջջաջը Սալիհին նշանակեց Զադանի փոխարեն քարտուղար և Սալիհը Հաջջաջին հայտնեց իր ու Զադան Ֆարուխի միջև դիվանի լեզուն փոխելու վերաբերյալ անցած դարձածի մասին:*

*Հաջջաջը որոշեց, որ դիվանի լեզուն պետք է լինի արաբերենը և այս գործը հանձնարարեց Սալիհին: Ասաց նրան Զադան Ֆարուխի որդի Մարդանշահը՝ ինչպե՞ս կգրես դեհվիյա (տասանորդ) և շեշվիյա (վեցերորդ): Ասաց՝ կգրեմ ուշր[216] (տասանորդ) և նիսֆ ուշր[217] (կես տասանորդ): Ասաց՝ իսկ ի՞նչ կանես վիդի հետ: Ասաց՝ կգրեմ նույնպես, վիդը նայիֆն է (մի քիչ ավելի), իսկ ավելին ավելացվում է: Ասաց՝ Ալլահը քո արմատը կտրի աշխարհից ինչպես դու կտրեցիր պարսկերենի արմատը: Նա առաջարկեց նրան հարյուր հազար դիրհեմ, որ ձևացնի թե անկարելի է դիվանի լեզուն փոխելը և հրաժարվի, սակայն նա մերժեց ու փոխեց: Ասել է Մարուան իբն Մուհամմադի քարտուղար Աբդ ալ-Համիդ իբն Յահիան, թե՝ մեծ է*

*Սալիհը և մեծ է նրա կատարած գործը քարտուղարների համար:*

*Ինձ պատմել է Օմար իբն Շիբան, լսելով Աբու Ասիմ ալ-Նաբիլից, որ լսել է Սահլ իբն Աբու Սալթից, թե Հաջջաջը Սալիհ իբն Աբդ ալ-Ռահմանին որոշ ժամանակ է տվել, մինչև որ դիվանի լեզուն փոխեր:*

## ՆԵՀԱՎԵՆԴԻ[218] (ՆԻՀԱՎԱՆԴ) ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 300 - 303*

*Երբ Հազկերտը տասնիկր (2 հունվար 640 – 20 դեկտեմբեր 640) թվականին Հոլուանից փախավ, պարսիկները (ընդհանրապես) և Ռեյի[219], Կումիսի[220], Ասպահանի (Իսֆահանի), Համադանի և Մահինի ժողովուրդը իրար հետ նամակագրություն ունեցան ու քսան (21 դեկտեմբեր 640 – 9 դեկտեմբեր 641) թվականին միացան Հազկերտին: Նրանց հրամայում էր Մարդանշահ Զու-լ-Հաջիբը և դուրս բերեցին իրենց Քավեհի դրոշը (Դիրաֆշիքաբիան): Այդ ժամանակ կռապաշտների թիվը վաթսուն հազար էր, ասվում է նաև հարյուր հազար: Ամմար իբն Յասիրը գրել էր Օմար իբն ալ-Խաթթաբին հայտնելով այդ մասին: Նա (Օմարը) ուզեց նրանց դեմ անձամբ արշավել, սակայն վախեցավ, որ արաբ [ընդեխները] կտիրեն Նաջդին և այլ վայրերին: Նրան խորհուրդ տվեցին, որ արշավանքի ուղարկի Ասորիքի զորքերը հենց Ասորիքից և Եմենի զորքերը հենց Եմենից, սակայն վախեցավ, որ նման դեպքում հռոմները կվերադրավեն այդ երկրները, իսկ Եթովպիան մնացած մասերը կնվաճի: Նա գրեց Քուֆայի զորքին, որ նրանց երկու երրորդը շարժվի, իսկ մեկ երրորդը մնա քաղաքն ու երկիրը պաշտպանելու համար: Բասրայի ժողովրդից նույնպես զորք ուղարկեց:*

*Օմարն ասաց՝ ես զորքի հրամանատար եմ նշանակելու այնպիսի մարդու, որն առաջինը նետվի նիզակի դեմ: Ուստի նա գրեց Նուման իբն Ամր իբն Մուկրան ալ-Մուզանիին, հայտնելով որ զորքի հրամանատար է նշանակում: [.........]*

*Մի օր Օմարը մտավ [Մադինայի] մզկիթը և տեսնելով Նուման իբն Մուկրանին, նստեց կողքին. աղոթքը վերջանալուց հետո ասաց՝ ես քեզ կառավարիչ եմ նշանակելու: Ասաց Նումանը՝ եթե հարկերը հավաքելու համար է՝ ոչ, իսկ եթե որպես ղազի[221] ես արշավանքի ուղարկելու, համաձայն եմ: Ասաց՝ որպես ղազի, և ուղարկեց նրան: Նա գրեց Քուֆայի բնակիչներին որ օգնական զորք ուղարկեն և նրանց տվեցին ու նրանց մեջ էր ալ-Մուղիրա իբն Շուբան:*

*Նումանը Մուղիրային ուղարկեց պարսիկների ղեկավար Զու-լ-Հաջիբի (Զու-լ-Հաջիբ Մարդանշահ) մոտ Նեհավենդ: Մուղիրան հասնելով սկսեց իր սրով կտրտել գորգը, մինչև որ ներկայացավ*

նրան և նստեց նրա գահին, սակայն վերջինիս հրամանով իջեցվեց գահից, ապա բողոքեց՝ ես դեսպան եմ: Մահմեդականները բախվեցին կռապաշտների հետ, որոնք տաս-տաս և հինգ-հինգ իրար շղթայված էին, որպեսզի չփախչեին: Նրանք նետեր արձակելով վիրավորեցին մի խումբ մահմեդականների և դա ճակատամարտից առաջ էր:

Նումանը շարժեց դրոշակը և շարժվեցին ըստ նրա պատվերի: Նրա դրահն իր համար ծանր էր, սակայն կռվեց և բոլորը կռվեցին: Նա առաջինն էր, որ մեռավ: Պարսիկը (Զու-լ-Հաջիբը) ընկավ իր ջորուց և նրա որովայնը պատռվեց:

Պատմողն ասել է՝ մոտեցա Նումանին, որը դեռ շունչը չէր փչել, դեմքը լվացի իմ մոտ եղած ամանի ջրով ևahա նա հարցրեց՝ ինչ վիճակում են մահմեդականները, ասացի՝ ուրախացիր. Ալլահը մեզ տվել է նվաճում ու հաղթանակ:

Ասել է Սայիբը՝ ես հավաքեցի ավարը ու բաժանեցի, սակայն եկավ լրտեսը և հայտնեց, թե Նախիր Խանի գանձը դղյակում է: Ես այնտեղ մագլցեցի ու գտա երկու սնդուկ դոհարեղենով լի, որի նմանը չէի տեսել: Եկա ու հանդիպեցի Օմարին [Մադինայում], որը փողոցներում հարց ու փորձ էր անում, քանզի տեղյակ չէր: Ինձ տեսնելով գոչեց՝ ինչ նորություն: Պատմեցի ճակատամարտի, Նումանի սպանության և երկու սնդուկների մասին: Ասաց՝ գնա վաճառիր ու գինը բաժանիր [ռազմիկ] մահմեդականների միջև:

Նեհավենդում կռվեցին չորեքշաբթի օրը, հինգշաբթի, ապա թուլացան ու կռվեցին նաև ուրբաթ օրը: [.........]

Երբ պարսիկների զորքը փախուստի դիմեց ու հաղթեցին մահմեդականները, Հուզայֆան այդ ժամանակ հրամանատար էր: Սա պաշարեց Նեհավենդը, որի բնակիչները դուրս էին գալիս ու կռվում, սակայն մահմեդականները նրանց հաղթեցին: Ապա Սիմաք իբն Ուբայդ ալ-Աբսին մի օր նրանցից մեկին հետապնդեց, որի հետ կային ութ ձիավորներ: Նրանցից ով հայտնվեց, սպանվեց և մնացել էր միայն մեկ հոգի, որը հանձնվեց՝ իր զենքը նետելով ու գերի ընկավ: Նա խոսում էր պարսկերեն և Սիմաքը կանչեց մեկին, որը հասկանում էր նրա լեզուն ու թարգմանեց: Պարզվեց որ նա ասում էր՝ ուզում եմ գնալ ձեր ամիրի մոտ, որ հաշտություն կնքեմ այս հողերի համար ու ջիզիա վճարեմ և ինձ գերելու համար (ազատվելու համար) վճարեմ ինչ կամենաք, քանի որ խնայեցիք ու չսպանեցիք ինձ: Ասաց՝ ինչ է անունդ: Ասաց՝ Դինար: Նա շտապեց նրա հետ Հուզայֆայի մոտ և սա հաշտություն կնքեց խաբաջ ու ջիզիա վճարելու պայմանով և երաշխավորեց քաղաքի բնակչության ունեցվածքը, պարիսպները, տները: Նեհավենդը կոչվեց Մահ Դինար: Դրանից հետո Դինարը գալիս էր Սինաքի մոտ և նրան ընծաներ տալիս ու իր հավատարմությունը հայտնում:

## ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*էջ 321 - 326*

*Ինձ պատմել է ալ-Հուսայն իբն Ամր ալ-Արդաբիլին լսելով Վակիդ ալ-Արդաբիլիից, իսկ սա ծերունիներից (շեյխերից), թե ալ-Մուղիրա իբն Շուբան եկավ Քուֆա կառավարիչ նշանակված լինելով Օմար իբն ալ-Խաթթաբի կողմից և իր հետ էր բերել մի նամակ Հուդայֆա իբն ալ-Յամանին, որով նա նշանակվում էր Ատրպատականի կառավարիչ: Այդ նամակը նա ուղարկեց նրան Նեհավենդ կամ մոտիկ մի վայր: Հուդայֆան [ստանալով] գնաց Արդաբիլ, որը Ատրպատականի [գլխավոր] քաղաքն էր, նրանում էր նստում մարզպանը և նրա մոտ էր հավաքվում խարաջի հասույթը: Մարզպանն իր մոտ ռազմիկներ էր հավաքել Բագարվանի, Մայմազի, Նարիրի, Սարատի[222], Շիզի[223], Միանիջի և այլ վայրերի բնակիչներից, որոնք մի քանի օր մահմեդականների դեմ խիստ պայքար մղեցին, ապա մարզպանը Հուդայֆայի հետ հաշտություն կնքեց Ատրպատականի ամբողջ ժողովրդի կողմից, պարտավորվելով ութ հազար դիրհեմ՝ ութ քաշով վճարել, այն պայմանով, որ ոչ ոք չսպանվի, կամ չգերեվարվի, ոչ մի կրակատուն չքանդվի, չնեղեն Բաղասականի (Բալասաջան)[224], Սաբալանի և Սատրուդանի քրդերին, հատկապես Շիզի ժողովրդին չարգելել պարել իրենց տոնակատարությունների ժամանակ ու ցուցադրել այն, ինչ ցուցադրում էին նախկինում:*

*Ապա նա (Հուզայֆան) արշավեց Մուզան (Մուկան)[225], Գեզան (Ջիլան), հաղթեց նրանց ու հարկադրության պայմանով հաշտություն կնքեց:*

*Հետագայում Օմարը հեռացրեց Հուդայֆային և Ատրպատականի կառավարիչ նշանակեց Ուտբա իբն Ֆարկադ ալ-Սուլամիին: Սա եկավ Մոսուլից, ուրիշներ ասում են, թե եկավ Շահրզուրից, այն հովտով, որն այժմ կոչվում է Մուավիա ալ-Աուդի: Երբ մտավ Արդաբիլ, տեսավ որ ժողովուրդը պահում է դաշինքը, սակայն այլ գավառներ ապստամբել էին և նա արշավեց, հաղթեց ու ավարի տվեց: Նրա հետ էր Ամր իբն Ուտբա ալ-Ջահիդը:*

*Վակիդին իր խնադի[226] մեջ ասում է, որ Մուղիրա իբն Շուբան Քուֆայից Ատրպատական արշավեց քսաներկու (30 նոյեմբեր 642 — 18 նոյեմբեր 643) թվականին: Նա հասավ ու սրով նվաճեց, խարաջ նշանակելով: Պատմում է Իբն ալ-Քալբին, լսելով Աբու Միխնաֆից, թե Մուղիրան արշավեց Ատրպատական քսան (21 դեկտեմբեր 640 — 9 դեկտեմբեր 641) թվականին և նվաճեց, ապա բնակիչներն ապստամբեցին ու նրանց վրա հարձակվեց ալ-Աշաս իբն Կայս ալ-*

*Քինդին: Նա գրավեց Բագարվան ընրդը և հաշտություն կնքեց Մուղիրայի կնքած պայմաններով: Աշաասի կնքած պայմանագիրը մինչև օրս էլ մնում է:*

*Աբու Միխնաֆ Լութ իբն Յահիան պատմում էր, որ Օմարը կառավարիչ էր նշանակել Սաադին, ապա Ամմարին և հետո՝ Մուղիրային, ապա նորեն՝ Սաադին: Իր մահվան տարում նա գրեց նրան ու նահանգների կառավարիչներին, դալ իր մոտ Մադինա: Այս առթիվ Սաադը ներկա եղավ խորհրդակցությանը (շուրա) և հաջորդ խալիֆայից խնդրեց, որ նորից իրեն նշանակի այս նահանգում: Ուրիշներ ասում են, թե Օմարը մեռավ, երբ Մուղիրան կառավարիչ էր Քուֆայում և կտակեց, որ Սաադը լինի Քուֆայի կառավարիչ, իսկ Մուղիրան՝ Բասրայի: Օսմանը նրանց նշանակեց այդ պաշտոններին, սակայն հետո հեռացրեց:*

*Ինձ պատմել է Մադաինին, լսելով Ալի իբն Մուջահիդից, սա էլ՝ Մուհամմադ իբն Իսհակից, իսկ նա էլ՝ ալ-Զուհրիից, թե երբ Ալլահը բազմաստվածյան [պարսիկներին] փախուստի մատնեց Նեհավենդում, մարդիկ վերադարձան իրենց երկրները, իսկ Քուֆայի զորքը մնաց Հուդայֆայի մոտ և նա արշավեց Ատրպատական ու հաշտություն կնքեց՝ հարյուր հազար [վճարելու պայմանով]:*

*Ինձ պատմել է ալ-Մադաինին, լսելով Ալի իբն Մուջահիդից, սա էլ չիլ Ասիմից, իսկ սա Աբու Օսման ալ-Նահդիից, թե Օմարը Ատրպատականից հեռացրեց Հուդայֆային և կառավարիչ նշանակեց Ուտբա իբն Ֆարկադ ալ-Սուլամիին: Սա մի օր [Օմարին] ուղարկեց քաղցրավենիք (խաբիս) բամբակե բարակ կտորեղենի (քարաբիս) մեջ փաթաթված: Երբ նա ստացավ, ասաց՝ սա արծաթ դրամ է, ասացին՝ ոչ: Ասաց՝ իսկ ինչ բան է, ասացին՝ սա ընծա է, որ քեզ ուղարկել է Ուտբան: Երբ տեսավ, ասաց՝ վերադարձրեք նրան և անմիջապես դրեց՝ ով Ումմ Ուտբայի որդի, այն քաղցրավենիքը, որ դու ուտում ես, ոչ քո, ոչ էլ քո հոր վաստակն է: Ինքը Ուտբան պատմել է, որ երբ Ատրպատականից եկավ Օմարի մոտ, ապա նրա ձեռքում կար մի չոր մսի կտոր:*

*Ինձ պատմել է Մադաինին, լսելով Աբդալլահ իբն Կասիմից, սա էլ Ֆարուա իբն Լակիթից, թե երբ Օսման իբն Աֆֆանը դարձավ խալիֆա, Ատրպատականից հեռացնելով Ուտբային, կառավարիչ նշանակեց Վալիդ իբն Ուկբա իբն Աբու Մուայթին: Բնակիչներն ապստամբեցին և Վալիդը արշավեց նրանց դեմ քսանհինդ թվականին (28 հոկտեմբեր 645 – 16 հոկտեմբեր 646) իր առաջապահ զորքի հրամանատար ունենալով Աբդալլահ Շիբլ ալ-Ահմասին: Սա արշավեց Մուղանի[227], Բաբրի ու Թայլասանի վրա, կողոպտեց ու դերեվարեց: Ատրպատականի ժողովուրդը հաշտություն խնդրեց և նա պայմանագիր տվեց Հուդայֆայի հաշտության պայմաններով:*

Պատմել է Իբն ալ-Քալբին, թե Ալի իբն Աբու Թալիբը Ատրպատականի կառավարիչ էր նշանակել Սաիդ իբն Սարիա Խուզաիին, ապա Աշասս իբն Կայս ալ-Քինդիին:

Պատմել է Աբդալլահ իբն Մուսադ ալ-Արկարին, լսելով հորից, իսկ սա իր հերթին՝ Սաադ իբն ալ-Հաքամ իբն Ուտբայից, սա էլ՝ Զայդ իբն Վահբից, թե երբ Ալլահը փախուստի մատնեց բազմաստվածյան [պարսիկներին] Նեհավենդում, Հիջազի զորքը վերադարձավ իր Հիջազը, Բասրայի զորքը՝ իր Բասրան, իսկ Հուզայֆան մնաց Նեհավենդում Քուֆայի զորքի հետ միասին և արշավեց Ատրպատական ու նրանք հաշտություն կնքեցին ութ հազար դիրհեմ վճարելու պայմանով: Օմար իբն ալ-Խաթթաբը գրեց, թե դուք ապրում եք մի երկրում, ուր բնակիչներն իրենց ուտելիքի ու հագուստի հարցերում գործ են ունենում մեռելոտու հետ, ուստի կերեք միայն օրինավոր ձևով մորթված և հագնվեցեք միայն մաքուր դդեստներ, այսինքն մուշտակե զգեստներ:

Ըստ Աբբաս իբն ալ-Վալիդ ալ-Նարսիի, որը լսել է Աբդ ալ-Վահիդ իբն Զիյադից, իսկ սա՝ չիլ Ասիմից և դա՝ Աբու Օսման ալ-Նահդիից, թե Ուտբա իբն Ֆարկադի մոտ էի, երբ նվաճեց Ատրպատականը: Սա երկու զամբյուղ պատրաստել տվեց քաղցրավենիքով լի և ծածկելով կաշիով ու թաղիքով իր ծառայա Սուհայմի հետ ուղարկեց Օմարին: Երբ Սուհայմը հասավ Օմարի մոտ, սա ասաց նրան՝ ինչ ես բերել, ոսկի՞, թե արծա՞թ: Հրամայեց բաց անել և քաղցրավենիքի համը տեսնելով ասաց՝ սա լավ բան է, արդյոք բոլոր «գաղթողները» (մուհաջիրուն) սրանից կուշտ կերել են: Ասաց՝ ոչ, սա հատուկ քեզ համար է. նա գրեց նրան՝ «Հավատացյալ իշխան Աբդալլահ (Աստուծո ծառա) Օմարից Ուտբա իբն Ֆարկադին, այս քաղցրավենիքը ոչ քո, ոչ քո մոր, ոչ էլ քո հոր ջանքերով է պատրաստված: Մենք ուտում ենք միայն այն, որից մահմեդականները լիուլի ունեն իրենց տներում»:

Ինձ պատմել է Հուսայն իբն Ամրը և Ահմադ իբն Մուսլիհ ալ-Ազդին, լսելով Ատրպատականի ծերունիներից, թե Վալիդ իբն Ուկբան եկավ Ատրպատական իր հետ բերելով ալ-Աշաաս իբն Կայսին: Երբ Վալիդը հեռացավ, նրան դարձրեց Ատրպատականի կառավարիչ, սակայն երկիրն ապստամբեց և նա գրեց [Վալիդին] օգնական ուժեր խնդրելով և սա Քուֆայի մարդկանցից մեծ զորք ուղարկեց: Աշաասն առաջ խաղաց անցնելով մեկ պարտեզից (հան) մյուսը (Ատրպատականի ժողովրդի լեզվով հան նշանակում է պարտեզ) և գրավեց երկիրը հաշտություն կնքելով Հուզայֆայի և Ուտբա իբն Ֆարկադի պայմաններով: Նա երկիրը բնակեցրեց արաբներով, որոնք ստանում էին պետական նպաստ և դիվանի օժանդակություն. հրամայելով նրանց իսլամը տարածել (քարոզել) մարդկանց մեջ:

Ապա կառավարիչ դարձավ Սաիդ իբն ալ-Ասին, որն արշավեց

Ատրպատականի ժողովրդի դեմ և Հաղթեց Մուղանի ու Դեղանի (Ջիլան) ժողովրդին: Ուրմի ու Բալուանքաշի կողմերում նրա դեմ բազմություն հավաքվեց հայերից ու Ատրպատականի բնակիչներից և նա ուղարկելով Ջարիր իբն Արդալլահ ալ-Բաջալիին, նրանց փախուստի մատնեց, բռնեց նրանց պետին ու խաչեց Բագարվանի ամրոցի վրա: Շամմախ իբն Դարար ալ-Ասադարին այս արշավանքի ժամանակ Սաիդ իբն ալ-Ասի հետ էր: Նրանց հետ էր նաև Բուքայր իբն Շադդադ իբն Ամիրը՝ Աթլալի հերոսը (հեծյալը), որի մասին Շամմախն ասել է.

Ես երդ եմ լսել Մուղանի ձիավորների մասին

Որոնք հնազանդվեցին Շադդախ ցեղից Բուքայրին՝ Աթլալի հեծյալին

Ինքը պատկանում էր Քինանա ցեղին և նա է, որ Օմարի խալիֆայության ժամանակ լսել էր մի հրեայի, որը երգում էր.

Աի խոյամի պատճառով ինձ ուշադրություն չդարձրեց

Որ ամբողջ գիշերը նրա կնոջ հետ անցկացրի:

Ուստի նա սպանեց նրան:

Ապա Ալի իբն Աբու Թալիբը Աշասին նշանակեց Ատրպատականի կառավարիչ: Երբ սա եկավ, տեսավ որ բնակչության մեծ մասը մահմեդականացել է և կարդում է Ղուրան: Նա Արդաբիլում տեղավորեց արաբների, որոնք պետական նպաստ և Դիվանի օժանդակություն էին ստանում [Արդաբիլ], կենտրոնական քաղաքի վերածեց և կառուցեց նրա մզկիթը, որը սակայն հետագայում ընդարձակվեց:

Պատմել է Հուսայն իբն Ամրը, լսելով Վակիդիից, թե երբ արաբները տեղավորվեցին Ատրպատականում, ապա երկու մեծ քաղաքներից (միսրայն՝ Քուֆա և Բասրա) և Ասորիքից նրանց ցեղերն այնտեղ դիմեցին և ամեն մեկը խլեց ինչ որ կարող էր: Նրանցից ոմանք պարսիկներից հողեր գնեցին և նրանց հանձնարարեցին դրանց պահպանությունը: Այսպիսով բնակիչները դարձան նրանց հաշվին աշխատող մշակներ (մուզարի):

Պատմել է Հուսայնը, որ Վարդանակերտը[228] նույնպիսի կամարակապ կամուրջ էր (կանթարա), ինչպիսիք են Վահշի ու Արշակի կամուրջները, որոնք հայտնի դարձան Բաբեկի ապստամբության[229] ժամանակ: Դրանք կառուցեց Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամը, հողերը ծաղկեցրեց ու ամրացրեց և այն դարձավ նրա անձնական կալվածքը (դայաա, դաստակերտ): Ավելի ուշ այն բռնագրավվեց Օմայյանների բոլոր մյուս կալվածքների հետ միասին և տրվեց հավատացյալաց իշխան Մանսուրի որդու՝ Ջաաֆարի դստերը՝ Ումմ Ջաաֆար Զուբայդային: Սակայն վերջինիս վերակացուները (վաքիլ) քանդեցին պարիսպը, ապա չուտով վերակառուցվեց ու նորոգվեց: Իսկ ալ-Վարսանին նրա մաուլաններից էր:

Բարղանդը[230] մի գյուղ է, ուր բանակ դրեց Հավատացյալների իշխան Մուտասիմ Բիլլահի նշանակած Ատրպատականի, Հայաստանի ու Ջարալի կառավարիչ Հայդար իբն Քաուսը, այն օրերին, երբ կռվում էր Բաբակ ալ-Խուռամի անհավատի դեմ և ամրացրեց այն:

Մարաղան[231] կոչվում էր Ակրահուդ: Մուղանի ու Գիլանի արշավանքից վերադարձին՝ Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ Մարուան իբն Մուհամմադը նրա մերձակայքում բանակ էր դրել, իսկ այնտեղ շատ գոմաղբ կար և նրա ու հետևորդների ձիերը սկսեցին դրա մեջ թավալվել (տամառաղա): Եվ ահա սկսեցին ասել՝ գնացեք Մարաղա (թավալման) գյուղը, ապա մարդիկ ջնջեցին գյուղ բառը և ասացին միայն Մարաղա: Նրա բնակիչներն այն դրեցին Մարուանի պաշտպանության տակ և նա կառուցապատեց, նրա վերակացուները շատ բարյացակամ էին ժողովրդին, ուստի շատեր եկան ու շինացրին: Հետագայում Օմայյանների մյուս կալվածքների հետ սա էլ բռնագրավվեց ու տրվեց Հավատացյալների իշխան Ռաշիդի դստրերից մեկին:

Երբ սկսեց Վաջնա ալ-Ազդիի և Ազդի մաուլա Սադակա իբն Ալիի ապստամբությունը, որն ապականեց երկիրը, ապա Ռաշիդի խալիֆայության օրոք Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ նշանակվեց Խուզայմա իբն Խազիմ իբն Խուզայման, որը կառուցեց նրա պարիսպը, ամրացրեց, մեծ քաղաք դարձրեց ու բաղում զորք բերեց տեղավորեց: Սակայն երբ հայտնվեց Բաբաք ալ-Խուռամին, մարդիկ այնտեղ ապաստանեցին ու պաշտպանվեցին: Մամունի օրոք նրա պարիսպը նորոգեցին մի քանի կառավարիչներ, որոնցից էին Ահմադ իբն ալ-Ջունայդ իբն Ֆարդանիին և Ալի իբն Հիշամը: Ապա մարդիկ հաստատվեցին նրա արվարձանում և ամրոցում:

Ինչ վերաբերում է Մարանդին[232], ապա դա մի փոքրիկ գյուղ էր, ուր հաստատվեց Հալբաս Աբու ալ-Բախիսը, ապա որդին՝ Մուհամմադ իբն ալ-Բախիսը, որն այնտեղ բերդ կառուցեց: Նա Հավատացյալների իշխան Մուտավաքքիլ Ալալլահի խալիֆայության օրոք ապստամբեց և Հավատացյալների իշխանի մաուլա Բուղա Կրտսերը[233] նրա դեմ կռվեց, հաղթեց ու տարավ Սամառա: Ապա քանդեց Մարանդի պարիսպը և այն բերդը:

Ուրմիան[234] մի հին քաղաք է, գրադաշտականները (մաջուս) գտնում են, թե իրենց ուսուցիչը՝ Զրադաշտը (Զարադուշտ) այստեղից է ծագում: Սադակա իբն Ալի իբն Սադակա իբն Դինարը՝ Ազդ ցեղի մաուլան, կռվել է նրա բնակիչների դեմ և մտել ու նվաճել: Նա և իր եղբայրները բերդեր են կառուցել:

Իսկ Դավրեժը (Տաբրիզ)[235], ապա այնտեղ հաստատվել է Ռավվադ ալ-Ազդին, ապա Վաջնա իբն Ռավվադը և նա ու իր եղբայրներն այնտեղ շենքեր են կառուցել, պարսպով ամրացրել և մարդիկ եկել հաստատվել են:

Միանիջն ու Խալրասան համադանցիների բնակավայրեր էին: Աբդալլահ իբն Ջաաֆար ալ-Համադանին Միանիջում իր թաղամասն է կառուցել, իսկ սուլթանը (խալիֆան) այնտեղ մինբար[236] է հաստատել:

Բարզա գավառը պատկանում է Աուդ ցեղին, իսկ գլխավոր քաղաքը նրանցից մեկին է պատկանում, որը մարդկանց այնտեղ հրավիրեց և բերդ կառուցեց: Երկու հարյուր երեսուներկու (12 հունիս 853 – 1 հունիս 854) թվականին այս Աուդիի կամքին հակառակ այստեղ մինբար դրվեց:

Նարիզը[237] մի փոքրիկ գյուղ էր, ուներ մի հին քանդված բերդ, ուր հաստատվեց Մուռ իբն Ամր ալ-Մաուսիլի ալ-Թաին, վերակառուցեց այն և իր որդուն այնտեղ հաստատեց: Ապա նրանք բերդեր կառուցեցին ու քաղաքի վերածեցին, չինեցին Սուկ Ջաբարուանը ու մնացին: Սուլթանն (խալիֆան) այն դրեց նրանց տնօրինության տակ, այնպես որ նրանք ժառանգաբար կառավարում էին, Ատրպատականի կառավարիչներից անկախ:

Ինչ վերաբերում է Սարատին, ապա այնտեղ Քինդա ցեղից մարդիկ հաստատվեցին, որոնցից մեկն ինձ տեղեկացրեց, որ ինքը ալ-Աշաաս իբն Կայս ալ-Քինդիի հետ եղածներից մեկի որդիներից է:

## ՄՈՍՈՒԼԻ (ՄԱՈՒՍԻԼ) ՆՎԱՃՈՒՄԸ

էջ 327 - 328

Օմար իբն ալ-Խաթթաբ [խալիֆան] Ուտբա իբն Ֆարկադ ալ-Սուլամիին Մոսուլի կառավարիչ նշանակեց քսան (21 դեկտեմբեր 640 – 9 դեկտեմբեր 640) թվականին: Նինվեի (Նինաուա) ժողովուրդը կռվեց, իսկ նա բռնի ուժով գրավեց նրանց բերդը, որն արևելյանն է և անցավ Տիգրիսը: Մյուս բերդի ժողովուրդը պայմանագիր կնքեց, ըստ որի պետք է ջիզիա վճարեին, բայց ցանկացողը կարող էր հեռանալ, ինչպես ոմանք հեռացել էին: Մոսուլում կային վանքեր, որոնց բնակիչները (վանականները) ջիզիա վճարելու պայմանով պայմանագիր ստացան: Ապա [Ուտբան] գրավեց Մարջը[238], իր գյուղերով, Բահուդրայի հողը, Բաադրան, Հիբտունը, Հիյանան, Մաալլան, Դասիրը և քրդերի բոլոր բերդերը: Եկավ Բանաասա, որը Հաղդայից է և նվաճեց, ապա Մոսուլի հեծյալ կայազորի պետ Սալիհ իբն Իբադա ալ-Համադանին հարձակվեց Տելլ ալ-Շահարջայի և Սալակի (սա մի ցեղ է, որը հայտնի է Հաուին անվամբ) վրա և այս ամենը գրավեց ու կողոպտեց:

Մուաֆա իբն Թաուսը լսելով Մոսուլի ծերունիներից պատմել է, թե Ուրմիան Մոսուլի հետ է նվաճվել, այն գրավել է Ուտբա իբն

Ֆարկադը ու որոշ ժամանակ խարաջը Մոսուլին էր վճարում: Նույն ձևով նվաճվել են նաև Հուրը[239], Խոյը[240], Սալմաստը (Սալմաս)[241]: Ասել է Մուաֆան, թե լսել եմ, որ Ուտրան այն գրավել է Ատրպատականի կառավարիչ եղած ժամանակ, սակայն Ալլահն ավելի լավ գիտի:

Ինձ պատմել է Աբբաս իբն Հիշամ ալ-Քալբին, լսելով իր հորից, իսկ նա՝ պապից, թե առաջինը, որ Մոսուլի հատակագիծը հղացավ, բնակեցրեց արաբներով ու գլխավոր քաղաք դարձրեց՝ Հարսամա իբն Արֆաջա ալ-Բարիկին էր:

Պատմել է Աբու Մուսա ալ-Հարավին, լսելով Աբու-լ-Ֆադլ ալ-Անսարիից, իսկ սա՝ Աբու-լ-Մուհարիբ ալ-Դաբբիից, թե Օմար իբն ալ-Խաթթաբը Ուարային հանեց Մոսուլից և նշանակեց Հարսամա իբն Արֆաջա ալ-Բարիկիին: Նրանում կային բերդը, քրիստոնյաների եկեղեցիները, փոքրաթիվ տները եկեղեցիների մոտ և հրեաների թաղամասը: Նա գլխավոր քաղաք դարձրեց այն, արաբներին բնակեցրեց նրանց [հատկացված] բնակարաններում, հատակագիծ պատրաստեց և ապա մայր մզկիթ կառուցեց:

Ըստ Մուաֆա իբն Թաուսի, Մոսուլի քարե սալահատակը սարքել է Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամի պահակազորի պետ Իբն Ցալիդը, իսկ Մուհամմադը Մոսուլի, Ջազիրայի, Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչն էր: Ասել է Վակիդին, թե Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը իր որդուն՝ Սաիդ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանին, որի անունով կոչվում էր Նահր (գետ) Սաիդը, նշանակեց Մոսուլի կառավարիչ, իսկ իր եղբորը՝ Մուհամմադին՝ Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ: Սաիդը կառուցեց Մոսուլի պարիսպը և դա էր, որ Ռաշիդը քանդեց այնտեղից անցնելու ժամանակ, երբ բնակիչներն ապստամբել էին: Սաիդը քարե սալահատակ սարքեց:

Բաղդադիչի բնակիչներից ոմանք պատմել են, թե մահմեդականները առիթ էին փնտրում հանկարծակիի բերելու Դամիրից այն կողմ Ջարան կոչված տեղի բնակիչներին: Ուստի եկան նրանց տոնի օրը, երբ նրանք առանց զենքի էին և դիրք բռնելով նրանց ու բերդի միջև, հնարամտությամբ գրավեցին բերդը: Երբ Հարսաման սահմաններով բաժանում կատարեց Մոսուլում ու բնակեցրեց արաբներին, եկավ Հադիսա[242], որն այդ ժամանակ մի հին գյուղ էր և որտեղ երկու եկեղեցի ու քրիստոնյաների տներ կային, քաղաքի վերածեց և արաբների բնակեցրեց: Սա կոչվեց Հադիսա, որովհետև Մոսուլից հետո է կառուցվել: Այդ կողմերում մի բերդ կառուցեց: Ասվում է, որ Հարսաման նախ Հադիսայում հաստատվեց, քաղաքի վերածեց և սահմաններով բաժանում կատարեց և ապա Մոսուլ տեղափոխվեց, երբ նրանց կառավարիչը՝ Իբն ալ-Նուփայլը, Հաջջաջ իբն Յուսուֆի օրոք անիրավություն էր գործել: Դրանց մեջ կային Անբարի Հադիսայից մարդիկ, որոնք մզկիթ կառուցեցին և քաղաքը կոչեցին Հադիսա:

Ուտրա իբն Ֆարկադը նվաճեց Թիրհանը, Տաքրիտը և Տաքրիտի բերդի բնակիչներին նրաշխավորագիր տվեց իրենց անձերի և ունեցվածքի համար, ապա մտավ Բաջարմա[243] գավառը և գնաց Շահրզուր:

Տաքրիտի բնակիչներից մի ծերունի (շեյխ) ինձ պատմել է, թե նրանք նրաշխավորագիր ունեին, որը խախտեց ալ-Ջուրաշին, երբ ավերեց Մոսուլի գյուղերը՝ Նաքսաքադը, Հաալան և նրանց շրջակայքը: Հայսամ իբն Ադին գտնում է, որ երբ Իյադ իբն Ղանմը գրավեց Բալադը, եկավ Մոսուլ ու գրավեց երկու բերդերից մեկը, սակայն Ալլահն ավելի լավ գիտի:

## ԽԱՐԱՋԱՅԻՆ ՀՈՂԵՐԻ ՕՐԵՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

էջ 433 – 435

Ասել է Բիշր իբն Ղիյասը, վերցնելով Աբու Յուսուֆից, թե հողը երբ բռնի ուժով է նվաճված՝ ինչպես Սավադը, Ասորիքը և այլն, ապա եթե իմամը (խալիֆա) այն նվաճողների միջև բաժանի, տասանորդային երկիր կդառնա և նրա բնակիչները կլինեն ստրուկներ (ռակիկ), իսկ եթե իմամը չբաժանի և հանձնի ընդհանրապես մահմեդական [համայնքին], ինչպես արել է Օմարը Սավադում, ապա նրա բնակիչների վզին է գլխահարկը (ջիզիա), իսկ հողից վերցվում է [հողահարկը] և բնակիչները ստրուկներ չեն: Սա Աբու Հանիֆայի[244] կարծիքն է:

Նույնը պատմել է Վակիդին վերցնելով Սուֆիան ալ-Սաուրիից: Վակիդին ասել է, թե Մալիք իբն Անասն ու Իբն Աբու Ջիբն ասել են՝ եթե բռնի ուժով նվաճված երկրի անհավատը մահմեդականանա, ապա հողը կմնա նրա ձեռքում, կմշակի ու կվճարի հողահարկը և այս պարագային տարբերություն չկա [նրա և մահմեդականի միջև]:

Ասել են Մալիքը, Իբն Աբու Ջիբը, Սուֆիան ալ-Սաուրին և Իբն Աբու Լայլան, որ բռնի ուժով նվաճված երկրում եթե մարդը մահմեդականանա, պետք է հողից հողահարկ վճարի և բերքից՝ զաքատ: Սա Աուզաիի կարծիքն է: Սակայն Աբու Հանիֆան և նրա [դպրոցի] հետևորդները ասել են, թե միևնույն մարդը չպետք է հողահարկ ու զաքատ վճարի միաժամանակ:

Ասել են Մալիքը, Իբն Աբու Ջիբը, Սուֆիանն ու Աբու Հանիֆան՝ եթե մարդն իր խարաջային հողը տարեկան մի քանի անգամ մշակի, ապա նրանից միայն մեկ հողահարկ պետք է գանձվի: Սակայն Իբն Լայլան ասել է, թե հողահարկը պետք է գանձվի ամեն մի բերքի դիմաց: Սա նաև Իբն Աբու Սաբրայի ու Աբու Շիմրի կարծիքն է: Ասել են Աբու-լ-Զինադը, Մալիքը, Աբու Հանիֆան, Սուֆիանը, Յակուբը, Իբն Աբու Լայլան, Իբն Աբու Սաբրան, Զաֆրը, Մուհամմադ իբն ալ-

Հասանը և Բիշր իբն Ղիյասը՝ եթե մեկն իր հողը չմշակի, նրան կասվի՝ մշակիր ու հողահարկ վճարիր, ապա թե ոչ, ուրիշին հանձնիր, որ մշակի:

Իսկ տասանորդային հողը, ապա նրանից այս բանը չի կարելի պահանջել: Եթե ցանեց, նրանից կվերցնես սաղական, իսկ եթե չցանեց, դա նրա կործն է: Ասել են նաև՝ եթե մեկը իր հողը երկու տարի անմշակ թողնի՝ հետո շենացնի (մշակի), ապա պարտավոր է վճարել միայն մեկ տարվա հողահարկ: Իսկ Իբն Շիմրն ասում է՝ երկու տարվա համար հողահարկ պետք է վճարի:

Ասել են Աբու Հանիֆան, Աուֆիանը, Մալիքը, Իբն Աբու Զիբը և Աբու Ամր ալ-Աուզաին՝ եթե բերքին հիվանդություն պատահի (միջատը փչացնի) կամ հեղեղը փչացնի, հողահարկ չի պահանջվի, իսկ եթե այդպիսի խարաջային հողը պատկանում է ստրուկի (արդ), դպրոցի, կամ կնոջ, ապա Աբու Հանիֆան գտնում է, որ միայն խարաջ պետք է վճարվի, իսկ Աուֆիանը, Իբն Աբու Զիբը ու Մալիքն ասել են, թե պետք է վճարեն հողահարկ և բերքի մնացորդից՝ տասանորդ:

Աբու Հանիֆան և Սաուրին ասել են՝ եթե խարաջային հողի վրա մահմեդականը, կամ զիմմին խանութներ (հավանոց) կառուցեն, կամ այլ բաներ, ապա ոչինչ պետք չէ գանձել, իսկ եթե պարտեզ (բուստան) դարձվի, ապա հողահարկը պարտադիր է: Մալիքն ու Աբու Զիբն ասել են, թե գտնում են, որ [առաջին դեպքում] էլ պետք է հողահարկ վճարի, քանզի շենքից օգտվելը նույնն է, ինչ որ մշակելուց օգտվելը: Ինչ վերաբերում է տասանորդային հողին, ապա Ալլահը գիտի, թե ինչ է դրանից վերցվում:

Ասել է Աբու Յուսուֆը՝ եթե մահմեդականը բռնի նվաճված երկրում մնած (խոպան) հողը մշակելի դարձնի, ապա դա նրանն է և խարաջային հող կհամարվի, եթե խարաջային [հողերի] ջրից օգտվի, սակայն եթե աղբյուր գտնի (ջրհոր փորի), կամ անձրևի ջրով ոռոգի, ապա տասանորդային հող կհամարվի: Ասել է Բիշրը՝ բոլոր դեպքերում դա տասանորդային հող է, թեկուզ խարաջային [հողի] ջրից օգտվի կամ այլ ջրից:

Ասել են Աբու Հանիֆան, Սաուրին ու նրանց դպրոցի հետևորդները, ինչպես նաև Մալիքը, Իբն Աբու Զիբը և Լայս իբն Սաադը, թե ոչ մի հողահարկ չի պահանջվի այնպիսի խարաջային համարված հողից, որը ոչ ոքի չի պատկանել և այնտեղ հաստատվել են մահմեդականներ ու դարձրել վաճառքի վայր ու շուկա:

Ասել է Աբու Յուսուֆը՝ եթե երկրի [որևէ մասում] կա հին օտար տոմար, որը մահմեդականության օրոք չի փոխվել և չի արգելվել, ապա եթե ժողովուրդը բողոքի խմամին (խալիֆային), թե իրենն վնաս է հասնում դրանից (փոխելուց), նա իրավունք չունի փոխելու: Սակայն Մալիքը, Շաֆիին ասել են՝ կարող է փոխել թեկուզ և

հնացած լինի, քանզի նա իրավասու է փոխելու որևէ սովորություն (սուննա, օրենք), որ դրել են մահմեդականները. նույն ձևով էլ կարող է փոխել անհավատների սահմանած սովորությունը:

## ԿՆԻՔԻ ՄԱՍԻՆ

*էջ 447 – 451*

Պատմել է Աֆֆան իբն Մուսլիմը, վկայակոչելով Շուբայից, իսկ նա՝ Կատադայից և սա՝ Անաս իբն Մալիքից, թե երբ Առաքյալը կամեցավ գրել հռոմեների թագավորին, ասացին նրան, որ [հռոմեները] չեն կարդում նամակը, եթե կնքված չէ: Ասաց՝ վերցրեք մի արծաթե մատանի, և կարծես տեսնում եմ նրա սպիտակությունը նրա ձեռքում, և վրան փորագրեց «Մուհամմադ՝ Ալլահի առաքյալ»:

Պատմել է Աբու-լ-Ռաբի Սուլայման իբն Դաուդ ալ-Զուհրանին, վկայակոչելով Համմադ իբն Զայդից, իսկ սա՝ Այյուբից և Նաֆիից, իսկ վերջինս՝ Իբն Օմարից, թե Առաքյալը իր համար պատրաստել էր տվել մի արծաթե մատանի և նրա կնիքը պահել իր ձեռքի մեջ:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Հայյան ալ-Հայյանին, վկայակոչելով Զուհայրից, իսկ սա՝ Հումայդից և նա՝ Անաս իբն Մալիքից, թե Առաքյալի մատանին ամբողջովին արծաթ էր, իսկ կնիքը՝ նույնպես արծաթ: Պատմել է Եզիդ իբն Հարունը, վկայակոչելով Հումայդից, իսկ սա՝ Հասանից, թե Առաքյալի մատանին արծաթից էր, իսկ կնիքը՝ եթովպական ակնաքար էր:

Պատմել է Հուդբա իբն Խալիդը, վկայակոչելով Համմամ իբն Յահիայից, իսկ սա՝ Աբդ ալ-Ազիզ իբն Սուհայբից, և նա՝ Անաս իբն Մալիքից, թե Մարգարեն ասել է՝ պատրաստել եմ մի մատանի և թող ոչ ոք չփորձի ընդօրինակել փորագրվածը: Պատմել է նաև Բաքր իբն ալ-Հայսամը, վկայակոչելով Աբդ ալ-Ռազզակից, իսկ սա՝ Մամարից և նա՝ ալ-Զուհրիից, իսկ վերջինս՝ Կատադայից, թե՝ Առաքյալը պատրաստել էր տվել մի արծաթե մատանի և վրան փորագրել տվել «Մուհամմադ Ալլահի առաքյալ»: Դրանով կնքում էին Աբու Բաքրը, ապա Օմարը և Օսմանը: Երբ վերջինիս ձեռքում էր, ընկավ ջրհորի մեջ. Ջրհորը դատարկվեց, բայց հնարավոր չեղավ գտնել [մատանին]: Դա տեղի ունեցավ նրա խալիֆայության շրջանի կեսերին: Նա պատրաստել տվեց մի ուրիշ մատանի ու փորագրել տվեց «Մուհամմադ՝ Ալլահի առաքյալ» երեք տողի վրա: Կատադան ավելացնում է՝ և մի ծակ:

Պատմել է Հանազը, վկայակոչելով Ասուադ իբն Շայբանից, իսկ սա՝ Խալիդ իբն Սումայրից, թե մի մարդ Մաան իբն Զաիդա անունով կեղծել է խալիֆայության կնիքը և Քուֆայի հարկերից մեծ գումարներ է յուրացրել Օմար [խալիֆայի] օրոք: Օմարը իմանալով

գրել է Մուղիրա իբն Շուբային, թե լսել եմ, որ Մաան իբն Զաիդա կոչված մի մարդ կեղծել է խալիֆայության կնիքը և Քուֆայի հարկերից մեծ գումարներ է յուրացրել. երբ նամակս ստանաս, արա ինչ հրամայված է և հնազանդվիր իմ դեսպանին (սուրհանդակ): Երբ Մուղիրան երեկոյան աղոթքը կատարեց և մարդիկ հավաքվել էին, զուրս եկավ Օմարի դեսպանի հետ: Մարդիկ ուշադիր նայում էին նրան, իսկ նա ձերբակալեց Մաանին: Ապա նա ասաց դեսպանին՝ հավատացյալների իշխանը հրամայել է ինձ գործել ըստ քո վճռի, ուստի հրամայիր ինչ կամենում ես: Ասաց դեսպանը՝ տուր ինձ մի շղթա, որ նրա վզից կախեմ: Բերել տվեց մի շղթա և նրա վզից կախեց և ուժեղ սեղմեց: Ապա ասաց Մուղիրային՝ բանտարկիր նրան (Մաանին), մինչև որ հավատացյալների իշխանից հրաման ստանաս նրա մասին: Այդպես էլ արվեց: [.........]

Պատմել են Մուփադդալ ալ-Յաշքարին ու Աբու-լ-Հասան ալ-Մադաինին, վերցնելով Ջաբանից, իսկ սա՝ Իբն ալ-Մուկաֆֆայից, թե Պարսից թագավորները, երբ որևէ հրաման էին տալիս, ստորագրող քարտուղարը (սահիբ ալ-տաուկի) նրա (թագավորի) ներկայությունը իր ստորագրությամբ հաստատում էր: Քարտուղարն ունենում էր մի ծառա, որը հաշվեմատյանում ամեն ամսվա համար ընդօրինակում էր [հրամանները]: Թագավորն իր կնիքով կնքում էր և դա պահվում էր:

Ապա ստորագրված հրամանի [բնագիրը] ուղարկվում էր գանձապետին (սահիբ ալ-դիմամ, քննիչ), որի պարտականությունն էր կնքել [փաստաթղթերը], հետո ուղարկվում էր գործերի վերակացուին (սահիբ ալ-ամալ): Վերջինս մակագրում էր, թե «թագավորի կողմից է»: Սա ընդօրինակվում էր բնագրին հարազատ և ուղարկվում դանձապետին, որը ցույց էր տալիս թագավորին, իսկ նա համեմատում էր հաշվեմատյանում նախապես ընդօրինակված բովանդակության հետ: Վերջապես գանձապետը կնքում էր [հրամանը] թագավորի, կամ նրա վստահելի մտերիմներից մեկի ներկայությամբ:

Ինձ պատմել է Մադաինին, վերցնելով Մասլամա իբն Մուհարիբից, թե Զիյադ իբն Աբու Սուֆիանն առաջինն էր արաբների մեջ, որը պահում էր կանոնավոր հաշվեմատյան (դիվան դիմամ) և կնիք (խատիմ), ըստ պարսիկների սովորության:

Պատմել է Մուփադդալ իբն ալ-Յաշքարին, վերցնելով Իբն Ջաբանից, իսկ սա Իբն ալ-Մուկաֆֆայից, թե պարսից թագավորներից մեկը ուներ գաղտնի կնիք, առաքումների (նամակների) կնիք և մի կնիք՝ կալվածների համար, որով կնքում էր հաշիվների արձանագրությունները (սիջիլլատ), հողային պարգևումների (իկթա) հրովարտակները և նման պաշտոնական փաստաթղթեր: Երբեմն թագավորի որևէ մտերիմի թույլատրվում էր ունենալ գաղտնի կնիք և առաքումների կնիք:

Ինձ պատմել է Աբու-լ-Հասան ալ-Մադաինին, վերցնելով Ջաբա-նից, իսկ սա Իբն ալ-Մուկաֆֆայից, թե դրամական հարկերի հաշվետվությունները սովորաբար կարդացվում էին թագավորներին և դրանք այն ժամանակ գրվում էին մագաղաթե սպիտակ թերթերի վրա: Հարկային դիվանի պետը (սահիբ ալ-խարաջ) ամեն տարի, երբ գալիս էր թագավորի մոտ, կից թղթեր էր կպցնում, որոնց վրա արձանագրում էր հարկերի գումարը, որ հավաքել էր և տարբեր նպատակների համար ծախսված գումարները, և թե ինչպիսին էր հաշվեկշիռը պետական գանձարանում (բայտ ալ-մալ): Թագավորը կնքում և հաստատում էր: Երբ Որմզդի որդի Խոսրովն իշխանության գլուխ անցավ, զզվեց այդ մագաղաթե թերթերի (սուհուֆ) հոտի համար և հրամայեց, որ հարկային դիվանի պետը իր զեկուցագրերը բերի ներկայացնի այնպիսի մագաղաթի վրա դրված, որը ներծծված լինի քրքումով (զաֆարան) և վարդաջրով և ընդհանրապես հարկերի մասին իր մոտ բերված թերթերը միշտ անուշահոտությամբ լինեն: Այս բանն արվեց:

Երբ [մահմեդական շրջանում] Սալիհ իբն Աբդ ալ-Ռահմանը՝ Իրաքի գլխավոր հարկահանը (հարկերի պետը) դարձավ, Իբն ալ-Մուկաֆֆան, որը նրա տեղակալն էր Տիգրիսի շրջանում (թեև ուրիշներն ասում են թե դա Բիհկուբադն էր), որոշ գումար բերեց իր հաշվետվությունը գրելով քրքումով ներծծված կաշու վրա, Սալիհը ծիծաղեց ու ասաց՝ չեմ ուզում, որ այսուհետև որևէ մեկը նման հաշվետվություն բերի: Այս բանն ասաց, քանի որ դիտեր պարսիկների սովորությունները:

Աբու-լ-Հասանն ասել է՝ որոշ գիտուն ծերունի (շեյխ) քարտուղարներ ինձ պատմել են, թե Ասորիքի արձանագրությունները, ինչպես նաև Օմայան թագավորներին տրված հարկերի հաշվետվությունները և այլ բաներ, սկզբում գրվում էին թղթերի (կարաթիս) վրա: Սակայն հավատացյալների իշխան Մանսուրը երբ իշխանության գլուխ անցավ, հրամայեց իր վեզիր Աբու Այյուբ ալ-Մուրիանիին դրամական հարկերի հաշիվները գրել մագաղաթե թերթերի վրա և դրանց վրա անուշահոտություն ցանել: Նրա հրամանը ըստ այնմ կատարվեց:

## ԴՐԱՄԻ ՄԱՍԻՆ

*էջ 451 - 456*

Ինձ պատմել է ալ-Հուսայն իբն ալ-Ասուադը, որը լսել է Յահիա իբն Ադամից, իսկ սա՝ ալ-Հասան իբն Սալիհից, թե պարսիկների թողարկած դիրհեմները տարբեր մեծությամբ էին: Նրանք դրամը կտրում էին մսխալով (միսկալ)[245], որը քսան կարատ (կիրաթ)[246] քաշ

ունի, լինում էր նաև տասներկու կարատով, ինչպես նաև տասը կարատով և այս բոլորը մսխալի տեսակներ են:

Երբ Աշխահր բերեց մահմեդականությունը և ղաքատ [հարկը] վճարելու համար կարիք զգացվեց միջինը գտնելու, վերցրեցին քսան կարատը, տասներկուսը և տասը ու գտան, որ գումարը քառասուն կարատ է, իսկ մեկ երրորդ քաշը վերցնելով ստացան տասնչորս կարատ: Այսպիսով արաբական դիրհեմի քաշը դարձավ տասնչորս կարատ, որը ոսկի դինարի կարատներից է: Ամեն տաս դիրհեմի քաշը յոթ մսխալ է, այսինքն՝ հարյուր քառասուն կարատ:

Հասան իբն Սալիհից բացի մի ուրիշն ասել է, թե պարսիկների դիրհեմներից մի մասի տաս հատի քաշը տաս մսխալ էր, մյուսի տաս հատի քաշը վեց մսխալ էր, իսկ երրորդի տաս հատի քաշը՝ հինգ մսխալ: Այս բոլորը գումարվեց ու ստացվեց քսանմեկ մսխալ, որի մեկ երրորդը ստացվեց յոթ մսխալ: Այսպիսով [խալիֆայության օրոք] կտրեցին այնպիսի դիրհեմներ, որոնց տասի քաշը յոթ մսխալ է: Վերոհիշյալ երկու տեղեկությունններն էլ նույն բանն են հաստատում:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Մուհամմադ իբն Օմար ալ-Ասլամիից, որը լսել է Օսման իբն Աբդալլահ իբն Մաուհաբից, իսկ սա իր հորից, իսկ վերջինս Աբդալլահ իբն Աասլաբա իբն Սուայրից, թե նախամահմեդական շրջանում Հերակլի դինարները օգտագործվում էին Մեքքայում, ինչպես օգտագործվում էին պարսկական Բաղլիյա դիրհեմները: Դրանցով առևտուր էին անում միայն որպես ձույլ ոսկի (քաշով, ոչ հաշվով): Մսխալը նրանց մոտ որոշակի քաշ ուներ, այսինքն քսաներկու կարատ էր, հանած ինչ որ կոտորակ: Տաս դիրհեմի քաշը յոթ մսխալ էր, մեկ լիտրը (ռաթլ)[247] տասներկու ունցիա (ուկիյա)[248] էր, իսկ ունցիան՝ քառասուն դիրհեմ: Մարգարեն այս բոլորը հաստատեց, ինչպես նաև Աբու Բաքրը, Օմարը, Օսմանը և Ալին: Մուավիան նույնպես հաստատեց այն:

Սակայն Մուսաբ իբն ալ-Զուբայրը Աբդալլահ իբն ալ-Զուբայրի օրոք կտրել տվեց ավելի փոքր դիրհեմներ, որոնք հետագայում ջարդվեցին: Երբ Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը իշխեց, հարցրեց և իմացավ դիրհեմների ու դինարների դրությունը: Նա գրեց Հաջջաջ իբն Յուսուֆին[249], որ դիրհեմներ թողարկի տասնհինգ կարատով (կիրաթ), դինարի կարատներով: Նա ինքը թողարկել տվեց Դամասկյան (դիմաշկիյա) դինարներ: Ասել է Օսմանը, լսելով իր հորից թե՝ եկա Մադինա, ուր Մարգարեի ընկերներից (սահաբա)[250] ու հետևորդներից կային, որոնք այս բանը չմերժեցին: Ասել է Մուհամմադ իբն Սաադը՝ մեր դիրհեմներից մեկի քաշը տասնչորս կարատ է, հաշվելով մեր մսխալի կարատներով, որը քսան կարատ է և սա հավասար է տասնհինգ կարատի, այն մսխալից, որը պարունակում է քսանմեկ և երեք յոթերորդ կարատ:

*Մուհամմադ իբն Սաադը, լսելով Մուհամմադ իբն Օմարից, որը լսել էր Իսհակ իբն Հազիմից, իսկ սա Մութթալիբ իբն ալ-Սաիբից և վերջինս՝ Աբու Ուիդաա ալ-Սահմիից, որն ասել է, թե ինձ ցույց են տվել մսխալի քաշը և ես կշռել ու դտել եմ, որ Աբդ ալ-Մալիք իբն Մարուանի մսխալի քաշն է: Ասել է, որ դա կատարվել է Աբու Վիդաա իբն Դուբայրա ալ-Սահմիի ներկայությամբ, նախամահմեդական շրջանում (ջահիլիյա)[271]:*

*Ասել է Մուհամմադ իբն Սաադը, թե պատմել է ալ-Վակիդին, լսելով Սաիդ իբն Մուսլիմ իբն Բարաքից, իսկ սա՝ Աբդ ալ-Ռահման իբն Սաբիթ ալ-Ջումահիից, թե Կուրայշ [ցեղը] նախամահմեդական շրջանում ուներ կշիռներ և երբ եկավ մահմեդականությունը, հաստատեց: Կուրայշը արծաթը կշռում էր մի քաշով, որը կոչվում էր դիրհեմ, իսկ ոսկին մի քաշով, որը կոչվում էր դինար: Դիրհեմների ամեն տասի կշիռը հավասար էր դինարների յոթի կշռին: Նրանք ունեին նաև գարու հատիկի քաշը, որը դիրհեմի մեկ վաթսուներորդն էր: Նրանց ունցիան (ուկիյա) քառասուն դիրհեմ էր կշռում, իսկ նաշշը՝ քսան դիրհեմ: Ունեին նաև արմավի կորիզը, որը հինգ դիրհեմ էր կշռում: Նրանք առևտուր էին անում այդ չափերով կշռված ձուլյ ոսկով (տիբր): Երբ Մարգարեն Մեքքա եկավ, այս բոլորը հաստատեց:*

*Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Վակիդիից, որը լսել էր Ռաբիայից, իսկ սա էլ Օսմանից և վերջինս Վահբ իբն Քայսանից, թե տեսել եմ պարզ դինարներն ու դիրհեմները նախքան Աբդ ալ-Մալիքի փորագրելը և դրանք ունեին նույն քաշը, որ ունեն Աբդ ալ-Մալիքի թողարկած դինարները:*

*Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Վակիդիից, որը լսել էր Օսման իբն Աբդալլահ իբն Մաուհաբից, իսկ վերջինս՝ իր հորից, թե հարցրել է Սաիդ իբն ալ-Մուսայիբին՝ ո՞վ է առաջինը թողարկել փորագրված դինարներ, պատասխանել է՝ Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը: Իսկ նախամահմեդական շրջանում դինարները ռումի (բյուզանդական)[262] էին և դիրհեմները խոսրովական (պարսկական)[263]:*

*Պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Սուֆիան իբն Ույայնայից, որը լսել էր իր հորից, որ առաջին անգամ յոթ [դինար] տաս դիրհեմի դիմաց քաշով թողարկողը ալ-Հարիս իբն Աբդալլահ իբն Ռաբիա ալ-Մախզումին էր, Իբն ալ-Զուբայրի օրոք:*

*Նույնը պատմել է լսելով Մուհամմադ իբն Օմարից, որը լսել էր Իբն Ջինադից, իսկ վերջինս՝ իր հորից, թե Աբդ ալ-Մալիքն առաջինն էր, որ թողարկեց ոսկեդրամներ խաղաղեցման (ջամաա) տարում, այսինքն յոթանասունչորս (693-694) թվականին: Պատմել է Աբու-լ-Հասան ալ-Մադաինին, թե Հաջջաջը դիրհեմներ թողարկեց յոթանասունհինգ (694-695) թվականի վերջերին, ապա հրամայեց այն թո-*

ղարկել բոլոր նահանգներում յոթանասունվեց (695-696) թվականին:
Ինձ պատմել է դրամահատության վերակացու (նակիդ) Դաուդը, թե լսել եմ մեր ծերունիներից (շեյխեր), որոնք պատմում էին, թե Հիրայի քրիստոնյա (իբադ) ցեղերը[254] հարյուր քաշի դիմաց վեց էին տալիս, այսինքն՝ վաթսուն մսխալ դիրհեմներով: Իսկ հարյուր քաշի դիմաց ութ էին տալիս, այսինքն՝ ութսուն մսխալ դիրհեմներով: Ինչպես նաև հարյուր քաշին՝ հինգ, այսինքն հիսուն մսխալ դիրհեմներով: Կար նաև հարյուր քաշին հարյուր մսխալ:
Դրամահատության վերակացու Դաուդը ասել է նաև, թե մի դիրհեմ եմ տեսել, որի վրա գրված էր «Այս դիրհեմը թողարկված է Քուֆայում յոթանասուններեք թվականին», սակայն դրամահատության վերակացուները միաձայն ասացին, որ կեղծված է: Տեսել եմ նաև մի հազվագյուտ դիրհեմ, որի նմանը չի եղել և վրան դրված էր «Ուբայդալլահ իբն Զիյադ», սա ես կեղծված (մերժված) էր:
Պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով ալ-Վակիդիից, որը լսել էր Յահիա իբն Նուման ալ-Ղիֆարիից, իսկ վերջինս՝ իր հորից, թե Մուսաբը դիրհեմներ էր թողարկել Աբդալլահ իբն ալ-Զուբայրի հրամանով յոթանասուն (689 - 690) թվականին խոսրովների (պարսիկների) թողարկածի ձևով, որի վրա կային «օրհնություն» և «Ալլահ» բառերը, իսկ երբ իշխանության գլուխ անցավ՝ փոխեց: Նա պատմել է լսելով Հիշամ իբն ալ-Քալբիից, թե Մուսաբը դիրհեմների հետ մեկտեղ թողարկել է նաև դինարներ:
Պատմել է դրամահատության վերակացու (նակիդ) Դաուդը, լսելով դրամահատության վերակացու Աբու-լ-Զուբայրից, թե Աբդ ալ-Մալիքը որոշ դինարներ է թողարկել յոթանասունչորս թվականին, ապա յոթանասունհինգ թվականին, իսկ Հաջջաջը թողարկել է Բաղլիյա դիրհեմներ, վրան դրելով «Հանուն Ալլահի, Հաջջաջ», իսկ մեկ տարի անց գրել է ավել «Մեկ է Ալլահը, հավիտյան է Ալլահը»: Այս բանի համար իրավագետները (ֆակիհ) մերժեցին այն և թողարկումը կոչվեց մերժված (մաքրուհա), իսկ պարսիկները մերժեցին թեթև կշիռ ունենալու պատճառով և կոչվեց մերժված: Դրանք սումայրի կոչվեցին առաջին անգամ այն թողարկողի՝ Սումայրի անունով:
Ինձ պատմել է Աբբաս իբն Հիշամ ալ-Քալբին, լսելով իր հորից, որը լսել էր Ավանա իբն ալ-Հաքամից, որ Հաջջաջը հարցրել է, թե պարսիկները ինչպես էին թողարկում դիրհեմները և իմանալով՝ ինքն էլ փողերանոց (դար դարբ) էր հիմնել և հավաքել դրամ կտրողների (թաբբա): Նա դրամ էր թողարկում տիրակալի (սուլթան) անունով, ձուլ ոսկի մետաղից, որը նրա համար հավաքվում էր և այն լավ մետաղից, որն ստացվում էր կեղծված և նմանեցված դրամներից: Նա վաճառականներին և այլոց թույլատրել էր իրենց համար թողարկել արծաթ դրամներ, իսկ մնացածը՝ որպես շահույթ պահում էր, վճա-

ընլու համար արհեստավորներին ու դրամ կտրողներին, իսկ կեղծ դրամ կտրողների ձեռքը խարանում էր: Երբ Եզիդ իբն Աբդ ալ-Մալիքի օրոք Իրաքի կառավարիչ դարձավ Օմար իբն Հուբայրան, արծաթը առավել մաքրության հասցրեց, քան իր նախորդների ժամանակ էր, դիրհեմների որակը բարձրացրեց և խիստ գտնվեց դրամափոխանակության հարցում: Իսկ երբ Խալիդ իբն Աբդալլահ ալ-Բաջալին, որը կոչվում էր Կասրի, Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքի օրոք կառավարիչ դարձավ, առավել խիստ գտնվեց արծաթ դրամի [մաքրության] հարցում, քան Իբն Հուբայրան էր, մինչև որ այդ գործը կարգավորեց ավելի լավ, քան իր նախորդները: Ապա կառավարիչ դարձավ Յուսուֆ իբն Օմարը, որը խիստ վերաբերվեց դրամ կտրողների ու լումայափոխների (սեղանավոր) նկատմամբ, ձեռքերը կտրելով ու մաշկը խարանելով:

Այսպիսով Հուբայրիյա, Խալիդիյա, Յուսուֆիյա կոչվածները Օմայյանների թողարկած ամենաընտիր դրամներն էին: Հետագայում Մանսուր խալիֆան Օմայյանների թողարկած դրամներից միայն այդ դրամներով էր ընդունում հարկը: Իսկ առաջին թողարկված դրամները կոչվել էին մերժվածներ (մաքրուհա):

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Վակիդիից, իսկ սա՝ Իբն Աբու Զինադից, որը լսել էր իր հորից, թե Աբդ ալ-Մալիք իբն Մարուանն առաջինն էր, որ ոսկե ու արծաթե դրամներ թողարկեց խաղաղեցման տարում: Ասել է Իբն Զինադը, թե հարցրեցի հորս՝ լսե՞լ ես, որ մարդիկ ասում են, թե Իբն Մասուդը հրամայել է ջարդել կեղծ դրամները: Պատասխանեց՝ այդ կեղծ դրամները, որ ջարդել են, պարսիկների կողմից էին կտրված ու նմանեցված:

Պատմել է Աբդ ալ-Ալա իբն Համմադ ալ-Տարսին, լսելով Համմադ իբն Սալամայից, որը լսել էր Դաուդ իբն Աբու Հինդից, իսկ սա ալ-Շաաբիից, որն իր հերթին՝ Ալկամա իբն Կայսից, թե Իբն Մասուդը մնացորդ ուներ պետական գանձարանում, որը ծախսել էր պակաս գնով: Օմար իբն ալ-Խաթթաբը արգելել էր նրան այդ բանն անելուց և նա դրանից հետո պարտքով էր տալիս:

Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Վակիդիից, իսկ սա՝ Կուդամա իբն Մուսայից, թե Օմարը և Օսմանը կեղծ դրամներ էին գտնում պետական գանձարանում, հալեցնում ու դարձնում էին ձույլ արծաթ:

Ինձ պատմել է Վալիդ իբն Սալիհը, վերցնելով Վակիդիից, իսկ սա՝ Իբն Աբու Զինադից և նա՝ իր հորից, թե Օմար իբն Աբդ ալ-Ազիզի մոտ բերվեց մի մարդ, որը դրամ էր կտրել ոչ տիրակալի (սուլթան) արձանագրությամբ: Նա տանջեց նրան, բանտարկեց ու վերցնելով նրան երկաթե (դրամի կաղապարը) կրակը նետեց:

Պատմել է Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից և սա՝

Քասիր իբն Զայդից, իսկ նա՝ ալ-Մութթալիր իբն Աբդալլահ իբն Հանթարից, թե Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը ձերբակալել էր մի մարդու, որը դրամ էր կտրում առանց պետական (մահմեդական) արձանագրության և ուղեց ձեռքը կտրել, ապա հրաժարվեց և միայն պատժեց տանջելով: Ասել է Մութթալիրը, թե Մադինայի ծերունիները հավանություն էին տվել այս արարքին ու գովել: Ասել է Վակիդին, թե մեր տերերը գտնում են, որ պետք է խստորեն պատժել ու խայտառակել նրանց, ովքեր խալիֆայության կնիքի փորագրությունը կեղծում են, թեև խորհուրդ չեն տալիս [մեղավորների] ձեռքը կտրել: Սա Աբու Հանիֆայի ու Սաուրիի կարծիքն է:

Ասել են Մալիքը և Իբն Աբու Զիբն ու նրանց հետևորդները, թե համաձայն չենք, որ [կեղծված] դիրհեմը եթե առողջ է, երկու կտոր արվի և արգելում ենք, քանի որ պարզապես սխալ է: Ալ-Աաուրին, Աբու Հանիֆան ու նրանց հետևորդները ասել են՝ կարելի է կտրել, եթե դա չի վնասում մահմեդականության ու նրա ժողովրդին:

Ինձ պատմել է դրամահատության վերակացու Ամրը, վերցնելով Իսմաիլ իբն Իբրահիմից և սա՝ Իբն Աունից, իսկ նա՝ Իբն Սիրինից, թե Մարուան իբն ալ-Հաքամը բռնել էր մի մարդու, որը դիրհեմներ էր կտրել և ձեռքը հատել էր տվել: Այս լուրը հասել էր Զայդ իբն Սաբիտին, որն ասել էր՝ արժանի պատիժն է տվել: Ասել է Իսմաիլը, թե այստեղ խոսքը պարսկական դիրհեմներին է վերաբերում:

Ասել է Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից, որն ասել է, թե Մադինայի կառավարիչ Աբբան իբն Օսմանը պատժել է դիրհեմ ջարդող կտրողներին երեսուն հարվածով և ցուցադրելով [քաղաքում]: Այդ պատիժը տրվում էր նրանց, որ ջարդում են դիրհեմը, ապա հալեցնում պակաս արժեք ունեցող մետաղի մեջ:

Պատմել է ինձ Մուհամմադը, վերցնելով Վակիդիից և սա Սալիհ իբն Ջաաֆարից, իսկ նա Իբն Քաաբից այն բանաստեղծական տողի մասին «միթե մեր սեփականի հետ չենք կարող վարվել այնպես, ինչպես կամենանք»: Ակնարկում է դրամները ջարդելուն:

Մեզ պատմել է Մուհամմադ իբն Խալիդ իբն Աբդալլահը, վերցնելով Եզիդ իբն Հարունից, իսկ սա՝ Յահիա իբն Սաիդից, թե Իբն Մուսայաբին պատմել են մի մարդու մասին, որ դիրհեմներ է ջարդել, իսկ Սաիդն ասել է՝ դա երկրի վրա ապականություն է:

Պատմել է դրամահատության վերակացու Ամրը, վերցնելով Իսմաիլ իբն Իբրահիմից և սա՝ Յունիս իբն Ուբայդից, իսկ նա՝ ալ-Հասանից, թե այլահավատ (անհավատ) մարդիկ գիտեին այս դիրհեմի արժեքը մարդկանց մոտ և լավացրին որակն ու մաքուր հալեցին, սակայն երբ ձեզ մոտ տարածվեց [մահմեդականությունը]՝ կեղծեցիք ու փչացրիք:

Օմար իբն ալ-Խաթթաբն ասել է մի անգամ, թե կուզենայի դիր-

Հեմներ սպատրաստել ուղտի կաշվից, սակայն մեկն ասել է, թե այդ պարագային չեն լինի ուղտի ձագեր և նա հրաժարվեց այդ մտքից:

## ԳՐԻ ՄԱՍԻՆ

*էջ 456 – 460*

*Ինձ պատմել է Աբբաս իբն Հիշամ իբն Մուհամմադ ալ-Սաիբ ալ-Քալբին, լսելով իր հորից, իսկ սա՝ իր պապից և նա՝ ալ-Շարկի իբն ալ-Կաթամիից, թե Թայյ ցեղից երեք հոգի հավաքվել են Մեքքայում՝ Մարտմիր իբն Մուսա Ասլամ իբն Սիդրա և Ամիր իբն Ջադարա և արաբական գիրն ստեղծեցին ու արաբերենի այբուբենը (հիջա) չափեցին ասորերենի այբուբենի հետ:*

*Նրանցից սովորեցին Անբարի բնակիչներից ոմանք, իսկ վերջիններից սովորեցին Հիրայի բնակիչները: Բիշր իբն Աբդ ալ-Մալիքը գալիս էր Հիրա ու մնում որոշ ժամանակ, իսկ ինքը քրիստոնյա էր: Բիշրը սովորեց արաբական գիրը Հիրայի բնակիչներից, ապա որոշ գործերով եկավ Մեքքա և տեսան Սուֆիան իբն Ումայյա իբն Աբդ Շամսը և Աբու Կայս իբն Աբդ Մանաֆ իբն Զուհրա իբն Քիլաբը, որ նա գրում է ու խնդրեցին, որ իրենց սովորեցնի գիրը և նա սովորեցրեց այբուբենը, ապա ցույց տվեց գրելու ձևը ու նրանք գրեցին: Ապա Բիշրը, Սուֆիանը և Աբու Կայսը գնացին Թաիֆ առևտրական գործերով ու նրանց հետ մտերմացավ Ղայլան իբն Սալամա ալ-Սակաֆին, որը նրանցից սովորեց գիրը: Բիշրը նրանցից բաժանվելով եկավ Դիար Մուդար և նրանից գիրը սովորեց Ամր իբն Զուբարա իբն Ուդասը, որը կոչվեց Ամր ալ-Քաթիբ (քարտուղար): Ապա Բիշրը եկավ Ասորիք և մարդիկ նրանից գիրը սովորեցին:*

*Ինձ պատմել են Վալիդ իբն Սալիհը և Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Մուհամմադ իբն Օմար ալ-Վակիդիից, իսկ սա՝ Խալիդ իբն Իլիասից և վերջինս՝ Աբու Բաքր իբն Աբդալլահ իբն Աբու Ջահմ ալ-Ադավիից, թե երբ մահմեդականությունը տարածվեց, Կուրայշ ցեղի մեջ տասնյոթ հոգի արդեն գրել գիտեին՝ Օմար իբն ալ-Խաթթաբը, Ալի իբն Աբու Թալիբը, Օսման իբն Աֆֆանը, Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը, Թալհան, Եզիդ իբն Աբու Սուֆիանը [...] Աբու Սուֆիան իբն Հարբ իբն Ումայյան, Մուավիա իբն Աբու Սուֆիանը [...]:*

*Ինձ պատմել են Վալիդը և Մուհամմադ իբն Սաադը, վերցնելով Վակիդիից, իսկ սա՝ իր ծերունիներից (շեյխերից), թե առաջինը, որ Առաքյալի համար գրագրություն է արել և նրանից առաջ գնացել էր Մադինա, Ուբայ իբն Քաաբ ալ-Անսարին էր, որը միաժամանակ առաջինն էր, որ գրքի վերջում գրում էր «գրել է այսինչը»: Երբ նա բացակայում էր, Առաքյալը կանչում էր Զայդ իբն Սաբիտ ալ-*

Անսարիին[255] և սա նրա համար գրում էր: Ուբայր և Զայդր ընդհանրապես գրանցում էին ի վերուստ (երկնքից) իջնցված (հայտնված) խոսքերը նրա ներկայությամբ, ինչպես նաև գրում էին նրա նամակները, բոլոր նշումները և այլն:

Երբ հաղթանակի տարում Մուավիան ընդունեց մահմեդականությունը, նա ևս աշխատեց որպես [Մուհամմադի] քարտուղար: [.........]

Ասել է Վակիդին, թե արաբերեն դրողները Աուս և Խազրաջ ցեղերի մեջ քիչ էին, իսկ հրեաներից ոմանք սովորել էին արաբերեն գրերը և Մադինայում մանուկները վաղ շրջանում (նախքան մահմեդականությունը) սովորել էին այն: Երբ ի հայտ եկավ մահմեդականությունը, Աուս ու Խազրաջ ցեղերի մեջ շատերը գրել գիտեին: Զայդ իբն Սաբիտը գրում էր թե՛ արաբական, թե՛ եբրայական գրերով:

Վակիդին ավելացնում է սրանց (քարտուղարների) շարքին նաև քամիլներին (կատարյալներին): Քամիլ էր կոչվում նա, ով բացի գրելուց գիտեր նաև նետաձգություն և լող, ինչպես Ռաֆի իբն Մալիքը [...], որոնք Յասրիբի (Մադինա) բնակիչներ էին և նախամահմեդական շրջանում ունեին այս երեք կարողությունները:

Ինձ պատմել է Իսհակ իբն Աբու Իսրաիլը, վերցնելով Աբդ ալ-Ռահման իբն Աբու-լ-Զինադից, իսկ սա՝ իր հորից և վերջինս՝ Խարիջա իբն Զայդից, թե իր հայրը՝ Զայդ իբն Սաբիտը ասել է՝ Առաքյալն ինձ հրամայել էր, որ իրեն [օգնելու] համար եբրայերեն (հրեական) գիրը սովորեմ: Նա ասում էր՝ չեմ վստահում հրեաներին, որ ինձ համար գրեն: Կես ամիս չանցավ, որ ես այն (եբրայական գիրը) սովորեցի և նրա կողմից գրում էի հրեաներին և երբ նրան էին գրում, կարդում էի նրա համար:

# ԲԱԼԱՁՈՒՐԻ

## ԵՐԿՐՆԵՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ (ՖՈՒՏՈՒՀ ԱԼ-ԲՈՒԼԴԱՆ)

### ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Աբու Բաքր – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 33:*

2 *Թաիֆ - Քաղաք է Արաբիայի Հիջազ երկրամասում, Մեքքայից հարավ-արևելք: Հայտնի էր դեռևս նախամահմեդական ժամանակներում: (al-Taif, M. Lecker EOI, CD-ROM, (X: 113b)):*

3 *Նաջդ - Նաջդը Արաբիա թերակղզու երկրամասերից մեկն է, որը գտնվում է Արաբիայի կենտրոնական մասում, մի բարձրավանդակ է, որը կտրված է ծովերից' շրջապատված Արաբիայի այլ երկրամասերով մի կողմից' Տիհամա և Հիջազ, մյուս կողմից' Եմեն և Յամամա: (Nadjd, A. Grohmann, EOI, CD-ROM, (VII: 864a)):*

4 *Հիջազ - Արաբական թերակղզու հյուսիս-արևմտյան մասը, որտեղ գտնվում են իսլամի սրբազան քաղաքները' Մեքքան ու Մադինան: Հիջազ բառին տարբեր իմաստներ են տրվում, բայց ընդունված իմաստը «պատնեշն» է: (al-Hidjaz, G. Rentz EOI, CD-ROM, (III: 362a)):*

5 *Մուդինա - Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 3:*

6 *Ամր իբն ալ-Աս իբն Վաիլ ալ-Սահմի - Ամր իբն ալ-Ասը Եգիպտոսը նվաճող զորավարն էր: Տե՛ս Վակիդի, ծնթգր. 16:*

7 *Պաղեստինի առաջին դավառը – Խոսքը հավանաբար Ղազզայի գավառի մասին է (Վ. Տ.-Գ.):*

8 *Խալիդ իբն ալ-Վալիդ իբն ալ-Մուղիրա ալ-Մախզումի - Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 32:*

9 *Ղազզա - Մի քաղաք է Պաղեստինի հարավում, որը հնագույն ժամանակներից եղել է գյուղատնտեսական ու առևտրական կենտրոն, ծովից 4 կմ հեռավորության վրա, գտնվելով Արաբիայից Պաղեստին և Պաղեստինից Սիրիա տանող ճանապարհի վրա: Փղշտացիների նախկին Ազզա քաղաքը, հելլենիստական շրջանում հունական ձևով կոչվեց Գազա, ապա անցավ հռոմեական տիրապետության տակ: Բյուզանդական շրջանում մաս կազմեց Palestina Prima նահանգին և քրիստոնեացվելով դարձավ եպիսկոպոսանիստ քաղաք: Այն արաբների կողմից նվաճվեց Ամր իբն ալ-Աս զորավարի կողմից 634 թվականին Աբու Բաքր խալիֆայի օրոք: (Ghazza, D. Sourdel, EOI, CD-ROM, (II: 1056a)):*

10 *Ակրա (Աքքա) - Հին Կտակարանում հիշվում է որպես Աքքո, հունական տարբերակով' Պտոլեմայիս, խաչակիրների Acre, քաղաք է Պաղեստինի ծովափին: Այս քաղաքը նշանակալից դեր է խաղացել թե՛ Խալիֆայության, թե՛ Եգիպտոսի Թուլունինների, թե՛ խաչակիրների օրոք, ընդհուպ մինչև 19-րդ դարի վճռորոշ իրադարձությունները այդ տարածաշրջանում: (Akka, F. Buhl, EOI, CD-ROM, (I: 341a)):*

11 *Տյուրոս (Սուր) - Լիբանանի հարավում գտնվող հնադարյան Տյուրոս քաղաքնավահանգիստը արաբներն անվանում են Սուր (Sur, M. Lavergne, EOI, CD-ROM, (IX: 883a)):*

12 *Մարջ – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 12:*

13 *Ղութա - Սիրիայում այսպիսի անուն է տրվում առատորեն ոռոգվող և ինտենսիվ կերպով մշակվող տարածքներին: Ինչպես օրինակ, Ջաբուլի ղութան, Նարաքի*

դութան, Յարրուղի դութան և այլն: Տվյալ դեպքում խոսքը Դամասկոսի դութայի մասին է, որն իրենից ներկայացնում է Բարադա գետի ջրերով ոռոգվող պտղատու այգիների մի գոտի, որը եղերում է Օմայանների մայրաքաղաքը: (Ghuta, N. Elisseeff, EOI, CD-ROM, (II: 1104b)):

[14] Ջարիր – Տե՛ս Արու Յուսուֆ, ծնթղր. 26:

[15] Մող – Տե՛ս Արու Յուսուֆ, ծնթղր. 29:

[16] Կիսթ – Ծավալի միավոր է, որը Իրաքում վկայված է երկու տարբերակով՝ փոքր կիսթը, որը համապատասխանում է երեք ռաթլ հեղուկին, այսինքն տեղավորում էր 1, 21875 լիտր, իսկ մեծ կիսթը ուղիղ երկու անգամ ավելին է, այսինքն 2, 4375 լիտր: Եգիպտոսում կիսթը հավասար էր 2, 106 լիտրի: (Хинц, Меры и веса, стр. 53).

[17] Արդաբ – կամ իրդաբբ. Ծավալի չափման եգիպտական միավոր: Միջնադարում մեկ իրդաբբը համապատասխանում էր մոտավորապես 69, 6 կգ ցորենի: (Хинц, Меры и веса стр. 47):

[18] Հիմս – Անտիկ Եմեսա քաղաքը, եվրոպական անվանումով Հոմս: Քաղաք Սիրիայում Որոնտես գետի արևելյան ափին: Այն գտնվում է Դամասկոս-Հալեպ ճանապարհի կեսին: (Hims, N. Elisseeff, EOI, CD-ROM, (III: 397a)):

[19] Բաալբեք – Քաղաք Լիբանանում՝ Բեկաայի հովտի եզրին: Քաղաքի անվանումը կապվում է սեմական Բաալ աստծո պաշտամունքի հետ: Հելլենիստական շրջանում նրան տրվել է Հելիոպոլիս անունը և այդ ժամանակներին են վերաբերում ներկայումս պահպանված տաճարների մնացորդները (Baalbakk, J. Sourdel-Thomine, EOI, CD-ROM, (I: 970b)):

[20] Ղասսան – Հարավարաբական ցեղերից մեկը, որը գաղթելով, ի վերջո, հաստատվեց Արևելահռոմեական կայսրության տարածքներում մոտավորապես 490 թ., ընդունելով քրիստոնեությունն ու հարկ վճարելով կայսրությանը: Ղասսան ցեղը համաձայնագիր ուներ բյուզանդացիների հետ և նրանց բանակին տրամադրում էր զորամիավորումներ պարսիկների դեմ պայքարում: Միաբնակ քրիստոնյաներ լինելով նրանք չէին կորցրել իրենց արաբական դիմագիծը: Ղասսանիները մեծ ներդրում ունեցան Սիրիայի քաղաքային կյանքի զարգացման մեջ 6-րդ դարում: Ղասսանիների հավատարմությունը միաբնակությանը երբեմն սրում էր նրանց հարաբերությունները Բյուզանդական կայսրերի հետ, մյուս կողմից նրանք հարվածներ էին ստանում Սասանյաններից: Բայց նրանք, վերագտնելով իրենց դիրքերը, կրկին ծառայության մտան Հերակլ կայսեր բանակում՝ 636 թվականի վճռորոշ ճակատամարտում հանդես գալով բյուզանդացիների կողմից: Արաբական նվաճումը ստիպեց Ղասսանիներին կամ գաղթել դեպի Բյուզանդիայի փոքրասիական նահանգները, կամ ընդունել իսլամը և ձուլվել արաբ մահմեդական համայնքի մեջ, մի փոքր մասն էլ մնաց քրիստոնյա՝ շարունակելով բնակվել Սիրիայում: (Ghassan, Irfan Shahid, EOI, CD-ROM, (II: 1020b)):

[21] Կիննասրինի ջունդ – Ջունդ բառը արաբները փոխ են առել պահլավերեն գունդից, որը ինչպես և հայերենում նշանակում է՝ զինվորական միավորում: Արաբական նվաճումից հետո այսպես կոչվեցին որոշակի նահանգները, կամ ռազմական գոտիները, որոնք կարող էին որոշակի քանակով զինվորներ տրամադրել պարբերաբար կազմակերպվող արշավանքների համար: Այսպես օրինակ ստեղծված էին չորս ջունդեր Սիրիայում՝ Հիմսի, Դամասկոսի, Հորդանանի և Պաղեստինի: Ավելի ուշ, արդեն Մուավիայի օրոք, ստեղծվեց Կիննասրինի ջունդը: Կիննասրինը Հալեբից հարավ գտնվող մի քաղաք է, որի անունը ծագում է արամեական Կեննեշրինից: Աբբասյանների օրոք Կիննասրինի ջունդն ընդարձակվեց դեպի հյուսիս իր մեջ ընդգրկելով Կուրուսը, Տիզինը, Դյուքը, Այնթաբը և Հռոմկլան, իսկ հարավում՝ Մաարրա Միսրինը և Մաարրա ալ-Նումանը: Հարուն ալ-Ռաշիդի օրոք Կիննասրինի ջունդը փոքրացվեց: Այն զրկվեց Անտիոքից դեպի արևմուտք ընկած տարածքներից, ինչպես նաև հյուսիսում՝

Սուղուրից, որը պիտի կազմեր Ավասիմի շրջանը: (Djund, D. Sourdel, EOI, CD-ROM(II: 601a), Kinnasrin, N. Elisseeff, EOI, CD-ROM, (V: 124a)):

[22] Ավասիմ – Բյուզանդական կայսրության և խալիֆայության միջև սահմանային գոտու մի մասին տրված անվանումը: Այն ընդգրկում էր Սիրիայի հյուսիսն ու հյուսիս-արևելքը: Այս գոտու առաջնային գիծը կոչվում է Սուղուր (սահմանային ամրությունների գոտի): Մինչդեռ ավելի խորքում տեղադրված ամրություններին տրվում էր Ավասիմ (եզ. ալ-ասիմա) անվանումը: Ավասիմը և Սուղուրը երբեմն մտնում էին մի ջունդի մեջ, իսկ երբեմն էլ առանձին վարչական միավորների մեջ էին մանում: (al-Awasim, M. Canard, EOI, CD-ROM, (I: 761a)):

[23] Տիքրիտ – կամ Տաքրիտ. Քաղաք Իրաքում՝ Տիգրիսի աջ ափին, Սամառայից հյուսիս: (Takrit, J. H. Kramers – [C. E. Bosworth], EOI, CD-ROM, (X: 140a)):

[24] Մարդայիտներ (Ջարաջիմա) – Անհայտ ծագումով քրիստոնյա մի ժողովուրդ, որն ապրում էր Ամանոսյան լեռներում (արաբ. Լուքքամ): Ասորերեն կոչվում էին Գարդումայե, իսկ բյուզանդացի պատմիչների մոտ՝ մարդայիտներ: Կարծվում է, որ այս անունը կապ ունի հին դարերի Գուրգում տեղանվան հետ, որը մոտավորապես Մարաշի շրջակայքն էր ընդգրկում:

Արաբական նվաճումներից հետո, նախ պայմանագիր կնքեցին խալիֆայության հետ, ապա նորից անցան Բյուզանդիայի կողմը: 666-ին գրավեցին Լիբանանի բարձունքները: Մուավիա խալիֆան պարտավորվեց տարեկան հարկ վճարել մարդայիտներին: Աբդ ալ-Մալիք խալիֆայի օրոք 688/689 թվին, բյուզանդացիների հետ նորից ասպատակեցին Ասորիքը:

Վերջապես մարդայիտների մեծ մասը հաստատվեց Փոքր Ասիայի ներքին գավառներում: Կարծվում է, որ նրանց մի մասը ձուլվեց Լիբանանի մարոնինների հետ: (Hitti, History of the Arabs, p. 204-205 (Տե՛ս Իբն ալ-Ասիր, էջ 366-367)):

[25] Ամանոս (Լուքքամ) լեռներ – Ջաբալ ալ-Լուքքամ, Միջնադարյան արաբ մատենագիրները այսպես են կոչում Սիրիայի հյուսիսում գտնվող Ամանոսյան լեռնաշղթան: Այն երկար ժամանակ սահման էր հանդիսանում մահմեդականների և Բյուզանդիայի միջև: (al-Lukkam, Djabal, M. Streck, EOI, CD-ROM, (V: 810a)):

[26] Ալեքսանդրեկ – Արաբ. Իսկանդարուն, Ալեքսանդրետտա. նավահանգիստ Միջերկրականի արևելյան ափին: Արաբաբյուզանդական հակամարտության ժամանակ բազմիցս ձեռքից ձեռք է անցել: (Iskandarun, Alexandretta, J. H. Mordtmann, EOI, CD-ROM, (IV: 137b)):

[27] Ռուսիս – Հավանաբար Ռուսիս, կամ Արսուս նավահանգիստն է Ալեքսանդրեկի ծոցի ափին՝ Ալեքսանդրեկ քաղաքից հարավ-արևմուտք:

[28] Սիյաբիջաներ – կամ Սայաբիջա – Այս անունը տրվում է ոչ արաբ գաղթական մի ժողովրդի, որը 7-8-րդ դարերում հավանաբար Հարավարևելյան Ասիայից գաղթել էին Պարսից ծոցի ափերն ու Բասրայի շրջանը: Սրանք երբեմն կապվում են ծաթերի (զութթ) հետ, որոնք տարբեր էթնիկ խումբ են գաղթած Հնդկաստանի հյուսիսարևմուտքից: Սրանք բոլորն էլ փաստորեն գնչուներ էին, որոնք ընդունել էին իսլամը և հիմնականում զինվորական ծառայություն էին կատարում խալիֆայության համար: Խալիֆաները ժամանակի ընթացքում նրանց մի մասին տեղափոխեցին Սիրիա և Միջերկրականի ափեր: Աբբասյանների վերջին շրջանում Սիյաբիջաները ձուլվեցին տեղի բնակչության մեջ: (Sayabidja, C. E. Bosworth, EOI, CD-ROM, (IX: 97b)):

[29] Բաղրասի լեռնանցք – Լեռնանցք Ամանոսյան լեռների միջով՝ Անտիոքից Ալեքսանդրեկ ճանապարհի վրա: Հետագայում կոչվում էր Բելյանի լեռնանցք: Լեռնանցքի վրա հսկում էր Բաղրասի ամրոցը, որը կառուցել էին բյուզանդացիները: Հետագայում այն տարբեր ժամանակ պատկանում էր արաբներին, խաչակիրներին, կիլիկեցի հայերին: (Baghras, Cl. Cahen, EOI, CD-ROM, (I: 909b)):

*[30] Դորիլիում (Դարաուլիյա) – Քաղաք Փոքր Ասիայի արևմուտքում, Հեսազայի էսքիշեհիրը:*

*[31] Ռակկա – Միջնադարյան քաղաք Եփրատի միջին հոսանքի ձախ ափին: Խալիֆայության օրոք Ջազիրայի (Վերին Միջագետք) Դիար Մուդար նահանգի մայրաքաղաքն էր: (al-Rakka, M. Meinecke, EOI, CD-ROM, (VIII: 410a)):*

*[32] Հաջջաջ [փոխարքա] – Հաջջաջ իբն Յուսուֆը Օմայյանների ամենանշանավոր և կարող կառավարիչն էր: Աչքի ընկավ Աբդ ալ-Մալիք խալիֆայի օրոք և նրան ծառայություններ մատուցեց ներքին խռովությունները ճնշելու հարցում: Խալիֆան նրան նշանակեց Հիջազի, Եմենի ու Յամամայի կառավարիչ: Հաջջաջը աչքի էր ընկնում մեծ դաժանությամբ, արյան մեջ խեղդելով ամենաչնչին ըմբոստությունն իսկ: Այնտեղից Հաջջաջը տեղափոխվեց Իրաքի կառավարիչ, մի պաշտոն, որը բացառիկ նշանակություն ուներ խալիֆայության համար: Նա երկաթյա կարգ ու կանոն հաստատեց Իրաքի զինվորական միավորումներում: Նման խստությունները անհրաժեշտ էին մանավանդ հաջողությամբ պայքարելու համար Խարիջիների դեմ: Հետագայում Հաջջաջի լիազորությունները տարածվեցին նաև Խորասանի ու Սիջիստանի վրա: Այսպիսով նա դարձավ Արևելքի փոխարքա: Նպաստեց զինվորական կարգապահության ուժեղացմանն ու շինարարական աշխատանքներին: Աբդ ալ-Մալիքի բոլոր բարեփոխումներում Հաջջաջը նրա աջ ձեռքն էր: Նա հավատարմորեն ծառայեց թե՛ Աբդ ալ-Մալիք և թե՛ Վալիդ խալիֆաների օրոք: Հաջջաջը իր մահկանացուն կնքեց 714 թ-ին՝ Վալիդի վախճանից մի տարի առաջ: (al-Hadjdjadj ibn Yusuf, A. Dietrich, EOI, CD-ROM, (III: 39b)):*

*[33] Խալիջ (ծոց) – Հավանաբար Իսոսի կամ Ալեքսանդրեկի (Իսկանդարուն) ծոցն է: (Վ. Տ-Ղ.)*

*[34] Սարոս (Սայհուն) – Գետ Կիլիկիայում, Միջերկրական ծովի ավազանում. (ՀՀՏՏՍՏ, հ. 4, էջ 570):*

*[35] Սիս (Սիսիյա) – Սիս քաղաքը Կիլիկիայում:*

*[36] Անազարբա – կամ Այն Զարբա: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթղր. 84:*

*[37] Ալի իբն Յահիա ալ-Արմանի – Ալի իբն Յահիա ալ-Արմանին խալիֆայության պատմության մեջ գիրքի հասած բացառիկ հայ գործիչներից էր: Նշանավոր դարձավ Բյուզանդիայի դեմ մղած պայքարով: Ուներ կալվածներ Աղձնիքի կողմերում և հավանաբար այդ նահանգի հայ նախարարներից էր (մահմեդականացած): Եղել է նաև Արմինիայի ոստիկան: (Իբն ալ-Ասիր, էջ 382):*

*[38] Հարունիյա – Հարունիա, բերդաքաղաք Կիլիկիայում, հետագայում՝ Ադանայի նահանգի Ջեբել-Բերեքեթի գավառում (ՀՀՏՏՍՏ, հ. 3, էջ 393):*

*[39] Քանիսատ ալ-Սաուդա – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթղր. 85:*

*[40] Կաֆիր – կամ կաֆ. տես Աբու Յուսուֆ, ծնթղր. 27:*

*[41] Խառան – Քաղաք Վերին Միջագետքում (Ջազիրա):*

*[42] Սամոսատ (Սումայսաթ) – Քաղաք Վերին Միջագետքում, Եփրատացիք գավառում, Եփրատ գետի աջ ափին: (ՀՀՏՏՍՏ, հ. 4, էջ 487):*

*[43] Կարկիսիա – Քաղաք Վերին Միջագետքում, Խաբուր անունով երկու գետերի միախառնման վայրում:*

*[44] Մծբին (Նասիբին) – Քաղաք Վերին Միջագետքում (ՀՀՏՏՍՏ, հ. 3 էջ 838-839):*

*[45] Սինջար – Քաղաք Վերին Միջագետքում: Գտնվում է Սինջար լեռան հարավային ստորոտին, Մոսուլ քաղաքից արևմուտք (ՀՀՏՏՍՏ, հ. 4, էջ 610):*

*[46] Նփրկերտ (Մայաֆարիկին) – Քաղաք Մեծ Հայքի Աղձնիք աշխարհում, հնում Տիգրանակերտ (ՀՀՏՏՍՏ, հ. 5, էջ 675):*

*[47] Սարուջ – կամ Սրուճ, գյուղաքաղաք Վերին Միջագետքում, հետագայում՝ Հալեպի (այլ բաժանմամբ Ուրֆայի) նահանգի Բիրեջիկի գավառում: (ՀՀՏՏՍՏ, հ. 4, էջ 547):*

[48] Ռասքայֆա – Ռասկիֆա. Վայր Վերին Միջագետքում, բնույթն անորոշ (ՀՀՃՏԲ. Հ. 4, էջ 439):

[49] Ալ-Արզ ալ-Բայդա – Բնակավայր հավանաբար Եփրատացվոց աշխարհում:

[50] Ալ-Վարդա, Ռաս ալ-Այն – Քաղաք Վերին Միջագետքում, Եդեսիայի շրջանում: (ՀՀՃՏԲ. Հ. 4, էջ 439 ):

[51] Տելլ Մաուզան – Քաղաք Վերին Միջագետքում (Ջազիրա) Եդեսիայից արևելք և Ամիդից հարավ:

[52] Մարդին ամրոց – Քաղաք Դիարբեքիրի նահանգի Մարդինի գավառում: Վերին Միջագետքի բնակավայրերից է և գտնվում է Եդեսիա ու Մծբին քաղաքների միջև: (ՀՀՃՏԲ, Հ. 3, էջ 728):

[53] Դարա – Քաղաք Վերին Միջագետքում, Մոսուլի շրջանում: (ՀՀՃՏԲ, Հ. 2, էջ 48):

[54] Կարդա (որպես բնակավայր) – Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 3:

[55] Բազարդա – Բազարդան հաճախ հիշատակվում է Կարդայի հետ. Կարդան և Բազարդան Վերին Միջագետքի (Ջազիրա) երկու հարևան շրջաններ են: (Karda and Bazabda) (Ed.), EOI, CD – ROM, (IV:639a)):

[56] Զավազանի պատրիկը – Անձևացիք գավառի տերը (իշխանը): Արաբները Անձևացիք տեղանունը տալիս են Զավազան ձևով: Հիշյալ պատրիկը հավանաբար Սահուռ Անձևացին էր, որը արաբների՝ Տարոնի վրա հարձակման ժամանակ նրանց կողմն էր անցել: (Յովհան Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ. Երևան, 1941, էջ 285-286: (Տե՛ս Իբն ալ-Ասիր, էջ 367)):

[57] Արզն – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 33:

[58] Մտավ լեռնանցք – Նկատի ունի Զորա պահակ լեռնանցքը:

[59] Բաղեշ (Բաղլիս) – Աղձնիք նահանգում գանվող Արզն և Բաղեշ քաղաքները արաբների առաջին նվաճումներից էին: Բաղեշը (ուշ միջնադարում Բիթլիս) գտնվում էր Զորա պահակ լեռնանցքից հարավ և ռազմագիտական մեծ նշանակություն ուներ: (Իբն ալ-Ասիր, էջ 368):

[60] Խլաթ (Խիլաթ) – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 81:

[61] Այն ալ-Համիդա – Հայտնի չէ, թե որտեղ է Այն ալ-Համիդան, այսինքն «թթու ջուր» կոչված վայրը: Գուցե Կարնո քաղաքի մոտ գտնվող Ջերմուկն է: Երեմյան, Աշխարհացույց, էջ 53: (Իբն ալ-Ասիր, էջ 368):

[62] Պարուեզ (Արարուիզ) – Խոսրով Պարուեզ: Տե՛ս Դինավարի, ծնթգր. 8:

[63] Մոսուլ (Մաուսիլ) – Քաղաք Վերին Միջագետքում:

[64] Դիար Մուդար – Ջազիրան բաժանվում է երեք մասի՝ Դիար Ռաբիա, Դիար Մուդար և Դիար Բաքր: «Դիար» նշանակում է տեղի բնակության վայր, իսկ «Ռաբիա», «Մուդար» և «Բաքր»՝ դրանք արաբական ցեղերի անվանումներ են, որոնք այստեղ բնակություն հաստատեցին նախքան արաբական նվաճումները և նվաճումներից հետո: Դիար Մուդարը Ջազիրայի արևմտյան մասն է: (al-Djazira, M. Canard, EOI, CD-ROM, (II: 523a)):

[65] Դիար Ռաբիա – Ջազիրայի արևելյան մասն է: Իսկ Դիար Բաքրը՝ հյուսիսային: (al-Djazira, M. Canard, EOI, CD-ROM, (II: 523a)):

[66] Խաբուր [գետ] – Գետ Տիգրիսի ավազանում, նաև՝ Խաբուր արևելյան (ՀՀՃՏԲ, Հ. 2, էջ 613):

[67] Հադիսա – Այս անունով, որ նշանակում է «նոր» կան մի շարք քաղաքներ: Տվյալ դեպքում խոսքը Հադիսաթ ալ-Ֆուրաթի մասին է, կառուցված Եփրատ գետի վրա: Բուն քաղաքը կառուցված է կղզու վրա: Բնակիչները քրիստոնյաներ էին: (Haditha, E. Herzfeld, EOI, CD-ROM, (III: 29a)):

[68] Ռահբա – կամ Ռահբաթ ալ-Շամ, քաղաք է Եփրատ գետի աջ ափին. ժամանակակից ալ-Միյադին: (al-Rahba, E. Honigmann-[Th. Bianquis], EOI, CD-ROM, (VIII: 393b)).

*69 Հադաս – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 18:*

*70 Զապետրա – Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 13:*

*71 Սադակա – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 16:*

*72 Ջիջադ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 4:*

*73 Շիմշաթ – Շիմշատ Ծոփաց թագավորության մայրաքաղաքներից Արշամաշատն էր, որը միջնադարում մի ավան էր ու կոչվում էր Աշմուշատ (արաբ. Շիմշաթ): (Իբն ալ-Ասիր, էջ 383):*

*74 Չորրորդ Արմինիա – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 68:*

*75 Կոստանդին բռնակալ – Կոստանդին Ե Բյուզանդիայի կայսր (741-775):*

*76 Կամախ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 73*

*77 Հադիսատ ալ-Մաուսիլ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 67:*

*78 Կարնո քաղաք – Արաբները Կարնո քաղաքը (Թեոդոսուպոլիս) կոչում էին Կալիկալա : Այս տեղանունը ծագում է ասորերեն Կալին կալա ձևից (ն-ի անկումով): (Իբն ալ-Ասիր, էջ 368):*

*79 Բագարատ Աշոտի որդի (Բակրաթ իբն Աշութ, Խլաթի պատրիկ) – Աշոտի որդի Բագարատը հաջորդեց իր հորը՝ Աշոտ Մսակերին, որպես Հայոց իշխան (826-851) : Շուտով, Աբբասյան խալիֆայից ստացավ իշխանաց իշխան (պատրիկների պատրիկ) տիտղոսը: Նրան ենթակա էր ամբողջ Արմինիա (Հայաստան, Վիրք, Աղվանք, Շիրվան, Դերբենդ) նահանգը: 851-ին խարեությամբ ձերբակալվեց ու տարվեց Սամառա: (Իբն ալ-Ասիր, էջ 381):*

*80 Օթևան (մարհալա) – Սովորաբար մարհալան մի տարածություն է, որ ճամփորդն ի վիճակի է անցնել մեկ օրում, հետևաբար սա երկարության ճշգրիտ միավոր չէր և կախում ուներ թե տվյալ ճանապարհահատվածը կտրել-անցնելը ինչպիսի դյուրություն, կամ դժվարություն ուներ: Որոշ աշխարհագրագետների մոտ մարհալան 6-7 փարսախ է (այսինքն 36-42 կմ) , այլ դեպքերում այն հասնում է միջինը 8, 6 փարսախի (50 կիլոմետր): (Marhala (Ed.), EOI, CD-ROM, (VI: 558b)):*

*81 Ռուծափ (Ռուսաֆա) – Այս անունով բազմաթիվ բնակավայրեր կային մահմեդական աշխարհում, սկսած Անդալուսից մինչև Իրան: Տվյալ դեպքում խոսքը վերաբերում է Ռուսաֆաթ Հիշամ, կամ Ռուսաֆաթ ալ-Շամ բնակավայրին, որը գտնվում էր Սիրիայում՝ Եփրատից 30 կմ դեպի հարավ, որն իր մեջ ընդգրկում է ուխտատեղի, որտեղ նահատակվել էր սուրբ Սերգիուսը (Սարգիս), որի պատճառով բյուզանդական շրջանում քաղաքը կոչվում էր Սերգիուպոլիս: (al-Rusafa, Manuela Marin, EOI, CD-ROM, (VIII: 629b)):*

*82 Կլավդին (Կլաուդիյա) ամրոց – Կլաուդիյա բերդը գտնվել է Մալաթիայի մոտ: Նրա բուն անունը եղել է Կլավդիա: Honigmann, Die Astrenze, S. 88, n. 2 (Իբն ալ-Ասիր, էջ 375):*

*83 Կուրակիր գետ – կամ Քուրաքիր, Մելաս գետը, ներկայիս Թոխմախ-սու (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 190):*

*84 Մանրիջ – Քաղաք Վերին Միջագետքում (Ջազիրա)՝ Հայերի ու Եդեսիայի միջև: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 683):*

*85 Դուրբ ալ-Հադաս – Հադասի լեռնանցք: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 18:*

*86 Հադասի բերդ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 18:*

*87 Հադասի լեռնանցք – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 18*

*88 Քեսուն (Քայսում) – Բերդ, ամրոց, բերդաքաղաք Վերին Միջագետքում (ՀՀՇՏԲ, հ. 5, էջ 358):*

*89 Տլուք (Դուլուք) – Տլուք քաղաքը գտնվում է Մարաշից հարավ-արևելք, Այնթաբից ոչ հեռու:*

*90 Ռաաբան – Ռաբան, բերդ և քաղաք Վերին Միջագետքում, Եդեսիայի շրջանում*

(ՀՀՇՏԲ, Հ. 4, էջ 431):

91 Զիրաթրա – Զապետրա. Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 13:

92 Ամորիոն (Ամմուրիյա) – Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 14:

93 Հիսն Մանսուր – Քաղաք Եփրատացիքում (ներկայում Ադիյաման): (Adiyaman. F. Taeschner, EOI, CD-ROM, (I: 1996)):

94 Պարտավ (Բարդաա) – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 12:

95 Չորրորդ Արմինիա – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 68:

96 Դվին (Դաբիլ) – Դվինի արաբական Դաբիլ անունը ծագում է ասորական Ադաբին ձևից: Բառասկզբի ա-ն ընկել է, իսկ վերջին «ն» տառը դարձել է «լ»: Դվինը Դ-ԺԳ դարերում Առաջավոր Ասիայի գլխավոր առևտրական հանգույցներից մեկն էր և Հայաստանի մայրաքաղաքը Դ-Ժ դարերում, մինչև որ իր տեղը զիջեց Անիին: (Իբն ալ-Ասիր, էջ 369):

97 Շիրակը, Տայքը և Բագրևանդը – Շիրակ և Տայք տեղանունները արաբ մատենագիրները չատ հաճախ են միասին հիշատակում, որպես մեկ տեղանուն: Գրվում է Սիրտջթայր, որը կետերի չփոթության (հետևաբար նաև տառերի փոփոխության) արդյունք է:

Այս շրջանները, ինչպես նաև Բագրևանդը (Բագրավանդ) միասին են հիշատակվում հավանաբար իբրև (տարբեր ժամանակներում) Բագրատունիներին պատկանած կալվածներ (Իբն ալ-Ասիր, էջ 369):

98 Երրորդ Արմինիա – Արաբ պատմիչներն ու աշխարհագրագետները Արմինիա նահանգը կամ ոստիկանությունը բաժանում են չորս մասի: Առաջին Արմինիան հիմնականում ընդգրկում էր Աղվանքը, մերձկասպյան շրջանները (Շիրվան) և Դերբենտը, Երկրորդ Արմինիան՝ Վիրքը, իսկ Երրորդ և Չորրորդ Արմինիաները ընդգրկում էին բուն Հայաստանը: Այս ամենով հանդերձ պատմական Մեծ Հայքի որոշ հարավային և արևմտյան շրջաններ դուրս էին մնում Արմինիա նահանգի սահմաններից, ընդգրկվելով Խալիֆայության այլ՝ Ջազիրա և Ատրպատական նահանգների, կամ Բյուզանդական կայսրության մեջ: Մի կարճ ժամանակահատված, 8-րդ դարի սկզբին, Արմինիայի վարչական ենթակայության տակ էր նաև Արխազիան, բայց հետո այն անջատվեց Խալիֆայությունից: (Тер-Гевондян, Армения, стр. 156-157):

99 Երկրորդ Արմինիա – Տ՛ես ծնթգր. 98

100 Սիսական (Սիսաջան) – Արաբական աղբյուրները Սյունիք նահանգը միշտ դիտեն Սիսական (Սիսաջան) ձևով: (Իբն ալ-Ասիր, էջ 369):

101 Աղվանք (Առան) – Տե՛ս ծնթգր. 98:

102 Առաջին Արմինիա – Տե՛ս ծնթգր. 98:

103 Արմինիակուսի տեր – Արմինիակուսը կամ Արմինիակը համապատասխանում է բյուզանդական Արմենիակների բանակաթեմին: Ահա թե ինչ է նշում աշխարհագրագետ Յակուտը խոսելով Արմինիակի սահմանների մասին «Ռում» հոդվածում. «Արմինիակ նահանգը, որի սահմաններն են, առաջին՝ Աֆլաջունիան (Պափլագոնիա), երկրորդը՝ Բուքելարը, երրորդը՝ Խարշանան և չորրորդը՝ Ջալադիա և Սև ծով: Սարատեղոսի բնակավայրն է Ամասիայի բերդը.. »: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 74):

104 Շարուան – Շիրվան:

105 Բայլական – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 15:

106 Կապաղակ (Կաբալա) – Բուն Աղվանքի մայրաքաղաքը:

107 Դրունք Ալանաց (Բաբ ալ-Լան) – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 55:

108 Դարբանդ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 34:

109 Խոսրով Անուշիրուան – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 6:

110 Ալ-Սիյասիջին – Սիսաջանի (Սիսականի, Սյունիքի) բնակիչ:

111 *Սուղդարիլ – Թիֆլիսի դիմաց Կուրի ձախ ափի վրա. Հետագայում մոռացված վայր: Այդ քաղաքը հիշվում է վրացական աղբյուրներում (Քարթլիս-Ցխովրեբա) Սահի ու Դարիլ անվան տակ: Ներկայիս Հավլարար թաղամասում է: (Հակոբ Նալբանդյան. Արաբական աղբյուրները. էջ 133):*

112 *Շահապոնս (Շահարունս) – Շահապոնս. կամ Շահապոնք – Բերդ Մեծ Հայքի Սյունիքը աշխարհի Ճահուկ գավառում (ՀՀՇՏԲ. հ. 4. էջ 51):*

113 *Թուրքաց Թագավոր – Խազարների խաքանը:*

114 *Սարիր. Ֆիլան. Թաբարսարան, Լաքս (Լեզգիներ). Մասքութք. Լիրան. Շարուան. Բուխխ. Զարիքիրան – Սրանք բոլորը Կովկասյան լեռների վրա և դրանցից հյուսիս (բացառությամբ Շարուանի). Կասպից ծովին հարող մասերում գտնվող ցեղերի. կամ ցեղախմբերի անվանումներ են. որոնք հիմնականում զբաղեցնում էին ներկայիս Դաղստանը և նրան հարող տարածքները: Իսկ հիշատակվող Թագավորներն իրականում ցեղապետեր. կամ ֆեոդալներ էին (Վ. Տ. -Ղ.):*

115 *Կալի Կալա – Կարնո քաղաք: Տե՛ս Բալադուրի. ծնթգր. 78 :*

116 *Սամանդար – Սամանդարը խազարների կարևոր քաղաքներից էր, մի ժամանակ նաև մայրաքաղաք: Գտնվում էր ներկայիս Ղըզլար քաղաքի տեղում: (Khazar, W. Barthold, P. B. Golden, EOI, CD-ROM, (IV: 1172a)):*

117 *Մավրիանոս (Մաուրիան ալ-Ռումի) – Մավրիանոս հույն զորավարը Հայաստան եկավ այն բանից հետո, երբ 640 Թվականի արաբական արշավանքին դիմագրող Թեոդորոս Ռշտունին պաշտոնապես Հայոց իշխան ճանաչվեց: Նրա հարաբերությունները Հայոց իշխանի հետ խիստ սրված էին և. ի վերջո, նա դուրս քշվեց Հայաստանից: (Իբն ալ-Ասիր. էջ 368-369):*

118 *Գուսան (Քուսան ալ-Արմանի) – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 67:*

119 *Մարզաղի (Մարրալա) – Մարրալան հավանարար Մարզաղի տեղանվան աղավաղումն է:*

120 *Սիփան (Սիրանա) – Սա հավանարար Սիփան սարն է. կամ նրա շրջակա գավառը:* (Тер-Гевондян, Армения, стр. 41):

121 *Տառեխի (Թիռիխ) լիճ – Տառեխի (Թիռիխ) լիճը Վանա լիճն է, որից հանվող տառեխ ձուկն արաբների մոտ շատ հայտնի էր: Օմայյանները պետականացրին լիճը և նրա ձկների հասույթը: Աբբասյանների օրոք տառեխը մտնում էր Հայաստանի բնահարկի մեջ. ընդ որում տարեկան վերցվում էր 20 հազար տառեխ: Երեմյան, Աշխարհացույց, էջ 37 (Տե՛ս Իբն ալ-Ասիր. էջ 371):*

122 *Արտաշատ (Արդխաթ) – Արդխաթ. կամ Արդաշաթ, այսպես են արաբ պատմիչները հիշատակում Հայոց հին մայրաքաղաք Արտաշատը, որն այդ ժամանակ այնքան նվազ բնակիչ ուներ, որ կարող էր և գյուղ կոչվել:*

123 *Որդան կարմրի գյուղ (Կարիատ ալ-Կիրմիզ) – Կիրմիզի գյուղ: Կիրմիզ նշանակում է կարմիր: Պատմիչները նկատի ունեն որդան կարմիրը, իսկ Արտաշատը կոչվում էր Կիրմիզի գյուղ: (Իբն ալ-Ասիր. էջ 369):*

124 *Աքրադ գետ – Արաբներն այսպես էին կոչում Արաքսի վտակ Մեծամոր գետը:*

125 *Ջատ ալ-Լուջում (սանձերի վայր) – Այս վայրի անվանման բացատրությունն է տալիս Իբն ալ-Ասիրը «Այսպես է կոչվել, որովհետև մահմեդականները հանել էին իրենց ձիերի սանձերը և [այդ ժամանակ] վրա էին հասել հոռոմները. նախքան սրանք կհասցնեին սանձերը դնել: Այսուհանդերձ սրանք սանձերը դրել, պատերազմել ու հաղթել են նրանց»: (Իբն ալ-Ասիր, էջ 55):*

126 *Քուստի Փառնես (Քուսփարնիս) – Գավառ Մեծ Հայքի Արցախ աշխարհում: Ս. Երեմյանը Քուստի-ն համարում է առանձին գավառ և նույնացնում է ՀԽՍՀ Շամշադինի շրջանի հետ: Ուրիշները Քուստիփառնեսը նույնացնում են Ուտիքի Գարդմանաձոր գավառին: (ՀՀՇՏԲ. հ. 5. էջ 450):*

127 Քիսալ – Բնակավայր հավանարար Արցախի հյուսիսում:

128 Հունարակերա (Խունան) – Քաղաք Մեծ Հայքի Ուտիք աշխարհում, Կուրի աջ ափին Խրամի գետաբերանից ոչ հեռու (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 464):

129 Սանցխե (Սամասխի) – Բերդ Մեծ Հայքի Գուգարք աշխարհում: (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 490):

130 Գարդման (Ջարդասան) – Գարդմանք, պատմական գավառ և ամրոց Ուտիք նահանգում:

131 Քուստի (Քուստասջի) – Քուստի, կամ Քուստաջի, գավառ Մեծ Հայքի Արցախ աշխարհում, Սևանա լճից արևելք: (ՀՀՇՏԲ, հ. 5, էջ 450):

132 Շավշեթ (Շաուշիտ) – Գավառ, շրջան Մեծ Հայքի Գուգարք (կամ Տայք) աշխարհում: Տարածվում էր Ճորոխ գետի աջակողմյան՝ Իմերխևի վտակի վերին հոսանքի շրջանում (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 81):

133 Կղարջք (Կալարջիտ) – Գավառ Մեծ Հայքի Գուգարք աշխարհում, Խաղտիքի սահմանների մոտ, Ճորոխ գետի աջ ափին: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 157):

134 Թռեղք (Տարիալիտ) – Գավառ Մեծ Հայքի Գուգարք աշխարհում, Կուր գետի վերին հոսանքի աջակողմյան շրջանում. Գուգարքի 9 գավառներից 5-րդը: (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 485):

135 Ջավախք (Ջավախիթ) – Գավառ Մեծ Հայքի Գուգարք աշխարհում: Փռված է Ախալքալաք գետի ավազանում: (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 389):

136 Ալանաց դուռ (Բար Ալլան, Բար ալ-Լան) – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթղր. 55:

137 Ծանարք (Սաննարիյա) – 8-րդ դարում Վիրքի մի մասը կազմող Կախեթիայում առաջացել էր ինքնուրույն իշխանություն, որն էթնիկական առումով բաղմացեղ կազմ ուներ: Սրանցից հատկապես աչքի էին ընկնում ռազմատենչ լեռնական ժողովուրդ ծանարները, կամ ինչպես արար մատենագիրներն են կոչում «ալ-սաննարիյա»: Սրանք անդադար ապստամբում էին արաբական տիրապետության դեմ, ուստի խալիֆայության դիրքերը Կախեթիայում, մանավանդ Ծանարքում, շատ թույլ էին: (Тер-Гевондян, Армения, стр. 131).

138 Գիղոյք (Գուղանիյա) – Գուղանիյան Կախեթիայից հյուսիս գտնվող ցեղերի անունն է: (Իբն ալ-Ասիր, էջ 374):

139 Տրտու (Սարսուր) գետ – Գետ Կուրի ավազանում, նրա աջ վտակը: Այժմ Թարթառ (ՀՀՇՏԲ, հ. 5, էջ 132):

140 Շակաշեն (Շակաշին) – Գավառ Մեծ Հայքի Ուտիք աշխարհում, երբեմն համարել են նաև նահանգ: Ընդգրկում է Կուր գետի միջին հոսանքի աջափնյակը Կուրակ և Շամխոր գետերի միջև ընկած տարածքը: (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 49):

141 Մեծ Կուենք (Միսկուան) – կամ Մեծկվենք – Գավառ Մեծ Հայքի Արցախ աշխարհում: Տեղադրվում է Թարթառ գետի վերին հոսանքի ավազանում, Մռավ լեռան հարավային և հարավարևելյան կողմերում, Թարթառ գետի հովտում: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 772):

142 Ուտի (Ուդ) – Ուտի, կամ Ուտի առանձնակ, գավառ Մեծ Հայքի Ուտիք աշխարհում: Տարածվում էր Թարթառի հովտում, նրա ստորին հոսանքի շրջանում: (ՀՀՇՏԲ, հ. 5, էջ 206):

143 Մեծ Իրանք (Միսրիան) – կամ Մեծ Առանք – Գավառ Մեծ Հայքի Արցախ աշխարհում: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 771):

144 Հարճլանք (Հարջալիան) – Գավառ Մեծ Հայքի Արցախ աշխարհում, նրա հարավ-արևելյան սահմանի մոտ: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 389):

145 Տրի (Տիար) – Գավառ Մեծ Հայքի Ուտիք աշխարհում: (ՀՀՇՏԲ, հ. 5, էջ 130 )

146 Բաղասական (Բալասաջան) – Գտնվում է Աղվանքում: Բառը պարսկերեն է և

հիշվում է «դաշտ ի Բալասական»: Այժմյան Մուղանի և Միլի դաշտերը, որտեղ գտնվել է Բայլական-հին Փայտակարան քաղաքը: (Հակոբ Նալբանդյան. Արաբական աղբյուրները, էջ 171):

147 Շամքոր (Շամքու) - Բերդ Մեծ Հայքի Արցախ աշխարհի Փառիսոս գավառում. Շամխոր գետի ձախ ափին: (ՀՀՇՏԲ. հ. 4. էջ 75):

148 Սևորդիք (Սիավարդիյա) - Սևորդիք կոչված հայկական ցեղերը, որոնք ապրում էին Ուտիք նահանգում, արաբ մատենագիրների մոտ կոչվում են Սիյավարդիյա: Ըստ արաբ պատմիչների, Ը դարի վերջում նրանք կործանել են Շամքոր քաղաքը: Կոստանդին Ծիրանածնի «Արարողությանց մասին» գրքում հիշատակվում է, որ Ժ դարում Բյուզանդական արքունիքը նրանց հետ ևս (որպես Բագրատունյաց թագավորության մաս կազմող իշխանության) նամակագրություն ուներ: Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 151: (Իբն ալ-Ասիր. էջ.370):

149 Բուղա - Բուղա ալ-Քաբիրը, կամ ավագ Բուղան թյուրք զորավար էր, որ ծառայում էր Աբբասյան խալիֆաներին: Նա հռչակվեց մի շարք արշավանքներում ընդդեմ ապստամբ նահանգների: 844–845-ին՝ դեպի Մադինա, 851–852–ին՝ Հայաստան և ընդդեմ Բյուզանդիայի՝ 857-ին: (Bugha al-Kabır, D. Sourdel, EOI, CD-ROM, (I: 1287a)).

150 Բալուդիջ – Ըստ Հ. Նալբանդյանի՝ Բերդիկ, որի մասին 13-րդ դարի աշխարհագրագետ Յակուտը հաղորդում է հետևյալը «Քաղաք Ատրպատականի ծայրամասում, այստեղից մինչև Պարտավ 14 փարսախ է: Շրջապատված է մի գետի ջրով, որ իր կարևորությամբ մոտենում է Տիգրիսին և կոչվում է Կուր»: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 35):

151 Խայզան - Ամրոց պատմական Հայաստանի հյուսիս-արևելյան սահմանագլխին, Կասպից ծովի արևմտյան ափամերձ շրջանում: (ՀՀՇՏԲ. հ. 2, էջ 638):

152 Բալանջար գետ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 14:

153 «Ալլահ աքբար» կոչը – Արաբ. նշանակում է «Ալլահն ամենամեծն է», կամ «Աստված մեծ է»:

154 Հադիս – Նշանակում է «նորություն», «լուր», «պատմություն»: Հադիսները ավանդություններ կամ պատմություններ են Մուհամմադ մարգարեի խոսքերի ու արարքների մասին, որոնք վերաբերում են մահմեդական համայնքի կյանքի կրոնաիրավական տարբեր կողմերին: Հադիսները համարվում են, Ղուրանից հետո, մահմեդական իրավունքի երկրորդ աղբյուրը: (Ислам, энц. словарь, стр. 262-263):

155 Ալի իբն Աբու Թալիբ - Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 22:

156 Օսման իբն Վալիդ իբն Ուկբա իբն Աբի Մուայթ - Նա կառավարիչ է եղել հավանաբար 704 թվականին: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրությունը):

157 Ադի իբն Ադի իբն Ամիրա ալ-Քինդի – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 47:

158 Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամի – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 48:

159 Սամուր գետ - Գետ, որը գտնվում է Դերբենդից հյուսիս, այժմյան Դաղստանի հարավում: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 183):

160 Վարդանակերտ (Վարսան) – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 52:

161 Աբդարբիլի նահանգ - Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 60:

162 Քիսալ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 127:

163 Ղուլամ – Արական սեռի մանկահասակ ստրուկ:

164 Տուման և Սինդան – Կովկասյան ցեղերով բնակեցված երկրամասեր Կովկասյան լեռների և Սամուր գետի միջև:

165 Խարիջիները (շուրատ) - Խարիջիական շարժման առաջացման առիթը 657 թվականի հուլիսին տեղի ունեցած Սիֆֆինի ճակատամարտի ժամանակ (Տե՛ս Սիֆֆինի ճակատամարտ) Ալի իբն Աբու Թալիբի առաջարկն էր Օսման խալիֆայի սպա-

նուխյան պատճառով ծագած վեճը լուծել հաշտարար դատավորների միջոցով, որոնք դատավճիռ պիտի տային համաձայն Ղուրանի: Ալիի բանակի մեծամասնությունը ընդունեց այս տեսակետը, մինչդեռ կռվողների մի խումբ՝ հիմնականում Թամիմ ցեղից, ըմբոստացան առաջարկի դեմ, հայտարարելով, որ ինչպես կարող են մարդիկ դատել աստվածային խոսքի մասին: Նրանք պահանջում էին չարունակել կռիվը հայտարարելով, որ մարդու դատը Ալին գերադասեց Ալլահի դատից: Նկատի ունեին այն, որ Ալլահը հաղթանակը տվեց Ալիին, իսկ նա համաձայնվեց երեք դատավոր ընտրելու առաջարկին: Նրանք թողեցին Ալիի բանակն ու հեռացան: Այնուհետև սրանց միացան նաև ուրիշներ Ալիի բանակից, որտեղից էլ ծագեց «դուրս եկողներ» «անջատվողներ»՝ խարիջիներ բառը: (Kharidjites, G. Levi Della Vida EOI, CD-ROM, (IV: 1074b)):

166 Յունան – Տեղադրվում է այժմյան Աղդամի մոտերքում, իսկ 13-րդ դարի աշխարհագրագետ Յակուտը նշում է «Վայր Պարտավից յոթ փարսախ հեռավորության վրա: Այնտեղից մինչև Բայլական յոթ փարսախ հեռավորություն է» (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները. էջ 121 և 120):

167 Իսհակ իբն Մուսլիմ - Արմինիայի կառավարիչ (745- 749/750) Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլի, ըստ Թաբարիի գտնվել է Հայաստանում մինչև 132հ. թ. (749-750). Tabari, VII, 447: Հիշվում է Արմինիա մակագրությամբ անթվական մի դրամի վրա: Սրա օրոք ծագեց 747-750 թթ. ապստամբությունը Հայաստանում: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

168 Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամի – Հայաստանի կառավարիչ 752-754 թվականներին: Նշանակվեց 134 հ. թ. (751-752). Yaqubi, II, 358, Tabari, VII, 465: Ղևոնդի մոտ կոչվում է Եզիդ որդի Ուսայդի: Նրա մայրն էր Սիսականի պատրիկի դուստրը: Նա Հայոց իշխան նշանակեց Սահակ (Իսահակ) Բագրատունուն. Ղևոնդ, 128: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

169 Մուշեղ (Մուշայիլ ալ-Արմանի) - Մուշեղ Մամիկոնյան, 774-775թթ. ապստամբության ղեկավարը:

170 Օսման իբն Ումարա իբն Խուրայմ - Արմինիայի կառավարիչ է եղել 783-785 թվականներին: Թեև պատմիչը նշում է, որ նա իշխեց Հասան իբն Կահթաբայից հետո, բայց նրանց կառավարման միջև 8 տարի կա, որի ընթացքում կառավարել են ուրիշներ: Օսման իբն Ումարա իբն Խուրայմը հիշվում է դրամների վրա: Նրա օրոք էր, որ Տաճատ Անձևացին դարձավ Հայոց իշխան. Ղևոնդ, 159: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

171 Ռաուհ իբն Հատիմ ալ-Մուհալլիբի - Արմինիայի կառավարիչ (785-786). Հիշվում է դրամի վրա: Նրա նշանակումից անմիջապես հետո մեռավ Մահդի խալիֆան (4 օգոստոսի, 785), Ղևոնդ, 161: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

172 Խուզայմա իբն Խազիմ – Խուզայմա իբն Խազիմ ալ-Տամիմին (786-787) հիշվում է դրամների վրա: Նրան նշանակեց Հարունը հենց որ դարձավ խալիֆա և սա իշխեց մեկ տարի երկու ամիս. Yaqubi, II, 426: Ըստ Ղևոնդի նա ոստիկան էր դեռ Մուսա ալ-Հադի խալիֆայի օրոք: Հավանաբար այդ ժամանակ Խուզայման տեղակալ էր: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

173 Յազիդ իբն Մազյադ ալ-Շայբանի – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 18:

174 Ուբայդալլահ իբն ալ-Մահդի – Հյուսիսի փոխարքա 788-791 թվականներին: Հիշվում է դրամների վրա: Նշանակվեց 172 հ. թ. Tabari, VIII, 236: Ղևոնդը հիշում է, որ Հարունի (Ահարոն) Ովրեղյա եղբայրն ստացավ «զԱտրպատական և զՀայս հանդերձ Վրօք և Աղուանիւք». Ղևոնդ, 166: (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

175 Ֆադլ իբն Յահիա - ալ-Ֆադլ իբն Յահիա իբն Խալիդ ալ-Բարմաքին 792-795

*թվականներին փոխարքա էր: Հիշվում է դրամների վրա: Ըստ Թաբարիի նշանակվեց Արմինիայի, Ատրպատականի, Ջիբալի, Թաբարիստանի և այլ նահանգների փոխարքա 176 Հ. Թ. (792-793). Tabari. VIII, 242: (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

176 *Ստիդ իբն Ասլիմ – Հավանաբար Ստիդ իբն Սալմ իբն Կուտայբա ալ-Բահիլին է, որը Արմինիայի կառավարիչ է եղել 798-799 թթ. (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

177 *ՄուՀամմադ իբն Յազիդ իբն Մազիադ - Հավանաբար ՄուՀամմադ իբն Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանին է, որը Արմինիայի կառավարիչ է եղել 802-803 թթ. (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

178 *Հասան իբն Ալի ալ-Բադղիսի - Արմինիայի կառավարիչ 833-835 թվականներին: Հիշվում է դրամի վրա: Ըստ Յակուբիի նրան նշանակեց Մամունը. Yaqubi, II, 464: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

179 *Սմբատի որդի ՍաՀլ (ՍաՀլ իբն Սինբաթ) - Տե՛ս Դինավարի, ծնթգր. 23:*

180 *Հայդար իբն Քաուս ալ-Աֆշին — Նշանակվեց Արմինիայի ու Ատրպատականի կառավարիչ 220 Հ. Թ. (836)Tabari, IX, 11: Պայքարեց ու Հաղթեց Բաբեկին: Մնաց մինչև 225 Հ. Թ. (839-840). Tabari, IX, 104. (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

181 *Յուսուֆ իբն ՄուՀամմադ ալ-Մարուազի - Արմինիայի կառավարիչ 851-852: Նշանակվել է 226 Հ. Թ. (850-851). Tabari, IX, 186: Գերեց իշխանաց իշխան Բագարատ Բագրատունուն և սպանվեց Հայ ապստամբների ձեռքով Մուշում. Թովմա, 120: Ըստ Յակուբիի, սպանվեց 237 Հ. Թ. Yaqubi, II, 489: Թաբարին Հիշում է սպանության ամիսը Ռամադան 237 Հ. Թ. (26 փետրվարի — 26 մարտի 852 ). Tabari, IX, 187: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

182 *Աշոտի որդի Բագարատ - Բագարատ Աշոտի որդի: Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 79:*

183 *Սամառա - Տե՛ս Գինավարի, ծնթգր. 19:*

184 *Բռնի տիրացողներ (մուտագալլիբ) - Ապստամբ, բռնացող:*

185 *Ալ-Ալա իբն ԱՀմադ - Ալ- Ալա իբն ԱՀմադ ալ-Ազդին Արմինիայի կառավարիչ է եղել 865-866 թվականներին: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):*

186 *Տարոն (Թարուն) - Տարոնը այս շրջանում բացառիկ նշանակություն ստացավ, քանի որ Հայաստանի և ամբողջ Արմինիայի իշխանաց իշխանի գլխավոր տիրույթն էր և այստեղ էր նրա նստավայրը: (Իբն ալ-Ասիր, էջ 382):*

187 *Բուղա ալ-Քաբիր (ավագ) — Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 149:*

188 *Բաղեշ (Բագլիս) - Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 59:*

189 *Մուսա իբն Զուրարա - Մուսա իբն Զուրարան Արղնի և Բաղեշի արաբ ամիրն էր: 850-ին ընդՀարվեց Բագարատ Բագրատունու և Աշոտ Արծրունու ուժերի Հետ ու պարտվեց, իսկ 851-ին զգալով խալիֆայության կողմից գալիք վտանգը, միացավ Հայ ապստամբներին: (Իբն ալ-Ասիր, էջ 381):*

190 *Գագիկի որդի Համադասպի որդի Աշոտ - Աշոտ որդի Համդայի, այսինքն Համադասպի: Սա Վասպուրականի իշխան Աշոտ Արծրունին է, որը Բագարատ Բագրատունու Հետ 850-852 թվականների ապստամբության երկու գլխավոր ղեկավարներից էր: Նկան ամրոցում Համառ դիմադրությունից Հետո, Հանձնվեց արաբներին և տարվեց Սամառա: 859 -ին վերադարձավ Վասպուրական, վերստացավ իր Հողատիրական իրավունքները և իշխեց մինչև մաՀը (875): (Իբն ալ-Ասիր, էջ 382):*

191 *Աղբակ (ալ-Բակ) - Աղբակը Արծրունիների տոՀմական ժառանգական ոստանն էր: Այստեղ էր նրանց Ադամակերտ (Հադամակերտ) կենտրոնը և տոՀմական*

գնրեոսանոց Ս. Խաչ վանքը: (Իբն ալ-Ասիր, էջ 382):

192 Ամր իբն ալ-Աս – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 16:

193 Ֆուսթաթ – Արար նվաճողների կողմից Եգիպտոսում հիմնված առաջին քաղաքը: Այն հիմնվել է Նեղոս գետի արևելյան ափին հունա-եգիպտական Բաբելոն քաղաքի հարևանությամբ: Ֆուսթաթ բառի ծագումը հստակ չէ, հավանական իմաստներից մեկն է «վրան», քանի որ համարվում է, որ քաղաքը ստեղծվեց այն վայրում, որտեղ զորավար Ամր իբն ալ-Ասի վրանն էր խփված: Բացի այդ ինքը՝ Ֆուսթաթն էլ սկզբում ընդամենը ռազմական ճամբար էր և հետագայում վերածվեց ընդարձակ քաղաքի:

Ներկայում թե՛ Ֆուսթաթի և թե՛ հին Բաբելոնի տարածքը մաս են կազմում Կահիրեի, որպես նրա մի թաղամասը: (al-Fustat, J. Jomier, EOI, CD-ROM, (II: 957b)):

194 Այն Շամս (Հելիոպոլիս) – Քաղաք է Եգիպտոսում: Հին եգիպտական անունը «Օն» էր, որին հույները կոչեցին Հելիոպոլիս, քանի որ հայտնի էր Արևի տաճարով, վերջապես արաբները այն թարգմանաբար կոչեցին Այն Շամս (Արևի աչքը, կամ Արևի աղբյուրը): (Ayn Shams, C. H. Becker, EOI, CD-ROM, (I: 787b)):

195 Վարդանի շուկա (Սուկ Վարդան) – Հին Կահիրեում (Ֆուսթաթ) գտնվող շուկան, որ Վարդան Հայի անունով է կոչվում:

Արաբ պատմիչները Վարդան ալ-Ռումի (Հոռոմի Վարդան) անունով են նրան կոչում, որովհետև նա Հայաստանի բյուզանդական մասից էր ու նախապես ծառայել էր բյուզանդական բանակների մեջ: Հայ պատմիչներն ու բյուզանդացի հեղինակները նրա մասին չեն խոսում:

Եգիպտոսի աշխարհակալ Ամր իբն ալ-Ասի ազատագրյալ գերին էր Վարդանը: Նա ընկերացավ Ամրին Եգիպտոսի գրավման ժամանակ, որպես նրա դրոշակակիրը, և գնահատվեց իր ռազմական ու վարչական գործունեությամբ: Ամրի մահից հետո Մուավիայի կողմից կարգվեց Եգիպտոսի հարկապետ, բայց շուտով պաշտոնազուրկ արվեց: Բալազուրին ավանդում է, թե Մուավիան հրամայեց նրան ծանրացնել ղպտիների վրա դրված հարկը, բայց Վարդանը մերժեց, պատճառաբանելով, թե չի կարելի այդ անել առանց խախտելու փոխադարձ համաձայնությամբ ստորագրված հաշտության պայմանագիրը:

Իբն Աբդ ալ-Հաքամը հաղորդում է, թե Ֆուսթաթ քաղաքի մեջ Ամրը, իբրև ավատ, Վարդանին տվեց մի հողամաս, որը արաբ պատմագրի նկարագրածով ընդարձակ մի կալված էր:

Երբ Ամրը սկսեց կառուցել Ֆուսթաթը, Վարդանն օժանդակեց նրան. նա շինեց մի շուկա, որը կոչվեց իր անունով: (Հակոբ Նալբանդյան. Արաբական աղբյուրները, էջ 177-178):

196 Կիրաթ – Այն Եգիպտոսում հավասար էր 1/16-րդ դիրհեմի: (Хинц, Меры и веса, стр. 12):

197 Հերակլի որդի Կոստանդին – Տե՛ս նաև Կոստանդին բռնակալ (Բալազուրի, ծնթգր. 75):

198 Մտնուել – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 11:

199 Սավադ – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 11:

200 Աբու Բաքր ալ-Սիդդիկ – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 33:

201 Հիրա – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 19:

202 Անսարներ – Նշանակում է «աջակիցներ, օգնողներ». այսպես են կոչվում այն մարդիկ, որոնք աջակցել են Մուհամմադին և նրա հետևորդն են եղել դեռևս Մեքքայում ու նրա հետ միասին գաղթել Մադինա: Երբեմն ասում են «Անսար ալ-Նաբի» մարգարեի աջակիցներ: (al-Ansar, W. Montgomery Watt, EOI, CD-ROM, (I: 514a)).

203 Կադիսիյա – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 10:

204 Ռուստամ – Սասանյան բանակի հրամանատարը Կադիսիյայի ճակատամար-

տում: Ռուստամը մարտում սպանվեց:

205 Բահուրասիր - ալ-Մադաին, Տիզրոն:

206 Պարսից թագավոր Հազկերտը — Խոսքը Հազկերտ Գ-ի (632-651) մասին է:

207 Հուլուան — Հնագույն քաղաք Միջագետքի և Իրանի միջև: Այն գտնվում էր Բաբելոնիայի և Մարաստանի սահմանին: Հազկերտ Գ-ը Կադիսիյայի հայտնի ճակատամարտում արաբներից պարտվելուց և Տիզրոնից իր արքունիքը դուրս բերելուց հետո, մի կարճ ժամանակ ապաստան գտավ Հուլուանում, նախքան դեպի արևելք հեռանալը: (Hulwan, L. Lockhart, EOI, CD-ROM, (III: 571b)):

208 Ջալուլա - Քաղաք Իրաքում (Բաբելոնիա): Գտնվում է Տիգրիսից արևելք: Դեպի Խորասան տանող գլխավոր ճանապարհի վրա գտնվող կայաններից մեկն էր: (Djalula, M. Streck, EOI, CD-ROM, (II: 406b)).

209 Ջալուլայի ճակատամարտ — Ճակատամարտ 637 թվականի վերջին, որի ժամանակ արաբները պարտության մատնեցին Սասանյաններին: (Djalula, M. Streck EOI, CD-ROM, (II: 406b)):

210 Խանիկին — Քաղաք է Իրաքում: Խալիֆայության ժամանակ ոչ մեծ քաղաք էր և գտնվում էր Բաղդադից Խորասան ճանապարհի վրա: (Khanikin, P. Schwarz, EOI, CD-ROM, (IV: 1024b)):

211 Ջիբալ — կամ Ջաբալ. Տե՛ս Վակիդի, ծնթգր. 13:

212 Ջարիր - Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 26:

213 Կաֆիզ (ցորենի) - Տե՛ս Աբու Յուսուֆ. ծնթգր. 27:

214 Հաջջաջ — Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 32:

215 Սիջիստան — Տե՛ս Վակիդի, ծնթգր. 12:

216 Ուշր — Ուշրը, այսինքն տասանորդը, հողահարկի թեթև տեսակն էր: Ուշր էին վճարում մահմեդական հողատերերը և սահմանամերձ շրջանների բնակիչները, ինչպես օրինակ, արաբաբյուզանդական Աահմանային գոտում: A. Grohmann, Ushr, Shorter Enc. of Islam, p. 610-611. (Իբն ալ-Ասիր, էջ 383):

217 Նիսֆ ուշր — Կես ուշր:

218 Նեհավենդ - Քաղաք Արևմտյան Իրանում, Զագրոսի լեռներում: Մտնում էր Ջիբալ նահանգի մեջ: Այս բնակավայրի մոտ՝ 642 թվականին տեղի ունեցավ ճակատամարտ, որը վերջնականապես որոշեց Սասանյան Իրանի ճակատագիրը: (Nihawand, V. Minorsky, EOI, CD-ROM, (VIII: 23a)):

219 Ռեյ — Տե՛ս Վակիդի, ծնթգր. 10:

220 Կումիս - Փոքրիկ շրջան միջնադարյան Իրանում, որն ընկնում է Ալբուրս լեռնաշղթայից հարավ, այն գտնվում է Ռեյ-Խորասան ճանապարհի վրա: (Kumis C. E. Bosworth, EOI, CD-ROM, (V: 377a)):

221 Ղազի - Արաբերեն նշանակում է մարտիկ, զինվոր, կամ ձգտում ունեցող: Նկատի է առնվում «ռազզիայի» կամ «ղազվի», այսինքն «անհավատների դեմ արշավանքի» ակտիվ մասնակիցներին: Հետագայում այս բառը վերաճեց պատվավոր տիտղոսի: (Ghazi, I. Melikoff, EOI, CD-ROM, (II: 1043b)):

222 Սարատ — Սարահ կամ Սարատ ջրանցքը թափվում էր Տիգրիս գետը և հենց այդ տեղում էր կառուցվել Բաղդադը (Իբն ալ-Ասիր, էջ 376): Հավանաբար տվյալ դեպքում խոսքը այդ գետի վրա եղած նույնանուն մի բնակավայրի մասին է: (Վ. Տ.-Ղ.):

223 Շիզ - Հին իրանական ատրուշանի և բնակավայրի անուն, որը գտնվում է Ուրմիա լճից հարավ-արևելք՝ Ատրպատականում, ենթադրաբար համարվում է Զրադաշտի ծննդավայրը: (Shiz, C. E. Bosworth, EOI, CD-ROM, J. Ruska, (IX: 490a)):

224 Բաղասական (Բալասաջան) - Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 146:

225 Մուղան (Մուկան) - Գավառ Մեծ Հայքի Արցախ աշխարհում: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 888):

[226] Իսնադ – Որևէ վկայություն, կամ ավանդություն փոխանցելու համար վերջինիս իսկությունը փաստելու համար թվարկվող հեղինակությունների անվանաշարք: Հիջրայի առաջին դարում դրա անհրաժեշտությունը մեծ չէր. բայց հետագայում իսնադը ավելի ու ավելի կարևոր դարձավ: (Isnad, J. Robson. EOI. CD-ROM, (IV: 207a)):
[227] Մուղան – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 225:
[228] Վարդանակերա – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 52:
[229] Բարեկի ապստամբությունը – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 20:
[230] Բարզանդ – Մի գյուղաքաղաք է Արդաբիլի շրջանում: (Barzand. R. N. Frey, EOI. CD-ROM, (I: 1072a)):
[231] Մարաղա – Ատրպատականի հին մայրաքաղաքը: Շնորհիվ առատ ջրամատակարարման ունի առատ բուսականություն: Գտնվում է Ուրմիա լճից 20 մղոն հեռավորության վրա: (Maragha, V. Minorsky, EOI, CD-ROM, (VI: 498a)):
[232] Մարանդ – գյուղաքաղաք է Ատրպատականում, Թավրիզից 40 մղոն դեպի հյուսիս, Թավրիզից դեպի Արաքս գետը տանող ճանապարհի կեսին: (Marand, V. Minorsky, [ C. E. Bosworth], EOI, CD-ROM, (VI: 504a)):
[233] Բուղա Կրտսեր – Բուղա ալ-Սաղիր (Բուղա Կրտսեր) կամ Բուղա ալ-Շարաբի (Բուղա Բաժակակիր): Թյուրք զորավար, որին պետք չէ շփոթել նույն Բուղա անունով իրեն ժամանակակից զորավարի հետ, որը արշավեց Հայաստանի վրա: Բուղա Կրտսերը Մուտավաքքիլի հրամանով կռվեց Ատրպատականի ապստամբների դեմ, սակայն հետո սեղադրեց խալիֆային այն բանում, որ նա իրր փորձում էր սահմանափակել թյուրք պահակազորի ազդեցությունը և, ի վերջո, կազմակերպեց նրա սպանությունը: Դրանից հետո էլ արքունիքում ունենալով հզոր դաշնակիցներ, նա պահպանում էր իր հզորությունը, սակայն Մուտավաքքիլի որդին՝ ալ-Մուտազդ խալիֆան, 866 թվականին բազմելով գահին, մտադրվեց հաշվեհարդար տեսնել Բուղա Կրտսերի հետ: Նա զրկեց լիազորություններից ու առանձնաշնորհումներից իր հոր սպանողին, ապա 868 թ. կարողացավ թունավորել ու սպանել նրան: (Bugha al-Sharabi, D. Sourdel, EOI, CD-ROM, (I: 1287b)):
[234] Ուրմիա – Քաղաք Պարսկահայաստանում, Ուրմիա լճի արևմտյան կողմում, լճափից 22 կմ արևմուտք, Շահեր գետի ձախ ափին: (ՀՀՏՏՏ, հ. 5, էջ 214):
[235] Դավրեժ (Տարրիզ) – Ուշ շրջանում Ատրպատականի մայրաքաղաքը: Արաբական տիրապետության շրջանում Տարրիզը ոչ մեծ բնակավայր էր մինչև 9-րդ դարը, երբ ըստ Բալաձուրիի և այլ պատմիչների, Ռավվադ ալ-Ազդին և ուրիշներ այստեղ կառուցապատումներ կատարեցին: (Tabriz, V. Minorsky – [C. E. Bosworth], (Sheila S. Blair) EOI, CD-ROM, (X: 41b)):
[236] Մինբար – Գետնից բարձր ամբիոն, կամ հարթակ, որի վրա նստած վիճակում հանդիսավոր հայտարարություններ են արվում մահմեդական համայնքին և աղոթքներ են ասվում: Հետագայում դրանք դրվեցին մզկիթների ներսում: Դրանք կարող էին նաև շարժական լինել: (Minbar, G. S. P. Freeman-Greenville, EOI, CD-ROM, (VII: 73a)):
[237] Նարիզ գյուղ – Յակուտը գրում է. «փոքր քաղաք է Ատրպատականում, Արդաբիլի մարզում»: (Տե՛ս Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 117):
[238] Մարջ – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 12:
[239] Հուր – Հեր գավառը:
[240] Խոյ – Քաղաք Պարսկահայաստանում, Ուրմիա լճից հյուսիս, Կոտուր գետի միջին հոսանքի ձախ կողմում: (ՀՀՏՏՏ, հ. 2. էջ 768):
[241] Սալմաստ (Սալմաս) – Քաղաք Մեծ Հայքի Պարսկահայք աշխարհի Զարեհավան գավառում, Ուրմիա լճի հյուսիս-արևմտյան կողմում, Սալմաստ գետի բարեբեր հովտում: (ՀՀՏՏՏ, հ. 4, էջ 471):
[242] Հադիսա – Բալաձուրի, ծնթգր. 67:

243 *Բաջարմա – Բաջարմա, կամ Բաջարմակ անունով գավառը Աբբասյան խալիֆայության օրոք գտնվում էր Տիգրիս գետից արևելք, հյուսիսից Փոքր Զաբի և հարավից Ջաբալ Համրինի միջև: Միջնադարում այս գավառի գլխավոր քաղաքը Քիրքուքն էր: Բաջարմա անունը ծագում է արամեական Բեթ Գարմա և պահլավական Գարմական անվանումներից: (Badjarma, M. Streck, EOI, CD-ROM, (I: 864a)):*

244 *Աբու Հանիֆա – Աբու Հանիֆա ալ-Նումանը կրոնական իրավագետ էր, ապրել է 699-767 թթ-ին: Նրա անունով է կոչվում մահմեդական իրավագիտության չորս ուղղություններից (մաղհաբներից) մեկը՝ հանիֆիական, կամ հանաֆիական: (Abu Hanifa al-Numan, J. Schacht, EOI, CD-ROM, (I: 123a)): Տե՛ս նաև Աբու Յուսուֆ, ծնթգր. 14:*

245 *Մսխալ (միսկալ) – Մսխալը ընդունված է համարել 4.464 գրամ, բայց սա ըստ երկրի և դարաշրջանի փոփոխություններ է կրել (Хинц, Месы и веса, стр. 13):*

246 *Կարատ (կիրաթ) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 196:*

247 *Լիտր (ռաթլ) – Վաղ մահմեդական շրջանում ռաթլը (լիտր) Մեքքայում հավասար էր 1, 5 կգ-ի: (Хинц, Меры и веса, стр. 34):*

248 *Ունցիա (ուկիյա) – Ուկիյան ռաթլի 1/12-րդ մասն է: (Хинц, Меры и веса, стр. 34):*

249 *Հաջջաջ իբն Յուսուֆ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 32 :*

250 *Մերձավորներ (Սահաբա) – Եզակի՝ սահաբի, հոգն. սահաբա, կամ ասհաբ: Սրանք Մուհամմադ մարգարեի մերձավորներն են, կամ ամենամոտ զինակիցները: Մարդիկ, որոնք վճռական դեր են խաղացել իսլամի պատմության մեջ: Նրանք նաև համարվում են Մուհամմադի արտահայտությունների, արարքների ու ցուցումների արժանահավատ փոխանցողներ: Հենց նրանց արարքներն ու խոսքերն էլ ընդօրինակման արժանի են համարվում, մանավանդ մահմեդական ծեսերի առումով: (Sahaba, M. Muranyı, EOI, CD-ROM, (VIII: 827b)):*

251 *Նախամահմեդական շրջան (ջահիլիյա) – Մի բառեզր, որը գրեթե բոլոր իր իմաստներով հակադրվում է իսլամ բառին: Այն նշանակում է Արաբիայի վիճակը նախքան իսլամը, նախքան Մուհամմադ մարգարեի առաքելությունը, հեթանոսական շրջանը: «Ջահիլ» բառին տրվում են տարբեր բացատրություններ, այդ թվում «հիմար», «տգետ», «անօրեն», «բարբարոս» և այլն: (Djahiliyya (Ed.), EOI, CD-ROM, (II: 383b)):*

252 *.... դինարները ռումի էին – Այսինքն ոսկեդրամները բյուզանդական էին:*

253 *... դիրհեմները խոսրովական – Իսկ արծաթե դրամները պարսկական:*

254 *... Հիրայի քրիստոնյա (իբադ) ցեղերը – Տե՛ս Հիրա, Աբու Յուսուֆ, ծնթգր. 19:*

255 *Զայդ իբն Սաբիտ ալ-Անսարի – Զայդ իբն Սաբիտը (մոտ. 615 – մոտ. 665) Մուհամմադի քարտուղար-գրագիրն էր, որը կազմեց Ղուրանը գրավոր տեսքով: Զարգացած, մի քանի լեզուների տիրապետող, անձնավորություն էր: Մուհամմադի մահվանից հետո Աբու Բաքր և Օմար խալիֆաները հանձնարարեցին նրան կազմել Ղուրանի ամբողջական տեքստը: Այս գործը իր օգնականների հետ Զայդ իբն Սաբիտը ավարտին հասցրեց արդեն հաջորդ խալիֆայի՝ Օսմանի օրոք, 650 թվականից հետո, և խալիֆան այն հայտարարեց որպես Ղուրանի միակ ճշգրիտ և բոլոր մահմեդականների համար պարտադիր օրինակ: (Ислам, энц. Словарь, стр. 72-73).*

## ՅԱԿՈՒԲԻ
## (մահ. 897)

*Աբու-լ-Աբբաս Ահմադ իբն Աբու Յակուբ իբն Ջաաֆար իբն Վահբ իբն Վադիհ ալ-Քաթիբ ալ-Աբբասի ալ-Յակուբին պատկանում էր բարձրաստիճան պաշտոնյաների մի հին ընտանիքի: Նրա նախնիներից Վադիհը եղել է Աբբասյանների ազատագրյալ ստրուկ (մաուլա), որի պատճառով կոչվել է ալ-Աբբասի: Ամնսուր խալիֆայի օրոք եղել է Հայաստանի (Արմինիա), ապա Եգիպտոսի կառավարիչ, սակայն իր շիայական գաղափարների համար կյանքից զրկվեց: Շիայական տրամադրությունները շարունակվեցին հարատևել այս ընտանիքի մեջ մինչև մեր հեղինակը, որի հայրն ու պապը եղել են փոստային գերատեսչության բարձրաստիճան պաշտոնյաներ:*

*Յակուբին ծնվել է Բաղդադում, սակայն փոքր հասակին հեռացել է և երկար ժամանակ ապրել Հայաստանում, ապա Խորասանում, ուր ծառայել է Թահիրինների մոտ և նրանց անկումից (873) հետո եղել է Հնդկաստանում ու Պաղեստինում: Նա տեսել է Աբբասյանների թուլացումը 860-ական թվականներին, իսկ Թուլունինների օրոք (869-905) ապրել է Եգիպտոսում, ուր վայելել է իշխող տոհմի հովանավորությունը: Ապրել է նաև Մաղրիբում և այստեղ էլ մահացել ամենայն հավանականությամբ 897 թվականին:*

*Մեզ են հասել ալ-Յակուբիի երեք երկեր: Կարևորությամբ առաջինը «Պատմությունն» (Տարիխ) է, որն իր լայն ընդգրկումով գերազանցում է իր նախորդներին, ընդգրկելով մինչև անգամ հյուսիսի ժողովուրդներին ու չինացիներին, դրանով իսկ, այս երկը կարող է համարվել պատմական հանրագիտարան:*

*Ինչպես ինքը՝ հեղինակն է նկարագրում. նա «համառոտ» կերպով հաղորդում է աշխարհի ծագման ու պատմության, այդ թվում, իսրայելացիների, ասորեստանցիների, բաբելոնացիների, հնդիկների, հույների, հռոմեացիների, պարսիկների, չինացիների, եգիպտացիների, եմենցիների ու ասորիների մասին: Իսրայելացիներին անդրադառնալիս նա հաճախ մեջբերում է եբրայական ս. Գիրքը, որը հավանաբար կարդացել է արաբերեն՝ հունարեն ու ասորերեն միջնորդ թարգմանությունների միջոցով, իսկ երբ նկարագրում է Հիսուս Քրիստոսի կյանքը, մեջբերումներ է կատարում Նոր Կտակարանից: Նա ընդգծում է իր նկարագրած ժողովուրդների մշակութային նվաճումները: Յակուբիի «Պատմության» առաջին հատորն ավարտվում է նախա-*

մահմեդական Արաբիայի կրոնական ու մշակութային կյանքին վերաբերող ակնարկով:
Երկրորդ հատորի զգալի մասը նվիրված է Մուհամմադ մարգարեի կյանքին, որից հետո տրվում է Իսլամի պատմությունը՝ ըստ առանձին խալիֆաների գահակալման: Այսպես, շարադրում է Աբու Բաքրի, Օմարի, Օսմանի դահակալման տարիները, հատուկ ուշադրություն հատկացնելով Ալի իբն Աբու Թալիբին ու նրա որդուն՝ Հասանին: Այնուհետև շարադրում է Մուավիայի և նրա հաջորդ Օմայանների, ապա՝ Աբբասյանների պատմությունը: Վերջին խալիֆան, որին նա անդրադառնում է ալ-Մուտամիդն է (մահ. 892):
Յակուբին իր պատումին տալիս է գեղարվեստական ոճ, մեջբերում է հատվածներ նամակներից, իր տեքստում ներառում է ճառեր ու ցանկեր:
Նա հայտնի է որպես առաջին խոշոր պատմիչներից մեկը, սակայն ունի նաև մի աշխարհագրական երկ, որը կոչվում է «Գիրք երկրների» (Քիտաբ ալ-Բուլդան): Սա մինչև օրս հայտնի է այն ձեռագրով, որը բերվել է Արևելքից Ս. Պետերբուրգի պրոֆեսոր Ա. Մուխլինսկու (1808–1877) ձեռքով և այժմ գտնվում է Մյունխենում: Երկրորդ օրինակը պատկանել է արևելագետ Ֆ. Քերնին (1874–1921) և ապա տրվել Պրուսիական պետական գրադարանին, սակայն ցայժմ չի ուսումնասիրված: Յակուբիի աշխարհագրությունը գրվել է մոտավորապես 891 թվականին Եգիպտոսում և մեզ է հասել ոչ ամբողջական վիճակում:
Յակուբիի աշխարհագրությունը Իբն Խորդադբեհի և Կուդամա իբն Ջաաֆարի աշխատությունների նման, վարչաաշխարհագրական տեղեկատու է: Սակայն տարբեր երկրներում կատարած դիտումները մեծ չափով նպաստեցին. որ նրա աշխատության մեջ ինքնուրույն դիտողությունները մեծ տեղ գրավեն: Դա մի գրական շատ արժեքավոր հուշարձան է:
Այս երկը հրատարակված է հոլանդացի Դե Գույեի հայտնի մատենաշարում (Bibliotheca Geographorum Arabicorum) 1892-ին՝ նրա յոթներորդ հատորում: Ֆրանսիացի Գ. Վիետը այն թարգմանել է ֆրանսերեն, օժտել ծանոթագրություններով:
Նրանից օգտվել և մեջբերումներ են արել Իդրիսին, Յակուտը, Աբու-լ-Ֆիդան:
Ուստի Յակուբին թեև ունի պատմական շատ արժեքավոր երկ, այնուհանդերձ նա առաջին հերթին աշխարհագրագետ է համարվում:
Յակուբին իր երկը սկսում է Սավադի (Միջագետք) նկարագրությամբ, ինչպես իր նախորդ Իբն Խորդադբեհն է անում: Հակիրճ առաջաբանից հետո, նա սկսում է Բաղդադի մանրամասն նկարագրությամբ, որը բացառիկ նշանակություն ունի, քանի որ առաջին ման-

*րաման նկարագրությունն է Աբբասյանների նոր մայրաքաղաքի: Ապա նկարագրում է Աբբասյանների ժամանակավոր մայրաքաղաք (836-892) Սամառան:*

*Միջագետքի մասին խոսելուց հետո անցնում է պետության չորս բաժինների նկարագրությանը: Արևելքի բաժնում նկարագրում է իրանական նահանգները (Սպահան, Ռեյ, և այլն), Մավերաննահրը (Բուխարա, Սամարղանդ և այլն):*

*Հարավի նկարագրության մեջ ընդգրկված են Արաբիայի տարբեր մասերը (Մեքքա, Մադինա, Եմեն):*

*Յակուբիի ձեռագրում երրորդ քառորդի՝ հյուսիսի բաժնում կա մի մեծ պակասող մաս, որի մեջ է եղել նաև Հայաստանը:*

*Պակասում է նաև չորրորդ քառորդի (արևմուտք) սկիզբը և մնում է Բյուզանդիայից մի քանի տող միայն, ինչպես նաև Ասորիքի, Նուբիայի, Բահրայնի և Հյուսիսային Աֆրիկայի (Մաղրիբ) մասին և Իսպանիային (Անդալուս) վերաբերող մասը: (Տե՛ս նաև աշխարհագրագետների բաժնում)*

**Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից, Yaqubi, Tarikh, I–II, Beyrouth, 1960:**

**Արամ Տեր-Ղևոնդյան**

(Крачковский, IV, стр. 151-154, Х. А. Р. Гибб, Арабская литература, Москва, 1960, стр. 129, *Yaqubi, Muhammad Qasim Zaman, Encyclopaedia of Islam v. XI, pp. 257–258, )*

*Տե՛ս նաև.*

- Ibn Wadhih qui dicitur al-Jaqubi Historiae, I-II, ed. M. Th. Houtsma, Lugd. Bat.. 1883.
- Jakubi. Les pays. Traduction par G. Wiet. Le Caire, 1937.

### ՅԱԿՈՒԲԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ (ՏԱՐԻԽ)

### ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ
### ՆՈՅԸ

*էջ 14*

*Եվ նավը երկրի շրջանը կատարեց, մինչև որ Հասավ Մեքքա և Տան (սրբազան) չուրջը մեկ շաբաթ պատվեց: Ապա Հինգ ամիս անց ջուրը քաշվեց: Այն (ջրՀեղեղը) սկիզբ էր առել Այար (մայիս) ամսից տասնյոթ օր մնացած և տևել մինչև Տիշրին Բ (նոյեմբեր) ամսից տասներեք օր մնացած:*

*Պատմվել է, որ Նոյը (ՆուՀ) տապան նստեց Ռաջաբ ամսվա առաջին օրը և կանգ առավ Արարատ (Ջուդի) լեռան վրա ՄուՀառամ ամսին, որն առաջին ամիսը Հաշվեց, սակայն [սուրբ] Գրքի ժողովուրդը այս բանում տարակարծիք է: Երբ Արարադի վրա կանգ առավ, որը Մոսուլի կողմերում մի լեռ է, բարձրյալն ԱլլաՀը Հրամայեց երկնքից իջած ջրերին ու դրանք վերադարձան այնտեղ, որտեղից եկել էին: Նա Հրամայեց ու Հողը կուլ տվեց ջրերը:*

*Նոյը տապանի կանգ առնելուց Հետո չորս ամիս մնաց, ապա մի ագռավ ուղարկեց, որպեսզի ջրերի վիճակն իմանա և գտնելով որ դիակները ծփում են ջրերի երեսին, չչարժվեց: Ապա մի աղավնի ուղարկեց, որը բերեց ձիթենու տերև և նա իմացավ, որ ջրերն իջել են: Այար (մայիս) ամսի քսանյոթին նա իջավ և նրա տապան մտնելուց մինչև դուրս գալը տևել էր լրիվ մեկ տարի և տաս օր: Երբ նա և իր ընտանիքը իջան երկիր, կառուցեցին մի քաղաք, որը կոչվեց Սամանին (ութսուն):*

*էջ15-16*

*Նոյի որդի Հաբեթը (Յաֆիս) կանգ առավ արևելքի ու արևմուտքի միջև: Նա ծնեց Գոմերին (Քաումար), Թոբելին (Տուբալ), Մադային (Մաշ), Մոսոքին (Մաշիջ) ու Մագոգին (Մաջուջ): Իսկ Գոմերը ծնեց սլավոններին (սակալիբա), Թորելը ծնեց Բուրջանին (բուլղար), Մադան (Մաշը) ծնեց թուրքերին ու խազարներին և Մոսոքը իշբաններին (իսպանացիք): Մագոգը ծնեց Գոգին ու Մագոգին, որոնք երկրի արևելքում էին թուրքերի կողմերում: Սլավոնների (սակալիբա) ու*

*Բուրջանի հաստատված երկիրն էր Ռումի (Հոռոմների) երկիրը: Սրանք են Հաբեթի որդիները:*

## ՀՈՌՈՄՆԵՐԻ ՔՐԻՍՏՈՆԵԱՑԱԾ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԸ

*Լջ 153*

*Հոռոմների առաջին թագավորը, որ հունական գրույցներից (սակարա) անցավ քրիստոնեության Կոստանդինն էր: Բանն այն է, որ երբ նա պատերազմի մեջ էր, երազում տեսավ որ նիզակներ են իջնում վրան խաչերով: Երբ առավոտը բացվեց, նա իր [զորքի] նիզակների վրա խաչեր դրեց և կռվեց ու հաղթեց: Սա եղավ նրա քրիստոնեացման պատճառը և ընդունելով քրիստոնեական կրոնը կառուցեց եկեղեցիներ ու եպիսկոպոսներ (ուսկուֆ) հավաքեց ամեն կողմերից որպեսզի հաստատեին քրիստոնական կրոնը: Սա նրանց առաջին ժողովն էր: Նիկիայում[1] հավաքվեցին երեք հարյուր տասնութ եպիսկոպոս և չորս պատրիարք (բաթրաք)՝ Ալեքսանդրիայի պատրիարքը, Հռոմի պատրիարքը, Անտիոքի պատրիարքը և Կոստանդնուպոլսի պատրիարքը:*

*Լջ 154*

*Ապա իշխեց Թեոդոսիոս (Սիուդուսուս) Մեծը, որի օրոք տեղի ունեցավ քրիստոնյաների երկրորդ ժողովը[2]: Կոստանդնուպոլսում հավաքվեցին հարյուր հիսուն եպիսկոպոսներ ու երեք պատրիարքներ, իսկ Հռոմի պատրիարքը չեկավ: Նրանք հաստատեցին հավատո հանգանակը (սահիֆատ ալ-ամանա, հավատարմության գիր), ճանաչեցին սուրբ Հոգին: Հավատո հանգանակը հետևյալն է. «Հաւատամք ի մի Աստուած, Հայր ամենակալ, յարարիչն երկնի և երկրի, երևելեաց և աներևութից և ի Տէր Քրիստոս, որդի Աստուծոյ, ծնեալ (նախքան ժամանակը), լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ, յԱստուծոյ ճշմարտէ, ծնունդ և ոչ արարած, նոյն բնութենէ Հօր, որով ամենայն ինչ եղև, որ յաղագս մեր մարդկան և վասն մերոյ փրկութեան իջեալ ի յերկինս մարմնացաւ, մարդացաւ ի Մարիամայ կուսէն՝ հոգւոյն սրբով: Խաչեալ (մեզ համար, Պիղատոս Պոնտացու օրոք), չարչարեալ, թաղեալ և յերրորդ աւուր յարուցեալ (ինչպես գրքերում կա) ելեալ ի յերկինս, նստաւ ընդ աջմէ Հօր, որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան: Հաւատամք ի սուրբ Հոգին (որը տէր է և Հորից ծագած), որ խօսեցաւ ի մարգարէս: Հաւատամք և ի մի միայն (աշակերտների) առաքելական (սուրբ) եկեղեցի, ի մի մկրտութիւն, ի թողութիւն մեղաց և ի յարութիւն մեռելոց»:*

Ապա բանադրեցին նրան, ով դրանից հետո որևէ բան կավելացներ:

Նրանից հետո իշխեց եղբորորդին՝ Թեոդոս Փոքրը և ապա Վալենտիանոսը: Տեղի ունեցավ քրիստոնյաների երրորդ ժողովը[3], որը հավաքվեց Եփեսոսում (Աֆսուս): Ժամանեցին երկու հարյուր եպիսկոպոսներ, իսկ Նեստորը[4] բոլորին հակադրվելով ասաց՝ Քրիստոսը երկու էություն և երկու բնություն ունի: Նա կատարյալ Աստված է իր էությամբ ու բնությամբ: Հայրը ծնեց Աստծուն և ոչ մարդուն, իսկ մայրը ծնեց մարդուն և ոչ Աստծուն: Ասաց նրան Կյուրեղը (Կիրիլուս)[5]՝ եթե լիներ այնպես, ինչպես դու ասացիր, ապա ով պաշտում է Քրիստոսին, մեղք է գործում, քանի որ պաշտում է հինն ու նորաստեղծը: Իսկ ով թողնում է նրա պաշտամունքը, ապա մեղանչում է, քանզի թողնում է հնի պաշտամունքը նորաստեղծի հետ միասին: Իսկ ով պաշտում է Աստծուն առանց մարդու, ապա նա չի պաշտում Քրիստոսին, քանի որ չի կարելի նրան Քրիստոս կոչել միայն մի կողմով՝ առանց մյուս կողմի: Այս բաները նա պարտադրեց ներկաներին, իսկ Անտիոքի պատրիարքը հակառակվեց: Նեստորն ասաց՝ Անտիոքի պատրիարքն ինձ համաձայն է:

Նեստորը փախավ Իրաք և սկիզբ առավ նեստորականությունը (Նասթուրիյա) Իրաքում: Նրանք իրենց պետը դարձրին պատրիարքի փոխարեն կաթողիկոսին (Ջասլիկ) ու տարակարծություններ եղան այս հարցում: Թեոդոս Փոքրն իշխեց քսանյոթ տարի:

Ապա իշխեց Մարկիանոսը և նրա օրոք չորրորդ ժողովը[6] տեղի ունեցավ: Բանն այն է, որ Թարսիոսը[7] (Եվտիքես)՝ հակոբիկների[8] (Յաակուբիյա) պետն ասաց՝ Քրիստոսն ունի մեկ էություն ու մեկ բնություն: Քրիստոնյաները մերժեցին այն և Կոստանդնուպոլսում հավաքվեց վեց հարյուր երեսուն եպիսկոպոս[9]: Նրանք հակաճառեցին Թարսիոսին և ասացին՝ եթե Քրիստոսը, ինչպես ենթադրում ես, ունի մեկ բնություն, ապա հին բնությունը նույն նորաստեղծ բնությունն է, իսկ եթե հինը նորաստեղծից (մուհադաս) է, ապա այն ինչ մնայուն է ինքը չեղածն է: Սակայն նա ետ չկանգնեց իր ուսմունքից. նրան բանադրեցին և նա գնաց Եգիպտոս՝ Ալեքսանդրիա: Նա բժիշկ էր և այնտեղ էլ հաստատվեց: Մարկիանոսն[10] իշխեց հինգ տարի:

Նրանից հետո իշխեցին Լևոնը (Ալյուն)[11]՝ տասնյոթ տարի, Զենոնը՝[12] տասնութ տարի, ապա Անաստասիոսը (Անասթասիուս)[13], որի օրոք տեղի ունեցավ քրիստոնյաների հինգերորդ ժողովը[14]:

Բանն այն է, որ քրիստոնյա պետերից ոմանք ասացին՝ Քրիստոսի մարմինը երևութական (խայալ) է և ոչ իրական: Այդ պատճառով նրանք հավաքվեցին և ասացին՝ եթե նրա մարմինը երևութական է, ապա նրա գործերը նույնպես պետք է լինեն երևութական, ոչ իրական: Սա ավելի նման է սոփեստների (սուֆասթաիյա) խոսքերին, քան քրիստոնյաներին: Նրանք անիծեցին այսպես ասողներին և

քրիստոնյաներն ազատվեցին նրանցից: Անաստասիոսն իշխեց քսանյոթ տարի:

Ապա իշխեց Հուստինոս (Յուսթիս) Երկրորդը[15] քսանինը տարի և նրա օրոք ծնվեց Մուհամմադը՝ Ալլահի առաքյալը: Ապա իշխեց Հուստինոս Երրորդը[16] քսան տարի, Տիբերիոսը՝ չորս տարի, և Հերակլն[17] ու նրա որդի Կոստանդինը[18]: Նրա օրոք տեղի ունեցավ քրիստոնյաների վեցերորդ ժողովը[19]:

Բանն այն է, որ Կյուրոս (Կուրուս) Ալեքսանդրացին գտնում էր, թե Քրիստոսը մեկ կամք ունի և մեկ գործողություն, ասաց որ սա նման է հակոբիկների կարծիքին: Այս բանի համար հավաքվեցին ու գոհացրին Հռոմի պատրիարքին, որը նամակ (գիր) էր գրել և ներկա չէր: Դրանից հետո քրիստոնյաները ժողով չունեցան: Հերակլի ու Կոստանդինի իշխանությունը տևեց երեսուներկու տարի:

էջ 157

Նրանց թագավորությունը տարածվում էր Եփրատի սահմանից մինչև Ալեքսանդրիա, որն այժմ իսլամի հող է, բացի Ռումի երկրից և այն հողերից, որոնք նրանց ձեռքում են մինչև այժմ:

Նրանց մեծագույն քաղաքներից էին Եդեսիան Ջազիրայի հողում՝ Դիար Մուդարի մեջ, ապա Անտիոքը, ուր կա Պետրոսի աթոռը և Զաքարիայի որդի Հովհաննեսի (Յահիա) աջը Կուսիան եկեղեցում: Սա չորրորդ աթոռն է և ունի մեծ պատրիարք (բաթրաք):

Այն հողերը, որոնք Ռումի թագավորության մեջ էին, ու դարձան իսլամին [ենթակա], հետևյալներն են. Ջազիրա երկիրը, ինչպես Խառանը, Եդեսիան իր գավառներով, Բալիսը, Սամոսատը, Մալաթիան, Ադանան, Տարսոնը: Ապա Կիննասրինի ջունդը, Ավասիմը բոլոր գավառներով: Եմեսայի ջունդը, որի Եմեսա քաղաքը Ռումի թագավորության մեջ հիշատակելի քաղաքներից էր, իսկ Լաոդիկեն (Լադակիա) Եմեսային ենթակա էր: Դամասկոսի ջունդը, որտեղ Ռումի թագավորի նշանակած կառավարիչներ էին Ջաֆնա տոհմի մարդիկ Ղասսան ցեղից: Հորդանանի (Ուրդուն) ջունդը, որը նույնպես նրանցն (հռոմեների) էր և կառավարիչներն էլ Ռումի թագավորի նշանակած Ջաֆնա տոհմի մարդիկ էին Ղասսան ցեղից: Ապա գալիս էր Պաղեստինի ջունդը: [Առանձին նահանգում էին] Տիննիսը, Դամիեթը և Ալեքսանդրիան:

Իսկ նեղուցից (դարբ) այն կողմ կան Սլավոնների, Ալանաց և Ֆրանկների (Իֆրինջ) երկրները: Ռումի երկրում հայտնի քաղաքներ են Հռոմը (Ռումիյա), Նիկիան, Կոստանդնուպոլիսը, Ամասիան, Խարսիանոնը (Խարշանա), Կուռան, Ամորիոնը, Սումալուն, Կալամման, Սալանդուն, Հերակլիան, Սիկիլիան, Ֆալաթնան, հրկիզված Անտիո-

*քը, Հիրնաթան, Մալուխյան, Սնլնկիան, Ամր՞[...], Իկոնիան (Կունիա). Ջաբ՞[...], Բալուսը, Բարա՞[...] և Թեսաղոնիկեն (Սալունիկա):*

## ՊԱՐՍԻՑ (ՖԱՐՍ) ԹԱԳԱՎՈՐՆԵՐԸ

*էջ 158*

*Պարսիկներն իրենց թագավորներին շատ բաներ են վերագրել, որը սակայն ընդունելի չէ: Ինչպես օրինակ չափազանցում են նրանց մարմնի կառուցվածքը, այնպես որ նրանցից ոմանք մի քանի բերան ու մի քանի աչք ունեն, մեկ ուրիշը պղնձե երես ունի, իսկ մյուսի ուսերի վրա լինում են երկու օձեր, որոնք սնվում են մարդկանց ուղեղներով: Նշում են նաև կյանքի տևողությունը և մահվան բացառումը ու նման բաներ, որոնք տրամաբանական չեն և նման են ճշմարտությունից զուրկ զավեշտի: Սակայն պարսիկների խելոք ու բանիմաց մարդիկ, ազնվականների, թագավորների ու դեհկանների զավակները և լավատեղյակ ու կիրթ մարդիկ այս բաները չեն ընդունում, չեն հաստատում և նման բաներ չեն պատմում:*

*Գտել ենք, որ նրանք պարսից թագավորությունն սկսած են համարում Արտաշիր (Արդաշիր) Պապականից: Իսկ իրենց առաջին թագավորները, որոնք Արտաշիրից առաջ են թագավորել, հետևյալներն են. Քեյումարսը (Ծիումարս) յոթանասուն տարի, Հուշանգ (Ուշհանգ) Փիշդադը՝ քառասուն տարի, Թահմուրասը՝ երեսուն տարի, Ջամշիդը (Ջամշադ)՝ յոթ հարյուր տարի, Զոհակը (Դահհաքը)՝ հազար տարի, Ֆերեյդունը (Աֆրիդուն)՝ հինգ հարյուր տարի, Մանուչիհրը (Մանուջիհր)՝ հարյուր քսան տարի, Աֆրասիաբը՝ թուրքաց թագավորը՝ հարյուր քսան տարի, Զովը՝ Թահմասպի որդին (Զութահմասբ)՝ հինդ տարի, Քեյ Կոբադը (Քայ Կուբադ)՝ հարյուր տարի, Քեյ Քաուսը՝ հարյուր քսան տարի, Քեյ Խոսրովը (Քայ Խուսրաու)՝ վաթսուն տարի, Լոհրասպը (Քայ Լուհրասբ)՝ հարյուր քսան տարի, Գոշթասպը (Քայ Բուշտասբ)՝ հարյուր տասներկու տարի, Արտաշիրը (Քայ Արդաշիր)՝ հարյուր տասներկու տարի, Հոմայը (Խումանի) դուստր Բահմանի (Ջահրազադ)՝ երեսուն տարի, Դարեհ (Դարահ) որդի Ջահրազադի՝ տասներկու տարի: Նրան սպանեց Ալեքսանդրը, որը կոչվում է Երկկոտոշավոր (զու-լ-կարնայն) և պարսից թագավորությունը ցրվեց: Իշխեցին թագավորներ, որոնք կոչվում էին ցեղերի թագավորներ (մուլուք ալ-թավաիֆ) և սրանց թագավորության նստավայրը Բալխն էր:*

## ԱՐՏԱՇԻՐ ՊԱՊԱԿԱՆԻՑ ՍԿՍՈՂ ԵՐԿՐՈՐԴ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Լջ 159

Եվ իշխեց Արտաշիրը, որը պարսից առաջին գրադաշտականացած թագավորն էր, իսկ նրա նստավայրը Իսթախրն[20] էր: Նրան չհպատակվեցին Պարսից (Ֆարս) որոշ գավառներ և նա կռվեց ու նվաճեց: Ապա շարժվեց դեպի Սպահան (Իսֆահան), Ահուազ, Միսան, հետո վերադարձավ Պարսք և կռվեց մի թագավորի դեմ, որը կոչվում էր Արտավան (Արդաուան)[21], սպանեց նրան ու կոչվեց Արտաշիր Շահանշահ: Նա կրակատուն կառուցեց Արտաշիր [........] քաղաքում: Հարձակվեց Ջազիրայի, Հայաստանի ու Ատրպատականի վրա, հետո գնաց Իրաքի Սավադը, որը բնակեցրեց: Դիմեց դեպի Խորասան ու նրա որոշ գավառներ գրավեց: Երբ երկիրը հպատակեցրեց, թագավորության ժառանգորդ նշանակեց իր որդուն՝ Շապուհին (Սաբուր)[22], նրան թագադրեց, թագավոր կոչեց: Մեռավ Արտաշիրը, իսկ նրա թագավորելու շրջանը տասնչորս տարի էր:

Իշխեց Արտաշիրի որդի Շապուհը և արշավեց Ռումի երկիրը, բազում քաղաքներ նվաճեց ու հռոմներից մեծ բազմություն գերեց: Կառուցեց Ջունդիշապուր քաղաքը և այնտեղ բնակեցրեց գերեվարված հռոմներին: Հռոմների պետը նրա համար կերտեց Տուստար գետի վրա գտնվող կամուրջը, որի լայնությունը հազար կանգուն (գիրա) էր:

Արտաշիրի որդի Շապուհի օրոք երևան եկավ Մանի իբն Համմազ ալ-Զինդիկը (հերձվածող)[23] և Շապուհին երկվության (դուալիզմի) կոչ արեց, ծաղրելով նրա կրոնը, իսկ Շապուհը հակվեց նրա կողմը: Մանին ասում էր՝ աշխարհը տնօրինողները երկուսն են և դրանք հին են՝ լույսն ու խավարը: Կա երկու արարիչ՝ բարի արարիչը և չար արարիչը:

Լջ 177

Պարսից ամեն մի թագավոր կրում էր Քիսրա (Խոսրով) անունը: Նրան հիշելիս ասում էին Քիսրա Շահանշահ, այսինքն թագավորաց թագավոր (արքայից արքա): Վեզիրը կոչվում էր Բուզուրդֆրամադար, այսինքն գործերը տնօրինող: Նրանց կրոնի սկզբունքների դիտուներ կոչվում էր մոգպետաց մոգպետ (մուբիդան մուբիդ), այսինքն գիտունների գիտուն: Առաջինը, որին այսպես են կոչել Զրադաշտն (Զարադուշտ) էր: Նրանց կրակի վերակացուն էր Հրպետր (Հուբրադ), իսկ փարտուղարը՝ դպրապետ (դաբիրբադ): Նրանց մեծամեծը կոչվում էր սպահպետ (իսբահբադ), այսինքն [զորքի] պետ, իսկ նրանից ստորադասը՝ պատոսպան (փադուսբան), այսինքն թշնամիներին վա-

նող: Երկրամասի պետը կոչվում էր մարզպան (մարզբան). նահանգի պետը՝ շահրիկ (շահրիջ): Պատերազմների պետերը և բանակների զորավարները կոչվում էին ասավիրա. հանցագործություններով զբաղվող պետը՝ շահրիշտ, իսկ դիվանի պետը՝ մարդմարաագ:

## ՋԱՐԲԻ (ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ) ԵՐԿՐՆԵՐԸ

*էջ 178–179*

*Երբ Նոյի որդի Սեմի որդի Արփաքսադի (Արֆախշադ) որդի Եբերի (Աբիր) որդի Փաղեկը (Ֆալիղ) երկիրը բաժանեց Նոյի որդիների միջև, ապա Նոյի որդի Հաբեթի (Յաֆիս) որդի Թոբելի որդի Ամուրի որդիները դուրս եկան Արևելքի կողմերը: Որոշ մարդկանց, որոնց մեջ էր Նաումի որդին, ժառանգական կալված տվեցին ալ-Ջարբի երկիրը հյուսիսային կողմերում:*

*Սրանք տարածվեցին երկրում և մի քանի թագավորություններ կազմեցին, որոնք են՝ Բուրջան, Դելումք, Տարար (Թաբարիստան?), Թայլասան, Գեղան, Ֆիլան, Ալանք, Խազարք, Գիզոյք, և Հայք (ալ-Արման): Խազարները տիրել էին Հայաստանի մեծ մասին, իսկ նրանց թագավորները կոչվում էին խաքան: Սա ուներ Յազիդ Վաղարշ (Բալաշ) կոչված մի տեղակալ (խալիֆա), որն իշխում էր Առանի, Վիրքի, Վասպուրականի ու Սիսականի վրա: Այս երկրները Չորրորդ Հայաստան էին կոչվում և այն նվաճել էր Պարսից թագավոր Կավատը: Ապա տիրացավ Անուշիրվանը հարյուր փարսախի չափ, մինչև Ալանաց դուռը ուր երեք հարյուր վաթսուն քաղաք կար:*

*Պարսից թագավորը նվաճեց Դարբանդը, Թաբարսարանը, Բալանջարը և կառուցեց Կարնո քաղաքը ու բաղում քաղաքներ, որ նա պարսիկների (ահլ փարսի) բնակեցրեց: Ապա խազարները ետ խլեցին այն, ինչ Պարսկաստանը իրենցից նվաճել էր և որոշ ժամանակ այս բոլորը մնաց նրանց ձեռքում: Հետո հոռոմները հաղթեցին ու Չորրորդ Հայաստանի թագավոր նշանակեցին մեկին, որը կոչվում էր Մաուրիան: Նրանք (հայերը) տարբեր իշխանությունների բաժանվեցին, ընդ որում ամեն մի պետը (իշխան) մնում էր իր ամրոցում ու բերդում: Դրանք նրանց հայտնի թագավորություններն են:*

*Ամուրի որդիներից ոմանք ժառանգական կալվածներ ստացան Մավարաննահրում (գետից այն կողմ), ապա բաժան-բաժան եղան, դարձան տարբեր թագավորություններ ու բազում ազգեր: Նրանցից էին՝ ալ-Խատտալ, ալ-Կուադիան, ալ-Ուշրուսանա, ալ-Սուղդ, ալ-Ֆարղանա, ալ-Շաշ, թուրքեր, ալ-Խարլախիյա, ալ-Տաղազղուզ, Քիմաքիյա թուրքեր և Տիրետ (Տուբբատ): Թուրքերի մեջ կան գյուղերի, քաղաքների ու բերդերի տեր մարդիկ, իսկ կան նաև լեռների կատար-*

*ներին և անապատներում ապրողներ, հենց արար բեդևինների նման: Երբ արշավանքի են գնում, ասեն սի վրանից քսան ոտդսիկ է դուրս գալիս, արձակում են ու չեն վրիպում: Նրանց բնակավայրերը Խորասան նահանգի սկզբից հասնում են մինչև Տիբետի ու Չինաստանի լեռները:*

*Իսկ Տիբետը մի ընդարձակ երկիր է, ավելի մեծ, քան Չինաստանը: Նրանց թագավորությունը հրաշալի է: Նրանք լավ պաշտպանված են, իմաստուն և չինացիների նման հմուտ են արհեստների մեջ: Նրանց երկրում կան եղնիկներ, որոնք մշկապորտ են: Կռապաշտ են և ունեն կրակատներ: Խիստ ուժեղ են և ոչ ոք չի կարող պատերազմել նրանց հետ:*

## ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ
## ԱԲՈՒ ԲԱՔՐԻ ՕՐԵՐԸ

*էջ 133-134*

*Աբու Բաքրը դրեց Խալիդ իբն ալ-Վալիդին որ շարժվի դեպի Ասորիք, իսկ Մուսաննա իբն Հարիսային փոխանորդ թողնի Իրաքում:*

*Խալիդը մտավ Դամասկոսի հովիտը (Ղութատ Դիմաշկ), ապա զորքը երկու մասի բաժանեց և ինքը գնաց Հաուրան: Նա շարժվեց դեպի Բուսրա քաղաքը ու կռվեց նրա [բնակիչների] դեմ: Նրանք հաշտություն խնդրեցին, իսկ նա տվեց. գնաց Աջնադին, ուր հոռոմների զորք կար և սաստիկ կռիվ տեղի ունեցավ ու անհավատները ցրվեցին: Աջնադինի ճակատամարտը տեղի ունեցավ շաբաթ օրը Ջումադա Ա ամսի 28-ին, 13 թվականին (30 հունիս 635):*

## ՕՄԱՐ ԻԲՆ ԱԼ-ԽԱԹԹԱԲԻ ՕՐԵՐԸ

*էջ 140-141*

*Դամասկոսի պաշարումը տևեց լրիվ մեկ տարի ու մի քանի օր, ընդ որում Աբու Ուբայդան կանգնել էր Ջաբիայի դռան առջև, Խալիդն՝ Արևելյան դռան առջև, Ամր իբն ալ-Ասը՝ Թումայի դռան առջև, իսկ Յազիդ իբն Աբու Սուֆիանը՝ Փոքր դռան առջև: Երբ Դամասկոսի տիրոջ դրությունը ծանրացավ, լուր ուղարկեց Աբու Ուբայդային հաշտություն առաջարկելով և նրան բացեց Ջաբիայի դուռը: Խալիդը երբ իմացավ, թե Աբու Ուբայդան որոշել է ժողովրդի հետ հաշտություն կնքել և ժողովուրդը նրա հաշտությանը վստահել է, Արևելյան դռան առջև համառ կռիվ մղեց, մինչև որ բռնությամբ նվաճեց: Խալիդն ասաց Աբու Ուբայդային՝ գերեվարիր ժողովրդին, չէ՞ որ ես*

*բռնությամբ եմ մտել: Նա ասաց՝ ոչ, ես նրանց երաշխավորագիր եմ տվել: Մահմեդականները մտան քաղաքը ու հաշտություն կայացավ 14 թվականի Ռաջաբ ամսին (21 օգոստոս – 19 սեպտեմբեր 635):*

*Իսկ Վակիդին պատմել է, որ Խալիդ իբն ալ-Վալիդն է, որ հաշտություն է կնքել և [քաղաքի] եպիսկոպոսին տվել է հաշտության պայմանագիր ու երաշխավորագիր, իսկ Աբու Ուբայդան ընդունել է:*

*Աբու Ուբայդան Ամր իբն Ասին ուղարկեց Հորդանան ու Պաղեստին, բնակիչները բանակ կազմեցին, որպեսզի ետ մղեն Ամրին և նրա ընկերներին: Աբու Ուբայդան Ամրի մոտ ուղարկեց Շուրահբիլ իբն Հասանային, իսկ Աբու Ուբայդան դիմեց հոռոմների զորքի դեմ: Հորդանանը բռնությամբ նվաճվեց, բացի Տիբերիայից, որի ժողովուրդը հաշտության պայմանագիր կնքեց իրենց տներին ու եկեղեցիներին ձեռք չտալու պայմանով: Այս գործի գլուխ (մուտավալլի) էր Շուրահբիլ իբն Հասանան:*

*Երբ հոռոմները լսեցին Աբու Ուբայդայի առաջխաղացման մասին, գնացին Ֆիհլ: Աբու Ուբայդան կազմակերպեց մահմեդականների զորքը, ընդ որում աջ թևը հանձնեց Մուադ իբն Ջաբալին, ձախ թևը՝ Հաշիմ իբն Ուտբային, հետևակը՝ Սաադ իբն Զայդին, իսկ հեծելազորը՝ Խալիդ իբն ալ-Վալիդին: Հարձակվեցին հոռոմները և առաջինը նրանց դեմ ելավ Խալիդ իբն ալ-Վալիդը, Աղյահը պարտության մատնեց հոռոմներին, որոնք հաշտություն խնդրեցին ջիզիա վճարելու պայմանով: Աբու Ուբայդան համաձայնեց և ինքը հեռացավ թողնելով Ամր իբն ալ-Ասին Հորդանանի մնացած մասի վրա: Նա Խալիդին ուղարկեց, առաջապահ զորքի հետ, Բաալբեկ ու Բեկաա և սա գրավեց ու գնաց Եմեսա: Նրան միացավ Աբու Ուբայդան և նրանք Եմեսան ուժեղ կերպով պաշարեցին: Ապա սրանք հաշտություն խնդրեցին ու կնքվեց այն ամբողջ երկրի (նահանգի) համար այն պայմանով, որ հարյուր յոթանասուն հազար դինար խարաջ վճարեն: Մահմեդականները մտան քաղաքը և Աբու Ուբայդան իր պաշտոնյաները ուղարկեց Եմեսայի գավառը:*

*Ապա նա լսեց, որ հոռոմների բռնապետը բոլոր երկրներից զորքեր է հավաքել և իրենց (արաբների) դեմ է ուղարկել անթիվ բազմությամբ: Նա վերադարձավ Դամասկոս և այդ մասին գրեց Օմար իբն ալ-Խաթթաբին, իսկ Օմարը գրեց, որ ինքը դժգոհ է նրա Եմեսայից Դամասկոս վերադառնալուց: Աբու Ուբայդան հավաքեց մահմեդականներին և բանակ դրեց Յարմուքի ափին: Հոռոմների զորքի առաջապահն էր Ջաբալա իբն ալ-Այհամ ալ-Ղասսանին իր ցեղակիցների գնդով: Իսկ Աբու Ուբայդան իր զորքի առաջապահ դարձրեց Խալիդ իբն ալ-Վալիդին, որը բազմաստվածյանների հետ կռվի բռնվեց, բախվեց հոռոմների տեր (հրամանատար) Վահանին և սաստիկ գոտեմարտ տեղի ունեցավ: Նրան օգնության հասան Աբու Ուբայդան*

ու մահմեդականները: Սարսափելի արյունահեղությամբ հակատամարտ էր, որի ընթացքում հռոմեների մեծ բազմություն կոտորվեց և Ալլահը հաղթանակը տվեց մահմեդականներին: Սա տեղի ունեցավ 15 (14 փետրվար 636 – 1 փետրվար 637) թվականին:

Աբու Ուբայդան վերադարձավ Եմեսա, իսկ Խալիդին ուղարկեց հռոմեների ետևից, մինչև որ Հասավ Կիննասրին և ապա Հալեպ, որի ժողովուրդն ամրացավ (դիմադրեց): Եկավ Աբու Ուբայդան ու պաշարեց և նրանք հաշտություն ու երաշխավորագիր խնդրեցին: Աբու Ուբայդան ընդունեց ու գրեց երաշխավորագիր: Նա Մալիք իբն ալ-Աշտարին զորքով ուղարկեց հռոմեների դեմ, որոնք լեռնանցքը փակել էին, սա շատերին կոտորեց ու վերադարձավ:

Աբու Ուբայդան գնաց Հորդանան և պաշարեց Իլիայի ժողովրդին, որը Սուրբ քաղաքն է (Երուսաղեմ): Սրանք դիմադրեցին ու համառեցին: Աբու Ուբայդան Ամր իբն ալ-Ասին ուղարկեց Կիննասրին և Հալեպ, Կիննասրինի ու Մանբիջի բնակչությունը հաշտություն խնդրեց: Նա խարաջ նշանակեց նույն ձևով որ Աբու Ուբայդան Եմեսայում նշանակել էր: Յարմուքի ավարը հավաքել էին Ջաբիայում: Նրանք գրեցին Օմարին և նա պատասխանեց՝ ոչ մի նոր բան մի ձեռնարկեք մինչև Սուրբ քաղաքի նվաճումը:

Երբ հռոմեները Յարմուքում պարտվեցին, Ջաբալա իբն ալ-Այհամը իր ընդով գնաց իր երկիրը: Յազիդ իբն Աբու Սուֆիանը լուր ուղարկեց նրան, թե՝ մնա քո հողի տերը վճարելով խարաջ ու ջիզիա: Ասաց՝ ջիզիան վճարում են օտար գեղջուկները, իսկ ես արաբ մարդ եմ:

Օմարը Աբու Ուբայդ իբն Մասուդ ալ-Սակաֆիին և Մուսաննա իբն Հարիսա ալ-Շայբանիին զորքով ուղարկել էր Իրաք: Խոսրովը վախճանվել էր ու թագավորում էր նրա դուստր Բուրանը, որը Ռուստամին ու Ֆիրուզանին էր վստահել իշխանությունը, իսկ սրանք թույլ ու անզոր էին: Աբու Ուբայդ ալ-Սակաֆին առաջ խաղաց ու պարսից կայազորներից մեկի հետ բախվեց, սաստիկ պատերազմ տեղի ունեցավ և Ալլահը հաղթանակ պարգևեց ու հզորացրեց մահմեդականներին:

Ռուստամը երբ իմացավ այդ մասին, ուղարկեց Ջալինուս անվամբ մեկին (զորավար) և նրանք իրար բախվեցին մի վայրում, որը կոչվում է Բարուսմա, պարսիկները պարտվեցին և Աբու Ուբայդը նվաճեց Բարուսման: Ապա Ռուստամն ուղարկեց Զու Հաջիբին և նրա հետ նաև փղեր: Սաստիկ կռիվ եղավ, իսկ մահմեդականների ձիերը խրտնում էին փղերից: Աբու Ուբայդ ալ-Սակաֆին սուրը քաշեց ու կտրեց փղի շրթները, փիղը ընկավ նրա վրա ու ճզմեց նրան, իսկ զորքի հրամանատար դարձավ Մուսաննա իբն Հարիսա ալ-Շայբանին:

Այս բոլորը կատարվեց 14 (25 փետրվար 635 – 13 փետրվար 636) թվականին։

Էջ 143

Երբ պարսիկները տեսան, թե իրենք ինչքան թույլ են, իսկ մահմեդականները հաղթում են նրանց, պատրաստվեցին սպանելու Ռուստամին ու Ֆիրուզանին։ Ապա ասացին՝ դա կցրի մեր ուժերը։ Նրանք փնտրեցին Խոսրովի որդուն ու գտան Հազկերտին[25], որը քսան տարեկան էր ու նրան թագավոր դարձրին։

Երբ Օմարն այս բանը լսեց, կամեցավ արշավել Իրաք, ապա խորհրդակցեց ու նրան ցույց տվեցին Սաադ իբն Աբու Վակկասին։ Նա ուղարկեց [Սաադին] ութ հազարով և սա եկավ կանգ առավ Կադիսիյայում։

Էջ 145

Ռուստամը դուրս բերեց փղերը և երբ [արաբական] զնդերը (քատաիբ) տեսան նրանց, քիչ էր մնում ցրվեին։ Սակայն մահմեդականները հարձակվեցին նրանց վրա, աչքերը փորեցին ու շրթները կտրատեցին։

Մահմեդականները գրոհեցին չորրորդ օրն առավոտյան և արդեն առավելություն ունեին, սպանվեց Ռուստամը։

Բոլոր պարսիկները ոչ մի բանի ուշադրություն չդարձնելով փախան Տիզբոն (Մադաին), ուր Հազկերտն էր։ Սաադը մահմեդականների ղորքով հետապնդեց նրանց ու պաշարեց մեկուկես ամիս։ Ապա պարսիկները դուրս եկան ու փախուստի դիմեցին, իսկ Տիզբոնը գրավվեց։ Ասվում է, թե այն տեղի է ունեցել 16 (2 փետրվար 637 – 22 հունվար 638) թվականին։

Այդ տարում Օմարը գրությունների վրա թվական դրեց։ Նա կամեցավ թվականն սկսել Ալլահի առաքյալի ծննդից, ապա ասաց՝ թող լինի նրա առաքելության (մաբաաս) սկզբից։ Սակայն Ալի իբն Աբու Թալիբը խորհուրդ տվեց սկսել գաղթից (հիջրա) և նա գրեց [թվականը] հիջրայից[26]։

Էջ 146–147

Նորից խոսենք Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահի և Սուրբ քաղաքի (Երուսաղեմի) պաշարման մասին, քանզի ամեն ինչի մասին խոսում ենք իր տարում և իր ժամանակին։

Արու Ուրայդան գրեց Օմարին՝ տեղեկացնելով Իլյիայի (Երուսաղեմ) բնակչության դիմադրության ու համբերության մասին: Մեկն ասել է, թե Իլյիայի բնակիչները խնդրել էին, որ իրենց հետ հաշտություն կնքողը խալիֆան լինի:

Նա (Օմարը) եկավ Ջաբիա, որը Դամասկոսի հողերից է. ապա գնաց Սուրբ քաղաքը, հաշտությամբ նվաճեց ու գրեց հետևյալ գրությունը.

«Սա է գիրը, որ գրել է Հանուն Ալլահի ամենագութ և ամենողորմ, Օմար իբն ալ-Խաթթաբը Սուրբ քաղաքի ժողովրդին: Երաշխավորում եմ ձեր կյանքը (արյունը) և ձեր ունեցվածքը, ձեր եկեղեցիները բնակելի չեն դառնա կամ չեն ավերվի, բացի այն դեպքի, երբ բացառիկ բան պատահի: Վկայում եմ»:

## ՏԱՄՆՈՒԹ (12 հունվար 639 – 1 հունվար 640) ԹՎԱԿԱՆ

*էջ 150*

Այս տարում Օմարը կոչվեց հավատացյալների իշխան (ամիր ալ-մումինին, մինչդեռ դրանից առաջ կոչվում էր Ալլահի առաքյալի հաջորդի հաջորդ (խալիֆատ խալիֆա):

Արու Ուբայդա իբն ալ-Ջառահը Իյադ իբն Ղանմ ալ-Ֆիհրիին ուղարկեց Ջազիրա և նա պաշարեց նրանց [քաղաքները], ապա նվաճեց Ռակկան, Սարուջը, Եդեսիան, Մծբինը և Ջազիրայի այլ քաղաքները և այդ ամենը՝ հաշտության պայմանագրով: Խարաջ նշանակեց հողերի համար, իսկ մարդկանց վզին [ջիզիա] նշանակեց ամեն մեկին չորս, հինգ ու վեց դինար՝ տասնութ թվականին: Ապա վերադարձավ Արու Ուբայդայի մոտ:

*էջ 151–152*

Օմարը Ալլահի առաքյալի մերձավորներին հարցրեց Քուֆայի Սավադի [հողերի ճակատագրի] մասին: Մեկն ասաց՝ բաժանենք մեր միջև: Նա (Օմարը) հարցրեց Ալիին, որն ասաց՝ եթե այսօր բաժանենք, մեզանից հետո եկող [սերունդներին] բան չի մնա, այլ թող մնա նրանց (բնիկների) ձեռքում ու թող մշակեն և այսպիսով կլինի մեզ ու մեզանից հետո եկողներին: Ասաց՝ Ալլահը քեզ հաջողություն տա, լավ կարծիք է: Եվ ուղարկեց Օսման իբն Հունայֆին ու Հուդայֆա իբն ալ-Յամանին, որոնք Սավադը չափագրեցին և հրամայեցին ոչ ոքի կարողությունից ավելի չծանրաբեռնել: Սավադի խարաջը հավաքվեց ութսուն միլիոն դիրհեմ: Նա Օսման իբն Հանիֆին պարտավորեցրեց [հարկ] նշանակել օրական հինգ դիրհեմ ու մեկ տոպրակ ալյուր: Հրա-

*մայնց որ հաշվառման չենթարկվի ոչ մի ըլուր, անտառ կամ ճահիճ և ոչ էլ այն [հողերը], ուր ջուր չի հասնում:*
*Նա նրանց վզին հարկ դրեց՝ հարուստին քառասունութ, նրանից ցածրին՝ քսանչորս, իսկ չունևորին տասներկու դիրհեմ:*

**ՔՍԱՆ (21 դեկտեմբեր 640 – 9 դեկտեմբեր 641) ԹՎԱԿԱՆ**

*Էջ 154*

*Այս տարում Ամր իբն ալ-Ասը գրավեց Ալեքսանդրիան ու Եգիպտոսի բոլոր նահանգները և հարկ դրեց տասնչորս միլիոն դինար որպես ջիզիա, ընդ որում, ամեն մի գլխին մեկ դինար, իսկ բերքի վրա հարկ դրեց ամեն հարյուր իրդաբից[27] երկու իրդաբ:*

*Էջ 155–156*

*Օմարը Խայբարի հրեաներին վտարեց Հիջազից երբ Մուղահհար իբն Ռաֆի ալ-Հարիսին սպանվեց: Նա ասաց՝ լսել եմ, որ Ալլահի առաքյալն ասել է, թե Արաբական կղզում (թերակղզում) երկու կրոն չի կարող գոյություն ունենալ:*
*Նա (Օմարը) Մայսարա իբն Մասրուկ ալ-Աբսիին ուղարկեց Ռումի երկիրը և սա առաջին [արաբական] զորքն էր, որ այնտեղ է մտել և դա տեղի ունեցավ քսան թվականին: Ապա արշավանքի ուղարկեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին և ժամկետ նշանակեց, իսկ սա ժամկետից ուշացավ: Օմարն անհանգստացավ մինչև նրա վերադարձը: Ասաց նրան՝ ինչը քեզ ուշացրեց նշանակված ժամկետից: Ասաց (Հաբիբը)՝ մահմեդականներից մեկը հիվանդացել էր և մենք սպասեցինք, մինչև Ալլահի կամքը կատարվեց:*
*Հաբիբից հետո Օմարն այլևս արշավանք չուղարկեց Ռումի երկիրը և երբ հիշում էին հոռոմներին, ասում էր՝ կուզենայի, որ լեռնանցքը (Բաղրաս) արգելք լինի մեր ու նրանց միջև, նրանից այս կողմը մերը լինի, իսկ այն կողմը՝ հոռոմներին, այնքան որ ատում էր նրանց հետ պատերազմը: Նա՝ Ալկամա իբն Մուջազզիզ ալ-Միդլաջիին քսան, կամ մոտավորապես այդքան, նավերով ուղարկեց [ծով], սակայն բոլորը խորտակվեցին և Օմարը երդվեց այլևս ծովի վրա ոչ ոքի չուղարկել:*

*Էջ 156–157*

*Ատրպատականը նվաճվեց քսաներկու (30 նոյեմբեր 642 – 18 նո-*

յեմբեր 643) թվականին: Զորքի հրամանատարն էր Մուղիրա իբն Շուբան: Ասվում է նաև, թե Հաշիմ իբն Ուտբա իբն Աբու Վակկասն էր [հրամանատարը]: Աբու Մուսա ալ-Աշարին նվաճեց Ահուազը և Իսթախրը քաններեք (19 նոյեմբեր 643 –6 նոյեմբեր 644) թվականին: Օմարը նրան գրեց, թե նշանակիր խարաջ՝ ինչպես ամբողջ Իրաքի վրա է դրված և նա արեց: Արդալլահ իբն Բադիլ իբն Վարկա ալ-Խուզաին գրավեց Համադանը և Սպահանը նույն տարում: Կարդա իբն Քաաբ ալ-Անսարին էլ գրավեց Ռեյ քաղաքը: Իսկ Մուավիա իբն Աբու Սուֆիանը նվաճեց Ասկալոնը:

Օմարը՝ Խալիդ իբն ալ-Վալիդին նշանակեց Եդեսիայի, Խառանի, Ռակկայի, Տելլ Մաուզինի և Ամիդի կառավարիչ: Սա մնաց մեկ տարի, ապա հրաժարական տվեց և նա (Օմարը) ընդունեց: Նա եկավ Մադինա, ուր մի քանի օր մնալուց հետո մահացավ:

Վակիդին պատմում է, թե Խալիդ իբն Վալիդը մահացել է Եմեսայում կտակարար կարգելով Օմարին: Երբ վերջինիս հասել էր մահվան լուրը, արտասվել են Հաֆսան ու Օմարի ընտանիքը սաստիկ ողբով: Այն ատեն Օմարն ասել է՝ իրավունք ունեն կանայք ողբալու Սուլայմանի որդուն և ցավ է հայտնել:

Նա (Օմարը) Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին ուղարկեց Հայաստան, ապա օգնական ուղարկեց Սալման իբն Ռաբիային, սակայն վերջինս հասավ միայն Օմարի սպանությունից հետո:

## ՕՍՄԱՆ ԻԲՆ ԱՖՖԱՆԻ ՕՐԵՐԸ

էջ 163

Օսմանը Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին[28] Հայաստան էր ուղարկել, ապա նրա հետևից առաքել էր Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիին, որպես օգնական: Սակայն երբ վերջինս հասավ, իրար հետ թշնամացան և դա շարունակվեց մինչև Օսմանի սպանությունը:

Հաբիբ իբն Մասլաման արդեն Հայաստանի մի մասը նվաճել էր, երբ Օսմանը գրեց Սալմանին՝ Հայաստանի կառավարիչ նշանակելով նրան: Սա եկավ Բայլական և բնակիչները դիմավորեցին ու հաշտություն կնքեցին: Ապա շարժվեց հասավ Պարտավ (Բարդաա), որի բնակիչները հայտնի պայմաններով հաշտություն կնքեցին:

Հաբիբ իբն Մասլաման նվաճեց Վիրքը (Ջուրզան), ապա Սալմանին ուղարկեց Շարուան, որի թագավորը հաշտություն կնքեց: Ապա շարժվեց եկավ Մաղքթաց (Մասկաթ) հողը և նրա բնակիչները հաշտություն կնքեցին: Նույնն արեցին Լաքզի թագավորը և Շապորանի ու Ֆիլանի ժողովուրդը:

Նրա դեմ զորքով դուրս եկավ խազարաց թագավորը՝ խաքանը,

*Բալանջար դետից այն կողմ: Նա մեծ բազմությամբ հարձակվեց ու սպանեց Սալմանին ու նրա հետևորդներին, որոնք չորս հազար էին: Օսմանը նշանակեց Հուդայֆա իբն ալ-Յաման ալ-Աբսիին, ապա հեռացրեց ու նշանակեց Մուղիրա իբն Շուբային:*

*Այդ տարում մեռավ Աբու Սուֆիան իբն Հարբը և դա երեսունմեկ (24 օգոստոս 651 – 11 օգոստոս 652) թվականն էր:*

*էջ 169*

*Օսմանը ամառային արշավանքի համար զորք ուղարկեց Մուավիայի հրամանատարության տակ երեսուներկու (12 օգոստոս 652 - 1 օգոստոս 653) թվականին: Զորքը հասավ Կոստանդնուպոլսի նեղուցը և մեծ նվաճումներ կատարեց: Օսմանը Մուավիային հանձնարարեց Ռումի (մայրաքաղաքի՞) դեմ հարձակումը և հրամայեց որ մի հարմար անձնավորության ամառային արշավանքի հրամանատար թողնի: Մուավիան այս նպատակի համար նշանակեց Սուֆիան իբն Աուֆ ալ-Ղամիդիին: Այսպես մնաց Օսմանի օրոք [ ...] մի վնճի պատճառով Օսմանի խալիֆայության ժամանակ:*

*էջ 170*

*Օսմանը Ղուրանի [մասերը] հավաքեց և մշակեց (միացրեց) ընդ որում երկար [սուրաները] երկարների հետ շարեց, իսկ կարճերը՝ կարճերի հետ: Նա գրեց ամեն կողմ ու հրամայեց նրա բոլոր օրինակները հավաքել, ապա տաք ջրի ու քացախի մեջ նետեց ու եռացրեց, ասվում է նաև, որ վառեց: Այս բանը կատարեց բոլոր օրինակների հետ:*

*Նա իր [կանոնական բնագրից] օրինակներ ուղարկեց բոլոր երկրները, մեկական մատյան (Ղուրան, Մուսհաֆ) առաքեց Քուֆա, Բասրա, Մադինա, Մեքքա, Եգիպտոս, Ասորիք, Բահրայն, Եմեն, Ջազիրա և հրամայեց, որ մարդիկ մեկ օրինակից (նուսխա) կարդան:*

## ՀԱՎԱՏԱՑՅԱԼՆԵՐԻ ԻՇԽԱՆ ԱԼԻ ԻԲՆ ԱԲՈՒ ԹԱԼԻԲԻ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅՈՒՆԸ

*էջ 184-186*

*Ալին եկավ Բասրայից, շարժվելով դեպի Քուֆա, ուր հասավ երեսունվեց թվականի Ռաջաբ ամսին (24 դեկտեմբեր 656 – 22 հունվար 657): Այդ ժամանակ Համադանի կառավարիչն էր Ջարիր իբն*

Արդալլահը, որին Ալին պաշտոնանկ արեց: Իսկ նա ասաց Ալիին՝ ուղարկիր ինձ Մուավիայի դեմ և եթե իմ մարդիկ հաղթեն նրա դիմվորներին, դուցե ես կարողանամ նրանց քեղ հնազանդեցնել:
Աշաարն ասաց՝ ով հավատացյլոց իշխան (ամիր ալ-մումինին) մի ուղարկիր նրան, քանզի նրա և նրանց ուղածը նույնն է: Պատասխանեց Ալին՝ թող գնա, եթե անկեղծ խրատ տա, իր հավատարմությունը ցուցարկրած կլինի, իսկ եթե խաբի, նրա վրա կգա այն մարդու պատիժը, որին վստահվում է, բայց նա դրժում է խոստումը, վայ այն մարդկանց, որոնք շեղվում են ուղիղ ճանապարհից և ինձ օգնության են կանչում: Այլահը վկա նրանց չեմ ճանաչի, եթե արդարությունը չգործադրվի և ուրիշներն էլ նմաններին չեն ցանկանա:
Ջարիրը հասավ Մուավիայի մոտ, որը նստած էր ու մարդիկ չորս կողմը պատած: Նա մատուցեց Ալիի նամակը, որը [Մուավիան] կարդաց: Հետո ոտքի ելավ Ջարիրն ու ասաց՝ ով սիրիացիք (աhլ ալ-Շամ) քչով չի գոհանա, ով շատով չի գոհանում. Բասրայում եղավ մի պատերազմ, որի նման աղետ չէր եղել և որի ընթացքում սահմանականները կոտորվեցին: Ուստի Ալլահից վախեցեք, ով սիրիացիներ և Ալիի ու Մուավիայի մասին լավ դատեցեք, նայեցեք ձեր անձերին և ուշադրություն դարձրեք երկուսին: Հետո լռեց, Մուավիան նույնպես լուռ մնաց ու չխոսեց: Վերջապես ասաց Մուավիան՝ թուքս կուլ տվեցի, ով Ջարիր:
Նույն գիշեր Մուավիան լուր ուղարկեց Ամր իբն ալ-Ասին, որ իր մոտ գա ու գրեց՝ անշուշտ լսել ես Ալիի, Թալհայի, Զուբայրի ու Այիշայի մասին: Մարուանը մեղ մոտ եկավ իր բասրացի դասալիքների խմբով: Ինձ մոտ եկավ Ջարիր իբն Արդալլահը, առաջարկելով Ալիին խալիֆա ճանաչել: Ես ինձ զսպում եմ մինչև որ գաս, ուստի հասիր ինձ, Ալլահի օրհնությամբ:
Երբ նամակը հասավ Ամրին, կանչեց իր երկու որդիներին՝ Աբդալլահին ու Մուհամմադին և խորհուրդ հարցրեց: Աբդալլահն ասաց՝ ով ծերունի, Ալլահի առաքյալը մեռավ քեղանից գոհ, նույնպես մեռան Աբու Բաքր և Օմար [խալիֆաները]: Եթե դու խիղճդ արատավորես այս ունայն աշխարհի համար, որը շահելու ես Մուավիայի հետ, ապա վաղը երկուսդ էլ կպառկեք կրակի մեջ: Հետո [Ամրը] հարցրեց Մուհամմադին՝ ինչ է կարծիքդ, իսկ նա պատասխանեց՝ աճապարիր արա այս գործը, միայն թե գլուխ եղիր և պոչ չլինես: Եվ նա (Ամրը) սկսեց ոտանավոր հորինել:
Լսելով ոտանավորը, Աբդալլահն ասաց՝ ծերունին միզեց իր երկու որդիների վրա ու ծախեց իր կրոնը աշխարհի համար:
Առավոտյան [Ամրը] կանչեց իր ծառայա Վարդանին[29] ասելով նրան՝ ճանապարհ ընկիր, ով Վարդան, հետո ասաց՝ կանգնիր և նա մնաց և երեք անգամ ճանապարհ ելավ: Վարդանն ասաց՝ ով Աբու

Աբղալլահ ցնդում ես, եթե ուզում ես քեզ կպատմեմ թե ինչ է մտքովդ անցնում: Պատասխանեց [Ամրը]՝ դե ասա: Ասաց՝ մտքումդ պտտվում են աշխարհն ու հանդերձյալ կյանքը և ասում ես՝ Ալին ունի հանդերձյալ կյանքն առանց աշխարհի, իսկ Մուավիան ունի աշխարհն առանց հանդերձյալ կյանքի: Աշխարհում չկա մի բան, որ փոխարինի հանդերձյալ կյանքը և դու չգիտես ո՞րն ընտրես:

Պատասխանեց Ամրը՝ ինչ հրաշալի մարդ ես, անսխալ ասացիր թե ինչ կա իմ մտքում. հիմա ասա ինձ ի՞նչ է քո խորհուրդը, ով Վարդան: Ասաց՝ իմ խորհուրդն այն է, որ մնաս տանդ, եթե կրոնի վրա հենված մարդիկ քեզ հաղթեն, դու էլ կապրես ու նրանց հետ կվայելես կրոնի բարիքները, իսկ եթե աշխարհի մարդիկ հաղթեն, նրանք քեզնից չեն հրաժարվի: Ասաց Ամրը՝ այժմ որ համբավ ունեմ արաբների մոտ, Մուավիայի մոտ գնալով, ուստի ճանապարհ ընկիր, ով Վարդան և սկսեց հորինել.

Թող Ալլահն սպանի Վարդանին ու նրա իմաստությունը

Վարդանն Ամրին ցույց տվեց ինչ թաքուն էր նրա սրտում:

Ապա եկավ Մուավիայի մոտ, հիշեցրեց այս խնդիրը և ասաց՝ Ալլահը վկա, արաբները ոչ մի հարցում հավասարություն չեն դնի քո և նրա (Ալիի) միջև: Նա պատերազմի մեջ այնպիսի բախտ ունի, որ Կուրայշ ցեղին պատկանող ոչ ոք չի ունեցել և միայն նրան անիրավություն անելով կարող ես հաղթել: Մուավիան պատասխանեց՝ ճշմարիտն ասացիր, սակայն մենք նրա դեմ պիտի կռվենք մեր ձեռքում եղած ամեն միջոցներով, նրա վրա գցելով Օսմանի սպանության մեղքը: Ամրը ասաց՝ ով դժբախտություն, ես ու դու ավելի քան ուրիշները երբեք իրավունք չունենք հիշելու Օսմանին: Իսկ ինչու՞, վայ քեզ, հարցրեց Մուավիան: Իսկ նա ասաց՝ դու սիրիացիների հետ նրան լքեցիր, այն աստիճանի, որ ստիպվեց օգնության կանչել Յազիդ իբն Ասադ ալ-Բաջալիին, որը գնաց նրա մոտ, իսկ ես բացահայտ նրան թողեցի ու փախա Պաղեստին:

Պատասխանեց Մուավիան՝ թող այդ բաները, ձեռքդ մեկնիր և ինձ խալիֆա ճանաչիր: Ասաց Ամրը՝ ոչ, Ալլահը վկա, քեզ չեմ ծախի կրոնս, որ քեզանից աշխարհն ստանամ: Մուավիան ասաց՝ քեզ Եգիպտոսը կտամ որպես կերակուր:

Այն ժամանակ բարկացավ Մարուան իբն ալ-Հաքամը թե՝ ինչու իմ խորհուրդը չես հարցնում: Պատասխանեց Մուավիան՝ լռիր քեզնից ով խորհուրդ կհարցնի:

Մուավիան ասաց Ամրին՝ ով Աբու Աբղալլահ, մնա մեզ մոտ այս գիշեր: Ամրը չկամեցավ իր դեմ հանել Մուավիայի մարդկանց և այդ գիշերը նրա մոտ անցկացրեց, ասելով [բանաստեղծություն].

Մուավիա, քեզ չեմ տա կրոնս, ստանալու քեզանից

Աշխարհը, ուստի նայիր, աննկքդ մտածիր [...]

*Այն ժամանակ Մուավիան նրան տվեց Եգիպտոսը, վկաները վկայեցին, կնքվեց պայմանագիր և Ամրը նրան խալիֆա ճանաչեց ու պայմանավորվեցին իրար հավատարիմ մնալ:*

*Էջ 200*

*Ային գրեց իր կառավարիչներին, նրանց հորդորելով, որ իր մոտ գան: Գրեց Աշաստ իբն Կայսին, որ իր կառավարիչն էր Ատրպատականում, թե Ալլահի պարգևները քեզ դյութել են ու քեզ համարձակություն տվել, ուտում ես հարկերը ու չեղվում Ալլահի պատգամներից, վայելում ես ունեցվածքը և բարիքները մինչև այսօր: Արդ, երբ պատգամաբերս քեզ հանձնի իմ այս նամակը՝ եկիր և քեզ հետ բեր այն ամեն ինչը, որ յուրացրել ես մահմեդականների ունեցվածքից, կամոքն Ալլահի:*

*Երբ Աշասը կարդաց նամակը, գնաց նրա մոտ:*

## ՄՈՒԱՎԻԱ ԻԲՆ ԱԲՈՒ ՍՈՒՖԻԱՆԻ ՕՐԵՐԸ

*Էջ 217*

*Մուավիան վերադարձավ Ասորիք քառասունմեկ (7 մայիս 661 – 25 ապրիլ 662) թվականին և լսեց, որ հռոմեների բռնապետը մեծ բազմությամբ ու հսկայական զորքով հարձակվել է: Նա վախեցավ, որ այս բանն իրեն ետ կպահի այն գործերից, որ պետք է կարգադրեր և դիմելով նրան դաշինք կնքեց հարյուր հազար դինար [վճարելու] պայմանով: Մուավիան առաջինն էր, որ հռոմեների հետ դաշինք կնքեց: Այս հաշտությունը կայացավ քառասուներկու (26 ապրիլ 662 – 14 ապրիլ 663) թվականի սկզբին:*

*Սակայն երբ Մուավիայի գործերը կարգավորվեցին Ասորիքի ամիրներին արշավանքի ուղարկեց և նրանք տարվետարի կողոպտում էին Ռումի երկիրը: Մենք նրանց անունները հիշել ենք իրենց տեղում: Ռումի թագավորը հաշտություն խնդրեց այն պայմանով, որ դումարը կրկնապատկվի, բայց նա չպատասխանեց:*

*Էջ 221*

*Եգիպտոսն ու Մաղրիբը որպես կերակուր տրված էին Ամր իբն ալ-Ասին: Նա պայման էր դրել [Մուավիային] այն օրը, երբ նրան խալիֆա էր ճանաչել: Ահա պայմանի պատճենը. «Այս է գիրը, որ տվել է Մուավիա իբն Աբու Սուֆիանը Ամր իբն ալ-Ասին: Նրան հանձնեց Եգիպտոսը ու նրա բնակիչները, որ նրան պատկանի ցմահ,*

պայմանով, որ չթներանա հնազանդության մեջ»: Այն ատեն Վարդանն ասաց՝ այնտեղ մազ կա քո մարմնից: Ամրը չարունակեց կարդալ պայմանագիրը առանց կանգ առնելու այն կետի վրա, ուր Վարդանը կանգ էր առել: Երբ կնքվեց պայմանագիրը և վկաները վկայեցին, Վարդանն ասաց նրան՝ քանի տարի ես ապրելու ծերունի, էլի ծարավ ունես: Ինչու պայմանագրում զավակներիդ չհիշատակեցիր:

Մնկնեց Մուավիան և նրան երբեք չտեղափոխեց: Ամրը Եգիպտոսի հարկերից ոչինչ չէր ուղարկում նրան, այլ իր մարդկանց էր բաժանում ռոճիկները, իսկ մնացորդն իրեն էր պահում:

Ամր իբն ալ-Ասը Եգիպտոսը կառավարեց տաս տարի, ընդ որում չորս տարի Օմար իբն ալ-Խաթթաբի ժամանակ, չորս տարուց երկու ամիս պակաս՝ Օսման իբն Աֆֆանի օրոք և երկու տարի երեք ամիս՝ Մուավիայի օրոք: Մեռավ իննսունութ տարեկան: Նա արաբների տաղանդն էր իմաստությամբ, վճռականությամբ, խելքով ու ճարտար լեզվով:

էջ 233-234

Մուավիայի օրոք Իրաքի ու Պարսից թագավորությանը ենթակա հողերի խարաջը վեց հարյուր հիսունհինգ միլիոն դիրհեմ էր:

Սավադի խարաջը հարյուր քսան միլիոն դիրհեմ էր, Ֆարսի խարաջը՝ յոթանասուն միլիոն, Ահուազի ու հարակից մասերի խարաջը՝ քառասուն միլիոն, Յամամայի ու Բահրայնի խարաջը՝ տասնհինգ միլիոն դիրհեմ: Տիգրիսի գավառների (քուր Դիջլա) խարաջը՝ տաս միլիոն դիրհեմ, Նեհավենդի և Մահ ալ-Քուֆայի, այսինքն Դինավարի, Մահ ալ-Բասրայի, այսինքն Համադանի և ինչ որ ավելացված է Ջաբալի հողերից՝ քառասուն միլիոն դիրհեմ, Ռեյից ու հարակից մասերից երեսուն միլիոն դիրհեմ, Հոլուանից՝ քսան միլիոն դիրհեմ, Մոսուլից ու հավելյալ, հարակից մասերից՝ քառասունհինգ միլիոն դիրհեմ: Ատրպատականի խարաջը՝ երեսուն միլիոն դիրհեմ: Այս բոլոր երկրներից Մուավիան առանձնացրել էր այն չեն կալվածներից, որոնք պարսից թագավորները իրենց համար ընտրել էին, և իրեն սեփականացրեց ու իր տան անդամներին հատկացրեց:

Իրաքի կառավարիչը (սահիբ) այս շրջաններում սավաֆի (անտեր) հողերի հասույթից (փողից) հարյուր միլիոն դիրհեմ էր ուղարկում, որից վերցնում էր աղոթքի ու ընծաների բաժինը: Մուավիայի ժամանակ Եգիպտոսի խարաջը երեք միլիոն դինար էր, սակայն Ամր իբն ալ-Ասը ոչինչ բան էր ուղարկում, քանզի նա իր մարդկանց ռոճիկներ էր վճարում և միայն մեկ միլիոն դինար էր ուղարկում, իսկ Ամրի մահվանից հետո ամբողջ հարկագումարը ուղարկվում էր Մուավիային: Պաղեստինի խարաջը որոշվեց չորս հարյուր հիսուն

հազար դինար, Հորդանանի խարաջը՝ հարյուր ութսուն հազար դինար, Դամասկոսի խարաջը՝ չորս հարյուր հիսուն հազար դինար, Եմեսայի ջունդի խարաջը երեք հարյուր հիսուն հազար դինար, Կիննասրինի և Ավասիմի խարաջը՝ չորս հարյուր հիսուն հազար դինար, Ջազիրայի, այսինքն Դիար Մուդարի ու Դիար Ռաբիայի խարաջը՝ հիսունհինգ միլիոն դիրհեմ, իսկ Եմենի խարաջը՝ մեկ միլիոն երկու հարյուր հազար դինար, սակայն ասվում է նաև ինը հարյուր հազար դինար:

Մուավիան Ասորիքում, Ջազիրայում ու Եմենում արեց այն ինչ արել էր Իրաքում, թագավորներին պատկանող կալվածները խլել էր և իրեն սեփականացրել, ապա հատկացրել էր իր տան անդամներին ու մերձավորներին:

Իրաք նահանգում (վիլայա) տասներկու տարի իշխեց Զիյադը: Սա խորամանկ էր, իշխող և ուժեղ: Նա առաջինն էր, որ դիվաններում արձանագրություններ կազմեց ու մատյանները դրի առավ: Նա արաբներից ու կրթված մաուլաներից հատուկ մարդկանց նշանակեց նամակների քարտուղարներ: Նա ասում էր՝ խարաջի քարտուղարները պետք է լինեն պարսիկների (աջամ) պետերից, քանզի նրանք գիտակ են խարաջի գործին:

էջ 239

Նրա (Մուավիայի) օրոք արշավանք տեղի ունեցավ 41 (7 մայիս 661 – 25 ապրիլ 662) թվականին: Ուղարկվեց Հաբիր իբն Մասլաման, որը դաշինք կնքեց Ռումի տիրոջ հետ:

43 (15 ապրիլ 663 – 3 ապրիլ 664) թվականին Բիսր իբն Աբու Արթատը արշավեց Ռումի երկիր և այնտեղ ձմեռեց:

44 (4 ապրիլ 664 – 23 մարտ 665) թվականին Աբդ ալ-Ռահման իբն Խալիդ իբն ալ-Վալիդը արշավեց ու հասավ Կողոնիա (Կուլունիա):

45 (24 մարտ 665 – 12 մարտ 666) թվականին Աբդ ալ-Ռահման իբն Խալիդ իբն ալ-Վալիդը արշավեց ու ձմեռեց Ռումի երկրում:

46 (13 մարտ 666 – 2 մարտ 667) թվականին Մալիք իբն Աբդալլահ ալ-Խասամին հասավ Անտիոք: Ասվում է որ դա Մալիք իբն Հուբայրա ալ-Սուքունին էր, որը ձմեռեց Ռումի երկրում:

47 (3 մարտ 667 – 19 փետրվար 668) թվականին Մալիք իբն Հուբայրա ալ-Սուքունին արշավեց ու ձմեռեց Ռումի երկրում:

48 (20 փետրվար 668 – 8 փետրվար 669) թվականին Աբդ ալ-Ռահման ալ-Ուտբին արշավեց ու հասավ Սև Անտիոք (Անթաքիա ալ-Սաուդա):

49 (9 փետրվար 669 – 28 հունվար 670) թվականին Ֆուդալլահ իբն Ուբայդան արշավեց և Ալլահը նրա ձեռքով նվաճումներ կա-

տարեց ու մեծ թվով գերեվարեց:
50 (29 հունվար 670 – 17 հունվար 671) թվականին արշավեց Բիշր իբն Աբու Արթատը, իսկ ձմեռնաց Սուֆիան իբն Աուֆը:
51 (18 հունվար 671 – 7 հունվար 672) թվականին արշավեց Մուհամմադ իբն Աբդ ալ-Ռահմանը, իսկ ձմեռնաց Ֆուդալլահ իբն Ուբայդա ալ-Անսարին:
52 (8 հունվար 672 – 26 դեկտեմբեր 672) թվականին արշավեց Սուֆիան իբն Աուֆը, որը մահացավ ու նրան հաջորդեց Աբդալլահ իբն Մասաադա ալ-Ֆազարին:
53 (27 դեկտեմբեր 672 – 15 դեկտեմբեր 673) թվականին արշավեց Մուհամմադ իբն Մալիքը: Ասվում է որ Տարսոնն այդ տարում նվաճվեց Ջունադա իբն Աբու Ումայա ալ-Ազդիի կողմից:
55 (6 դեկտեմբեր 674 – 24 նոյեմբեր 675) թվականին արշավեց Մալիք իբն Աբդալլահ ալ-Խասաամին ու ձմեռնաց Ռումի երկրում:
56 (25 նոյեմբեր 675 – 13 նոյեմբեր 676) թվականին արշավեց Յազիդ իբն Մուավիան, հասավ Կոստանդնուպոլիս, իսկ Մասուդ իբն Աբու Մասուդը ձմեռնաց: Ցամաքի վրա Յազիդ իբն Շաջարան էր [հրամանատար], իսկ ծովի վրա՝ Իյադ իբն Ալ-Հարիսը: Այս ամենը սոսկ պատմվում է:
57 (14 նոյեմբեր 676 – 2 նոյեմբեր 677) թվականին արշավեց Աբդալլահ իբն Կայսը:
58 (3 նոյեմբեր 677 – 24 հոկտեմբեր 678) թվականին Մալիք իբն Աբդալլահ ալ-Խասաամին [արշավեց], սակայն ասվում է, որ դա Ամր իբն Յազիդ ալ-Ջահմին էր, իսկ Յազիդ իբն Շաջարան ծովի վրա էր:
59 (25 հոկտեմբեր 678 – 12 հոկտեմբեր 679) թվականին Ամր իբն Մուռա ալ-Ջահնին ցամաքի վրա [արշավեց], իսկ ծովի վրա այդ տարի արշավանք չեղավ:

## ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ԱԼ-ՀԱՔԱՄԻ, ԱԲԴԱԼԼԱՀ ԻԲՆ ԱԼ-ԶՈՒԲԱՅՐԻ ՕՐԵՐԸ ԵՎ ՈՐՈՇ ՕՐԵՐ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻՑ

էջ 257-259

Մարուանն իշխեց ինն ամիս ու մեռավ 65 թվականի Ռամադան ամսին (11 ապրիլ – 10 մայիս 685):
Ասորիքի ժողովուրդը խալիֆա դարձրեց Աբդ ալ-Մալիքին և սա անապարանոք եկավ Դամասկոս, վախենալով Ամր իբն Սաիդի ապստամբությունից: Մարդիկ հավաքվեցին նրա մոտ և նա ասաց՝ վախենում եմ որ ձեր սրտերում իմ մասին որևէ [վատ] բան լինի: Եկան Մարուանի մի խումբ կողմնակիցներ և ասացին՝ Ալլահը վկա, կամ բարձրացիր մինբար, կամ թե չէ վիզդ կկտրենք: Իսկ նա բարձրացավ

մինրար ու նրան ձայն տվեցին:
Մուխտար իբն Աբու Ուբայդ ալ-Սակաֆին եկել էր մի խումբ զին-յալ մարդկանցով, որոնք կասնոււմ էին Հուսայն իբն Ալիի դատը պաշտպանել (արյան վրեժը լուծել): Ուբայդալլահ իբն Զիադը նրան բռնեց ու բանտարկեց, երկաթե գավազանով ծեծեց, մինչև որ աչքը սպառեց: Նրա մասին գրեց Աբդալլահ իբն Օմարը Յազիդ իբն Մուավիա [խալիֆային], իսկ վերջինս գրեց Ուբայդալլահին՝ թե բաց թող նրան: Սա բաց թողեց ու աքսորեց (հեռացրեց): Մուխտարը գնաց Հիջազ ու միացավ Իբն ալ-Զուբայրին, սակայն երբ տեսավ, որ Իբն ալ-Զուբայրն իրեն ոչ մի պաշտոն չի տալիս, գնաց Իրաք ու հասավ այն ժամանակ, երբ Սուլայման իբն Սարդ ալ-Խուզաին ապստամբել էր՝ Հուսայնի արյան վրեժը լուծելու: Երբ [Մուխտարը] եկավ Քուֆա, նրա մոտ հավաքվեցին շիիները: Նա ասաց նրանց, թե Մուհամմադ իբն Ալի Աբու Թալիբը իրը իրեն ուղարկել է նրանց մոտ որպես կառավարիչ և հրամայել է սպանել բոլոր նրանց, ովքեր օրինավոր համարեցին Հուսայնի սպանությունը[30] ու նրա ընտանիքի անիրավված անդամների վրեժը լուծել: Ասաց, թե Ալլահը վկա, սպանել եմ Իբն Մարջանային և ուզում եմ վրեժ լուծել Ալլահի առաքյալի տոհմի համար, նրանցից ովքեր անիրավություն են արել: Շիիների[31] մի խումբ հավատացին և ասացին՝ գնանք Մուհամմադ իբն Ալիի մոտ հարցնելու: Գնացին նրա մոտ հարցնելու և նա ասաց՝ չկա ավելի ցանկալի բան ինձ համար, քան վրեժ լուծելը և թշնամիներին սպանելը և մեր իրավունքներին տիրանալը ու բոլորը գնացին Մուխտարի մոտ, նրան հավատարմության երդում տվեցին ու պայմանագիր կնքվեց և նրա շուրջը մեծ բազմություն հավաքվեց:
Այդ ժամանակ Իբն ալ-Զուբայրը Քուֆայի կառավարիչ նշանակեց Իբն Մութիին, իսկ սա սկսեց վախեցնել շիիներին ու հալածել: Մուխտարը իր հետևորդների հետ պայմանավորվեց ու մայրամուտից հետո դուրս եկան Իբրահիմ իբն Մալիք իբն ալ-Հարիս ալ-Աշտարի հրամանատարության տակ, որը գոչեց՝ ով Հուսայն իբն Ալիի համար վրիժառուներ: Սա սեղի ունեցավ 66 (8 օգոստոս 685 — 27 հուլիս 686) թվականին: Կռիվը սաստկացավ նրանց միջև Աբդալլահ իբն Մութիի միջև: Դա ամենախիստ ու ամենադժվար ճակատամարտերից մեկն էր:
Ապա իբն Մութին գնաց պալատ և կանչեց մարդկանց, որ հնազանդության երդում անեն և նրանք ձայն տվեցին Ալլահի առաքյալի տոհմին: Մուխտարը իբն Մութիին վճարեց հարյուր հազար (դրամ) և ասաց՝ սրանով ղիմացիր: Մուխտարն իր կառավարիչներին ուղարկեց տարբեր նահանգներ և նրանք, տեղում եղածներին հանելով, դարձան կառավարիչներ:
Մուխտարի կառավարիչը Մոսուլի վրա Աբդ ալ-Ռահման իբն

Սաիդ իբն Կայս ալ-Համադանին էր: Նրա վրա հարձակվեց Ուբայդալլահ իբն Զիյադը. Սուլայման իբն Սարդին սպանելուց հետո: Աբդ ալ- Ռահմանը կռվեց նրա դեմ ու դրեց տեղեկացնելով Մուխտարին: Վերջինս ուղարկեց նրա մոտ Յազիդ իբն Ունսին, ապա Իբրահիմ իբն Մալիք իբն ալ-Հարիս իբն ալ-Աշտարին, որը բախվեց Ուբայդալլահ իբն Զիյադին ու սպանեց նրան: Սպանեց նաև ալ-Հուսայն իբն Նումայր ալ-Սուքունիին, Շուրահբիլ իբն Զու-լ-Քիլա ալ-Հիմյարիին ու երկուսի մարմիններն էլ կրակով վառեց: Նա դարձավ Մոսուլի, Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ Մուխտարի կողմից նշանակված, ինչպես մինչ այդ Իրաքի կառավարիչն էր:

Նա Ուբայդալլահ իբն Զիյադի գլուխն ուղարկեց Ալի իբն ալ-Հուսայնին՝ Մադինա նրա տոհմից մի մարդու հետ: Ասաց նրան՝ կանգնիր Ալի իբն Հուսայնի դռան մոտ և նթե տեսնես, որ բաց է ու մարդիկ մտնում են, ապա այն ժամին, որ նա ճաշի է նստում՝ մտիր: Եկավ պատգամաբերն Ալի իբն Հուսայնի դուռը և երբ դուռը բացվեց ու մարդիկ մտան ճաշելու, նա ամենաբարձր ձայնով գոչեց՝ ով Մարգարեի տոհմի մարդիկ և առաքելության աղբյուր, հրեշտակների իջևան ու հայտնության բնակարան, ես Մուխտար իբն Աբու Ուբայդի սուրհանդակն եմ, ինձ հետ է Ուբայդալլահ իբն Զիյադի գլուխը: Հաշիմինների տան մեջ կին չմնաց, որ չբղավեր: Մտավ սուրհանդակը, հանեց գլուխը և երբ Ալի իբն Հուսայնը տեսավ, ասաց՝ Ալլահը հեռու տանի նրան մինչև կրակը:

Պատմել են, որ Ալի իբն Հուսայնին երբեք ծիծաղկոտ չեն տեսել հոր սպանությունից հետո, մինչև այդ օրը: Նա ուներ ուղտեր, որոնք Ասորիքից միրգ էին բերել: Երբ Ուբայդալլահ իբն Զիյադի գլուխը բերվեց, հրամայեց, որ միրգը Մադինայի ժողովրդի մեջ բաժանվի: Ալլահի առաքյալի տոհմի կանայք սանրվեցին ու հինայով չպարվեցին, իսկ մինչ այդ ոչ մի կին սանր, կամ հինա չէր օգտագործել, Հուսայն իբն Ալիի սպանության օրից:

Մուխտարը հետապնդեց Հուսայնին սպանողներին ու մեծ բազմություն կոտորեց, մինչև որ նրանցից մարդ չմնաց: Նա սպանեց Օմար իբն Սաադին և ուրիշներին, ապա կրակով վառեց ու տարբեր ձևերով տանջեց:

## ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ ՕՐԵՐԸ

Հջ 269

Հիշել ենք նրա ընտրվելը (բայաա) Իբն ալ- Զուբայրի օրոք, երբ երկրները խառնվյալ վիճակում էին և ով կարողացավ տիրացավ մի երկրի, Սուլայման իբն Սարդ ալ-Խուզաիի և Իբրահիմ իբն Մալիք իբն

ալ-Հալիս իբն ալ-Աշտարի պատմությունը. Ուբայդալլահ իբն Զիյադի և Հուսայն իբն Նումայրի սպանությունը և այլ դեպքեր, որոնք հիշված են Իբն ալ-Զուբայրի օրոք:

Ասորիքը հնազանդվեց Աբդ ալ-Մալիքին, բացի Պաղեստինից. [տեղի] Նատիլ իբն Կայսը այնտեղ էր [ամրացել]: Երբ Աբդ ալ-Մալիքն ուզեց հարձակվել, լուր ստացավ, որ հոռոմները բռնապետը հարձակվել է Մամիստիայի (Մասսիսա) վրա: Սակայն չկասեցնելով նրա հետ կռվով զբաղվել, երբ երկիրը խռովահույզ վիճակում էր. լուր ուղարկեց, հաշտություն կնքեց, շատ գումարներ տալով, մինչև որ վերջինս հեռացավ:

## ՄՈՏԱՎՈՐԱՊԵՍ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԵՔ (23 մայիս 692 – 12 մայիս 693) ԹՎԱԿԱՆ

էջ 272

Աբդ ալ-Մալիքը Մուհալլաբ իբն Աբու Սաֆրային հրամանատար նշանակեց Քիրմանի խարիջիների[32] դեմ կռվում, իսկ սա եռանդուն կերպով պայքարեց նրանց դեմ, մինչև որ սպանեց նրանց ղեկավար Նաֆի իբն ալ-Ազրակին, որի անվամբ նրանք կոչվել են ազրակիներ: Նա մնաց Քիրմանում, ապա Աբդ ալ-Մալիքը նրան Խորասանի կառավարիչ նշանակեց Ումայյայի փոխարեն:

Աբդ ալ- Մալիքը իր եղբորը՝ Աբդ ալ-Ազիզին եա ուղարկեց Եգիպտոս (Միսր) ու Մաղրիբ, իր [մյուս] եղբորը՝ Բիշրին Իրաքի կառավարիչ նշանակեց, իսկ Մուհամմադ եղբորը Մոսուլի կառավարիչ նշանակեց և նա այնտեղ փոխադրեց Ազդ ու Ռաբիա ցեղերին Բասրայից, ապա արշավեց Հայաստան, որի ժողովուրդն ապստամբել էր[33]: Նա կոտորեց ու գերեվարեց և նամակ գրեց երկրի ազնվականներին (աշրաֆ), որոնք ազատներ են կոչվում, երաշխավորագիր տվեց ու խոստացավ պատիվը բարձրացում: Ուստի նրանք հավաքվեցին եկեղեցիներում, Խլաթի նահանգում, իսկ նա հրամայեց փակել փայտ հավաքել եկեղեցիների շուրջը, նրանց վրա փակել տվեց դռները և ամենքին վառեց[34]: Մուհամմադ իբն Մարուանը մնաց Հայաստանում մինչև իր մահը:

էջ 281

Աբդ ալ-Մալիքի օրոք դիրհեմներն ու դինարները փորագրվեցին արաբերեն: Այս բանն արեց ալ-Հաջջաջ իբն Յուսուֆը:

Նրա (Աբդ ալ-Մալիքի) օրոք 75 (2 մայիս 694 – 20 ապրիլ 695)

թվականին Մուհամմադ իբն Մարուանը ամառային արշավանք կատարեց, հռոմները հարձակվեցին Ամակի կողմերը. նրանց կոտորեցին Արան իբն Վալիդ իբն Ուկբա իբն Աբու Մուայթը և Դինար իբն Դինարը:

76 (21 ապրիլ 695 – 9 ապրիլ 696) թվականին Յահիա իբն ալ-Հաքամը ամառային արշավանք կատարեց Մարջ ալ-Շահմ, որը Մալաթիայի ու Մամնստիայի միջև է:

77 (10 ապրիլ 696 – 29 մարտ 697) թվականին Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց ցորենի ստորերկրյա շտեմարանները (աթմար), հարձակվելով Մալաթիայի կողմից: Ծովում արշավանք կատարեց Հասսան իբն Նումանը [...]

83 (4 փետրվար 702 – 23 հունվար 703) թվականին Արդալլահը կրկին արշավեց, նվաճեց Մամնստիան և այնտեղ փոքր բերդ կառուցեց:

## ՎԱԼԻԴ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ՕՐԵՐԸ

## ՈՒԹՍՈՒՆՎԵՑ (2 հունվար 705 – 22 դեկտեմբեր 705) ԹՎԱԿԱՆ

*էջ 283*

Ապա իշխեց ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը:

Նա հռոմների դեմ արշավանքի հրամանատար նշանակեց իր եղբորը՝ Մասլամային, որը ճանապարհ ընկավ մեծաթիվ զորքով և տեսնելով, որ Անտիոքի Ջարաջիմա [ցեղերն] ապստամբել են, նրանց մեծ կոտորած սարքեց:

*էջ 284*

Վակիդին պատմում է, որ Վալիդը Ռումի թագավորին լուր ուղարկեց տեղեկացնելով, որ Ալլահի առաքյալի մզկիթը [Մադինայում] քանդվել է և օգնություն խնդրեց: Սա ուղարկեց նրան հարյուր հազար մսխալ (միսկալ) ոսկի, հարյուր գործավոր, քառասուն հազար բեռ խճանկարի [մանր քարեր]: Վալիդն այս ամենը ուղարկեց [կառավարիչ] Օմարին, որը նորոգեց մզկիթը և այն ավարտեց 90 (20 նոյեմբեր 708 – 8 նոյեմբեր 709) թվականին:

## ՍՈՒԼԱՅՄԱՆ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ՕՐԵՐԸ

### ԻՆՆՍՈՒՆՈՒԹ (25 օգոստոս 716 – 13 օգոստոս 717) ԹՎԱԿԱՆ (ՄՈՏԱՎՈՐԱՊԵՍ)

*Էջ 299*

*Սուլայմանը դուրս եկավ Ջազիրայի կողմերը և կանգ առավ Դաբիկ կոչված վայրում, որը Կիննասրինի ջունդի մեջ էր: Նա արշավանքի ուղարկեց Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին Ռումի երկիրը, հրամայելով հարձակվել Կոստանդնուպոլսի վրա ու պաշարել մինչև գրավումը:*

*Մասլաման առաջ շարժվեց մինչև որ հասավ Կոստանդնուպոլիս և այնքան ժամանակ պաշարեց, որ ցանեց ու կերավ իր ցանածից: Նա ներխուժեց ու գրավեց Սակալիբա (սլավոնների) քաղաքը: Մահմեդականներին նեղեցին կորուստները, սովը և ցուրտը:*

*Տեղեկանալով թե ինչպիսի վիճակում էին Մասլաման ու նրա ընկերակիցները, օգնական զորքով ուղարկեց Ամր իբն Կայսին ցամաքից, իսկ ծովով հարձակման ուղարկեց Օմար իբն Հուբայրա ալ-Ֆազարիին:*

*Սակայն հոռոմները հարձակվեցին Լաոդիկեի վրա, որը Եմեսայի ջունդից էր, այն հրկիզեցին, ամեն ինչ տարան, իսկ Օմար իբն Հուբայրան հասավ Կոստանդնուպոլսի ծոցը:*

*Էջ 300*

*Նրա օրոք 96 (16 սեպտեմբեր 714 – 4 սեպտեմբեր 715) թվականին Մասլաման արշավանք էր կատարել, գրավել էր Հիսն ալ-Հադիդը և ձմեռել Ռումի կողմերում, իսկ Օմար իբն Հուբայրան ծովի վրա էր [կռվում]: Նրանք նավելով ճեղքեցին մտան ծոցի ու Կոստանդնուպոլսի միջև և գրավեցին Սակալիբա քաղաքը: Սուլայմանը նրանց օգնական ուղարկեց Ամր իբն Կայս ալ-Քինդիին և Աբդալլահ իբն Օմար իբն ալ-Վալիդ իբն Ուկբային:*

*99 (14 օգոստոս 717 – 2 օգոստոս 718) թվականին Սուլայման իբն Աբդ ալ-Մալիքը իր որդուն՝ Դաուդին ուղարկեց Ռումի երկիր, իսկ Մասլաման պաշարել էր Կոստանդնուպոլիսը: Դաուդը Մալաթիայի կողմերում գրավեց Հիսն ալ-Մարան:*

## ՕՄԱՐ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ԱԶԻԶԻ ՕՐԵՐԸ

*էջ 302*

*Օմարը տեղեկացավ թե ինչպիսի նեղության ու կարիքի մեջ էին Մասլամայի հետ եղած [ռազմիկները] ու Ամր իբն Կայսին ամառային արշավանքի ուղարկեց: Նրա հետ առաքեց հագուստեղեն, ուտեստեղեն ու նվերներ Մասլամայի մոտ եղած բոլոր մահմեդականներին:*

*Օմարը Աբդ ալ-Ազիզ իբն Հատիմ իբն Նուման ալ-Բահիլիին ուղարկեց [խազարների դեմ] և նա հաղթեց թուրքերին ու նրանցից միայն փախչողները փրկվեցին: Նրանցից հիսուն հոգու նա Օմարի մոտ բերեց և մահմեդական գերիներից մեկի մասին Օմարին ասաց. թե՝ տեսնեիր սրան, ով հավատացելոց իշխան, թե ինչպես էր մահմեդականներին կոտորում, մի ահավոր կոտորած կտեսնեիր: Ասաց՝ ելիր ու դրա վիզը կտրիր:*

## ՅԱԶԻԴ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ՕՐԵՐԸ

### ՀԱՐՅՈՒՐ ՄԵԿ (24 հուլիս 719 – 11 հուլիս 720) ԹՎԱԿԱՆ

*էջ 310*

*Եվ Յազիդը հեռացրեց Օմար իբն Աբդ ալ-Ազիզի նշանակած բոլոր կառավարիչներին:*

*էջ 313*

*Յազիդը Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին արշավանքի ուղարկեց թուրքերի դեմ: Սա արշավեց ու գրավեց Բալանջարը և մեծ բազմություն գերեվարեց 104 (21 հունիս 722 – 9 հունիս 723) թվականին: Նա հասավ ալ-Ռուբաս գետը[35], ապա շարժվեց ու հասավ Ադուան (ալ-Ռան) գետը: Նա դեմ զուրս եկավ խազարաց տեր խաքանի որդուն, նրա հետ կռվեց ու փախուստի մատնեց: Ապա կոտորեց նրա ռազմիկներին ու շատերին գերեվարեց:*

*Երբ Բալանջարը գրավեց, առաջ շարժվեց ու սկսեց ամեն մի քաղաքում կանգ առնելով հետապնդել խազարաց թագավոր խաքանին, մինչև որ հասավ Դաբիլի (Արզաբիլի) գետը[36], որը Ատրպատականի կազմում է: Այնտեղ կռվեցին ու սպանվեց Ջառահն ու բոլոր ընկերակիցները:*

*Յազիդը գրեց Օմար իբն Հուբայրային, որն Իրաքի կառավարիչն էր, հրամայելով Սավադի հողը չափել և նա չափեց 105 (10 հունիս 723 – 28 մայիս 724) թվականին: Սավադը Օմար իբն ալ-Խաթթաբի օրոք*

Օսման իբն Հանիֆի կողմից չափվելուց հետո չէր չափվել մինչև Օմար իբն Հուբայրայի կողմից չափվելը: Սա հարկ դրեց արմավենու և այլ ծառերի վրա, վնաս պատճառեց խաբաշ վճարողներին, իսկ մնացածին հարկադրեց, վերականգնեց աշխատանքային պարհակը (սուխր, սուխրա) և նվերների սովորությունը, որը տրվում էր Նիրուզին ու միհրաջանին: Այս հողաչափումը (միսահա) կոչվում է Իբն Հուբայրայի հողաչափում:

*Լջ 314*

Նրա օրոք 102 (12 հուլիս 720 – 30 հունիս 721) թվականին Վալիդ իբն Հիշամը արշավեց Ռումի հողը և կանգ առավ Անտիոքի ծանծաղուտի մոտ: Օմար իբն Հուբայրան հոռոմներին հանդիպեց Չորրորդ Հայաստանում, հաղթեց նրանց և յոթ հարյուրի գերեվարեց:

103 (1 հուլիս 721 – 20 հունիս 722) թվականին արշավեց ալ-Աբբաս իբն Վալիդը և մարդիկ վիրավորվեցին Սարայայում*:

Թուրքերն ասպատակեցին Ալանաց (ալ-Լան) երկիրը: Արշավեցին Արդ ալ-Ռահման իբն Սուլայման ալ-Քալբին և Օսման իբն Հայան ալ-Մուռին, որոնք պաշարեցին մի բերդ ու գրավեցին:

104 (21 հունիս 722 – 9 հունիս 723) թվականին Արդ ալ-Ռահման իբն Սուլայման ալ-Քալբին ամառային աջ արշավանք կատարեց, իսկ Օսման իբն Հայան ալ-Մուռին՝ ամառային ձախ արշավանք [Ռումի երկիրը]:

105 (10 հունիս 723 – 28 մայիս 724) թվականին արշավեց Սաիդ իբն Արդ ալ-Մալիք իբն Մարուանը, որն ապա վերադարձավ և արշավեց Թուրքաց կողմերը և հասավ ալ-Կուլթն բերդը: Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին արշավեց Ալանաց դուռը և դուրս եկավ Դարբանդից:

## ՀԻՇԱՄ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ ՕՐԵՐԸ

*Լջ 317-318*

Հիշամը Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին[37] նշանակեց Հայաստանի և Ատրպատականի կառավարիչ 107 (19 մայիս 725 – 7 մայիս 726) թվականին: Նրա զորքի առաջապահի հրամանատար նշանակեց Սաիդ իբն Ամր ալ-Հարաշիին, իսկ սա ընդհարվեց խազարների զորքի հետ, որոնց մոտ տասը հազար մահմեդական գերիներ կային: Նա կռվեց նրանց դեմ, փախուստի մատնեց, մեծ մասին կոտորեց ու գերիներին փրկեց: Այս բանն արեց մի քանի անգամ: Նա խաքանի որդուն սպանեց, բազմաթիվ քաղաքներ գրավեց, իսկ խաքանի որդու

*գլուխը. առանց Մասլամայի համաձայնության. առաքեց Հիշամին: Այս բանը զայրացրեց [Մասլամային], որը գրեց նրան այպանելով ու հեռացրեց նրան և փոխարենը նշանակեց Աբդ ալ-Մալիք իբն Մուսլիմ ալ-Ուկայլիին, որին հրամայեց ձերբակալել Սաիդ իբն Ամր ալ-Հարաշիին ու բանտարկել Կապաղակ (Կարալա) կոչված քաղաքում:*

*Մասլաման եկավ այդ քաղաքը, բերել տվեց հարաշիին, կոպտեց նրան, ջարդեց նրա դրոշը, իսկ նրան ուղարկեց Պարտավի բերդը: Սակայն Հիշամը գրեց նրան (Մասլամային) մեղադրելով այդ բանի համար և, իր կողմից սուրհանդակներ (դեսպաններ) առաքելով, Սաիդ իբն ալ-Հարաշիին դուրս բերել տվեց բանտից ու տարավ իր մոտ:*

*Մասլաման առաջ խաղաց խաղարաց երկրում, մինչև որ հասավ Վիրք: Նվաճեց այն ու կոտորեց ժողովրդին, ապա գնաց Շարուան, որի ժողովուրդը հպատակություն հայտնեց, եկավ Մաղքութք (Մասկաթ), որի բնակչությունը նույնպես հաշտություն կնքեց: Նա իր հեծյալ գնդերն ուղղեց ալ-Լաքզ երկիրը, որի ժողովուրդը հաշտություն կնքեց, զորք ուղարկեց Թաբարսարան, որի բնակչությունն էլ հաշտություն կնքեց: Ապա առաջ խաղաց և ոչ ոքի չհանդիպելով հասավ Վարդանակերտի հողը: Այստեղ նրան հանդիպեց խաղարաց թագավորը: Մասլամայի հետ կային նվաճված երկրների մի խումբ թագավորներ: Նա առաջապահ զորքի հրամանատար նշանակեց Մարուան իբն Մուհամմադին, որը բախվեց թշնամուն և մի քանի օր մնաց կոտորելով նրանց ու կարծվեց թե կորել է: Ասել են Մասլամային՝ Մարուանն սպանվեց: Ասել է՝ միթե առանց խալիֆա դառնալու, երբեք: Եվ նա նվաճեց բոլոր երկրները:*

*Հիշամը հեռացրեց Մասլամային ու կառավարիչ նշանակեց Մարուան իբն Մուհամմադին, որը շարժվեց դեպի այն բերդը, ուր Սարիրի թագավորն էր: Սա մի ոսկե գահ (սարիր) է, որը պարսից թագավորներից մեկն էր առաքել: Ասվում է, որ Անուշիրուանն էր այն ուղարկել [թագավորին] և վերջինս այդ գահի (սարիր) անունով էլ կոչվել է: Նա հաշտություն կնքեց նրա հետ հազար հինգ հարյուր սևահեր ղուլամ տալու պայմանով: Հետո գնաց Թումանշահ, որի թագավորը հաշտություն կնքեց, ապա մտավ Ջարիքրան երկիրը, որի թագավորը նույնպես հաշտություն կնքեց. մտավ Համզին, կովեց նրանց (բնակիչների) դեմ և մեծ բազմություն կոտորեց: Երկրի մեծ մասը նվաճեց, իսկ [ուտեստեղենի] պաշարը կուտակեց Դարբանդ քաղաքում, ուր և մնաց:*

***էջ 328-329***

*Հիշամը Օմայան տոհմի ամենավճռական ու խիստ [անդամներից] էր: Նա ժլատ էր, նախանձ, կոշտ, կոպիտ, անարդար, դաժան,*

անդամ, երկարավիզ:

Նրա օրոք ժանտախտը տարածվեց և մարդկանց մեծ մասը զոհվեց, ինչպես նաև գրաստն ու տավարը:

Այդ ժամանակ գլխավոր դեմքն էր ալ-Աբրաշ իբն ալ-Վալիդ ալ-Քալբին, զորքի պետ (սահիբ շուրթա) էր Քաաբ իբն Համիդ ալ-Աբսին, պահակազորքի (հարաս) պետ էր Ռաբի իբն Զիյադ իբն Սաբուրը, սենեկապետն (հաջիբ) էր իր մաուլա Հարիշը:

Նա հորինել էր ավել մետաքսե ոսկե (փայլուն) բանվածքներ, գունազարդ հայկական [կտորեղեն] և զգեստի տարբեր տեսակներ:

Իշխեց քսան տարուց հինգ ամիս պակաս և մեռավ չորեքշաբթի օրը, Ռաբի Ա ամսից ինն օր մնացած, 125 թվականին (21 հունվար 743), երբ հիսուններեք տարեկան էր:

Նրա օրոք արշավանք կատարեց 106 (29 մայիս 724 — 18 մայիս 725) թվականին Մուավիա իբն Հիշամը: Նա ուղարկեց Վաղդահին՝ Վաղդահիյայի տիրոջը, որը վառեց [հոռոմների] ցանքսերն ու դյուղերը, քանզի հոռոմները այրել էին իրենց արոտավայրերը: Ամառային ձախ արշավանք կատարեց Սաիդ իբն Աբդ ալ-Մալիքը:

Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին արշավեց Ալանաց երկիրը:

107 (19 մայիս 725 — 7 մայիս 726) թվականին Մուավիան կրկին [արշավեց]:

108 (8 մայիս 726 — 27 ապրիլ 727) թվականին Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը գլխավորեց ամառային աջ արշավանքը, իսկ Ասիմ իբն Խալիլ ալ-Հիլալին՝ ամառային ձախ արշավանքը:

109 (28 ապրիլ 727 — 15 ապրիլ 728) թվականին արշավեց Մուավիա իբն Հիշամը և նրա հետ էր առաջապահ զորքի հրամանատար ալ-Բաթթալը: Նա գրավեց Խանջարան:

Մասլաման արշավեց թուրքերի դեմ, գրավեց Ալանաց դուռը և բախվեց Խաքանի հետ:

111 (5 ապրիլ 729 — 25 մարտ 730) թվականին Մուավիա իբն Հիշամը ամառային ձախ արշավանք կատարեց, իսկ Սաիդ իբն Հիշամը՝ ամառային աջ արշավանք:

Թուրքերը հարձակվեցին Ատրպատականի վրա և նրանց դեմ դուրս եկավ Հարիս իբն Ամր ալ-Թաին ու փախուստի մատնեց նրանց:

112 (26 մարտ 730 — 14 մարտ 731) թվականին թուրքերը մտան Արդաբիլի հողը, նրանց դեմ արշավեց Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին: Սա բախվեց թուրքաց թագավորի հետ և սպանեց նրան:

Մուավիա իբն Հիշամը արշավեց հոռոմների դեմ, սակայն չկարողացավ մտնել նրանց երկիրը: Նա բանակ դրեց Ամկ վայրում, Մարաշի կողմերում:

114 (3 մարտ 732 — 20 փետրվար 733) թվականին Մուավիա իբն Հիշամը և Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը [արշավեցին]:

115 (21 փետրվար 733 – 9 փետրվար 734) թվականին Հիշամի որդիները՝ Մուավիան ու Սուլայմանը [արշավեցին], իսկ առաջապահ զորքի հրամանատարն էր Աբդալլահ իբն ալ-Բաթթալը: Նա կռվեց Կոստանդինի դեմ ու գերեց նրան, իսկ հոռոմներին փախուստի մատնեց:

116 (10 փետրվար 734 – 30 հունվար 735) թվականին Մուավիա իբն Հիշամը [արշավեց]:

117 (31 հունվար 735 – 19 հունվար 736) թվականին Հիշամի երկու որդիները՝ Մուավիան ու Սուլայմանը [արշավեցին]:

Մուհամմադ իբն Մարուանն արշավեց Թուրքաց երկիրը [...]

[...] Մարուան իբն Մուհամմադը:

121 (18 դեկտեմբեր 738 – 6 դեկտեմբեր 739) թվականին Մասլամա իբն Հիշամը հասավ Մալաթիա:

122 (7 դեկտեմբեր 739 – 25 նոյեմբեր 740) թվականին Մարուան իբն Մուհամմադը [արշավեց] Հայաստանի կողմերը, իսկ Սուլայման իբն Հիշամը՝ Մալաթիայի կողմերը:

123 (26 նոյեմբեր 740 – 14 նոյեմբեր 741) թվականին Սուլայման իբն Հիշամը ամառային արշավանք [կատարեց], իսկ Մարուան իբն Մուհամմադը [արշավեց] Գեղան (Ջիլան) ու Մուղան (Մուկան), որոնք Հայաստանի հողում են:

124 (15 նոյեմբեր 741 – 3 նոյեմբեր 742) թվականին Սուլայման իբն Հիշամը հանդիպեց Ռումի թագավոր Լեոնին ու Արթաբասին, սակայն հեռացավ ու նրանց միջև պատերազմ չեղավ:

125 (4 նոյեմբեր 742 – 24 հոկտեմբեր 743) թվականին Ղամր իբն Յազիդ իբն Աբդ ալ-Մալիքը [արշավեց]:

## ՅԱԶԻԴ ԻԲՆ ԱԼ-ՎԱԼԻԴ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ՕՐԵՐԸ

էջ 336

Սաբիտ իբն Նուայմ ալ-Ջուզամին ըմբոստացավ Մարուանի դեմ, որը Հայաստանում [կառավարիչ] էր: Մարուանը հաղթեց նրան, սակայն չներեց արեց: Մարուանը հեռացավ Հայաստանից, այնտեղ թողնելով Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալիին[38], իսկ Դարբանդի վրա՝ Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլիին: Ապա ամբողջ Հայաստանը (Արմինիա) տվեց Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլիին[39]:

## ԻԲՐԱՀԻՄ ԻԲՆ ԱԼ-ՎԱԼԻԴԻ ՕՐԵՐԸ

էջ 337

Ապա իշխեց Իբրահիմ իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիք իբն

*Մարուանը, որի մայրը ստրկուհի (ումմ վալադ) էր Սուար անունով: Նա իշխանության գլուխ անցավ նույն օրը, երբ մեռավ Յազիդ իբն Աբդ ալ-Վալիդը:*

*Նա իշխեց չորս ամիս, սակայն Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուանը եկավ Հայաստանից չհանաչելով նրա իշխանությունը: Երբ հասավ Խառան, ինքն իրեն [խալիֆա] հռչակեց: Ջազիրայի բնակչությունը նրան թարուն հանաչեց (բայա տվեց): Նա Ջազիրայի զորքից մեծ քաղմությամբ եկավ ու տեսավ, որ Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքի երկու որդիները՝ Բաշիրն ու Մասրուրը բանակ են դրել Հալեբում: Փախուստի մատնեց նրանց զորքն ու գերեց նրանց, ապա գնաց մինչև Եմեսա, ուր իշխում էր Աբդ ալ-Ազիզը:*

*Իբրահիմը հենց որ լուր ստացավ, նրա դեմ ուղարկեց Սուլայման իբն Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքին, որը հանդիպեց Մարուանին ու նրա հետ Ջազիրայից, Կիննասրինից ու Եմեսայից եկած զորքերին: Բախումը տեղի ունեցավ Այն ալ-Ջարի (Այնճար) մոտ, Դամասկոսի նահանգում: Պատերազմն սկսեց չորեքշաբթի օրը Սաֆար ամսի յոթին, 127 թվականին (19 նոյեմբեր 744), ապա իրարից բաժանվեցին: Հաջորդ օրը Սուլայման իբն Հիշամը ու նրա ընկերակիցները հաղթվեցին ու դիմեցին Իբրահիմին:*

*Եկավ Մարուանը մինչև հասավ Դայր ալ-Ալիյա (Ալեյ) և Դամասկոսի ժողովուրդը նրան ճանաչեց և նա մտավ քաղաք: Այն ժամանակ Իբրահիմը ինքն իրեն հանված ճանաչեց և ձայն տվեց Մարուանին երկուշաբթի օրը Սաֆար ամսի կեսին, 127 թվականին (27 նոյեմբեր 744): Նա շարունակեց մնալ Մարուանի հետ, մինչև որ խեղդվեց Զաբ գետում, Աբդալլահ իբն Ալիի դեմ ճակատամարտի ընթացքում:*

## ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ ՕՐԵՐԸ ԵՎ ԱԲԲԱՍՅԱՆ ՏՈՀՄԻ ԿՈՉԸ

*127 թվականի Սաֆար ամսին (12 նոյեմբեր – 10 դեկտեմբեր 744) իշխեց Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուանը, որի մայրը ստրկուհի (ումմ վալադ) էր, անունը Ռայյա: Նրան ձայն տվեցին Դամասկոսում եղած բոլոր Օմայյաններն և ուրիշներ: Նա գրեց երկրների կառավարիչներին ու նրանցից ստացավ հնազանդություն, հպատակություն և ենթակայություն հայտնող գրություններ: Լսելով որ Եմեսայի (Հիմս) ժողովուրդն ապստամբել է, շարժվեց նրա դեմ, Դամասկոսում թողնելով Աբդ ալ-Ազիզ իբն ալ-Հաջջաջ իբն Աբդ ալ-Մալիքին: Նա պաշարեց, մինչև որ գրավեց քաղաքը:*

*Մարուանն ուզում էր վերադառնալ, սակայն լուր ստացավ, որ*

Դահհաք իբն Կայս ալ-Հարուրին տիրացել է Իրաք նահանգին ու կովել Աբդալլահ իբն Օմար իբն Աբդ ալ-Ազիզի դեմ Վասիթում, ապա գնացել է Ջազիրա, անցել Մոսուլը, հասել Մծբին, ուր Աբդալլահ իբն Մարուանն էր ու պաշարել նրան: Իսկ Դարբանդում Իսհակ իբն Մուսլիմի կառավարիչն էր նշանակված մի մարդ Մուսաֆիր կոչված, որը համակիր էր խարիջիններին: Դահհաքը նրան գրություն էր ուղարկել ճանաչելով նրա իշխանությունը Հայաստանի վրա, որի ժողովուրդը սպանել էր Հայաստանի կառավարիչ Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալիին[40] և սա (Մուսաֆիրը) եկավ այնտեղ (Հայաստան):

Մարուանը եկավ Խառան, որն իր նստավայրն էր դարձրել, մի վայրում, որը կոչվում էր Դաբար այ-Բայն: Դահհաքն այդ մասին տեղեկանալով եկավ նրա կողմը, անցավ Մոսուլի կողքով, որը պաշարեց, բայց չկամենալով գործը երկարացնել դիմեց Մծբին և այն պաշարելուց հետո եկավ Խառան՝ պատերազմելու Մարուանի դեմ: Նա սաստիկ պատերազմեց նրա դեմ: Դահհաքը շատ անգամներ հաղթանակներ էր տարել նրա դեմ, հեռացրել դաշից և ինքը նստել: Սակայն սպանվեց Դահհաքը 127 թվականին, իսկ խարիջիները ցիր ու ցան եղան:

էջ 340–341

Եվ ուժեղացավ Քիրմանին Խորասանում ու պատերազմը նրա և Նասր իբն Սայյարի միջև երկար տևեց: Քիրմանին գերակշռություն ձեռք բերեց Նասր իբն Սայյարի նկատմամբ:

Սակայն Քիրմանին խոցվեց ու սպանվեց և Նասրը խաչեց նրան և նրա զորքին տիրեց Աբու Մուսլիմը[41], որը հաջողություն ունեցավ, զորքը ստվարացավ: Նասր իբն Սայյարին նա նեղեց կովի մեջ և մի քանի անգամ փախստյան մատնեց: Նա Հաշիմիների (Աբբասյանների) տոհմի համար կոչ արեց և սա կատարվեց 129 թվականի Ռամադան ամսին (16 մայիս — 14 հունիս 746):

## ԱԲՈՒ-Լ-ԱԲԲԱՍ ԱԼ-ՍԱՖՖԱՀ

էջ 349

Աբդալլահ իբն Մուհամմադ իբն Ալի իբն Աբդալլահ իբն Աբբաս, որն իր որդու անունով (քունյա) կոչվում էր Աբու-լ-Աբբաս, իսկ մայրն էր Ռայթա բինտ (դուստր) Ուբայդալլահ ալ-Հարիսին, խալիֆա հռչակվեց ուրբաթ օրը Ռաբի Ա 13-ին 132 թվականին (30 հոկտեմբեր 749), ասվում է նաև չորեքշաբթի օրը Զու-լ-Հիջջայի 28-ին (7 օգոստոս 750),

*որն սաար (աջաս) ամիսներից [համապատասխանում է] Տիշրին Բ-ին (նոյեմբեր):*

*էջ 354-355*

*Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլին Սամոսատում պաշարված մնաց յոթ ասիս, իսկ Աբու Ջաաֆարը պաշարել էր նրան: Ասվում է, թե Աբու Ջաաֆարը չէր, որ պաշարել էր նրան, այլ Աբդալլահ իբն Ալին: Իսհակն ասում էր՝ իմ վզի պարտքն է մի բայա, որից չեմ հրաժարվի մինչև չիմանամ, որ նրա տերը մահացել է կամ սպանվել: Աբու Ջաաֆարը լուր ուղարկեց, թե Մարուանն սպանվել է, իսկ սա ասաց, թե պետք է ստուգեմ: Երբ նա վստահ եղավ, որ սպանվել է, ներաշխավորագիր խնդրեց և այն տրվեց նրան: Նա գնաց Աբու Ջաաֆարի հետ, քանզի նրա մոտ մեծ հեղինակություն ուներ:*

*էջ 357-358*

*Մոսուլի ժողովուրդն ապստամբեց իր կառավարչի դեմ, նրանից ամեն ինչ վերցրին ու դուրս քշեցին: Աբու Ջաաֆարն իր եղբոր՝ Յահիա իբն Մուհամմադ իբն Ալիին նշանակեց Մոսուլի կառավարիչ, ասելով նրան չորս հազար հոգի Խորասանի զորքերից: Սա եկավ [Մոսուլ] 133 (9 օգոստոս 750 – 29 հուլիս 751) թվականին և բնակիչներին մեծ թվով կոտորեց: Ասվում է, որ մի ուրբաթ օր հավաքեց ժողովրդին և տասնութ հազար դտարյուն (սալիր) արար կոտորեց, ապա սպանեց նաև նրանց ստրուկներին (արիդ) ու մաուլաններին, մինչև որ բնաջնջեց: Նրանց արյունից Տիգրիս գետը պղտորվեց: Մինչ այդ նման ապստամբություն չէր եղել Մոսուլում:*

*Աբու-լ-Աբբասը Մուհամմադ իբն Սուլին[42] Հայաստանի կառավարիչ նշանակեց: Սա եկավ մեծ զորքով, իսկ մինչ այդ երկրում բնակվել (մուտաղալլիբ) էր Մուսաֆիր իբն Քասիրը[43], որը Մարուան [խալիֆայի] նշանակած կառավարիչ Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլիի հաջորդն էր: Մուհամմադ իբն Սուլը կռվեց նրա դեմ, մինչև որ սպանեց նրան ու նվաճեց Հայաստանը: Նա Բայլականի ժողովրդին քշեց Քիլար (Ծնհեր) ամրոցը, իսկ քաղաքը հանձնվեց: Նրա քաղաքապետը այդ ժամանակ Վարդ իբն Սաֆուան ալ-Սամին էր, Սամա իբն Լաույի որդիներից: Բախտախնդիրների (սաալիք) և այլոց մի բազմություն հավաքվեց Քիլար ամրոցում: Մուհամմադ իբն Սուլը նրանց մոտ ուղարկեց Սալիհ իբն Սուբայհ ալ-Քինդիին, որը պաշարեց նրանց ու մեծ բազմություն կոտորեց:*

*Աբու-լ-Աբբասը Հիրայից փոխադրվեց Անբար, ուր կառուցեց մի քաղաք և կոչեց Հաշիմիյա[44] 134 (30 հուլիս 751 – 17 հուլիս 752) թվականին:*

Աբու-լ-Աբբասն իր եղբոր՝ Աբու Ջաաֆարին նշանակեց Ջազիրայի, Մոսուլի, Սահմանային ամրությունների (Սուղուր), Հայաստանի և Ատրպատականի կառավարիչ: Սա գնաց ու հասավ Ռակկա, ապա Ռաֆիկա քաղաքի հիմքերը դցեց Եփրատի ափին, ըստ Ադհամ իբն Մուհրիզի կատարած չափումների: Նա Հասան իբն Կահթաբա ալ-Թաիին նշանակեց Ջազիրայի կառավարիչ, իսկ Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամիին՝ Հայաստանի կառավարիչ, ապա հանեց նրան ու նշանակեց Հասան իբն Կահթաբային[46], որը մնաց այդ պաշտոնում Աբու-լ-Աբբասի իշխանության բոլոր օրերին:

էջ 362

Նրա օրոք արշավանքներ կատարվեցին: 133 (750-751) թվականին եկավ հռոմների ռոնապետր Կոստանդինը, հարձակվեց ու պաշարեց Մալաթիան, սակայն նրա՝ հետ հաշտություն կնքվեց: Նրա դեմ հարձակվեց Մուսա իբն Քաաբ ալ-Տամիմին, սակայն նրանք հանդիպում չունեցան: Աբու-լ-Աբբասը գրեց Աբդալլահ իբն Ալիին տեղեկացնելով, որ թշնամին նրանից թաքուն գործում է և հրամայեց որ զորքերը շարժման մեջ դնի և նա իր զորքերը սփռեց Սահմանային ամրությունների տարբեր կողմերում, առաջ խաղաց ու լեռնանցքը փակեց և այսպես պատրաստություններ էր տեսնում, երբ Աբու-լ-Աբբասի մահվան լուրն ստացավ ու հեռացավ:

## ԱԲՈՒ ՋԱԱՖԱՐ ԱԼ-ՄԱՆՍՈՒՐԻ ՕՐԵՐԸ

էջ 364

Սա Աբդալլահ իբն Մուհամմադ իբն Ալին է, որի մայրն էր բերբերուհի Սալաման: Խալիֆա հռչակվեց այն օրը, երբ մեռավ Աբու-լ-Աբբասը՝ կիրակի Զու-լ-հիջջայի 18-ին (9 հունիս 754), իսկ օտարների (աջամ) ամիսներից՝ Հազիրանին (հունիս), 136 թվականին:

էջ 371-372

Աբու Ջաաֆարը Հայաստանի կառավարիչ նշանակեց Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամիին[46], իսկ Ատրպատականում՝ Յազիդ իբն Հաթիմ ալ-Մուհալլաբիին, որը եմենցի արաբներին Բասրայից այստեղ փոխադրեց և առաջինն էր, որ նրանց բերեց: Նա Ռավվադ իբն Մուսաննա ալ-Ազդիին տեղավորեց Դավրեժում (Տարրիզ) և մինչև Բադդ, Մուռ իբն Ալի ալ-Թաիին բնակեցրեց Նարիզում[...]Համաղանիին՝ Միանիջում: Այսպիսով նա ցրեց եմենցի ցեղերին: Ատրպատականում

նիզարի ցեղերից ոչ մեկը չկար, բացի ալ-Սաֆար իբն ալ-Լայս ալ-Ուտրիից ու նրա հորեղբորորդի՝ ալ-Բախս իբն Հայրասից:

Ապա խազարները շարժվեցին Հայաստանի կողմերը ու հարձակվեցին Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամիի վրա: Վերջինս գրեց Աբու Ջաաֆարին, տեղեկացնելով, որ խազարաց Թագավոր Ռաս Թարխանը հարձակվել է մեծ զորքով, իսկ իր տեղակալը (խալիֆա) սպանվել է: Աբու Ջաաֆարը նրան ուղարկեց Ջիբրիլ իբն Յահիա ալ-Բաջալիին, Ասորիքի, Ջազիրայի ու Մոսուլի զորքերից քսան հազարով: Նրանք կռվի ելան խազարների դեմ, սակայն մահմեդականները մեծ բազմությամբ կոտորեցին, Ջիբրիլն ու Յազիդը փախուստի դիմեցին, մինչև որ Հասան Խիբս:

Երբ Աբու Ջաաֆարը լսեց թե ինչ է կատարվել և ինչպես խազարները հայտնվել ու մտել են իսլամի երկիրը, բանակից յոթ հազար հոգու հանեց, ապա մարդ տարեց ու տարբեր երկրներից մեծ զորք հավաքեց և ուղարկեց նրանց զործավորների ու որմնադիրների հետ: Եվ կառուցեցին Կամախ (Քամխ)[47], ալ-Մուհամմադիյա և Բաբ Վակ քաղաքները ու բազում քաղաքներ, որոնք մահմեդականների հենակետերը դարձան: Նա ռազմիկներ (կայազորներ) տեղավորեց, որոնք վերսկսեցին պատերազմը, նրանց [բնակիչները՞] կռվեցին սրանց դեմ, իսկ մահմեդականները ուժեղացան այդ քաղաքներում և երկիրը հանդարտվեց:

Ապա Հայաստանում ըմբոստացան ծանարները (սաննարիյա) և Աբու Ջաաֆարը Հասան իբն Կահթաբային որպես կառավարիչ առաքեց Հայաստան: Նա կռվեց, սակայն անզոր գտնվեց նրանց առջև և գրեց Աբու Ջաաֆարին նրանց կատարած գործերի ու բազմության մասին: Նա (Աբու Ջաաֆարը) ուղարկեց Ամիր իբն Իսմաիլ ալ-Հարիսիին, քսան հազար զորքով: Նրանք (արաբները) բախվեցին ծանարների հետ ու սաստիկ կռիվ տեղի ունեցավ, մի քանի օր կռվում էին իրար դեմ: Սակայն Ալլահը հաղթանակ պարգևեց նրանց (արաբներին) և մի օրում նրանցից (ծանարներից) տասնվեց հազար մարդ կոտորվեց: Ապա [Հասանը] եկավ Տփղիս (Տաֆլիս) ու կոտորեց իր մոտ եղած գերիներին և ծանարներին հետապնդեց ուր էլ որ լինեին:

Դրանից հետո Աբու Ջաաֆարը Հայաստանի կառավարիչ նշանակեց իր մաուլա Վադիհին[48] և նա մնաց այս երկրի ու Ատրպատականի կառավարիչ Աբու Ջաաֆարի ամբողջ խալիֆայության ընթացքում:

Թաբարիստանի բնակիչներն ապստամբեցին, ըմբոստություն ու անհնազանդություն ցուցաբերեցին և մեծ զորքով գրոհեցին: Մահդին նրանց դեմ ուղարկեց Խազիմ իբն Խուզայմա ալ-Տամիմիին ու Ռաուհ իբն Հատիմ ալ-Մուհալլաբիին, որոնք փախուստի մատնեցին նրանց զորքերը և Թաբարիստանը նվաճվեց 142 (4 մայիս 759 – 21 ապրիլ 760) թվականին:

Էջ 371-374

Աբու Ջաաֆարը Բաղդադ փոխադրվեց 144 (11 ապրիլ 761 – 31 մարտ 762) թվականին: Նա ասում էր՝ սրանից ավելի հարմար տեղ չեմ գտնել քաղաք կառուցելու համար, քանի որ գտնվում է Տիգրիսի ու Եփրատի, Բասրայի ճանապարհի, Ուբուլլայի, Ֆարսի ու շրջակայքի, Մոսուլի, Ջազիրայի, Ասորիքի, Եգիպտոսի, Մաղրիբի, Ջաբալի ճանապարհի ու Խորասանի միջև: Տիգրիսի արևմտյան ափին իր քաղաքի հիմքերը դրեց, որը հայտնի է Աբու Ջաաֆարի քաղաք անունով: Չորս դուռ (դարպաս) դրեց, ընդ որում մի դուռը կոչեց Խորասանի դուռ (Բաբ Խուրասան), որը Տիգրիսի վրա էր, մի դուռը կոչեց Բասրայի դուռ, որը նայում էր ալ-Սարատի վրա, իսկ սա ակիզը է առնում Եփրատից ու հասնում Տիգրիսին: Մի դուռն էլ կոչեց Քուֆայի դուռ, ու մյուսը՝ Ասորիքի դուռ (Բաբ ալ-Շամ): Այս դռներից ամեն մեկի վրա շինեց հավաքավայրեր (մաջալիս) ու ոսկեզօծ գմբեթներ, ուր ձիով բարձրանում էին:

Պարսպի լայնությունը ներքևում յոթանասուն կանգուն էր: Նա ամբողջ Բաղդադի շուրջը պարիսպ կառուցեց, ջանասիրությամբ շինեց, ճարտարապետներ (մուհանդիս), որմնադիրներ ու գործավորներ բերել տվեց ամեն քաղաքներից: Իր մաուլաներին ու զորավարներին հողամասեր հատկացրեց քաղաքի ներսում, որոնց անունով էլ կոչվեցին քաղաքի փողոցները ու նրանց շինարարություն կատարել տվեց: Ուրիշներին տեղ հատկացրեց քաղաքի դռների մոտ, զորականներին տվեց քաղաքի արվարձանները (արբատ), իր տոհմի անդամներին տվեց ծայրամասերը: Հողամասեր հատկացրեց իր որդուն Մահդիին և իր տոհմի մի շարք անդամներին, մաուլաներին ու զորավարներին:

Ուխտագնացությունից վերադարձին Աբու Ջաաֆարը գնաց Բաղդադ և կանգ առավ քաղաքի կենտրոնում Բաբ ալ-դահաբ (Ոսկե դուռ) կոչված պալատում 145 (1 ապրիլ 762 – 20 մարտ 763) թվականին: Շուկաները նախ քաղաքի ներսում էին, սակայն նա դուրս բերեց դեպի Քարխ:

Էջ 387

Աբու Ջաաֆարը կառուցեց Մամեստիա (Մասսիսա) քաղաքը[49], որը նախապես փոքրիկ բերդ էր եղել: Ասվում է, որ այն կառուցել է Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը: Հոռոմները ամեն ժամանակ հարձակվում էին և քանդում, փչացնում այս վայրը: Նա (Աբու Ջաաֆարը) շուրջը պարիսպ կառուցեց, այնտեղ բնակեցրեց ռազմիկների ու հավաքեց բանտերում եղածներին: Այս շինարարու-

*թյան ղեկավարներն էին ալ-Աբբաս իբն Մուհամմադը և Սալիհ իբն Ալին:*

*էջ 389*

*[Մանսուրը] մեռավ Զու-լ-հիջջայի 3-ին, 158 թվականին (5 հոկտեմբեր 775):*

*էջ 390*

*Նրա օրոք 138 (755-756) թվականին արշավանք կատարեցին Սալիհ իբն Ալին, որն Ասորիքի ջունդի կառավարիչն էր և Աբբաս իբն Մուհամմադ իբն Ալին, որը Խորասանի կառավարիչն էր: Ռումի երկիրը արշավանքներ չէին կատարվել Ղամր իբն Յազիդի 125 (742-743) թվականի արշավանքից հետո: Ասորիքի ու Սահմանային ամրությունների կառավարիչ Սալիհ իբն Ալին իր կողմից զորավարների էր ուղարկում Ռումի երկիրը արշավելու, որոնց հրամանատարներն էին իր որդին՝ Ֆադլ իբն Սալիհը և ուրիշներ:*

*Այսպես 142 (759-760) թվականին [արշավեց] Աբբաս իբն Մուհամմադը: 143 (760-761) թվականին՝ նույնը, 145 (762-763) թվականին՝ Հումայդ իբն Կահթաբան, 146 (763-764) թվականին՝ Մուհամմադ իբն Իբրահիմը, 147 (764-765) թվականին՝ ալ-Աբիկ իբն Աբդալլահ իբն ալ-Հարիսը, 148 (765-766) թվականին՝ Ֆադլ իբն Սալիհը, 149 (766-767) թվականին՝ Յազիդ իբն Ուսայդը, 155 (771-772) թվականին՝ նույնը, իսկ 157 (773-774) թվականին՝ Զուֆար իբն Ասիմ ալ-Հիլալին:*

## ՄԱՀԴԻԻ ՕՐԵՐԸ

*էջ 392*

*Նա Մուհամմադ իբն Աբդալլահ ալ-Մանսուրն է, որի մայրն էր Ումմ Մուսա բինտ (դուստր) Մանսուր ալ-Հիմյարին: Խալիֆա հռչակվեց Մանսուրի մահացած օրը: Նրա համար Ռաբին համաձայնության երդում (բայաա) վերցրեց Մեքքայում ներկա հաշիմիներից (Աբբասյաններ) ու զորավարներից:*

*էջ 394*

*Նա հրամայեց բանտերից դուրս բերել պարտապաններին և այլ մարդկանց, ազատ արձակեց ու հրամայեց նրանց տալ ընծաներ,*

նվերներ և դրամական միջոցներ: Ապա բոլոր մարդկանց արձակեց և ամեն մեկին հագցրեց ու տեղ հասցրեց ըստ հնարավորին:

Էջ 395

Մահդին վերցրեց Իսա իբն Մուսայի գահաժառանգության իրավունքը, այդ բանը գնելով տասը միլիոն դիրհեմով: Նա իր որդու՝ Մուսայի համար համաձայնության երդում ապահովեց (բայաա) 159 (775 - 776) թվականին: Ապա նման երդում ապահովեց իր Հարուն որդու համար, որպես Մուսայից հետո երկրորդ ժառանգորդ:

Էջ 396

Նա կառուցեց 163 (17 սեպտեմբեր 779 – 5 սեպտեմբեր 780) թվականին Հադաս կոչված սահմանային ամրությունը, որպեսզի դիմադրի թշնամուն և նետ մղի:

Բանն այն է, որ հռոմները արշավել էին Մարաշ, շատերին գերեվարել ու կոտորել, սակայն երբ Մահդին կառուցեց Հադասը, Սահմանային գոտու բնակիչներն իրենց ավելի ուժեղ զգացին: Նա իր Հարուն որդուն այդ տարի արշավանքի ուղարկեց, զորավարների ու զորքի հետ միասին և նրան ճանապարհ դրեց մինչև Պիրամոս (Ջայհան) գետը: Այդ արշավանքի ժամանակ Հարունը նվաճեց Սամալուն և բազմաթիվ բերդեր:

Ապա նա նրան արշավանքի ուղարկեց 164 (6 սեպտեմբեր 780 – 25 օգոստոս 781) թվականին և [Հարունը] հասավ Կոստանդնուպոլիս: Հռոմները հաշտություն խնդրեցին ու նա հաշտություն կնքեց ու հեռացավ:

Էջ 401

Մահդին Բաղդադից դուրս եկավ Մուհառամի 12-ին 169 թվականին (26 հուլիս 785) դեպի Ջաբար նահանգը և կանգ առավ Ռադդ կոչված գյուղում Մասաբադանի հողում: Դուրս եկավ որսի և ամբողջ օրը հետապնդեց [որսը]: Շները մի եղնիկ էին հալածում և նա կամեցավ հասնել նրան: Եղնիկն անցավ մի ավերակի դռնից, անցան նաև շները, իսկ ձին սուրաց նրանց ետևից և նա (Մահդին) խփվեց դռանը ու նրան տարան վրանները: Մուհառամի 22-ին, 169 թվականին (6 օգոստոս 785) նա մահացավ քառասունութ տարեկան հասակում:

էջ 402

Նրա օրոք զորքը [Ռումի դեմ] արշավանքի սարան Հնակյալները.
159 (775 - 776) թվականին հոռոմները եկան Սամոսատ, շատերին ղերեվարեցին և նա (Մահդին) ուղարկեց իր մսուլա Սաղիրին, որը փրկեց մահմեդականներին: Այս կորքն արշավանքի տարավ Աբբաս իբն Մուհամմադը և Հասավ Անկիրիա (Անկիրա):
160 (776- 777) թվականին արշավեց Սումամա իբն ալ-Վալիդ ալ-Աբսին:
161 (777 - 778) թվականին արշավեց Իսա իբն Ալին, որին պատահեց հոռոմների զորքը և սպաշարեց:
162 (778 - 779) թվականին Հասան իբն Կահթաբա ալ-Թաին:
163 (779 - 780) թվականին Մահդիի որդի Հարունը, որը գրավեց Սամալուն:
164 (780 - 781) թվականին դարձյալ արշավեց Հարունը և հասավ Կոստանդնուպոլսի ծոցը:
166 (782 - 783) թվականին Սումամա իբն ալ-Վալիդը:
167 (783 - 784) թվականին ալ-Ֆադլ իբն Սալիհը:
168 (784 - 785) թվականին Մուհամմադ իբն Իբրահիմը:

## ՀԱՐՈՒՆ ԱԼ-ՌԱՇԻԴԻ ՕՐԵՐԸ

էջ 407

Հարուն ալ-Ռաշիդ իբն Մուհամմադ ալ-Մահդին, որի մայրն էր ալ-Խայզուրանը, խալիֆա դարձավ իր եղբոր՝ Մուսա [ալ-Հադիի] մեռած օրը՝ Ռաբի Ա 14-ին 170 թվականին (14 սեպտեմբեր 786):
[Հարունը] Ֆադլ իբն Յահիային նշանակեց Խորասանի կառավարիչ և նա երբ հասավ, տեսավ, որ Թալականի ժողովուրդն ապստամբել է: Նա գրավեց Թալականը: Հարձակվեց Թուրքաց տերը մեծ բազմությամբ և հանդիպեց Ֆադլի զորքին ու նրանք ուժեղ ընդհարում ունեցան: Նա խփեց Թուրքաց տիրոջ դեմքին, որն ընկճվեց և Ֆադլը ջարդեց նրա զորքն ու կողոպտեց ունեցվածքը:

էջ 410

Հարունը դուրս եկավ Ասորիք գնալու նպատակով, սակայն երբ լսեց Աբու-լ-Հայզամի սպանության լուրը, գնաց Սահմանային ամրությունները: Նա Հարսամա իբն Այանին արշավանքի ուղարկեց Ռումի երկիրը և հրամայեց կառուցել Տարսոնը 171 (787 - 788) թվականին: Նա ամուր կառուցեց, հինգ դուռ դրեց, իսկ շուրջը՝ ութսունյոթ աշտարակ:

*[Տարսոնն] ունի մեծ գետ, որը մեջտեղից է նրան ճեղքում և վրան կամարակապ կամուրջներ կան: Շինարարությունն սկսել էր նրա (Հարունի) մտուլա Աբու Սուլայմանը:*

*էջ 415*

*Ռաշիդը իր [ավագ] որդուն՝ Մուհամմադ ալ-Ամինին գահաժառանգ դարձնելուց հետո, Մամուն որդուն ևս գահաժառանգության համար համաձայնության երդում (բայաա) սալահովեց 183 (799 - 800) թվականին: Նրան երդում տվեցին բոլոր մարդիկ, նույնիսկ չուկաններում: Այս երկու դեպքերի (երկու որդիների գահաժառանգ հռչակելու) միջև ութ տարի էր անցել: Նա Մամունին ու Մուհամմադին իրավաբանների (ֆակիհ) ու հադիսագետների մոտ էր ուղարկում դասեր լսելու, ընտրելով նրանց համար կրոնագետների ու տրամաբանության հմուտ (ահլ ալ-նազար) գիտնականների: Մուհամմադը դանդաղ էր սովորում, իսկ Մամունն արագ էր յուրացնում:*

*Ռաշիդը բերել տվեց կառավարիչներին, բնակիչներին, դեհկաններին, կալվածատերերին, բերքը դնողներին և ընդունողներին, որոնց վրա կուտակված գումարներ կային: Նրանցից այն (սլարտքերը) պահանջելու համար վերակացու նշանակեց Արդալլահ իբն ալ-Հայսամ իբն Սամին, որը տարբեր ձևի տանջանքներով պահանջեց նրանցից: Այն տեղի ունեցավ 184 (800) թվականին:*

*էջ 422*

*Պատմել է Իսմայիլ իբն Աուրայհը, թե՝ Ռաշիդը մի օր Բաղդադում իր մոտ կանչեց ու մտա:*

*Ասաց՝ ուզում եմ քեզ մի գաղտնիք հայտնել, սակայն եթե լսեմ թե որևէ մեկին պատմել ես, վիզդ կկտրեմ: Ես ետ կանգնեցի և ասացի՝ ով հավատացյալների իշխան, եթե որևէ մեկին ասել ես, կարիք չկա, որ ինձ էլ ասես: Ասաց՝ ոչ ոքի չեմ ասել ու չեմ ասի: Ես ուզում եմ կոտորել Բարմաքի տոհմը[60] այնպես, որ ոչ ոքի նման ձևով չեն սպանել և նրանց հավիտյան մեջտեղից վերացնեմ: Ասացի՝ Ալլահը հաջողություն տա հավատացյալների իշխան և քեզ առաջնորդի:*

*Անցավ մեկ տարի, ապա երկու, երեք և չորրորդ տարվա սկզբին կոտորեց նրանց, ընդ որում Ջաաֆարի[31] սպանությունը կատարվեց Սաֆար ամսին 188 թվականին (19 հունվար – 16 փետրվար 804):*

*էջ 423*

*Ռաշիդն իր Կասիմ որդուն արշավանքի ուղարկեց 188 (803-804) թվականին: Նրա հետ էր Աբդ ալ-Մալիք իբն Սալիհ ալ-Հաշիմին, իսկ հրամանատարն էր Իբրահիմ իբն Օսման իբն Նահիքը: Նա պաշարեց Հիսն Սինանը և Կուռան: Սակայն վրա հասան սաստիկ սով, կարիքը և պղծությունը և հռոմները հաշտություն առաջարկեցին երեք հարյուր քսան մահմեդական [գերիների] ազատ արձակելու պայմանով, իսկ նա ընդունեց ու հեռացավ:*

*էջ 426-428*

**ՀԱՐՑՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԻՆԸ**
**(8 դեկտեմբեր 804 – 26 նոյեմբեր 805) ԹՎԱԿԱՆ**

*Հայաստանը Մահդիից հետո ապստամբել էր և մնաց ապստամբած վիճակում նաև Մուսայի (Հադիի) օրոք: Երբ իշխանության գլուխ անցավ Ռաշիդը, Խուզայմա իբն Խազիմ ալ-Տամիմիին նշանակեց Հայաստանի կառավարիչ, որը մնալով մեկ տարի երկու ամիս զսպեց ու երկրում կարգ հաստատեց և բնակիչները հնազանդվեցին:*

*Ապա Ռաշիդը նշանակեց Յուսուֆ իբն Ռաշիդ ալ-Սուլամիին Խուզայմա իբն Խազիմի փոխարեն: Սա Նիզարի [ցեղախմբի] մարդկանց տեղափոխեց այս երկիրը: Նախապես Հայաստանում գերիշխող էին Եմենի [ցեղախմբի] արաբները, իսկ Յուսուֆի օրոք բազմացան նիզարիները:*

*Հետո նշանակեց Յազիդ իբն Մազիադ իբն Զաիդա ալ-Շայբանիին, որն ամեն կողմից այստեղ փոխադրեց Ռաբիա [ցեղախմբի] մարդկանց, այնքան որ այսօր նրանք զերակշիռ թիվ ունեն: Նա ամենախիստ ձևով զսպեց երկիրը, այն աստիճանի, որ ոչ ոք չէր կարող շարժվել:*

*Նրանից հետո [Ռաշիդը] նշանակեց Աբդ ալ-Քաբիր իբն Աբդ ալ-Համիդին՝ Զայդ իբն ալ-Խաթթաբի որդուն, որի կացարանը (մանզիլ) Խառանում էր: Նա եկավ [Հայաստան] Դիար Մուդար [ցեղախմբի] մի խումբ մարդկանց հետ, սակայն չորս ամիս մնալուց հետո հեռացավ:*

*Ապա նշանակեց ալ-Ֆադլ իբն Յահիա իբն Խալիդ ալ-Բարմաքիին, որն անձամբ եկավ, և հենց որ հասավ, ուղղվեց դեպի Դարբանդ, արշավեց Համզին բերդը, սակայն Համզինի ժողովուրդը նրան փախուստի մատնեց: Ոչ մի բանի չհասնելով, նա հեռացավ ու գնաց Իրաք, իր փոխարեն թողնելով Օմար իբն Այուբ ալ-Քինանիին:*

*Երբ Ֆադլը եկավ Իրաք, ուղարկեց Աբու-լ-Սաբահին, որպես Հայաստանի հարկերի [վերատեսուչ] և Սաիդ իբն Մուհամմադ ալ-Հառանի ալ-Լահբիին՝ որպես ռազմական գործերի [վերատեսուչ]:*

Պարտավի բնակչությունն ապստամբեց Աբու Սաբահի դեմ ու սպանեց նրան: Հայաստանն ապստամբեց և հանդես եկավ Աբու Մուսլիմ ալ-Շարին (խարիջի): Ֆադլը Հայաստանի կառավարիչ նշանակեց Խալիդ իբն Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամիին[52], իսկ նա [օգնության] առաքեց Աբդ ալ-Մալիք իբն Խալիֆա ալ-Հարաշիին հինգ հազարով: Նրանք Ռույանում բախվեցին Աբու Մուսլիմ ալ-Շարիի հետ, իսկ նա հաղթեց նրանց և ինքը՝ Աբու Մուսլիմը գնաց ու գրավեց ալ-Քիլար ամրոցը:

Ռաշիդը Հայաստանի կառավարիչ նշանակեց ալ-Աբբաս իբն Ջարիր իբն Յազիդ իբն Ջարիր իբն Աբդալլահ ալ-Բաջալիին[53], որը երբ հասավ Պարտավ, բայլականցիները ապստամբեցին, իսկ նա պաշտպանվեց նրանցից Պարտավի արվարձանում և Մաադան ալ-Հիմսիին վեց հազար զորքով ուղարկեց Աբու Մուսլիմի դեմ: Նրանք իրար բախվեցին ու սպանվեց Մաադան ալ-Հիմսին, իսկ Աբու Մուսլիմը գնաց Դվին, չորս ամիս պաշարելուց հետո հեռացավ, գնաց Բայլական և այնտեղ կանգ առավ:

Հայաստանի վիճակը բարդացավ և Ռաշիդն առաքեց Յահիա ալ-Հարաշիին, տասներկու հազար զորքով, իսկ Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանիին՝ տաս հազարով: Նա հրամայեց Յազիդ իբն Մազիադին գնալ Հայաստան, իսկ Հարաշիին կարգադրեց հարձակվել Ատրպատականի վրա: Այդ ժամանակ Ատրպատականում բռնացել էր Մուհալհիլ ալ-Տամիմին, իսկ Հարաշին նրա հետ հանդիպեց, կռվեց ու փախուստի մատնեց և երկիրը կարգի բերեց: Ապա գնաց Հայաստան, որպեսզի Յազիդ իբն Մազիադի հետ կռվի դուրս գա Աբու Մուսլիմ ալ-Շարիի դեմ, սակայն երբ երկիր հասավ, վերջինս մահացել էր: Նրան հաջորդեց ալ-Սաքան իբն Մուսա ալ-Բայլականին [...] մաուլան, որի կացարանը (մանզիլ) Բայլականն էր: Երբ սա տեղեկացավ Յահիա ալ-Հարաշիի գալստյան մասին, նրա դեմ առաքեց ալ-Խալիլ իբն ալ-Սաքանին, իր լավագույն հեծյալներով: Հարաշին բախվեց նրա հետ, գերեց նրան ու դիմեց Բայլական: Երբ Սաքանն իմացավ այս լուրը, դուրս եկավ ու փախավ գնաց Քիլաբ (Շնհեր) ամրոցը: Բայլականի բնակիչները եկան Հարաշիի մոտ ու երաշխավորագիր խնդրեցին, իսկ նա մտցրեց նրանց քաղաք և երաշխավորագիր տվեց ժողովրդին, սակայն [քաղաքի] բերդը քանդեց:

Սաքանն ութ հազարով գնաց Յազիդ իբն Մազիադի մոտ երաշխավորագիր խնդրելով և նա տարավ նրան Ռաշիդի մոտ: Երբ երկիրը հանդարտվեց, Ռաշիդը Մուսա իբն Իսա ալ-Հաշիմիին կառավարիչ նշանակեց: Սա Հայաստանում մնաց մեկ տարի, սակայն նորեն սկսեց խռովությունը և տարբեր գավառներ ապստամբեցին: Այդ մասին գրեց Ռաշիդին, իսկ վերջինս ասաց՝ հարմար եմ գտնում միայն Հարաշիին ու հեռացնելով Մուսա իբն Իսային, Հարաշիին առաքեց

որպես կառավարիչ և նա սրակոտոր արեց նրանց ու վիճակը կարգավորվեց:
Ռաշիդը կառավարիչ նշանակեց Ահմադ իբն Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամիին, սակայն երբ նա եկավ, Հարաշիի հետ ու նրանից էլ առաջ այստեղ եկած խորասանցիները ապստամբեցին և կռվի բռնվեցին: Նրանք համառորեն ընդվզեցին և ասում էին՝ քեզ չենք լսի ու հպատակվի:
Ապա Ռաշիդը նշանակեց Սաիդ իբն Սալմ իբն Կուտայբա ալ-Բահիլիին[64]: Երբ երկիր հասավ, մարդիկ ամիսներ շարունակ թշնամական դիրք բռնեցին, իսկ նա եղեց պատրիկներին: Նրա դեմ ըմբոստացավ Դարբանդի ժողովուրդը և հարձակվեց նրա նշանակած տեղական կառավարչի վրա: Դարբանդի տերն էր դարձել ալ-Նաջմ իբն Հաշիմը, որին Սաիդ իբն Սալմը սպանեց: Ապստամբեց նրա որդին, Հայան իբն Նաջմը, որն սպանեց Դարբանդում Սաիդի նշանակած կառավարչին ու նրա գլուխը ցուցադրելով ապստամբության կոչ արեց: Գրեց խազարաց թագավոր խաքանին և նա մեծ զորքով հարձակվեց, ապատակ սփռեց մահմեդականների դեմ, կոտորեց ու մեծ բազմություն գերեվարեց: Նա եկավ ու հասավ Կուր գետի կամուրջը և մահմեդականների մեծ բազմություն գերեվարեց, բոլորին կոտորեց, երկիրը վառեց, կոտորեց կանանց ու երեխաներին:
Երբ Ռաշիդն այս բաները լսեց, ուղարկեց ալ-[...]արին՝ հրամայելով նրան ձերբակալել Սաիդ իբն Սալմին և ցուցադրել մարդկանց առջև: Երբ տեղ հասավ, Սաիդը նրան փող տվեց և ալ-[...]արը համաձայնեց առնել փողը: Երբ Ռաշիդն այդ բանը լսեց, ուղարկեց Նասր իբն Հաբիբ ալ-Մուհալլաբիին որպես կառավարիչ, սակայն մի քիչ մնալուց հետո հանեց նրան ու կառավարիչ նշանակեց Ալի իբն Իսա իբն Մահանին: Երբ սա տեղ հասավ, վատ վերաբերմունք ցուցաբերեց և Շարուանի ժողովուրդն ապստամբեց և երկիրը խռովեց: Ռաշիդը նշանակեց Յազիդ իբն Մազյադ ալ-Շայբանիին[65], իսկ Ալիին՝ ետ ուղարկեց Խորասան: Նա Յազիդ իբն Մազյադին դարձրեց Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ: Երբ սա եկավ, մարդիկ հնազանդվեցին, իսկ նա երկրի վիճակը կարգավորեց, հաշտեցրեց նիզարի ու եմենի [արաբներին], գրեց թագավորների ու պատրիկների որդիներին, գոհացրեց նրանց ու երկիրը հանդարտվեց:
Հետո Ռաշիդը կառավարիչ նշանակեց Խուզայմա իբն Խազիմ ալ-Տամիմիին, իսկ սա բռնեց պատրիկներին ու թագավորների որդիներին ու գլխատեց նրանց և ամենավատ վերաբերմունքը ցույց տվեց: Ապստամբեցին Վիրքը և ծանարները և նա զորք ուղարկեց, իսկ նրանք կոտորեցին նրան: Նա ուղարկեց Սաիդ իբն ալ-Հայսամ իբն Շուբա իբն Զուհայր ալ-Տամիմիին մեծ զորքով և նա կռվեց Վիրքի ժողովրդի ու ծանարների դեմ, մինչև որ նրանց երկրից

արտաքսեց, ապա գնաց Տփղիս:
Խուզայմա իբն Խազիմը մեկ տարուց պակաս մնաց, ապա Ռաշիդը հեռացրեց նրան և նշանակեց Սուլայման իբն Յազիդ իբն ալ-Ասամ ալ-Ամիրիին, որը միամիտ ու հիմար ծերունի էր. այնքան թույլ էր, որ ոչինչ չէր կարող անել և քիչ էր մնում, որ երկիրը ձեռքից գնար:
Ռաշիդը նշանակեց ալ-Աբբաս իբն Զուֆար ալ-Հիլալիին, որի դեմ ապստամբեցին ծառաները և նա կռվի ելավ նրանց դեմ, սակայն չկարողացավ հաղթել: Ռաշիդն ուղարկեց Մուհամմադ իբն Զուհայր իբն ալ-Մուսայիբ ալ-Դաբբիին[56] և սա Ռաշիդի նշանակած վերջին կառավարիչն էր Հայաստանում:
Եղեսիայի ժողովուրդն ըմբոստացավ 190 (805-806) թվականին և ապստամբեց իր կառավարչի դեմ: Ռաշիդը նրանց կողմը գնաց և երբ հասավ Մանբիջ, նրանց պատվիրակությունը դիմավորեց նրան իրենց ձեռքով տալով [հարկը] և թողություն խնդրեցին, իսկ նա ներեց:
Ապա դիմեց Ռումի երկիրը, ամառային արշավանք կատարեց և նվաճեց Հերակլիան ու մաթմուրը (ցորենի շտեմարան):

էջ 431

Նրա օրոք արշավանքները ղեկավարեցին.
171 (787-788) թվականին Յազիդ իբն Անբասա ալ-Հարաշին, որը Իսհակ իբն Սուլայմանի կողմից էր նշանակված:
172 (788-789) թվականին՝ Մուհամմադ իբն Իբրահիմը:
173 (789-790) թվականին՝ Իբրահիմ իբն Օսմանը:
174 (790-791) թվականին՝ Սուլայման իբն Աբու Ջաաֆարը:
175 (791-792) թվականին՝ Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը, սակայն ասվում է, որ նա չի մտել հռոմեց երկիրը, այլ լեռնանցքը հասնելուց հետո՝ ուղարկեց Ֆազլ իբն Սալիհին:
176 (792-793) թվականին՝ Հաշիմ իբն ալ-Սալթը:
177 (793-794) թվականին՝ Դաուդ իբն ալ-Նումանը, Աբդ ալ-Մալիքի կողմից նշանակված:
178 (794-795) թվականին՝ Յազիդ իբն Ղաղուանը:
179 (795-796) թվականին՝ Ֆազլ իբն Մուհամմադը:
180 (796-797) թվականին՝ Իբրահիմ իբն ալ-Կասիմը:
181 (797-798) թվականին՝ Հարուն ալ-Ռաշիդը, որը գրավեց Հիսն (բերդ) ալ-Սաֆսաֆը:
182 (798-799) թվականին՝ Իբրահիմ իբն ալ-Կասիմ, Իսա իբն Ջաաֆարի կողմից:
183 (799-800) թվականին՝ Ֆազլ իբն ալ-Աբբասը:
184 (800) թվականին՝ Մուհամմադ իբն Իբրահիմը:

*185 (801) թվականին՝ Իբրահիմ իբն Օսմանը:*

*186 (802) թվականին՝ Իբրահիմ իբն Օսմանը կրկին:*

*187 (802-803) թվականին՝ Կասիմ իբն ալ-Ռաշիդը. Արդ ալ-Մալիք իբն Սալիհը. Իբրահիմ իբն Օսման իբն Նահիքը, և այդ անգամ սպանվեց ալ-Ռաշիդ Իբրահիմ իբն Օսմանը:*

*189 (804-805) թվականին՝ Ֆադլ իբն ալ-Աբբասը:*

*190 (805-806) թվականին՝ Ռաշիդը. որը նվաճեց Հերակլիան ու Մաթամիրը: Նա ծովի վրա արշավանքի ուղարկեց Համիդ իբն Մայուֆին: Կիպրոսի բնակիչները հաշտության պայմանագիրը խախտել էին. իսկ նա արշավեց, կոտորեց ու գերեվարեց:*

*191 (806-807) թվականին Ռաշիդը դուրս եկավ արշավանքի. սակայն երբ հասավ Հադաս, դորքը արշավանքի ուղարկեց Հարսամա իբն Այանի հրամանատարության տակ և ինքը մնաց սահմանային ամրությունների գոտում, մինչև որ Հարսաման հեռացավ:*

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԱԼ-ԱՄԻՆԻ ՕՐԵՐԸ

*էջ 433*

*Երդում տրվեց Մուհամմադ ալ-Ամին իբն Հարուն ալ-Ռաշիդին, որի մայրը Ջաաֆար իբն Մանսուրի դուստրն էր: Խալիֆաների շարքում հայրն ու մայրը հաշիմի էին միայն Ալի իբն Աբու Թալիբը և Մուհամմադը (Ամին): Նրան երդում տվեցին Թուսում, նույն օրը, երբ մահացավ Ռաշիդը, այսինքն կիրակի օրը՝ Ջումադա Ա սկիզբը, 193 թվականին (20 փետրվար 809):*

*էջ 435*

*Նա Հայաստանի կառավարիչ նշանակեց Ասադ իբն Յազիդ իբն Մազիադին, որը գալով՝ տեսավ, որ երկրի մի մասին տիրացել են Յահիա իբն Սաիդը կոչեցյալ Ֆաուքաք ալ-Սուրհ և Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուան [խալիֆայի] մաուլա Իսմաիլ իբն Շուաբը: Նրանք Վիրքի կողմերում էին, իսկ նա խորամանկությամբ երկուսին էլ բռնեց. ապա ներեց ու արձակեց: Նա լավ բարքի տեր էր ու առատաձեռն:*

*Ապա Մուհամմադ [Ամինը] հեռացրեց նրան և Հայաստանի կառավարիչ նշանակեց Իսհակ իբն Սուլայման ալ-Հաշիմիին[57], որն իր փոխարեն առաջեց որդուն՝ Ֆազլին և սա մնաց [պաշտոնում] մինչև «հեռացվածի» (մախլուի) իշխանության վերջը:*

*Նա (Ամինը) Մուհամմադ իբն Սաիդ իբն Սարհ ալ-Քինանիին նշանակեց Եմենի կառավարիչ, որը Պաղեստինի բնակիչներից էր: Սա*

մնաց երեք տարի, ապա հեռացվեց ու փոխարենը նշանակվեց Ջարիր իբն Յազիդ ալ-Բաջալին: Սաիդ իբն Սարհը Եմենից դուրս եկավ հսկայական ունեցվածքով և գալով Պաղեստին, ձեռք բերեց պալատներ ու կալվածներ:

ԼՁ 436

Որոշ մարդիկ Մուհամմադին (Ամին) լարեցին Մամունի դեմ և նրանց միջև վատ հարաբերություններ ստեղծվեցին: Հրահրողները էին Ալի իբն Իսա իբն Մահանը և Ֆադլ իբն ալ-Ռաբիսն: Նրան համոզեցին, որ պետք է երդում տրվի նրա որդուն իբրև իրենից հետո գահաժառանգի, իսկ Մամունի [Թեկնածությունը] պետք է հանել: Այդպես էլ արեց և երդում տրվեց նրա որդուն՝ Մուսային և դա կատարվեց Ռաբի Բ ամսի 4-ին, 194 Թվականին (16 հունվար 810): Նա հավաքեց այն պայմանագրերը, որ դրել էր Ռաշիդը իրենց երկուսի [ժառանգության] մասին ու վառեց և նրանց երկուսի (եղբայրների) միջև Թշնամություն սկսեց: Մուհամմադը (Ամին) գրեց Մամունին՝ հրամայելով գալ իր մոտ բոլոր զորավարներով հանդերձ: Սակայն նա պատասխանեց, որ ինքը պարտավոր չէ նրան լսել, կամ հնազանդվել: Նա (Ամինը) գրեց նաև Խորասանում գտնվող զորավարներին, որոնք նույն ձևով պատասխանեցին, Թե՝ մենք քեզ հավատարիմ կլինենք, եԹե դու քո եղբոր նկատմամբ ունեցած ուխտը պահես, սակայն դու խախտեցիր պայմանագիրը, կամայականորեն շարժվեցիր, արհամարհելով հավատը և ուխտերը:

ԼՁ 439-441

Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը մեռավ Ռակկայում 196 (811-812) Թվականին և նա Մուհամմադ իբն Հարունի կողմից կառավարիչ էր Ջազիրայի, Կիննասրինի ջունդի, Ավասիմի ու Սահմանային ամրությունների վրա: Երկիրը խառնաշփոԹ վիճակում էր նրա մահվանից հետո, ամեն մի պետ (ռաիս) մի մասի տիրացավ (բռնացավ): Գոյացավ երկու խմբավորում (հիզբ), մեկը կողմնակից էր Մուհամմադին, մյուսը՝ Մամունին: Չմնաց մի երկիր, ուր իրար դեմ չկռվեին, չկար որևէ իշխանություն, որ արգելեր նրանց:

Թահիրը եկավ ՎասիԹ Ռաջաբի 3-ին (21 մարտ 812), երբ արդեն Մամունին երդում էին տվել Բասրայում, Քուֆայում, Մոսուլում, Եգիպտոսում, Ռակկայում:

Թահիրը եկավ Բաղդադ Ռաջաբի 8-ին 196 Թվականին (24 մարտ 812): Նա Բաղդադում գտնվող զորքին կոչ արեց երդում տալ

Մամունին և նրանք ընդառաջեցին:

Մուհամմադը չորս հարյուր դրոշ տվեց զորավարներին, Ալի իբն Մուհամմադ իբն Իսա իբն Նահիքին հրամանատար նշանակեց ու հրամայեց գնալ Հարսամայի դեմ, որը Նահրավանում բանակ էր դրել: Նրանք հանդիպեցին Ռամադան (16 մայիս – 14 հունիս) ամսին: Նա հաղթեց նրանց, գերելով Ալի իբն Մուհամմադ իբն Իսա իբն Նահիքին և ուղարկեց նրան Մամունին:

Նա դրոհեց մինչև հասավ Նահրայն կոչված վայրը, Բաղդադից մեկ կամ երկու փարսախ հեռավորության վրա, իսկ Թահիրը կանգ առավ Սարսար գետի մոտ Բաղդադից չորս փարսախ հեռու: Այսպիսով, Թահիրը [քաղաքի] արևմտյան կողմում էր, իսկ Հարսաման արևելյան կողմում և կռիվը Բաղդադում գնում էր երկու կողմի վրա միաժամանակ: Բանն այն է, որ [նման պայմաններում] վաճառականներին չէին անհանգստացնում, չուկանները գործում էին և նույն վաճառականի մոտ թե՛ Մամունի մարդիկ էին գալիս, թե՛ Մուհամմադի (Ամինի) և ոչ մի վնաս չէր լինում:

Ըմբոստացան Մուհամմադի դեմ աբնաներն[58] ու զինվորականները և կոչ արեցին հօգուտ Մամունի, գրեցին Թահիրին, պատանդներ տվեցին նրան, իսկ Թահիրը մտավ Բաղդադ և ճնշելով արևմտյան կողմը (ալ-Ջանիբ ալ-Ղարբի), հասավ Անբարի դուռը (Բաբ ալ-Անբար):

Բաղդադի արևելյան մասի ժողովուրդը նույնպես ապստամբեց և կոչ արեցին Մամունի համար:

Զուհայր իբն Մուսայիբը մտավ Բաղդադ Քիլուաղիի կողմից նավերով, որոնց վրա կային քարանետ մեքենաներ և քարընկեցներ: Մուհամմադը գնաց իր պալատը, որը հայտնի էր Խուլդ (անմահություն) անունով, Բաղդադի արևմուտքում ու այնտեղ ամրացավ, իսկ Զուհայրը քարեր նետեց մեքենաներով:

Հարսաման մտավ Խորասանի դռնով Ասքար ալ-Մահդիի կողմից, որը Բաղդադի արևելյան կողմում է, իսկ Թահիրը իր ճամբարից մտավ Աբու Ջաաֆարի քաղաքը (կենտրոնը) և նրանք պաշարեցին Խուլդ պալատը, իսկ Մուհամմադը (Ամին) դուրս եկավ Խորասանի դռնից, ապա հասնելով Տիգրիս, ուզեց դիմել Հարսամային: Թահիրի մարդիկ տեղեկանալով ըմբոստացան Հարսամայի դեմ, որն իր մի հրարձակ նավում էր և ջրասույզ արեցին նրան ու մի ժամից դուրս բերեցին: Դուրս եկավ Մուհամմադը (Ամին) ծածկոցով ու շալվարով ու նստեց ափին, իսկ զինվորներն անցնում էին կողքով ու չէին ճանաչում, մինչև որ մի մաուլա ճանաչեց ու տարավ իր տունը:

Այս լուրը հասավ Թահիր իբն ալ-Հուսայնին, սակայն տարակարծիք եղան Թահիրը, Հարսաման և Զուհայրը և Թահիրը հրամայեց իր մաուլա Կուրայշ ալ-Դինդանիին, որը նրա (Ամինի) գլուխը կտրեց, ցցի

*վրա ամրացրեց և նա (Թահիրը) գնաց իր ճամբարը՝ Բուստանում: Ապա այն ուղարկեց Մամունին:*

*էջ 442*

*Նրա խալիֆայությունը տևեց Ռաշիդի մեռնելու օրվանից մինչև իր սպանությունը՝ չորս տարի յոթ ամիս ու քսանմեկ օր, իսկ Հարունի (ալ-Ռաշիդ) մեռած օրից մինչև իր հանվելը (գահազուրկ լինելը)՝ երեք տարի: Սպանության օրը քսանյոթ տարեկան ու երեք ամսական էր: Երկու որդի ուներ՝ Մուսա և Աբդալլահ: Նրա օրոք հիմնական տնօրինողը (դալիր) Իսմաիլ իբն Սուբայհ ալ-Հառանին էր և Ֆադլ իբն ալ-Ռաբիան: Զորքի (շուրթա) պետն էր Մուհամմադ իբն ալ-Մուսայիբը, որին հանեց ու Հայաստանի կառավարիչ նշանակեց: Իսկ նրա փոխարեն կարգեց Մուհամմադ իբն Համդա իբն Մալիքին, հետո հեռացրեց ու փոխարենը դրեց Աբդալլահ իբն Խազիմ ալ-Տամիմիին: Նրա պահակազորքի (հարաս) պետն էր Իսմատ իբն Աբու Իսմատը, իսկ սենեկապետն (հաջիբ) էր Ֆադլ իբն ալ-Ռաբիան, բայց նրան փոխարինում էր որդին:*

## ՄԱՄՈՒՆԻ ՕՐԵՐԸ

*էջ 444*

*195 (810-811) թվականին խալիֆա դարձավ Աբդալլահ ալ-Մամուն իբն Հարուն ալ-Ռաշիդը, որի մայրն ստրկուհի (ումմ վալադ) էր, Մարաջիլ ալ-Բադղիսիյա կոչված: 198 թվականի Մուհառամ ամսին (սեպտեմբեր 813), երբ սպանվել էր Մուհամմադը (Ամին), նրան (Մամունին) միացան բոլոր երկրների բնակիչները և չմնաց մեկը, որ նրան հնազանդություն չհայտներ:*

*էջ 445*

*198 (813-814) թվականին Մամունն ալ-Հասան իբն Սահլին ուղարկեց Իրաք, որպես այդ և այլ երկրների կառավարիչ: Քուֆայում ապստամբել էր Ասֆարը, որը հայտնի էր Աբու-լ-Սարայա անվամբ, իսկ նրա անունն էր ալ-Սարիյ իբն Մանսուր ալ-Շայբանի, իր հետ ունենալով Մուհամմադ իբն Իբրահիմ ալ-Ալաուիին, որը հայտնի էր Իբն Թաբաթրա անվամբ: Ապա մեռավ Մուհամմադ իբն Իբրահիմը և Աբու-լ-Սաբայան նրա փոխարեն նշանակեց Մուհամմադ իբն Մուհամմադ իբն Զայդին: Իսկ Բասրան գրավել էր ալ-Աբբաս իբն Մուհամմադ իբն Մուսա ալ-Ջաաֆարը:*

Եկավ Զայդ իբն Մուսա իբն Ջաաֆար իբն Մուհամմադը Քուֆայից, ուր նա ապստամբել էր և գնաց Բասրա ալ-Աբբաս իբն Մուհամմադ ալ-Ջաաֆարի հետ: Վասիթը գրավեց Մուհամմադ իբն ալ-Հասանը, որը հայտնի էր Աալկ անվամբ: Եմենը գրավեց Իբրահիմ իբն Մուսա իբն Ջաաֆարը: Մծրինում և նրա շրջակայքում բռնացավ Ահմադ իբն Օմար իբն ալ-Խաթթար ալ-Ռաբիան, Մոսուլում՝ ալ-Աայյիդ իբն Ունսբ, Նվիրկերտում՝ Մուսա իբն ալ-Մուբարաք ալ-Յաշքարին, Հայաստանում՝ Աբդ ալ-Մալիք իբն ալ-Ջահհաֆ ալ-Սուլամին[59] և Մուհամմադ իբն Աттաբը, Ատրպատականում (Ադրբեջան)՝ Մուհամմադ իբն ալ-Ռավվադ ալ-Ազդին, Յազիդ իբն Բիլալ ալ-Յամանին, Մուհամմադ իբն Հումայդ ալ-Համադանին, Օսման իբն Աֆքալը և Ալի իբն Մուռ ալ-Թաին, Ջաբալում՝ Աբու Դուլաֆ ալ-Իջլին, Մուռա իբն Աբու Ռադինին, Ալի իբն Բահլուլը, Մուհամմադ իբն Ջահրան, Սինանը և Զադ իբն [...]: Սիլսիլայում՝ Վահն Հասսասը, իսկ նրա գավառում՝ Բիսթամ իբն ալ-Սուլուս ալ-Ռաբիան, Քաֆր Տուսայում և Ռաս Այնում՝ Հարիր իբն ալ-Ջահմը, Քայսումում ու նրան հարող Դիար Մուդարի շրջաններում՝ Նասր իբն Շաբաս ալ-Նասրին, որն ամենաուժեղ կռվողներից էր և անպարտելի, Կուբուսում և Ավասիմի այլ գավառներում (քուրա)՝ ալ-Աբբաս իբն Զուֆար ալ-Հիլալին, Հիյարում ու Կիննասրինի ու նրան հարող այլ գավառներում՝ Օսման իբն Սումամա ալ-Աբսին, իսկ Հալեբի մոտ գտնվող Հադիրում՝ Մանի ալ-Տանուխին:

էջ 448

Մամունը Ռիդա Ալի իբն Մուսա իբն Ջաաֆարին բերեց Մադինայից Խորասան: Նա դեսպան էր ուղարկել Ռաջա իբն Աբու Դահհաքին՝ Ֆադլ իբն Սահլի ազգականին: Նա եկավ Բաղդադ, ապա նրան տարան Մահ ալ-Բասրայի ճանապարհով մինչև Մերվ: Մամունը նրան (Ալի Ռիդա) գահաժառանգ հռչակեց Ռամադանի 8-ին, 201 թվականին (30 մարտ 817): Նա (Մամունը) մարդկանց ստիպեց կանաչ հագնվել սևի փոխարեն և այդ մասին ամեն կողմ գրավոր հայտնեց: Ռիդայի համար համաձայնության երդում տվեցին, մզկիթների մինբարներից կոչ արեցին և դինարներ ու դիրհեմներ կտրեցին նրա անունով:

էջ 453

Երբ [Մամունը] հասավ Թուս, մեռավ Ռիդա Ալի իբն Մուսա իբն Ջաաֆար իբն Մուհամմադը Նուկան կոչված գյուղում 203 (818-819)

թվականի սկզբին: Միայն երեք օր հիվանդացավ և ասվում է, թե Ալի իբն Հիշամը թունավորված նուռ կերցրեց նրան, իսկ Մամունը սաստիկ ցավեց նրա համար:

էջ 453-454

Մամունը եկավ Խաղաղության քաղաքը (Բաղդադ) Ռաբի Ա ամսին 204 թվականին (26 օգոստոս – 24 սեպտեմբեր 819): Նա, ինչպես նաև զորավարներն ու զինվորներն ամենքը կանաչ էին հագել: Մի շաբաթ մնալուց հետո հանեց [կանաչը] ու վերստին սև զգեստներ կրեցին:

էջ 459

Մամունը Բաղդադից գնաց Ֆում ալ-Սիլհ, որը Հասան իբն Սահլի կացարանն (մանզիլ) էր : Նա ամուսնացավ Հասան իբն Սահլի դստեր հետ և այնտեղ հարսանիք արեց: Այսպիսի հարսանիք երբեք տեսնված չէր: Մամունի այնտեղ գտնվելու օրերին Հասան իբն Սահլը մեծ ծախսեր կատարեց Մամունի և բոլոր նրա հետ գտնվողների՝ նրա տոհմի (տան) անդամների, քարտուղարների, ներձավորների ու զորքի բոլոր մարդկանց համար: Նա կալվածներ, գյուղեր, հարճեր, պատանի ծառաներ (վասիֆ), ձիեր ու գրաստ ընծայեց և այս բոլորի համար գրվում էր փոքրիկ թերթերի վրա, գրվում մշկահոտ խողովակաձև գալարների (բանադիկ, բդեղ) մեջ և շաղ էին տալիս մարդկանց գլխին: Ամեն մեկը, որ վերցնում էր գալարը, նայում էր գրվածքին և վերակացուներից ստանում [ինչ որ գրված էր]: Ապա մարդկանց վրա շաղ էին տալիս դիրհեմներ, դինարներ, մշկամեկներ (ֆար ալ-միսք) և սաթի (անբար) կտորներ: Մամունը քառասուն օր մնալուց հետո հեռացավ:

էջ 465

Մամունը դուրս եկավ կռվի 215 թվականի Մուհառամ ամսին (մարտ 830), դիմելով Ռումի երկիրը և ամառային արշավանք կատարեց, գրավեց Անկիրիոնը (Անկարա) մասամբ հաշտությամբ, մասամբ սրով ու ավերեց: Մանուել պատրիկը այնտեղից փախավ: Ապա գրավեց Սամալու բերդը և հեռացավ ու գնաց Դամասկոս:

Երբ լուր ստացավ, որ Եգիպտոսի գավառներից Բիշրուդում բնակչությունն ապստամբել է, հրամայեց իր եղբորը՝ Աբու Իսհակին որ այնտեղ ուղարկի Աֆշին Հայդար իբն Քաուսին և նա ուղարկեց:

*Ապա Մամունն արշավեց Ռումի երկիրը 216 (18 փետրվար 831 – 6 փետրվար 832) թվականին, գրավեց տասներկու բերդ և բազմաթիվ ստորգետնյա ամրություններ (մաթամիր): Լսելով, որ Ռումի բռնապետը հարձակվել է, նա իր որդուն՝ Աբբասին ուղարկեց, որը հանդիպեց նրան ու հաղթեց: Այլահը հաղթանակը տվեց մահմեդականներին:*

*Ռումի թագավոր Թեոփիլոսը (Տուֆիլ)[60] իր օգնական եպիսկոպոսին ուղարկեց և տվել էր մի նամակ, որն իր անունով էր սկսում: Մամունն ասաց՝ չեմ կարդա նրա ուղարկած նամակը, որ նրա անունով է սկսում և ետ ուղարկեց: Այնժամ Միքայելի որդի Թեոփիլոսը գրեց նրան՝ Արարաց թագավոր, մարդկանցից ամենաազնիվ Աբդալլահին՝ Ռումի թագավոր Միքայելի որդի Թեոփիլոսից [...] և խնդրեց, որ իրենից ընդունի հարյուր հազար դինար, իր մոտ եղած բոլոր գերիներին, որոնք յոթ հազար էին, այն պայմանով, որ նա (Մամունը) թողնի հոռոմներից գրաված բոլոր քաղաքներն ու բերդերը և հինգ տարի հրաժարվի պատերազմ անելուց: Սակայն նա չպատասխանեց ու գնաց Քայսում (Քեսուն), որը Դիար Մուդարում է՝ Ջազիրայի հողում:*

*Հաուֆի և Վերին Եգիպտոսում գտնվող Բիմայի ու Բաշրուդի ժողովրդի պայքարը Աֆշինի դեմ ուժեղացավ և Մամունն անձամբ գնաց Եգիպտոսի գավառները: Աֆշինը շարունակեց կռիվը Հաուֆի բնակիչների դեմ, սակայն ինքը (Մամունը) անձամբ գրոհեց նրանց դեմ, կոտորեց ու գերեվարեց Բիմայի բնակիչներին, որոնք Բաշրուդի ղպտիներն են: Այդ մասին նա դատավճիռ (ֆատուա) պահանջեց Եգիպտոսի կրոնական իրավագետներից (ֆակիհ) մեկից, որը կոչվում էր Հարիս իբն Միսքին, մալիքի [մաղհաբից][61]: Սա ասաց՝ եթե ապստամբում են իրենց կրած անիրավության պատճառով, չպետք է նրանց կյանքն ու ունեցվածքը վտանգի ենթարկվեն: Ասաց Մամունը՝ դու հիմար ես, իսկ Մալիքը քեզանից հիմար է. դրանք անհավատ զիմմիներ են. ուստի եթե նրանք անիրավության ենթարկվեն, պետք է իմամին (խալիֆային) բողոքեն և իրավունք չունեն դիմելու [ուժի] և մահմեդականների արյունը թափելու իրենց երկրում: Նա նրանց պետերին (մեծամեծներ) հավաքեց ու տարավ Բաղդադ:*

*Մամունը Եգիպտոսում մնաց քառասունյոթ օր. եկել էր Մուհառամի 10-ին (17 փետրվար 832) և հեռացել Սաֆարի 26-ին (5 ապրիլ) 217 թվականին: Եգիպտոսից դուրս գալով գնաց Դամասկոս, մի քանի օր մնաց, ապա դիմեց Սահմանային ամրությունները և բանակ դրեց Ադանայում:*

Էջ 467–468

Այդ նույն տարում Մամունն արշավեց Ռումի երկիրը և հասավ հոռոմների բերդերից մեկը, որը կոչվում էր Լուլուա[62]: Նա որոշ ժամանակ նրա առջև կանգ առավ, սակայն չկարողացավ գրավել: Երկու բերդ կառուցեց նրա դիմաց, ուր տեղավորեց Աբու Իսհակին և զորքը: Ապա գնաց Սալաղուս կոչված գյուղը և իր բերդում հրամանատար թողեց Ահմադ իբն Բասթամին: Աբու Իսհակը նույնպես իր բերդի վրա փոխանորդ թողեց Մուհամմադ իբն ալ-Ֆարաջ իբն Աբու-լ-Լայս իբն ալ-Ֆադլին ու մեկ տարվա պաշար թողեց: Մամունն այս բոլորի վրա հրամանատար կարգեց Ուջայֆ իբն Անբասային:

Լուլուայի տեր հոռոմները Ուջայֆին խորամանկությամբ գերի բռնեցին և նա մի ամիս մնաց նրանց ձեռքում: Նրանք գրեցին իրենց թագավորին և նա եկավ, սակայն Ալլահն առանց կովի պարտություն մատնեց նրանց: Երկու բերդերի մահմեդականները գրավեցին նրա ճամբաբը և ավարը տարան իրենց բերդերը:

Երբ Լուլուայի բնակիչներն այս բոլորը տեսան (և մանավանդ որ պաշարումը վնասում էր), նրանք պետք խորամանկություն մտածեց: Նա ասաց Ուջայֆին՝ քեզ ազատ կարձակեմ, եթե Մամունից ինձ համար երաշխավորագիր բերես: Սա խոստացավ նրան: Ապա [պետն] ասաց՝ ուղում եմ պատանդներ: Ասաց (Ուջայֆը)՝ քեզ կտամ իմ որդիներին: Նա իր տեղակալին լուր ուղարկեց, որ առաքի երկու քրիստոնյա [ստրուկ] սպասավորների (փառաշ) գեղեցկացնելով նրանց և նրանց հետ մի խումբ քրիստոնյա ստրուկ տղաների (ղուլամ)՝ մահմեդականի տարազով: Տեղակալը կատարեց հրամանը և Ուջայֆն այս բոլորին հանձնելով դուրս եկավ: Երբ իր ճամբարը հասավ, գրեց նրանց (հոռոմներին)՝ ձեր ձեռքում եղածները քրիստոնյաներ են և դուք կարող եք անել ինչ կամենաք: Նրանց պետք գրեց նրան՝ խոսքին հավատարիմ մնալը լավ է և դա ավելի լավ է քան ձեր կրոնը:

Ուջայֆը նրանց (հոռոմների) համար երաշխավորագիր բերեց և գրավելով բերդը (Լուլուան) մահմեդականների բնակեցրեց:

Մամունը 218 (833) թվականին գնաց Դամասկոս և քննեց մարդկանց արդարության հատկանիշի (ադլ) ու միակ Աստուծո ճանաչման (տաուհիդ) հարցում· Նա գրեց, որ Իրաքից և այլ վայրերից բերեն ֆակիհների ու նրանց քննեց Ղուրանի ստեղծված լինելու հարցում[63]: Նա անհավատ համարեց նրանց, ովքեր մերժեցին ասել, թե Ղուրանն ստեղծված է և գրեց [ամեն կողմ], որ հակառակ վկայությունն ընդունելի չլինի: Բոլորն այն բանն ասացին, բացի քչերից:

էջ 469

Մամունը 218 թվականին արշավեց Ռումի երկիրը: Նա պատրաստություններ էր տեսել պաշարելու Ամորիոնը: Ասում էր՝ մարդ եմ ուղարկելու արար [ընդեհնների] բերելու անապատներից, նրանց բնակեցնելու ամեն մի քաղաքում որ նվաճելու եմ, մինչև որ հարձակվեմ Կոստանդնուպոլսի վրա: Եվ ահա եկավ հռոմեց թագավորի դեսպանը առաջարկելով հաշտություն և զինադադար և պատրաստակամություն իր մոտ եղած գերիներր հանձնելու: Սակայն նա (Մամունը) չընդունեց: Երբ Լուլուայի մոտ էր. առաջ խաղաց և մի քանի օր կանգ առավ, սակայն մահացավ Պոտանդոն (Բադանդուն) կոչված վայրում, Լուլուայի ու Տարսոնի միջև: Նրա մահը տեղի ունեցավ հինգշաբթի օրը, Ռաջաբ ամսի 17-ին, 218 թվականին (8 օգոստոս 833): Նա քառասունութ տարեկան ու չորս ամսական էր: Նրա վրա աղոթեց եղբայրը՝ Աբու Իսհակը և թաղվեց Տարսոնում՝ ներքինի Խականի տանը:

Նրա իշխանության տևողությունը, հեռացվածի (Ամին) կենդանության օրոք նրա խալիֆայությունն ստանձնելու օրից մինչև մահվան օրը՝ քսաներկու տարի էր, իսկ հեռացվածի սպանության օրից՝ քսան տարի հինգ ամիս և քսանհինգ օր:

## ՄՈՒՏԱՍԻՄ ԲԻԼԼԱՀԻ ՕՐԵՐԸ

էջ 471

Խալիֆա դարձավ Աբու Իսհակ Մուհամմադ իբն Ռաշիդը, որի մայրն ստրկուհի (ումմ վալադ) էր Մարդա անունով: Նրան երդում (բայաա) տվեցին զորավարներն ու զորքը, որոնք Մամունի հետ էին [Կիլիկիայում]: Նրան երդում տվեց Աբբաս իբն Մամունը՝ ուրբաթ օրը, Ռաջաբ ամսի 18 – ին, 218 թվականին (10 օգոստոս 833):

Մուհամմիրաները (խուռամյանները)[64] ապստամբեցին Ջաբալում, ճանապարհ էին կտրում, վախեցնում ճանապարհորդներին, ապա հարձակվեցին Խորասանի ուխտավորների վրա, փախուստի մատնեցին ու մեծ բազմություն կոտորեցին: Մուտասիմն ուղարկեց Հաշիմ իբն Բատիջուրին, սակայն երբ նրանց միջև ընդհարում եղավ, Հաշիմը պարտվեց: Մուտասիմն առաքեց Իսհակ իբն Իսմայիլին՝ զորքով, իսկ Իսհակն իր եղբորը զորքի վրա փոխանորդ նշանակեց և ուղարկեց: Վերջինս կռվեց նրանց հետ ու մեծ բազմություն կոտորեց և մնաց մինչև որ կարգավորվեց երկրի վիճակը, այն բանից հետո, երբ նրանցից շատ էր տուժել:

*Լչ 472-476*

*Մուտասիմը 220 թվականի Ջու-լ-Կաադայի կեսին (11 նոյեմբեր 835) դուրս եկավ Կաթուլ և հատակագծեց իր կառուցելիք քաղաքի վայրը, մարդկանց (մեծամեծներին) հողակտորներ պարգևեց և ջանասիրությամբ առաջ տարավ շինարարությունը, այնպես, որ մարդիկ պալատներ ու տներ կառուցեցին և շուկաներ առաջացան: Ապա Կաթուլից գնաց Սամառա և կանգ առավ այնտեղ, ուր [հետագայում] կառուցվեց հասարակաց տունը (դար ալ-ամմա): Այնտեղ քրիստոնյա վանք կար և նա վանքի մարդկանցից (վանականներից) գնեց հողը ու հատակագծեց [ապագա քաղաքը] և հասավ այն վայրը, ուր [հետագայում] Ջաուսակ կոչված պալատը կառուցեց Տիգրիսի ափին: Նա բազում պալատներ կառուցեց զորավարների, քարտուղարների համար և նրանց անուններով կոչեց: Տիգրիսից արևելք գետեր (ջրանցքներ) փորեց և կառուցվածքներով շենացրեց: Գետերի (ջրանցքների) վրա դրեց ոոոգման մեծ անիվներ (գավալիր) և փոքր անիվներ (գավալի), ամեն երկրից բերեց արմավենիներ և տարբեր ծառերի տնկիներ: Այս ամենն սկսեց 221 թվականին (836): Նա կառուցեց ավաններ և ամեն մի քաղաքից բնակիչներ փոխադրեց և հրամայեց, որ իրենց քաղաքների նման կառուցեն: Եգիպտոսից մարդկանց բերեց, որպեսզի պապիրուսներ (կարաթիս) պատրաստեն, սակայն այդ նույն որակը չտվեց:*

*Բաբեկը հետզհետե զորացավ. նրա կողմնակիցն էր դարձել Մուհամմադ իբն ալ-Բուայսը, իսկ Մարանդի տեր Իսմատ ալ-Քուրդին հնազանդվել էր նրան: Մուտասիմը Իսհակ իբն Իբրահիմի եղբորը՝ Թահիր իբն Իբրահիմին առաքեց երկրի (Ատրպատականի) կառավարիչ, հրամայելով պատերազմել թշնամու դեմ: Երբ նա երկիր հասավ, Իբն ալ-Բուայսը գրեց Մուտասիմին հայտնելով իր հնազանդությունը և թե ինքը պատրաստվում է Բաբեկին, ընկերակիցներով հանդերձ, ծուղակը գցել: Նա խորամանկությամբ ամուսնացավ Մարանդի տեր Իսմատ ալ-Քուրդիի դստեր հետ: Գնաց նրա մոտ Մարանդ ու նրան [......] հրավիրեց: Նրան ու ընկերակիցներին խմեցրեց և երբ հարբեցին, գիշերանց տարավ իր ամրոցը, որ կոչվում է Շահի, ապա ուղարկեց Մուտասիմին: Վերջինս վարձատրեց նրան, գնահատեց ու ռոճիկ սահմանեց: Բանն այն է, որ նա հայտնեց Թահիր իբն Իբրահիմին տեղի ունեցածի մասին ու խնդրեց, որ իրեն ուղարկի երկաթե (սրեր^) ու ջորիները: Թահիրն այդ բանը արեց և նա այդ ամենն առաքեց Մուտասիմին ու նամակ գրեց՝ տեղեկացնելով կատարվածի մասին: Մուտասիմը զայրացավ Իսհակի վրա և ասաց՝ եղբորդ վրա ոչ մի լավ բան չեմ տեսնում, այլ առնականությունը տեսնում եմ միայն Իբն ալ-Բուայսի մոտ:*

Այն ատեն նա (Մուտասիմը) առաքեց Աֆշին Հայդար իբն Քաուս ալ-Աշրուսանիին, կառավարիչ նշանակելով այն բոլոր նահանգների վրա, որոնց միջով անցնելու էր: Նրա հետ ուղարկեց դրամ ու զինամթերք: Երբ Աֆշինը հասավ Ջարայ, իր հետ վերցրեց այնտեղ գտնվող բոլոր ռամիկներին (սաալիք, խուժան) ու երեսլիններին և տարավ: Նրա ու Բաբեկի միջև եղան ընդհարումներ. նրա զորքը կանգնած էր Բարզանդ կոչված վայրում, ապա գնաց Սադրասբ (Հեշտադսար) կոչված մի վայր: Մի տարի մնաց ու պատերազմեց, մինչև որ ձյուները կուտակվեց, ապա վերադարձավ Բարզանդ, իսկ իր տեղակալին առաքեց Սադրասբ: Նա խուժեց և ամեն գավառում [...]: Ապա գնաց Ռուդ ալ-Ռուդ, խրամատ փորեց, պարիսպ շինեց, դարանակալներ տեղավորեց, իսկ ինքը հարձակվեց Բադդի (Բազզ) վրա՝ հինգշաբթի օրը, Ռամազան ամսի 9-ին 222 թվականին (16 օգոստոս 837):

Բաբեկը մարդ ուղարկեց, որ բանակցի նրա հետ և նա համաձայնեց. նրանց միջև մի դետ կար: Աֆշինը նրան երաշխավորագիր առաջարկեց, իսկ նա մեկ օր ժամանակ խնդրեց: Սակայն [Աֆշինն] ասաց նրան՝ դու պարզապես ուզում ես քաղաքդ ամրացնել և եթե երաշխավորագիր ես կամենում, անցիր ձորը:

Նա հեռացավ ու պատերազմը սաստկացավ: Մահմեդականները մտան Բազդ քաղաքը, իսկ Բաբեկը վեց հոգու հետ փախավ: Բադդից յոթ հազար վեց հարյուր մահմեդական գերիներ ազատվեցին:

Բաբեկը ջորի հեծած, բրդե հագուստներով փախավ: Աֆշինը գրեց Հայաստանի ու Ատրպատականի պատրիկներին, որ հետապնդեն նրան: Ով կբերեր նրան խոստանում էր մեկ միլիոն դիրհեմ տալ և նրա երկիրը հարկազերծ դարձնել:

Բաբեկը հասավ մի պատրիկի մոտ, որը Սահլ որդի Սմբատի[ᵛᵛ] (Սահլ իբն Սինբաթ, Սահլ Սմբատյան) էր կոչվում: Սա նրան բռնեց ու նրա մասին գրեց Աֆշինին: [Աֆշինը] մարդ ուղարկեց, ձերբակալեց նրան ու հաղթանակի մասին գրեց [Մուտասիմին] հարցնելով, թե ինչ կարգադրություններ ունի: Հաղթանակի լուրը կարդացվեց և գրվեց բոլոր կողմերը թե [...], մինչև որ երկիրը խաղաղեցրեց ու հեռացավ տեղակալ թողնելով Մանքիջուր (Մանգիջաուր) ալ-Ֆարաղանիին՝ իր որդու քեռուն:

Նա եկավ Մուտասիմի մոտ, որը Սամառայում էր: Տարբեր օթևաններում նրան դիմավորեցին զորավարներն ու զորքը: Նա մտավ [քաղաք] Սաֆար ամսի երկուսին, 228 թվականին (4 հունվար 838), իսկ Բաբեկը նրա հետ էր գնում փղին հեծած, մինչև որ ներկայացան Մուտասիմին: Նա հրամայեց Բաբեկի երկու ձեռքն ու երկու ոտքը կտրել, ապա սպանել ու խաչել տվեց նրան Սամառայում: Նրա եղբորը՝ Աբդալլահին ուղարկեց Բաղդադ և Իսհակ իբն Իբրահիմը

սպանեց նրան ու խաչեց Բաղդադի արևելյան կողմում՝ կամուրջի գլխին:

Երբ Աֆշինը վերադարձավ Ատրպատական, Հայաստանի կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Սուլայման ալ-Ազդի ալ-Սամարկանդիին[66]: Սա եկավ և այդ ժամանակ Սմբատի որդի Սահլը ըմբոստացել էր Առանում ու բռնացել: Մտավ նրա երկիրը, սակայն Սահլը գիշերանց հարձակվեց ու փախուստի մատնեց նրան:

Վարդանակերտում ապստամբեց Մուհամմադ իբն Ուբայդալլահ ալ-Վարթանին: Աֆշինը նրա դեմ առաքեց Մանքիջուրին կռվելու նրա հետ: Սակայն նրա համար բարեխոսեց Ալի իբն Յահիա ալ-Արմանին և Մուտասիմը երաշխավորագիր տվեց նրան և այն բերեց Ալի իբն Յահիա ալ-Արմանին:

Ապա Աֆշինը Հայաստանի կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Խալիդ Բուխարախուդահին[67], որը, երբ եկավ, կռվեց ծանարների դեմ, գնաց Տփղիս: Իսհակ իբն Իսմայիլն ընդունեց նրան ու նվերներով ճանապարհ գցեց: Ապա Հայաստանի կառավարիչ նշանակեց Ալի իբն ալ-Հուսայն իբն Սիբա ալ-Կայսիին[68]: Երկրի ժողովուրդը նրան արհամարհեց այն աստիճանի, որ որբ էր կոչում, իր թուլության ու ողորմելիության պատճառով:

Մուտասիմը Հայաստանի ու Դիար Ռաբիայի մի մասի կառավարիչ նշանակեց Խալիդ իբն Յազիդին, սակայն երբ նրա գալստյան մասին լսվեց Հայաստանում, ամեն մի պետ (իշխան) ամրացավ իր բերդում և նրանց վախը սաստկացավ ու պատրաստվեցին ապստամբության: Այդ մասին Հայաստանի փոստի վերակացուն (սահիբ բարիդ) Մանսուր իբն Իսա ալ-Սիրաֆին գրեց Մուտասիմին և նա Խալիդին հեռացրեց ու հրամայեց վերահաստատել Ալի իբն ալ-Հուսայնին: Սակայն հազիվ մի քանի օր էր անցել նրա գալուց, երբ Պարտավում զորքը խռովություն բարձրացրեց, ռոճիկ պահանջելով: Նա ասաց՝ ես ոչինչ չունեմ, դրամը երկրի բնակիչների մոտ է: Ուստի պահանջեց երկրի բնակիչներից (նախարարներից), իսկ սրանք մերժեցին ու ամրացան իրենց բերդերում, ապա նամակագրություն ունեցան միմյանց հետ և հավաքվեցին ու պաշարեցին նրան Պարտավում: Ապա Մուտասիմն այդ երկիրն ուղարկեց Համդույա իբն Ալի իբն Ֆադլին, որը եկավ Նախճավան ու նրան ընդառաջ եկավ Յազիդ իբն Հիսնը, երաշխավորագիր խնդրելով [...]: Նա խիստ չէր վարվում նրանց հետ վախենալով, որ կապստամբվեն:

Հոռոմները մտան Զապետրա 223 թվականին (837 – 838), կոտորեցին, գերեցին բոլոր բնակիչներին ու արտաքսեցին նրանց: Երբ լուրը հասավ Մուտասիմին հանկարծակի վեր կացավ իր ժողովից՝ այլայլված, հավաքեց մարդկանց բաց դաշտում և զորքին հրամայեց կռվի դուրս գալ, գումարներ բաժանեց [զինվորներին]: Նույն օրը

բանակ զրեց Տիգրիսի արևմտյան կողմում, այն վայրում, որը հայտնի է ալ-Ոյուն անվամբ: Նա Աշինաս (Իշնաս) ալ-Թուրքիին առաջապահ զորքի հրամանատար նշանակեց և դուրս եկավ հինգշաբթի օրը, Ջումադա Ա ամսի վեցին (6 ապրիլ 838): Մտավ Ռումի երկիրը և դիմեց Ամորիոն, որը նրանց մեծագույն քաղաքներից էր ու մեծ ռազմական հանդերձանքով ու զորքով խիստ կերպով պաշարեց:

Ռումի բռնապետը տեղեկանալով, մեծ բազմությամբ դուրս եկավ, և երբ մոտեցավ, Մուտասիմը նրա դեմ մեծ զորքով ուղարկեց Աֆշինին, որը հանդիպեց բռնապետին, հաղթեց, փախուստի մատնեց ու նրա ռազմիկներին մեծ ջարդ տվեց: Ռումի բռնապետն իր կողմից պատվիրակություն ուղարկեց Մուտասիմին ասելով՝ նրանք, ովքեր Զապետրայում արեցին այն, ինչ արեցին, իմ կամքին հակառակ էր: Ես այն (Զապետրան) կկառուցեմ իմ ծախսով ու մարդկանցով, կվերադարձնեմ գերեվարված ժողովրդին, աղատ կարձակեմ Ռումի հողի վրա եղած բոլոր [մահմեդական] գերիներին, իսկ Զապետրայում պատրիկների հանցանքով այդ գործերը կատարողներին քեզ կառաքեմ:

Ամորիոնը նվաճվեց երեքշաբթի օրը, Ռամադան ամսի տասնյոթին, 223 թվականին (13 օգոստոս 838): Նա (Մուտասիմը) կոտորեց, գերեվարեց բոլոր բնակիչներին ու գերեց Ռումի թագավորի մորեղբայր Ցաթիսին, կործանեց ու վառեց ամեն ինչ իր անցած վայրերում, ապա հեռացավ: Երբ հասավ Ադանա, բանտարկել տվեց ալ-Աբբաս իբն ալ-Մամունին, քանզի լսել էր, որ իր շուրջը հավաքելով այլ զորավարների՝ ապստամբելու ու ըմբոստանալու տրամադրություն է ունեցել: Նրա մոտ գտավ հարյուր տասնվեց հազար դինար ու հրամայեց բաժանել զինվորներին:

## էջ 477

Աֆշինի բանտարկության առաջին պատճառն այն էր, որ Մանքիջուր ալ-Ֆարաղանին՝ Աֆշինի որդու մորեղբայրն ու նրա տեղակալը Ատրպատականում, ապստամբեց, իր շուրջը հավաքելով Բաբեկի կողմնակիցներին: Նա շարժվեց դեպի Վարդանակերտ և սպանեց Մուհամմադ իբն Ուբայդալլահ ալ-Վարսանիին ու մի խումբ տիրակալին (սուլթան, խալիֆա) հավատարիմ մարդկանց: Աֆշինը մեծ զորքով ուղարկեց Աբու-լ-Սաջին, որը կոչվում էր Դիվդադ:

Սակայն Մուտասիմն իմացավ, որ Մանքիջուրն ապստամբել է Աֆշինի հրամանով և Աբու-լ-Սաջին ուղարկվել է որպես օգնական: Նա (Մուտասիմը) առաքեց Մուհամմադ իբն Համմադին, որպես փոստի կառավարիչ, իսկ Բուղա ալ-Թուրքիին՝ պայքարելու Մանքիջուրի դեմ:

*Երբ վերջինս կռվում հաջողություն ունեցավ, Մանքիջուրը նրաշխավորագիր խնդրեց և նա տվեց ու բերեց նրան Սամառա:*

*Աֆշինը բանտարկվել էր 226 (840-841) թվականին և մեռավ բանտում: Նա ցերեկը մեկ ժամ մերկ խաչված [մնաց] Սամառայի Հասարակաց դռան (Բաբ ալ-Ամմա) մոտ, ապա իջեցնելով նրան վառեցին:*

## ՀԱՐՈՒՆ ԱԼ-ՎԱՍԻԿ ԲԻԼԼԱՀԻ ՕՐԵՐԸ

*էջ 479*

*Մուտասիմի մեռած օրը խալիֆա դարձավ Հարուն ալ-Վասիկ Բիլլահ իբն Աբու Իսհակը, որի մայրն ստրկուհի էր Կարաթիս անունով· Դա տեղի ունեցավ հինգշաբթի օրը, Ռաբի Ա ամսի տասնիններին՝ 227 թվականին (7 հունվար 842), իսկ օտար (աջամ) [ամիսներով] Քանուն Բ (հունվար) ամսին:*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

*(18 սեպտեմբեր 844 — 6 սեպտեմբեր 845)*

*էջ 481-482*

*Հայաստանն ապստամբեց և այնտեղի արաբները, պատրիկներն ու բռնացողները սկսեցին շարժվել, իսկ լեռների ու Դարբանդի թագավորները բռնացան իրենց շրջակա գավառներին: Խալիֆայի իշխանությունը թուլացավ և Վասիկը [Հայաստանում] նշանակեց Խալիդ իբն Յազիդ իբն Մազիադին ու հրամայեց մեկնել: Նրա իշխանությանն էր կցել նաև Դիար Ռաբիայի որոշ գավառներ:*

*Նա եկավ մեծ զորքով և երբ այդ երկրի բռնացողները լսեցին, վախեցան և մեծ մասը գրեց, թե մնում է հնազանդ և նվերներ ուղարկեց: Ասաց [Խալիդը]՝ կընդունեմ միայն անձամբ եկողների նվերները: Սա առավել ևս անհանգստացրեց նրանց: Նա գրեց Իսհակ իբն Իսմաիլին հրամայելով, որ իր մոտ գա, բայց նա չեկավ: Այնժամ նա հարձակվեց ու քիչ մնաց որ Իսհակը իր ձեռքն ընկներ:*

*Սակայն Խալիդը հիվանդացավ ու մի քանի օրից մեռավ: Նրան դագաղով տարան Դվին և այնտեղ թաղվեց, իսկ նրա ընկերակիցները ցրվեցին և երկիրն ամենավատթար վիճակի մեջ մնաց: Վասիկը նշանակեց Մուհամմադ իբն Խալիդին՝ հոր փոխարեն: Մուհամմադը գրեց [խալիֆային] հիշեցնելով, որ իր հոր ընկերակիցները ցրվել են ու խնդրեց որ նրանց վերադարձնի: Նա ուղարկեց Ահմադ իբն Բիթամին Մծբին և նա հարվածեց, բանտարկեց և տները վառեց: Մուհամմադի շուրջը հավաքվեցին հոր բարեկամներն ու մառլաները և նա պայքարեց ծառաների ու Իսհակի դեմ, մինչև որ հալածեց*

*նրանց, իսկ նրանց (ծանարններին) փախուստի մատնեց և այդպիսով երկիրը զսպեց։*

*էջ 482*

*Ռումի բոնապետը գրեց [Վասիկին] հիշեցնելով, որ իր ձեռքում շատ են մահմեդական գերիները և առաջարկեց գերիների փոխանակում կատարել։ Վասիկը համաձայնեց և ուղարկեց ներքինի (խադիմ) Խականին, [...] որը կոչվում էր Աբու Ռամլա, ինչպես նաև Ջաաֆար իբն Ահմադ ալ-Հազզային (Հադդա), որը զորքի հրամանատարն էր։ Նա Սահմանային ամրությունների կառավարիչ նշանակեց Ահմադ իբն Աբիզ իբն Սալմ ալ-Բահիլիին։*

*Եկան այն վայրը, որը կոչվում էր Լամիս գետի անվամբ՝ Տարսոն քաղաքից երկու օթևան հեռավորության վրա։ Այս փոխանակությանը մասնակցեցին յոթանասուն հազար նիզակավորներ, բացի առանց նիզակի [ռազմիկներից]։*

*Աբու Ռամլան ու Ջաաֆար ալ-Հաղդան կանգնած էին գետի կամուրջին և հենց որ մի գերի անցնում էր, հարց էին տալիս Ղուրանի մասին և ով կասեր, թե ստեղծված է կփոխանակվեր և կստանար երկու դինար ու երկու ձեռք զգեստ։*

*Այսպես փոխանակվեցին հինգ հարյուր այրմարդ ու յոթ հարյուր կին։ Սա տեղի ունեցավ 231 թվականի Մուհառամ ամսին (7 սեպտեմբեր – 6 հոկտեմբեր 845)։*

## ՋԱԱՖԱՐ ԱԼ-ՄՈՒՏԱՎԱՔՔԻԼԻ ՕՐԵՐԸ

*էջ 484*

*Ջաաֆար իբն ալ-Մուտասիմը, որի մայրն ստրկուհի էր Շուջա անունով, երդում ստացավ (բայաա) չորեքշաբթի օրը, Զու-լ-Հիջջա ամսի քսանչորսին՝ 232 թվականին (8 օգոստոս 847)։ Առաջին երդում տվողը եղավ Սիմա ալ-Տուրքին Դիմաշկի կոչված, ինչպես նաև Վասիֆ ալ-Տուրքին։*

*էջ 484–485*

*Մուտավաքքիլն արգիլեց մարդկանց խոսել (վիճել) Ղուրանի մասին։ Արձակեց [այդ պատճառով] բանտարկվածներին, տարբեր երկրներում և նրանց ովքեր բռնվել էին Վասիկի խալիֆայության ժամանակ։ Այսպիսով ամենքին արձակեց ու հագցրեց։ Ամեն կողմ գրեց արգելելով վիճաբանությունն ու բանակռիվը և մարդկանց զսպեց։*

Մուհամմադ իբն ալ-Բուայսը բռնացել էր Ատրպատականի մի գավառի, որը կոչվում է Մարանդ: Նրա դեմ դուրս եկավ Ատրպատականի կառավարիչ Համդավայհ իբն Ալին, ապա [...] ու տարավ նրան խալիֆայի դուռը:

Երբ եկավ՝ ձեռք բարձրացրեց Համդավայհ իբն Ալիի վրա ու խփեց նրան, իսկ Իբն ալ Բուայսին՝ ազատ արձակեց: Նա մի քանի ամիս մնալուց հետո փախավ Սամառայից Մարանդ և իր շուրջը հավաքելով ռամիկներին (սաալիք) ապստամբեց ու ըմբոստացավ: Այնժամ Համդավայհ իբն Ալին բանտից հանվեց ու երկրի կառավարիչ նշանակվեց: Նա եկավ կռվեց ու սպանեց նրան (Համդավայհ իբն Ալիին):

Իբն ալ-Բուայսի դիրքն ամրացավ և նրա դեմ ուղարկվեց Զիրաք ալ-Տուրքին, որի դեմ նա կռվեց: Ապա ուղարկվեց Ատտաբ իբն Ատտաբը: Երկիրն այդ ժամանակ Կրտսեր Բուղայի (ալ-Սաղիր) ձեռքում էր, որն ամիսներ կռվեց նրա դեմ, ապա երաշխավորագիր ստացավ: Երբ եկավ նրա մոտ վերցրեց ու տարավ խալիֆայի դուռը: Նա բանտարկվեց Իսհակի հսկողության տակ: Դա տեղի ունեցավ 235 թվականին (849-850): Կարճ ժամանակ բանտում մնալուց հետո մեռավ: Տարվեց նաև Յահիա իբն Ռավվադը, որին տրվեց անուն ու հրամանատարություն:

Այդ տարում Մուտավաքքիլը հրամայեց զիմմայի ժողովրդին հագնել միայն մեղրագույն պատմուճաններ, հենել միայն ջորի և ավանակ, փայտե ասպանդակներով ու մեջը փոս թամբերով: Նրանք չպետք է հեծնեին նժույգ կամ ձի, իսկ իրենց դռների վրա պետք է կախեին տախտակներ սատանայի պատկերով:

Մուտավաքքիլը ժառանգությունը տվեց նախ իր Մուհամմադ որդուն, ապա իր մյուս որդիներին՝ Աբու Աբդալլահ ալ-Մուտազզ Բիլլահին և Իբրահիմ ալ-Մուայադ Բիլլահին: Ամեն մի երկրից երևելիներին բերել տվեց Սամառա և [իր որդիներին] համաձայնության երդում (բայաա) տալու դիմաց նրանց ընծաներ պարգևեց, իսկ զինվորներին տասն ամսական [ռոճիկ նվիրեց] և քարոզիչներ (խաթիբ) առաքեց, որ այդ մասին քարոզեն:

[...] ամեն մի ժառանգի երկրի մի կողմը տվեց: [Մուհամմադ] ալ-Մուստանսիրին տվեց Եգիպտոսը և Մաղրիբը, իսկ նրա քարտուղարն էր Ահմադ իբն Խասիբը, Աբու Աբդալլահ ալ-Մուտազզ Բիլլահին՝ Խորասանն ու Ջաբալը, իսկ նրա քարտուղարն էր Ահմադ իբն Իսրայիլը: Իբրահիմ ալ-Մուայադին[69] տվեց Ասորիքի մասերը (Շամատ), Հայաստանն ու Ատրպատականը և նրա քարտուղարն էր Հայտնի Մուհամմադ իբն Ալին:

Այդ ժամանակ Մուտավաքքիլը հրամայեց, որ արքունի գործերում

ոչ մի դիմմի պաշտոն չստանա, նորակառույց եկեղեցիները, [հրեական] սինագոգները քանդվեն. արգելեց նորերը կառուցել և այդ մասին գրեց ամեն կողմ:

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈԹ (251-252) ԹՎԱԿԱՆ

*էջ 488*

Եգիպտոսի կառավարչությունը տրվեց Անբասա իբն Իսհակ ալ-Դաբբիին Մուստանսիրի կողմից: Հազիվ մի քանիս ամիս էր անցել, երբ հոռոմները հարձակվեցին Դամիեթի վրա ութսունհինգ նավերով: Հոռոմները կոտորեցին մեծ բազմությամբ մահմեդականների, հրկիզեցին հազար չորս հարյուր տուն: Նրանց գլխավորը կոչվում էր [...]:

Նրանք գերեվարեցին հազար ութ հարյուր քսան մահմեդական կանանց, հազար ղպտի կանանց և հարյուր հրեա կանանց: Նրանք վերցրեցին Դամիեթում եղած զենքերն ու ապրանքները: Մարդիկ փախուստի դիմեցին և մոտավորապես երկու հազար հոգի ծովում խեղդվեց: Հոռոմները երկու օր ու գիշեր մնացին ու հեռացան:

*էջ 489-490*

Մուտավաքքիլը դուրս եկավ դեպի Խաղաղության քաղաքը (Բաղդադ) 238 (23 հունիս 852 – 11 հունիս 853) թվականին, վրաններ խփեց Շամմասիյա [արվարձանում], ապա մտավ Բաղդադ, ճեղքեց անցավ ու գնաց Տիզբոն (Մադաին) զբոսանքի:

Հայաստանն ապստամբեց, այնտեղ ոտքի կանգնեցին մի խումբ պատրիկներ և ուրիշներ ու բռնացան իրենց գավառներում[70]:

Մուտավաքքիլը կառավարիչ նշանակեց Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆին[71], որը պատրաստվեց գնալու այդ երկիրը: Նա բերել տվեց իր զգեստներն ու հագնվեց, վերցրեց իր հողաթափերից մեկն ու հագնվեց և հանկարծ ընկավ մեռած վիճակում, առանց որևէ պատճառի (հիվանդության):

Ապա Մուտավաքքիլը կառավարիչ նշանակեց նրա որդուն՝ Յուսուֆին[72], որը եկավ երկիրը, գրեց պատրիկներին և ոմանք պատասխանեցին նրան: Նրա մոտ եկավ Բագարատը՝ Աշոտի որդին (Բակրաթ իբն Աշութ) երաշխավորագիր խնդրելու, իսկ նա տարավ նրան Մուտավաքքիլի մոտ և [...]: Նրա դեմ կռվեց Յունան իբն Տուրնիկը (Հովնան որդի Թոռնիկի) ու սպանեց նրան:

Երկրում խռովություն սկսեց և Մուտավաքքիլն ուղարկեց ավագ (Քաբիր) Բուղային[73]: Երբ նա հասավ Արզն, նրան ընդառաջ եկավ

Մուսա իբն Զուրարան[74], որը բռնացել էր Բաղեշում (Բաղլիս) և նրաշխավորագիր խնդրեց: Նա ձերբակալեց նրան և առաքեց Մուտավաքքիլի մոտ: Ապա գնաց մի վայր, որը կոչվում է Աղբակ (ալ-Բակ)[75] ուր Համաղասպի որդի Աշոտն (Աշութ իբն Համզա)[76] էր, որին պաշարեց, հետո նրաշխավորագիր տվեց և ուղարկեց Սամառա: Նրա (Մուսա իբն Զուրարայի) գլուխը կտրվեց Հասսարակաց գռան (Բաբ ալ-Ամմա) մոտ և խաչվեց:

Նա գրեց Տփղիսի բռնացող Իսհակ իբն Իսմաիլին, որ գա իր մոտ: Նա պատասխանեց, որ երբեք խալիֆայի հնազանդությունից դուրս չի եկել, իսկ եթե գրամ է ուզում, ապա ինքը կտա, կամ եթե մարդիկ է ուզում՝ կուղարկի, սակայն գալ չի կարող:

Նա (Բուղան) հարձակվեց, կռվեց ու հաղթեց նրան, ապա գլուխը կտրեց և ուղարկեց խալիֆային: Ապա հարձակվեց ծանարների (սաննարիյա) վրա, կռվեց, սակայն նրանք հաղթեցին ու ետ մղեցին և նա փախստական նահանջեց:

Այն ժամանակ սկսեց հալածել այն մարդկանց, որոնց նրաշխավորագիր էր տվել ու ձերբակալեց: Նրանց մի մասը փախավ ու նամակներ գրեց Ռումի տիրոջը (Բյուզանդիայի կայսեր), խազարաց տիրոջը և սլավոնների (սակալիբա) տիրոջը և մեծ բազմությամբ հավաքվեցին: Նա (Բուղան) այդ մասին գրեց Մուտավաքքիլին որը կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Խալիդ իբն Յազիդ իբն Մազիազ ալ-Շայբանիին[77], որը երբ եկավ, ապստամբները հանդարտվեցին և նա նորեն նրաշխավորագիր տվեց նրանց:

էջ 490

Հռոմեց բռնապետը պատգամավորներ ու նվերներ ուղարկեց, որոնք քիչ էին և նա (Մուտավաքքիլը) մի քանի անգամ ավելին առաքեց: Նա ուղարկեց Շունայֆ ներքինիին (խադիմ), որն իր վստահելիներից առաջինն էր ու նրան հանձնարարեց ընկավարել գերիների փոխանակման գործը: Սա եկավ Տարսոն 241 (22 մայիս 855 — 9 մայիս 856) թվականին, իսկ սահմանային ամրությունների կառավարիչն էր Ահմադ իբն Յահիա ալ-Արմանին (հայազգի):

Նա (Շունայֆը) դուրս եկավ Լամիս գետի կամուրջի մոտ ու կանչեց գերյալներին: Իր երկրի բոլոր կողմերից նա բերել էր տվել հռոմ գերիներին ու փրկագնեց քրիստոնյաների մոտ եղած ստրուկներին (գերիներին):

*Էջ 492*

*Մուտավաքքիլը փոխադրվեց Մահուզա կոչված վայրը, Սամառայի պալատից երեք փարսախ հեռավորության վրա և այնտեղ կառուցեց քաղաք, որը կոչեց Ջաաֆարիյա: Կաթուլից ջրանցք (գետ) անցկացրեց և այնտեղ փոխադրեց քարտուղարներին, դիվաններն և ընդհանրապես բոլոր մարդկանց: Կառուցեց մի պալատ, որի նմանի մասին չի լսված: Սա կատարվեց 246 թվականի Մուհառամ ամսին (23 մարտ — 27 ապրիլ 860):*

*Մուտավաքքիլը կոպիտ կերպով վիրավորել էր իր որդուն՝ Մուհամմադ ալ-Մուստանսիրին և մարդիկ նրան գրգռեցին [հոր] դեմ ու կազմակերպեցին հարձակում նրա վրա: Երեքշաբթի օրը, Շավվալ ամսի երեքին, 247 թվականին (11 դեկտեմբեր 861) ներխուժեց թուրքերի մի խումբ, որոնցից էին՝ Կրտսեր Բուղան, Մուստանսիրի մերձավոր Ուտամիշը, Բաղիրը, Բաղլուն և ուրիշներ: Մուտավաքքիլը մենակ նստած էր ղահլիճում, և նրանք հարձակվելով նրա վրա, սրերով սպանեցին:*

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԱԼ-ՄՈՒՆՏԱՍԻՐԻ ՕՐԵՐԸ

*Էջ 493*

*Մուհամմադ ալ-Մունտասիր իբն Ջաաֆար ալ-Մուտավաքքիլը, որի մայրը ստրկուհի էր Հաբաշիյա (եթովպուհի), Ռումիյա (հույն) կոչված, երդում ստացավ նույն գիշեր, երբ հայրն սպանվեց՝ չորեքշաբթի գիշերը, Շավվալ ամսի չորսին 247 թվականին (12 դեկտեմբեր 861):*

*Նա Ջաաֆարիյայից հեռացավ Սամառա, հրամայեց քանդել [հոր կառուցած] պալատները, մարդկանց այնտեղից տեղափոխեց, քաղաքն անբնակելի դարձրեց, այնպես որ ավերակների վերածվեց ու մարդիկ վերադարձան Սամառայի իրենց տները:*

*Նրա խալիֆայությունը վեց ամիս տևեց ու մեռավ շաբաթ օրը Ռաբի Բ ամսի չորսին 248 թվականին (7 հունիս 862), երբ քսանհինգ տարեկան վեց ամսական էր:*

## ԱՀՄԱԴ ԱԼ-ՄՈՒՍՏԱԻՆԻ[78] ՕՐԵՐԸ

*Էջ 494*

*Նա խալիֆայության երդում ստացավ այն օրը, երբ մեռավ ալ-Մունտասիրը:*

Նա Հարմար չէր խալիֆա դառնալու, սակայն երբ մեռավ Մունտասիրը, Թուրքերը չկամեցան որ խալիֆա դառնա Մուտավաքքիլի որդին՝ վախենալով դրա վատ Հետևանքներից: ԱՀմադ իբն Խասիբը առաջարկեց ԱՀմադ իբն ՄուՀամմադ ալ-Մուստաինին, որին երդում տվեցին: Որոշ դորավարներ մերժեցին երդում տալ և սկսեց վեճը Թուրքերի և արնանների միջև. երեք օր կռվում էին, արնանների դիրքը Թուլացավ, իսկ Մուստաինը դրամ բաժանեց մարդկանց և ամեն ինչ կարգավորվեց:

էջ 496

Մուստաինն ուղարկեց Ջաաֆար ալ-Խայյաթին, որպեսզի ամառային արշավանք կատարի 249 (863-864) Թվականին: Նրա Հետ էր Մալաթիայի կառավարիչ Օմար իբն ԱբդալլաՀ ալ-ԱկԹան: Երբ նա մտավ Ռումի երկիրը, Օմարը Թույլտվություն խնդրեց ավելի խորը ներԹափանցելու: Նրա մոտ ութ Հազար [զինվոր] կար: Թշնամին շրջապատեց նրան և նա իր Հետևորդների Հետ միասին պարտություն կրեց 249 Թվականի Ռաջաբ ամսին (20 օգոստոս — 18 սեպտեմբեր 863):

Այդ տարում Մուստաին [խալիֆան] Ալի իբն ՅաՀիա ալ-Արմանիին նշանակեց Հայաստանի (Արմինիա) կառավարիչ, ուր վիճակը տագնապալի էր: Նա եկավ Նփրկերտ: Հոռոմները արշավել էին և մաՀմեդականների երկրի սրտում էին: Այդ երկրի ժողովրդից մի խումբ Հավաքվեց ու գնաց գտնելու Ալի իբն ՅաՀիա ալ-Արմանիին և Համոզեցին նրան դուրս գալ Հոռոմների դեմ ու մղեցին նրան [նրանց դեմ]: Նա գնաց նրանց Հետ ու Հանդիպեց Հոռոմների զորքին. մի կատաղի ճակատամարտ տեղի ունեցավ և նա սպանվեց: Հոռոմները նրա դիակը վերցրին և այդ բանը մեծ ՀաղԹանակ Համարեցին, քանզի նա նրանց շատ նեղություն էր պատճառել:

էջ 499

[...] գները Թանկացան Բաղդադում ու Սամառայում, այնպես որ մեկ կաֆիզ [ցորենը] Հարյուր դիրՀեմով էր վաճառվում: Կռիվը շարունակվեց, պարենը կտրվեց, դրամը պակասեց և սուրՀանդակներ էին դնում նրանց միջև 252 (866) Թվականին: Ապա Մուստաինը Հաշտություն առաջարկեց, Համաձայն լինելով Հրաժարվել խալիֆայությունից և իշխանությունը Հանձնել Մուտազզին[79] ու գնալ մի քաղաք ապաՀով ապրելու իր որդու Հետ, սակայն պաՀանջում էր որոշակի գումար և կալվածներ՝ ըստ իր ցանկության: Նրան Համաձայնություն տվեցին, և ինքը Հրաժարվեց: Մուստաինը գրավոր Հրաժարական

տվեց ու վկայեց այդ մասին, հեռանալով Վասիթ՝ իր մոր, որդու և ամբողջ ընտանիքի հետ և այնտեղ նստավայր ընտրեց:

## ԱԼ-ՄՈՒՏԱԶԶ ԲԻԼԼԱՀԻ ՕՐԵՐԸ

*էջ 500*

Սամառայում խալիֆա դարձավ (երդում ստացավ) Աբու Աբդալլահ ալ-Մուտազզ Բիլլահ իբն Մուտավաքքիլը, որի մայրը ստրկուհի էր Կաբիհա (տգեղ) կոչված: Դա կատարվեց հինգշաբթի օրը, Մուհառամ ամսի յոթին 252 թվականին (29 հունվար 866):

Նա գրեց բոլոր կառավարիչներին, հիշեցնելով [իր հոր՝ Մուտավաքքիլի] պայմանագրում (իր եղբոր) Իբրահիմ ալ-Մուայադի ժառանգական իրավունքի մասին ու հրամայեց իրենից հետո նրան ճանաչել: Երկրի բոլոր կառավարիչները նրան երդում տվեցին երբ իմացան, որ Մուհամմադ իբն Աբդալլահ իբն Թահիրը և ովքեր եղել են Բաղդադում, նրան երդում են տվել: Սակայն Ծիմշաթի կառավարիչ Իբն Մուջահիդը, Իսա իբն ալ-Շայխը Պաղեստինում, Յազիդ իբն Աբդալլահը Եգիպտոսում և Ումրան իբն Միհրանը Սպահանում հրաժարվել են: Մուտազզն ուղարկեց Հատիմ իբն Ջուրայքին Ծիմշաթ, որը հաղթեց իբն Մուջահիդին ու նրա մարդկանց և նրան ու մի խումբ մեծամեծների տանելով Ամիդ, գլխատեց:

*էջ 501*

[Մուտազզը] Մուզահիմ իբն Խականին ուղարկեց Մալաթիա, քանզի այնտեղ հոռոմները մի քանի անգամ երևացել էին:

*էջ 503*

Երբ Մուտազզը վախեցավ թուրքերի ապստամբությունից[80], Սամառայում գտնվող Հաշիմի տան բոլոր անդամներին՝ խալիֆաների որդիներին և այլոց ուղարկեց Բաղդադ, որպեսզի թուրքերը նրանցից որևէ մեկին չառևանգեն:

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԱԼ-ՄՈՒՀՏԱԴԻ ԻԲՆ ՀԱՐՈՒՆ ԱԼ-ՎԱՍԻԿԻ ՕՐԵՐԸ

*էջ 505*

Զորավարներն այն եզրակացության էին եկել, որ խալիֆաների որդիների մեջ չկա առավել շնորհալի ու խելացի մեկը, քան

*ՄուՀամմադ իբն ալ-Վասիկը[81], որի մայրն ստրկուՀի էր Կիրբ կոչված: Նրան նրդում տվնցին նրեքշաբթի օրը, Ռաջաբ ամսի քսանյոթին, 255 թվականին (12 Հուլիս 869):*

*էջ 506*

*ՄուՀտադին թուրքերից խիստ դժգոհ էր ու որոշեց արնաններին առաջ քաշել: Երբ այս իմացան [թուրքերը], նրա դեմ ըմբոստացան ու դեմ դուրս եկան: Նրանցից մի խումբ նա ձերբակալեց ու գլխատել տվեց, որոնց մեջ էր նաև նրանց պետ Բաբիքբաքը: Սակայն թուրքերը Հավաքվեցին ու ապստամբեցին: ՄուՀտադին նրանց դեմ ելավ զինված ու Ղուրանը վզից կախված. նրան միացավ ժողովուրդը և նրանց (թուրքերին) կոտորեցին, ունեցվածքը խլեցին, տները կողոպտեցին: Թուրքերը մեծ թվով Հավաքվեցին, իսկ ժողովուրդը լքեց նրան (խալիֆային) այնպես, որ մեն մենակ մնաց ու մի քանի տեղից վիրավորվեց. նա մտավ մի զորավարի տունը, որը կոչվում էր ԱՀմադ իբն Ջամիլ: Սակայն նրանք Հասան, բռնեցին նրան ու տարան ձիու վրա, իսկ նրա վերքերից արյունը Հոսում էր: Նրան ուզեցին ստիպել, որ Հրաժարվի իշխանությունից, բայց նա մերժեց ու երկու օր անց մեռավ, երեքշաբթի օրը, Ռաջաբ ամսի տասնվեցին 256 թվականին (20 Հունիս 870): Նրա խալիֆայության տևողությունն էր մեկ տարուց տասնմեկ օր պակաս:*

## ԱՀՄԱԴ ԱԼ-ՄՈՒՏԱՄԻԴ ԱԼԱԼԼԱՀԻ ՕՐԵՐԸ

*էջ 507-508*

*ԱՀմադ ալ-Մուտամիդ Ալալլաh[82] իբն Ջաաֆար իբն ալ-Մուտավաքքիլին նրդում տրվեց այն օրը, երբ սպանվեց ՄուՀտադին:*

*Բասրայում ապստամբած Ալի իբն ՄուՀամմադը, որը Հավակնում էր թե Աբու Թալիբի ցեղից է, գրոՀեց Ուբուլլա, որն ավերեց, կործանեց ու Հրկիզեց: Նրա վրա Հարձակվեց Սաիդ իբն ՍալիՀը և Աբու-լ-Խասիբ գետի մոտ Հաղթեց նրան:*

*Մուտամիդ [խալիֆան] ուղարկեց ներքինի Հուսայնին, որը կոչվում էր ՄաՀվան քրտինք, Իսա իբն ալ-Շայխի* մոտ, իսկ նա տիրել էր Պաղեստինին, նրան Հանձնելու երաշխավորագիր նրա անձի, ունեցվածքի և զավակների Համար, ներում խոստանալով բոլոր արարքներին և նրան նշանակում էր Հայաստանի կառավարիչ: [Իսա*

** Աղձնիքում Հաստատված արար Շայբանի ցեղից էր: 865-ից եղել է Պաղեստինի կառավարիչ: 870 կամ 871 թ-ին նշանակվել է Արմինիայի, Դիար Բաքրի և Ատրպատականի կառավարիչ:*

*իբն ալ-Տայլսը] այդ երկրից դուրս եկավ 257-ի Ջումադա Բ ամսին (26 ապրիլ – 24 մայիս 871), իր ձեռքում եղածը հանձնելով Ամաջուր Թուրքին, սակայն եղած դրամներից ոչ մի դիրհեմ չվերադարձրեց:*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՈՒԹ (871-872) ԹՎԱԿԱՆ

*Լջ 510*

*Այդ տարում ժանտախտի համաճարակ եղավ Իրաքում, մեծ թվով մարդիկ մեռան: Մարդը դուրս էր գալիս տնից ու անդ չհասած մեռնում: Ասվում է, որ Բաղդադում մեկ օրում տասներկու հազար մարդ մեռավ:*

*Այդ տարում ամառային արշավանք կատարեց Մուհամմադ իբն Ալի իբն Յահիա ալ-Արմանին*: Այդ ժամանակ եկավ Մուտավաքքիլի մաուլա Շունայֆ Ներքինին (խադիմ) գերիների փոխանակման համար: Նրանք հավաքվեցին Լամիս գետի մոտ, ուր գերիների փոխանակում եղավ, իսկ հոռոմների հետ չորս ամսվա զինադադարի համար պայմանավորվեցին: Այս բոլորը կատարվեց 258 թվականի Ռամադան ամսին (11 հուլիս – 9 օգոստոս 872):*

** Սա Ալի իբն Յահիա ալ-Արմանիի որդին էր:*

## ՅԱԿՈՒԲԻ

## ՏԱՐԻԽ
## (ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Նիկիա – Նկատի ունի եկեղեցու տիեզերական առաջին ժողովը, որ տեղի ունեցավ Նիկիայում՝ 325 թվականին: Նիկիայի ժողովը հրավիրեց Կոնստանտին Ա կայսրը: Այս ժողովի ժամանակ դատապարտվեց «արիոսականությունը», որը համարվեց աղանդ և մշակվեց բոլոր քրիստոնյաների համար պարտադիր հավատի խորհրդանիշը:* (Сов. Ист. Энц., т. 10, стр. 209):

2 *... քրիստոնյաների երկրորդ ժողովը – Սա եկեղեցու տիեզերական երկրորդ ժողովն է, որ տեղի ունեցավ 381 թվականին Բյուզանդիոնում (Կոստանդնուպոլսում): Այն նպատակ ուներ ամրապնդել եկեղեցու կենտրոնացվածությունը և առավել հստակ ձևակերպել ուղղափառ վարդապետությունը:* (Сов. Ист. Энц., т. 7, стр. 821):

3 *... քրիստոնյաների երրորդ ժողովը – Սա 431 թվականին Եփեսոսում գումարված Տիեզերական ժողովն է: Թեոդոսիոս Բ կայսեր կողմից հրավիրված այս ժողովի նպատակն էր որոշել եկեղեցու վերաբերմունքը նեստորականության հանդեպ: Ժողովի ընթացքում եպիսկոպոսները բաժանվեցին երկու խմբի. մեկը՝ Կյուրեղ Ալեքսանդրիացու և Եփեսոսի եպիսկոպոս Մեմնոնի գլխավորությամբ, պաշտպանում էր ուղղափառ ուղղությունը, իսկ մյուս խումբը՝ Կոստանդնուպոլսի Նեստոր պատրիարքի և Անտիոքի պատրիարք Հովհանի գլխավորությամբ, պաշտպանում էր նեստորականներին: Հռոմի պապ Կելեստինոս Ա-ը իր ներկայացուցիչների միջոցով ևս աջակցում էր հականեստորականներին: Երկու խմբերի միջև խիստ վեճ տեղի ունեցավ, փոխադարձաբար բանադրեցին միմյանց: Ի վերջո, մեծ դժվարությամբ, Կյուրեղը հասավ նրան, որ Նեստորը գահընկեց արվեց: Ժողովը, ի վերջո, դատապարտեց նեստորականությունը: Սակայն դրանից հետո էլ պայքարը վերջիններիս և ուղղափառ եկեղեցու միջև շարունակվեց և միայն 435 թվականին էր, որ կայսերական որոշումով նեստորականությունը հռչակվեց որպես աղանդ:* (Сов. Ист. Энц., т. 16, стр. 677):

4 *Նեստորը – Կոստանդնուպոլսի պատրիարքն էր (մահ. մոտ. 451 թ.), որի ուսմունքը տարբերվում էր ուղղափառ քրիստոնեությունից: Նեստորը գտնում էր, որ Հիսուսը պարզապես մարդ է, որը սուրբ հոգու ներշնչմամբ դարձել է մեսիա (Քրիստոս): 431 թվականի Եփեսոսի տիեզերական ժողովից հետո Նեստորը գահընկեց արվեց ու աքսորվեց, իսկ նեստորականները հետապնդվելով Բյուզանդիայում անցան Միջագետք, Իրան, Միջին Ասիա, հետագայում նրանց մի մասը հասավ հեռավոր Չինաստան:* (Сов. Ист. Энц., т. 10, стр. 141):

5 *Կյուրեղը (Կիրիլլուս) – Կյուրեղ Ալեքսանդրիացին (ծնվ. Դ դ. 70-ական թթ. – մահ. 444)՝ 412 թվականին դարձավ Ալեքսանդրիայի պատրիարք, նշանավոր աստվածաբան էր ու պերճախոս քարոզիչ: Կյուրեղ Ալեքսանդրիացին համառ պայքար մղեց ուղղափառ քրիստոնեությունից շեղումների և հատկապես նեստորականության դեմ: Միաժամանակ նա ամեն կերպ փորձում էր պահպանել եկեղեցու միասնականությունը: Նա վճռորոշ դեր խաղաց Եփեսոսի տիեզերական ժողովում:*

6 *.. չորրորդ ժողովը – Նկատի ունի այն տիեզերական ժողովը, որը հրավիրվեց 449 թվականին՝ Եփեսոսում: Ինչպես և նախորդը, այս ժողովը ևս հրավիրեց Թեոդոսիոս Բ-ը: Այս անգամ խնդիրը եկեղեցու դիրքորոշումն էր միարնակների (մոնոֆիզիտներ) հանդեպ: Միարնակության հիմնադիր էր համարվում Եվտիքես վանահայրը*

Կոստանդնուպոլսից: Այս ժողովում պայքար ծավալվեց Կոստանդնուպոլսի և Ալեքսանդրիայի աթոռների միջև: Վերջիններս պաշտպանում էին Եվտիքեսի տեսակետները և, հենվելով կայսեր աջակցության վրա, հաղթանակ տարան: Սա Եվտիքեսյան միարնակության հաղթանակն էր, որը սակայն ժամանակավոր բնույթ էր կրում: 449-ի ժողովը թվով չորրորդն էր (ինչպես իրավացիորեն նշում է Յակուբին) սակայն, քանի որ այդ ժողովը հետագայում մերժվեց եկեղեցու կողմից, ներկայում չորրորդ է համարվում հաջորդ՝ Քաղկեդոնի ժողովը: (Сов. Ист. Энц., т. 16, стр. 677):

[7] Թարսիոսը – (հուն. նշ. Տարսոնցի) – Հավանաբար նկատի ունի Կոստանդնուպոլսի վանահայր Եվտիքեսին՝ միարնակության հիմնադրին: 431-ի տիեզերական ժողովից հետո Եվտիքեսը միարնակության սկզբունքը հասցրեց ծայրահեղության (Քրիստոսի մեջ մարդկային բնությունը կլանված է աստվածայինով): Եվտիքեսյան միարնակները 451-ի Քաղկեդոնի տիեզերական ժողովում քննադատվեցին, և հաստատվեց երկաբնակությունը: Ալեքսանդրիայի, Եփեսոսի, Ասորիքի, Պաղեստինի եկեղեցիները չընդունեցին Քաղկեդոնի որոշումները: Հայաստանյայց եկեղեցին 506-ի Դվինի եկեղեցական ժողովում դատապարտեց թե՛ եվտիքեսյաններին, թե՛ քաղկեդոնականներին՝ հավատարիմ մնալով 431-ի Եփեսոսի տիեզերական ժողովի վարդապետությանը, ըստ որի Հիսուս Քրիստոսի մեջ աստվածայինն ու մարդկայինը միավորված են անխառն ու անբաժանելի կերպով: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 7, էջ 522):

[8] Հակոբիկներ (Յաակուբիյա) – Հակոբիկյան եկեղեցին ասորիների միարնակ եկեղեցու ավանդապահ թևի անվանումն է: Առաջացել է 560–570-ական թթ., երբ Ասորիների միարնակ եկեղեցին, ներքին երկպառակությունների հետևանքով, երկփեղկվել էր: Առաջին մասը, Անտիոքի Պողոս պատրիարքի անունով, կոչվել է՝ Պողոսյան եկեղեցի, երկրորդը՝ Եդեսիայի եպիսկոպոս Հակոբ Բարադեոսի (490–578) անունով՝ Հակոբիկյան եկեղեցի: Հակոբիկյան եկեղեցին ունեցել է իր ինքնուրույն պատրիարքը, որի նստավայրը սկզբնական շրջանում Անտիոքն էր: Հետագայում, թեպետ նստավայրը հաճախ է փոխվել, բայց Հակոբիկյան եկեղեցու գլուխը շարունակել է կոչվել Անտիոքի պատրիարք: Այստեղ Յակուբին անշուշտ նկատի ունի ընդհանրապես բոլոր միարնակներին: Անշուշտ նշված դեպքերի ժամանակ Հակոբիկյան (Յաակուբիյա) անունով եկեղեցի գոյություն չուներ, բայց պատմիչը օգտագործում է իր ապրած ժամանակվա անվանումը: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 6, էջ 70):

[9] ... Կոստանդնուպոլսում հավաքվեց վեց հարյուր երեսուն եպիսկոպոս – Նկատի ունի չորրորդ (փաստացի հինգերորդ) տիեզերական ժողովը, որ տեղի ունեցավ 451 թվականին՝ Քաղկեդոնում: Այն հրավիրեց Արևելահռոմեական (Բյուզանդիա) կայսր Մարկիանոսը (450–457): Ժողովը դատապարտեց միարնակությունը և ամբողջովին մերժեց նախորդ՝ Եփեսոսի (449) ժողովի որոշումները: Սա փաստորեն եկեղեցու առաջին մեծ խզումն էր, որից հետո քրիստոնյաները բաժանվեցին քաղկեդոնականների ու հակաքաղկեդոնականների: Այս հարցում Կոստանդնուպոլսի ու Հռոմի աթոռները միասնական դիրք գրավեցին, կայսրը ևս, Ալեքսանդրիայի աթոռի անջատողական միտումներից վախեցած, աջակցեց նրանց: Քաղկեդոնի որոշումները չընդունեցին Սիրիայի ու Եգիպտոսի եկեղեցիները: 506-ի Դվինի ժողովում նույնպիսի դիրքորոշում արտահայտեց նաև Հայաստանյայց առաքելական եկեղեցին: (Сов. Ист. Энц., т. 15, стр. 498):

[10] Մարկիանոս – Բյուզանդիայի կայսր (450–457):

[11] Լևոնը (Ալյուն) – Բյուզանդիայի Լևոն Ա կայսր (457–474):

[12] Զենոնը – Բյուզանդիայի կայսր նախ՝ 474–475 ապա նաև՝ 476–491 թթ. : Զենոնի երկու գահակալությունների միջև իշխել է Վասիլիսկոսը (475–476):

[13] Անաստասիոսը (Անասթասիուս) – Բյուզանդիայի կայսր (491–518):

[14] .... քրիստոնյաների հինգերորդ ժողովը – Եկեղեցու տիեզերական հինգերորդ ժո-

ժողովը տեղի է ունեցել Կոստանդնուպոլսում՝ 533 թվականին:
[15] Հուստինոս (Յուսթուս) Երկրորդը – Հուստինոս Բ կայսր(565-578): Այստեղ պատմիչը չի հիշատակում նախորդ երկու կայսրերին՝ Հուստինոս Ա (518-527) և Հուստինիանոս Ա (527-565):
[16] Հուստինոս Երրորդը - Բյուզանդիայի կայսր Հուստինոս Գ (565-578):
[17] Հերակլ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 3:
[18] Կոստանդինը – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 75:
[19] ... քրիստոնյաների վեցերորդ ժողովը - Այս տիեզերական ժողովը ևս կայացել է Կոստանդնուպոլսում 680-681 թվականներին:
[20] Իսթախր – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 13 :
[21] Արտավան (Արդաուան) – Վերջին պարթև Արշակունի արքա Արտավան Ե (209-224):
[22] Շապուհ (Սաբուր) – Սասանյան արքա Շապուհ Ա (241/243 - 272):
[23] Մանի իբն Համմադ ալ-Զինդիկ (հերձվածող) – Խոսքը Գ դարում Մերձավոր Արևելքում տարածում գտած կրոնական ուսմունքի՝ մանիքեության հիմնադրի մասին է: Մանիքեությունը ուղղված էր Սասանյան Իրանի պաշտոնական կրոնի՝ զրադաշտականության դեմ: Այս ուսմունքն իր մեջ ներառում էր տարբեր տարբեր կրոններից: Հիմնական գաղափարը դուալիստական էր՝ լույսի (բարու) և խավարի (չարի) նախասկիզբը աշխարհում: Մանին ուսուցանում էր, որ չարը որպես նախասկիզբ, նույնքան ինքնակա է, որքան բարին: Մանիքեության դեմ պայքար ծավալեցին ոչ միայն զրադաշտականները, այլև քրիստոնեական եկեղեցին: Հետագայում՝ 8-9-րդ դարերում մահմեդականները ևս հալածեցին մանիքեականներին: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 7, էջ 224):
[24] Յարմուք – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 1:
[25] Հազկերտ – Սասանյան վերջին արքա Հազկերտ Գ (632-651):
[26] ... որոց [թվականը] հիջրայից – Մուհամմադ մարգարեի գաղթը Մեքքայից Մադինա 622 թվականի սեպտեմբերին: «Հիջրա» բառը հաճախ թարգմանվում է որպես «գաղթ», բայց ավելի ճշգրիտ «հաջարա» բայը նշանակում է կտրել մեկին ընկերակցությունից, ընկերական հարաբերությունների խզում և այլն:
Մեքքայի վերնախավի հետապնդումներից փախչելով Մուհամմադը իր ամենամոտ զինակիցների հետ, նախապես պայմանավորված լինելով Մադինայի բոլոր ղեկավոր տոհմերի հետ, գաղտնի դուրս եկավ Մեքքայից ու 622 թ. սեպտեմբերի 24-ին հասավ Մադինա: Հենց այս իրադարձությունից էլ հաշվվում է հիջրայի թվականը: (Hidjra, W. Montgomery Watt, EOI, CD-ROM, (III: 366a)).
[27] Իրդար - կամ արդար: Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 17:
[28] Հարիր իբն Մասլամա ալ-Ֆիհրի – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 10:
[29] Մաուլա Վարդան - Տե՛ս Վարդանի շուկա, Բալադուրի, ծնթգր. 195:
[30] Հուսայնի սպանությունը - Հուսայն իբն Ալի Աբու Աբդալլահ ալ-Շահիդը (626 – 680) Ալի իբն Աբու Թալիբ խալիֆայի կրտսեր որդին էր: Նրա մայրն էր Ֆաթիման՝ Մուհամմադ մարգարեի դուստրը: Ավագ եղբոր՝ Հասանի մահից հետո՝ 669-ին Հուսայնը դարձավ ալիական տոհմի ղեկավար: Նա հայտնի դարձավ նրանով, որ ապստամբություն բարձրացրեց Օմայյանների դեմ (որոնց իշխանությունը համարում էր անօրինական): Հուսայնը ղեկավորեց Եզիդ խալիֆայի դեմ ապստամբությունը: 680 թ. հոկտ. 10-ին Հուսայնի փոքրաթիվ ջոկատը հարձակման ենթարկվեց խալիֆայական 4000-անոց զորքի կողմից: Հուսայնն ու իր բոլոր ընկերները նահատակվեցին: Դա տեղի ունեցավ մի վայրում, որից ոչ հեռու հետագայում դոյացավ Քարբալա քաղաքը: Հուսայնի մահվան օրը բոլոր շիայականների կողմից նշվում է որպես սգո օր: (Husayn ibn Ali ibn Abi Talib, L. Veccia Vaglieri, EOI,

*CD-ROM. (III: 607a),* Ислам, энц. словарь, стр. 285):

[31] *Շիիներ – իսլամի մեջ այն շարժումը, որը պաշտպանում է Մարգարեի ընտանիքի առանձնաշնորհյալ դիրքը մահմեդական համայնքի քաղաքական ու կրոնական ղեկավարման հարցում: Անունը ծագում է «Շիաթ Ալի» - Ալիի կողմնակիցներ արտահայտությունից, որը հակադրվում էր «Շիաթ Օսման» արտահայտությանը: Վերջիններս սպանված Օսման խալիֆայի կողմնակիցներն էին: Մուհամմադի մահվան պահից սկսած հակասությունը ժառանգականության ու ընտրելիության կողմնակիցների միջև արդեն գոյություն ուներ: Այն սրվեց Օսման խալիֆայի օրոք, իսկ Ալիի կարճ դահակալության օրոք՝ հասավ իր գագաթնակետին: Ալին Մուհամմադի հորեղբորորդին էր ու նրա աղջկա՝ Ֆաթիմայի ամուսինը, ուստի նա մարգարեին ամենամոտ անձն էր: Ըստ շիիների Ալին ու նրա ժառանգները միայն կարող էին լինել օրինական խալիֆաներ: (Shia,* W. Madclung, *EOI, CD-ROM, (IX: 420a)).*

[32] *Խարիջիներ - Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 165:*

[33] *... արշավեց Հայաստան որի ժողովուրդն ապստամբել էր - Խոսքը 703-ի ապստամբության և հաջորդող երկու տարիների մասին է:*

[34] *... և ամենքին վառեց - Խոսքը 705 թվականի Խրամի ու Նախճավանի դեպքերի մասին է:*

[35] *Ալ-Ռուբաս գետը - Գետ Գարրանդից հարավ, որ թափվում է Կասպից ծովը:*

[36] *Գարիյի (Արդարիյի) գետը - Այստեղ հավանաբար շփոթություն կա. պատմիչը օգտագործում է Դարիյի գետ արտահայտությունը, մինչդեռ հավանաբար պետք է լինել Արդարիյի գետ: (Վ. Տ.-Ղ.)*

[37] *Մասլամա իբն Աբդ ալ-Մալիք – Հայաստանի և Ատրպատականի կառավարիչ 725-729 թվականներին:*

[38] *Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալի – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 64:*

[39] *Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 167:*

[40] *... Հայաստանի կառավարիչ Ասիմ իբն Աբդալլահ իբն Յազիդ ալ-Հիլալիին – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 64:*

[41] *Աբու Մուսլիմ - Աբբասյանների ապստամբական շարժման ղեկավար Խորասանում: Նա ծագումով պարսիկ էր: Աբու Մուսլիմը կապեր ստեղծեց շիայականների հետ և 737 թվականին նրանց հետևորդների մեջ էր: 741-742 թ. նա Մեքքայի բանտում էր, որտեղից նրան կարողացան ազատել Աբբասյանների ներկայացուցիչները: Աբու Մուսլիմին բերեցին Իմամ Իբրահիմ իբն Մուհամմադի մոտ, որը նրան համապատասխան հանձնարարություններով ուղարկեց Խորասան 745-746 թ-ին: Այստեղ իր կողմը գրավելով տեղական ուժերին՝ 747 թվականին Աբու Մուսլիմը հզոր ապստամբություն բարձրացրեց: Գրավեց Մերվը և աստիճանաբար նաև հարևան տարածքները՝ շարժվելով դեպի արևմուտք: Ի վերջո այս ապստամբությունը պատճառներից մեկը դարձավ Օմայան խալիֆայության անկման (750): Այն բանից հետո, երբ առաջին Աբբասյան խալիֆա Աբու-լ-Աբբաս ալ-Սաֆֆահը անցավ իշխանության, Աբու Մուսլիմը մնաց որպես Խորասանի կառավարիչ: Սակայն նրա հարաբերությունները Աբբասյանների հետ (որոնք նաև նրան էին պարտական իշխանության գալու համար) բավական լարված էին: Մանավանդ Աբու Ջաաֆար ալ-Մանսուրի օրոք այդ հարաբերությունները էլ ավելի լարվեցին: Ըստ երևույթին Աբու Մուսլիմի մեծ հեղինակությունը հանգիստ չէր տալիս խալիֆային: Վերջապես, երբ Մանսուրը նրան հրավիրեց արքունիք, Աբու Մուսլիմը, կասկածելով , բայց և այնպես գնաց մայրաքաղաք, որտեղ էլ դավադրաբար սպանվեց: (Abu Muslim,* S. Moscati, *EOI, CD-ROM, (I: 141a)):*

[42] *Մուհամմադ իբն Սուլ - Եղել է Հայաստանի կառավարիչ 750 թվականին: Նշանակել է առաջին Աբբասյան խալիֆա Աբու-լ-Աբբասը 133 հ. թ. (750-751): Նա հաղթեց*

Մուսաֆիրին (նախորդ կառավարչին, որ գրավել էր իշխանությունը) ու սպանեց նրան: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

43 Մուսաֆիր իբն Քասիր - Կառավարել է 745-750 թթ-ին: Սա գրավեց իշխանությունը և 747-750 թթ. ապստամբության ժամանակ կռվում էր Իսհակի դեմ: Նրան սպանեց Մուհամմադ իբն Սուլը 133 հ. թ. (750-751): (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

44 Հաշիմիյա - Աբբասյանների մայրաքաղաքի անվանումը նախքան Բաղդադի կառուցումը: Այս անվանումը վերաբերում է ոչ թե կոնկրետ մի վայրի, այլ այն տրվում էր ամեն մի նոր բնակավայրի, որը խալիֆան ընտրում էր որպես նստավայր: Դինաստիայի հիմնադիր ալ-Սաֆֆահը Քուֆայից դուրս գալով հաստատվեց Կասր իբն Հուբայրայի դիմաց, որտեղ նա կառուցեց մի քաղաք այն կոչելով՝ Հաշիմիյա (Քուֆայի և Բաղդադի միջև ճանապարհի կեսին): 752 թ. ալ-Սաֆֆահը մեկ անգամ ևս տեղափոխվեց և հաստատեց իր մայրաքաղաքը ալ-Անբարի մոտ (նախկին Ֆիրուզ Սաբուր պարսկական քաղաքը), որը ևս կոչեց Հաշիմիյա, բայց չհասցրեց ավարտել, մահացավ 754-ին: (al-Hashimiyya, J. Lassner, EOI, CD-ROM, (III: 265b)):

45 Հասան իբն Կահթաբա - Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 72:

46 Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 168:

47 Կամախ (Քամխ) - Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 73:

48 Մաուլա Վադիհ – Վադիհ ալ-Աբբասի (775): Մանսուր խալիֆայի օրոք նշանակված վերջին ոստիկանն էր և շատ կարճ ժամանակ իշխեց: Սա Յակուբի պատմիչի պապն էր: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

49 Աբու Ջաաֆարը կառուցեց Մամեստիա(Մասսիսա) քաղաքը - Աբու Ջաաֆար ալ-Մանսուր Աբբասյան խալիֆան վերականգնել է, բայց չի կառուցել Մամեստիա (Մասսիսա) քաղաքը:

50 Բարմաքի տոհմը – Պարսիկ Բարմաքյան ընտանիքը, որոնք Աբբասյան խալիֆաների քարտուղարներ ու վեզիրներ էին: Նրանք ծագում էին դրագաշտական մոգերի ընտանիքից, որոնք եղել էին Բալխի մոտ գտնվող Նաուբահարի ատրուշանի քուրմերը: Նրանք նաև հայտնի էին, որպես հմուտ բժիշկներ: Բարմաք բառը ծագում է սանսկրիտ «Պարմակ» բառից, որը «ղեկավար, առաջնորդ» իմաստն ունի: Այս ընտանիքից առաջինը Խալիդ իբն Բարմաքն էր, որն ընդունեց իսլամը: Առաջին Աբբասյան խալիֆա ալ-Սաֆֆահը նրան վստահեց բանակի և հողահարկի գանձման դիվանների քարտուղարությունը: Ալ-Մանսուրի օրոք Խալիդը շարունակեց կարևոր դեր խաղալ արքունիքում: Ապա շուրջ 7 տարի վարեց Թաբարիստանի կառավարչի պաշտոնը և լավ անուն վաստակեց: Հաջորդ խալիֆայի՝ Մահդիի օրոք, Խալիդը պաշտոնավարեց Ֆարսում, բայց շատ չանցած մահացավ 75 տարեկան հասակում: Որդին՝ Յահյան երկար տարիների պետական ծառայության փորձ ուներ, երբ արդեն հաջորդ խալիֆան՝ Հարուն ալ-Ռաշիդը նրան նշանակեց վեզիր: Նրան օգնում էին իր երկու որդիները՝ ալ-Ֆադլը և Ջաաֆարը: Տասնյոթ տարի Յահյան և իր որդիները իմաստուն կերպով վարեցին խալիֆայության տնտեսությունը: Նրանք այնպիսի իշխանություն ու հեղինակություն ունեին, որ որոշ հեղինակներ այդ տարիները (786-803) կոչում են Բարմաքյանների իշխանություն: Սակայն Հարուն ալ-Ռաշիդը որոշեց ոչնչացնել այս ընտանիքը նրանց մեջ վտանգ տեսնելով, կամ պարզապես նախանձելով: Մի գիշերվա մեջ (803 թ. հունվարի 9) Բարմաքյանները կոտորվեցին, իսկ նրանց առասպելական հարստությունը գրավվեց հարքունիս: (al-Baramika, D. Sourdel, EOI, CD-ROM, (I: 1033a)):

51 Ջաաֆար – Տե՛ս Յակուբի (պ.) ծնթգր. 50:

52 Խալիդ իբն Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամի – Կառավարիչ (794): Հիշվում է դրամի վրա. Առան 177 (793-794): Նրան նշանակել է Ֆադլը. (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[53] ... նշանակեց ալ-Աբբաս իբն Ջարիր իբն Ցազիդ իբն Ջարիր իբն Արզալլահ ալ-Բաջալիին – Հայաստանի կառավարիչ: Նրան նշանակեց Ռաշիդը (խալիֆա) Խալիդից հետո: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[54] ... նշանակեց Սաիդ իբն Սալմ իբն Կուտայբա ալ-Բահիլիին – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 176:

[55] Ցազիդ իբն Մազիադ ալ-Շայբանի – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 18:

[56] ... ուղարկեց Մուհամմադ իբն Զուհայր իբն ալ-Մուսայիբ ալ-Դաբբիին - Հարուն ալ-Ռաշիդի նշանակած վերջին ոստիկանն էր. (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[57] Իսհակ իբն Սուլայման ալ-Հաշիմի - Արմինիայի կառավարիչ 811-813 թթ-ին: Հիշվում է դրամի վրա. Առան 196 (811-812): Նա իր փոխարեն Հայաստան ուղարկեց որդուն՝ Ֆազլին. (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[58] Աբնաներ – Տվյալ դեպքում «աբնա», կամ «աբնա ալ-դաուլա» բառերը վերաբերում է խորասանցիներին և այլ ուժերի, որոնք աջակցելով Աբբասյաններին դարձել էին այդ տոհմի «որդեգրված» անդամները, նպաստել նրանց իշխանության գալուն և դրանից հետո էլ մնացել որպես ազդեցիկ քաղաքական ուժ, մինչև որ 9-րդ դարում այդ դերը ստանձնեցին թյուրք և այլ ծագումով զինվորականները: (al-Abna, B. Lewis, EOI, CD-ROM, (I: 102a)).

[59] Աբդ ալ-Մալիք իբն Ջահհաֆ ալ-Սուլամի - Աբդ ալ-Մալիք իբն ալ-Ջահհաֆը Հիշվում է դրամի վրա. Մազան Բաջունայս 196 h. թ. (811-812): Հավանաբար կարճ ժամանակ է իշխել որպես բռնացող (մուտագալլիբ). (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

[60] Թեոփիլոսը (Տուֆիլ) - Բյուզանդիայի Թեոֆիլ (Թեոփիլոս) կայսրը (829-842) (Իբն ալ-Ասիր, էջ 378):

[61] Մալիքի [մազհաբից] - Մահմեդական կրոնական իրավագիտության չորս ուղղություններից (մազհաբներից) մեկը: Դրա հիմքում է դրված Իմամ Մալիք իբն Անասի ուսմունքը, որը մահացել է Մադինայում 796 թ.: (Malikiyya, N. Cottart, EOI, CD-ROM, (VI: 278a)):

[62] Լուլուա – Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 10:

[63] .... Ղուրանի ստեղծված լինելու հարցում – Մամուն խալիֆայի օրոք զարկ տրվեց այլ լեզուներից (մանավանդ հունարենից) թարգմանություններին, որոնք վերաբերում էին գիտությունների ամենատարբեր ճյուղերին: Դրանք իրենց հերթին խթանեցին գիտությունների զարգացմանը խալիֆայության մեջ: Այդ նույն ժամանակ առաջացավ Մուտազիլիների հոսանքը, որոնք ռացիոնալիստական, ոչ դոգմատիկ մոտեցումներ էին ցուցաբերում կրոնա-փիլիսոփայական շատ հարցերի նկատմամբ: Այդ ժամանակ քննարկվող կարևորագույն հարցերից մեկն այն էր, թե արդյոք Ղուրանը ստեղծված մի բան է, թե դա միշտ գոյություն է ունեցել: Մուտազիլիները գտնում էին, որ այն ստեղծված է և ընդհանրապես միայն Աստված չի ստեղծված և հավերժական է: Մամուն խալիֆան ինքը ջերմորեն պաշտպանում էր այս տեսակետը և նույնիսկ ուժով ստիպում ընդունել այն: (al-Mamun, M. Rekaya, EOI, CD-ROM, (VI: 331a)):

[64] Մուհամմիրաները (խուռամյաններ) - կամ մուհամմարաները: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 76:

[65] Սահլ որդի Սմբատի – Սմբատի որդի Սահլը (Սահլ Սմբատեան): Տե՛ս Դինավարի, ծնթգր. 23:

[66] Մուհամմադ իբն Սուլայման ալ-Ազդի ալ-Սամարկանդի - Արմինիայի կառավարիչ 836-837 թթ.: Աֆշինը, որն զբաղված էր Ատրպատականում, սրան նշանակեց Արմինիայի կառավարիչ: Սրա դեմ ապստամբեցին Սահլ Սմբատյանը և ուրիշները. (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

67 Մուհամմադ իբն Խալիդ Բուխարախուդահ - Արմինիայի կառավարիչ 838-839 թթ. ին: Աֆշինը նրան նշանակեց 223 հ. թ. (837-838), որպեսզի հանդարտեցնի երկիրը և նա կռվեց ծանարների դեմ: (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

68 Ալի իբն ալ-Հուսայն իբն Սիբա ալ-Կայսի - Արմինիայի կառավարիչ 840-ին: Թույլ անձնավորություն լինելու պատճառով նրան կոչում էին յատիմ(որբ). (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

69 Իբրահիմ ալ-Մուայադ - Գուցե սա այն Իբրահիմն է, որի մասին հաղորդում է Թովմա Արծրունին և որը կառավարիչ է նշանակվել 856-ին: (Տեր-Ղևոնդյան. Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

70 ... ոտքի կանգնեցին մի խումբ պատրիկներ և ուրիշներ ու բռնացան իրենց գավառներում – Խոսքը 850–855 թվականների ապստամբության մասին է:

71 Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆ - Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆ ալ-Մարուազին (850-851) կառավարիչ նշանակվելով այդպես էլ չիշխեց: Հայ պատմիչների հիշած Ապուսեթն է, որը եկավ հարկերը ծանրացնելու, բայց հայ նախարարները նրան սահմանից ետ ուղարկեցին. Թովմա, 107-108: Նշանակվել էր Մուտավաքքիլ խալիֆայի կողմից և մեկ տարի անց 236 հ. թ. Շավվալ 22-ին (28 ապրիլի 851) մահացել. Tabari, IX, 185: Հարկերի դծով նրա տեղակալն էր Մուսա իբն Զուրարան, Թովմա, 111: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

72 ... նշանակեց նրա որդուն՝ Յուսուֆին – Յուսուֆ իբն Մուհամմադ ալ-Մարուազի (861-852): Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 181:

73 ... ավագ (Քաբիր) Բուղային – Տե՛ս Բուղա ալ-Քաբիր, Բալադուրի, ծնթգր. 149:

74 Մուսա իբն Զուրարա - Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 189:

75 Աղբակ (ալ-Բակ) - Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 191:

76 Համազասպի որդի Աշոտ (Աշութ իբն Համզա) - Աշոտ Համազասպի որդի. Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 190:

77 Մուհամմադ իբն Խալիդ իբն Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանի - Բուղայից հետո Մուտավաքքիլի կողմից նշանակվեց Արմինիայի ոստիկան 857 թ.: Սրանից հետո մի քանի տարվա անորոշություն կա և հայտնի չէ թե ով էր Արմինիայի կառավարիչը: (Տեր-Ղևոնդյան, Արմ. ոստիկանների ժամանակագրություն):

78 Ահմադ ալ-Մուստաին - Աբբասյան խալիֆա (862-866):

79 Մուտազզ - Աբբասյան խալիֆա (866-869):

80 ... թուրքերի ապստամբությունից – Խոսքը թյուրքերից կազմված խալիֆայական թիկնազորի ապստամբելու մասին է:

81 Մուհամմադ իբն ալ-Վասիկ - Աբբասյան խալիֆա (842-847):

82 Ահմադ ալ-Մուտամիդ Ալալլահ - Աբբասյան խալիֆա, Մուտավաքքիլի որդին: Նա ընտրվեց խալիֆա 870 թվականին՝ այն բանից հետո, երբ մահացավ ալ-Մուհտադի խալիֆան: Ալ-Մուտամիդը իշխեց 870-892 թվականներին, բայց նրա իշխանությունը չատ թույլ էր: Խալիֆայությունը մեծ թափով տրոհվում ու քայքայվում էր: (al-Mutamid, H. Kennedy, EOI, CD-ROM, (VII: 765b)):

## ԽՈՐԵԶՄԻ (780 – 847)

Արաբական աշխարհագրության և հատկապես մաթեմատիկական աշխարհագրության առաջին մեծ դեմքը՝ Մուհամմադ իբն Մուսա ալ-Խորեզմին (Խուրիզմի, Խուարիզմի), ծնվել է մոտավորապես 780 թվականին և մահացել 847-ից քիչ անց:

Գործել է Մամուն (813-833) խալիֆայի օրոք. եղել է նրա արքունի աստղաբաշխներից: Սերտորեն կապված էր իմաստության տան (բայտ ալ-հիքմա) հետ: Հավանաբար մասնակցել է միջօրեականի աստիճանի չափման աշխատանքներին: Ըստ Թաբարիի, նա այն աստղաբաշխների մեջ էր, որոնց Վասիկ խալիֆան մահվան անկողնում հրավիրել էր, որ գուշակեն, թե ինչ վախճան է իրեն սպասում: Թեև Խորեզմին երկար կյանք էր գուշակել նրան, այսուհանդերձ Վասիկը շուտով մահացավ (847):

Խորեզմին համաշխարհային գիտության պատմության մեջ առավել հռչակ ունի իր մաթեմատիկական աշխատություններով, քան իր աշխարհագրական երկով: Նրա թվաբանական աշխատությունը, որի բնագիրը չի պահպանվել, հայտնի է միայն լատինական թարգմանությամբ: Այստեղ Խորեզմիի անունը վերածված է հասարակ անվան՝ "Algorithmus" ձևով, որից ծագում է լոգարիթմ բառը: Նրա մյուս աշխատությունը՝ «Հիսաբ ալ-Ջաբր ու ալ-Մուկաբալա» (վերականգնման և հակադրման հաշիվ) ԺԲ դարում Ժերար Կրեմոնացու կողմից թարգմանվել է լատիներենի և մինչև ԺԶ դարը եղել է հանրահաշվի (ալ-ջաբր, ալգեբրա) ձեռնարկ:

Նրա աշխարհագրական երկը՝ «Քիտաբ Սուրատ ալ-Արդ» (Գիրք երկրի պատկերի) մեծ դեր կատարեց արաբական աշխարհագրության սկզբնավորման գործում: Վերջին դարերում, երկար ժամանակ անհայտ մնալուց հետո, այս մատյանի միակ ձեռագիրը (ընդօրինակված 1037-ին) Կահիրեում ձեռք էր բերել արաբագետ Վ. Սպիտտան, որի մահվանից (1883) հետո, այն տարվեց Ստրասբուրգ: Նրա մասին գրվեցին ուսումնասիրություններ, որոնցից հիշատակելի է Կ. Նալլինոյի աշխատությունը: Հ. Մժիկը 1926-ին լուսատիպ վերարտադրությամբ (ֆաքսիմիլե) լույս ընծայեց արաբերեն բնագիրը:

Թեև Խորեզմին օգտվել է Ֆազարիի մշակած «Սինդհինդից», սակայն նրա աշխատության հիմքում ընկած են Պտղոմեոսի աշխարհագրական տեղեկությունները, բայց ոչ թարգմանված, այլ վերածված աստղաբաշխական աղյուսակների (զիջ): Համեննայն դեպս Պտղոմեոսի և Խորեզմիի երկերի շարադրանքի մեջ կան տարբերու-

թյուններ: Եթե Պտղոմեոսը աշխարհը բաժանում է 21 գոտիների, ապա Խորեզմին բաժանում է 7 իկլիմի (մեծ երկրամաս): Պտղոմեոսը ամբողջ նյութը տալիս է ըստ գոտիների, իսկ Խորեզմին՝ ընդհակառակը, իր նյութը բաժանում է ըստ քաղաքների, լեռների, ծովերի և այլն, և ապա, ամեն մեկի ներսում, տեղեկությունները դասավորում է ըստ իկլիմների:

Թեև Խորեզմիի այս երկը լատիներենի չի թարգմանվել, այսուհանդերձ ԺԱ դարում Զարկալիի խմբագրած «Տոլեդյան աղյուսակներ» կոչված աշխատության մեջ կան նրա տեղեկությունները երկարության և լայնության մասին: Այս գիրքը ԺԲ դարում թարգմանվել է լատիներենի և մեծ տարածում է ունեցել:

Խորեզմին մաթեմատիկական աշխարհագրության մեջ հետևորդներ ունեցավ: Դրանցից կարևոր է հիշել ալ-Քինդիին (մեռ. 874), սաբի (Խառանի աստղապաշտ հեթանոսներ) ալ-Բատտանիին (852-929), որի «ալ-Զիջ ալ-Սաբի» (սաբիական աստղաբաշխական աղյուսակներ) աշխատությունը Եվրոպայում հայտնի էր լատիներեն թարգմանությամբ: Սակայն ամենից ավելի նրա ազդեցության տակ է գտնվել Ժ դարի աշխարհագրագետ Սուհրաբը (սխալմամբ կոչված Իբն Սերապիոն):

Խորեզմիի «Գիրք երկրի պատկերի» երկը բաղկացած է հինգ բաժիններից: Առաջինը՝ քաղաքների անունները, երկրորդը՝ լեռները, ընդ որում ամեն մեկի նյութը դասավորված է ըստ յոթ իկլիմների, իսկ վերջում հիշվում են այս յոթից այն կողմ գտնվող քաղաքներն ու լեռները: Երրորդ բաժինը վերաբերում է երկրագնդի բնակելի մասի վրա գտնվող ծովերին և նյութը ներկայացված է ըստ ծովերի՝ Ատլանտյան, Միջերկրական, Սև, Կասպից, Հնդկաց, ինչպես նաև Պարսից ծոցը: Չորրորդ բաժնում կղզիները խմբավորված են ըստ ծովերի: Բաժնի վերջում կա մի ենթագլուխ՝ «Այն վայրերը, որտեղ (քարտեզի վրա) նշված են երկրների սահմանները», որն առնչվում է Խորեզմիի կորած մեծ քարտեզին: Հինգերորդ բաժնում բերված ջրի ակունքները (գետերը), նախ հիշատակելով հասարակածից այն կողմ ընկած գետերը, ապա՝ ըստ յոթ իկլիմների, և վերջում՝ յոթերորդ իկլիմից այն կողմ ընկած գետերը:

Բոլոր հիշված տեղանունների համար (քաղաքներ, լեռներ, ծովեր, կղզիներ, գետեր) Խորեզմին նշում է երկարության ու լայնության աստիճանները:

Խորեզմիի ձեռագրում կան չորս քարտեզներ. առաջինը ցամաքային գծերի ցուցադրման ուրվագիծ է, երկրորդը՝ Գոհարեղեն-ների կղզիները (Ջազիրատ ալ-Ջաուհար), երրորդը՝ Նեղոսը ակունք-ներից մինչև Միջերկրական թափվելը, իսկ չորրորդը՝ Մեոտիսի (Ազովի) ծովը: Ինչպես ընդհանրապես արաբական միջնադարյան

*քարտեզագրության մեջ, այստեղ ևս հյուսիսը ներքևում է, հարավը՝ վերևում:*

**Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. Hans von Mzik. Das Kitab Surat al-ard des Abu Gafar Muhammad ibn Musa al-Huwarizmi, Vienna, 1926.**

**Արամ Տեր-Ղևոնդյան**

*(al-Khwarazmi, J. Vernet EOI, CD-ROM, (IV: 1069b))*
*Տե՛ս նաև.*
*- C. Nallino, Al-Khuwarizmi et son remaniement de la Geographic dc Ptolemec. Bull. de la Societe Khcdiviale de Geographie, IV serie, n. 8, Cairo, 1896, p. 525-543.*

## ԱԼ-ԽՈՐԵԶՄԻ

## ԳԻՐՔ ԵՐԿՐԻ ՊԱՏԿԵՐԻ
## (ՔԻՏԱԲ ՍՈՒՐԱՏ ԱԼ-ԱՐԴ)

## ԲՆԱԿԵԼԻ ԵՐԿՐԱԳՆԴԻ ՎՐԱ ԳՏՆՎՈՂ ՔԱՂԱՔՆԵՐԸ

*Չորրորդ իկլիմը*, լայնությունը 36 00*
*Չորրորդ իկլիմում գտնվող քաղաքները*

*Լջ 15-23*

| [քաղաքների] անունները | | երկարություն | լայնություն |
|---|---|---|---|
| (274) (182) | Անտիոք | 61 35 | 34 10 |
| (275) | Մամեստիան, ծովի մոտ | 19 40 | 36 00 |
| (276) (326) | Տարսոնը, ծովի մոտ | 13 00 | 36 15 |
| (285) (298) | Նփրկերտ (Մայաֆարիկին) | 64 40 | 37 15 |
| (293) (301) | Խառան (Հառան) | 65 00 | 36 40 |
| (294) (302) | Եդեսիա (Ռուհա) | 64 00 | 36 40 |
| (295) (227) | Մոսուլ | 69 00 | 35 30 |
| (296) (256) | Ռաս ալ-Այն | 68 00 | 3 00 |
| (297) | Կիրկիսիա[1] | 66 50 | 35 20 |
| (298) (260) | Մծբին (Նասիբին) | 6 50 | 36 00 |

---

* Իկլիմ (կլիմա) բառը արար մատենագիրների մոտ տարբեր իմաստներ ունի: Ըստ համատեքստի այն կարող է նշանակել երկրների խումբ, երկրամաս, գոտի, կլիմայական գոտի, նահանգ և այլն:

Հինգերորդ իկլիմը, լայնությունը 41 00
Հինգերորդ իկլիմում գտնվող քաղաքները

Նջ 23-28

| | | | |
|---|---|---|---|
| (360) (321) | Ծովային Լաոդիկե քաղաքը | 52 40 | 38 50 |
| (361) (328) | Ամորիոն | 53 00 | 38 00 |
| (365) (329) | Սողոպետրա (Զիբաթրա) | 19 20 | 39 00 |
| (366) (330) | Մալաթիա | 61 00 | 39 00 |
| (367) (331) | Հանձիթ (Հանզիթ)² | 61 40 | 39 45 |
| (368) (335) | Շիմշաթ | 62 40 | 38 45 |
| (369) (336) | Սամոսատ (Սումայսաթ) | 62 35 | 36 20 |
| (370) (337) | Կարնո քաղաք (Կալիկալա) | 68 25 | 38 00 |
| (371) (299) | Խլաթ | 64 50 | 39 50 |
| (372) (300) | Արզն | 66 00 | 39 00 |
| (373) | Բաղեշ | 68 45 | 36 20 |
| (374) (303) | Արճեշ (Արջիշ) | 68 50 | 40 35 |
| (375) (304) | Շահրզուր | 70 20 | 37 45 |
| (376) (305) | Ապահունիս (Բաջունայս) | 70 30 | 40 10 |
| (377) (307) | Ատրպատական | 73 00 | 40 00 |
| (378) (308) | Դեյլմիկք (Դայլամ) | 76 00 | 38 10 |

Վեցերորդ իկլիմը, լայնությունը 45
Վեցերորդ իկլիմում գտնվող քաղաքները

Նջ 28-33

| | | | |
|---|---|---|---|
| (451) (397) | Կոստանդնուպոլիս, ծոցի վրա | 49 50 | 45 00 |
| (461) (420) | Վիրք (Ջուրզան) | 71 00 | 44 00 |
| (462) (422) | Սիսական (Սիսաջան) | 71 00 | 41 25 |
| (463) (428) | Նախճավան (Նաշավա) | 74 00 | 41 35 |
| (464) (426) | Քաղաք լեռան մոտ, երկու դռների (բար) միջև | 72 40 | 44 50 |
| (465) (390) | Պարտավ (Բարդաա) | 78 00 | 48 00 |

## ԲՆԱԿԵԼԻ ԵՐԿՐԱԳՆԴԻ ՎՐԱ ԳՏՆՎՈՂ ԼԵՌՆԵՐԸ

*Չորրորդ իկլիմը, լայնությունը 36*
*Չորրորդ իկլիմում գտնվող լեռները*

*էջ 50-53*

| *սկզբնական և վերջնական սահմանների թվերը* | *անունները* |
|---|---|
| *(745-746) (1235-1236)* | *Ամանոսի (Լուքքամ) լեռներ* |

*Հինգերորդ իկլիմը, լայնությունը 41*
*Հինգերորդ իկլիմում գտնվող լեռները*

*էջ 53-56*

| | |
|---|---|
| *(803-804) (1293-1294)* | *Մեծ Մասիս և Փոքր Մասիս (Հարիս և Հուայրաս) լեռները* |
| *(805-806) (1295-1296)* | *լեռ Մոսուլի և Շահրզուրի միջև* |
| *(807-808) (1297-1298)* | *լեռ կապված այս լեռան, Համադանի, Մեծ Մասիսի, Փոքր Մասիսի հետ մինչև կպչելը Կազուինի լեռան* |

*Վեցերորդ իկլիմը, լայնությունը 45*
*Վեցերորդ իկլիմում գտնվող լեռները*

*էջ 56-60*

| | |
|---|---|
| *(859-860) (1347-1348)* | *Բար ալ-Աբուաբի (Դարբանդ) լեռ* |
| *(861-862) (1349-1350)* | *լեռ երկու ծովերի միջև, որի վրա է Բար ալ-Աբուաբը (Դարբանդ) և Ալանաց դուռը* |
| *(863-864) (1351-1352)* | *Խազարաց դռան (Բաբ) և Ալանաց լեռ* |

| նախնական սահման | վերջնական սահման | գույնը | գագաթների ուղղություն |
|---|---|---|---|
| 60 50 35 10 | 62 20 3 00 | վարդագույն | հյուսիս |
| | | | |
| 69 00 41 00 | 69 30 39 40 | գորշ | հյուսիս |
| 69 30 39 40 | 69 45 39 00 | մուգ դեղին | արևելյան |
| 69 30 39 40 | 72 30 36 00 | մուգ կարմիր | հյուսիս |
| | | | |
| 70 45 41 15 | 72 10 41 15 | երկնագույն (լազուր) | հարավ |
| | | | |
| 71 00 47 00 | 76 00 42 30 | դեղին | հյուսիս |
| 74 00 44 00 | 72 30 45 20 | գունավոր | հյուսիս |

## ԱՅՆ ՏԵՂԵՐԸ [ՔԱՐՏԵԶԻ ՎՐԱ], ՈՒՐ ԳՐՎԱԾ ԵՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

*էջ 101-105*

*Մոսուլ երկիրը[3], նրա անունն ընկնում է երկարության 68 50 և լայնության 38 00 վրա (1572) (521):*

*Ասիա երկիրը[4] նրա անունն ընկնում է երկարության 52 30 և լայնության 43 30 վրա (1581) (630): Գաղատիա (Գալաթիա) երկիրը[5], նրա անունն ընկնում է երկարության 56 30 և լայնության 48 00 վրա (1582) (531): Կապադովկիա երկիրը, նրա անունն ընկնում է երկարության 56 և լայնության 00 վրա (1583) (532): Ատրպատական երկիրը, նրա անունն ընկնում է երկարության 3 40 և լայնության 41 30 վրա (1584) (533): Շաչ և Թարբանդ (Դարբանդ) երկիրը, նրա անունն ընկնում է երկարության 98 00 և լայնության 42 00 վրա (1585) (534):*

## ԲՆԱԿԵԼԻ ԵՐԿՐԱԳՆԴԻ ՎՐԱ ԳՏՆՎՈՂ ԱԿՈՒՆՔՆԵՐՆ ՈՒ ԳԵՏԵՐԸ

### *Հինգերորդ կլիմն ու նրանում գտնվող ակունքներն ու գետերը*

*էջ 126-135*

*Տիգրիս գետն սկիզբ է առնում մի ակունքից, որը գտնվում է երկարության 64 40 և լայնության 39 00 վրա (1959) (1433), անցնում է երկու լեռների միջով, որոնք գտնվում են երկարության 64 45 և լայնության 37 45 վրա (1960) (1484) և լեռան հետ չուռ է գալիս մինչև*

երկարության 68 00 և լայնության 38 00 վրա (1961) (1485), ապա անցնում է Ամիդ Բալադ, հոսելով Բալադի ու Շահրզուրի միջև, անցնում է Մոսուլի ու լեռան արանքով, հոսում է Տիքրիտ, Սուռա ման ռաա (Սամառա) քաղաքներով և մանում Բաղդադ, հետո դուրս գալով անցնում է Մադաինով և Հուլուանի կողմից Վասիթով և վերջապես թափվում Բաթաիհ (ճահճուտ):

Մեծ և Փոքր Մասիսներից (Հարիս և Հուայրաս) բխում է մի աղբյուր, որը չի հոսում և գտնվում է երկարության 69 10 և լայնության 40 20 վրա (1973) (1959): Աղբյուրի (ակունքի) [տրամագծի] մեծությունը քառորդ աստիճան է:

## ՎԵՑԵՐՈՐԴ ԽԿԼԻՄԸ ԵՎ ՆՐԱՆՈՒՄ ԳՏՆՎՈՂ ԱԿՈՒՆՔՆԵՐՆ ՈՒ ԳԵՏԵՐԸ

էջ 135–141

Կուր (Քուր) գետն սկսում է մի ակունքից, որի երկարությունը 68 00 և լայնությունը 44 40 (2119) (2048), անցնում է ծովի ու Վիրք քաղաքի միջև, ինչպես նաև Պարտավի ու Բասիայի միջև և թափվում է ծովը, ուր երկարությունն է 74 40 և լայնությունը 42 15 (2120) (2049):

Եփրատ գետը բխում է Աֆարդախս (Աֆրդխս)[6] լեռան մի ակունքից, երկարության 68 30 և լայնության 41 20 վրա (2121) (1487): Անցնում է Մաանրա լեռան կողմը, որը գտնվում է երկարության 60 20 և լայնության 42 20 (2122) (1488): Հոսում է Մալաթիայի և Հանձիթ քաղաքի արանքով, ապա Ամանոս լեռների և Շիմշաթ քաղաքի ու Սամոսատ քաղաքի միջև, վերջինիս կողքով: Անցնում է [...] լեռան և Մանբիջ քաղաքի արանքով, Մանբիջի կամուրջով, ապա Բալիսի, Ռակկայի, Ռաֆիկայի միջով անցնելուց հետո շրջապատում է Անան, Հադիսան, Ալուսան, Նաուսան, հոսում է Հիտի, Անբարի միջով: Նրա մի մասն անցնում է Քուֆայով և հասնում մի վայր, որը գտնվում է երկարության 71 00 և լայնության 31 00 վրա (2123) (1489): Նա թափվում է Բաթաիհ շրջանը:

Եփրատ է թափվում մի գետ, որը բխում է երկարության 62 20 և լայնության 41 00 (2128) (1492) վրա գտնվող լեռից, անցնում է Հանձիթ քաղաքով և թափվում Եփրատ այն վայրում, ուր երկարությունն է 61 30 և լայնությունը 39 20 (2129) (1493):

Կա մի գետ, որը բխում է սարից և նրա սկիզբը գտնվում է երկարության 71 45 և լայնության 41 30 վրա (2130) (2050), անցնում է դեպի մի վայր, երկարության 71 50 և լայնության 48 00 (2131) (2051), ապա անցնում է Պարտավի ու Նախճավան քաղաքի արանքով և թափվում է ծովը, այնտեղ, ուր երկարությունն է 75 50 և լայնությունը 41 45 (2132) (2052):

# ԽՈՐԵԶՄԻ

## ԳԻՐՔ ԵՐԿՐԻ ՊԱՏԿԵՐԻ
## (ՔԻՏԱԲ ՍՈՒՐԱՏ ԱԼ-ԱՐԴ)

### ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Կիրկիսիա - Կամ Կարկիսիա: Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 43:

2 Հանձիթ (Հանդիթ) – Գավառ Չորրորդ Հայքում: Խեթական արձանագրություններ Anzitu երկիրն է, որի ժողովուրդը Alzi, կամ Anzi էր կոչվում: Հայասայի և Իսուվայի թագավորությունների հետ այդ թագավորությունը ներկայանում է որպես պատմական Հայաստանի տարածքում ծանոթ ամենահին պետություններից մեկը (1400-1200 մ. թ. ա.): Մենուայի արձանագրության մեջ՝ Al-zi-nini: Այդ անվան իրանական ձևն է Արդունեն, իսկ հայկականը՝ Աղձնիք: Պտղոմեոսի մոտ՝ Անդիտինի, ասորական դրություններ մեջ՝ Հանաձեթ: Փավստոսի և Խորենացու մոտ Անձիտ և այլն: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրներ, էջ 210):

3 Մոսուլ երկիրը – Հավանաբար նկատի ունի Վերին Միջագետքը (Ջազիրա): Տե՛ս նաև Մոսուլ, Բալաղուրի, ծնթգր. 63:

4 Ասիա երկիրը – Տվյալ դեպքում «Ասիա» բառը օգտագործված է որպես Փոքր Ասիայի արևմուտքում գտնվող երկրամասի, կամ նահանգի անվանում:

5 Գաղատիա (Ղալաթիա) - Երկրամաս և նահանգ Փոքր Ասիայի կենտրոնական մասում:

6 Աֆարղախս (Աֆրղխս) լեռ - Եփրատի ակունքը գտնվում է Ծաղկավետ լեռների (այժմ՝ Դումլուդաղ) հարավային լանջերում:

## ՋԱՀԻԶ
## (մահ. 869)

*Աբու Օսման Ամր իբն Բահր ալ-Ֆուկայմի ալ-Բասրի իբն Բահր ալ-Ջահիզը 9-րդ դարի լայն մտահորիզոնով գիտնականներից է, որի աշխարհագրական երկերը ընթերցվում են մեծ հետաքրքրությամբ:*

*Ծնվել է Բասրայում մոտ. 776-ին մի համեստ ընտանիքում, որը հավանաբար հարեշական ծագում ուներ: Մանուկ հասակից նա ուսման հանդեպ մեծ ձգտում է ցուցաբերում հետևելով բանասիրության, քերականության ու պոեզիայի բնագավառում ժամանակի նշանավոր դեմքերին: Ալ-Ջահիզը շուտով դարձավ արաբերենի և ավանդական մշակույթի գիտակ, իր ժամանակի ամենազարգացած ու առաջադեմ անձերից մեկը:*

*Նա հեղինակ է մեծադիր մի հատորի, որը կոչվում է «Գիրք կենդանիների մասին» (Քիթաբ ալ-Հայավան), որտեղ նա հաղորդում է կենդանաբանական, մարդաբանական ու ազգագրական բնույթի տեղեկություններ:*

*Ալ-Ջահիզի հիմնական աշխարհագրական երկն է՝ «Գիրք մեծ քաղաքների ու երկրների հրաշքների մասին» (Քիթար ալ-Ամսար ուա Աջաիր ալ-Բուլդան), որից սակայն պահպանվել են պատառիկներ, թեև ժամանակին նրանից օգտվել են այլ աշխարհագրագետներ (Իբն ալ-Ֆակիհ և այլք):*

*Համեմատաբար ավելի ուշ հայտնաբերվեց ու շրջանառության մեջ դրվեց ալ-Ջահիզի մի ուրիշ աշխատություն՝ «Հայացք վաճառականության վրա» (Ալ-Տաբասսուր բի-լ-Տիջարա), որը կարելի է համարել տնտեսական աշխարհագրության ստեղծման մի յուրահատուկ փորձ: Այս երկի ձեռագիրը հայտնաբերվեց Թունիսում արաբ գիտնական Հասան Հուսնի իբն ալ-Վահհաբի կողմից և հենց նա էլ հրատարակեց Դամասկոսի գիտությունների ակադեմիայի պարբերականում: (Abd al-Wahhab, RAAD. XII )*

**Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. Djahiz, at-Tabassur bi-l-Tidjara, Damas, 1932.**

(**Крачковский, IV, стр. 123-126, al-Djahiz,** *Ch. Pellat EOI, CD-ROM, (II: 385a))*

## ՋԱՀԻԶ

## ՀԱՅԱՑՔ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎՐԱ (ԱԼ-ՏԱԲԱՍՍՈՒՐ ԲԻ-Լ-ՏԻՋԱՐԱ)

*Գրել է Աբու Օսման Ամր իբն Բահր ալ-Ջահիզ ալ-Բասրին:*

*Հարցրել ես, - Ալլահը քեզ պատվի, - այն մասին, թե տարբեր երկրներում ինչն է առավել գնահատվում՝ չքեղ ապրանքներից, արժեքավոր առարկաներից, թանկարժեք բարձրորակ գոհարներից, որպեսզի [իմ աշխատությունը] հարստացնի նրանց գիտելիքները, որոնք արդեն փորձ ունեն և օժանդակ լինի նրանց, որ տարբեր արհեստներով և միջոցներով շահույթ են ձեռք բերում:*

*Այն կոչեցի «Հայացք վաճառականության վրա», իսկ Ալլահը թող ինձ հաջողություն տա:*

*Որոշ հին փորձված մարդիկ ասել են, թե ամեն ինչ որ գոյություն ունի, էժան է երբ կա, և թանկ է, երբ կորչում է ու նրա կարիքն ունենն:*

*Հոռոմներն ասել են. «եթե մարդ մի երկրում շահ չգտնի, թող այլ երկիր փոխադրվի»:*

*Հնդիկներն ասել են. «չկա մի բան, որ շատանալուց չէժանանա բացի խելքից, որն ինչքան շատ է, այնքան թանկ»:*

*Պարսիկներն ասել են. «եթե մի գործից (առևտրից) շահ չունեք, ապա մեկ ուրիշին անցեք և եթե ձեզանից մեկը մի երկրում շահ չգտնի, թող մեկ ուրիշով փոխարինի»:*

*Դարձյալ պարսիկներն ասել են. «ամեն մի շուկայում իսկապես շահելու համար պետք է վաճառել այն, ինչ հեշտ է ծախվում»:*

*Արաբներն ասել են. «եթե տեսնում եք, որ բախտը մեկին ժպտում է, կպեք նրան, քանզի ավելի քան ուրիշները շահույթ կբերի»:*

*Մի հարուստի ասել են. «ինչով շատացավ քո ունեցվածքը»: «Երբեք ապառիկ չեմ վաճառել, - ասել է, - ոչ էլ շահը մերժել եմ, թեկուզ չնչին լինի, և չի պատահել, որ մի դիրհեմ ձեռք բերեմ և այն չօգտագործեմ այլ [գործարքի] համար»:*

*Ասվել է. «մի դնեք այն ինչի կարիք չունեք, քանզի ստիպված կլինեք վաճառելու այն, ինչից չեք կարող հրաժարվել»:*

*Մի իմաստուն ասել է, որ պարսկական ժառանգության կտակի մեջ գտել է, թե գրված է. «ով մարդ, չկա որևէ կապ քո և քո գտնված երկրի միջև, լավագույնն այն երկիրն է, ուր քեզ հարմար է, այն ժամանակը՝ որ քեզ նպաստավոր է, լավագույնն այն մարդն է, որ քեզ օգտակար է, այն ջուրը՝ որ քո ծարավն է հագեցնում, այն կենդանին՝ որ քեզ տանում է, լավագույնն այն զգեստն է, որ քեզ ծածկում է, այն*

առևտուրը, որ քեզ շահ է բերում, այն գիտությունը՝ որ քեզ առաջնորդում է և այն գեղեցկությունը՝ որ քեզ հաճելի է. Թեկուզ տգեղ լինի»: Ասել են. «լավագույն արհեստը մետաքսի (խազզ) [գործն] է և լավագույն առևտուրը՝ բամբակե գործվածքեղեններն (բազզ) է»:

## ԳԼՈՒԽ ՈՍԿՈՒ ԵՎ ԱՐԾԱԹԻ ՃԱՆԱՉՄԱՆ ՈՒ ՍՏՈՒԳՄԱՆ ՄԱՍԻՆ

Ասել է իմաստունը. «ցանկալի է, որ ոսկին լինի ձույլ կտոր, թե ոչ, նման կլինի առանց բոցի կրակի, ճառագայթի խուրձի և պայծառ ծծմբի»: Նա դիմացկուն է, քանզի նրան չի կպել դարբնի փուքսը և ոչ էլ ժամանակն այլայլել է: Ասվում է, որ ոսկին առավել արժեքավոր է, եթե չի փոփոխվում և շատ է փայլում ու գեղեցկանում հնանալով: Ամեն ինչ պակասում (մաշվում) է շոշափելով ու թաղելով բացի ոսկուց, որը երբեք չի պակասում:

Լավագույն գինարները հնացածներն են՝ կարմրավուն կանաչ: Հները գտնում էին, որ դինարն ստուգվում է նրանով, որ կպչում է մազին, մորուքին և դժվարությամբ է մնում դրանց մեջ, իսկ կեղծ գինարը (նարհարաջ) ճանաչվում է ըստ թեթևության ու ծանրության:

Կարծվում է, որ լավագույն ոսկին բնական ոսկին (իկյան) է, իսկ լավագույն արծաթը՝ հում (կույս) արծաթն է: Մաքուր արծաթի համը քաղցր է, իսկ կեղծվածի համը՝ դառն, ժանգոտած: Կեղծված դիրհեմը աղի է ու զանգակի նման զնգում է, իսկ զուտ արծաթը մաքուր զնգոց ունի, որին խառնված չէ ոչ մի խուլ աղմուկ և կտրում է ծարավը, եթե բերանի մեջ պահվի:

## ԳԼՈՒԽ ԳՈՀԱՐՆԵՐԻ ԱՐԺԵՔԸ ՃԱՆԱՉԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Կարծվում է, որ մարգարիտ (լուլու) գոհարը ճանաչելու համար պետք է երկու ձևով համը նայել, ըստ որում քաղցր համ ունեցողը Օմանի մարգարիտն է, աղի համ ունեցողը՝ Կարմիր ծովի (Կուլզում): Երկուսն էլ ջրի մեջ սուզվում են, իսկ արհեստականը դառն է, ճարպի համ ունի, թեթև է և ծփում է ջրի երեսին:

Ասվում է, որ եթե մարդարտի ներսում որդ կա, ապա կտեսնես, որ շոշափելուց կամ շրթները կպցնելուց տաքություն ես զգում և դա հոգու (ներքին) հիվանդություն է, իսկ եթե որդ չկա, շոշափելուց կամ շրթները կպցնելուց սառնություն ես զգում: Ահա այս ձևով է ստուգվում:

Ըստ ծովայինների կարծիքի, եթե փայլփլուն խոշոր մարգարիտը փաթաթվի ոչխարի թարմ դմակի մեջ, դրվի խմորի ներսում և այս ամբողջը փուռը դրվի և ուժեղ տաքացվի, ապա կփայլի ու կլավանա

և ջրային մասը կվերստանա, իսկ եթե քափուրով (քամֆոր) գոլորշիանա. նույնը կստացվի և եթե ոսկորի ծուծով ու ձմերուկի ջրով մշակվի. պայծառ կմնա:

Հիմնական մսով (լահմի ջաուհարի) մարգարիտը տարբերվում է սադափե ոսկրային մարգարիտից նրանով, որ հիմնականը հարթ, կանոնավոր երեսով և ողորկ է լինում, իսկ ոսկրայինը կոշտ և ոչ կանոնավոր կառուցվածք ունի:

Լավագույն մարգարիտը Օմանի պայծառ մարգարիտն է կանոնավոր մարմնով, կլորացված ու հարթ և եթե երկու մարգարիտներ հատիկների ձևով հավասար, պատկերով, գույնով ու կշռով նույնը լինեն, սա (Օմանինը) միշտ ավելի գին է ունենում: Օմանի մարգարիտը ավելի թանկ է և պատվական, քան Կարմիր ծովինը, քանզի Օմանի մարգարիտը քաղցրահամ է, մաքուր, պայծառ, իսկ Կարմիր ծովինը աղիություն և այլ թերություններ ունի:

Եթե հատիկը կես մսխալ[1] է կշռում, կոչվում է մարգարտահատ (դուռա). կլորացված, հարթված կանոնավոր հատիկը, որը կես մսխալ է, նրա դինը հասնում է ոսկով հազար մսխալի[2], իսկ ձվաձևը պակաս գին ունի. գինը բարձրանում է ըստ կշռի և կլորության: Եթե կշիռը հասնի երկու մսխալի[3], կարող ես գինը բարձրացնել տասը հազար դինարի և նույնիսկ հարյուր հազար դինարի, իսկ կլորն այս նույն կշռով ու հատկանիշներով՝ անգին է ու եզակի (փաբիդա): Մարգարիտն ինչքան մաքուր ու անբիծ է, գինն այնքան բարձր է և թանկ: Ալ–Դուռա ալ-յատիման (հազվագյուտ մարգարտահատը) Կարմիր ծովից է հանվում և կարծվում է, որ կշիռը երեք մսխալ[4] է: Փոքրիկ մարգարիտը կոչվում է բուստ (մարջանա):

Լավագույն հակինթը (յակուտ) կարմիրն է (բահրամանի), ապա վարդագույն կարմիրը, դեղինը, երկնագույնը (ասմանգանի), իսկ վերջում՝ սպիտակը: Հակինթը բերվում է Հնդկաստանի Ջաբալ Սարանդիբից (Ցեյլոն): Իսկական հակինթները կեղծվածից տարբերվում են երեք հատկանիշներով՝ կշռի մեջ ծանրությամբ, բերանում դնելու դեպքում սառնությամբ և խարտոցի ներգործությամբ, քանզի հակինթը ծանր կշռող քար է, սառն է բերանում, իսկ խարտոցը թույլ է ազդում նրա վրա: Իսկ կեղծվածը լինում է թեթև կշռով, ծծելիս տաք է և խարտոցն արագ է հղկում նրան: Լավագույն հակինթն այն է, որ անբիծ է, մաքուր, լուսավոր, ինչ գույն էլ ունենա: Նրա գինը բարձրանում է ըստ մեծության և [իջնում] ըստ փոքրության: Կարմիր անբիծ հակինթը եթե կես մսխալ կշռի, կարող է գինը հինգ հազարի հասնել: Այն մատանու ակը (փասս), որը հայտնի է Ջաբալ (Լեռ) անվամբ, կշռել է երկու մսխալ և արժեցել հարյուր հազար դինար՝ գնել է Աբու Ջաաֆար ալ-Մանսուր [խալիֆան] քառասուն հազար դինարով: Երկնագույն հակինթի մի ակը հաճախ վաճառվել է երկու հարյուր դինարով:

*Լավագույն տպազիոնը (զաբաջադ) լինում է խիստ մուգ կանաչ, մաքուր նուրբությամբ: Գներազանց (փաիկ) տպազիոնը զանազանվում է արհեստականից (մաամուլի) նույն ձևով, ինչ հակինթները՝ ծանրությամբ, համի սառնությամբ և խարտելու դժվարությամբ: Արհեստականը փխրուն է, թեթև, տաք համով և խարտոցը արագ է ներգործում վրան: Կարծվում է, որ լավագույն տպազիոնը պայծառ, մաքուր և հստակ է: Եթե նրա մի կտորը կշռի կես մսխալ, ապա կարժի երկու հազար մսխալ ոսկով, իսկ նրա գնի տատանումները կախված են մեծությունից ու փոքրությունից: Այն մատանու ակը, որը կոչվել է Բահր (Ծով) և կշռել է երեք մսխալ, գնել է Աբու Ջաաֆար ալ-Մանսուրը, երեսուն հազար դինարի և այժմ խալիֆաներից մեկի գանձարանում է:*

*Լավագույն փերուզակը (ֆիրուզաջ) կաթի գույնն (շիբբամ) ունի, լինում է կանաչ կապտավուն (ասմանգանի), հին և անբիծ: Փերուզակը մի քար է, որի վրա խարտոցը չի ներգործում և չի փոխվում կրակի ու տաք ջրի մեջ: Փերուզակի ակի ամենաբարձր գինը, եթե կես մսխալ է կշռում, քսան դինար է:*

*Լավագույն սարդիոնը (ակիկ) Եմենից է, խիստ մուգ կարմիր, որի երեսին ինչ որ գծեր են երևում, սակայն ինչքան անբիծ է և լուսավոր, այնքան ավելի գին ունի:*

*Լավագույն նռնաքարը (բիջադի) այն է, որ խիստ մուգ կարմիր է, կրակի նման բոցավառ գույնով և ինչքան կարծր է ու խոշոր, այնքան արժեքավոր է ու թանկ: Նրա արհեստականը փխրուն է: Որակավոր լինելն ստուգելու համար պետք է փետուրի մոտեցնել և սա վերցնում է նրան և ինչքան լավ վերցնի փետուրը, այնքան որակավոր է համարվում [քարը]: Ընտիր նռնաքարի ակի ամենաբարձր գինը, եթե կես մսխալ է կշռում, երեսուն հազար դինար է: Արժեքավոր դոհարը գին չունի այն բանի շնորհիվ, որ գիշերը լայնորեն շուրջը լուսավորում է ու ճառագայթում:*

*Վանակն բյուրեղը (բիլլաուր) ընտրվում է ըստ իր ջինջ մաքրության ու մեծության. լավագույն բյուրեղը սպիտակ մաքուր տեսակն է և ընտիր փարավոնյանը (ֆիրաունի):*

*Լավագույն բյուրեղ ադամանդը ջինջ մաքուր սպիտակն է, ապա՝ կարմիրը և եթե կես մսխալ է, կշռի գինը հարյուր դինարի կհասնի: Ինչքան մեծ է և խոշոր, այնքան բարձր է գինը:*

## ԳԼՈՒԽ ՕԾԱՆԵԼԻՔՆԵՐԻ, ԾԱՂԿԱՋՐԵՐԻ ԵՎ ԱՆՈՒՇԱՀՈՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Կարծվում է, որ լավագույնը հնդկական Մանդալի հալուեն է (ուդ), որը խարդախված չէ և ինչքան պինդ է, այնքան ընտիր: Նրա որակն*

ստուգվում է սուր բուրմունքով և ուժեղ հոտով: Գտնում են նաև, որ լավագույն հնդկական հալուեն ծանր կչիռ ունեցողն է, որը սուզվում է ջրի մեջ, իսկ պակաս արժեքավոր է այն, որը թեթև է կչռում և ծփում է ջրի երեսին: Մասնագետների գնահատությամբ թեթևը մեռած է և նրանում հոդի չկա ու թույլ բուրմունք ունի, իսկ ծանր կչիռ ունեցողը թափանցող և սուր բուրմունք ունի:

Լավագույն մուշկը (միսք) Տիբեթինն է, որը չոր հոտավետություն ունի, ավելի սովորականը բուդդի է կոչվում: Մուշկը կարելի է խարդախել խառնելով անագ, կղբիկ (կաստորիում), չավաշարյուն (վիշապարյուն) և սիրիական ընկույզ (սիյահ գարու): Ինչքան թեթև է և բուրումնավետ, այնքան ընտիր է:

Կարծվում է, որ լավագույն սաթը (անբար) գորշ զարաջին է, ապա կապույտը, դեղինը, իսկ պակաս որակով է [......]:

## ԳԼՈՒԽ ԶԳԵՍՏՆԵՐԻ ՃԱՆԱՉՄԱՆ ԵՎ ՆՐԱՆՑ ԱՐԺԵՔԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

[...] Գունագեղ [զգեստներից] լավագույնները կոչվում են սաբիրի, քուֆի (Քուֆայից) և իբրիսամ (մետաքսային), ոսկեզօծ (մուզահհաբ), գունագեղ իսքանդարանի (Ալեքսանդրիայի), որը զուտ քթանից է, ոսկեթել հյուսվածքը, գունագեղ ղազալի, այն, որի մեջ ոչ մետաքս կա, ոչ ոսկի թել, եմենի, որն այս տեսակետից ավելի լավ է քան ղազալին: Իբրիսամի քթանը չունի այն գինը, որ ունի եմենինը, քանզի ղազալի զգեստը կարող է հազար դինար արժենալ:

Լավագույն սինջաբ մուշտակը կզաքիսից (կուկիմ) է պատրաստվում, ապա նրա մեջքի մասը և ապա կասպիական (խազարի) մուշտակը, խորեզմին և վերջապես այն ամենը ինչը խարդախված չէ նապաստակի մորթով:

Լավագույն աղվեսը սև կասպիականն (խազարի) է, հաստ մազով, որը ներկելով չի խարդախված, ապա սպիտակը, ներկած կարմիրը, կասպիականի կարմիրը և գորշը:

Լավագույն կզաքիսը խոշոր հաստ պոչով է լինում, իսկ լավագույն սամույրը՝ չինականն է, ապա կասպիականը՝ չնշտված սպիտակությամբ կամ ուժեղ սևությամբ և երկարամազ:

Լավագույն կահավորանքը (ֆարշ) ամենաթանկն ու ամենաշքեղը միրիզզա կարմիր (կիրմիզ) հայկական կարմիր փայլուն կահավորանքն է, ապա մետաքսե (խազզ) գծավոր, զարդարունը (ռակմ), գունագեղ մետաքսը, բյուզանդական կայսերական (խուսրավանի) ոճով սարքած նուրբ մետաքսը (դիբաջ), մայսանի ոճով զարդարուն (մուդաբբաջ) մետաքսը և բարակ մետաքսը (բուզյուն): Այս բոլոր տեսակների արժեքն ու գինը բարձրանում է ըստ այնմ, թե ինչքան ոսկու

հյուսվածք են պարունակում: Նրանք բոլորը լինում են ոսկով հյուսված, բացի սիրիզղա (այծնմազն զործվածք) Հայկականից, մայսանից (աստղափայլ) և բարակ մետաքսից (բուղյուն):

Լավագույն բարակ մետաքսը միսքի նուրբ բանվածքն է, ապա գծավորը (մուխաթթաթ), կլոր զարդերովը (մուֆալլաս), պարզը, չնյանկյուն զարդերովը (մուայյան), կետավորը (մունակկաթ): Մշկագույն շղարշը (դիֆարա միսքիյյա) եթե նուրբ մաքուր կատարված լինի, հավանաբար գինը կհասնի հիսուն դինարի:

Աբու Կալամունը (բաղմափայլ) բյուզանդական կայսերական (խոսրավանի ռումի) գործ (գիլլիյյա) է, կարմրագույն (կիրմիզի) մանիշակագույն գծերով՝ կարմրի ու կանաչի վրա: Գտնում են, որ նա տարբեր գույներ է ստանում ըստ օրվա ժամի և արևի փայլի: Նրա գինը չատ բարձր է:

Լավագույն բրդե զգեստները եգիպտական են, ապա գալիս են Խուզիստանի (խուզի) պարսկականները, ապա այծնմազե գործվածքը (միրիզղա) Շիրազի պարսկական այծնմազե գործվածքի հետ, Ապահանինը, Ֆասա (Ֆեսի՞) մետաքսի հետ բանված այծնմազե գործվածքը, Թաբարիստանյանը, վերջապես բուրդը բրդի հետ գործվածը:

Լավագույն դլսի քողերը (Թայլասան) Ռուսյանում[5] ու Թաբարիստանում են պատրաստված, ապա Ամուլում[6], Եգիպտոսում և Կումիսում[7] գործվածները:

Լավագույն Թաղիքը (լաբուդ) չինականն է, ապա Մաղրիբի կարմիրը, Թալիկանի սպիտակը, Հայկականը և խորասանյանը:

Հովազի լավագույն մորթիները բերբերականներն (բարբարի) են, զարդարված խիստ սպիտակի վրա չեչտված սևով և երկար բծերով, որոնք տարմահավի (սաբանի) փետուրներ են հիշեցնում: Ամենահաճելին այն հովազի մորթիներն են, ուր սևի վրա մեջտեղում սև փոքրիկ չեչտված կետ կա: Եթե սև մասերն իրար հետ կապված են թեթև սև գծով, ապա դա առավել հաճելի է: Իսկ եթե մորթու վրա լինի կարմրություն փայլուն սպիտակի և մուգ սևության հետ, չատ գեղեցիկ և թանկ կլինի: Բերբերների հովազների մորթիները փոքր են և ամեն մեկը հազիվ մի թամբ ծածկի և նրա ամենաբարձր գինը հիսուն դինար է: Ինչ վերաբերում է մաղրիբյան ու հնդկական հովազների մորթիներին, ապա դրանք ավելի լայն և մեծ, սակայն ավելի թանկ կամ արժեքավոր չեն: Հովազի լավագույն մորթիները երփներանգ են:

Լավագույն բամբակն սպիտակն է, փափուկ փոքր հատիկներով [...] նուրբ և մաքուր սպիտակությամբ:

[Մասնագետը] կարծում է, թե կարմիր կիրմիզը մի խոտ է, որի արմատի վրա լինում է կարմիր որդ և երկրի երեք վայրերում է աճում՝ Մաղրիբի կողմերը՝ Անդալուսի (Իսպանիա) հողում, Տարիմ կոչված

գավառում և Ֆարսի հողում: Այս խոտի մասին և նրա աճած վայրերը գիտեն միայն մի խումբ հրեաներ, որոնք ամեն տարի քաղում են փետրվար (մահ խսֆանդարմուզ) ամսում: Որդը չորացնում են ու նրանով ներկում մետաքսը (իբրիսամ), բուրդը և այլ բաներ: Այն վայրը, ուր լավագույն ձևով ներկում են, Վասիթն է:

Կարծվում է, որ բալասանը (բալսան) Եգիպտոսում աճող մի ծառ է, որի չուրջը փորում են գարնան օրերին և նրանից բալասանի յուղ (սպեղանի) է դուրս գալիս, որը վերցվում է: Բացի Եգիպտոսից այլ վայրերում չկա:

Նշի հատիկը աճում է Շահրազուրի հողում և կարծվում է, որ տափանք է առաջացնում:

Կիրմազը մի ծառ է, որը պարսկերեն կոչվում է Բանջաքուշտ (փենջ անգուշտ, հինդ մատ): Ոչ մի տեղում չի աճում, այլ միայն դափնենվարդի (դիֆլա) մոտ: Սա մի բույս է, որն իր կողքին աճող դափնեվարդին է ձգտում և կոչվում է փագահր (փաղահր, թույն չեզոքացնող), այդ պատճառով նրա հետ է տնկվում: Ասվում է, որ այս երկուսը հոռոմների երկրից են բերվել և ունեն երկար պատմություն:

## ԳԼՈՒԽ ԴՐՍԻ ԵՐԿՐՆԵՐԻՑ ԲԵՐՎԱԾ ԶԱՐՄԱՆԱԼԻ ՀՐԱՇԱՊՐԱՆՔՆԵՐԻ, ՊԻՏՈՒՅՔՆԵՐԻ, ՀԱՐՃԵՐԻ, ՔԱՐԵՐԻ ԵՎ ԱՅԼ ԲԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հնդկաստանից բերվում են՝ վագրեր, հովազներ, փղեր, հովազի մորթի, կարմիր հակինթ, սպիտակ ճանդալ (սանդալ), եբենոս փայտ, հնդկընկույզ:

Չինաստանից բերվում են՝ համեմունքներ (ֆիրինդ), մետաքսեղեն, սեղանասպասք, թուղթ (քաղիդ), թանաք, սիրամարգ, աչխույժ նժույգներ, թամբեր, թաղիք, դարսենի (դարչին), ռումի (բյուզանդական) անխառն ռավանդիսենի (ռավանդ):

[Հոռոմների երկրից] բերվում են արծաթե ու ոսկե անոթներ և անխառն մաքուր ոսկուց (կայսարանի) դինարներ, բուժախոտեր (ակակիր), զգեստներ, գործվածքեղեն, մետաքս (դիբաջ), աշխույժ նժույգներ, հարճեր, կարմիր պղնձից հազվագյուտ անոթներ, ամուր կողպեքներ, քնարներ, ջրային ճարտարապետներ, հողագործության ու հերկման դիտակներ, մարմարի չինարարներ ու ներքինիներ:

Արաբների երկրից՝ արաբական նժույգներ, ջայլամ, ցեղային ուղտեր, կան ծառի փայտ և մշակված կաշի:

Բերբերների երկրից և Մաղրիբի կողմերից՝ հովազներ, կաշի մշակելու տերևներ (կարազ), թաղիքներ, սև բազեներ:

Եմենից՝ թիկնոցներ, մշակված մորթի, ընձուղտներ, զրահ, սարդիոն, խունկ (քունդուր), լեղակ, դեղին կոճ:

Եգիպտոսից՝ արաղընթաց ավանակներ (հիմլաջ), նուրբ զգեստներ, պապիրուս (կիրթաս), բալասան (սպեղանի), իսկ հանքային հանածոներից՝ ընտիր տպազիոն (դաբարջադ)։
Խազարների երկրից՝ ստրուկներ, ստրկուհիներ, օղազրահ, սաղավարտներ, պաշտպանության սաղավարտ։
Խորեզմ երկրից՝ մշկայծյամ (միսք), կզաքիս (կակիմ), սամույր, սկյուռ, աղվես, քաղցր շաքարեղեգ։
Սամարկանդից՝ թուղթ։
Բալխից ու շրջակայքից՝ քաղցր խաղող, սունկ։
Բուշանջից՝ մշակված կապար։
Մերվից՝ բարբուտ նվագողներ, ընտիր բարբուտներ, գորգեր (թինֆիսա), Մերվի զգեստներ։
Վրկանից (Ջուրջան)՝ հունապ, փասիան, նաև ընտիր հատիկներ, փափուկ բուրդ, ընտիր անոլոր մետաքս։
Ամիդից՝ հյուսված զգեստներ, թաշկինակներ, նուրբ վարագույրներ, բրդե քող (շղարշ)։
Դմավանդից (Դարավանդ)՝ նիզակների ծայրեր։
Ռեյից՝ դեղձ, սնդիկ, բրդե թիկնոցներ, զենքեր, նուրբ գործվածքներ, սանրեր, արքայական գլխանոցներ (կալանիս մալաքիյա), Կասսի կոչված քթանե գործվածքեղեն, նուռ։
Սպահանից՝ խորսխամեղր (շահդ), մեղր, սերկևիլ, չինական տանձ, խնձոր, աղ, զաֆրան, կալաքար (ուշնան), սպիտակադեղ (իսֆիդաջ), ծարրաքար (քուհլ), բազմահարկ մահճակալներ, ընտիր զգեստներ, մրգի օշարակ։
Կումիսից՝ կացիններ, թամբի թաղիքներ, հովանոցներ, բրդե շղարշներ։
Քիրմանից՝ լեղակ և քմոն։
Գորից (Ջուր)[8]՝ քաղցրախյուս, լվախոտ։
Պարտավից՝ արագավազ ջորիներ։
Մծբինից՝ կապար։
Ֆարսից՝ քթանե Տավվազի և Սաբիրի կոչված զգեստներ, վարդաջուր, նունուֆարի յուղ, հասմիկի յուղ, օշարակներ։
Ֆասայից՝ պիստակ, չոր մրգեղենի տեսակներ, զարմանահրաշ պտուղներ, ապակեղեն։
Օմանից ու ծովափից՝ մարգարիտներ։
Միսանից՝ բարձեր, հենաբարձեր։
Ահուազից ու գավառներից՝ շաքար, մետաքսե դիպակ։
[...] և բամբիրներով պարուհիներ. պարուհիներ [...] արմավի տարբեր տեսակներ, խաղողի ռուփ, շաքարեղեգի շաքար։
Սուսից (Շոշ)՝ կիտրոն, մանուշակի յուղ, շահոքրամ, ձիու ծածկոցներ, թամբեր։

Մոսուլից՝ վարագույրներ, սփռոցներ, անտառակաքավ, լորամարգի։

Հուլուանից[9]՝ նուռ, թուզ, քացախ։

Հայաստանից ու Ատրպատականից՝ թաղիքներ [...], թամբեր, գորգեր, նուրբ փսիաթներ, գոտիներ, բուրդ։

## ԳԼՈՒԽ ԲԱԶԵՆԵՐԻ (ԲԱԶ), ԿԵՐԲԱԶԵՆԵՐԻ (ՇԱՀԻՆ), ՇԱՀԵՆՆԵՐԻ (ԲԱՎԱՇԻԿ), ՍԱԿՌ ԲԱԶԵՆԵՐԻ (ՍԱԿՐ) ԵՎ ԱՅԼ ԳԻՇԱՏԻՉ ԹՌՉՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿԱԼԻ ՏԵՍԱԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Լավագույն բազեները սպիտակներն են, որոնք գտնվում են Թուրքաց կողմերում մինչև Գեղան (Ջիլան), ապա սև ագռավայինները, որոնք սևամորթների (Զինջ) կողմերում, Հնդկաստանում ու Եմենում են։ Ապա գալիս են պայծառ կարմիրները և պղտոր մոխրագույնը։

Լավագույն կերբազենները (չահին) ծովային ագռավային սև գույն ունեցողներն են և Վրկանի (Ջուրջան) սպիտակները։

Շահեններից ցանկալի են ծովային ագռավային սևերը, ապա Հնդկաստանի ճերմակները, կարմիր ծովային գույն ունեցողները, որոնց փորը կարմիր է, կուրծքը՝ սպիտակ բծավոր, փայլուն, գլուխը մեծ, աչքերը խորն ընկած, բայց ոչ նիհար, մեծ ռունգերով, լայն բարձր կրծքով, փափուկ աղվամազով, երկար պոչով, կանաչ թաթերով, ոտքը բազկապանին մոտիկ։ Դրանք պետք է ծանր լինեն և եբր 130 դիրհեմ քաշ ունենան, կատարյալ են։

Կարծվում է, որ սթափահավը սակռ բազեի արուն է, աֆսի կոչվածը չահեն արուն է, իսկ բազեի արուն փոքրիկ սթափահավն է։

Պարսիկներն ասում են. «չատ հազվադեպ է, որ ձին ու բազեն, լինելով գեղեցիկ, թաքուն արժանիքներ չունենան և ոչ էլ ունենալով բարձր արժանիքներ չունենան գեղեցիկ կերպարանք։ Երբ թաքուն և բացահայտ հատկանիշները ի մի են գալիս, նրանք գերազանց են դառնում»։

## ԵՎՍ ՄԻ ԳԼՈՒԽ

Ամեն մի գործվածքեղեն, որ զգեստի կամ գորգի (սենյակի կահավորանք) համար է, ինչքան ճկուն է, փափուկ ու փայլուն, այնքան արժեքավոր է։ Ամեն մի թանկարժեք իր՝ գոհարեղեն կամ քարեր, ինչքան մաքուր ու լուսավոր է, այնքան արժեք ունի։ Ամեն կենդանի՝ վայրի թե ընտանի, ինչքան խոշոր է և հնազանդ, այնքան նախընտրելի է ու գերազանց։ Ամեն մարդ՝ ազնվական կամ ռամիկ, եթե խելացի է ու շրջապատին հարմարվող՝ գեղեցիկ է և ամեն կին

աղաա թե աղախին, ինչքան հանդարտ է, գեղեցիկ ու երախտագետ, այնքան առաքինի է: Կենդանի [թռչունը] լինի դաշտային թե լեռնային, ինչքան ընտանի է, այնքան արժեքավոր: Ամեն ինչ՝ լինի ձեռք բերած թե ժառանգած, ինչքան օրինավոր է ու հարդելի, այնքան երջանկաբեր է: Ամեն թշնամի՝ փոքր թե մեծ, ինչքան եռանդուն է, այնքան թշնամական ու քինախնդիր: Եթե որևէ մեկի օթևանը հայտնի չէ, լավ է նրան չմերձենալ:

Բախտը հեղհեղուկ է և ունեցվածքը կարող է բաժան-բաժան լինել, ջանասեր եղեք բախտ որոնելու, ողորմեցեք աղքատին, խղճացեք տկարին և հատուցում կստանաք: Լավագույն նինջն այն է, որ հողնությունն ու ծուլությունը հաղթահարում է:

Հինգ զգայարաններով կարելի է ճանաչել իրերը՝ տեսողությամբ, եթե այն գեղեցիկ է ու հաճելի, քթով՝ եթե բուրումնավետ է ու հոտավետ, համտեսելով՝ եթե քաղցր է ու անուշ, լսողությամբ՝ եթե հստակ ձայն է, շոշափելով՝ եթե նուրբ ու փափուկ է:

Պարսիկներն (աջամները) ասում էին՝ սիրտը և տեսողությունը երկու ընկեր են, համտեսելն ու շոշափելը՝ երկու կցորդներ, միտքը և հիշողությունը՝ բարեկամներ, լսողությունն ու խոսքը՝ երկու դաշնակիցներ:

Մարդկանցից լավագույնը նա է, որ ճկուն է (շրջապատին հարմարվող), քաղցրաբարո և համեստ: Մարդու հոռի բնավորությունը երևում է դեմքի արտահայտությունից, գունատ դեմքից ու չհիվանդացած թառամելուց, փոփոխամիտ լինելուց, հաճույքներից խորշելուց և այն վատ բան համարելուց ու զրույցի ժամանակ կոշտ խոսակցությունից:

Արժանավոր մարդուն ճանաչում են թեթև բնավորությունից, քաղցրությունից, հաճելի տեսքից, սիրալիր խոսքից, պայծառ ճակատից, առանց կնճիռների, ոչ գրգռվող, ոչ էլ կռվարար վարվելակերպից, հաճոյակատար լինելուց, մարդկանց մասին լավ խոսելուց, խոսքի քաղցրությունից և համեստությունից:

Շապուհ (Սաբուր) արքան[10] գտնում էր, որ խելացի մարդուն բավական է, որ հայացքով ճանաչի յոթ դասի մարդկանց՝ հարբեցողին, շողոքորթին, խեղկատակին, հիվանդին, գուշակողին, բանսարկուին և մոռացկոտին:

## ՋԱՀԻԶ

# ՀԱՑԱՑՔ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎՐԱ (ԱԼ-ՏԱԲԱՍՍՈՒՐ ԲԻ-Լ-ՏԻՋԱՐԱ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*[1] Կես մսխալ – Քանի որ Իրաքում մեկ մսխալը հավասար էր 4, 46 գրամի, հետևաբար խոսքը 2, 23 գրամանոց մարգարտի մասին է: Սակայն տարբեր երկրներում մսխալը մի փոքր տարբեր է:* (Хинц, Меры и веса, стр. 15).

*[2] Հազար մսխալ – 4 կիլոգրամ 460 գրամ:*

*[3] Երկու մսխալ – 8, 92 գրամ:*

*[4] Երեք մսխալ – 13, 36 գրամ:*

*[5] Ռույան – Իրանի կասպիական ծովափը և Մազանդարանի արևմտյան մասը ընդգրկող մի շրջան: (Ruyan, V. Minorsky, EOI, CD-ROM, (VIII: 650b)):*

*[6] Ամուլ – Երկու քաղաք կա այս նույն անունով. մեկը գտնվում է Մազանդարանի հարավ-արևմտյան անկյունում, Կասպից ծովից 12 մղոն հարավ: Իսկ մյուսը գտնվում է Միջին Ասիայում, Ամու Դարիա գետի ձախ ափից երեք մղոն հեռավորության վրա (ներկայիս Թուրքմենստան): Հավանաբար այստեղ խոսքը առաջին Ամուլի մասին է: (Amul, L. Lockhart, M. Streck, EOI, CD-ROM, (I: 459a)):*

*[7] Կումիս – Տե՛ս Բալյազուրի, ծնթգր. 220:*

*[8] Գոր (Ջուր) – Գորը, կամ Ջուրը, հետագայի Ֆիրուզաբադն է, որ նշանակում է Հաղթանակի քաղաք: Ըստ ավանդության, այն կառուցել է Արտաշիր Պապականը ի նշան իր հաղթանակի՝ Արտավանի դեմ: Գորը գտնվում է Իրանի Ֆարս նահանգում: (Firuzabad, L. Lockhart, EOI, CD-ROM, (II: 925b)):*

*[9] Հուլուան – Տե՛ս Բալյազուրի, ծնթգր. 207:*

*[10] Շապուհ (Սարուր) արքան – Տե՛ս Յակուբի (պ.), ծնթգր. 23:*

## ԻԲՆ ԽՈՐԴԱԴԲԵՀ (820-912)

*Աբու լ-Կասիմ Ուբայդուլլահ իբն Աբդալլահը, որը ծանոթ է Իբն Խորդադբեհ (կամ Իբն Խուրդադբեհ) անունով, պատկանում էր մահմեդականություն ընդունած մի պարսիկ ընտանիքի: Սկզբնապես նա զրադաշտական էր, ապա ընդունել էր իսլամը: Նրա հայրը՝ Մամուն խալիֆայի օրոք եղել էր Թաբարիստանի կառավարիչը: Ինքը՝ Իբն Խորդադբեհը հավանաբար ծնվել է Խորասանում: Ենթադրվում է, որ նա ծնվել է 820-825 -ի միջև:*

*Նա դարձել էր Ջիբալ նահանգի փոստի պետը, ապա Բաղդադի, կամ Սամառայի փոստի ծառայության ընդհանուր տնօրենը: Նույն ժամանակ Իբն Խորդադբեհը հեղինակել էր մի շարք աշխատություններ նվիրված երաժշտությանը, դրականությանն ու պատմությանը: Շնորհիվ այն բարձր դիրքի, որ ուներ Իբն Խորդադբեհը ալ-Մուտամիդ խալիֆայի (870-892) մոտ, նա հնարավորություն ստացավ օգտվելու արխիվներից, որոնք էլ նրան առատ նյութ տվեցին ստեղծելու իր աշխարհագրական նշանավոր երկը՝ «Գիրք ճանապարհների ու թագավորությունների մասին» (Քիտաբ ալ-Մասալիք ուա ալ-Մամալիք), որը նա ձեռնարկեց 846-ին ու շարունակեց հավանաբար մինչև 885-ը:*

*Իբն Խորդադբեհը ապրեց շատ երկար ու մահացավ հավանաբար 912 թվականին: Հետագա աշխարհագրագետները ոչ միայն օգտվեցին նրա աշխատությունից, այլև նրա օրինակով, իրենց երկերն անվանեցին նույն ձևով՝ «Քիտաբ ալ-Մասալիք ուա ալ-Մամալիք»:*

*Նրա աշխատությունը բաժանվում է յոթ մասի: Առաջինը պարունակում է տիեզերագիտական տեսություններ ամենայն հավանականությամբ քաղված Պտղոմեոսից, երկրորդը՝ ներկայացնում է Հարավային Միջագետքը, կամ Սավադը, որպես աշխարհի կենտրոն, երրորդ, չորրորդ, հինգերորդ ու վեցերորդ մասերում հաջորդաբար ներկայացվում են երթուղիները դեպի Արևելք (Պարսկաստան, Հնդկաստան և Չինաստան), Արևմուտք (Ասորիք, Եգիպտոս, Մաղրիբ, Վերին Միջագետք, Բյուզանդիա), Հյուսիս (Հայաստան, Կասպիականի ավազան) և Արաբիա: Վերջապես յոթերորդ բաժնում խոսվում է աշխարհի բաժանումների ու հրաշքների մասին, որը տարբերվում է նախորդ մասերից և բացառված չէ, որ հետո է ավելացվել:*

*Իբն Խորդադբեհի երկի լեզուն չոր է, այն գրված է ոչ թե լայն հասարակության, այլ որոշակի նեղ շրջանակի համար:*

Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. **Bibliotheca Geographorum Arabicorum, edidit M. J. de Goeje, VI, Lugduni Batavorum, 1967**

**(Крачковский, IV, стр. 147-150, *R. Blachere et H. Darmaun, Extraits des Principaux Geographes Arabes du Moyen Age, Paris, 1957, p. 21-22, Ibn Khurradadhbih, M. Hadj – Sadok, EOI, CD-ROM, (III: 839a)).***

*Տե՛ս նաև.*

*- Ibn Khordadbeh, Kitab ul-masalik u al-mamalik, Leiden, 1306 (1928)*

*- Barbier de Meynard C., Le Livre des routes et des provinces, par Ibn-Khordadbeh, publié, traduit et annote par C. Barbier de Meynard. JA, 6 serie, V, 1865, p. 5-127.*

## ԻԲՆ ԽՈՐԴԱԴԲԵՀ

## ԳԻՐՔ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ՈՒ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ (ՔԻՏԱԲ ԱԼ-ՄԱՍԱԼԻՔ ՈՒԱ ԱԼ-ՄԱՄԱԼԻՔ)

## [ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ]

*էջ 3 – 5*

*Թող Ալլահը քո կյանքը երկարեցնի, ով որդիդ ազնվական տերերի և առաքինի տիրակալների, որոնք կրոնի փարոսներ և բոլոր արարածների մեջ Ալլահի ընտրյալներ են եղել: Թող Ալլահը քո երջանկությունը տևական դարձնի և բարիքները քեզ համար բազմացնի. թող օգնի քեզ քայլելու բարեգործության ուղիով, քեզ դասելով այնպիսիների մեջ, որոնց գործերին հավանություն է տալիս և նրանց կյանքը զարդարում է:*

*Հասկացա թե ինչ ես հարցնում. թող Ալլահը քեզ հասկանալի դարձնի բոլոր լավ արարքները, երջանկացնի քեզ մինչև մահվան օրը, գործերիդ հաջողություն և քեզ լավ բաժին տա թե այս աշխարհում, թե հանդերձյալ կյանքում:*

*Կամենում ես, որ տամ հստակ նկարագրությունը երկրի ճանապարհների ու թագավորությունների, հեռավորությունը և մերձավորությունը, չեն հողերը և անապատները, ցույց տամ երկարությունները, ճանապարհները, հարկերը, սահմանները, ինչպես ցույց են տվել հները:*

*Գտել եմ, որ Պտղոմեոսը բացահայտել է [երկրի] սահմանները և ապացույցներով պարզաբանել նկարագրությունը օտար լեզվով և ես նրա լեզվից թարգմանեցի ճիշտ (արաբերեն) լեզվի, որպեսզի վերահասու լինես: Ապա ես ինքս եմ հորինել, կատարելու համար քո ցանկություններն ու կամքը և հուսով եմ, որ համապատասխանելու է քո պահանջին, գոհացնելու է քո նպատակները, այնպես որ դու հնարավորություն ունենաս ճանաչելու թե՛ մերձավորը, թե՛ հեռավորը, սեփական աչքով տեսածի նման:*

*Գրել եմ մի գիրք և սկսում եմ փառաբանելով Ալլահին, որն ամենատերն է և ամենայն բարիքների աղբյուրը, ստեղծել է մարդկանց իր կամքով և ցույց է տվել ծառաներին ճշմարտության ուղին և որի արարչագործության մեջ ոչ սխալ կարծիքներն են դեր կատարել, ոչ*

էլ Երևութական դատողությունները:

Այս գրքում կա երկրի նկարագրությունը և նրա վրա ապրող արարածների վիճակը, ամեն մի երկրի կլիման[1], թագավորություններն ու ճանապարհները մինչև աշխարհի տարբեր ծայրերը, որի հեղինակն է Աբու-լ-Կասիմ Ուբայդալլահ իբն Աբդալլահ իբն Խորդադբեհը (Խուրդադբահ), հավատացյալների իշխանի[2] (խալիֆա) մաուլան:

Ասել է Աբու-լ-Կասիմը, որ երկրի ձևը կլոր է դնդի նման, դրված է տիեզերքի մեջ՝ ինչպես դեղնուցը ձվի մեջ: Օդը պատում է երկիրը և ձգում է նրան ամեն կողմից դեպի տիեզերքը (երկինքը): Արարածները երկրի վրա կայուն վիճակում են, քանզի օդը ձգում է նրանց մարմիններում եղած թեթև մասերը, իսկ երկիրը ձգում է դեպի իր կենտրոնը նրանց ծանր մասերը: Երկիրը նման է [մագնիսական] քարին, որը ձգում է երկիրը:

Երկիրը երկու մասերից է բաղկացած, որոնց միջև հասարակած գիծն է և երկարում է արևելքից արևմուտք և սա երկրի երկարությունն է: Ամենամեծ գիծն է երկրագնդի վրա, ինչպես որ կենդանակերպ (զոդիակ) գիծը տիեզերքի ամենամեծ գիծն է: Երկրի լայնությունը ձգվում է հարավային բևեռից, ուր նրա շուրջը պտտվում է Ողնուց (Կանոպոս, Սուհայլ) համաստեղությունը[3], մինչև հյուսիսային բևեռը, որի շուրջը պտտվում է Մեծ արջի (բանատ նաշ) համաստեղությունը:

Երկրի շրջանակը հասարակածում երեք հարյուր վաթսուն աստիճան է, մեկ աստիճանը հինգ փարսախ է, փարսախը տասներկու հազար կանգուն[4] (զիրա, արմնկաչափ) է, կանգունը քսան մատնաչափ է, մատնաչափը գարու վեց հատիկ (հաբբա) է, շարված ամեն մեկը մյուսի կողքին ըստ հաստության: [Երկրի] շրջագիծը ինը հազար փարսախ է:

Հասարակածի և ամեն մի բևեռի միջև իննսուն աստղագիտական աստիճան կա, իսկ լայնության շրջանակը երկարության նման է, միայն թե երկրի վրա բնակելի է հասարակածից մինչև քսանչորս աստիճանը, որից հետո մնացածը ողողել է Մեծ ծովը[5]:

Այսպիսով մենք ապրում ենք երկրի հյուսիսային քառորդում, իսկ հարավային քառորդը ավերակ (անապատ) է շոգի սաստկության պատճառով, իսկ երկրի մեր տակի կեսն անբնակ է: Թե՛ հյուսիսի, թե՛ հարավի ամեն մի քառորդը յոթ կլիմաներից (գոտիներից) է բաղկացած: Պտղոմեոսն իր գրքում հիշել է, որ իր ժամանակ երկրի քաղաքները չորս հազար երկու հարյուր էին:

## ԱՄԵՆ ՄԻ ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԻ ԿԻԲԼԱՆ

Լջ 5

Հայաստանի, Ատրպատականի, Բաղդադի, Վասիթի, Քուֆայի, Մադաինի (Տիզբոն), Բասրայի, Հուլուանի, Դինավարի, ՆեՀավենդի, Համադանի, ԻսփաՀանի, Ռեյի, Թաբարիստանի, ամբողջ Խորասանի, Խազարաց երկրի, Քաշմիրի և Հնդկաստանի ժողովուրդների կիբլան Քաաբայի[6] այն պատի կողմն է, որի վրա է նրա դուռը: Սա Հյուսիսային բևեռի ձախ կողմում է մինչև արևելքի կենտրոնը:

Իսկ Տիբեթը (Տուբբատ), Թուրքաց երկիրը, Չինաստանը և ալ-Մանսուրան[7], այսինքն այն երկրները, որոնք արևելքի կենտրոնից ութ աստիճան այն կողմ են, ապա [նրանց կիբլան] շատ մոտ է սև քարին[8]:

Ինչ վերաբերում է Եմենի ժողովրդի կիբլային, ապա նրա [ժողովուրդը] աղոթքի ժամանակ ուղղվում է [Քաաբայի] Եմենյան (Յամանի՝ Հարավային) կոչված անկյունին: Աղոթքի ժամանակ նրանց դեմքերը նայում են Հայաստանի բնակիչների դեմքին:

Մաղրիբի (Հյուսիսային Աֆրիկա), Աֆրիկայի (Իֆրիկիա նաՀանգ), Եգիպտոսի (Միսր), Ասորիքի (Շամ), Ջազիրայի ժողովրդի կիբլան արևմուտքի (մաղրիբի) մեջտեղում է: [Այս ժողովուրդներն] ուղղվում են Շամի (Ասորիքյան) կոչված անկյան կողմը, իսկ իրենց երեսներն աղոթքի ժամանակ ուղղում են դեպի Մանսուրա:

ԱՀա այն ամենն ինչ պետք է իմանալ մարդկանց կիբլայի և տարբեր կողմերի մասին աղոթքի ժամանակ:

## ՍԱՎԱԴԸ (ՍՏՈՐԻՆ ՄԻՋԱԳԵՏՔ)

Լջ 5 - 6

Կոկսեմ Սավադի Հիշատակումով, քանզի Պարսից արքաները այն կոչում էին Դելե ԻրանշաՀր, այսինքն Իրանի սիրտը:

Սավադը տասներկու նաՀանգ (քուրա) ունի, ամեն նաՀանգ կազմում է մի աստան (ոստան, շրջան) և վաթսուն թասուջ ունի: Աստան թարգմանվում է երկրամաս (իՀաղա), իսկ թասուջ թարգմանվում է գավառ (նաՀիա): Աստան Շադ Ֆիրուզ նաՀանգը, որն այժմ Հուլուանն է, ունի Հինգ թասուջ՝ Ֆիրուզ Կուբադը, ալ-Ջաբալը, Տամառան, Արբելան (Իրբիլ) և Խանիկինը:

## ՍԱՎԱԴԻ ՀԱՐԿԵՐԻ ԳՈՒՄԱՐԸ

*էջ 14–15*

*Սավադի հարկերի գումարը հնում Պերոզի որդի Կավադի (Կուբադի իրն Ֆայրուզ) օրոք հարյուր հիսուն միլիոն (հազար հազար) դիրհեմ միսկալ էր (քաշով): Օմար իրն ալ-Խաթթաբ [խալիֆան] հրամայեց չափագրել Սավադը, որի երկարությունը Ալսից ու Ջարրից (Հյուսիսային երկրամաս) մինչև Արբադան հարյուր քսանհինգ փարսախ է, իսկ լայնությունը Հուլուանի կիրճից մինչև Ուզայր ութսուն փարսախ է: Նրա ջարիրները հասնում էին երեսունվեց միլիոն ջարիբի: Նա ցորենի ամեն մի ջարիբի համար պահանջեց չորս դիրհեմ, գարու ջարիբի համար՝ երկու դիրհեմ, արմավենու ջարիբի համար՝ ութ դիրհեմ, որթատունկի ջարիբի համար՝ վեց դիրհեմ, առվույտի ջարիբի համար՝ վեց դիրհեմ: Եվ ջիզիա (գլխահարկ) որոշվեց հինգ հարյուր հազար մարդու համար, ըստ աստիճանների (դասերի, թարակատ):*

*Այսպիսով, Օմար իրն ալ-Խաթթաբը Սավադի վրա հարկը դրեց հարյուր քսանութ միլիոն դիրհեմ, Օմար իրն Աբդ ալ-Ազիզ [խալիֆան] հարկ դրեց հարյուր քսանչորս միլիոն դիրհեմ: Հաջջաջ իրն Յուսուֆ [փոխարքան] հազիվ տասնութ միլիոն դիրհեմ կարողացավ ստանալ, այսինքն հարյուր միլիոնից ավելիով պակաս քան նախորդների օրոք, իր դաժանության, հիմարության և անիրավության հետևանքով. Նա թեթևացրեց հարկերը երկու միլիոն դիրհեմով և հավաքվեց միայն տասնվեց միլիոն դիրհեմ: Սավադի բնակչությանը արգելեց կով մորթելը, որպեսզի հողամշակությունն ու երկրագործությունը զարգանան:*

*Բանաստեղծն ասել է այդ մասին.*

*Բողոքեցինք նրան Սավադի ավերման համար,*
*Իսկ նա, տգիտությամբ, կովի միսն արգելեց:*

*Խոսրով Պարուեզի թագավորության ժամանակ ստացված հարկը, նրա թագավորության տասնութերորդ տարում, չորս հարյուր քսան միլիոն միսկալ էր, որի քաշն է այժմյան հաշվով յոթ տասներորդական միսկալ, այսինքն վեց հարյուր միլիոն դիրհեմ: Դրանից հետո նրա թագավորության հարկատվությունը հասավ վեց հարյուր միլիոն միսկալի:*

## ԵՐԿՐԻ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՏԻՏՂՈՍՆԵՐԸ

*էջ 16–17*

*Իրաքի թագավորին ընդհանրապես կոչում են Քիսրա (Խոսրով), որը չահանշահն է, Ռումի (արևելահռոմեական կայսրության)*

*թագավորին ընդհանրապես կոչում են կայսր (կայսար) և նա բասիլն (վասիլևս) է: Թուրքերի ու Տիբեթի (Տուբբաթ) և Խազարաց թագավորները բոլորը կոչվում են խաքան, բացի [Թուրքաց ցեղ] Խարլուխի թագավորից*[9]*, որին կոչում են Ջաբղույա: Չինաստանի թագավորին [կոչում են] Բաղբուր: Սրանք Աֆրիդունի որդիներն են: Հնդկաստանի մեծ թագավորին՝ Բալհարա, այսինքն թագավորաց թագավոր: Հնդկաստանի թագավորներից են Ջաբան, Թաֆինի թագավորը, Ջուրզի Ղարայի, Ռահմայի թագավորները, Կամիրունի թագավորը: Զաբիջի թագավորին [կոչում են] Պատիջար (Ֆատիջար, Ջավայի իշխան), Նուբիայի թագավորին՝ Քաբիլ, Հաբեշստանի (Եթովպիայի) թագավորին՝ Նեգուս (ալ-Նաջաշի), Արևելյան ծովի կղզիների թագավորին՝ ալ-Միհրաջ, սլավոնների (Սակալիբ) թագավորին՝ Կինազ (կնյազ):*

## ԹԱԳԱՎՈՐՆԵՐ, ՈՐՈՆՑ ՏԻՏՂՈՍՆԵՐ ԷՐ ՏՎԵԼ ԱՐԴԱՇԻՐ ԱՐՔԱՆ (ՇԱՀԻՆ)

*էջ 17-18*

*Բուզուրգ Քուշան շահ, Քիլան շահ, Բուդ Արդաշիրան շահ, այսինքն Մոսուլի (Մաուսիլ), Մայսան շահ, Բուզուրգ Արմանիան շահ (արքա Հայոց Մեծաց), Ադարբադգան շահ, Սիջիստան շահ, Մերվ շահ, Քիրման (Քարման) շահ, Բադաշվարգարշահ, Յաման շահ, Տադիան (արաբաց) շահ, Քադիշ շահ, Բուրջան շահ, Ամուքան շահ, Սարիան շահ, Մուչքիղդան շահ (Խորասանում), ալ-Լան շահ (Մուղանում), Բարաչքան շահ (Ատրպատականում), Կուֆս շահ (Քիրմանում), Մուքրան շահ (Սինդում), Տուբան (Թուրան) շահ (Թուրքաց երկրում), Հինդուան շահ, Քաբուլան շահ, Շիրիան շահ (Ատրպատականում), Ռայհան շահ (Հնդկաստանում), Կիկան շահ (Սինդում), Բալասական (Բալաչջան) շահ, Դաուարան շահ (Դաուար երկրում), Նախչաբան շահ, Կաշմիրան շահ, Բաքարգան շահ և Գուզաֆտ (Քուզաֆտ) շահ: Սրանք են թագավորների տիտղոսները (անունները):*

## ԱՐԵՎԵԼՔԻ (ՄԱՇՐԻԿ) ՄԱՍԻՆ

*էջ 18*

*Սկսենք Արևելքով, որը [Պարսից] թագավորության քառորդն էր: Հիշենք նախ Խորասանը, որը գտնվում էր սպահպետ պատգոսպանի (խաբահբադ բադուսբան) ձեռքի տակ: Կային չորս մարզպաններ, ամեն մի մարզպանին [ենթակա էր] Խորասանի քառորդը: Ուստի մի*

քառորդը Մերվ (Մարվ) Շահիջանի և գավառների մարզպանին, մի քառորդը՝ Բալխի ու Թոխարիստանի մարզպանին, մի քառորդը՝ Հերատի, Բուշանջի, Բադղիսի և Սիջիստանի մարզպանին:

Ասել է Իբն Մուֆարրիղը [Հերատի մասին]

Հերատի օրը մունետիկը կանչեց, որ լսես,

Նա կանչում էր աջ, բայց դու գնացիր ձախ:

Իսկ չորրորդ քառորդն էլ՝ Մավերաննահրի[10] (Մա վարա ալ-Նահր) մարզպանին:

## ԱՐԵՎՄՈՒՏՔԻ (ՄԱՂՐԻԲ) ՄԱՍԻՆ

*էջ 72–73*

Արևմուտքը (Մազրիբը) Թագավորության մեկ քառորդն էր: Նրա սպահպետը (իսբահբադ), պարսիկների մոտ ընդունված ձևով կոչվում էր Խուրբարան սպահպետ:

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԻՑ (ԲԱՂԴԱԴ) ԴԵՊԻ ԱՐԵՎՄՈՒՏՔ

Բաղդադից Սայլահին չորս փարսախ է, ապա մինչև Անբար ութ փարսախ, ապա ալ-Ռաբբ յոթ փարսախ, ապա Հիտ՝ տասներկու փարսախ:

Ասել է Աբու-լ-Ամայսալը [Հիտի մասին].

Ինչո՞ւ նա կանգ չառավ Հիտում այդ գիշեր

Կամ էլ նախորդ գիշերը՝ Անբարում:

Ապա դեպի Նաուսա՝ յոթ փարսախ, ապա Ալուսա՝ յոթ փարսախ, ապա Ֆուհայմա՝ վեց փարսախ, ապա Նահիա՝ տասներկու փարսախ ցամաքում, ապա ալ-Դազկի՝ վեց փարսախ, ապա ալ-Ֆարզա՝ վեց փարսախ, ապա Վազի ալ-Սիբա (առյուծների հովիտ)՝ վեց փարսախ, ապա խալիջ (ծոց) Բանի Ջումայ՝ հինգ փարսախ, ապա ալ-Ֆաշ Կիրկիսիայի դիմաց՝ յոթ փարսախ, ապա Նահր (գետ) Սաիդ՝ ութ փարսախ, ապա Ջարդան՝ տասնչորս փարսախ, ապա ալ-Մուբարաք՝ տասնմեկ փարսախ, ապա Ռակկա՝ ութ փարսախ, որը հունարեն կոչվում է Կալանիկուս (Կալինիկոս), իսկ Ռակկան գլխավոր քաղաքն է Դիար Մուդարի, որի մեջ են ալ-Ռաֆիկան, Խառանը, որը հունարեն կոչվել է Հելլենոպոլիս: Ասել է Սուդայֆը.

Կարծում էի, որ պինդ եմ, սակայն ինձ թուլացրեց

Հավատի պաշտպանի գերեզմանը Խառանում:

[Դիար Մուդարի մեջ են նաև] Եգեսիան, Սամոսատը, Սարուջը, Ռաս Քայֆան, ալ-Արդ ալ-Բայդան (Սպիտակ հող), Տալլ Մաուզանը,

ալ-Ռավարին, ալ-Մաղջինը և ալ-Մուդայբիրը:
Դիար Մուզարի հարկը (խարաջ) հինգ միլիոն վեց հարյուր հազար դիրհեմ է, իսկ Ռուծափի (Ռուսաֆա), Զայթունայի, Քաֆր Հաջարի և Ջազիրայի գնահատված [հարկը] չորս հազար դինար է:

## ԿԻՆՆԱՍՐԻՆԻ ԳԱՎԱՌՆԵՐԸ (ՔՈՒՐԱ)

*Էջ 75*

Մաառատ Մասրայն գավառ, Մարտահուան, Աարմայն և Հիյար Բանի ալ-Կակա, Տլուք (Դուլուք), Ռաբան և Հալեբ:
Ավասիմ [գավառն ունի] Կիրոս (Կուրուս) գավառը, ալ-Ջուման, Մանբիջը, Անտիոքը, Տիզինը, Բուկան, Բալիսը, Հիշամի Ռուսաֆան:
Կիննասրինի և Ավասիմի հարկը (խարաջ) չորս հարյուր հազար դինար է:
Կիննասրինից ճանապարհը գնում է Շայզար, ապա Եպիփանիա (Համա), Եմեսա (Հիմս):

## ԴԻԱՐ ՌԱԲԻԱՅԻ ԳԱՎԱՌՆԵՐԸ (ՔՈՒՐԱ)

*Էջ 95*

Մծբին, Արզն, Ամիդ, Ռաս Այն և Նփրկերտ. Ասել է բանաստեղծը.
Մի անգամ Ամիդում, Ռաս Այնում
Եվ երբեմն Նփրկերտում:
[Դիար Բաքրում են նաև] Մարդինը, Բաարբայան, Բալադը, Սինջարը, Կարդան և Բազաբդան. Ասել է բանաստեղծը.
Կարդան ու Բազաբդան ամառանոց ու գարնանային կայան են
Ջուրը քաղցր է և [դրախտի] Սալսաբիլի նման է սառնությամբ:
Նրանում է նաև Թուր Աբդինը, որի մասին բանաստեղծն ասել է.
Տիրել է Հաբրային ու Եփրատի ոռոգած հողերին
Իսկ արևելքում Տիգրիսի ոռոգած հողերը և Թուր Աբդինը:
Դիար Ռաբիայի հարկը (խարաջ) յոթ միլիոն յոթ հարյուր հազար դիրհեմ է:
Մծբինից Դարա հինգ փարսախ է, ապա մինչև Քաֆարտուսա յոթ փարսախ է, ապա Ռաս Այն յոթ փարսախ է, ապա ալ-Ջարուդ հինգ փարսախ է, ապա Հիսն (բերդ) Մասլամա վեց փարսախ է, ապա Բաջարուան յոթ փարսախ է, ապա Ռակկա երեք փարսախ է. Ասել է բանաստեղծը.
Ալլահը թող ջրի Բալիխը և Տալլ Բահրան
Եվ Բաջարուանը մեծ ճանապարհի վրա:

## ԱՋԱԿՈՂՄՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԸ ՄԾԲԻՆԻՑ ԱՐԶՆ

*էջ 95 - 96*

*Մծբինից Դարա հինգ փարսախ է, ապա Քաֆարտուսա յոթ փարսախ է, ապա Կասր Բանի Նազի վեց փարսախ է, ապա Ամիդ, որը Տիգրիսի վրա է յոթ փարսախ է, ապա Նփրկերտ հինգ փարսախ է, ապա Արզն յոթ փարսախ է:*

## ՁԱԽԱԿՈՂՄՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԸ ԱՄԻԴԻՑ ՌԱԿԿԱ

*էջ 96*

*Ամիդից Շիմշաթ յոթ փարսախ է, ապա Տալլ Ջաֆր՝ հինգ փարսախ է, ապա Ջարնան՝ վեց փարսախ է, ապա Բամակղա՝ հինգ փարսախ է, ապա Ջուլլար՝ յոթ փարսախ է, ապա Եղեսիա՝ չորս փարսախ է, ապա Խառան՝ չորս փարսախ է, ապա Տալլ Մահրա՝ չորս փարսախ է, ապա Բաջարուան՝ յոթ փարսախ է, ապա Ռակկա՝ երեք փարսախ է:*

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ՌԱԿԿԱՅԻՑ ՄԻՋԱԳԵՏՔԻ ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ՇՐՋԱՆԸ (ԱԼ-ՍՈՒՂՈՒՐ ԱԼ-ՋԱԶԱՐԻՅԱ)

*էջ 97*

*Դրա ուղղությունն է Սալգուս, Քայսում, Շիմշաթ, Մալաթիա, Զապետրա, Հադաս, Մարաշ, այս վերջինների միջև երեսուն մղոն կա և Կամախ, Հիսն Մանսուր և Կիրոս, Տլուք (Դուլուք) և Ռաբան:*

*Ռակկայից Այն ալ-Ռումիյյա վեց փարսախ է, ապա Տալլ Արղա՝ յոթ փարսախ, ապա Սարուջ՝ յոթ փարսախ, ապա ալ-Մուդանիյա՝ վեց փարսախ, ապա Սամոսատ՝ յոթ փարսախ, ապա Հիսն Մանսուր՝ վեց փարսախ, ապա Մալաթիա՝ տաս փարսախ, ապա Զապետրա՝ հինգ փարսախ, ապա Հադաս՝ չորս փարսախ, ապա Մարաշ՝ հինգ փարսախ, ապա Ամկ Մարաշ, իսկ Ամկ է կոչվում լեռներով շրջապատված ամեն մի դաշտ:*

*Մալաթիայից Կամախ չորս փարսախ է:*

## ՋԻԵՐԻ ԿԱՅԱՆՆԵՐԸ (ՍԻՔԱՔ) ՀԱԼԵԲԻՑ ԱՍՈՐԻՔԻ ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ՇՐՋԱՆԸ (ԱԼ-ՍՈՒՂՈՒՐ ԱԼ-ՇԱՄԻՅԱ)

*էջ 99-101*

*Հալեբից Կիննասրին յոթ ձիերի կայան է, ապա Անտիոք չորս կայան է, ապա Ալեքսանդրեկ (Իսքանդարիյա) չորս կայան, ապա*

*Մամնստիա յոթ կայան, իսկ Պիրամոս (Ջայհան) գետը ճեղքում է Մամնստիան, որի անունն է Մարսուբաստիա (Մոպսուեստիա): Մամնստիայից Ադանա երեք կայան է. իսկ Ադանայի անունն է Ադանում և գանվում է Սայհանի վրա. Ասել է բանաստեղծը.*

*Ով դու որ ինձանից բաժանված ես Ռումի լեռներով և*
*Զաուիթափերով և Սարոսի (Սայհան) ծանծաղուտներով*
*Ճանապարհը կտրող լեռնանցքով, Տիանայի ծերպերով*
*Հերակլիայով և Հիսն Սինան բերդով:*

*Ապա Ադանայից Տարսոն հինգ կայան է, իսկ Տարսոն անունը հունարեն Տարսում է. Ասել է Արու Սախրը.*

*Թողել են նրան իրենց ետևում, թաղված Տարսոնի պատնեշներում*
*Ինչպես թողեցին մի ժամանակ նրա հորը Թուսում:*
*Ասել է Ֆարաջ իբն Օսման ալ-Միկսամին.*
*Երանի թե ուղտերն իջնեին Տարսոնի դաշտը*
*Մանոթ գետի ափերը*
*Ուղտերը տանում են գեղանի պարմանուհիներին*
*Գեղեցիկ են ու սիրաճեմ*
*Ու սրտերն են նվաճում:*

## ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ԳՈՏՈՒՑ ՆԵՐՍ ԸՆԿԱԾ ԱՍՈՐԻՔԻ ԱՄՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Անազարբան (Այն Զարբա), Հարունիյան, Քանիսատ ալ-Սաուդան և Տալլ Ջուբայրը [գտնվում են] Տարսոնից ութ մղոնի վրա:*

## ԴԱՐԲ ԱԼ-ՍԱԼԱՄԱՆ (ԴՐՈՒՆՔ ԿԻԼԻԿԻՈ) ԵՎ ՃԱՆԱՊԱՐՀԸ ԴԵՊԻ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ ԾՈՑԸ

*Տարսոնից Ուլլայկ տասներկու մղոն է, ապա Ռահուա և ալ-Ջաուզատ տասներկու մղոն է, ապա ալ-Ջարդակուբ՝ յոթ մղոն, ապա մինչև Պոտանդոն (Բադանդուն) յոթ մղոն է: Ասել է Մուհամմադ իբն Արդ ալ-Մալիքը [դիմելով Մուտասիմ խալիֆային].*

*Բադանդունի օրը [ամրապնդեցիր քո խալիֆայությունը]*
*Ինչպես որ ստացել էիր [այդ պատիվը] Բադանդունի մի այլ օրում:*

*Ապա մինչև Մուասքար ալ-մալիք (Թագավորի ճամբարը) Լուլուայի ջերմուկի (հիմմա) վրա և Սաֆսաֆ տաս մղոն է և կհասնես Մուասքար ալ-մալիք, լեռնանցքն անցնելուց և դաշտ դուրս գալուց հետո: Մուասքարից մինչև վագի (հովիտ) Թարկա տասներկու մղոն է, ապա Մանի քսան մղոն է, ապա Հերակլիայի գետը՝ տաս մղոն: Ասել է ալ-Արբաս իբն ալ-Ահնաֆը.*

Հերակլիան անձնատուր եղավ, երբ զարմացած տեսավ
Մանր մեքենաները, որոնք բոցավառ նավթ էին նետում:
Ապա մինչև ալ-Լարն քաղաքը ութ մղոն է, ապա Ռաս ալ-Ղարա (անտառի գլուխ)՝ տասնհինգ մղոն, ապա Մասքանայն՝ տասնվեց մղոն, ապա Այն Բուրղուս՝ տասներկու մղոն, ապա ԱՀսա ղետր՝ տասնութ մղոն, ապա Կոնիայի արվարձանը՝ տասնութ մղոն, ապա Ալամայն՝ տասնհինգ մղոն, ապա Արրումիսմանա՝ քսան մղոն, ապա Վաղի ալ-Ջաուզ (Ընկույզի հովիտ)՝ տասներկու մղոն, ապա Ամորիոն՝ տասներկու մղոն:

## ՄԻ ԱՅԼ ՃԱՆԱՊԱՐՀ

*էջ 102-103*

Պոտանդոնից ալ-Քարմ (որթատունկ), ապա ալ-Նուրա, ապա Քառւքարից աջ գտնվող եկեղեցիները, ապա Վաֆրա, ապա Բալիսա, ապա Մարջ ալ-Ուսկուֆ (եպիսկոպոսի դաշտ), ապա Ֆալուղրի, ապա Կուռքերի (սանամ) գյուղը, ապա Վաղի (հովիտ) ալ-Ռիհ, ապա Նիմիրթի, ապա ալ-Սայգ, ապա Այնու, ապա Մուղուխս, ապա Մախաղա (ծանծաղուտ), Ջաուզ (ընկույզ) գյուղը, ապա Ղաթթասին (սուզվողներ), ապա Պատրիկի գյուղը, ապա Նակուլիայի դաշտը, ապա Դանուս, ապա ճանապարհը դեպի Դարաուլիա (Դորիլիում) և մի ուրիշ ճանապարհ դեպի ձախ՝ Հիսն Բալումին, ապա Կութայա և դեպի ձախ՝ Ռունդակ, ապա Արիդոս նեղուցի վրա, ապա Կոստանդնուպոլսի ծոցը և դա Պոնտոս կոչված ծովն է և դալիս է Խազարաց ծովից:

*էջ 105-106*

[Կոստանդնուպոլսի] ծոցից այս կողմ տասնմեկ նահանգ (ամալ) կա: Նախ Պափլագոնիա (Աֆլաջունիա) նահանգը, ուր հինգ բերդ կա, ապա՝ Օպտիմատոն (Ուփթի Մաթի), որը բացատրվում է ականջ ու աչք, ուր երեք բերդ կա և Նիկոմիդիա քաղաքը, որն այսօր ավերակ է: Ապա Օպսիկիոն (Աբսիկ) նահանգը, որի մեջ է Նիկիա քաղաքը և ունի տաս բերդ, իսկ ծովը Նիկիայից ութ մղոնի վրա է: Ունի քաղցր ջրով լիճ, որի երկարությունը տասներկու մղոն է: Լճի մեջ երեք լեռ կա, իսկ քաղաքից մինչև լիճը փոքր դուռ կա և եթե սպառնալիքի տակ լինեն, իրենց երեխաներին հանում են բերդից, նավերով դեպի լիճը տանում, հասցնում են այն լեռները, որ լճում են:
Թրակիսիա (Տարկասիս) նահանգը, որի մեջ եղած բերդերից է Եփեսոսը (Աֆսիս) Ավասիմ գավառում (ռուստակ) և սա Քարայրի մարդկանց քաղաքն է, ինչպես նաև՝ չորս բերդեր: Նրանց մեկիթում

արաբներն գիրք էր կարդացվել, երբ Մասլաման մտել էր Ռուսի երկիրը:
Իսկ ալ-Ռակիմի մարդիկ [Քարայրի] գավառի մի փոսի մեջ են Ամորիոնի և Նիկիայի միջև [........]

էջ 107 – 108

Անատոլիկոն (Նաթլուս) նահանգը, որը նշանակում է արևելյան կողմեր, Ռումի մեծագույն նահանգն է, որի մեջ է Ամորիոն քաղաքը: Սրա աշտարակները քառասունչորս հատ են: [Անատոլիկոնի] բերդերից են ալ-Ալամայնը, Մարջ ալ-Շահմը, Բուղուսը և ալ-Մասքանայնը և երեսուն ըերդ, [ինչպես նաև] ալ-Բասնը և ալ-Մասրաթլինը:
Խարսիանոն (Խարսիուն) նահանգը Մալաթիայի լեռնանցքից այն կողմն է, նրանում եղած բերդերն են Խարշանան և չորս այլ բերդեր:
Բուկելլարների (Բուկուլլար) նահանգում կա Անկարա (Անկիրա) քաղաքը, Սամալուն և տասներեք բերդեր:
Նրան հաջորդում է Արմենիակոն (Արմինիակ) նահանգը[11], որի բերդերից են Կողոնիան (Կուլունիյա)[12] և տասնվեց բերդեր:
Ապա Խաղտիք (Խալդիյա)[13] նահանգը, որը սահմանակից է Հայաստանին և նրանում վեց բերդ կա:
Սելևկիա (Սալուկիյա) նահանգը Ասորիքի ծովի կողմից է և [հասնում է] մինչև Տարսոն ալ-Լամիս գետը: Այն կառավարում է լեռնանցքների կառավարիչը և նրանում եղած բերդերից է Սելևկիան և կան այլ տասը բերդեր:
Կապադովկիան սահմանափակվում է Տարսոնի, Ադանայի և Մամեստիայի լեռներով: Նրա ամրացված վայրերից են Կուրրան, Հասինը, Անթիղուն, ալ-Աջրարը և Զու-լ-Քիլաան: Այս վերջինը մի վայր է շրջապատված ամրոցներով: Արաբները սրան տվել էին Զու-լ-Կիլաա (Ամրոցների տիրուհի), որը գրվում էր կ (կաֆ)-ով, իսկ հետո վերածվեց ք (քաֆ)-ի, մինչդեռ իրական անունն է Զուսասթարուն, որի իմաստն է «աստղերին մոտեցող»: Կան ևս տասնչորս ամրացված վայրեր, որոնցից են Մաթամիրը, Մաջիդան, Բալանսան, Մալանդասան, Կունիան, Մալակուբիան, Բադալան, Բարնաուան և Սալամունը: Մալակուբիա անունը նշանակում է ջրաղացաքարերի հանք, քանի որ այդ քարերը նետում են նրա լեռներից:

## ՌՈՒՄԻ ՊԱՏՐԻԿՆԵՐԻ (ԲԱԹԱՐԻԿԱ) ՄԱՍԻՆ

էջ 109

Ռումի պատրիկները միշտ տասներկուսն են, որոնցից վեցը Կոստանդնուպոլսում են, իսկ մյուսները՝ նահանգներում: Այս վեց պատ-

րիկներն են Ամորիոնի պատրիկը. Անկարայի պատրիկը. Արմինիակուսի (Արմինյակ) պատրիկը, Տարակիայի (Թրակիա) պատրիկը և սա մի նահանդ է, որ գտնվում է Կոստանդնուպոլսի ետևում Բուրջանի (Բուլղարիա) կողմից. Սիկիլիայի (Սիկիլիյա) պատրիկը, և սա մի մեծ կղզի է և ընդարձակ թագավորություն Իֆրիկիայի դիմացը:

Կուսթանթինիյան (Կոստանդնուպոլիս) Ռումի մայրաքաղաքն է և միաժամանակ նրա ամենամեծ բնակավայրը, որը կոչվում է Հիպպոդրոմ (Բաղրում): Թագավորը հոռոմների համար ամենամեծն է և ամենահզորը: Թագավորությունը ժառանգական չէ, ոչ էլ պարտադիր որևէ գիրք (կանոն) ունեն, այլ պարզապես ով հաղթում՝ [իշխում է]: Նրանց մեջ իշխել են տղամարդիկ, կանայք: Թագավորը կոչվում է բասիլի (բասիլևս), նրա զգեստն է ծիրանին (ֆուրֆուր, պորփյուր), որը մետաքսի մի տեսակն է և նրա փայլը մի քիչ սևին է տալիս: Ծիրանին հագնում է և կարմիր մուճակը կրում միայն թագավորը, իսկ ով փորձի այն կրել, կսպանվի: Ով թագավոր է հայտարարվում, կրում է մի կարմիր մուճակ (հողաթափ) և մի սև մուճակ:

Այս Հիպպոդրոմ (Բաղրում) քաղաքում չորս հարյուր մարդ կա, որ հագնում է կանաչ թիկնոց (թայալիսա), ոսկով հյուսված, և նրանք թագավորի հետ խորհրդակցում են նրա և պատրիկների գործերի շուրջը: Նրանցից մեկը դառնում է Կոստանդնուպոլսի կառավարիչ, մյուսը թագավորի սննկապետությունն (հիջաբա) է վերցնում: Սրանք սուր են գործածում Իսմայիլի որդիների (արաբների) դեմ և կոտորում: Հաճախ դերիններին կացիններով կամ քարերով խփել են տալիս և փոսի մեջ են նետում, ուր վառված կրակ կա:

Հեծելազորը, որն արքունի դռան է կցված, բաղկացած է չորս հազար ձիավորից և չորս հազար հետևակից:

Թագավորի ճամբարի վրա, թեկուզ նա տեղում լինի, թե հեռացած, չորս դրոշ է լինում և չորս պատրիկներ ձիավոր դնդերով, ամեն մեկի մեջ լինում է տասներկու հազար [ձիավոր], որից վեց հազարը կանոնավոր զորք է, իսկ վեց հազարը՝ ծառաներ (չաջիրդ):

Երբ թագավորը [արշավանքի] է ելնում արաբաց երկրի դեմ, ճամբար է դնում Դորիլիումում (Դարաուլիյա), Կոստանդնուպոլսից չորս օր հեռավորության վրա: Սա արաբների ու հոռոմների հավաքավայրն է, մի կանաչ, բուրումնավետ դաշտ, ուր հոսում է մի վճիտ գետ, լայնությունը մոտավորապես երեսուն կանգուն (ղիրա), բխում է ակունքներից և թափվում Սակարիա (Սաղարի) գետը[14], իսկ Սակարիան թափվում է Մեծ ծովը, Կոստանդնուպոլսի ետևի կողմում:

էջ 111

Ռումի հարկը (խարաջ) միահա (ըստ տարածության) է, ամեն մի

մողի ցորենին՝ տարեկան երեք դինար: Ասեն մի մոդի երեք սաքքուք (ցորենի չափ) է: Բերքի մեկ տասանորդը վերցվում է և տարվում շտեմարաններր զորքի համար:

Հրեաներից ու զրադաշտականներից տարեկան մեկ դինար է վերցվում: Ամեն մի տնից, ուր կրակ է վառվում տարեկան վեց դիրհեմ է վերցվում: Հոռոմների երկրի պտուղները դաշտերում, թե լեռների վրա հասնում են Այլուլ (սեպտեմբեր) ամսին:

[Ռազմական] դիվանում գրանցված է հարյուր քսան հազար մարդ. որից ամեն տաս հազարի վրա դրված է մի պատրիկ, ամեն մի պատրիկի հետ մի տուրմարխ[15] (թուրմախան), ամեն տուրմարխ հինգ հազար մարդու վրա է: Տուրմարխի հետ կա հինգ դրունգար[16] (թուրունջարին), ամեն մի դրունգար հազար հոգու վրա է: Դրունգարի հետ կան հինգ կոմսեր (կամամիսա), իսկ ամեն մի կոմս երկու հարյուրի վրա է: Կոմսի հետ լինում է հինգ հնկատոնտարքոս (կունթարխին), իսկ ամեն հնկատոնտարքոսի հետ՝ չորս դեկարքոս (դակարխ), ամեն դեկարքոս չորս հոգու վրա է:

Ռոճիկը (աթա) տարբեր չափերի է լինում, մեծ մասամբ քառասուն լիտր (ռաթլ) ոսկի, կամ երեսունվեց լիտր, կամ քսանչորս լիտր, կամ տասներկու, կամ վեց, կամ մեկ լիտր: Ռազմիկների (զորքի) ռոճիկը տասնութ և տասներկու դինարի միջև է և դա սահմանված է ամեն տարվա համար: Սակայն նրանց տրվում է ամեն երեք տարին մեկ անգամ, նույնիսկ չորս տարին, կամ հինգ և նույնիսկ վեց տարին մեկ միանվագ ռոճիկ:

Պատրիկներից ամենամեծը թագավորի փոխանորդն (խալիֆա) է նրա վեզիրը, ապա լոգոթետը[17] (լուղութիթ)՝ հարկային դիվանի (դիվան ալ-խարաջ) պետը, գրագրությունների առաքման պետը, սեննեկապետը (հաջիբ) և փոստի (բարիդ) դիվանի պետը, ապա դատավորը, պահակազորքի պետը և [պալատի] վերահսկողը (մուրակկիբ):

## ՀՅՈՒՍԻՍԻ (ՋԱՐԲԻ) ՄԱՍԻՆ

էջ 118–125

Ջարբին հյուսիսային երկիրն է և թագավորության մեկ քառորդը: Պարսից [թագավորության] ժամանակ Հյուսիսի սպահպետը կոչվում էր Ատրպատականի (Ադարբադգան) սպահպետ: Այս երկրամասում են Հայաստանը, Ատրպատականը, Ռեյը, Դմբավանդը (Դիմավանդ), Տալանքան. Ասել է Վահրամ Դոռը (Բահրամ Ջուր).

Ես Տալանքայի արյունն եմ

Վագրն եմ, որ խոյանում է [կովի]:

Նրանում (Ջարբիում) են նաև Թաբարիստանը, Ռույանը, Ամոլը,

Սարիան, Շալուշը, ալ-Լարիդան, ալ-Շիրզը, Թամիսը, Դիհիստանը, ալ-Քալաբը, Դնդանը (Ջիլան), Բադաշվարջարը, իսկ Թաբարիստանի, Ջիլանի և Բադաշվարջարի թագավորը կոչվում է Խորասանի Ջիլ Ջիլանը: Ասել է Մուհամմադ իբն Աբդ ալ-Մալիքը.

Պճնել են փղին գույներով, ըստ սովորականի
Խորասանի Ջիլ Ջիլանին տանելու:
Փղի անդամները ներկում են միայն
Նշանավոր մարդկանց տանելու:

Այս երկրամասում են [նաև] ալ-Բաբրը, ալ-Թայլասանը, ալ-Խազարը, ալ-Լանը և ալ-Սակալիբը:

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԴԵՊԻ ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ՈՒ ՀԱՅԱՍՏԱՆ

Խորասանի ճանապարհից պետք է թեքվել Սինն Սումայրայի մոտ: Սինն Սումայրայից մինչև Դինավար հինգ փարսախ (երկու սիքքա՝ ձիերի կայան), Դինավարից Զինջան (Զանջան)՝ քսանինը ձիերի կայան (սիքքա), ապա Մարաղա՝ տասնմեկ կայան, ապա Միանիջ (Մայանիջ)՝ երկու կայան, ապա Արդաբիլ՝ տասնմեկ, ապա Վարդանակերտ (Վարսան), որը Ատրպատականի վերջին գավառն է՝ տասնմեկ կայան:

## ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ՆԱՀԱՆԳԻ ՔԱՂԱՔՆԵՐՆ ՈՒ ԳԱՎԱՌՆԵՐԸ

Մարաղան, Միանիջը, Արդաբիլը, Վարդանակերտը, Սիսարը, Բարզանը, Սաբուրխաստը և Դավրեժը (Տարրիզ) պատկանում են Մուհամմադ իբն Ռավվադ ալ-Ազդիին, Մարանդը՝ Իբն ալ-Բաիսին, Խոյը, Քուլսարան, Մուղանը՝ Շաքլային, Բարդանդը, Դանձակը (Ջանզա), որը Պարվեզի (Աբարուիզ) քաղաքն է և Ջաբրավանը ու Նարիզը Ալի իբն Մուռային են պատկանում: Ուրմիան Զրադաշտի (Զարադուշտ), ինչպես նաև Սալմաստն ու Շիզը: Այնտեղ կա Ատրվշնասպի (Ադարգուշնասս) կրակատունը, որը մեծ հարգանք է վայելում զրադաշտականների (մաջուս) մոտ: Ամեն մի նոր թագավոր Տիզբոնից ոտքով նրան այցելության էր դնում: [Ատրպատականում են նաև] Բաջարուանը, Սալակ գավառը, Սինդաբայա գավառը, ալ-Բաղզը, Ուրմի գավառը, Բալուանքիրջը, Սարատի և Դասքիավարի գավառը և Մայանհիրջ գավառը:

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԴԻՆԱՎԱՐԻՑ ԲԱՐԶԱՆԳ

Դինավարից Խաբարջան՝ յոթ փարսախ, ապա Տալլ Վան՝ վեց փարսախ, ապա Սիսար՝ յոթ փարսախ, ապա Անդարար՝ չորս փար-

սսխ, ապա Փայտակարան (Բայլական)՝ հինգ փարսախ, ապա Բարդա՝ վեց փարսախ, ապա Սաբուրխաստ՝ ութ փարսախ, ապա Մարաղա՝ յոթ փարսախ, ապա Դախառական՝ տասնմեկ փարսախ, ապա Դավրեժ՝ ինը փարսախ, ապա Մարանդ՝ տաս փարսախ, ապա ալԽան՝ չորս փարսախ, ապա Խոյ՝ վեց փարսախ:

Մարաղայից Քուրսուրա՝ տաս փարսախ, ապա Սարատ՝ տաս փարսախ, ապա ալ-Սիր՝ հինգ փարսախ, ապա Արդաբիլ՝ հինգ փարսախ, ապա Մուղան՝ տաս փարսախ:

Արդաբիլից Խուշչ՝ ութ փարսախ, ապա Բարդանդ՝ վեց փարսախ: Բարդանդն ավերակ էր և Աֆշինը վերակառուցեց որպես քաղաք և այնտեղ հաստատվեց: Բարդանդից Սադրասպ, ուր Աֆշինի առաջին խրամատը կա՝ երկու փարսախ, ապա Ջահրքաշ ուր նրա երկրորդ խրամատը կա՝ երկու փարսախ, ապա Դիվ Ռուդ, ուր նրա երրորդ խրամատը կա՝ երկու փարսախ, ապա Բաբեկի քաղաք Բադդ[18] մեկ փարսախ. Ասել է Հուսայն իբն ալ-Դահհաքը.

Բադդի բնակիչներից չթողեց ոչ ոքի
Բացի Իրամի նմանությամբ նկարներից:

Եվ ճանապարհը Բարզանդից Բաղասականի և Վարդանակերտի դաշտը, որն Ատրպատականի վերջին շրջանն է՝ տասներկու փարսախ:

Մարաղայից Դանձակ՝ վեց փարսախ է, ապա Մուսա աբադ՝ հինգ փարսախ, ապա Բարզա՝ չորս փարսախ, ապա Ջաբրավան՝ ութ փարսախ, ապա Նարիդ՝ չորս փարսախ, ապա Ուրմիա՝ տասնչորս փարսախ, ապա Սալմաստ ցամաքով և Ուրմիա լճով՝ վեց փարսախ:

Ատրպատականի հարկը (խարաջ) երկու միլիոն դիրհեմ է:

## ՃԱՆԱՊԱՐՀԸ, ՈՐՈՎ ԸՆԹԱՑԵԼ Է ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՀՈՒՄԱՅԴԸ

Դնաց ցամաքով, երբ հավաքել էր իր զորքի հրամանատարներին, ձիերով Մարաղայից ընթացավ Բարզա, ապա Սիսար, ապա Շիզ, որը չորս փարսախ հեռավորություն ունի Դինավարից, ապա՝ դեպի Դինավար:

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԴԵՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ

Վարդանակերտից Պարտավ ութ ձիերի կայան (սիքքա) է, ապա դեպի Հայաստանի Մանսուրան չորս կայան է: Պարտավից Տփղիս՝ տաս կայան, Պարտավից Դարբանդ՝ տասնհինդ կայան, Պարտավից Դվին՝ յոթ կայան:

Մարանդից Վաղի[19] տաս փարսախ է, ապա Նախճավան՝ տաս

փարսախ, ապա Դվին՝ քսան փարսախ:
Վարդանակերտից Դիրման երեք փարսախ է, ապա Փայտակարան՝ ինը փարսախ, ապա Պարտավ՝ տասնչորս փարսախ և Պարտավից ալ-Բաղդ՝ երեսուն փարսախ:
Առաջին Հայաստանն (Արմինիա) է՝ ալ-Սիսաջան (Սիսական), Առան, Տփղիս, Պարտավ, Փայտակարան (Բայլական), Կապաղակ և Շարուան:
Երկրորդ Հայաստանն է՝ Վիրք, Սուղդաբիլ, Պերոզապատ (Ֆիրուզ Կուբադ) և ալ-Լաղք (լեզգիներ):
Երրորդ Հայաստանն է՝ Վասպուրական, Դվին, Շիրակ Տայք (Սիրաջ Թայր), Բագրևանդ և Նախճավան:
Չորրորդ Հայաստանն է՝ Շիմշաթ, Խլաթ, Կարնո քաղաքը (Կալիկալա), Արճեշ և Ապահունիք (Բահունայս, Բաջունայս):
Առան, Վիրք և Սիսական նահանգները խաղարաց թագավորության մեջ էին, իսկ Դվին, Նախճավան, Շիրակ, Բաղրևանդ, Խլաթ և Ապահունիս նահանգները՝ հոռոմոց թագավորության մեջ և պարսիկները նվաճեցին այն մինչև Շարուանի հողը, որտեղ կա Մովսեսի ժայռը և նրա մեջ Այն (ակունք) ալ-Հայուան:
Շիմշաթում կա Սաֆուան իբն Մուաթթալ ալ-Սուլամիի՝ Ալլահի առաքյալի բարեկամի գերեզմանը: Նրա (Շիմշաթի) և Հիսն Զիյադի (Խարբերդ) միջև փոքր հեռավորություն կա: Նրա վրա կա մի ծառ, որի էությունը ոչ ոք չգիտի: Նրա պտուղը նշի նման է և կեղևով է ուտվում ու մեղրից քաղցր է:
Կավաղը (Կուբադ) կառուցեց Փայտակարան (Բայլական), Պարտավ և Կապաղակ քաղաքները, ինչպես նաև Սուդդ ալ-Լաբինը (աղյուսե պատնեշ): Անուշիրուանը կառուցեց Շապորան (Շաբուբան), Քարքարա և Դաբբանդ քաղաքները, Իսկ Դարբանդը բաղկացած է պալատներից (ամրոցներ), որոնք լեռնային ճանապարհի վրա են կառուցված և երեք հարյուր վաթսուն հատ են: Նա կառուցեց Բալանջարը և Սամանդարը: Վրաց երկրում կառուցեց Սուղդաբիլ քաղաքը և այնտեղ ես իր պալատը կառուցեց ու կոչեց Պերոզապատի դուռ (Բաբ Ֆիրուզ Կուբաղ):
Հայաստանում են նաև Խոյը, Մանարքը (Սաննարիյա), Աղրակը (ալ-Բակ), Քիսալը և Աբխազը, Գարդման (Ջարդաման) բերդը, Խայզանը, Շաքեն (Շաքի) և Բաբ քաղաքը:

## ԱԲՈՒԱԲԸ (ԴԱՐԲԱՆԴ)

Սա բաղկացած է Կովկաս (Կաբկ) լեռներում [եղած] կիրճերի անցքերից: Նրանում (Կովկասում) կան բերդեր, ինչպես Սուլի դուռը (բաբ), Ալանաց (ալ-Լան) դուռը, Շապորանի դուռը, Լազիկայի դուռը,

*Բարիկայի դուռը, Սամցխեի (Սասասխի) դուռը, Սարիրի (գահի) տիրոջ դուռը, Ֆիլան շահի դուռը, Քարունանի դուռը, Թաբարսարան-շահի դուռը, Լիրանշահի դուռը, Լիրանշահի դուռը, Անուշիրուանի դուռը: Սամանդար քաղաքը Դարբանդից այն կողմ է, իսկ ինչ նրանից հետո է գալիս, խազարների ձեռքում է: Մովսեսի (Մարգարեի) դրույցներում ասվում է. «Հիշում ես, որ ապաստան գտանք ժայռերում, իսկ ես մոռացել էի մեծ ձուկը, որը կենդանացել էր»: Ժայռը Շարուանի ժայռն է, ծովը Գեղանի (Գիլան) ծովն է, իսկ Գյուղը՝ Բաջարուանն է: [Ասված է նաև]. «մինչև որ նրանք պատահել էին մի տղայի (դուլամ) և սպանել նրան Խայզան գյուղում» (Ղուրան, ԺԳ, 62):*

*Հայաստանի (Արմինիա) հարկը չորս միլիոն դիրհեմ է:*

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ՎՐԿԱՆԻ (ՋՈՒՐՋԱՆ) ԵՎ ԽԱԶԱՐՆԵՐԻ ՔԱՂԱՔ ԽԱՄԼԻՋԻ ՄԻՋԵՎ

*Սա հյուսիսային [քաղաք] է, ուստի նրան հիշեցի այս տեղում: Վրկանից [ճանապարհը] գնում է Խամլիջ[20], որը գտնվում է սլավոնների երկրից եկող գետի ծայրին և սա թափվում է Վրկանա ծովը, եթե քամին բարեհաջող է՝ ութ օրում: Խազարների քաղաքներն են Խամլիջը, Բալանջարը և ալ-Բայդան (սպիտակ): Ասել է Բուհտուրին.*

*Ազնվականների տիտղոսների վրա, որ Իրաքում էր ստացել*

*Ավելացրեց այն, որ ստացել էր Խամլիջում կամ Բալանջարում:*

*Բարից (Գարրանդ) դուրս գտնվում են Սուրի թագավորը, Լազքի թագավորը, Ալանաց թագավորը, Ֆիլանի թագավորը, Մասքթաց (Մասկաթ) թագավորը, Սարիրի տերը և Սամանդար քաղաքը:*

*Վերջացավ Ջարբիի մասին խոսքը, որը հյուսիսային երկիրն է:*

## ՀԱՐԱՎԸ (ՏԱՅՄԱՆ)

*էջ 125*

*Տայմանը հարավային երկրներն է և կազմում է թագավորության մեկ քառորդը: Սպահպետը, որն իր ժամանակին կառավարում էր, կրում էր Պերող սպահպետ (Ֆիրուզ իսբահբադ) տիտղոսը:*

*Գլխահարկը, որ վճարում էին ոչ մահմեդականները Բաղդադում, հասնում էր հարյուր երեսուն հազար դիրհեմի, իսկ շուկաների արտադրանքի, ջրաղացների և փողերանոցների [հարկը] հասնում էր մեկ միլիոն հինգ հարյուր հազարի:*

*[.........]*

էջ 153

Վերջացավ Հարավի (Տայման) նկարագրությունը:

## ՓՈՍՏԻ ՁԻԵՐԻ ԿԱՅԱՆՆԵՐԸ (ՍԻՔԱՔ) ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Կա ինը հարյուր երեսուն փոստի ձիերի կայան (սիքքա). իսկ անասունների ծախսը, նրանց գները և փոստի կայանների պետերի ու սուրհանդակների վարձատրությունը տարեկան հարյուր հիսունինը հազար հարյուր դինար է:

## ՌԱԴԱՆԻՅԱ ՀՐԵԱ ՎԱՃԱՌԱԿԱՆՆԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ

էջ 153–155

Սրանք խոսում են արաբերեն, պարսկերեն, հունարեն (հռոմեերեն), ֆրանսերեն (ֆրանկերեն), անդալուսերեն* և սլավոներեն: Ճանապարհորդում են արևելյան կողմերից արևմտյան կողմերը և արևմուտքից՝ արևելք թե՛ ցամաքով, թե՛ ծովի վրա: Արևմուտքից (Մաղրիբ) բերում են ծառաներ (ստրուկներ), աղախիններ, տղաներ (ղուլամ), մետաքսե դիպակ (դիբաջ), նապաստակի մորթի, մուշտակ. սամույր (սամմուր) և սրեր: Նավ են նստում Ֆրանկստանից (Ֆիրանջա)՝ Արևմտյան ծովի վրա, իջնում են Ֆարմայում[21] և իրենց ապրանքները [անասունների] մեջքի վրա բեռցրած փոխադրում են [Կարմիր ծովի] նավահանգիստը՝ [Կուլզում][22], իսկ այս երկուսի միջև քսան փարսախ է: Ապա նավարկում են Կուլզումից Արևելյան ծովի վրա՝ դեպի Ջար[23] և Ջիդդա (Ջուդդա), հետո ընթանում են դեպի Սինդ, Հնդկաստան և Չինաստան:

Իսկ Չինաստանից բերում են մուշկ (միսք), հալվե (ուդ, ալոյե), քաֆուր (քամֆորա), դարսենի (դարչին) և այլ բաներ, որ ընդհանրապես այնտեղից են բերվում, վերադառնում են Կուլզում, ապա կրում տանում են Ֆարմա և նավարկում Արևմտյան ծովի վրա: Երբեմն չուու են գալիս դեպի Կոստանդնուպոլիս և իրենց ապրանքները վաճառում հռոմեներին, կամ էլ գնում Ֆրանկների թագավորությունը և այնտեղ վաճառում: Իսկ երբ կամենում են, նորից այլ ապրանքներ Ֆրանկստանից տանում են Արևմտյան ծովի վրա նավարկելով և իջնում Անտիոք, ապա ցամաքով երեք կայան (մարհալա)[24] անցնում և հասնում Ջաբիա, ապա Եփրատի վրա նավարկում են մինչև Բաղդադ, հետո Տիգրիսի վրա մինչև Ուբուլլա և ապա այնտեղից գնում

* Խոսքը վերաբերում է Իբերական թերակղզում խոսված ժողովրդական լատիներենին, որից հետագայում առաջացավ իսպաներենը:

*Օման, Սինդ, Հնդկաստան ու Չինաստան: Այս բոլորը իրար հետ շաղկապված է:*

## ՌՈՒՍ ՎԱՃԱՌԱԿԱՆՆԵՐԻ ՈՒՂԻՆ

*Սրանք սլավոնների մի ցեղ են: Նրանք տանում են նապաստակի մորթի, սև աղվեսի մորթի և սրեր Սլավոնների երկրի հեռավոր ծայրերից մինչև Ռումի (Հռոմոց) ծովը: Ռումի (Բյուզանդիայի) տերը նրանցից տասանորդ է վերցնում: Երբ գնում են Տանիսի (Տանաիս, Դոն)՝ սլավոնների գետի վրայով, անցնում են Խամլիջով, որը խազարաց քաղաքն է, սրա տերը նույնպես տասանորդ է վերցնում: Ապա գնում են Վրկանա ծով և իրենց ցանկացած ափը դուրս են գալիս: Այս ծովի տրամագիծը հինդ հարյուր փարսախ է: Երբեմն իրենց ապրանքները Վրկանից ուղտերին բարձած տանում են Բաղդադ: Նրանց համար թարգմանում են սլավոն ծառաները և քրիստոնյա ձևանալով գլխահարկ են վճարում:*

## [ՀՐԵԱՆԵՐԻ] ՑԱՄԱՔԱՅԻՆ ՃԱՆԱՊԱՐՀԸ

*Նրանք, երբ ճանապարհ են ընկնում, սկսում են Իսպանիայից և կամ Ֆրանկստանից (Ֆրանսիայից), ապա անցնում [Մարոկկոյի] Հեռավոր Սուսը և հասնում Տանժեր (Թանջա), ապա Իֆրիկիա (Թունիս), Եգիպտոս, Ռամլա, Դամասկոս, Քուֆա, Բաղդադ, Բասրա, Ահուազ, Ֆարս, Քիրման, Սինդ, Հնդկաստան, ապա Չինաստան: Երբեմն վերցնում են Հռոմից (Ռումիյա) վերևի ճանապարհը դեպի սլավոնների երկիրը, ապա հասնում խազարաց քաղաք Խամլիջ, հետո Վրկանա ծովով գալիս են Բալխ և Մավարաննահր, ապա Տուղուզղուրի յուրթը (Ույղուր) և Չինաստան:*

## ԲՆԱԿԵԼԻ (ՇԵՆ) ԵՐԿԻՐԸ ԲԱԺԱՆՎԱԾ Է ՉՈՐՍ ՄԱՍԻ

*Նախ՝ Եվրոպա (Արուֆա), որի մեջ են Իսպանիան (Անդալուս), Սլավոնները (Սակալիբ), Հռոմները (Ռում), Ֆրանկները (Ֆիրանջա) և Տանժերից (Թանջա) մինչև Եգիպտոսի սահմանները:*

*Ապա Լիբիա (Լուբիա), որի մեջ են Եգիպտոսը (Միսը), Կուլզումը, Հաբեշստանը (Հարաշա), բերբերները և նրանցից այն կողմ ու Հարավային ծովը: Այս երկրներում չկա ցամաքային խոզ, եղնիկ, ավանակ և այծ:*

*Եթովպիա (Իտիուֆիա), որի մեջ են Տիհաման, Եմենը (Յաման), Սինդը, Հնդկաստանը (Հինդ) և Չինաստանը (Սին):*

Եվ Սկիթիա (Ասկուտիա), որի մեջ են Հայաստանը, Խորասանը, Թուրքերը և խազարները:

## ԳՈԳԻ (ՅԱՋՈՒՋ) ԵՎ ՄԱԳՈԳԻ (ՄԱՋՈՒՋ) ԱՄԲԱՐՏԱԿԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Ինձ պատմել է Թարգման Սալլամը, թե Վասիկ Բիլլահ [խալիֆան], երբ երազում տեսավ, որ Երկկոտոշավորի (Ալեքսանդր Մակեդոնացու), մեր և Գոգի ու Մագոգի միջև կառուցած ամբարտակը փլվել է, պահանջեց մեկին, որպեսզի այնտեղ ուղարկի ստույգ լուրեր բերելու: Ասել է Աշնասը [խալիֆային], այստեղ ուրիշ հարմար անձ չկա, բացի Թարգման Սալլամից, որը երեսուն լեզվով է խոսում: Պատմել է [Թարգմանը], ինձ կանչեց Վասիկը և ասաց՝ կամենում եմ, որ գնաս ամբարտակի մոտ և ստուգես ու ինձ լուրեր բերես: Նա ինձ կցեց հիսուն հոգու, երիտասարդ և ուժեղ, հատկացրեց հինգ հազար դինար և ինձ, որպես հատուցում, տվեց տաս հազար դիրհեմ, իսկ հիսուն մարդուց ամեն մեկին հրամայեց տալ հազար դիրհեմ և մեկ տարվա ապրուստ: Մարդկանց համար պատրաստել տվեց թաղիքե գլխարկներ կաշիով ծածկված: Նրանց (ձիերի) համար պատրաստվեցին մուշտակե լանջափոկեր (թամբի փոկեր) և փայտե ասպանդակներ: Ինձ տվեց երկու հարյուր ջորի՝ կրելու համար ուտեստեղենը և ջուրը:

Սամառայից դուրս եկանք ու Վասիկի նամակով ներկայացանք Հայաստանի տեր Իսհակ իբն Իսմաիլին[25], որը Տփղիսում էր: Իսհակը մեր մասին գրեց Սարիրի տիրոջը, իսկ Սարիրի տերը դրեց Ալանաց թագավորին, Ալանաց թագավորը գրեց Ֆիլան շահին, իսկ Ֆիլան շահը գրեց Խազարաց թագավոր Թարխանին: Խազարաց թագավորի մոտ մնացինք մեկ օր և մեկ գիշեր: Նա մեզ հետ ուղարկեց հինգ ուղեցույցների:

Նրանից բաժանվելուց հետո քսանվեց օր գնացինք, մինչև որ հասանք մի սև հող՝ լի գարշահոտությամբ: Սակայն մենք նախապես քացախ էին պատրաստել, որպեսզի գարշելի հոտը չառնելու համար հոտոտենք: Այսպես քայլեցինք տաս օր: Ապա հասանք ավերակ քաղաքներ և քսան օր քայլելուց հետո հարցրեցինք այդ քաղաքների վիճակի մասին: Մեզ տեղեկացրին, որ դրանք այն քաղաքներն են, ուր Գոգն ու Մագոգը մտել ու կործանել էին:

Ապա գնացինք բերդերը, այն լեռան մոտ, որի կիրճերից մեկում կար ամբարտակը: Այդ բերդերում ապրում էին մարդիկ, որ խոսում էին արաբերեն ու պարսկերեն, մահմեդականներ էին, որոնք կարգում էին Ղուրանը, ունեին դպրոցներ ու մզկիթներ: Հարցրեցին մեզ, թե որտեղից ենք: Հայտնեցինք թե հավատացլոց իշխանի դեսպաններն ենք: Սկսեցին զարմանալ ու ասել՝ հավատացլոց իշխա՞ն: Ասացինք՝

այո: Հարցրեցին՝ ծնո՞ւ է, թե երիտասարդ: Ասացինք՝ երիտասարդ և նրանք զարմանալով հարցրեցին՝ որտե՞ղ է լինում: Ասացինք՝ Իրաքում, այն քաղաքում, որը կոչվում է Սամառա: Ասացին՝ բոլորովին չենք լսել: [......]:

Վերադարձանք Սամառա և ես մտա Վասիկ [խալիֆայի] մոտ ու տեղեկացրի պատմությունը [թե կանգուն է ամրարտակը] և ցույց տվեցի այն երկաթի կտորը, որ պոկել էի [բերդի] դռնից: Նա փառք տվեց Ալլահին, հրամայեց նվերներ տալ և բաշխեց ամեն մարդու հազար դինար: Ամրարտակը հասել էինք տասնվեց ամսում և այնտեղից վերադարձել տասներկու ամսից ու մի քանի օրից:

## ԼԵՌՆԵՐԻ ՀՐԱՇԱԼԻՔՆԵՐԻՑ

*էջ 172-173*

Մեքքայի ու Մադինայի միջև գտնվող Արջ լեռը (լեռնաշղթան) հասնում է Ասորիք, մինչև որ կցվում է Լիբանանին Եմեսայի կողմից, իսկ Սանիրին՝ Դամասկոսի կողմից: Ապա անցնում է և միանում Անտիոքին ու Մամեստիայի լեռներին, որոնք կոչվում են ալ-Լուքքամ, հետո կցվում է Մալաթիայի, Շիմշաթի ու Կարնո քաղաքի լեռներին՝ մինչև Խազարաց ծովը, որի վրա է Բաբ ալ-Աբուաբը (Դարբանդ) և այստեղ կոչվում է Կովկաս (Կարկ):

## ԳԼԽԱՎՈՐ ԳԵՏԵՐԻ ԱԿՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*էջ 173-175*

Եփրատի ակունքը Կարնո քաղաքի մոտից է[26], անցնում է Ռումի երկրով և սնվում է շատ աղբյուրներից: Նրա մեջ է թափվում Արածանին (Արսանաս)՝ Շիմշաթի դետը: Նա հասնում է Կամախ և Մալաթիայից երկու մղոն հեռավորության վրա հոսելով հասնում է Ջարալատա և ապա՝ Սամոսատ: Այստեղից տանում է նավերը և լաստերը ու հասնում Սավադ (Ստորին Միջագետք): Նրանից դետեր են ճյուղավորվում Բաղդադի Սավադում (սևահողում) և թափվում Տիգրիս: Նրա մի մասն անցնում է դեպի Քուֆա, ճեղքում է Սավադը, ապա թափվում Տիգրիս Մադաինից (Տիզբոն) ներքև:

Տիգրիսի ակունքը Ամիդի լեռներից է և անցնում է Սալսալայի լեռներից[27] և սնվում Հայաստանի կողմերից եկող բազում աղբյուրներից: Ապա անցնում է Բալադ և այնտեղից տանում բեռնավորված նավերն ու լաստերը: Սնվում է երկու Զաբերից, Նահրավանից և երկու Սարատներից և թափվում Բաթաիհի (ճահճուտ) մեջ, ապա

թափվում է Ուբուլլայի Տիգրիսը և վերջապես Արևելյան ծովը[-8]:

Հայաստանի գետ Արաքսի (ալ-Ռաս) ակունքը Կարնո քաղաքում է, անցնում է Առանով և նրա մեջ թափվում է Առան գետը[-9], ապա անցնում է Վարդանակերտով, մինչև որ հասնում է երկու ջրերի (ծովերի)՝ [Արաքսի ու Կուրի] միախառնման վայրին, որը հիշել է Ալլահը: Այստեղ միանում են այն (Արաքսը) և Կուրը և երկուսի միջև Փայտակարան (Բայլական) քաղաքը կա, ապա միացած անցնում են, մինչև որ թափվեն Վրկանա ծովը:

Երկու Զաբերի ակունքները Հայաստանի լեռներում են և թափվում են Տիգրիսի մեջ: Մեծ Զաբը թափվում է Հադիսայի մոտ, իսկ Փոքրը՝ Սինի մոտ: Ասել է Իբն Մուֆարրիղը.

Նա, որ ապրել էր իր խղճին դավաճանելով
Մնաց Ալլահից սպանված ստրուկի նման Զաբում:

Նահրաբանի[30] ակունքը Հայաստանի լեռներում է, անցնում է Բաբ Սալվայի մոտով և այնտեղ կոչվում է Տամառա, սնվում է Կավաթիլից և երբ հասնում է Բաջիսրա, կոչվում է ալ-Նահրավան: Տիգրիս է թափվում Ջարբուլից ներքև:

էջ 178

Սարախսի գետերի ջրերի աղբյուրը ակունքներից է և Նիշապուրի, Ռեյի ու Իրաքի գետերը, մինչև անապատի սահմանը (Կադիսիյայից այն կողմ մեկ կայան) հոսում են արևմուտքից արևելք, ինչպես Հուլուանի գետը, Արդաբիլի գետը, Դվինի գետը[31] և Նահրավան գետը, Տիգրիսն ու Եփրատը և բոլոր նրանց վտակները:

## ԻԲՆ ԽՈՐԴԱԴԲԵՀ

# ԳԻՐՔ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ՈՒ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ (ՔԻՏԱԲ ԱԼ-ՄԱՍԱԼԻՔ ՈՒԱ ԱԼ-ՄԱՄԱԼԻՔ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *... Կիբլա – Կիբլան այն ուղղությունն է, դեպի ուր դեմքով պիտի ուղղվի հավատացյալ սահմնդականը աղոթքի, կամ արարողությունների ժամանակ: Որտեղ էլ որ նա գտնվի պետք է ուղղվի դեպի Մեքքան, ավելի ճիշտ՝ դեպի Քաաբան: (Kıbla, A. J. Wensinck, D. A. King, EOI, CD-ROM, (V: 81b)):*

[2] *Հավատացելոց իշխան – Իշխան հավատացելոց, տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 7:*

[3] *Ողնուղ (Կանոպուս համաստեղություն, Առհայլ) – Երկնքի երկրորդ (Սիրիուսից հետո) պայծառ աստղը (-0, 75 աստղային մեծության): Լուսատվությամբ Արեգակին գերազանցում է 7800 անգամ: Արեգակից գտնվում է 160 պարսեկ հեռավորության վրա: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 5, էջ 241):*

[4] *Տասներկու հազար կանգուն – Կանգունը երկարության չափ է, որի միջին չափը հավասար է 54, 04 սմ-ի, թեև ըստ երկրամասի ու դարաշրջանի այն կարող էր լինել և ավելի սակաս: Հիմք ընդունելով վերոհիշյալ չափը փարսախը կկազմի շուրջ 6 կմ: (Хинц, Меры и веса, стр. 64-65):*

[5] *Մեծ ծովը – Թերևս նկատի ունի համաշխարհային օվկիանոսը:*

[6] *Քաաբա – «Քաաբա» բառը նշանակում է խորանարդ: Այսպես է կոչվում իսլամի գլխավոր սրբավայրը, դեպի որն ուղղվում են մահմեդականները աղոթքի ժամանակ (կիբլա): Մահմեդականի հիմնական պարտականություններից է ամենամյա ուխտագնացությունը դեպի Քաաբա: Քաաբան գտնվում է Մեքքայի գլխավոր մզկիթի կենտրոնում և քարե մի շինություն է, որն ունի 15 մ բարձրություն և 12x10 մ-ի վրա հիմք: Այս շինության արևելյան անկյունում, գետնից 1, 5 մ բարձրության վրա արծաթե շրջանակի մեջ դետեղված է հիմնական պաշտամունքի առարկան՝ «սև քարը», որը համարվում է որ Ալլահը ուղարկել է մարդկանց: Ենթադրվում է, որ այս քարը մետեորիտ է: (Ислам, энц. словарь, стр. 123):*

[7] *Ալ-Մանսուրա – Խալիֆայության կազմում գտնվող Սինդ նահանգի գլխավոր քաղաքը, որը հիմնադրեց Ամր իբն Մուհամմադ իբն ալ-Կասիմը 738 թվականին: Այն գտնվում էր ժամանակակից Հայդարաբադ քաղաքից 47 մղոն դեպի հյուսիս-արևելք: (al-Mansura, Y. Friedmann, EOI, CD-ROM, (VI: 439b)):*

[8] *Սև քարին – Նկատի ունի նույն Քաաբան: Տե՛ս ծնթգր. 5:*

[9] *Խարլուխի թագավոր – Խարլուխը, կամ Կառլուկը թյուրքական ցեղերի խումբ էր, որ բնակվում էր Միջին Ասիայում: Սրանց մասին առաջինը հիշատակում են չինական աղբյուրները, հաղորդելով 640-650-ական թթ. մասին: Այդ ժամանակ նրանք բնակվում էին Իրտիշ գետի վերին հոսանքներում: Այնուհետև՝ 8-րդ դարի սկզբին, նրանք տեղաշարժվեցին դեպի արևմուտք, դեպի Միջին Ասիա: Այդ ժամանակվանից հետո է, որ նրանց մասին հաղորդում են արաբ պատմիչները: (Karluk, C. E. Bosworth EOI, CD-ROM, (IV: 658a)):*

[10] *Մավերաննահր – Մա վարա ալ-նահր, կամ Անդրգետյան նահանգ, այսինքն Ամու Դարիա (Ջայհան, Oxus) գետից այն կողմ գտնվող միջինասիական նահանգները (Transoxiana): Խորասանից մտնելով այս շրջանները, արաբները աստիճանաբար (մինչև Ը դարի կեսերը), նվաճեցին իրանական ժողովուրդներով բնակեցված այս*

երկիրը: Այստեղ. առաջին հերթին պետք է նշել Սուղդը (Սողդիանա) իր Բուխարա և Սամարկանդ քաղաքներով և Խորեզմը:

Սակայն մահմեդականության տարածումը և մանավանդ օղուզ (Թուրքմեն) ցեղերի ներխուժումը կերպարանափոխեց Մավարաննահրը, որը հենարան դարձավ հիշյալ ցեղերի՝ դեպի Իրան և Առաջավոր Ասիա կատարած ավերիչ արշավանքների համար: Սուղդի և Խորեզմի իրանական բնիկ ժողովուրդները թույլ գտնվեցին ներխուժող բարբարոս տարրի առջև և Մավերաննահրի զգալի մասը ժամանակի ընթացքում թուրքացավ: (Իբն ալ-Ասիր, էջ 391):

[11] Արմենիակոն (Արմինիակ) նահանգ - Տե՛ս Արմինիակուսի տեր (սահիբ). Բալաձուրի, ծնթգր. 103:

[12] Կողոնիա (Կուլունիյա) - Քաղաք-ամրոց Փոքր Հայքում, Գայլ գետի ափին: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 198–199 ):

[13] Խաղտիք (Խալդիյա) - Երկիր (նահանգ) Փոքր Ասիայում, հին և միջին դարերում: Գտնվում էր Սև ծովի հարավ-արևելյան առափնյայում, ծովի և Ճորոխի միջև, Հայաստանի սահմաններից մինչև Տրապիզոն: (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 632):

[14] Սակարիա (Սաղարի) գետ – Գետ Փոքր Ասիայի արևմուտքում, որը թափվում է Սև ծովը:

[15] Տուրմարխ — Տուրմարխը իր հրամանի տակ ուներ 500 նետաձիգ, 300 վահանակիր և 100 նիզակակիր: (Կոստանդին Ծիրանածին, էջ 233):

[16] Դրունգար — Որոշ հրամանատարական պաշտոնների անվանում Բյուզանդիայում՝ Զ-Ը դարերում: Դրունգարի պաշտոն կար նավատորմում, որը կայսերական նավատորմիղի հրամանատարն էր: Այս նույն անունով կային նաև այլ պաշտոններ: (Сов. Ист. Энц., т. 5, стр. 388).

[17] Կոմս, հեկատոնտարքոս, դեկարքոս, լոգոթետ — Տարբեր հրամանատարական պաշտոններ Բյուզանդիայում:

[18] Բադդ - Տե՛ս Դինավարի, ծնթգր. 21:

[19] Վաղի - Ենթադրաբար՝ Վաղի ալ Քուրդ, վայր Հայաստանում, Ուրմիա լճի մոտակայքում: Բնույթը անորոշ: Հիշատակում է արաբ աշխարհագիր Յակուտը: (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 731)

[20] Խամլիջ - Ենթադրաբար Խազարների Իթիլ մայրաքաղաքի երկու հիմնական թաղամասերից մեկի աղավաղված անվանումն է: (Артамонов, История хазар, стр. 395).

[21] Ֆարմա - Եգիպտոսի նավահանգիստներից մեկը Միջերկրական ծովի ափին, որը ամենամոտ կետն էր ցամաքով բեռները մինչև Կարմիր ծովի նավահանգիստներ հասցնելու համար: (Milaha, S. Soucek, G. Oman, EOI, CD-ROM, (VII: 40b)):

[22] Կուլզում — Հին քաղաք և նավահանգիստ Կարմիր ծովի ափին: Բառը ծագում է հունական Կլիսմա, կամ Կլեյսմա անվանումից: Այն գտնվում է Նեղոսից մինչև Կարմիր ծով հասնող ջրանցքի գետաբերանում: (al-Kulzum, E. Honigman, [R. Y. Ebied]). EOI, CD-ROM, (V: 367b)):

[23] Ջար – Արաբական նավահանգիստ Կարմիր ծովի ափին: Գրեթե ողջ միջնադարի ընթացքում ալ-Ջարը մատակարարողի դեր էր կատարում Մադինայի համար, որից գտնվում էր մի օրվա հեռավորության վրա: Այն կառուցված էր կիսով չափ ցամաքի և կիսով չափ ափամերձ կղզու վրա: Ջարը կարևորագույն տարանցիկ կայան էր Եգիպտոսի, Եթովպիայի, Հնդկաստանի ու Չինաստանի համար: (al-Djar. A. Dictrich, EOI, CD-ROM, (II: 454b)):

[24] Երեք կայան (մարհալա) - Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 80:

[25] Իսհակ իբն Իսմաիլ - Այստեղ հավանաբար պետք է լինի ոչ թե Հայաստանի (Արմինիայի) տեր, այլ Երկրորդ Արմինիայի տեր, որը հենց համապատասխանում է

Վիրքին՝ Տփղիս մայրաքաղաքով: (Վ. Տ.-Ղ.)

[26] Կարնո քաղաքի մոտից է - Եփրատի ակունքը Կարինից հյուսիս գտնվող Ծաղկավետ լեռների հարավային լանջերին է:

[27] Սալսալայի լեռներ – Սալսալա անունով բնակավայր կա Նփրկերտից ոչ հեռու: Հավանաբար նույն անունն է տրվում նաև մոտակա լեռներին: (Վ. Տ.-Ղ.)

[28] Արճեշյան ծովը – Կարող է լինել ինչպես Պարսից ծոցը, այնպես էլ Արարական ծովը:

[29] Առան գետ – Հավանաբար նկատի ունի Կուր գետը: Տե՛ս նաև Ազուան (այ-Ռան) գետ, Յակուրի (պ.), ծնԹգր. 38:

[30] Նահրարան – Տիգրիսի վտակներից:

[31] Դվին գետ - այսպես են անվանում միջնադարի արար հեղինակներից ոմանք Արաքսը (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 148):

## ՅԱԿՈՒԲԻ (մահ. 897)

*Կենսագրությունը տե՛ս պատմիչների բաժնում, էջ 329:*

**Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. Bibliotheca Geographorum Arabicorum, VII, 1892:**

## ՅԱԿՈՒԲԻ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԲՈՒԼԴԱՆ)

*էջ 232-233*

*Իմ երիտասարդության ծաղկուն շրջանում, զորեղ հասակում և մտային առողջ վիճակում ես ջանացել եմ գիտենալ երկրների տեղեկությունները և մի երկրի ու մյուսի միջև հեռավորությունը, քանզի սկսել եմ ճանապարհորդել երիտասարդ հասակում և իմ ճանապարհորդություններն իրար հաջորդեցին ու երկար ժամանակ պանդխտության մեջ մնացի: Լինում էր, որ այլ երկրներից եկած որևէ մեկին հանդիպելով հարցնում էի նրա հայրենիքի ու մայրաքաղաքի մասին: Երբ նա ինձ խոսում էր իր բնակավայրի մասին, հարցնում էի, թե ինչպիսին է այդ երկիրը [.....], այնտեղ ինչ ցանքսեր կան, ովքեր են բնակիչները՝ արաբներ, թե ոչ արաբներ [.....], ինչ են խմում բնակիչները: Հարցնում էի նույնիսկ նրանց հագուստի մասին [.....], նրանց կրոնի, ուսմունքների, տիրակալների [.....], ինչ տարածություն ուներ այդ երկիրը, որ երկրները նրան մոտիկ էին [.....] ինչպիսի ճանապարհներ ուներ [.....]: Ապա ամեն ինչ, որ այդ մարդն ինձ պատմում էր, գրի էի առնում, քանի որ հավատում էի նրա ճշմարտախոսությանը: Ես օգտվում էի հարցաքննելով մարդկանց իրար ետևից, այնպես որ շատերին հարցեր տվեցի, մարդկանց մի ամբողջ աշխարհ, տոն օրերին, թե ոչ տոն օրերին, թե Արևելքի բնակիչներին, թե Արևմուտքի: Ես գրի էի առնում նրանց տեղեկությունները և հավաքում պատմվածքները: Նշում էի, թե որ խալիֆան, կամ ամիրը մի երկիրը մյուսի ետևից նվաճել են, ով է կառուցել ռազմական ճամբարները, իրար ետևից տարբեր քաղաքներում, կամ հարկի (խարաջ) չափերը և թե ինչպիսի ընդհանուր գումար էր ստացվում:*

*Ես անդադար գրի էի առնում այդ տեղեկությունները և այս գիրքը կազմում էի երկար ժամանակ: Ամեն ինչ, որ պատմում էին, դասավորում էի ըստ երկրների և ինչ որ լսում էի տարբեր քաղաքների արժանահավատ բնակիչներից, միացնում էի իմ նախապես իմացածին: Ես համոզվեցի, որ մարդկային արարածը չի կարող հասնել նպատակին և մարգը չի կարող անսահմանորեն ընդգրկել [.....]:*

*Ուստի մենք այս գիրքը դարձրինք երկրի մասին համառոտ տեղե-*

կությունների համառոտ շարադրանք: Գուցե ինչ որ մեկը գտնի երկրի մասին որևէ տեղեկություն, որը մեր գրքում չկա, քանի որ մենք չենք ձգտել ամեն ինչ ընդգրկել: Իմաստունն արդեն ասել է. «Ես սիրում եմ գիտություն ոչ թե ձգտելով հասնել ամենահեռավորին և կամ ձեռք բերել վերջին սահմանը, այլ պարզապես իմանալու համար, թե ինչը չի կարելի չիմանալ և որի հակառակ վիճակը անվայել է մարդուն»:

Ես հիշել եմ մայրաքաղաքների անունները, ռազմական շրջաններն ու նահանգները, թե մի երկրում ինչքան քաղաքներ, իկլիմներ (նահանգ) ու գավառներ կան, ով է այնտեղ ապրում, իշխում, կառավարում արաբ ցեղերից, կամ ոչ արաբ տոհմերից, երկրների միջև եղած տարածությունները, մայրաքաղաքների իրարից ունեցած հեռավորություններր, մահմեդական զորքի հրամանատարներից որն է այն նվաճել և որն է դրա թվականը, ըստ տարվա ու ժամանակի, նրա հարկերի (խարաջ) չափը, հովիտներն ու լեռները, ցամաքներն ու դետերը, եղանակը ցողի ու ցրտի երկու ծայրահեղ սահմաններով, ջրերն ու աղբյուրները:

## ԲԱՂԴԱԴ

էջ 233

[Իմ շարադրանքն] սկսեցի Իրաքով, քանզի այն աշխարհի կենտրոնն է ու երկրի սիրտը և հիշեցի Բաղդադը, որովհետև Իրաքի կենտրոնն է ու մեծ քաղաքը, որի նմանը չկա Արևելքում ու Արևմուտքում:

էջ 235

Հին ժամանակներում Բաղդադը քաղաք չէր, այսինքն խոսրովների (Սասանյանների) ու պարսիկների օրոք, այլ Բադուրայայի Թասուջի գյուղերից մեկն էր: Բանն այն է, որ խոսրովների քաղաքը, որը նախընտրել էին Իրաքի այլ քաղաքներից, դա Տիզբոնն (Մադաին) էր, Բաղդադից յոթ փարսախ հեռավորության վրա, ուր կա Խոսրով Անուշիրվանի իյուանը (դահլիճ, պալատ):

Բաղդադում եղել է միայն մի վանք Սարատ գետի Տիգրիսի մեջ թափվելու վայրում, որը կոչվում է Կարն ալ-Սարատ: Այս վանքը կոչվում է ալ-Դայր ալ-Ատիկ (հին վանք) և մինչև օրս կանգուն է: Այնտեղ հաստատվել է քրիստոնյա նեստորականների պետը՝ կաթողիկոսը (ջասլիկ):

Բաղդադը արաբների օրոք էլ, իսլամի երևան գալուց հետո քաղաք չէր, քանզի արաբները հիմնադրել էին Բասրան ու Քուֆան:

Էջ 236

Նա (Բաղդադը) Ասորիքի նման վատառողջ օդ չունի. ոչ էլ Եգիպտոսի նման փոփոխական եղանակ. լի հիվանդություններով. ոչ էլ Հայաստանի նման հեռավոր (մեկուսի). ցուրտ սառնամանիքի մեջ. տխուր ու թշնամիներով շրջապատված:

Էջ 237–242

Երբ [Աբբասյաններն] իմացան, որ սա (Քուֆան) լավագույն քաղաքն է, այնտեղ հաստատվեցին այն նախընտրելով: Հավատացյալց իշխան Աբու-լ-Աբբասը նախ հաստատվեց Քուֆայում, ապա փոխադրվեց Անբար ու Եփրատի ափին կառուցեց մի քաղաք, որը կոչեց Հաշիմիյա: Աբու-լ-Աբբասը մնաավ նախքան քաղաքն ավարտելը: Երբ Աբու Ջաաֆար ալ-Մանսուրը դարձավ խալիֆա, մի քաղաք շինեց Քուֆայի ու Հիրայի միջև և այն ես կոչեց Հաշիմիյա: Որոշ ժամանակ մնալուց հետո իր որդուն՝ Մուհամմադ ալ-Մահդիին ուղարկեց սլավոնների դեմ արշավելու հարյուր քառասուն (757–758) թվականին:
[Մանսուրը] եկավ Բաղդադ, կանգնեց ու ասաց՝ ինչ է այս վայրի անունը. ասացին՝ Բաղդադ: Ասաց՝ Ալլահը վկա հորս՝ Աբու Մուհամմադ իբն Ալիի ասածը, թե պետք է կառուցեմ մի քաղաք և ինքս ապրեմ նրանում և ինձանից հետո որդիս ապրի, հենց սա է: Թե՛ նախամահմեդական շրջանում, թե՛ մահմեդականության ժամանակ թագավորներն այն չեն նկատել, որպեսզի Ալլահի որոշածն ու վճռածը ես կատարեմ և իրականանան ղրույցներն ու հայտնություն-ները: Ջե՞ որ Ջազիրան գտնվում է Տիգրիսի ու Եփրատի միջև, Տիգրիսն՝ արևելքում, Եփրատն՝ արևմուտքում և կարելի է ուղարկել ամբողջ աշխարհին այն, ինչ բերվում է Տիգրիսի վրայով Վասիթից, Բասրայից, Ուբուլլայից, Ահուազից, Ֆարսից, Օմանից, Յամամայից, Բահրայնից և այլ հարակից շրջաններից: Այստեղ խարիսխ կգցեն Տիգրիսի վրա եկող նավերը Մոսուլից, Դիար Ռաբիայից, Ատրպատականից, Հայաստանից բերված [ապրանքներով], ինչպես նաև Եփրատի վրա եկող նավերը Դիար Մուդարից, Ռակկայից, Ասորիքից, Սահմանային ամրություններից, Եգիպտոսից, Մաղրիբից այստեղ կկուտակվեն ու կիջնեցվեն [ապրանքները]: Այստեղ կհասնեն նաև Ջաբալից, Սպահանից, Խորասանի գավառներից եկող ճանապարհները: Փառք Ալլահին, որ այս բոլորն ինձ է վերապահված և ինձանից առաջ եղածները չեն տեսել: Կառուցելու և ապրելու եմ ես, ու որդիս ինձանից հետո, և կլինի աշխարհի ամենաշեն քաղաքը: Դրանից հետո կկառուցեմ չորս քաղաք, որից ոչ մեկը չի կործանվի:
Եվ իրոք, կառուցեց, դրանք են Ռաֆիկան, որին նոր անուն չտվեց,

կառուցեց նաև Մայաթիան և Մասնստիան, ինչպես նաև Մանսուրան Սինդում:

Ապա բերել տվեց ճարտարապետների (մուհանդիս) և շինարարության, չափերի, տարածության և հողերի բաժանման դիտակների, և հատակագծեց իր քաղաքը, որը կոչվեց Աբու Ջաաֆարի քաղաք: Բերել տվեց շինարարների, գործավորների և արհեստավորների, ինչպես՝ հյուսների, դարբինների ու փորագրողների (հաֆֆար): Երբ բավարար քանակությամբ հավաքվեցին, նշանակեց նրանց ռոճիկը և վարձքը: Հրամայեց (գրեց) ամեն մի քաղաքից բերել նրան, ով որևէ բան հասկանում է շինարարությունից: Այսպիսով նրա մոտ հավաքվեց հարյուր հազար հոգի տարբեր արհեստներից ու ձեռարվեստներից: Այս մասին պատմել են ծերունիները, թե Աբու Ջաաֆար Մանսուրը սկսեց շինարարությունը, մինչև որ հարյուր հազար գործավորներ ու արհեստի տեր մարդիկ չհավաքվեցին:

Ապա հատակագծեց այն (Բաղդադը) Ռաբի Ա ամսին, հարյուր քառասունմեկ թվականին (12 հուլիս – 10 օգոստոս 758) և այն կլորաձև դարձրեց: Աշխարհի ոչ մի երկրում չկա ուրիշ կլորաձև քաղաք: Քաղաքի հիմքը դրեց այն ժամանակ, որն ընտրել էին Նաուբախտ աստղաբաշխը (մունաջջիմ, աստղագուշակ) ու Մաշաալլահ իբն Սարիան: Նախքան հիմքը դնելը խոշոր հում աղյուսներ պատրաստեց: Ամբողջական քառակուսի հում աղյուսը (լիբնա) մեկ կանգունով մեկ կանգուն էր, քաշը՝ երկու հարյուր ռաթլ, իսկ կես աղյուսը մեկ կանգունով կես կանգուն էր և քաշը՝ հարյուր ռաթլ: Ջրհորներ փորվեցին ջրի համար և ջրանցք փորվեց Քարխայա գետից դուրս եկող, որը Եփրատի վտակն է: Ջրանցքը բարեկարգվեց և մտցվեց քաղաքից ներս՝ խմելու, աղյուսը պատրաստելու և ցեխը թրջելու համար:

Նա քաղաքին չորս դարպասներ դրեց: Մեկը կոչեց Քուֆայի դուռ, մյուսը՝ Բասրայի դուռ, երրորդը՝ Խորասանի դուռ, իսկ չորրորդը՝ Ասորիքի դուռ: Ամեն մի դռնից մյուսը հինգ հազար սև կանգուն էր, խրամատի դրսի կողմից հաշված: Ամեն մի դարպասի վրա երկաթե երկու հսկայական փառավոր դուռ կա, որոնցից ամեն մեկը կարելի է փակել, կամ բացել միայն մի քանի հոգով: Այդ դռներից ձիավորը դրոշով, կամ նիզակակիրը երկար նիզակով կարող էին մտնել առանց դրոշը թեքելու, կամ նիզակը իջեցնելու:

Պարիսպը կառուցված է խոշոր հում աղյուսներով, որի նմանը, ինչպես նկարագրեցինք, տեսնված չէ, և ցեխով: Պարսպի հիմքի լայնությունը իննսուն սև կանգուն է, սակայն աստիճանաբար պակասում է և վերևում քսանհինգ կանգուն է դառնում: Բարձրությունը վաթսուն կանգուն է, պատնգամբներով (շուրֆա) մեկտեղ: Պարսպի շուրջը կա մի հսկայական (հասս) փառավոր կիսապարիսպ (ֆասիլ,

նախապարիսպ), ընդ որում պարսպի պատի ու կիսապարսպի միջև հարյուր սև կանգուն է: Կիսապարիսպն (նախապարիսպ) ունի հսկայական աշտարակներ (բուրջ) և նրա վրա կան նաև կլոր պատշգամբներ: Կիսապարսպից դուրս պատրաստեց պատնեշ (մուսաննատ) թրծված աղյուսից (աջուռ) ու կրից (սարուջ) պինդ, ամուր ու բարձր, իսկ պատնեշից հետո ընկած խրամատը (խանդակ) լցրեց այն ջրանցքի ջրով, որը Քարխայա դետից էր գալիս, խրամատից այն կողմ լայն փողոցներ (շարի) կան:

Քաղաքի [չորս] դռների մեջ չորս մեծ միջանցքներ (դահլիզ) կառուցեց, կամարակապ (ազաջ), ամեն մի միջանցքի երկարությունը ութսուն կանգուն, ամբողջովին ծածկված թրծած աղյուսով և գիպսով (ջիսս): Այնպես, որ երբ մեկը կիսապարսպի վրա գտնվող միջանցքից գա, կհասնի մի բակ (ռահբա) [պինդ] քարով սալահատակված, ապա կմտնի միջանցք՝ մեծ պարսպի մեջ: Դրա վրա կան երկու փառավոր հսկայական երկաթե դռներ, որոնք կարող են փակվել ու բացվել միայն մի խումբ մարդկանց օգնությամբ: Չորս դռները սրա (մեծ պարսպի) վրա են: Եթե մեկը մտնի մեծ պարսպի միջանցքից, անցնի բակի միջով, կհասնի թրծած աղյուսե և գիպսե պատրաստված կամարների (թակատ) [անցքը]: Դրանցում (կամարակապ անցքերում) կան ռումի (բյուզանդական) լուսամուտներ (քիվա), որոնց միջով թափանցում են արևն ու լույսը, սակայն անձրևը չի մտնում: Այստեղ կան ղուլամների բնակարանները: Չորս դարպասներից ամեն մեկն ունի իր կամարակապ անցքը (թակատ):

Մեծ պարսպի դարպասներից ամեն մեկի վրա կա ընդարձակ կամարակապ գմբեթ, ոսկեզօծ և շուրջը հավաքավայրեր (մաջալիս) ու հարակից մասեր, ուր նստելով կարելի է ամեն ինչի հսկել: Այս գմբեթները կարելի է բարձրանալ կամարների վրայով, որոնց մի մասը թրծված աղյուսից ու գիպսից է պատրաստված, մի մասը՝ խոչոր հում աղյուսից: Սրանք կամարների նման են՝ մեկը մյուսից բարձր: Կամարակապից ներս կայազորի ու պահակազորքի [բնակության] համար է: Այստեղից կան աստիճաններ (միսաաղ) և անասուններով բարձրանում են դռների վերևում գտնվող գմբեթները: Աստիճանների վրա կան դռներ, որոնք կողպվում են:

Երբ մեկը դուրս է գալիս կամարակապ անցքերից (թակատ), հասնում է մի բակ, ապա թրծված աղյուսից ու գիպսից պատրաստված կամարակապ միջանցք, որի վրա կա երկաթե դուռ [ներքին պարսպի վրա] և այդ դռնից դուրս կգա մեծ բակը: Չորս [դարպասների] կամարակապ անցքերը միանման են:

[Մեծ] բակի մեջտեղում կա պալատը, որի դուռը կոչվում է Բաբ ալ-Ջահաբ (Ոսկե դուռ), պալատի կողքին մայր մզկիթն է: Պալատի շուրջը չկան կառուցվածքներ, տներ, բնակարաններ, բացի Ասորիքի

դռան կողմը գտնվող պահակների տնից և մի մեծ տաղավարից (սակիֆա), կառուցված թրծած աղյուսից ու գիպսից՝ սյուների վրա. մեկի մեջ ապրում է պահակազորքի պետը (սահիբ ալ-շուրթա), մյուսի մեջ՝ պահակների (հարաս) պետը: Այժմ նրանցում մարդիկ աղոթում են:

[Մեծ] բակի շուրջը կան Սանսուրի փոքր տղաների և նրա համատարիմ ծառաների տները: Կան նաև Գանձարանը (բայտ ալ-մալ), Զենքի պահեստը (խիզանատ ալ-սիլահ), Նամակագրությունների (ռասաիլ) դիվանը, հարկերի (խարաջ) դիվանը, կնիքների (խատիմ) դիվանը, զորքի (ջունդ) դիվանը, տարբեր կարիքների (հավաիջ) դիվանը, ծառաների (ահշամ) դիվանը, ապա ընդհանուրի խոհանոցը (մաթբախ ալ-ամմա) և ծախսերի (նաֆակատ) դիվանը:

Կամարակապ անցքերի միջև կան փողոցներ (սիքքա) և նրբանցքներ (դարբ): Փողոցները կոչվում են զորավարների, մաուլաների և փողոցի բնակիչների անուններով:

Այսպես, Բասրայի դարպասից մինչև Քուֆայի դարպասը կան՝ Շուրաթի փողոցը (սիքքատ ալ-Շուրաթ), Հայսամ փողոցը, Մաթբակ փողոցը, որտեղ մեծ բանտն է, որը կոչվում է Մաթբակ (զնդան), այնտեղ կառուցվածք է ամուր պարսպով: Նիսա (կանանց) փողոցը, Սարջիս (Սարգիս) փողոցը, Հուսայն փողոցը, Աթիյա փողոցը, Մուջաշի փողոցը, Աբբաս փողոցը, Ղազուան փողոցը, Աբու Հանիֆա փողոցը և Դայիկա (նեղ) փողոցը:

Բասրայի դարպասից մինչև Խորասանի դարպասը կան՝ Հարաս (պահակազորքի) փողոցը, Նուայմիյա փողոցը, Սուլայման փողոցը, Ռաբի փողոցը, Մուհալհիլ փողոցը, Շայխ իբն Ումայրա փողոցը, Մարուառուդիյա փողոցը, Վադիհ փողոցը, Սակկաին (ջրկիրների) փողոցը, Իբն Բուրայհա իբն Իսա իբն Մանսուր փողոցը, Աբու Ահմադ փողոցը և Դայիկ (նեղ) նրբանցքը:

Քուֆայի դարպասից մինչև Ասորիքի դարպասը կան՝ Աքքի փողոցը, Աբու Կուռա փողոցը, Աբդալվահ փողոցը, Սամայդա փողոցը, Ալա փողոցը, Նաֆի փողոցը, Ասլամ փողոցը և Մանարա փողոցը:

Ասորիքի դարպասից Խորասանի դարպասը կան՝ Մուազզինների փողոցը, Դարիմ փողոցը, Իսբաիլի փողոցը, մի փողոց, որն այժմ կոչվում է Կավարիրի, իսկ նրա տիրոջ անունը մոռացել եմ, Հաքամ իբն Յուսուֆ փողոցը, Սամաայի փողոցը, Սաիդի, որը Աբու Ջաաֆարի մաուլան է, փողոցը, մի փողոց, որն այժմ Զիյադի է կոչվում, իսկ նրա տիրոջ անունը մոռացել եմ և Ղազուան փողոցը:

Այս փողոցները (սիքքա) կամարակապ անցքերի միջև են տեղադրված, քաղաքի ներսում, մեծ պարսպից ներս: Փողոցներից ամեն մեկում ապրում են երևելի ու վստահելի զորավարներ, կամ նրանց հայտնի մաուլաներ և կարևոր պաշտոններ վարողներ: Ամեն մի

*փողոցի երկու ծայրերին կան հուսալի դռներ: Ոչ մի փողոց չի միանում բակի պարսպին, որի ներսում կա խալիֆայական ապարանքը (դար ալ-խիլաֆա), իսկ բակի պարսպի շուրջը պտտվում է մի ճանապարհ:*

*Նրա (Բաղդադի) ճարտարապետներն են եղել Արդալլահ իբն Մուհրիզը, Հաջջաջ իբն Յուսուֆը, Ումրան իբն ալ-Վադդահը և Շիհաբ իբն Քասիրը, իսկ ներկա են եղել աստղաբաշխներ (մունաջջիմ) ու թվաբաններ (ահսաբ ալ-հիսաբ) Նաուբախտը, Իբրահիմ իբն Մուհամմադ ալ-Ֆազարին և Թաբարին:*

*Արվարձանները նույնպես [Մանսուրը] չորս քառորդ մասերի բաժանեց և ամեն մի քառորդի շինարարության վրա հսկելու համար մի ճարտարապետ (մուհանդիս) նշանակեց և ամեն մի քառորդի տիրոջը (վերակացու) որոշակի գումար տվեց, որպեսզի տրամադրվի ամեն մի հողակտորի (կաթիա) տիրոջը, որպես օժանդակություն և գումարներ հատկացվեն տարբեր արվարձաններում շուկաներ կառուցելու համար:*

*Այսպես, Քուֆայի դռան և Բասրայի դռան միջև ընկած քառորդի, Մուհուսալի դռան և Քարխի ու հարակից բոլոր մասերի վրա [վերակացու] նշանակեց ալ-Մուսայիբ իբն Զուհայրին, իր մաուլա Ռաբիին և ճարտարապետ Ումրան իբն ալ-Վադդահին:*

*Քուֆայի դռան և Ասորիքի դռան միջև ընկած քառորդի, Անբարի ճանապարհի վրա, մինչև արվարձանի սահմանը, նշանակեց Հարբ իբն Արդալլահին, Սուլայման իբն Մուջալիդին, իր մաուլա Վադիհին և ճարտարապետ Արդալլահ իբն Մուհրիզին:*

*Ասորիքի դռնից մինչև Հարբի արվարձանը ընկած քառորդի, Ասորիքի դռան փողոցի և հարակից մասերի վրա, մինչև կամուրջը և Տիգրիսը, նշանակեց Հարբ իբն Արդալլահին, իր մաուլա Ղադուանին և ճարտարապետ Հաջջաջ իբն Յուսուֆին:*

*Խորասանի դռնից մինչև Տիգրիսի կամուրջը, Տիգրիսի մերձափնյա փողոցը մինչև Բուղիին և Կաթրաբբուլի դուռը [ընկած քառորդի վրա] նշանակեց Հիշամ իբն Ամր ալ-Տաղլիբիին, Ումարա իբն Համդային և ճարտարապետ Շիհաբ իբն Քասիրին:*

*Նա (Մանսուրը) կարգադրեց ամեն մի քառորդի տերերին (վերակացուներին), որ գումարներ հանձնեն իրենց օգնականներին խանութներ, շուկաներ կառուցելու բոլոր արվարձաններում: Հրամայեց խանութները բազմացնել այնպես, որ ամեն մի արվարձանում լիներ ընդհանուր շուկա առևտրի բոլոր ճյուղերով: Կարգադրեց, որ բոլոր արվարձաններում լինեն փողոցներ, նրբանցքներ (դուրուբ)՝ թե՛ բաց, թե՛ փակուղի, որոնց վրա համաչափ կառուցվեն տները: Ամեն մի նրբանցքը կոչել այնտեղ ապրող զորավարի կամ երևելի (պատվավոր) մարդու անունով, կամ այն տեղի մարդկանց անունով, որտեղից*

ակել են: Որոշեց, որ փողոցների (շարի) լայնությունը լինի հիսուն սև կանգուն, իսկ նրբանցքներր՝ տասնվեց կանգուն. որ արվարձաններում, շուկաներում և նրբանցքներում կառուցեն բավարար քանակությամբ մզկիթներ ու բաղնիքներ: Հրամայեց ամենքին. որ զորավարներին ու զորականներին շնորհված հողակտորներից (կաթաի) որոշ բան տրվի վաճառականներին. որ կառուցեն ու ապրեն, ինչպես նաև ռամիկ մարդկանց և գեղջուկներին (երկրի մարդկանց):

Եվ առաջինը, որ քաղաքից դուրս հողակտոր վերցրեց, նրա (Մանսուրի) տանը պատկանող՝ Արդ ալ-Վահհաբ իբն Իբրահիմ իբն Մուհամմադ իբն Ալի իբն Աբդալլահ իբն ալ-Աբբասն էր, որը հաստատվեց Քուֆայի դռան մոտ, Ստորին Սարատ գետակի վրա, որը Եփրատից է գալիս [.....]:

էջ 245-246

[.....] Ապա Ռաբավա ալ-Քիրմանիի և նրա բարեկամների հողակտորը, որը հասնում է մինչև քաղաքի այն դուռը, որ հայտնի է որպես Բասրայի դուռ: Սա իշխում է Սարատի և Տիգրիսի վրա, նրա կողքին է Նոր կամուրջը, որը կառուցված կամուրջներից վերջինն է: Նրանում կա մեծ շուկա, ուր բոլոր տեսակի վաճառատներ կան կողք-կողքի տարածված:

Ապա գալիս է հավատացյալների իշխանի (խալիֆա) մաուլա Վաղդահի արվարձանը, որը հայտնի է Վաղդահի պալատ անվամբ, իսկ նա ցենքի պահեստի պետն է: Այնտեղ շատ շուկաներ կան և այժմ այնտեղ ամենից ավելի կան թղթավաճառներ և գրավաճառներ: Կան հարյուրից ավելի գրավաճառի խանութներ:

Ապա այս չորս վերոհիշյալ ճանապարհներից դուրս կգաս դեպի Քարխի դռան փողոցը, որն սկիզբ է առնում Ստրկավաճառների (նախխասին) դռնից, որտեղ Մանսուր [խալիֆայի] մաուլա Սուայդի հողակտորն է: Սուայդի ընդարձակ բակը Ստրկավաճառների դռան ետևի կողմում է: Փողոցի երկու կողմերում ձգվում են շուկաները: Քարխի դռնից թեքվելով դեպի աջ, հասնում ես հավատացյալների իշխանի մաուլա Ռաբիի հողակտորը, որտեղ վաճառականներն են ապրում, ինչպես Խորասանի վաճառականները, որոնք կերպասավաճառներ (բազզազ) են, [վաճառվում են] նաև Խորասանից բերված հագուստեղենի տեսակներ, որոնց մեջ ոչինչ չի խառնված:

Այստեղ է այն գետը, որն սկսում է Քարախայա գետից և նրա վրա կան վաճառականների տներ: Սա կոչվում է հավի գետ, քանզի նրա վրա այն ժամանակներում հավ էին վաճառել: Ռաբիի հողակտորի ետևում կան վաճառականների և ամեն երկրի մարդկանց տներ: Ամեն մի նրբանցք այնտեղ ապրող ժողովրդի անունով է կոչվում: Քարխը

ամենամեծ շուկան է, որը ձգվում է Վադդահի պալատից մինչև Երեքշաբթիի շուկան, ունենալով երկարություն՝ երկու փարսախ և լայնություն՝ մեկ փարսախ Ռաբիի հողակտորից մինչև Տիգրիս:

Ամեն մի վաճառական և վաճառականության ճյուղ ունի իր հատուկ փողոցը և փողոցներում՝ հատուկ շարքեր, խանութներ (հավանիտ) և հրապարակներ (իրաս): Ոչ մի խումբ (մարդկանց) մյուսին չի խառնվում և կամ վաճառականության մի ճյուղ՝ մյուսին, որևէ ապրանքի տեսակ՝ մյուսի հետ չի վաճառվում, ինչպես նաև տարբեր արհեստների (սինաատ) արհեստավորները (ասհաբ ալ-միհան) չեն խառնվում: Ամեն մի շուկա առանձին է և վաճառականների մի տեսակը մյուսին չի միանում և արհեստավորների մի տեսակը մյուսի դասին (թաբակա) չի խառնվում:

Այս արվարձաններում և հողակտորներում, որ նկարագրել ենք, բնակվում են տարբեր մարդիկ՝ արաբներ, զինվորներ, հողատերեր (դահակին), վաճառականներ և այլ խառն մարդիկ, որոնց անուններով կոչվում են նրբանցքներն ու փողոցները (սիքքա):

Սա Բաղդադի քառորդներից մեկն է և ամենահինն է. նրա [շինարարությունը] հանձնարարված էր Մուսայիբ իբն Զուհայրին, հավատացյալների իշխանի մաուլա Ռաբիին և ճարտարապետ Ումրան իբն ալ-Վադդահին: Սրանից մեծ ու հաճելի քառորդ չկա Բաղդադում:

Քուֆայի դռնից մինչև Ասորիքի դուռը ընկած է Սուլայման իբն Մուջալիդի անունը կրող արվարձանը, քանզի նրան էր հանձնարարված [Բաղդադի] այս քառորդի շինարարությունը և նրա անունով էլ կոչվեց: Նրանում կան Վադիհի հողակտորը, Ամիր իբն Իսմայիլ ալ-Մուսլիմի հողակտորը[.....]:

էջ 248-249

[.....] Սա [Բաղդադի] այն քառորդն է, որի [շինարարությունը] հանձնարարվել էր Սուլայման իբն Մուջալիդին, հավատացյալների իշխանի մաուլա Վադիհին և ճարտարապետ Աբդալլահ իբն Մուհրիզին (բնագրում՝ Ումրան իբն ալ-Վադդահին):

Ասորիքի դռնից ձգվող [Բաղդադի] քառորդի սկիզբը Ցազլ իբն Սուլայման ալ-Թուսիի հողակտորն է: Սրա կողքին կան բանտը, որը հայտնի է Ասորիքի դռան բանտ անվամբ և նույն անունը կրող շուկաները: Սրանք խոշոր շուկաներ են, որտեղ կան բոլոր խանութները և ապրանքները. սրանք տարածված են դեպի աջ և ձախ կողմերը, ունեն բնակեցված և շեն փողոցներ, նրբանցքներ, հրապարակներ և մի լայն փողոց, որի վրա կան լայն նրբանցքներ, որոնցից ամեն մեկը կոչվում է այն երկրի անունով, որի ժողովուրդը իջևանել է նրա երկու կողմերում, մինչև որ հասնում է Հարբ իբն Աբդալլահ ալ-Բալխիի

արվարձանը: Այսօր Բաղդադում չկա սրանից ավելի ընդարձակ, մեծ, կամ ավելի նրբանցքներ ու շուկաներ ունեցող արվարձան (Հարբիյա): Նրանում ապրում են Բալխի մարդիկ, Մերվի, Խուտտալի, Բուխարայի, Ասբիշարի (Ասֆիջար), Իշտախանջի (Իշտիխան), Քաբուլ շահի, Խորեզմի (Խուարիզմ) մարդիկ: Ամեն մի թաղամասի (բալադ) ժողովուրդ ունի իր առաջնորդը (կաիդ, զորավար) և պետը (ռաիս):

Այդա դային է նիզակների (հիրար) պետ ալ-Հաքամ իբն Յուսուֆ ալ-Բալխիի հողակտորը (կաթիա), որը պահակազորքի (շուրթա) հրամանատարն էր եղել:

Ասորիքի դռնից եկող մեծ փողոցի, որը ձգվում է մինչև Տիգրիսի կամուրջը, աջ և ձախ կողմերում կա մի շուկա, իսկ դեպի ձախ կա մի արվարձան, որը կոչվում է Ստրուկների տուն (դար ալ-ռակիկ), ուր Աբու Ջաաֆար [խալիֆայի] ամեն կողմից բերված ստրուկներն էին վաճառվում և դա հանձնարարված էր նրա մաուլա Ռաբիին:

Ահա սա այն [երրորդ] քառորդն էր, որի [շինարարությունը] հանձնարարված էր հավատացելոց իշխանի մաուլա Հարբ իբն Աբդալլահին և ճարտարապետ Հաջջաջ իբն Յուսուֆին:

Իսկ [չորրորդ] քառորդը, որը Խորասանի դռնից մինչև Տիգրիսի կամուրջն ու նրանից այն կողմ է տարածվում, ապա նրա դիմաց կա Խուլդ [պալատը]: Նրանում կային այգիներ, զորքի կայան և մի պալատ, որը Տիգրիսին էր նայում, ուր հաճախ ապրում էր Աբու Ջաաֆարը, իսկ Մահդի [խալիֆան] այստեղ էր ապրում նախքան Ռուսաֆայի պալատը փոխադրվելը, որը Տիգրիսի ձախ կողմում է:

Երբ այս բոլորն անցնես, ապա [այս քառորդի] հողակտորներից առաջինը՝ Սուլայման իբն Աբու Ջաաֆարի հողակտորն է մեծ փողոցի վրա, Տիգրիսի ափին [.....]:

էջ 250

[.....] Եվ ապա Աբդ ալ-Ջաբբար իբն Աբդ ալ-Ռահման ալ-Ազդիի հողակտորը, որը պահակազորքի պետն էր, ապա [Մանսուրը] հանեց նրան և նշանակեց Խորասանի կառավարիչ: Սակայն այնտեղ նա ապստամբեց և [խալիֆան] Մահդիին զորքով ուղարկեց նրա դեմ, և [Մահդին] պատերազմեց ու հաղթելով նրան բերեց Աբու Ջաաֆար [խալիֆայի] մոտ: Սա գլխատել ու խաչել տվեց նրան:

[Բաղդադի] արվարձանների և հողակտորների բոլորի անունները չենք կարող հիշատակել, քանզի բոլոր մարդիկ էլ հողակտորներում և այլ հողամասերում կառուցումներ են կատարել և ապա այլոց ժառանգել:

Հաշվել են, որ [Բաղդադում] վեց հազար նրբանցքներ և փողոցներ կան, երեսուն հազար մզկիթներ, բացի հետո ավելացվածներից, տաս

հազար բաղնիքներ, բացի հետագայում կառուցվածներից:
Նրանք (Բաղդադի բնակիչները) ունեն Մեծ Իսա գետր (Նահր Իսա ալ-Ազիմ), որն սկիզբ է առնում հիմնականում Եփրատից: Նրա մեջ են մտնում հսկա նավերր, որոնք գալիս են Ռակկայից, բերելով ալյուր և ապրանքներ, Ասորիքից ու Եգիպտոսից և կանգ առնում մի նավահանգստում (փարդա), որտեղ կան շուկաներ ու վաճառական-ների խանութներ:
Այս գետի ջուրը երբեք չի կտրվում: Նրանք ունեն նաև ջրհորներ, ուր ջուրը ներծծվում է այդ (Տիգրիսի ու Եփրատի միջև գտնվող) ջրանցքներից և նրանց ջուրը քաղցր է ու բոլոր մարդիկ խմում են: Այս ջրանցքներն անհրաժեշտ են, քանզի քաղաքը մեծ է և ընդարձակ: Գտնվելով Տիգրիսի ու Եփրատի միջև, ամեն կողմից ջրերը հոսում են նրանց մեջ: Սրա շնորհիվ նրանք (բնակիչները) Բասրայից բերված արմավենիներ են տնկել և Բաղդադում, այժմ ավելի շատ [արմավե-նիներ] կան, քան Բասրայում, Քուֆայում և ամբողջ Սավադում: Նրանք ծառեր են տնկել, որոնք զարմանալի պտուղներ են տալիս: Բաղդադի արվարձաններում, ամեն կողմ պարտեզներ ու ծառա-ստաններ կան, ջրի առատության և լավորակ լինելու հետևանքով: Այստեղ արտադրվում է այն ամենը, որ տարբեր քաղաքներում պատ-րաստվում է, քանզի այստեղ են եկել տարբեր արհեստների ճարտար մասնագետներ, բոլոր քաղաքներից, տարբեր կողմերից (հորիզոն-ներից), մոտիկ ու հեռավոր վայրերից:
Ահա սա է Բաղդադի արևմտյան կողմը, որն ընդգրկում է բուն քաղաքը, Քարխ [Թաղամասը], արվարձանների կողմերը և նրա ամեն կողմերում կան գերեզմանոցներ, հարակից գյուղեր և տարածված կառուցվածքներ:
Ինչ վերաբերում է Բաղդադի արևելյան կողմին, ապա այստեղ [առաջին անգամ] հաստատվեց ալ-Մահդի իբն ալ-Մանսուրը, երբ հոր գահաժառանգն էր և սկսեց նրա կառուցումը հարյուր քառա-սուներեք հիջրի (760-761) թվականին: Մահդին իր պալատը հաստա-կագծեց (կառուցեց) Ռուսաֆայում մայր մզկիթի կողքին: Նա մի գետ (ջրանցք) փորել տվեց, որն սկսվում է Նահրավանից, հոսում է արևելյան կողմում և այն անվանեց Մահդիի գետ:
Արևմտյան կողմում բուն քաղաքի շուրջը հողակտորներ պարգևե-լուց հետո Մանսուրն իր եղբայրներին ու զորավարներին, այս (արևելյան) կողմում ևս հողակտորներ տվեց և այս կողմերը ծանոթ են Մահդիի ճամբար անվամբ: Մարդիկ մրցում էին, որ Մահդիի [պալատի] մոտերքում հաստատվեն, քանզի սիրում էին նրան, իսկ նա առատաձեռնորեն բաշխում էր դրամներ, ընծաներ: Բանն այն է, որ այս (արևելյան) կողմն ավելի ընդարձակ հողեր ուներ: Մարդիկ սկզբում հաստատվել էին արևմտյան կողմում, որը կղզու նման է՝

Տփղիս ու Նփրաա գետերի միջև, և այն չննացրին, այնտեղ կառուցվեցին շուկաներ ու վաճառատներ: Սակայն երբ սկսվեց [աշխույժ] շինարարությունը արևելյան կողմում, արգելվեց ընդարձակ կառույցներ կասարել:

[Արևելյան կողմում] առաջին հողակտորը կամրջի գլխին (ռաս ալջիսր) պատկանել է Խուզայմա իբն Խազիմ ալ-Տամիմիին, որը Մահդիի օրոք պահակազորքի պետն էր: Ապա Իսմայիլ իբն Ալի իբն Արդալլահ իբն Աբբաս իբն Աբդ ալ-Մութթալիբի հողակտորը [.....]:

Էջ 252

... Ապա Արդալլահ իբն Զիյադ իբն Աբու Լայլա ալ-Խասսամիի հողակտորը, որը Հիջազի, Մոսուլի, Ջազիրայի, Հայաստանի ու Ատրպատականի [հարկային] դիվանի քարտուղարն էր:

Էջ 253

[Արվարձանային] հողակտորների միջև կան զինվորների, բնակիչներից որոշ մարդկանց, վաճառականների և այլոց տները, ամեն մի թաղամասում (մահալլա), արվարձանում: Այս մեծ կողմի (քաղաքի) շուկայում բերվում են տարբեր ապրանքներ, վաճառքի իրեր և արհեստագործական արտադրանք. կամրջի գլխի մոտ, նրանից դեպի արևելք՝ աջ և ձախ [բերվում են] տեսակ-տեսակ ապրանքներ և արհեստագործական արտադրանք:

Արևելյան կողմի, այսինքն Մահդիի ճամբարի ճանապարհները հինգ ճյուղի են բաժանվում: Կա մի ուղիղ ճանապարհ դեպի Ռուսաֆա, որտեղ են Մահդիի պալատը և մայր մզկիթը. մեկ այլ ճանապարհ ուղղվում է դեպի այն շուկան, որը կոչվում է Սուկ Խուզայր (բանջարեղենի*), որը չինական հրաշալիքների կենտրոնավայրն է և դուրս է գալիս հրապարակը (մայդան) և Ֆազլ իբն Ռաբիայի բնակարանը: Կա նաև մի [երրորդ] ճանապարհ դեպի ձախ՝ Բարադանի դռան (բաբ Բարադան) կողմը, որտեղ Խալիդ իբն Բարմաքի ու որդիների տները կան: Կամուրջի ճանապարհը ուղղվում է Խուզայմայի տնից մինչև Յահիա իբն ալ-Վալիդի անվամբ հայտնի շուկան և այն վայրը, որը կոչվում է ալ-Դուր և ապա դեպի Բաղդադի այն դուռը, որը հայտնի է Շամմասիյա անվամբ: Այստեղից դուրս է գալիս ով կամենում է գնալ Սուռա ման ռաա (Սամառա): Կա նաև [հինգերորդ] ճանապարհը առաջին կամուրջի մոտից, որի վրայով անցնում է ով դալիս է արևմտյան կողմից և Տիգրիսի ափով գնում է Մուխարիմ դուռը (բաբ Մուկայիր) և Մուխարիմ ու նրան հարակից վայրերը:

Սա (արևելյանը) երկու կողմերից ամենաընդարձակն է, քանի որ

*արևմտյան կողմում շուկաններն ու վաճառատները խիստ շատ են, ինչպես նկարագրել ենք:*

*Այստեղ հաստատվել են Մահդին, իր գահաժառանգության և խալիֆայության շրջաններում, նաև Մուսա ալ-Հադին, Հարուն ալ-Ռաշիդը, ապա Մամունը և Մուտասիմը:*

*Նրանում (արևելյան կողմում) կա չորս հազար նրբանցք ու փողոց, տասնհինգ հազար մզկիթ, բացի մարդկանց կատարած նոր կառուցումներից և հինգ հազար բաղնիք, բացի նոր ավելացվածներից:*

*Բաղդադի երկու կողմերում (արևմտյան և արևելյան) միասին, շուկայի վարձքերը Ռիհա ալ-Բաթրիկի ու հարակից մասերի հետ հասնում են տասներկու միլիոն դիրհեմի:*

*Բաղդադում ապրել են յոթ խալիֆաներ՝ Մանսուրը, Մահդին, Մուսա ալ-Հադին, Հարուն ալ-Ռաշիդը, Մուհամմադ ալ-Ամինը, Աբդալլահ ալ-Մամունը և Մուտասիմը: Սակայն այնտեղ մահացել է միայն Մուհամմադ ալ-Ամին իրն Հարուն ալ-Ռաշիդը, որն սպանվեց Անբարի դռնից դուրս, Թահիրի այգու մոտ:*

*Այս հողակտորները, մեծ փողոցները, նրբանցքները և նեղ փողոցները թվել եմ ըստ Մանսուր [խալիֆայի] օրոք և քաղաքի սկզբնավորման ժամանակ եղած գծագրման, սակայն ժամանակի ընթացքում փոփոխվել են, հին տերերը մահացել են և տարբեր մարդիկ ու տարբեր սերունդներ հաջորդաբար տիրել են. որոշ վայրերում շինարարությունն ավելացել է, որոշ մարդիկ այլոց տներին են տիրել: Մեծամեծները, տերերը, զորավարները և երևելիները Մուտասիմի հետ փոխադրվել են Սամառա երկու հարյուր քսաներեք հիջրի (837-838) թվականին: Ապա այնտեղ նստավայր են ունեցել Վասիկ և Մուտավաքքիլ [խալիֆաները]: Սակայն Բաղդադում ոչինչ չի քանդվել և շուկաները չեն պակասել (աղքատացել), քանզի նրան փոխարինող չկար և եղել են շինություններ ու կառուցումներ Բաղդադի ու Սամառայի միջև, ցամաքի ու ծովի (գետի), այսինքն Տիգրիսի և նրա երկու ափերի միջոցով:*

## *ՍՈՒՌԱ ՄԱՆ ՌԱԱ (ՍԱՄԱՌԱ)*

*էջ 268*

*Մենք պատմեցինք Բաղդադի և Սամառայի մասին և [մեր շարադրանքը] նրանցով սկսեցինք, քանզի նրանք թագավորության երկու քաղաքներն են և խալիֆայության նստավայրերը, ընդ որում նրանցից ամեն մեկի սկզբնավորման մասին պատմեցինք:*

*Սկսենք այժմ պատմել մյուս երկրների մասին, ամեն մի երկրի ու մյուսի և ամեն մի քաղաքի ու մյուսի միջև եղած հեռավորության մա-*

սին, [տալով բաժանումը] չորս մասերի[1], ըստ երկրի նահանգների բաժանման՝ նախ Արևելքի (Մաշրիկ) և Արևմուտքի (Մաղրիբ), ապա հարավային քամու աղբյուրի, որը [Մեքքայի] կիբլան է ու Կանոպի (Սուհայլ) ծագելը, որն աստղաբաշխները կոչում են Տայման (հարավ) և վերջապես հյուսիսային քամու աղբյուրի, որը Մեծ Արջ համաստեղությունն է (Բանատ Նաշ) և աստղաբաշխներն այն կոչում են Ջարբի (հյուսիս): Ուստի կնկարագրենք ամեն մի քառորդին պատկանող երկրներն՝ ըստ հաջորդականության:

## ԱՌԱՋԻՆ ՔԱՌՈՐԴԸ, ՈՐՆ ԱՐԵՎԵԼՔԻ (ՄԱՇՐԻԿ) ՔԱՌՈՐԴՆ Է

էջ 271-272

### ԱՏՐՊԱՏԱԿԱՆ[2]

Ով կամենում է գնալ Ատրպատական, դուրս է գալիս Զինջանից և չորս օրվա ճանապարհ անցնելով հասնում է Արդաբիլ քաղաքը, իսկ դա Ատրպատականի առաջին քաղաքն է, որին կհանդիպի:

Արդաբիլից Բարդանդ [ընկած հողերը] Ատրպատականի գավառներից են և հեռավորությունը երեք օրվա քայլելու ճանապարհ է: Բարդանդից մինչև Վարդանակերտ (Վարսան) ընկած հողերը նույնպես Ատրպատականի գավառներից են, ապա [ճանապարհը] գնում է Վարդանակերտից Փայտակարան (Բայլական) և Փայտակարանից՝ Մարաղա քաղաքը, որն Ատրպատականի գլխավոր քաղաքն է:

Ատրպատականի գավառներն են՝ Արդաբիլը, Բարդանդը, Վարդանակերտը, Պարտավը (Բարդաա), Շիզը, Սիրատը, Մարանդը, Դավրեժը (Տաբրիզ), Միանաջը, Ուրմիան, Խոյը և Սալմաստը (Սալմաս):

Ատրպատականի քաղաքների ու գավառների բնակիչները աղերի պարսիկների[3] (ալ-աջամ ալ-ազարիյա) և հին ջավիդանների[4] (ջավիդանիյա) խառնուրդ է: Վերջիններս Բաղդ քաղաքի տերերն էին, որտեղ կար Բաբեկը:

Նրա (Ատրպատականի) նվաճումից հետո այնտեղ հաստատվեցին արաբները: Նվաճվեց քսաներկու թվականին (642-643), ալ-Մուղիրա իբն Շուբայի ձեռքով, Օսման իբն Աֆֆանի խալիֆայության ժամանակ:

Նրա խարաջը չորս միլիոն դիրհեմ է, ըստ որում մի տարի ավելանում է, մի տարի՝ իջնում[5]:

## ԵՐՐՈՐԴ ՔԱՌՈՐԴԸ՝ ՋԱՐԲԻՆ, ՈՐԸ ՀՅՈՒՍԻՍԻ ՔԱՌՈՐԴՆ Է

*էջ 320–328*

*Արևն Հիշել ենք Հարավը (տայման), որը [Մեքքայի] կիբլայի քառորդն է: Այժմ հիշենք Ջարբիի քառորդը՝ հյուսիսի քառորդը, նրանում գտնվող քաղաքներով ու գավառներով:*

*Ով կամենա գնալ Բաղդադից Տիղրոն և շրջակա վայրերը, այսինքն այն քաղաքներն ու թասուջները, որոնք Տիգրիսի երկու ափերին են, ինչպես Բասրա, Ուբուլլա և ապա Յամամա, Բահրայն, Օման, Սինդ ու Հնդկաստան (Հինդ), պետք է դուրս գա Բաղդադից և ընթանա Տիգրիսի այն ափով, որ դուր կգա՝ արևելյան կամ արևմտյան, անցնի մեծ գյուղերի միջով, ուր պարսիկների բնակավայրերն են, մինչև որ հասնի Տիղրոն, որը Բաղդադից յոթ փարսախ հեռավորության վրա է: Տիղրոնը Պարսից արքաների նստավայրն է եղել: Առաջինը, որ այնտեղ հաստատվել է, Անուշիրվանն[6] է: Դա բաղկացած է Տիգրիսի երկու ափերին գտնվող քաղաքներից: Արևելյան ափին կա այն քաղաքը, որ կոչվում է Հին քաղաք և այստեղ կա Հին սպիտակ պալատը, որը չգիտեն թե ով է կառուցել: Նրանում կա մայր մզկիթ, որը մահմեդականներն են կառուցել նվաճելուց հետո:*

*Արևելյան կողմում, որում կա մեծ Խոսրովի պալատը (Իուան Քիսրա), գտնվում է նաև այն քաղաքը, որ կոչվում է Ասբանբար: Նրա նմանը պարսիկների մոտ չկա և պատի բարձրությունն է ութսուն կանգուն (դիրա):*

*Երկու քաղաքների միջև մեկ մղոն հեռավորություն կա: Այս վերջին քաղաքում էր, որ իշխանում էր Սալման ալ-Ֆարիսին[7] և Հուդայֆա իբն ալ-Յամանը[8], որոնց գերեզմաններն այնտեղ են:*

*Այս երկու քաղաքներից բացի կա նաև մի քաղաք, որը կոչվում է Ռումիյա[9] (Հռոմեց քաղաք), որի մասին ասվում է, թե հռոմեները կառուցել են պարսից թագավորին հաղթելուց հետո: Այստեղ էր հավատացյալների իշխան Մանսուրը, երբ սպանվեց Աբու Մուսլիմը:*

*Վասիթը երկու քաղաքներից է բաղկացած Տիգրիսի երկու ափերին: Հին քաղաքն արևելյան կողմում է, իսկ Հաջջաջը քաղաք է կառուցել արևմտյան կողմում և երկուսի միջև նավերից կազմված կամուրջ է պատրաստել: Այս արևմտյան քաղաքում Հաջջաջն իր պալատն է կառուցել և կանաչ գմբեթը, որը կոչվում է Վասիթի Խադրան (կանաչ), ինչպես նաև մայր մզկիթը և նրա (քաղաքի) պարիսպները: Հաջջաջից հետո այլ կառավարիչներ են այստեղ ապրել, ինչպես՝ Եզիդ (Յազիդ) իբն Օմար իբն Հուբայրա ալ-Ֆազարին, երբ պարտվելով Կահթաբայի զորքից այստեղ էր ամրացել, մինչև նրաշխավորագիր ստանալը:*

*Այս երկու քաղաքների բնակչությունը արաբների ու պարսիկների (աջամ) խառնուրդ է, իսկ դեհկանները բնակվում էին արևելյան քաղաքում, որը Քասքար քաղաքն է:*

*Նրա խարաջը մտնում է Սավադի թասուջների խարաջի մեջ: Կոչվել է Վասիթ, քանզի նրանից մինչև Բասրա հիսուն փարսախ է, մինչև Քուֆա նույնպես հիսուն է, ինչպես նաև մինչև Ահուազ ու Բաղդադ հիսուն է: Ահա այս պատճառով կոչվել է Վասիթ (միջին):*

*Նրան հաջորդում է Նահրաբանը, ուր պատրաստում են այն բանվածքի հենքը, որից հայկական (արմանի)[10] կոչված տեսակներն են արտադրում: Այն տանում են Հայաստան, ուր մանվում և հյուսվում (գործվում) է:*

*Վասիթից Բասրա ճանապարհն անցնում է ճահճուտ տափաստանով (Բաթաիհ): Այսպես է կոչվում, որովհետև բազում ջրեր այստեղ են կուտակվում, ապա այստեղից թափվում են Աուրա (չիլ) Տիգրիսը, ապա հոսում դեպի Բասրա և թափվում Իբն Օմար գետը:*

## ԲԱՍՐԱ

*Բասրան եղել է երկրի [կարևորագույն] քաղաքը և վաճառականության ու հարստության կենտրոնը: Սա մի երկարավուն քաղաք է և նրա տարածությունն, ըստ Օմար իբն ալ-Խաթթաբ [խալիֆայի] օրոք տասնյոթ (638) թվականին, նվաճման ժամանակ պատրաստված հատակագծի երկու փարսախով մեկ փարսախ էր: Նրա ներքին մասը, որը ձգվում է դեպի հյուսիս, երկու գետի վրա է [կառուցված], մեկը կոչվում է Իբն Օմարի գետ, իսկ մյուսը[11] [......]**

*[Տփղիսը մի քաղաք է Հայաստանում, նրա և Կարնո քաղաքի միջև հեռավորությունը երեսուն փարսախ է: Կարնո քաղաքից սկիզբ են առնում մեծ գետեր, որոնցից առաջինը Եփրատն*** (Արաքս) է: Սա հոսում է բխելով Կարնո քաղաքից երկու փարսախ հեռավորության վրա, ապա շարունակում է ուղղվելով դեպի Դվին, ապա Վարդանակերտ և թափվում է Խազարաց ծովը: Երկրորդ մեծ գետը (Կուր) բխում է Կարնո քաղաքից, ապա անցնում Տփղիս և դեպի արևելք մինչև Պարտավի հողը: Ապա մոտենում է Խազարաց ծովին, միանում Արաքսին դառնալով մեկ գետ: Ասվում է, որ Արաքսի ետևը երեք հարյուր ավերակ քաղաք կար: Այս մասին է հիշել Ալլահը խոսելով Արաքսի (ալ-Ռաս) մարդկանց մասին (Ղուրան, ԻԵ, 40): Սրանց մոտ էր ուղարկված Հանզալա իբն Սաֆուանը, որին սպանեցին: Արաքսի մարդկանց մասին նաև այլ բաներ են պատմում:*

---

* Այստեղ ձեռագիրը մի մեծ պակասող հատված ունի:
** Ըստ շարադրանքի խոսքը վերաբերում է Արաքսին և ոչ թե Եփրատին:

Հայաստանը բաժանվում է երեք մասի[12]. առաջին մասը Դվին քաղաքն է, Կարնո քաղաքը, Խլաթը, Շիմշաթը և Սավադը:

Երկրորդ մասը Պարտավ (Բարդաա), Փայտակարան (Բայլական), Կապաղակ (Կաբալա) և Բաբ ալ-Աբուաբ (Դարբանդ) քաղաքներն են:

Երրորդը Վիրք (Ջուրզան) քաղաքն է, Տփղիս քաղաքը և այն, որ հայտնի է Երկկոտոշավորի (Ալեքսանդր) մզկիթ անունով:

Հայաստանը նվաճվել է Օսմանի խալիֆայության օրոք: Այն նվաճել է Սուլայման (Սալման) իբն Ռաբիան, քսանչորս տարում (644-645)]*:

[Ասել է Ահմադ իբն Աբու Յակուբը թե Հայաստանը երեք մասից է բաղկացած: Առաջին մասն ընդգրկում է Կարնո քաղաքը, Խլաթ, Շիմշաթ քաղաքները և սրանց միջև ընկած հողերը: Երկրորդը՝ Վիրքը, Տփղիսը և Դարբանդ քաղաքը և Ալանքը (ալ-Լան) և սրանց միջև ընկած հողերը: Երրորդ մասն ընդգրկում է Պարտավը, որն Առանի (գլխավոր) քաղաքն է, Փայտակարանը և Դարբանդը]:

[.....] Խարսիանոնը (Խարշանան)՝ հինգ հարյուր ձիավոր, Սելևկիան (Սալուկիյա)՝ հինգ հարյուր ձիավոր, Թրակիան (Տարակիա)՝ հինգ հազար ձիավոր, Մակեդոնիան՝ երեք հազար ձիավոր: Իսկ Ռումի երկրի ամբողջ բանակը, որը բաղկացած է գավառներում ու գյուղերում, որպես կայազոր գրված զորքից, քառասուն հազար ձիավոր է: Նրանք չունեն կանոնավոր զորք, այլ պատերազմի ժամանակ ամեն մի գավառից հավաքվում են ռազմիկներ, որոնք իրենց պատրիկի գլխավորությամբ կռվի են դուրս գալիս:

Ռումի երկրի, նրա զորքերի, քաղաքների, բերդերի, նավահանգիստների, լեռների, կիրճերի, հովիտների, լճերի և [արաբների կողմից] հարձակման ենթարկվող վայրերի մասին խոսել ենք մյուս գրքում, իսկ հիմա հիշել ենք ճանապարհները դեպի Սահմանային ամրությունները և հարակից շրջանները:

* Յակուբիի երկի այս պակասող հատվածում խոսվել է նաև Հայաստանի մասին: Բարեբախտաբար արաբ պատմիչներ Նարիշին ու Աբու-լ-Ֆիդան պահպանել են Յակուբիից քաղված տեղեկությունները Հայաստանի մասին, որը տալիս ենք քառակուսի փակագծերի մեջ:

# ՅԱԿՈՒԲԻ

# ԳԻՐՔ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԲՈՒԼԴԱՆ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1 Յակուբին չարունակում է իր նկարագրած երկրները չորս մասի բաժանելու սկզբունքը, որ գտնում ենք Իբն Խորդադբեհի մոտ, այսինքն Մաշրիկ (Արևելք), Մաղրիբ (Արեմուտք), Ջարբի (Հյուսիս) և Տայման (Հարավ):*

*2 Զարմանալի է Ատրպատականը Արևելք (Մաշրիկ) համարելու պարագան, քանզի արաբ մասնագիրները միշտ իրանական այս նահանգը համարել են Հյուսիսի (Ջարբ) մի մասը:*

*3 Չափազանց արժեքավոր է այս տեղեկությունը, ուր պարզ կերպով ասվում է, որ Ատրպատականում ապրել են ազերի պարսիկներ (աջամ, ազարիյա) և իրոք այդ ազգաբնակչությունը ոչ միայն իրանական էր, այլև գրեթե պարսիկ: Նույնպիսի իրանական բնակչություն է ունեցել նաև Շարուանը:*

*4 Այստեղ թվում է թե ջավիդանները մի ինքնուրույն իրանական ցեղ, կամ ցեղախումբ էին ներկայացնում, որը հավանաբար ամբողջովին ընդունեց խուռամյան ուսմունքը և նրա քարոզիչի անունով էլ կոչվեց Ջավիդանիյա:*

*5 Այս արտահայտությունը տիրող իրական վիճակն է բացահայտում: Իրոք, խալիֆայության նահանգների տարեկան հարկի քանակը երբեք կայուն չի եղել, ոչ միայն մեկ խալիֆայից մյուսին անցնելու հետևանքով, այլև նույն խալիֆայի օրոք:*

*6 Զարմանալի է այս տեղեկությունը, քանի որ Տիզբոնը, դեռ նույնիսկ Արշակունիների օրոք, մայրաքաղաք է եղել:*

*7 Սալման ալ-Ֆարիսին (պարսիկ) ապրել է Արաբիայում, մոտիկ է եղել Մուհամմադին և օգնել է նրան:*

*8 Հուզայֆա իբն ալ-Յամանը Ասորիքում և Իրաքում արաբական արշավանքների մասնակից զորավարներից էր:*

*9 Ռումիյան Տիզբոնի քրիստոնեական թաղամասն է, որը կոչվել է հոռոմների (քրիստոնյա բյուզանդացիների) անունով: Հետագայում ևս Բաղդադում նեստորական կաթողիկոսի նստավայր վանքի (Դայր ալ-Ռում) շուրջը կազմավորված քրիստոնեական թաղամասը կոչվում էր Հոռոմների Տուն բնակավայր (Դար ալ-Ռում):*

*10 Հետաքրքրական է, որ այդ գործվածքեղենի տեսակները, որոնք ընդհանուր անունով հայկական (արմանի) են կոչվել գոյություն են ունեցել դեռ Ը-Թ դարերում, որի մասին եղակի տեղեկություն է Յակուբիի վկայությունը: Ինչ վերաբերում է հետագայում՝ Բագրատունյաց ժամանակաշրջանում գոյություն ունեցող այդպիսի արտադրությանը, ապա այդ մասին կան հարուստ վկայություններ Ժ դարի արաբ աշխարհագրագետների մոտ:*

*11 Յակուբիի թե՛ պատմության, թե՛ աշխարհագրության ձեռագրերը պակասավոր են և երկուսն էլ գտնվել են մեկական ձեռագրով: Այստեղ պակասող մասը պետք է վերաբերեր հենց Հայաստանին և եթե նկատի ունենանք, որ Յակուբին Հայաստանի մասին լավատեղյակ է, քանի որ այնտեղ ապրել է, ուստի պետք է ենթադրել որ նա շատ մանրամասն և կարևոր տեղեկություններ պետք է հաղորդեր: Նրանից երկու փոքր հատված պահպանվել է Իսպանիայում ապրած արաբ մատենագիր Շարիշիի (մեռ. 1222) մոտ (*Крачковский, т. IV, стр. 306*), ինչպես նաև պատմիչ-աշխարհագրագետ Աբու-լ-Ֆիդայի (1273–1333) աշխարհագրական երկում, որը և քառակուսի*

փակագծերի մեջ դնտեղում ենք, որպես լրացուցիչ նյութ:

12 Այս տեսյեկությունը, թե Արմինիան երեք մասի էր բաժանվում, մեծ նշանակություն ունեցող վկայություն է, որը մի մեծ թյուրիմացությունից է փրկում Հայաստանի արաբական շրջանի մասնագետներին: Գրեթե բոլոր արաբ աշխարհագրագետներն ու պատմիչները Արմինիան ըստ նախկին ժամանակաշրջանի (Զ-է դարեր) բաժանում են 4 մասի՝ Առան (Ա Հայաստան), Վիրք (Բ Հայաստան), արևելյան Հայաստան (Գ Հայաստան) և արևմտյան Հայաստան (Դ Հայաստան): Այս քառակի բաժանումը արաբական շրջանի համար ոչ մի վարչական, կամ ազգային հիմք չունի, իսկ Արմինիա նահանգի եռակի բաժանումը արդեն որոշ չափով ավելի մոտ է իրականությանը, քանի որ Հայաստանը հանդես է գալիս, որպես մեկ միավոր և իրոք նա Արմինիայի կազմում առանձին վարչական ազգային միավոր էր, որը կառավարում էր Հայոց իշխանը (բաթրիկ), իսկ մյուս երկու միավորներից առաջինը ընդգրկում է Հայոց արևելից կողմանք (Արցախ և Ուտիք նահանգները) և Աղվանքը, Նիրվանը և Դարբանդը: Երրորդ միավորը Վիրքն է (Ջուրզան):

13 Բյուզանդիային վերաբերող այս հատվածով վերջանում է Յակուբիի աշխարհագրական երկում հյուսիսի (Ջարբ) մասին հատվածը: Հեղինակը հիշում է, որ իր մյուս գրքում («Պատմություն») նա հիշել է Սահմանային ամրությունների (Սուղուր) մասին: Արու-լ-Ֆիդայի մոտ փոխվում է հաջորդականությունը: Հիշվում է Հայաստանը, ապա Վիրքը, որին թյուրիմացաբար միացվում է Գարբանդը: Միավորում է նաև Այանաց երկիրը, երրորդ տեղում հիշվում է Առանը, որին դարձյալ միացվում է Դարբանդը:

Ծանոթագրությունները՝ Արամ Տեր-Ղևոնդյանի

## ԻԲՆ ԱԼ-ՖԱԿԻՀ
(մահ. 903-ից հետո)

*Պարսիկ արաբագիր աշխարհագրագետ Աբու Բաքր Ահմադ իբն Մուհամմադ Իբն ալ-Ֆակիհը ծնվել է Իրանի Համադան քաղաքում, դրագետ ընտանիքում: Նրա կյանքի վերաբերյալ շատ բան հայտնի չէ: Ըստ երևույթին հեղինակ է երկու աշխատության: Դրանցից մեկը, որ ժամանակակից բանաստեղծների գործերի մի ծաղկաքաղ է եղել մեզ չի հասել, իսկ մյուսը՝ «Գիրք երկրների մասին» (Քիտաբ ալ-Բուլդան), որը գրել է շուրջ 903-ին, աշխարհագրական բնույթի է և կազմել է հինգ հատոր, բայց մեզ հասել է միայն դրանց հիման վրա կազմված սեղմ շարադրանքը, իրականացված ավելի քան հարյուր տարի անց՝ 1022-ին Ալի իբն Ջաաֆար ալ-Շայզարիի կողմից:*

*Այն գրված է գրական գեղեցիկ լեզվով և պարունակում է ոչ միայն զուտ աշխարհագրական տեղեկություններ, այլև ավանդություններ, առասպելներ, զրույցներ և այլ հետաքրքրական տեղեկություններ:*

*Հետագայում այս երկից մեջբերումներ է անում 13-րդ դարի մատենագիր Յակուտը: Իր երկում Իբն ալ-Ֆակիհը նկարագրում է մի ամբողջ շարք երկրներ, որոնք, ըստ նրանց հատկացված տեղի ու կարևորության, կարելի է դասավորել հետևյալ կերպ. Իրան, Արաբիա, Իրաք, Սիրիա, Եգիպտոս, Ռում, Ջազիրա, Նուբիա, Հաբեշստան. համառոտ ամփոփում է տրված Մաղրիբին, Անդալուսին և Սուդանին:*

**Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. Bibliotheca Geographorum Arabicorum, edidit M. J. De Goeje, Pars Quinta. Compendium libri Kitab al-Boldan, auctore Ibn al-Fakih al-Hamadhani, Lugduni-Batavorum, apud E. J. Brill, 1885.**

***(R. Blachère et H. Darmaun, Extraits des Principaux Géographes Arabes du Moyen Age, Paris, 1957, p. 70 , Ibn al-Fakih, H. Masse, EOI, CD-ROM, (III: 760b),*** Крачковский, IV, стр. 156*)*

**Տե՛ս նաև.**

1)Валидов А. З. Мешхедская рукопись Ибну-ль-Факиха. ИРАН, 1924, стр. 237-248.

2) Ибн ал-Факих, Ахбар ал-Булдан (Известия о странах) Введение, перевод с арабского, издание текста и комментарии А. С. Жамкочяна, Ереван, 1979.

## ԻԲՆ ԱԼ-ՖԱԿԻՀ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ
## (ՔԻՏԱԲ ԱԼ-ԲՈՒԼԴԱՆ)

## ԽՈՍՔ ԵՐԿՐԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՄԱՍԻՆ

*Էջ 4–7*

*Ասել է Մուհամմադ իբն Մուսա ալ-Խորեզմին, թե երկրի շրջանակի երկարությունն է ինը հազար փարսախ: Այս բոլորի միայն մեկ տասներկուերորդն է բնակելի, մնացած տարածության մեջ չկան կենդանիներ ու բուսականություն: Ծովերը բնակելի մասի մեջ են, ինչպես նաև անապատները, որոնք գտնվում են բնակված մասերի միջև:*

*Դորոտեոսը (Դուրիտույուս) գտնում է, որ երկրի յոթ իկլիմները համապատասխանում են երկնքի մեծ աստղերին: Երկու քաղաք կա Սատուրնի (Զուհալ) իկլիմում, երկու քաղաք՝ Յուպիտերի (Մուշտարի) իկլիմում, երկու քաղաք՝ Մարսի (Միրրիխ) իկլիմում, մեկ քաղաք՝ արևի իկլիմում, երկու քաղաք՝ Վեներայի (Զուհրա) իկլիմում, երկու քաղաք՝ Մերկուրիի (Ութարիդ) իկլիմում և մի քաղաք՝ լուսնի իկլիմում:*

*Ասում են, թե այս յոթ իկլիմներից մեկը գտնվում է արաբների ձեռքում, մի իկլիմը՝ հոռոմների ձեռքում, մի իկլիմ՝ եթովպիացիների (հաբաշ) ձեռքում, մի իկլիմ՝ հնդիկների ձեռքում, մի իկլիմ՝ թուրքերի ձեռքում, մի իկլիմ՝ չինացիների ձեռքում և մեկն էլ՝ Գոգի (Յաջուջ) և Մագոգի (Մաջուջ) ձեռքում: Մի իկլիմի բնակիչները չեն մտնում մյուսի հողերը:*

*Յոթ իկլիմների երկարությունը, ըստ առաջին իկլիմի վրա կատարված հաշվումների, երեսունութ հազար հինգ հարյուր փարսախ է, իսկ լայնությունը՝ հազար ինը հարյուր իննսունհինգ փարսախ է:*

*Բնակելի աշխարհը բաժանվում է չորս մասի՝ Եվրոպա (Արուֆա), որի մեջ են Անդալուսը, սլավոնները, հոռոմները, ֆրանկները և Տանժերը մինչև Եգիպտոսի սահմանները:*

*[Երկրորդ մասում է] Լիբիան (Լուբիա)[1], որի մեջ են Եգիպտոսը, Կուլզումը[2] (Կարմիր ծովի ափին), Եթովպիան (Հաբաշա), բերբերները, նրանց հարակից մասերը և Հարավային ծովը[3]: Այդ երկրներում չկա ոչ վարազ, ոչ եղջերու, ոչ նոխազ, ոչ այծ:*

*[Երրորդ մասում կան] Տիհաման[4], Եմենը, Սինդը[5], Հնդկաստանը:*

*Սկիթիայի մեջ են Հայաստանը, Խորասանը, թուրքերը և խազարները:*

*Հերմեսը (Հիրմիս)[6] գտնում է, որ ամեն մի իկլիմի երկարությունը հարյուր փարսախ է, ինչպես նաև լայնությունը:*

## ՄԱԴԻՆԱՅԻ ՄԱՍԻՆ

[...............]

*էջ 25*

*Նրա հրաշալիքներից է Արջ լեռը[7], որն ընկած է Մադինայի ու Մեքքայի միջև: [Լեռնաշղթան] ձգվում է մինչև Ասորիք և միանում Լիբանանի [լեռներին] Եմեսայի կողմից: Ապա ձգվում է մինչև Անտիոքի և Մամեստիայի լեռները, որոնք կոչվում են Լուքքամ (Ամանոս), միանում է Մալաթիայի, Շիմշաթի ու Կարնո քաղաքի լեռներին և վերջապես հասնում Խազարաց ծովը ուր Բաբ ալ-Աբուաբն է (Դաբրանդ):*

*Այստեղ [լեռնաշղթան] կոչվում է Կովկաս, որի վրա յոթանասուն լեզու է [խոսվում] և մի լեզուն խոսողը մյուսի լեզուն չի հասկանում առանց թարգմանչի:*

## ԳԼՈՒԽ ՊԱՆԴՈՒԽՏՆԵՐԻ ՈՒ ՊԱՆԴԽՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*էջ 50–51*

*Ասել է, և եթե չլիներ պանդուխտների (ճանապարհորդների) պանդխտությունը, չէին իմանա այն բոլորի մասին, որ Անդալուսի ու Չինաստանի միջև գոյություն ունի ու ոչ էլ Ալեքսանդրը[8] կկառուցեր պարիսպը[9], նվաճած կլիներ երկրները, ոչ շինացրած կլիներ քաղաքները, հպատակված կլինեին թագավորները, ոչ էլ սպանված կլիներ Դարեհի որդի Դարեհը[10], կամ գերված կլինեին հեծյալները և ոչ էլ թագավորները հավաքած կլինեին նմանական սրերի շեղբերը, հնդկական մկունդները, բեւլուջական նիզակները, խազարական զենքի ծայրերը, Հերատի սյուները, Ուշրուսանայի հատու սրերը, սողդիական դաշույնները, չինական թամբերը, Սաբուրի (Իրան) զրահները, պարսկական զրահները, Շաշի աղեղները, թուրքական լարերը, նաուիական նետերը, սիջիստանյան կապարճները, մաղրիբյան կաշվե վահանները, տիբեթյան վահանները, զինջի (աֆրիկյան) կաշիները, բերբերական վագրերը, Խանաբադի սանձերը, Մերվի ասպանդակները, չինական վարագույրները, խազարական ձիերը, Կումի աթոռները, Բուխարայի ձիերը, հայկական ջորիները, Մարիսի (Վերին Եգիպտոսում) ավանակները, (Անտիոքի) Սելևկիայի շները, հռոմների բա-*

գնները, Նիհավանդի մականները, Ռնյի լուսավոր ղդեստները, Ղազվինի պատմուճանները, Սաւիղի[11] զդեստները, նմնական զգեստները, եղիպտական Թիկնոցները, խորասանյան մետաքսե զգեստները, Թահիրի (Բագդադի մոտ) զգեստները, անդալուսյան գործվածքները, Օմանի մարգարիտը, Ցեյլոնի (Սարանդիբ) հակինթը, չինական մետաքսը, Տուստարի գիպակը, հոռոմների մետաքսը (րաղիուն), եգիպտական քթանը, Քուֆայի գույները (Ուաշյ), Սպահանի (Իսֆահան) [.........]:

## ԽՈՍՔ ԴԱՄԱՍԿՈՍԻ ՄԱՍԻՆ

էջ 125

Աբու Իսհակը հիշել է, որ Սանաա (Եմեն) քաղաքում տեսել է խաղողի մի տեսակ, որը կոչվում է Մուխատտամ (օղակավոր), որի մեկ հատիկը կշռել է և գտել, որ չորս աստարից[12] ավելի է, իսկ աստարը չորս գիրհեմ է: Ռաշիդ [խալիֆայի] կառավարիչներից մեկը Եմենում, ուխտագնացություններից մեկի ժամանակ, նրա մոտ բերեց [այդ խաղողից] երկու ողկույզ՝ ուղտերի վրա բարձած [սապատի], երկու կողմերում:

Հայաստանի ու Ատրպատականի լեռներից տանում են [վաճառքի] որթատունկի փայտից հսկայական սեղաններ, որոնց շրջանակը երբեմն լինում է քսան Թիզ:

## ԽՈՍՔ ՋԱԶԻՐԱՅԻ ՄԱՍԻՆ

էջ 128-136

Հարցրել են Շաաբիին Ջազիրայի, այսինքն արաբաց Ջազիրայի (կղզի, Թերակղզի) մասին և նա ասել է, որ դա գտնվում է Ուդդայրի ու Հադրամաուտի միջև:

[Ճիշտն այն է, որ] ասվել է, Թե Ջազիրան (կղզին) Տիգրիսի ու Եփրատի միջև է, իսկ Մոսուլը, ինչպես նաև Ռակկան ու Ռաֆիկան, Ջազիրայի մեջ են: Ասել է Մուհամմադ իբն Հասանը՝ Արաբաց երկիրը նրանց երկիրն է, որոնցից գլխահարկ (ջիզիա) չի վերցվում և նրանցից պահանջվում է միայն ընդունել մահմեդականությունը, կամ սուրը (պատերազմը): Ուդդայբից մինչև Արյան Ադեն, ահա սա է [արաբական] Ջազիրան[13] (կղզին):

Մոսուլը (Մաուսիլ) այսպես է կոչվել, որովհետև միացնում է Ջազիրան ու Ասորիքը: Ջազիրան երկարում է Սամոսատից մինչև Բալադ ու Մոսուլից մինչև Հորդանան: Ասվել է նաև, Թե կոչվել է Մոսուլ

(Մաուսիլ՝ միացնող), քանզի միացնում է Եփրատը Տիգրիսին: Մոսուլ քաղաքը կառուցել է Մուհամմադ իբն Մարուանը, իսկ Մոսուլի Ռավանդը կառուցել է Ռավանդ իբն Բիուարասփը (Բիւրասպ):

Օմար իբն ալ-Խաթթաբ [խալիֆան] Մոսուլի կառավարիչ էր նշանակել Ուտբա իբն Ֆարկադ Սուլամիին 20 (640–641) թվականին: Նրա դեմ կռվեցին բերդի բնակիչները, իսկ նա գրավեց նրա արևելյան բերդը ռոնի ուժով, ապա անցավ Տիգրիսը և նրա հետ հաշտություն կնքեց մյուս բերդի ժողովուրդը պայմանով, որ գլխահարկ վճարեն և ով կամենա, իրավունք ունենա հեռանալու: Ապա նվաճեց Մարջն[14] ու նրա գյուղերը, Բանուհադրայի հողն ու Դասինը և քրդերի բոլոր անառիկ բերդերը:

Առաջինը, որ Մոսուլի հատակագիծ պատրաստեց, արաբներով բնակեցրեց ու քաղաքի վերածեց այն, Հարսամա իբն Արֆաջա ալ-Բարիկին էր: Օմարը Ուտբային հեռացրել էր Մոսուլից և կառավարիչ նշանակել Հարսամային: Նրանում (Մոսուլում) կային բերդը, քրիստոնյաների եկեղեցիները, տները, հրեաների թաղամասերը: Հարսաման քաղաք դարձրեց այն և կառուցեց մայր մզկիթը: Ապա կառուցեց Հադիսան, որը հին գյուղ էր և այնտեղ կար երկու եկեղեցի: Սա ես քաղաք դարձրեց և արաբների բնակեցրեց և սա կոչվեց Հադիսա (Նոր), քանի որ ավելի նոր է քան Մոսուլը: Ուտբա իբն Ֆարկադը նվաճեց Թիրհանը, Տիքրիտը և Տիքրիտի բերդի բնակիչներին նրաշխավորագիր տվեց նրանց անձերի, ունեցվածքի համար և Բաջարմակ[15] գավառը մինչև հասավ Շահրազուր:

Տիքրիտը Մոսուլի գավառներից է և նրա դիմաց անապատում կա Հադրա քաղաքը, Սինջարի[16] անապատում: Հեռավորությունը նրա և Տիգրիսի միջև տասնհինգ փարսախ է, իսկ նրա և Եփրատի միջև նույնպես տասնհինգ փարսախ է: Սպիտակ քարով են կառուցված թե՛ տները, թե՛ կտուրները և դռները: Գտնվում է բլրի վրա, ունի վաթսուն մեծ աշտարակ, իսկ մի աշտարակի ու մյուսի միջև կա ինը փոքր աշտարակ. ամեն մի աշտարակի գլխին կա ամրոց և ներքևում՝ բաղնիք: Նա գտնվում է Սարսար գետի վրա, որը ճեղքում է քաղաքը և մյուս կողմից դուրս գալիս, իսկ նրա երկու ափերին կան գյուղեր պարտեզներ: Սարսարը դուրս է գալիս Սինջարից ու թափվում է Եփրատը և այն նավարկելի գետ է:

Մոսուլի [նահանգում] են նաև Թիրհանը, Սիննը, Հադիսան, Մարջհայնան, Նինվեն (Նինուա), Բաջլին, Մարջը, Բանուհադրան, Բաադրան, Հիբտունը, Բանակլին, Հազզան, Բանասը, Մալան, Ռամինը, Հանայան, Բաջարման, Բարադիշը, Դասինը, Քաֆարիզզան:

Մոսուլի խարաջը չորս միլիոն դիրհեմ է:

Մոսուլում կա մի լեռ, որը ծառաշատ լինելու պատճառով կոչվում է Շարան, իսկ ծառը կոչվում է Շարա (մազոտ): Ասվում է նաև, թե

*այդ լեռը Բաջարմայում է գտնվում և կոչվում է Կանդիլ, իսկ պարսկերեն՝ Բալստ Շիրույեհ: Սա ամենաշեն լեռներից է, նրա վրա կա տանձ, խաղող, թռչունների տեսակներ և հսկա ծառեր, որոնք կտրում են և տանում Իրաք՝ Ձմեռ և ամառ ձյունը միշտ մնում է: Երբ Դակուկայից դուրս են գալիս նրա մի երեսը երևում է Փոքր Զաբի կողմից:*

*Ասել է Զուհրին՝ Վերին Միջագետքում (Ջազիրա), Օմար իբն ալ-Խաթթար [խալիֆայի] ոտք դնելու տեղ չէր մնացել, որ չնվաճվեր Իյադ իբն Ղանմի կողմից: Սա նվաճեց Խառանը, Ռակկան, Կիրկիսիան, Մծբինը, Սինջարը, Ամիդը, Նփրկերտը, Քաֆրտուսան, Թուր Արդինը, Մարդինի բերդը, Դարան և Արզնը:*

*Ռակկան Դիար Մուդարի կենտրոնն է, իսկ Ռաֆիկան աննշան վայր է եղել և այն շենացրել է Մանսուր [խալիֆան] 155 (771–772) թվին, Բաղդադի կառուցման ժամանակ և այնտեղ կայազոր է նշանակել Խորասանի զորքերից:*

*Նրա (Դիար Մուդարի) քաղաքներից են Եդեսիան, Սամոսատը, Սարուջը, Ռաս Քայֆան, ալ-Արդ ալ-Բայդան (սպիտակ հող), Տելլ Մաուզանը, Ռավաբին, Մազջինը, Մուդայբիրը, Սերգիուպոլիսը (Ռուսաֆա), Քաֆր Հաջարը և Ջազիրան:*

*Դիար Մուդարի խարաջը մեկ միլիոն վեց հարյուր հազար դիրհեմ է:*

*Դիար Ռաբիայի գավառներից են Մծբինը, Արզնը, Ամիդը, Ռաս Այնը, Նփրկերտը:*

*Մոսուլից Բալադ յոթ փարսախ է, Մծբինից Արզն, աջ ընթացքով երեսունյոթ փարսախ է, Ամիդից Ռակկա հիսունչորս փարսախ է:*

*Դիար Ռաբիայի խարաջը յոթ միլիոն յոթ հարյուր հազար դիրհեմ է:*

*Ջազիրայի հրաշալիքներից է Եդեսիայի եկեղեցին: Հռոմեներն ասում են, թե չկա Եդեսիայի եկեղեցուց ավելի գեղեցիկ քարաշեն շենք, իսկ Մանբիջի եկեղեցուց ավելի գեղեցիկ փայտաշեն կառուցվածք չկա: Ասվում է, որ Եդեսիայի շուրջը երեք հարյուր վաթսուն վանք կա: Եդեսիայում կար մի կնոջ պատկեր, որը կոչվում էր Հեղինե (Հայլանա), նստած աթոռին և չկար նրա մարմնի ու դեմքի նման գեղեցկություն: Մի մարդ (պատանի) սիրահարվել էր նրան ու հիվանդացել սիրուց: Սակայն եկել էր հայրը, կտրել սրա գլուխը և երբ պատանին նայել էր նրան, հանգստացել էր:*

*Ջազիրայի ու Դիար Ռաբիայի խարաջը ինը միլիոն յոթ հարյուր տասնհինգ հազար ութ հարյուր դիրհեմ է:*

*Արզնի [հարկը] մեկ միլիոն հիսունվեց հազար է:*

*Ամիդի [հարկը] մեկ միլիոն հարյուր հիսուն հազար է:*

*Դիար Ռաբիայում [գտնվող] Նփրկերտի [հարկը] ութ հարյուր հիսունվեց հազար է, նույնպես և այլ քաղաքներինը, ինչպես Մարդին,*

*Դարա, Բալադ, Սինջար, Կարդա, Բազարդա, Թուր Աբդին և Ռաս Այն, որոնց ընդհանուր հարկը հիշվեց:*

*Դիար Մուդարում Խառանի [հարկը] յոթ հարյուր քառասուն հազար է:*

*Եդեսիայի [հարկը] մեկ միլիոն երեք հարյուր հազար դիրհեմ է:*

*Սամոսատի [հարկը] մեկ միլիոն դիրհեմ է:*

*Սարուջի [հարկը] վեց հարյուր հազար դիրհեմ է:*

*Եփրատի գյուղերի [հարկը] վաթսուն հազար դիրհեմ է:*

*Ռաս Քաֆրայի [հարկը] երեք հարյուր հիսուն հազար դիրհեմ է:*

*Արդ ալ-Բայդայի [հարկը] հարյուր հիսուն հազար դիրհեմ է:*

*Ռակկայի [հարկը] հարյուր վաթսուն հազար դիրհեմ է:*

*Ռաֆիկայի, Ռավաբիի [հարկը] հիսունյոթ հազար դիրհեմ է:*

*Մազջինի, Մուդայբիրի [հարկը] հարյուր ութսունհինգ հազար դիրհեմ է:*

## ԽՈՍՔ ՌՈՒՄԻ ՄԱՍԻՆ

*էջ 136–139*

*Ռումը (Հոռոմների երկիրը) հիշեցինք այս տեղում, որովհետև հարևան է Ասորիքին ու Վերին Միջագետքին (Ջազիրա):*

*Ասել է Յահիա իբն Խալիդ ալ-Բարմաքին, թե թագավորները հինգն են՝ կահ կարասու թագավորը, դրաստի (ձիու) թագավորը, ունեցվածքի (դրամի) թագավորը, փղերի թագավորը և բուժըմպելիքի (էլիքսիր) թագավորը: Կահ կարասիի թագավորը Չինաստանի թագավորն է, դրաստի (ձիու) թագավորը թուրքաց թագավորն է, ունեցվածքի (դրամի) թագավորը արաբաց թագավորն է, փղերի թագավորը Հնդկաստանի թագավորն է, իսկ բուժըմպելիքի թագավորը (էլիքսիր) Հոռոմոց թագավորն է:*

*Ռումի երկիրը արևմուտքում է, արևմտյան քամու (դաբբարու) կողմը: Տարածվում է Անտիոքից (Անթաքիա) մինչև Սիկիլիա և Կոստանդնուպոլսից մինչև Տուլիա: [Բնակիչները] մեծ մասամբ հոռոմ ու սլավոն են: Անդալուսում բնակվում են սլավոնները (սակալիբա)[17]: Հոռոմները բոլորն էլ մելքիտ[18] (մալքանիա) քրիստոնյա են, Ավետարանը (Ինջիլ) կարդում են:*

*Նրանք ունեն կույսեր, ձիեր, ուլխարներ: Կառավարվում են Աստվածաշնչի (Տաուրատ) կանոններով: Ունեն արհեստներ, փիլիսոփայություն և բժշկություն:*

*Նրանք ամենահմուտ ազգն են նկարչության մեջ: Նրանց նկարիչը մարդուն այնպես է նկարում, որ ոչինչ չի վրիպում, ապա եթե չի հավանում (փոխում է) և մարդուն երիտասարդացնում է, կամ դարձ-*

նում է հասուն տարիքի և կամ՝ ծեր: Եթե նորեն չի հավանում, զզվեց-կացնում է ու հաճելի է դարձնում, ինչպես նաև ծիծաղկոտ, կամ ար-տասվող: Ապա տարբերություն է դնում չարախինդ ծիծաղի ու ամաչկոտ ծիծաղի, մտահոգվածի ու ժպտադեմի, ուրախության ու անհոգության միջև: Նա նույնիսկ պատկերը պատկերի մեջ է մտցնում:

Երբ Կավատ [արքան][19] և Ռումի թագավոր կայսրը հաշտություն էին կնքել, կայսրը նրան բաղում ընծաներ էր տվել և նվերների մեջ աղջկա (ջարիա, հարճ) ոսկե արձան, որը գիշեր ժամանակ երգում էր ու քնեցնում լսողին: Տվել էր նաև մի հսկայական վրան (փուսթաթ) և մի ղամբյուղ դոհարեղեն:

Խալիֆաներից մեկը Ումարա իբն Համզային ուղարկել է հոռոմոց թագավորի մոտ և գրել էր նրան սպառնալով իր հեծյալներով ու հե-տիոտն զորքով:

Պատմել է Ումարան՝ հասա մի վայր, ուր մարդը չի երևում տարա-ծության երկար լինելու պատճառով: Նստեցի, մինչև որ արտոնու-թյուն ստացա ու դնացի մի ուրիշ տեղ ու նորից նստեցի, մինչև որ երեք անգամ արտոնություն ստացա, ապա վերջապես հասա նրա (թագավորի) ապարանքը: Ինձ մտցրեցին մի ապարանք, ուր իմ ճա-նապարհի երկու կողմերում կար երկու առյուծ, իսկ ես պետք է ան-պայման նրանց միջով անցնեի: Մտածեցի թե մեռնելու եմ, սակայն պետք չէ ընկճված մեռնեմ և իմ ուժերը հավաքելով առաջ գնացի, երբ նրանց մոտ հասա, երկուսն էլ հանդարտվեցին, և ես անցա: Եթե նրանց միջով ճանճն անցներ, կտոր-կտոր կանեին: Մտածեցի՝ նա, որ երկու առյուծների միջով ինձ ապահով անցկացրեց, կանցկացնի նաև այս սրերից: Օգնության կանչեցի Ալլահին ու գնացի առաջ և երբ նրանց մոտ հասա, անշարժացան և ես անցա ու մտա երրորդ շենքը (ապարանքը), որի մեջն էր թագավորը:

Երբ մտա, տեսա որ նա ընդարձակ դահլիճում է, սակայն գրեթե չէի տեսնում նրան, քանի որ իմ ու նրա միջև մեծ հեռավորություն կար: Քայլեցի մինչև որ մեկ երրորդն անցա, և ահա ինձ պատեց մի կարմիր ամպ և ոչինչ չէի տեսնում: Տեղումս մեկ ժամ նստեցի, ապա շուրջս պարզվեց: Ելա ու քայլեցի և երբ երկու երրորդն էի հասել, մի կանաչ ամպ ինձ պատեց և իմ տեսողությունը ծածկվեց: Նստեցի, մինչև որ շուրջս պարզվեց և վեր կացա, քայլեցի ու հասա թագավո-րին, ողջունեցի նրան, իսկ թարգմանն իմ և նրա միջև էր, ապա հանձ-նեցի նամակը [խալիֆայի]: Հրամայեց նստել ու հարցրեց խալիֆայի ու տարբեր նահանգների մասին: Ապա կարգադրեց ինձ համար ապահովել կացարան և ինչ որ հարկավոր էր: Իսկ ինձ հրամայեց գնալ ու մյուս օրը ներկայանալ:

Հաջորդ օրը եկա և նա բարեկամաբար խոսեց: Մի օր նրա հետ ձի-

ով գնացինք ու հասանք մի պատի, որի վրա դուռ կար և պահապաններ: Մտանք ու տեսանք, որ կան մոշենու տեսակներ: Հարցրեց՝ գիտես այս ծառը, ասացի՝ ոչ: Ասաց՝ սա մի ծառ է, որի ծուխը բուժում է ուռուցքը և համեցնում ճաշը: Մտքումս ասացի՝ թե իմանայիր, որ սա մեր երկրում արհամարհված փայտի տեսակ է: Ապա գնաց ուրիշ պատի մոտ, որի վրա դուռ կար և պահապաններ: Մտավ և մենք ևս մտանք նրա հետ և տեսանք մեկ կաֆիզ (144 կանգուն) տարածությամբ հողամաս, որտեղ կար կապարի (քաբար) բույս: Հարցրեց՝ դիտե՞ս սա ինչ է, ասացի՝ ոչ և մտածեցի նույնը որ մտածել էի: Ասաց՝ սա մի բույս է, որը կոչվում է [..........], բուժում է պատռվածքը և դասվում է վիրաբույժների դեղերի շարքը: Մտքումս ասացի՝ թե իմանար որ սա մեզ մոտ լինում է միայն ավերակ վայրերում ու անապատներում և բոլորին մատչելի է:

Երբ նրա հետ մտերմացա ասացի՝ ով թագավոր, ուզում եմ մի բան հարցնել, ասաց՝ հարցրու ինչ կամենաս: Ասացի՝ տեսա երկու առյուծ, երկու սուր ու երկու ամպ և այսպես այսպես պատահեց, սակայն չգիտեմ պատճառը: Ասաց՝ երկու առյուծներն ու երկու սրերը հնարամտություններ են մեզ մոտ եկած դեսպաններին վախեցնելու համար: Սակայն, ինչպես տեսար, երբ մարդը մոտենում է, նրանք հանդարտվում են: Իսկ երկու ամպերի մասին կուզենայի քեզ բացատրել: Նա ձեռքով խփեց թախտի եզրին ու դուրս բերեց մի կարմիր հակինթի կտոր պայտի ձևով և ահա ամպն իր լույսով մեր շուրջը պատեց: Ապա ետ տեղը դրեց ու դուրս բերեց նրա քույրը՝ կանաչ զմրուխտը և մեզ պատեց կանաչ ամպը:

Երբ իմ մեկնման ժամանակը եկավ, [թագավորը] տվեց իմ բերած նամակի պատասխանը և ասաց՝ գնանք իմ պալատը: Դուրս եկանք ու հասանք մի պալատ, որի առջև պահակներ կային և դռները կնքված էին: Մի դռան առջև նա հրամայեց և դուռը բացվեց: Ներսում շուրջանակի շարված էին սպիտակ տոպրակներ: Ասաց՝ որը ցանկանում ես մատնանշիր: Ցույց տվեցի մի տոպրակ և նա հրամայեց բերել մի կավե աման, որից լցրեցին [տոպրակի մեջ], ապա հրամայեց կնքել: Հետո հրամայեց բացել մի ուրիշ դուռ առաջինի նման և ահա տեսանք կարմիր տոպրակներ: Ասաց՝ մատնանշիր որը կամենաս և ես մի տոպրակ ցույց տվեցի, որը նույնպես լցվեց կավե ամանից ու կնքվեց:

Գնացինք պալատ և նա հրամայեց բերել դարբնի մորթի ու դարբնի փուքս, մի ռաթլ պղինձ ու մի ռաթլ կապար, ապա հրամայեց վերջինը հալեցնել և հալեցվեց: Հրամայեց վրան թափել սպիտակ դեղը (տոպրակի) բթամատի եղունգի չափով, ապա լրիվ դատարկվեց և ստացվեց սպիտակ արծաթ: Հետո պղինձը հալեցրին և վրան [կարմիր տոպրակի դեղ] թափեցին նույն ձևով և ստացվեց կարմիր ոսկի:

Ասաց [Թագավորը]՝ քո տիրոջը հայտնիր, որ այսպիսին է իմ հարստությունը, իսկ իմ հեծելազորքը և հետիոտն զորքը գիտի որ [ձերից] ավելի մեծաթիվ է և հզոր:
Ասել է Ամարան՝ Մանսուր [խալիֆային] հաղորդեցի այս զրույցը և դա էր, որ նրան մղեց պահանջելու որ [զարգացնեն] քիմիան:
Ասել է նաև՝ նրա (հոռոմների Թագավորի) հավաքույթների ժամանակ իմ տեսած ամենազարմանալի բանն այն էր, որ երբ նա ուղում էր որևէ մեկին դուրս ուղարկել, վերջինիս ետևում պատից մի Թաթ էր դուրս գալիս և հրում նրան և սա իմանում էր, որ [Թագավորը] հրամայել է վեր կենալ:

էջ 146–148

Ռումի ծովը [ձգվում է] Անտիոքից Կոստանդնուպոլիս, ապա շրջվում է գալով արևմտյան քամու կողմից, մինչև որ դուրս է գալիս Դարբանդ խազարների կողմից, իսկ [մյուս կողմից] հասնում է Իֆրիկիայի Կայրուան [քաղաքը] և Իֆրիկայի Տրիպոլիսը, մինչև որ հասնում է Անդալուս և հեռավոր Սուս, մինչև Երջանկության կղզիները:
Ռումի երկիրը արևմտյան կողմում է և տարածվում է Անտիոքից Սիկիլիա և Կոստանդնուպոլսից՝ Տուլիա: Նրա բնակչության մեծամասնությունը հոռոմ, սլավոն և անդալուսցի է:
Թագավորական Կոստանդնուպոլիսը և Անտիոքը ծովի ափին են և այնտեղ են հավաքվում պատրիկները: Տարսոնից Կոստանդնուպոլսի ծոցը հարյուր մղոն է: Այստեղ (Կոստանդնուպոլսում) կա Կոստանդնուպոլիսը պաշարող Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքի կառուցած մզկիթը: Ապա [ճանապարհն] անցնում է Կոստանդնուպոլսի ծոցով, մինչև որ հասնում է Աստրիքի ծովը: Արիդոսում ծոցի լայնությունը մեկ նետընկեց է: Այստեղ կա մի մեծ ժայռ, վրան աշտարակ, նրանից կախված է մի շղթա, որը խանգարում է մահմեդականների նավերի ծոցը մտնելուն:
Ամորիոնը ծոցից այս կողմ է, նրա և Կոստանդնուպոլսի միջև [տարածությունը] վաթսուն մղոն է: Ասվում է, որ հոռոմների պատրիկները, որոնք Թագավորի մոտ են Կոստանդնուպոլսում, տասներկուսն են: Նրանց հեծելազորը չորս հազար է, հետիոտնը նույնպես չորս հազար է:
Նրանց հողահարկը միսահա է, ամեն երկու մոդից երեք դինար (ոսկեդրամ) տարեկան: Բերքի մեկ տասներորդը (տասանորդ) վերցվում է ու տարվում շտեմարանները զորքի կարիքների համար: Հրեաներից ու զրադաշտականներից (մաջուս) ամեն մարդուց վերցվում է տարեկան մեկ դինար և ամեն մի տնից, ուր լույս է վառվում՝ տարեկան մեկ դիրհեմ (արծաթ):

*Հոռոմներն ունեն կովեր, ձիեր, ոչխարներ, ունեն զարմանալի մետաքս և ռումի դիպակ: Անուշահոտություններից ունեն՝ ստիրաքսը և մաստաքը (մաստաքի խեժը): Հայտնի են նաև հարճերն ու ծառաները (ներքինի): Նրանց ծովի հատակին բուսնում է բուստը (բուսսադ, մարջան):*

## ՔՈՒՖԱՅԻ ՄԱՍԻՆ

[............]

*էջ 175*

*Եփրատի ակունքը Կարնո քաղաքից (Կալիկալա) է և պտտվում է այդ լեռներով, մինչև մտնում է Ռումի հողը ու հասնում Կամախ և Մալաթիա, հետո գնում հասնում է Սամոսատ, որտեղից արդեն նավեր է տանում: Ապա նրա մեջ փոքր գետեր են թափվում:*

## ԽՈՍՔ ԲԱՍՐԱՅԻ ՄԱՍԻՆ

*էջ 192-193*

*[Ապա հետևում է] խոսքը Ֆարսի, Քիրմանի, Մուքրանի, Սիջիստանի, Դավարի երկրի մասին, ապա խոսքը Ջաբալի ու նրա քաղաքների, ինչպես Կիրմասինի, Համադանի ու հատկապես Սպահանի մասին, ինչպես նաև Ռեյի, Կազուինի, Աբհարի, Զինջանի, Ատրպատականի ու նրա քաղաքների, Հայաստանի ու նրա գավառների ու խազարների մասին, Գոգի ու Մագոգի, պարսպի, նրա կառուցողի (Ալեքսանդրի), Դարբանդի, նրա հիմնադրի մասին, վերջապես Խորասանի, Թաբարիստանի, Ռույանի, Թուրքերի, նրանց դեպքերի, ցեղերի, Թագավորների ու քաղաքների մասին:*

## ԽՈՍՔ ՖԱՐՍԻ ՄԱՍԻՆ

*էջ 197*

*Ասել է Արգաչիրը, որ երկիրը բաժանվում է չորս մասի: Դրանցից մեկը Թուրքաց երկիրն է, որը գտնվում է Հնդկաստանի արևմտյան մասերի ու Ռումի արևելյան կողմերի միջև: Երկրորդ մասն է Մաղրիբի (արևմտյան) երկիրը, որն ընկած է Ռումի արևմտյան մասերի և ղպտիների ու բերբերների միջև: Երրորդ մասը տարածվում է մինչև Սավադ (Ստորին Միջագետք), որը գտնվում է բերբերների ու Հնդկաստանի միջև: Չորրորդ մասն այն երկիրն է, որ վերագրվում է Ֆարսին (Պարսք) և գտնվում է Բալխ գետի, Ատրպատականի ու*

Պարսկական Հայաստանի միջև մինչև Եփրատ: Ապա դալիս է Արաբաց Հույր մինչև Օման, Մուքրան, Քաբուլ ու Թոխարիստան:

## ԽՈՍՔ ԿԻՐՄԱՍԻՆԻ ՄԱՍԻՆ

էջ 209-210

Ասել է Աբու Մունդիր Հիշամ իբն ալ-Սաիբ ալ-Քալբին, թե երբ Կուտայբա իբն Մուսլիմ զորավարը հաղթեց Հազկերտ արքայի (Խոսրովի) որդի Պերոզին (Ֆիրուզ իբն Քիսրա Յազդաջիրդ) և նվաճեց Խորասանը, բռնեց նրա աղջկանը և նրա հետ եկած զամբյուղով Հաջջաջ իբն Յուսուֆին, իսկ վերջինս նրան (աղջկան) ուղարկեց Վալիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆային] և սա (աղջիկը) նրա համար ծնեց Եզիդ (Յազիդ) Պակասավորին (նակիս): Հաջջաջը երբ թափ տվեց զամբյուղը, տեսավ որ նրանում կա մի պարսկերեն մատյան և կանչելով Ջագան Ֆառուխ իբն Փիրի ալ-Քասքարիին, թարգմանել տվեց.

«Հանուն արարչի՝ աստուծո, Պերոզի որդի Կավատը (Կուբադ իբն Ֆիրուզ) կարգավորեց իր երկիրը, չափեց ջրերն ու հողերը, որպեսզի իր համար մի քաղաք կառուցի և այնտեղ հաստատվի: Նա գտավ, որ իր երկրի ամենաբարեկարգ նահանգները, սկսած Իրաքից, որը երկրի սիրտն է, տասներեքն են՝ Տիզբոն. Սուս, Ջունդիշաբուր [.....]: Ամենացուրտ վայրերը վեցն են՝ Կարնո քաղաք (Կալիկալա), Արդաբիլ, Համադան [.....]: Ամենաշատ հիվանդություններ ունեցող վայրերը վեցն են՝ Սինդբիջան [.....] Պարտավ (Բարդաա), Ջինջան: Ամենաչոր վայրերը ութն են՝ Միսան, Դաստ Միսան, Քարտանիյա, Բադարայա, Բաքուսայա, Մասաբդան, Ռեյ, Սպահան: Ամենաժլատ բնակչություն ունեցող վայրերն ինն են՝ Խորասան, Սպահան, Արդաբիլ, Մասաբդան, Բադարայա, Բաքուսայա, Իսթախր, Շիրազ, Ֆասա: Ամենաբարեբեր նահանգները տասն են՝ Հայաստան, Ատրպատական, Ջուր, Մուքրան, Քիրման [.....]: Երկրի ամենակատարյալ վայրերը տասն են՝ Հիրա, Մադաին (Տիզբոն), Քալուադի, Շապուր, Իսթախր, Ջանաբա, Ռեյ, Սպահան, Ղում, Նախճավան: Ամենախելացի մարդիկ ունեցող վայրերը յոթն են՝ Ուքբարա, Կաթրաբբուլ, Ակարփուփ, Ռեյ, Սպահան, Մասաբդան, Միհրաջանկադակ:

Ջնքի լավագույն դիտակ մարդիկ ապրում են չորս վայրերում՝ Համադան, Հուլուան, Սպահան, Շահրզուր: Երկրի ամենաթեթև (ամենաարագ) ջրերը տաս վայրերում են՝ Տիգրիս, Եփրատ [...]: Ամենախորամանկ բնակչություն ունեցող վայրերը տասնմեկն են՝ Խորասան, Սպահան, Ռեյ, Համադան, Հայաստան, Ատրպատական [...]: Ամենապատվական պտուղները յոթ վայրերում են՝ Մադաին, Շապուր, Արջան, Ռեյ, Նիհավանդ, Մասաբդան, Ջաբալի Հուլուան: Երկրի

ամենից անհետատես ժողովուրդն ապրում է ութ վայրերում՝ Բանդա-նիջան, Մասաբդան, Միհրաջանկադակ, Արդաշիրխուռա, Ռասհուր-մուզ, Հայաստան, Ատրպատական [...]»:

## ՀԱՄԱԴԱՆԻ ՈՒ ԻՐԱՔԻ ԳՈՎՔԻ ՈՒ ԲԱՄԲԱՍԱՆՔԻ ՄԱՍԻՆ

էջ 229

Ասվում է, որ երկրի ամենացուրտ տեղերն են Համադանը, Կարնո քաղաքը և Խորեզմը:

## ԲԱՀՐԱՄ ԳՈՌԻ ՊԱԼԱՏԸ ԵՎ ՎԻԹԻ ՇԻՐԻՄԸ

էջ 257

[...] Վերցնելով Քաբից, որն ասել է՝ գրքերում գտնում ենք, թե գրված է, որ ամբողջ աշխարհը պետք է կործանվի, նախքան Ասորի-քը քառասուն տարով: Մեքքան կկործանեն եթովպիացիք, Մադինան կկործանվի սովից, Բասրան կկործանվի ջրհեղեղից, Քուֆան կկոր-ծանեն թուրքերը, Ջիբալը կկործանվի շանթերով ու աղետներով, Խո-րասանը՝ զանազան տանջանքներով: Ռեյը կնվաճեն գեյմիկները և Թաբարիստանցիները: Իսկ Հայաստանն ու Ատրպատականը կկոր-ծանվեն ձիերի սմբակների տակ, շանթերով, աղետներով և այնպիսի հարստահարության կհանդիպեն, որի նմանն ուրիշները չեն տեսել:

## ԽՈՍՔ ՌԵՅԻ ՈՒ ԴՄԱՎԱՆԴԻ (ԴԱՆԲԱՎԱՆԴ) ՄԱՍԻՆ

էջ 270

Ոմանք պատմել են, որ Աստվածաշնչում (Տաուրատ) գրված է, թե Ռեյը երկրի դռներից մեկն է և այնտեղ է [կենտրոնանում] մարդկանց առևտուրը: Ասել է Մուհամմադ իբն Իսհակը, թե Ռեյը լավ օդ ունի, հրաշալի կառույցներ, վաճառականների դուռն է և ճանապարհների հանգուցակետը: Դա երկրի հարսն է, աշխարհի [գլխավոր] ճանա-պարհը և միջին կենտրոնը Խորասանի, Վրկանի (Ջուրջան), Իրաքի ու Թաբարիստանի միջև: Միաժամանակ երկրի լավագույն հողն է, բա-րեբեր ու հուռթի:

Այստեղ է գալիս Հայաստանի ու Ատրպատականի, Խորասանի, խազարների ու Բուրջանի[20] երկրի առևտուրը: Քանզի ծովի վաճառա-կանները ճանապարհորդում են արևելքից արևմուտք և արևմուտքից արևելք, տանելով դիպակ (մետաքս), ընտիր մետաքս (խազզ), ֆրանկների երկրից մինչև Ֆարմա[21]: Նրանք ծովի վրա Կուլզումից[22]

(Սուսղ) նավարկում են, այս ապրանքները տանելով Չինաստան, ապա բեռնում են դարչինը, ճամիրան և Չինաստանի բոլոր ապրանքները հասցնելով Կուլզում, հետո թեքվում են դեպի Ֆարմա:
Սրանք հրեա վաճառականներ են, որոնք կոչվում են Ռահղանիյա և խոսում են պարսկերեն, հունարեն (ռումիյա), արաբերեն, ֆրանկերեն (իֆրանջիյա): Դուրս են գալիս Ֆարմայից և ֆրանկների թագավորին վաճառում են մուշկ, հալվե (ալոե) և իրենց ամբողջ ունեցած [ապրանքը], ապա գալիս են Անտիոք ու հասնում Բաղդադ և Ուբուլա[23]:

## ԽՈՍՔ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ՄԱՍԻՆ

*էջ 284–285*

Ասել է Իբն ալ-Մուկաֆֆան, թե Ատրպատական անունը [ծագում է] Ատրպատ (Ադարբադ) իբն Իրան իբն ալ-Ասուադ իբն Սամ (Սեմ) իբն Նուհից (Նոյ): Ասվում է նաև, թե Ատրպատ իբն Բյուրասպից (Բայուրասփ) է:
Այն նվաճել է Մուղիրա իբն Շուբան 22 (642–643) թվականին և հարկ (խարաջ) է նշանակել:
Վակիդն ինձ պատմել է, թե արաբները երբ մտան Ատրպատական, այնտեղ տարան իրենց ցեղերին՝ եգիպտացիներից ու Ասորիքի բնակիչներից և ամեն մի ցեղ իր համար շրջան նվաճեց, այնպես, որ տեղական բնակիչներն սկսեցին նրանց համար հողը մշակել:
Վարդանակերտը (Վարսան)[24] բերդ էր և այն կառուցեց (շենացրեց) Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամը, նրա հողը բարեկարգեց ու ամրացրեց և սա դարձավ դաստակերտ (դայա): Սակայն հետո Օմայանների ձեռքից խլվեց ու տրվեց Ջաաֆար իբն Մանսուրի դուստր Ումմ Ջաաֆար Զուբայդային, իսկ Վարսանին (Վարդանակերտցի) սրա մաուլաներից էր:
Բարզանդը[25] մի գյուղ էր, ուր բանակ դրեց Աֆշինը Բաբեկի դեմ կռվի օրերին, ամրացրեց ու շենացրեց:
Մարաղան[26] կոչվում էր Աֆրահարուդ և Հայաստանի կառավարիչ Մարուան իբն Մուհամմադի ու նրա ընկերակիցների ձիերի թավալվելու (տամառաղա) վայրն էր, ուստի և կոչեցին Մարաղայի (թավալման) գյուղ, ապա մարդիկ գյուղ բառը ջնջեցին և ասացին [պարզապես] Մարաղա: Նրա բնակիչներն այն դարձրել էին Մարուանի տիրույթը, սակայն Օմայանների այլ կալվածների հետ խլվեց ու տրվեց Ռաշիդ [խալիֆայի] դուստրերից մեկին: Սակայն երբ Վաջնա ալ-Ազդին և Ազդ ցեղի մաուլա Սադակա իբն Ալին ասպատակեցին ու ապականեցին, [դրանից հետո]՝ Ռաշիդի խալիֆայության ժամանակ,

Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ նշանակվեց Խուլազմա իրն Խաղիմը, որը կառուցեց նրա պարիսպները, ամրացրեց, քաղաքի վերածեց և մեծաթիվ զորք նշանակեց:
Երբ Հայաստանում հայտնվեց Բաբեկը[27], [շրջակայքի] ժողովուրդն այստեղ (Մարաղա) ապաստանեց, բնակվեց և նրանում պաշտպանվեց:
Մարանդը փոքրիկ գյուղ էր, որն ամրացրեց Աբու-լ-Բախըը, ապա ամրացրեց Բախըը, իսկ հետո որդին՝ Մուհամմադը, որը պալատ կառուցեց:
Իսկ Ուրմիան հին քաղաք է և զրադաշտականները պնդում են, թե իրենց տեր (կրոնապետ) Զրադաշտը այստեղից է: Ազդ ցեղի մաուլա Սադակա իբն Ալին գրավել է այն և նրանում պալատներ (ամրոցներ) կառուցել:
Դավրեժում (Տաբրիզ) առաջինը հաստատվել է Ռավվադ ալ-Ազդին, ապա Վաջնա իբն Ռավվադը, որոնք կառուցումներ կատարեցին, պարսպով ամրացրին և նրանց հետ շատերը հաստատվեցին:
Մայանիջը և Ջիլբայան համդանիների բնակավայրերն են: Բարզա գավառը պատկանում էր Ավդիների տոհմին, իսկ Նարիզ գյուղը, որն ուներ հին, քայքայված բերդ, նստավայր դարձրեց Մուռ իբն Ամր ալ-Մաուսիլի ալ-Թաին, շինացրեց, նրանում ապրեցին նա և իր որդին: Նրանք իշխում էին Ատրպատականի կառավարչին ենթակա վիճակում: Սարատում ապրում են Քինդա ցեղից մարդիկ, որոնք Աշաաս իբն Կայսի հետ եղածների սերնդից են:
Պատմել է Մաքհուլ ալ-Շամին, թե երկրի վրա ամենաշուտ ավերվողը լինելու է Հայաստանը: Հարցնում են՝ ինչն է ավերելու: Ասում է՝ ձիերի սմբակները և կարծես տեսնում եմ Կայս [ցեղի արաբների] կանանց ոտքերի ապարանջանները (խալխալ), որ ցնցվում են և ձիավորները նրանց շուրջ պտտվում:
Ատրպատականի սահմանն է Պարտավից մինչև Զանջան: Նրա քաղաքներից են Բերկրին, Սալմաստը, Մուղանը, Խոյը, Վարդանակերտը, Փայտակարանը, Մարաղան, Նարիզը[28], Դավրեժը (Տաբրիզ): Նրա մյուս սահմանը, արևելյան կողմից հասնում է դելմիկների (դայլամ) երկիրը, Թարոմը (Թարմ), Գեղանը (Ջիլան): Նրա քաղաքներից են նաև Բարզան, Սաբուրաստը, Խունաջը, Մայանիջը, Մարանդը, Խոյը, Քուլսարան:
Իսկ Բարդանդը ավերակ էր և այն քաղաք դարձրեց Աֆշինը և այնտեղ հաստատվեց: Ճանապարհը Բարդանդից Վարդանակերտ, որն Ատրպատականի վերջին գավառն է, 12 փարսախ է:
Նրանում (Ատրպատականում) են նաև Գանձակը[29], Ջաբրավանը, Զրադաշտի քաղաք Ուրմիան, Շիզը[30], ուր կա Ատրվշնասպի (Ադարգուշնաս) կրակը, որը զրադաշտականների մոտ շատ հարգված է,

ապա Սալակը, Սինդարայա ու Բադդ, և Մայինհարաջ, Ուրմ գավառները:

Ատրպատականի հարկը (խարաջ) երկու միլիոն դիրհեմ է. իսկ Վարդանակերտը Ատրպատականի վերջին գավառն է այս կողմից:

## ԽՈՍՔ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

էջ 286–301

Ասել է Աբու-լ-Մունդիր Հիշամ իբն Մուհամմադ իբն ալ-Սաիբ ալ-Քալբին, թե Հայաստանը (Արմինիա) կոչվել է Արմինի իբն Լանթայի անունով, որը Հաբեթի (Յաֆիս) որդի Յունանի որդին է:

Հայաստանի սահմանն է Պարտավից մինչև Դարբանդ և մյուս կողմից մինչև Հոռոմոց (Ռում) երկիրը և մինչև Կովկաս լեռը, Սաբիրի թագավորությունն ու Լաքզի թագավորությունը: Ատրպատականի վերջին գավառից, որը Վարդանակերտն (Վարսան) է, մինչև Հայաստանի առաջին դավառը 8 ձիերի կայան (սիքքա) է. իսկ Պարտավից մինչև Տփղիս 10 ձիերի կայան է:

Առաջին Հայաստանը (Արմինիա) Սիսականն է, Առանը, Տփղիսը և այն նվաճել է Հաբիբ իբն Մասլաման: Նրանում է Պարտավը, որը կառուցել է ավագ Կավատը[31]. Նա կառուցել է նաև ալ-Բաբ ու-ալ-Աբուաբը (Դարբանդ), որն ամրոցներից է բաղկացած: Սա Աբուաբ (դռներ) է կոչվել, քանզի կառուցվել է լեռան ճանապարհների (կիրճերի) վրա: Դրանք երեք հարյուր վաթսուն ամրոցներ են՝ մինչև Ալանաց դուռը, որոնցից հարյուր տասն ամրոց գտնվում է մահմեդականների ձեռքում, մինչև Թաբարսարանի հողը, իսկ մնացած ամրոցները Ֆիլանի հողում և Սաբիրի տիրոջ ձեռքում են մինչև Ալանաց դուռը:

Թուրքերը (խազարները) հաստատվել էին ալ-Բաբ քաղաքում և Սալման իբն Ռաբիան կռվեց նրանց դեմ, սակայն նա և ընկերակիցները, որոնք չորս հազար էին, նահատակվեցին: Ասել է Աբդ ալ-Ռահման ալ-Բահիլին, հիշելով Սալման իբն Ռաբիային ու նրա գերեզմանը Բալանջար դետից այն կողմ, Բաբ ալ-Աբուաբում.

Երկու գերեզման ունենք՝ Բալանջարի գերեզմանը
Եվ մի գերեզման Չինաստանում.
Այն, որ Չինաստանում է, նվաճումներ է կատարում,
Իսկ այստեղինի միջով ջրվում է հողը անձրևի կաթիլներով:

Առաջին Հայաստանում են Փայտակարանը, Կապաղակը, Շիրվանը:

Երկրորդ Հայաստանում են Վասպուրականը, Դվինը, Շիրակը, Տայքը, Բագրևանդը, Նախճավանը:

Երրորդ Հայաստանում են Վիրքը, Սուղդաբիլը, Պնրոզ Կավատի

դուռը (Բաբ Ֆիրուզ Կուբադ), Լաքզը:
Չորրորդ Հայաստանում կա Ալյահի առաքյալի գործակից Սաֆուան իբն Մուաթթալ ալ-Սուլամիի գերեզմանը, նրա և Հիսն (բերդ) Զիյադի (Խարբերդ) միջև: Սրա վրա կա մի ծառ, որի պտուղը չգիտեն ինչ է. նման է նշի և համը մեղրից քաղցր է: [Չորրորդ Հայաստանում] են Շիմշաթը, Խլաթը, Կարնո քաղաքը, Արճեշը և Ապահունիքը:
Առանն ու Սիսականը խազարաց թագավորության մեջ էին եղել:
Մովսեսի (Մուսա) պատմվածքի մեջ ասված է՝ հիշում ես, որ կանգ առանք ժայռի մոտ: Ժայռը Շիրվանի ժայռն է, ծովը Գեղանի (Ջիլան) ծովն է, իսկ գյուղը Բաջարուանն է:
Կավատը կառուցել էր Փայտակարան քաղաքը, նույնպես և Պարտավ ու Կապաղակ քաղաքները, Սուդդ ալ-լաբինը (հում աղյուսե պարիսպ) և սրա երկայնքով կառուցեց վաթսուն քաղաք, որոնք կործանվեցին ալ-Բաբ ու-ալ-Աբուաբի կառուցումից հետո:
Ապա նրանից հետո իշխեց որդին՝ Խոսրով (Քիսրա) Անուշիրուանը, որը կառուցեց Շապորան, Մաղքութք և Քարքարա քաղաքները: Հետո կառուցեց ալ-Բաբ ու-ալ-Աբուաբը: Սա կոչվեց Աբուաբ (դռներ), որովհետև կառուցված էր լեռնային ճանապարհների (կիրճերի) վրա: Առան երկրում նա կառուցեց Շաքեի դռները և Դիդոյից (Դուդանիյա) դռները: Վերջինս մի ցեղ է, որը գտնում է, թե ծագում է Դուդան իբն Ասադ իբն Խուզայմայից: Նա (Անուշիրուանը) կառուցեց Դուրձուկքը (Դուրզուկիյա), որը տասներկու դուռ ունի, ամեն մի դռան վրա՝ քարե ամրոց: Վրաց երկրում կառուցեց մի քաղաք, որը կոչվում է Սուղդաբիլ, ուր բնակեցրեց ցեղեր Սողդի մարդկանցից ու Պարսից (Ֆարս) երկրի որդիներից և այն դարձրեց սահմանային զինանոց: Կառուցեց նաև Ալանաց դուռը և Սամցխեի (Սամսախի) դուռը, Գարդման ամրոցը և Սամշվիլդե (Սամշուլդա) ամրոցը: Կառուցեց Բալանջարը, Սամանդարը, Խազարանը և Շաբեն:
Նա գրավեց ամբողջ երկիրը, որ գտնվում էր հոռոմների ձեռքում, շինացրեց Դվին քաղաքը, ամրացրեց, կառուցեց Նախճավան քաղաքը, որը Վասպուրականի նահանգի քաղաքներից է: Նա կառուցեց Վայոց (Վայս) բերդը և ամրոցներ Սիսականի հողում, որոնցից է Քիլաբ բերդը[32] և Շահապոնքը և այնտեղ բնակեցրեց իր քաջ և կորովի սիսականցիներից (սիասիջիյա):
Նա կառուցեց պարիսպ իր և խազարների միջև, ժայռից ու կապարից, լայնությունը երեք հարյուր կանգուն (զիրա)[33], մինչև որ հասցրեց լեռների կատարը, ապա ծովի մեջ առավ-տարավ և այնտեղ երկաթե դռներ դրեց: Այնտեղ հսկում էր հարյուր մարդ, մինչդեռ [նախապես] կարիք էր լինում հիսուն հազար մարդու:
Պարսից գրույցներում պատմվում է, որ Անուշիրուանը, երբ վերջացրեց Բալանջար սահմանային ամրության պարսպի կառուցումը,

իսկ ծովում ծովապատնեշ (մեծ լեռ) պատրաստեց ու ամրացրեց, այնքան ուրախացավ, որ հրամայեց ծովապատնեշի վրա ոսկե գահ (սարիր) դնել, ապա այնտեղ բարձրացավ, փառք տվեց աստծուն և գոհացավ: Ասաց՝ ով տեր տերանց, որ ինձ ներշնչեցիր կառուցել այս սահմանային ամրությունը և ճնշել թշնամուն, փառք քեզ. ապա առաջնորդիր ինձ և պանդխտությունից հայրենիք վերադարձրու: Հետո ծնկի եկավ, երկրպագեց և նստվեց իր գորգին ու նմջեց:

Եվ ահա ծովից մի ինչ որ բան (ուրվական) բարձրացավ և իր երկարությամբ հորիզոնը ծածկեց և ամպ բարձրացավ, որը լույսը ծածկեց և քայլեց դեպի ծովապատնեշը: Հենելադորքը պատրաստեց աղեղները, իսկ թագավորը զարհուրած սթափվեց և ասաց՝ ինչ է պատահել ձեզ և նրանք պատմեցին: Ասաց՝ թողեք ձեր զենքերը, չի կարող պատահել, որ Աստված ինձ ներշնչեր հեռանալ իմ հայրենիքից տասներկու տարի, որ կառուցեմ սահմանային ամրություն, որպես ապաստան իր ծառաների և որպես ապահովություն իր երկրի ժողովրդի և ապա ինձ վրա ուղարկեր ծովի հրեշներից մեկը: Հեծյալները ետ քաշվեցին և ինչ որ բանը (ուրվական) մոտեցավ ծովապատնեշի գագաթին ու ասաց՝ ով արքա, ես այս ծովի բնակիչներից եմ և այս սահմանը ամրացված եմ տեսել յոթ անգամ և յոթ անգամ էլ կրկին ավերված եմ տեսել: Աստված մեզ՝ ծովի բնակիչներիս ներշնչել է, որ մի թագավոր, որն ապրելու է քո ժամանակաշրջանում և ունի քո պատկերը, ուղարկվելու է, որպեսզի ամրացնի սահմանը, այդ ամրությունը մնալու է հավիտյան և դու ես այդ թագավորը: Աստված թող քեզ առաջնորդի, բարին տա, քո իշխանությունը երկարեցնի և ահեղ դատաստանի օրը մեղմացնի քո երկյուղը: Ասաց ու սուզվեց ջրի մեջ:

Նա կառուցել է նաև Շիրվան քաղաքը[34], իսկ խազարաց երկրի ներսում գտնվող Բալանջարը կառուցել է Բալանջար իբն Յաֆիսը:

Երբ Անուշիրուանը ծովում վերջացրեց ծովապատնեշի գործը, հարցրեց այդ ծովի մասին և ասացին՝ ով արքա, այս ծովը կոչվում է Քարդարիլ[35] և նա երեք հարյուր փարսախ է երկու կողմերով (երկարությամբ ու լայնությամբ): Մեր և խազարների Բայդա[36] [քաղաքի] միջև չորս ամսվա ճանապարհ է ափի երկարությամբ: Խազարների Բայդայից մինչև այն պարիսպը, որ Ասֆանդիարն է կառուցել երկաթով, երկու ամսվա ճանապարհ է:

Ասաց Անուշիրուանը՝ պետք է [այս կողմերը] տեսնել, ասացին՝ չկա այնտեղ գնալու ճանապարհ, և կա մի վայր, որը կոչվում է Դահան Շիր, ուր հորձանուտ (ջրապտույտ) կա, որն անանցանելի է և ոչ մի նավ նրանից չի ազատվել: Ասաց՝ պետք է անպայման նավով գնալ ու զննել այդ հորձանուտը և տեսնել այդ պարիսպը: Ասացին՝ ով արքա, վախեցիր աստծուց քեզ և քո ընկերակիցների համար: Սակայն

նա չհամաձայնեց ու ասաց՝ նա, որ ինձ փրկեց ծովից հարձակվող հրեշից, կարող է ազատել նաև հորձանուտից: Այդ նպատակով նավեր պատրաստեցին և նրա հետ նավ մտան բարեպաշտ ու աստվածավախ մարդիկ: Օրերով ծովի վրա համառորեն նավեցին, մինչև որ հասան հորձանուտը, սակայն զարմացան, որ չկար ոչ մի լեռնաշղթա, որ փարոսի դեր կատարեր, ոչ էլ որևէ լեռ, որն ընդունեին որպես նշան իրենց վերադարձի ժամանակ: Նրանք դիմեցին թագավորին մեղադրելով նրան: Ասաց Անուշիրուանը՝ մաքուր սրտով պաղատեցեք, խնդրեցեք բարձրյալն Աստուծո: Անուշիրուանն ուխտ արեց, որ եթե աստված փրկի, ապա իր թագավորության աղքատ ժողովրդին յոթ տարի հարկերից կազատի: Այդ ժամանակ վերև բարձրացավ մի կղզի, որից վերև էին բարձրանում ալիքները, իսկ կղզու վրա լեռան մեծությամբ առյուծի արձան կար, որի հետսակողմը մտնում էր ջուրը և ապա երախից իջնում դեպի հորձանուտը: Այդ ընթացքում բարձրյալն Աստված ջրի երեսին ուղարկեց մի չնաձուկ՝ կետ ձկից մեծ, որը ցատկեց առյուծի բերանը և հորձանուտը հանդարտվեց, իսկ նավերն անցան և նա (Անուշիրուանը) հասավ իր նպատակին: Ապա հեռացավ դեպի Վրկան (Ջուրջան) և իր ուխտը կատարեց:

Ահմադ իբն Վաղիհ ալ-Իսրահանին հիշել է, որ ինքը երկար ժամանակ ապրել է Հայաստան երկրում և քարտուղարություն է արել նրա թագավորների ու կառավարիչների մոտ և որ նրանից ավելի բարիքներով լի ու կենդանիներով հարուստ երկիր չի տեսել:

Նա հիշել է, որ նրա (Հայաստանի) թագավորությունների (տիրույթների) թիվը հարյուր տասներեք է: Դրանցից է Սաբիրի թագավորությունը, որը գտնվում է ալանների ու Բաբ ալ-Աբուաբի (Դարբանդ) միջև: Այնտեղ գնալու համար միայն երկու ճանապարհ կա՝ մի ճանապարհ դեպի խազարաց երկիրը և մի ճանապարհ դեպի Հայաստան: Նրանում (Հայաստանում) կա տասնութ հազար գյուղ: Առանը նրա առաջին թագավորությունն է և նրանում կա չորս հազար գյուղ, որի մեծամասնությունը Սաբիրի տիրոջն է պատկանում:

Ասվում է, որ Բաբ ալ-Աբուաբը մի պարիսպ է, որը կառուցել է Անուշիրուանը: Սրա մի ծայրը ծովի մեջ է, իսկ մյուս ծայրը ծովի մեջ այնքան է հեռացել, որ ոչ մի հնարամտություն չի կարելի գործադրել [անցնելու]: Դեռ յոթ փարսախ էլ երկարացրել է մինչև խիտ անտառները և մի քարքարոտ լեռ, որի վրայով անցնելը դժվար է: [Պարիսպը] կառուցված է կոփած քառակուսի քարով, ամեն մի քարը հազիվ հիսուն մարդ կարող էր բարձրացնել: Այդ քարերը դրվեցին ու իրար միացվեցին գամերով: Այդ յոթ փարսախի վրա յոթ անցք (մասալիք) սարքեց: Այդ յոթ անցքերից ամեն մեկի վրա մի քաղաք կառուցեց, որոնց վրա պարսիկ ռազմիկների խմբեր նշանակեց, որոնք կոչվում էին ալ-Սիսիքին (սիսականցիք): Հիշվել է, որ Հայաստանի բնակիչնե-

րից պաշտոնյաներ (վադաիֆ) են նշանակվել այդ պարիսպը և դռները (աբուաբ) պահպանելու համար: Ամեն մի անցքի վրա մի դուռ է կախված: Պարսպի լայնությունը վերևում այնպիսին է, որ քսան ձիավոր առանց նեղվելու կարող են [մի շարքով] անցնել:
Բաբ (Դաբբանդ) քաղաքում սրբազան պատերազմի դռան (բաբ ալ-ջիհադ) վրա, պարսպի վերևում երկու քարե սյուն կա, ամեն մի սյան վրա երկու առյուծի պատկեր՝ սպիտակ քարից, իսկ նրանից ներքև՝ երկու քար, որոնց վրա երկու գազան կա: Դռան մոտ կա մարդկային պատկեր քարի վրա [քանդակված]: Նրա երկու ոտքերի միջև կա աղվեսի պատկեր՝ բերանում խաղողի ողկույզ պահած:
Քաղաքի մոտ կա ջրամբար (սահրիջ), որը կոչվում է Մարուֆի ջրամբար. ունի մի աստիճան (սանդուղք), որով իջնում են ջրամբարի մեջ, երբ ջուրը պակասում է: Այս սանդուղքի երկու կողմերում կան քարե առյուծներ, որոնցից մեկի վրա կա մարդու քարե պատկեր: Կառավարչի պալատի (իմարա) վրա նույնպես կա երկու առյուծի պատկեր՝ պարսպից դուրս ընկած, որոնց մասին Բաբի ժողովուրդն ասում է, որ պարսպի երկու թալիսմաններն են:
Կալիկալան մի կին է, որը կառուցել է Կարնո քաղաքը (Կալիկալա) և նրա անունով էլ կոչվել է: Այս բառի իմաստն է Կալիի բարեգործությունը:
Ինչ վերաբերում է Տառեխի լճին[37], ապա միշտ էլ նրանում թույլատրված է եղել [ձկնորսությունը], մինչև որ Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամը, դառնալով Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ, արգելեց ձկնորսությունը, ապա [լիճն] անցավ Մարուան իբն Մուհամմադին, իսկ նրանից էլ՝ բռնագրավվեց:
Հաբիբ իբն Մասլաման Օսման իբն Աֆֆան [խալիֆայի] կողմից նվաճեց Հայաստանի շատ քաղաքներ և Արղլլահ իբն Հատիմ իբն Նուման ալ-Բահիլին Մուավիայի կողմից կառավարիչ նշանակվեց: Հետագայում [Հայաստանի] կառավարիչ դարձավ սրա (Բահիլիի) որդին՝ Աբդ ալ-Ազիզը, որը կառուցեց Դվին քաղաքը, Պարտավը և բազում քաղաքներ:
Օսման իբն Աֆֆան [խալիֆայի] օրոք Հաբիբ իբն Մասլաման Հայաստանում նվաճեց Ջավախքը (Ջուրզան), Քուստի Փառնեսը (Քասփար)[38], Քասալը[39] (Քիսալ, Ղազախ), Հունարակերտը (Խունան)[40], Սամցխեն (Սամսախի), Դարդմանը, Քուստին (Քուսֆի բիս)[41], Շավշեթը (Շաուշիթ), Բազալեթը (Բազալիթ) հաշտությամբ՝ այն պայմանով, որ հարկ վճարեն իրենց գլուխների (գլխահարկ) և հողերի (հողահարկ) համար: Նա դաշինք կնքեց ծանարների (սաննարիյա)[42], Կղարջքի[43] ու Դիդոյից հետ հարկ [ստանալու] պայմանով:
Շամքորը հին քաղաք էր: Սալման իբն Ռաբիան այնտեղ [զորք] ուղարկեց, որը նվաճեց [քաղաքը]: Այն մնացել էր չեն վիճակում մինչև

որ ավերեցին Սևորդիք[44] (Սիյավարդիյա, Սավարդիյա). մարդիկ որոնք համախմբվել էին Եզիդ (Յազիդ) իբն Ուսայդ [ոստիկանի] Հայաստանից հեռանալու օրերին, նրանց ուժն ավելացել էր և չարիքները՝ չտացել: Ապա Մուտասիմ Բիլլահ [խալիֆայի] սարսյա Բուղան ջնջեց, ամրացրեց, այնտեղ վաճառականների հավաքեց և [քաղաքը] կոչեց Մուտավաքքիլիյա:

Սալման իբն Ռաբիան համաձայնությամբ նվաճեց Փայտակարան (Բայլական) քաղաքը: Նա իր հեծյալներին ուղարկեց ու նվաճեց Շակաշենը (Սիսար)[45], Մեծ Կուենքը (ալ-Միսկուան)[46], Ուտիքը (Ուզ), Մեծ Առանքը (Միսրիան)[47], Հարճլանքը (Մահրաջալիան)[48], որոնք չեն դավառներ էին և այլ վայրեր Առանում: Նա կոչ արեց Բաղասականի (Բալասջան) քրդերին ընդունելու մահմեդականությունը, սակայն նրանք կռվեցին նրա հետ, իսկ նա հաղթեց նրանց և [քրդերի] մի մասը [մնալով հեթանոս] ընդունեց գլխահարկ (ջիզիա) վճարել, մի մասն էլ [ընդունելով մահմեդականությունը] վճարեց սադակա:

Ապա Սալմանը գնաց Կուրի և Արաքսի միախառնման վայրը Բարդիջի[49] ետևում: Անցավ Կուրը, նվաճեց Կապաղակը և նրա հետ հաշտություն կնքեցին Շաքեն, Կամբեճանը, Խայդանը, Շիրվանի թագավորը, լեռների այլ թագավորներ, Մաղքթաց ու Շապորանի ժողովուրդը և Բաբ քաղաքը, որը հետո բաժանվեց: [Խաղարաց] խաքանը Բալանջար գետից այն կողմ իր ձիավորներով հանդիպեց նրան և նա (Սալմանը) չորս հազար մահմեդականների հետ սպանվեց: Այս Սալմանն առաջինն էր դատավոր նշանակվել Քուֆայում, մնացել էր քառասուն օր, սակայն ոչ մի բողոքավոր չէր եկել: Նա [հաղիսներ] էր պատմել Օմար իբն ալ-Խաթթաբ [խալիֆայի] մասին:

Ասվել է, որ երբ Հաբիբը Հայաստանի հողերի նվաճումը վերջացրեց, այդ մասին գրեց Օսման [խալիֆային], որն ստանալով Սալմանի մահվան գույժը, կամեցավ Հաբիբին [Հայաստանի] կառավարիչ նշանակել, ապա որոշեց նրան հավատի ռազմիկ (ղազի) դարձնել Ասորիքի ու Ջազիրայի սահմանային գոտիներում: Սահմանային գոտի [համարված] Հայաստանում (Արմինիա) նա կառավարիչ նշանակեց Հուզայֆա իբն ալ-Յաման ալ-Աբսիին[50], ապա հանեց նրան: Իսկ Հաբիբը վերադարձավ Ասորիք և արշավանքներ էր կատարում Հոռոմոց երկիրը: Նա հաստատվեց Եմեսայում, սակայն Մուավիան նրա փոխադրեց Դամասկոս, ուր և մեռավ:

[Օսմանը] Հայաստանի կառավարիչ նշանակեց ալ-Մուղիրա իբն Շուբային, ապա հեռացրեց նրան, կարգեց ալ-Կասիմ իբն Ռաբիա ալ-Սակաֆիին, իսկ Ալիի օրոք Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ նշանակվեց ալ-Աշաս իբն Կայսը[51], ապա մեկից ավելի [կառավարիչներ], մինչև որ նշանակվեց Մարուան իբն Մուհամմադը, որը նվաճեց Խաղարաց երկիրը և խորքը ներթափանցեց:

Ապա եկավ Աբբասյան տերությունը և Աբու Ջաաֆարը իր եղբոր՝ Աբու-լ-Աբբասի խալիֆայության օրոք Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ դարձավ: Երբ ինքը խալիֆա դարձավ, [Հայաստանի] կառավարիչ նշանակեց Եզիդ (Յազիդ) իբն Ուսայդ ալ-Սուլամիին[52], որն Ալանաց դուռը գրավեց և դիվանում գրանցված մարդկանցից մի կայազոր նշանակեց: Նա ճնշեց ծանարներին (սաննարիյա), մինչև որ նրանք համաձայնեցին հարկ (խարաջ) վճարել:

Հայաստանի ժողովուրդն ապստամբեց Հասան իբն Կահթաբա ալ-Թաիի կառավարչության ժամանակ[53]: Եզիդ իբն Ուսայդի հանվելուց հետո Մանսուր [խալիֆան] օգնական զորք ուղարկեց Ամիր իբն Իսմաիլի հրամանատարությամբ: Հասանը հաղթեց Մուշեղին (Մուշային), որը նրանց (հայերի) գլխավորն էր, ցրեց նրա զորքը և դրությունն իր օգտին կարգավորեց: Արա անունով է Փայտակարանում (Բայլական) Հասանի գետը և Հասանի այգին (բաղ)՝ Պարտավում, ինչպես նաև Հասանիյա կոչված կալվածները:

Հասանից հետո կառավարիչներ նշանակվեցին Օսման իբն Ումարան[54], Ռաուհ իբն Հատիմ ալ-Մուհալլաբին[55], Խուզայմա իբն Խազիմը[56], Եզիդ իբն Մազիադ ալ-Շայբանին[57], Ուբայդալլահ իբն ալ-Մահդին[58], Ֆադլ իբն Յահիան[59], Սաիդ իբն Սալմը[60] և Մուհամմադ իբն Եզիդ իբն Մազիադը[61]: Սրանցից ամենախիստ ձևով իշխողը Խուզայման էր, որը Դվինում ու Նախճավանում [հողերի] հաշվառում կատարեց, իսկ դա նախապես չէր եղել: Մամուն [խալիֆայի] իշխանության օրոք կառավարիչ դարձավ Խալիդ իբն Եզիդ իբն Մազիադը: Մուտասիմ Բիլլահ [խալիֆան] կառավարիչ նշանակեց Հասան իբն Ալի ալ-Բադղիսիին[62], որը հայտնի է Մամունի անվամբ: Սա բարեկամություն հաստատեց Հայաստանի պատրիկների (բաթարիկա) հետ, մեղմ վերաբերվեց, այնքան որ ապստամբեցին նրա դեմ: Ապա Հայաստանում պաշտոն ստացան կառավարիչներ, որոնք գոհանում էին բնակիչներից թեթև [հարկ] վերցնելով, մինչև որ Մուտավաքքիլը դառնալով խալիֆա այնտեղ (Հայաստան) ուղարկեց Յուսուֆ իբն Մուհամմադ իբն Յուսուֆ ալ-Մարուազիին[63], իր իշխանության գլուխ անցնելուց երկու տարի անց:

Հայաստանի խոշորագույն կենդանիներն են՝ ոչխարները, ցուլերը և շները, իսկ ձիերը փոքր են, փոքր են նաև ուղտերը, որոնց որովայնը համարյա գետնին է հասնում և նման են թուրքերի ուղտերին:

Կովկաս լեռան վրա յոթանասուներկու լեզու կա, ամեն մի լեզվով խոսողը մյուսի լեզուն առանց թարգմանի չի հասկանում: [Լեռների] երկարությունը հինգ հարյուր փարսախ է, կպած է հոռոմոց երկրին և [մյուս կողմից] հասնում է մինչև Խազարաց ու Ալանաց երկրի սահմանները: Կպած է նաև Սլավոնների (սակալիբա) երկրին: Նրանում կա սլավոնների մի ցեղ, իսկ մնացածը հայեր են:

Ասել են, թե [Հայաստանի] հրաշալիքներից է Կարնո քաղաքի քրիստոնյա եկեղեցիներից մեկում՝ մի տուն: Երբ ծաղկազարդի գիշերն է դալիս՝ այս տան ինչ որ տեղից սպիտակ փոշի է դուրս գալիս մինչև առավոտ: Առավոտյան այս բանը դադարում է մինչև հաջորդ տարին: Վանականները (եկեղեցականներ) այն հավաքում են և բաժանում մարդկանց, իսկ դրա հատկանիշն այն է, որ հակազդում է թույներին, կարիճի ու օձի խայթոցին: Դրանից մեկ դանգ[64] կշռով ածվում է ջրի մեջ և կծվածը կամ խայթվածը խմում է ու անմիջապես հանգստանում:

Կա նաև մեկ ուրիշ հրաշք, և դա այն է, որ այդ փոշին եթե վաճառվի, կամ փոխարենը որևէ աշխարհիկ բարիք վերցվի, ապա գործածողը չի օգտվի և իր ցավից չի ամոքվի:

Հայաստանի զարմանալիքներից է Խլաթի (Վանա) լիճը[65], քանզի նրանում տասը ամիս ոչ մի գորտ, խեցգետին, կամ ձուկ չի լինում, ապա երկու ամսով հայտնվում է ձուկը[66] և նա ամբողջովին թմրած է լինում:

Ասել է Աբու Մունզիրը, որ Թալիսմանները պատրաստել են Նոյի որդի Քամի (Համ) որդի Քուշը, Երկվիշապ Դահհաքը, Երկկոտոշավորը[67] (Ալեքսանդր), Հակոբի որդի Հովսեփը, Իմրանի որդի Մովսեսը (Մուսա), Հուլյան Ամաղեկացին (ամլիկի), Ապոլոնիոս (Բալինաս) Հոռոմը (ռումի) և Կամբիզը (Կանբուս):

Ատրպատականը հասնում է մինչև Արաքս և Կուր գետերը Հայաստանում: Արաքսը բխում է Կարնո քաղաքից, անցնում է Առանով, նրա մեջ թափվում է Առան գետը[68], ապա անցնում է Վարդանակերտով (Վարսան), հոսում է միախառնման վայրով ուր նա և Կուրը միանում են ու նրանց միջև մնում է Բայլական քաղաքը: Նրանք միասին անցնում են ու թափվում Վրկանա ծովը[69]:

Արաքսը մի զարմանալի [գետի] ձոր է, որտեղ կան ձկան տեսակներ: Նրանում լինում է շուրմահին[70] և միայն այս գետում է լինում: Հայտնվում է ամեն տարի՝ որոշակի ժամանակ, ինչպես ծովի կետերի տեսակները և ձկների վտառները, որոնք որոշակի շրջաններում են երևան դալիս, ինչպես թառափը (աստուր), ծովատառեխը (ջիրաֆ), պերկեսը (բարաստուջ): Այս տեսակները Բասրա են գալիս հեռավոր ծովերից, այդ շրջանի ջուրը հաճելի գտնելով: Այն, որ պերկեսը գալիս է այստեղ Զինջիների (սևամորթների) երկրից համտեսելու Բասրայի մոտ Տիգրիսի քաղցրահամ ջուրը, ապա դա հայտնի է բոլոր ծովայիններին:

Վերջիններս պնդում են, որ Բասրայի ու Օմանի միջև հեռավորությունն ավելի է, քան Բասրայի ու [Զինաստանի] Զինջիների երկրի միջև: Սակայն սխալվում են, կարծելով, որ Զինաստանն ավելի հեռու է, քանի որ Զինջիների ծովը[71] մի ընդարձակ ու խորը գոգավորություն

է, նրա ալիքները հզոր են և այդ ծովում քամի կա, որն ուժեղ է փչում:

Օմանից Զինջիների երկիրը երկու ամսվա ճանապարհ է: Երբ ծովը լինում է խորը, քամին՝ ուժեղ, իսկ ալիքները՝ հզոր և բարիքները քիչ են լինում Զինջիների երկրում, ապա պատահում է, որ առագաստները գործի չեն դրվում են ծովագնացների ճանապարհն ընթանում է լարի նման ուղիղ և ոչ աղեղնաձև:

Պերկեսը կտրում է ծովի ալիքները և լողում է Զինջիների երկրից դեպի Բասրա, իսկ այն մասը որ մնում է, մարդկանց արած որսից հետո, վերադառնում է իր երկիրը: Օրհնյալ լինի Ալլահը՝ արարիչներից լավագույնը:

Այս գետում (Արաքս) այլ ձկների շարքում հատկապես հայտնի է շուրմահին, հաճելի համի, առատ ճարպի և մսի հյութեղ լինելու շնորհիվ:

[Հայաստանի բնակիչներն] ասում են, մենք չատ մանանա (մանն) ունենք, որը տաքանջաբինն է: Ունենք որդան կարմիրը (կիրմիզ), որի նմանը ոչ ոք չունի: Սա մի կարմիր որդ է, որը հայտնվում է գարնանային օրերին և նրան հավաքում են, եփում, ապա նրանով ներկում են բուրդը:

Իսկ աչակը մի կենդանի է (դրաստ), որը լինում է Հայաստանում և նման է կատվին (սիննաուր), ճկուն հոդերով, մաղոտ մաշկով, որի մի քանի կտորն իրար կարելով դառնում է հագուստ: Նրա ժանիքները լավ են համարվում սիրո համար: Նրա ժանիքներն ու ճանկերը եթե վերցնես, չորացնես և տաս՝ ում որ սիրում ես, ապա նա ուժեղ կերպով կսիրի քեզ:

[Ասում են] թե ունենք տորոն բույսը:

Նրանում (Հայաստանում) կա սնդիկի հանք, պղնձարջասպ, պղինձ և կապար:

Նրանք ունեն հայկական ցուլեր: Ունեն առատ շագանակենի (շահբալութ) և կեչի (խալանջ), որից հրաչալիքներ են սարքում: Կեչին կտրում են Պարտավի կողմերում, անտառի թավուտից, որը ծառաշատ է և առատ բուսականությամբ: Սա կից է խազարներին, որից այն կողմ անցնում են դեպի Խորեզմի կողմերը: Կոչվում է ալ-Ռահմանի անտառի թավուտը:

Հայաստանի (Արմինիա) տարեկան հարկը երկու միլիոն երեսուներեք հազար ինը հարյուր ութսունհինդ դիրհամ է:

Բաբից (Դարբանդ) այն կողմ կա Սուրի (Սուլ) և Լաքզի թագավորը, Ալանաց թագավորը, Ֆիլանի թագավորը, Մասքաթց թագավորը, Սաբիրի ու Սամանդար քաղաքի տերը:

Վրկանից մինչև Խազարաց ծովը, նպաստավոր քամու դեպքում, ութ օրվա [ճանապարհ] է: Խազարները բոլորը հրեա են[72], սակայն վերջերս են հրեացել: Խազարաց երկրից մինչև պարսպի վայրը երկու

ամիս է: Ասել է Ալյահր Քարայրի (քահֆ) սուրայում.

«Եվ նրանք քեզ կհարցնեն Երկկոտոշավորի (Զու-լ-Կարնայն) մասին: Ասա՝ ես նրա մասին ձեզ մի բան պատմեմ: Մենք նրա համար երկրի վրա տերություն հաստատեցինք, նրան ամեն բանի հնարավորություն տվեցինք և նա գործադրում էր այդ միջոցները: Մինչև որ դնաց հասավ արեդակը մայր մտնելու տեղը և տեսավ, որ մայր էր մտնում մի ճահճոտ ջրհորի մեջ»: Նաև այն խոսքը, թե «Գոգն ու Մագոգը ասլականում են երկիրը»: Նրանք գարնան օրերին դուրս էին դալիս իրենց հողերը և ամեն ինչ, որ կանաչ է, ուտում էին, և ամեն ինչ, որ չոր է, տանում էին:

Ասել է. «ինչ բանի մեջ, որ Տերն ինձ ուժեղացրեց, լավ է: Ուստի ինձ զորությամբ օգնեցեք և ես ձեր ու նրանց միջև մի պարիսպ կկառուցեմ»:

Ասել են [Ալեքսանդրին]՝ ի՞նչ ես կամենում, ասել է՝ երկաթե դըրաններ, այսինքն երկաթե կտորներ: Ապա հրամայեց դրանից խոշոր աղյուս պատրաստել: Պղինձը հալեցրին, հալած վիճակում աղյուսի համար չաղախ դարձրին և դրանով փակեցին կիրճը և հավասարեցվեցին լեռան երկու գագաթները: Երբ վերջացրեց, [Ալեքսանդրը] հրամայեց ձուլել պղինձը և վերևից թափեց նրա վրա և այն դարձավ ամբողջական դանգված: Այս ավարտելուց հետո դնաց այդ երկրից և հեռացավ չորս ամսում:

Զրույցներում հիշվում է, որ երբ նա եկել էր [առաջին անգամ] այդ պարսպի վայրը, մարդիկ մեծ բազմությամբ հավաքվել էին նրա մոտ և ասել՝ ով հաղթական թագավոր այս լեռներից այն կողմ կան ցեղեր, որոնց թիվը միայն Աստված գիտի: Նրանք ավերել են մեր երկիրը և [փչացրել] մեր ցանքսերը: Ասաց՝ ի՞նչ տեսք ունեն, ասացին՝ կարճահասակ են, ճաղատ, լայն դեմքով: Ասաց՝ քանի տեսակ են, ասացին՝ շատ ցեղեր են և միայն Ալլահը գիտի նրանց հաշիվը: Հարցրեց՝ ինչպե՞ս է նրանց անունները, ասացին՝ նրանցից վեցը մեզ մոտեցել են և դրանք են՝ Գոդ, Մագոդ, Տավիլ, Տարիս, Մանսաք, Քումարա: Դրանք բոլորն էլ աշխարհի այլ ժողովուրդների նման են, իսկ նրանք որ հեռու են մեզանից, ապա այդ ցեղերին չգիտենք: Նրանք մեզ վրա հարձակվում են միայն այս կողմից, այսինքն կիրճից, արդյոք քեզ հարկ վճարենք, որ դու պարսպով փակես և մեզ նրանցից ազատես: Ասաց՝ իսկ ինչ է նրանց կերածը, ասացին՝ ամեն տարի ծովը երկու ձուկ է դուրս նետում, ամեն մի ձուկը տաս օրվա ճանապարհի երկարություն ունի:

Ահա այսպիսով էր, որ նա կառուցել էր պարիսպը:

Զրույցում պատմվում է, որ պարիսպը բաղկացած է պղնձե մի կարմիր շերտից և երկաթե սև շերտից: Գոգն ու Մագոգը քսանչորս ցեղերից են բաղկացած: Դրանցից մեկը [այդ ժամանակ] արշավանքի

էր դուրս եկել և դա Թուրքերն են: Այսպիսով Երկկոտոշավորը (Ալեքսանդր) պարսպից այն կողմ քսաներեք ցեղերի է փակել:

Պատմել է Մուկատիլ իբն Սուլայմանը, որ նրանք կոչվել են Թուրքեր, որովհետև Թողնվել (արաբ.՝ տարաքա-Թողնել) են պարսպից այն կողմ:

Ասվել է, որ երբ կգա Հիսուսը (Իսա) և կսպանի անիծյալ Նեռին (դաջջալ, Հակաքրիստոս), Գոգն ու Մագոգը նորից երևան են գալու: Հիսուսը մահմեդականներին կքարոզի, փառավորելով Աստծուն (Ալլահին) և աղերսելով՝ ով Աստված, հաղթանակ պարգևիր քեզ հնազանդներին, որոնք փոքրամասնություն են ի հեճուկս մեծամասնության, որն անհնազանդ է քեզ, և Աստված հավատացյալներին հաղթանակ կպարգևի նրանց դեմ:

Վահբ իբն Մունաբբիհը պատմել է, Թե նրանք (Գոգն ու Մագոգը) բարձրահասակ են, սովորական մարդու մեկուկես անգամը: Մեր ձեռքերի եղունգների փոխարեն ունեն ճիրաններ, նաև ատամներ ու ժանիքներ առյուծների նման, խոշոր ականջներ, որոնցից մեկի վրա պառկում են, իսկ մյուսով ծածկվում են: Չկա արու, կամ էգ, որը չիմանա իր վախճանի ժամը: Էգը չի մեռնում, մինչև արգանդից չծնվի հազար երեխա: Նրանք գարնանը ծնում են վիշապներ, որոնցից անձրև են հայցում ինչպես ամպից: Իրար կանչում են աղավնիների նման, գայլերի նման ոռնում են և իրար հանդիպելիս զուգավորվում են անասունների նման:

Ասել է Իբն Աբբասը, Թե երկիրը վեց մասից է բաղկացած, ընդ որում Գոգն ու Մագոգը հինգ մասերն են զբաղեցնում, իսկ մնացած արարածները մեկ մասի վրա են:

Պատմել էր Սալլամ ալ-Տարջումանը, Թե Վասիկ Բիլլահ [խալիֆայի] օրոք դուրս եկանք Սամառայից, նրա (Վասիկի) մոտից և ապա դուրս գալուց քսանութ ամիս անց վերադարձանք նրա մոտ:

## ԽՈՍՔ ԹԱԲԱՐԻՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

[.............]

էջ 305

Նրանում կա մի ժողովուրդ, որն ունի իր հավատը, կառուցել է մզկիԹներ և Շալուսի ժողովուրդը խնամիացել է նրա հետ: Նրանից այն կողմ գտնվում են դեյլեմիկները, որոնք երբեք ոչ ոքի չեն հնազանդվել: Նրանց գյուղերն ու լեռները հասնում են Հայաստանի ու Բաբ ալ-Աբուաբի լեռներին:

# ԻԲՆ ԱԼ-ՖԱԿԻՀ
# ԳԻՐՔ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## (ՔԻՏԱԲ ԱԼ-ԲՈՒԼԴԱՆ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Լիբիա (Լուբիա) – Արաբ հեղինակները փոխառնելով անտիկ աշխարհի տեղանունները Լիբիա կամ Լուբիա ասելով նկատի ունեն Աֆրիկա մայրցամաքը: Սակայն զուգահեռաբար մատենագիրները հիշատակում են Լիբիա անվանումը որպես մի նահանգ, կամ վայր արևմտյան Եգիպտոսում: Ուշ միջնադարում Լիբիա անվանումը գործածությունից դուրս է գալիս: 19-րդ դարի վերջից սկսած, այն կրկին սկսում է օգտագործվել, բայց եվրոպական ազդեցությամբ և արդեն միայն «երկրամաս» իմաստով: Միայն 1934 թ. էր, որ Իտալիայի կողմից նվաճված ու գաղութացված նախկին օսմանյան երկու երկրամասերին (Կիրենաիկա և Տրիպոլիտանիա) միասնաբար տրվեց Լիբիա (արաբ. Լիբիյա) անվանումը, որը շարունակեց կրել նաև հետագայում անկախություն ձեռք բերած պետությունը: (Libiya, (Ed.),* EOI, CD-ROM, *(V: 753b)):*

[2] *Կուլզում – Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 22:*

[3] *Հարավային ծով – Թերևս Կարմիր ծովի մասին է խոսքը:*

[4] *Տիհամա – Արաբական թերակղզու այն նեղ շերտը, որը ձգվում է Կարմիր ծովի ափի ողջ երկայնքով՝ Աքաբայից մինչև Բաբ ալ-Մանդաբ: (Tihama, G. R. Smith, EOI, CD-ROM, (X: 481a)).*

[5] *Սինդ – Այս անվանումը ծագում է հին հնդկական Սինդհու անունից: Այն վերաբերում է Ինդոս գետի ստորին հոսանքի շրջանին: Ներկայումս ընդգրկված է Պակիստանի տարածքում: Սինդը նվաճվեց արաբների կողմից 8-րդ դարի սկզբին, հիմնականում Վալիդ խալիֆայի օրոք և մաս կազմեց Խալիֆայության: (Sind, Yolande Crowe, EOI, CD-ROM, (IX: 632a)):*

[6] *Հերմես (Հիրմիս) – Հերմեսը, կամ Հիրմիսը, հին եգիպտական Թոթ աստծու հունական անվանումից է ծագում, սակայն արաբական ավանդության մեջ այս տարօրինակ աստվածը մարդացած ձևով է հանդես գալիս, որպես հին ժամանակների հերոսներից մեկը: Ընդ որում, նա մարմնավորվում է երեք տարբեր անձերի մեջ. «առաջին Հերմեսը» նույնացվում է Ենովքի և Իդրիսի հետ: Նա, ըստ ավանդության, ապրել է Եգիպտոսում՝ նախքան ջրհեղեղը: Նա կառուցել է բուրգերը և այլ սրբատեղիներ, որոնց պատերի վրա արձանագրել է հին մարդկանց գիտական նվաճումները, որպեսզի դրանք պահպանվեն ջրհեղեղից հետո: «Երկրորդ Հերմեսը» ապրել է ջրհեղեղից հետո՝ Բաբելոնում, վերածնելով գիտությունները, վերջապես՝ երրորդը ապրել է Եգիպտոսում, նույնպես ջրհեղեղից հետո և գրել է տարբեր գիտությունների ու արհեստների մասին: (Hirmis, M. Plessner, EOI, CD-ROM, (III: 463b)).*

[7] *Արջ լեռ – Իբն ալ-Ֆակիհի այս միտքը, որ Կովկասյան լեռները շարունակությունն են կազմում Ջաբալ (լեռ) ալ-Արջի, որը Հիջազից երկարում է մինչև Սիրիա, մինչև Ամանոսյան լեռներ, ապա միանում Հայկական լեռնաշխարհի լեռներին, կրկնում է նաև 13-րդ դարի աշխարհագրագետ Յակուտը իր «Բառգրքի» «Կաբկ» (Կովկաս) հոդվածում: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 98–99):*

[8] *Ալեքսանդրը – Տե՛ս Վահբ, ծնթգր. 2:*

[9] *Կկառուցեր պարիսպը – Նկատի ունի Ալեքսանդր Մակեդոնացու կառուցած պարիսպը առասպելական Գոգ ու Մագոգից պաշտպանվելու նպատակով:*

[10] *Դարեհի որդի Դարեհը – Նկատի ունի Պարսկաստանի Դարեհ Գ Կոդոման ար-*

*քային, որը իշխել է Ք. ա. 336-330 թվականներին: 335 թվականին նա վերանվաճեց Եգիպտոսը, իսկ 333 թվականին Իսոսի մոտ պարտություն կրեց Ալեքսանդր Մակեդոնացուց: 331 թվականին Գավգամելայի ճակատամարտում, նրա բանակը վերջնականապես ջախջախվեց և Դարեհ Գ-ը փախավ Արևելյան Իրան, որտեղ նրան սպանեց իր սատրապներից մեկը: (*Сов. Ист. Энц., т. 4, стр. 1011*):*

[11] *Սաիդ - Բնակավայր Հարավային Եգիպտոսում:*

[12] *Աստար — Կամ իստար: Ծագում է Հունական statera-ից, կշռի միավոր որ Հավասար է 20 դրամի: (*Хинц, Меры и веса, стр. 21*).*

[13] *Ջադիրա - Տե՛ս Վակիդի, ծնթղր. 4:*

[14] *Մարջ - Տե՛ս Դինավարի, ծնթղր. 12:*

[15] *Բաջարմակ դավառ - կամ Բաջարմա: Տե՛ս Բալադուրի, ծնթղր. 243:*

[16] *Սինջար — Տե՛ս Բալադուրի, ծնթղր. 45:*

[17] *Սլավոնները (Սակալիբա) - Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթղր. 42:*

[18] *Մելքիտ — Տվյալ դեպքում նկատի ունի ոչ թե ասորի մելքիտ եկեղեցին, այլ այն, որ Հույները ինչպես և մելքիտները երկաբնակներ են:*

[19] *Կավատ արքա - Տե՛ս ՎաՀր, ծնթղր. 7:*

[20] *Բուրջան - Գանուրյան բուլղարների երկիր: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթղր. 43:*

[21] *Ֆարմա - Իբն Խորդադբեհ, ծնթղր. 21:*

[22] *Կուլզում — Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթղր. 22:*

[23] *Ուբուլլա - Միջնադարյան քաղաք Իրաքում Եփրատ-Տիգրիսի դելտայում, Պարսից ծոցի մոտ, որը նշանավոր էր որպես վերջնակայան, որտեղից ապրանքները տարվում էին դեպի Հնդկաստան և ավելի Հեռու՝ դեպի արևելք: (al-Ubulla, J. H. Kramers, EOI, CD-ROM, (X: 765b)):*

[24] *Վարդանակերտ (Վարսան) — Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթղր. 52:*

[25] *Բարդանդ - Տե՛ս Բալադուրի, ծնթղր. 230:*

[26] *Մարաղա - Տե՛ս Բալադուրի, ծնթղր. 231:*

[27] *Բարեկ — Տե՛ս Դինավարի, ծնթղր. 20:*

[28] *Նարիդ - Տե՛ս Բալադուրի, ծնթղր. 237:*

[29] *Գանձակ- Միջին դարերում Ատրպատականի մայրաքաղաքն էր: Գտնվում է Ուրմիա լճից Հարավ-արևելք: Չշփոթել Ուտիքի Գանձակ քաղաքի Հետ:*

[30] *Շիզ - Տե՛ս Բալադուրի, ծնթղր. 223:*

[31] *Ավաղ Կավատր — Տե՛ս ՎաՀր, ծնթղր. 7:*

[32] *Քիլար բերդը - Գտնվել է Սիսականում, այսինքն Սյունիքում: Հայկական անվանումը ՇնՀեր:*

[33] *...... երեք Հարյուր կանգուն (դիրա)- Կանգունը տարբեր է եղել: Օրինակ պարսկական կանգունը Հավասար էր 49, 875 սմ-ի, իսկ արաբական «արքայական» կանգունը Հավասար էր 54, 04 սմ-ի: Հետևաբար, Հիշատակվող պարսպի Հաստությունը, ըստ մատենագրի, Հասնում էր գրեթե 150 մետրի: Տե՛ս նաև Իբն Խորդադբեհ, ծնթղր. 4:*

[34] *Շիրվան քաղաքը - Տե՛ս նաև Խալիֆա իբն Խայյաթ, ծնթղր. 36:*

[35] *Քարդարիլ ծով — Կասպից ծով:*

[36] *Բայդա - Քաղաք Խազարների երկրում: Բացառված չէ որ սա նաև Սամանդար քաղաքի այլ անվանումն է:*

[37] *Տառեխի լիճ - Կամ Թիռիխի լիճ (Վանա լիճ), տե՛ս Բալադուրի, ծնթղր. 121:*

[38] *Քուստի Փառնես — Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 126:*

[39] *Քասալ — (ըստ Ա. Տ-Ղ-ի Ղազախ ) Ղազախ — քաղաք ներկայիս Ադրբեջանի Ղազախի շրջանում: Կուրի աջակողմյան վտակ Աղստև գետի ստորին Հոսանքի աջ կողմում, Հարթավայրում: (ՀՀՇՏԲ. Հ. 3, էջ 494):*

40 Հունարակերա (Խունան) – Տե՛ս Խունան, Բալադուրի, ծնթգր. 128:
41 Քուստի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 131:
42 Ծանարներ (սաննարիյա) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 137:
43 Կղարջք – Կամ Կալարջիտ: Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 133:
44 Սեուրդիք – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 148:
45 Շակաշեն (Սիսար) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 140:
46 Մեծ Կուենք (ալ-Միսկուան) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 141:
47 Մեծ Առանք (Միսրիան) – Տե՛ս նաև Մեծ Իրանք, Բալադուրի, ծնթգր. 143:
48 Հարճյանք (Մահրաջյաիան) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 144:
49 Բարդիջ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 150:
50 Հուդայֆա իբն ալ-Յաման ալ-Աբսի – Տե՛ս Յակուբի (աշխ.). ծնթգր. 8:
51 Ալ-Մուղիրա իբն Շուբա, ալ-Կասիմ իբն Ռաբիա ալ-Սակաֆի, ալ-Աշաաս իբն Կայս – Բոլոր այս երեք անձանց նշանակումը իբրև Արմինիայի կառավարիչներ կրել է ձևական բնույթ, քանի որ մինչև 701 թվականը Հայաստանը վերջնականապես նվաճված չէր: (Վ. Տ.-Ղ.):
52 Եզիդ (Յազիդ) իբն Ուսայդ ալ-Սուլամի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 168:
53 Հասան իբն Կահթաբա ալ-Թաի – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 72:
54 Օսման իբն Ումարա – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 170:
55 Ռաուհ իբն Հաթիմ ալ-Մուհալլաբի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 171:
56 Խուզայմա իբն Խազիմ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 172:
57 Եզիդ (Յազիդ) իբն Մազյադ ալ-Շայբանի – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 18:
58 Ուբայդալլահ իբն ալ-Մահդի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 174:
59 Ֆադլ իբն Յահիա – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 175:
60 Սաիդ իբն Սալմ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 176:
61 Մուհամմադ իբն Եզիդ իբն Մազյադ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 177:
62 Հասան իբն Ալի ալ-Բադղիսի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 178:
63 Յուսուֆ ալ-Մարուազի – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 181:
64 Դանգ – Կամ դանիկ օգտագործվում է թե՛ որպես կշռի և թե՛ որպես դրամական միավոր: Հավասար է դիրհեմի 1/6-րդին, կամ դինար-մսխալի 1/6-րդին: (Хинц, Меры и веса, стр. 20).
65 Խլաթի (Վանա) լիճը – Տե՛ս Թիրիխի լիճ, Բալադուրի, ծնթգր. 121:
66 ... երկու ամսով հայտնվում է ձուկը – Նկատի ունի տառեխ ձուկը:
67 Երկկոտոշավորը – Երկկոտոշավոր էր կոչվում Ալեքսանդր Մակեդոնացին: (Իբն ալ-Ասիր, էջ 373 ): Տե՛ս նաև Վահր, ծնթգր. 2:
68 Առան գետը – կամ Աղուան (ալ-Ռան):
69 Վրկանա ծովը – Կասպից ծովը:
70 Շումահի – Զկան տեսակ Հայաստանի գետերում:
71 Զինջիների ծովը – Հավանաբար նկատի ունի Հնդկական օվկիանոսը:
72 Խազարները բոլորը հրեա են – Նկատի ունի որ ընդունել են մովսիսականությունը (հրեական կրոնը): Թեև այն ընդունել էր նրանց վերնախավը, բայց ոչ ժողովուրդը:

## ԻԲՆ ՌՈՒՍՏԱ (մահ. 913-ից հետո )

*Աբու Ալի Ահմադ իբն Օմար Իբն Ռուստան, ծագումով պարսիկ, ծնվել է Իսֆահանում և իր կյանքի մեծ մասն անցկացրել այնտեղ, այցելել է Հիջազում հավանաբար 903-ին: Նրա «Ալ-Ալակ ալ-Նաֆիսա» (Գիրք թանկագին արժեքների) մեծ հանրագիտարանից պահպանվել է միայն 7-րդ հատորը նվիրված աստղաբաշխությանն ու աշխարհագրությանը: Այս գործը ամենայն հավանականությամբ ստեղծվել է 903-913 թվականների միջև: Նա իր երկը սկսում է տիեզերագիտական շատ յուրջ մի ակնարկով, այնուհետև մանրամասնորեն նկարագրում է Մեքքայի ու Մադինայի սրբավայրերը, ապա ընդհանուր տեղեկություններ է փոխանցում ծովերի, գետերի, կլիմաների, մեծ քաղաքների մասին, նկարագրում է Կոստանդնուպոլիսը, խազարներին, բուլղարներին, սլավոններին, ռուսներին և այլ ժողովուրդների: Հատորն ավարտում է երթուղիների մի ցանկով: Ընդհանրապես սա մի գիրք է, որտեղ կարելի է գտնել ինչպես իսլամի տիրապետության տակ գտնվող, այնպես էլ նրանից դուրս գտնվող երկրների ու ժողովուրդների մասին մանրամասն տեղեկություններ: Իր աշխատանքում Իբն Ռուստան հավանաբար օգտվել է ալ-Ջայհանիի և Իբն Խորդադբեհի երկերից:*

***Ներկա թարգմանությունը կատարված է Bibliotheca Geographorum Arabicorum, edidit M. J. de Goeje, VII, Lugduni Batavorum, 1967.***

***(Крачковский, IV, стр. 159-160, R. Blachère et H. Darmaun, Extraits des Principaux Géographes Arabes du Moyen Age, Paris, 1957, p. 32-33, Ibn Rusta, S. Maqbul Ahmad, EOI, CD-ROM, (III: 920a)).***

**Տե՛ս նաև.**
- Bibliotheca Geographorum Arabicorum, VII, 1892.
- G. Wiet, Les Atours Precieux , Caire, 1955, Vol. 1

## ԻԲՆ ՌՈՒՍՏԱ

## ԳԻՐՔ ԹԱՆԿԱԳԻՆ ԱՐԺԵՔՆԵՐԻ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԱԼԱՔ ԱԼ-ՆԱՖԻՍԱ)

## ԾՈՎԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*էջ 83-86*

*Բնակելի աշխարհի հայտնի ծովերից մեծերը հինգն են՝ Հնդկաց, Պարսից ու Չինաց ծովը[1], Ռումի, Իֆրիկիայի ու Ասորիքի ծովը[2], Օվկիանոս ծովը, որը Մաղրիբի ծովն է[3], Պոնտոսի ծովը[4] և Թաբարիստանի ու Վրկանա (Ջուրջան) ծովը[5]:*

*Հնդկաց ծովի երկարությունը արևմուտքից արևելք, այսինքն Եթովպիայի հեռավոր ծայրից մինչև Հնդկաստանի ծայրը ութ հազար մղոն է, երկու հազար յոթ հարյուր մղոն [լայնությամբ]:*

*Ռումի, Իֆրիկիայի ու Եգիպտոսի ծովի[6] երկարությունը Մաղրիբի ծովից դուրս եկող ծոցից մինչև արևելք, այսինքն՝ Տյուրոս ու Սիդոն հինգ հազար մղոն է, իսկ լայնությունը՝ մի տեղում վեց հարյուր մղոն է, մի այլ տեղում ութ հարյուր մղոն: Նրանից բաժանվում է մի ծոց, դեպի հյուսիս՝ Հռոմին մոտիկ, հինգ հարյուր մղոն երկարությամբ և կոչվում է Ադրիական (Ադրիաս)[7], իսկ մի ուրիշ ծոց[8] էլ նրանից ձգվում է դեպի Նարբոն (Նարբունա) երկու հարյուր մղոն երկարությամբ: Այս ծովում կա հարյուր վաթսուներկու չեն կղզի, որից հինգը խոշոր կղզիներ են: Ամենափոքրը Կորսիկան (Կուրնիս) է, որի շրջագիծը երկու հարյուր մղոն է, ապա Սարդինիան (Սարդանիա), որի շրջագիծը երեք հարյուր մղոն է, Սիկիլիան, որի շրջագիծը հինգ հարյուր մղոն է, Կրետեն (Իկրիթիա), որի շրջագիծը երեք հազար մղոն է և Կիպրոսը (Կուբրուս), որի շրջագիծը երեք հարյուր մղոն է:*

*Օվկիանոս ծովը, դա Մաղրիբի ծովն է, Կանաչ ծովը[9]: Նրանից հայտնի է միայն այն տարածությունը որը արևմուտքից ու հյուսիսից այն կողմն է և երկարում է Եթովպիայի ծայրից մինչև Բրիտանիա (Բարաթանիա): Սա մի ծով է, ուր նավեր չեն գնում, այնտեղ կա վեց կղզի Եթովպիայի դիմաց, որոնք կոչվում են Հավերժության (Խալիդատ) կղզիներ և մի այլ կղզի, որ կոչվում է Ղադիրա (Գադիրա) Անդալուսի դիմաց՝ ծոցի մոտ: Այս ծոցը (նեղուցը) Մաղրիբի ծովից է դուրս գալիս, լայնությունը յոթ մղոն է և գտնվում է Անդալուսի և Թանժերի միջև ու կոչվում է Շաբթա[10] (Սաբթա) ու մտնում է Ռումի*

ծովը: Այս (Մաղրիբի) ծովի հյուսիսային կողմում տասներկու կղզի կա կոչված Բրիտանական կղզիներ, որից այն կողմը չեն վայրերից հեռու է գանվում և ոչ ոք չգիտի ինչպիսին է:

Պոնտոսի ծովը գտնվում է Լազիկայից մինչև Կոստանդնուպոլսի նտեր: Երկարությունն է հազար երեք հարյուր մղոն, լայնությունը՝ երեք հարյուր մղոն: Նրա մեջ է թափվում Տանաիս (Թանիս) գետը, որը հոսում է հյուսիսից, այն լճից, որ կոչվում է Մեոտիս[12] (Մաութիշ) և սա մեծ ծով է, թեև լիճ (ծովակ) է կոչվում: Երկարությունն է արևմուտքից արևելք երեք հարյուր մղոն, լայնությունը՝ հարյուր մղոն: Կոստանդնուպոլսի մոտ նրանից (Պոնտոսից) դուրս է գալիս մի ծոց[13], որ գետի նման հոսում է ու թափվում Եգիպտոսի ծովը (Միջերկրական): Սրա լայնությունը Կոստանդնուպոլսի մոտ գրեթե երեք մղոն է և նրա վրա է կառուցված Կոստանդնուպոլիսը:

Թաբարիստանի ու Վրկանի (Ջուրջանի) ծովը, Բաբի (Դարբանդի) ծովն է և ունի երկարություն արևմուտքից արևելք հազար ութ հարյուր մղոն, լայնությունը՝ վեց հարյուր մղոն: Նրանում, Թաբարիստանից այն կողմ երկու կղզի կա, որ անցյալում չեն եղել:

Էջ 88

Իսկ Հայկական ծովը[14] (ալ-բահր ալ-Արմանի), ապա նրա հեռավորությունը Խնդգետնի արևադարձից (մադար ալ-սարաթան) քսանմեկ մաս է: Նրանում ուժեղանում են քամիները, փոթորիկները, խավարն այնքան է սաստկանում, որ մարդիկ չեն նավարկում:

Իսկ Ասորիքի ծովում երբ արեգակը Կարիճի համաստեղության սկզբից հասնում է Ջկների համաստեղության սկիզբը, ապա այդ չորս ամիսներում մարդիկ չեն կարող նավարկել այն պատճառով, որ արեգակը հեռանում է նրանից և կատաղի քամիներ են փչում նրա հյուսիսային մասում:

## ԳԵՏԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Էջ 89-93

Բնակելի աշխարհում կան մեծ նշանավոր գետեր, որոնց մի մասը գիտենք ու տեղյակ ենք նրանց մասին: Նրանցից է Գանգես (Քանք) գետը, որ հոսում է Հնդկաստանի վերին կողմերում: Բխում է Ներքին Կաշմիրի վերևից, հոսում է հարավ, մինչև թափվում է Հնդկաց ծովը: Միհրան գետը[15] Սինդ գետն է, բխում է Շինկան լեռներից[16] և սա Մանսուրա գետն[17] է, որ թափվում է ծովը:

Արաքս գետը Հայաստանի գետն է, բխում է Կարնո քաղաքից (Կալիկալա), անցնում Ադասի (Ղա՞րս) կողմերում մի մերձակա ավա-

նով (ուստակ), ապա անցնում Դվինով, Մաղաինով (Առան): Նրա մեջ Հայաստանի և Մաղաինի (Առան) լեռներից գետեր են թափվում, ապա անցնում Վարդանակերտով (Վարսան) մինչև Բարդանջ[18], հետո միանում է Կուր գետին և թափվում Թաբարիստանի ծովը:

Արաքս գետը բխում է Կարնո քաղաքից, անցնում է Առանով, նրա մեջ թափվում է Առան գետը, անցնում է Վարդանակերտով. ապա հասնում միախառնման վայրը և միանում Կուրին: Նրանց միջև Փայտակարան (Բայլական)[19] քաղաքն է գտնվում: Նրանք միասին թափվում են Վրկանա (Ջուրջան) ծովը:

Կուր գետը բխում է Ալանաց երկրից[20], անցնում է Տփղիսով, Պարտավով ու թափվում Թաբարիստանի ծովը:

Իսֆիդ Ռուդի ակունքը Սիսարի[21] ռնից է, անցնում է Ատրպատականի հողով, ապա մտնում է դկմիկների երկիրը (Դայլամ) և թափվում Թաբարիստանի ծովը:

Շահ Ռուդի ակունքը Ռնյի Թալականից է և նա միախառնվելով Իսֆիդ Ռուդին թափվում է Թաբարիստանի ծովը:

Երկու Զաբերի[22] ակունքը Հայաստանի լեռներում է: Մեծ Զաբը թափվում է Տիգրիսի մեջ Հադիսայի[23] մոտ, իսկ Փոքրը՝ Սիննի մոտ: Նահրաուան գետը[24] բխում է Հայաստանի լեռներից, անցնում է Բար Սալուայով և այնտեղից սկսած կոչվում է Տամառա:

Ադանայի և Մամեստիայի գետ Սարոսը (Սայհան)[25] բխում է Ռումի երկրից և թափվում է Ասորիքի ծովը: Պիրամոս (Ջայհան)[26] գետը բխում է Ռումի երկրից և անցնելով Մամեստիայի ու Քաֆարբայայի արանքով թափվում է Ասորիքի ծովը:

Եփրատ գետը բխում է Ռումի երկրում մի վայրից վերև, որը կոչվում է Տերիկ (Աբրիկ)[27]: Գալիս է հյուսիսից, անցնում Զաղիրայով, Ռակկայով, ապա իջնում Քուֆա, իր արևմուտքում թողնելով Ասորիքը, իսկ արևելքում՝ Ջաղիրան և վերջապես թափվում է ալ-Բաթիհ[28] [.........]:

## ՅՈԹ ԻԿԼԻՄՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՆՇԱՆԱՎՈՐ ՔԱՂԱՔՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

*էջ 96-98*

Առաջին իկլիմն սկսում է արևելքից՝ Չինաց երկրի հեռավոր ծայրերից, անցնում է Չինաստանի միջով, ապա Սինդի հարավում՝ ծովի ափերով:

Երկրորդ իկլիմն սկսում է արևելքից, անցնում Չինաստանով, ապա Հնդկաստանով [...]:

Երրորդ իկլիմն սկսում է արևելքից, անցնում Չինաստանի հյուսի-

սով, Հնդկաստանով: Նրանում է Կանդահար քաղաքը, ապա անցնում է Սինդի հյուսիսով, Քաբուլով, Քիրմանով, Սիջիստանով, Ջիրուֆտով[29], Սիրաջանով[30] և Բասրայի ծովի ափերով: Նրանում կան հետևյալ քաղաքները՝ Իսթախրը, Ջուրը[31], Ֆասան, Սաբուրը, Շիրազը, Սիրաֆը, Ջաննաբան, Մահիրուբանը: Ապա [այս իկլիմն] անցնում է Ահուազ նահանգով, Իրաքով, որի մեջ են Բասրան, Վասիթը, Բաղդադը, Քուֆան, Անբարը, Հիտը, հետո անցնում է Ասորիքի երկրով, որի մեջ են՝ Հիյաբը, Սալամիան, Եսեսան, Դամասկոսը, Տյուրոսը (Սուր), Ակրան (Աքքա), Տիբերիադը (Թաբարիա), Կեսարիան, Ռասուֆը, Սուրբ քաղաքը (Երուսաղեմ), Ռամլան, Ասկալոնը, Ղազզան, Մադիանը, Կուլզումը: Ապա իջնում է Եգիպտոսի (Միսր) հողի ստորին մասը, որի մեջ են Ֆարման, Տիննիսը, Դամիեթը, Ֆուսթաթը, Եգիպտոսը, Ֆայյումը, Ալեքսանդրիան, հետո անցնում է Բարկա, Իֆրիկիա երկիրը, որի մեջ է Կայրուանը և վերջանում Մաղրիբի ծովով:

Չորրորդ իկլիմն սկսում է արևելքից Տիբեթում (Տուբբատ), անցնում Խորասանով, որի մեջ են Ֆարղանա, Խուջանդա, Ուշրուսանա, Սամարկանդ, Բուխարա, Բալխ, Մարվ ալ-Ռուդ, Մարվ, Սարախս, Թուս, Նիշապուր, Վրկան (Ջուրջան), Կումիս, Թաբարիստան, Դմավանդ, Կազուին, Դեյլմիկք, Ռեյ, Սպահան, Կում, Համադան, Նահավանդ, Դինավար, Հուլուան, Շահրազուր, Սամառա, Մոսուլ, Բալադ, Մծբին, Ամիդ, Ռաս Այն, Կարնո, Շիմշաթ, Խառան և Կարկիսիա քաղաքները: Ապա անցնում է Ասորիքի հյուսիսով, որի մեջ են Բալիս, Մանբիջ, Սամոսատ, Մալաթիա, Զապետրա, Հալեպ, Կիննասրին, Անտիոք, Տրիպոլիս, Մամեստիա, ալ-Քանիսա ալ-Սաուդա, Ադանա, Տարսոն, Ամորիոն, Լաոդիկե քաղաքները: Հետո անցնում է Ասորիքի ծովով Կիպրոս կղզի, Հռոդոս, ապա Մաղրիբ երկիրը՝ Թանժեր քաղաքով և վերջանում Մաղրիբի ծովով:

Հինգերորդ իկլիմն սկսում է արևելքից՝ Դոդի (Յաջուջ) երկրից, ապա անցնում է Խորասանի հյուսիսը, ուր կան Թառազ վաճառականների քաղաքը, Նաուիքաթը, Ասբիջաբը, Շաշը, Թուրարաբանդը, Խորեզմը, Ատրպատականը և Հայաստանի գավառները՝ Պարտավը, Նախճավան, Սիսական, Արդնր և Խլաթը: Ապա անցնում է Ռումի երկրով, Խարսիանոնի (Խարշանա), Կուռայի և Մեծ Հռոմի (Ռումիա ալ-Քուբրա) վրայով, Ասորիքի ծովի ափերի հյուսիսային կողմով, Անդալուս երկրով և վերջանում Մաղրիբի ծովով:

Վեցերորդ իկլիմն սկսում է արևելքից, անցնում Մագոդ (Մաջուջ) երկիրը, մտնում Խազարաց երկիրը, կտրում Թաբարիստանի ծովը դեպի Ռումի երկիրը, անցնելով Վիրքի, Ամասիայի, Հերակլիայի, Քաղկեդոնի, Կոստանդնուպոլսի, Բուրջան երկրի վրայով և վերջանում Մաղրիբի ծովով:

Յոթերորդ իկլիմն սկսում է արևելքից, Գոգի հյուսիսից, անցնում

*Թուրքաց երկրով, Թաբարիստանի ծովի ափերով, դեպի հյուսիս, կտրում Ռումի ծովը, անցնում Բուրջան երկիրը, սլավոնների երկիրը և վերջանում Մաղրիբի ծովով:*

## ԻՐԱՆՇԱՀՐԻ ԵՎ ՍԱՎԱԴԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*էջ 103-104*

*Իրանշահրը բաժանված է եղել մասերի: Մի մասն ընգգրկում էր ամենաերկար ցերեկվա արևածագից մինչև ամենակարճ ցերեկվա արևածագը ընկած տարածությունը և կոչվում է Խորասան: Մի մասն ամենաերկար ցերեկվա մայրամուտից մինչև ամենակարճ ցերեկվա մայրամուտը և կոչվում է Խուրբարան, որի իմաստն է արևդակի մայրամուտը: Մի ուրիշ մասն ընդգրկում է ամենակարճ ցերեկվա արևածագից մինչև ամենակարճ ցերեկվա մայրամուտը ընկած տարածությունը և կոչվում է Նիմրուզ, որը նշանակում է հարավ, իսկ մի ուրիշ մասն էլ ընդգրկում է ամենաերկար ցերեկվա արևածագից մինչև ամենաերկար ցերեկվա մայրամուտը և կոչվում է Բախտար, որը նշանակում է հյուսիս: Կա նաև այս մասերի միջինը, որը կոչվում է Սուրաստան և դա Սավադն է:*

## ԻՐԱՆՇԱՀՐԻ ՄԱՍԵՐԸ

*էջ 106 -107*

*[Իրանշահրն] ընդգրկում է որոշակի երկրներ, որոնցից ամեն մեկը մի քանի նահանգներ (քուրա) ունի: Դրանք են՝ Խորասանը, Աիջիստանը, Քիրմանը, Պարսքը (Ֆարս), Ահուազը, Ջաբալը, Ատրպատականը, Հայաստանը, Մոսուլը, Ջազիրան, Ասորիքը և Սուրաստանը, որն այդ երկրների կենտրոնում է:*

*Խորասանի նահանգներն են՝ Թարսայնը, Կուհիստանը, Նիշապուրը, Հերատը, Ֆուշանգը, Բադգիսը, Թուսը, Նասան, Սարախսը, Աբիվարդը, Մարվ ալ-Ռուդը, Թալականը, Ֆարիաբը, Ջուզջանը, Բալխը, Թուխիրիստանը, Տիրմիզը, Բուխարան, Սամարկանդը, Քիշը, Նասաֆը, Շաշը, Ֆիրղանան և Ուշրուսանան:*

*Սիջիստանի նահանգներն են Զարանջը, Բուստը և Ռուխխադը:*

*Քիրմանի նահանգներն են՝ Բարդասիրը, Սիրաջանը, Նարմաշիրը, Բամմը, Ջիրուֆտը և Հուրմուզը:*

*Պարսից (Ֆարս) նահանգներն են՝ Շապուրը (Սաբուր), Իսթախրը, Արդաշիրխուռան, Դարաբաջիրդը, Ֆասան, Արջանն ու Շիրազը:*

*Ահուազի նահանգներն են՝ Սուկ (շուկա) Ահուազը, Ջունդիշապու-*

րր (Ջունդայսաբուրը), Ռամահուրմուզը, Սուռակը, Բայդակը, Տուստարր և Շուշը (Սուս):

Ջաբալի նահանգներն են՝ Մասաբդանը, Միհրաջան Կաղակը, Մահ ալ-Քուֆան, Մահ ալ-Բասրան, Համադանը: Կումը Իրաքի նահանգներից է: Իսկ այն, ինչ վերագրվում է Ջաբալին, սակայն [իրականում] նրա մեջ չէ, ոչ էլ Խորասանում է, ապա հետևյալն է՝ Ռեյը, Կումիսը, Սպահանը, Շահրզուրը, Սամաղանը, Դարաբաղը, Կաղուինը, Զինջանը, Ջուրջանը, Թաբարիստանն ու Դարավանդը:

Արպատականի նահանգներն են՝ Արդաբիլը, Մարանդը, Բաջարուանը, Վարդանակերտը (Վարսան)[32] և Մարաղան:

Հայաստանի նահանգներն են՝ Առանը, Վիրքը (Ջուրզան), Նախճավանը (Նաշավա), Խլաթը, Դվինը (Դաբիլ), Շիրակը (Սիրաջ), Սուղդաբիլը[33], Ապահունիսը (Բաջունայս), Արճեշը (Արջիշ), Սիսականը (Սիսաջան) և ալ-Բար վ-ալ-Արուար (Դարբանդ) քաղաքը:

Մոսուլի նահանգներն են՝ Մոսուլը, Տաքրիտը, Թիրհանը, Սիննը, Հադիթան, Մարջը, Սիսաջարը, Բաջալին ու Բաջարման:

Ջազիրայի նահանգներն են՝ Արզնը, Նփրկերտը, Ամիդը, Սամոսատը, Կարդան, Բազարդան, Բալադը, Մծբինը, Դարան, Ռաս Այնը, Կարկիսիան, Ռակկան, Սարուջը, Խառանը, Եդեսիան (Ռուհա), Ռաս Քայֆան ու Շիմշաթը: Ջազիրայի նահանգներից են այն [շրջանները], որոնք կոչվում են Սահմանային ամրություններ (Սուղուր), այսինքն՝ Շիմշաթը, Մալաթիան, Զապետրան (Զիբաթրա), Մարաշը, Հադասը, Սամոսատը, Հիսն Մանսուրը: Ջազիրայի նահանգները երկու մասին են բաժանվում՝ մեկը կոչվում է Դիար Ռաբիա, մյուսը՝ Դիար Մուդար:

Ասորիքի նահանգներն են՝ Հալեբը, Կիննասրինը, Անտիոքը (Անթաքիա), Շայզարը, Եպիփանիան (Համա), Եմեսան (Հիմս), Ապամեան (Ֆամիա), Հելիոպոլիսը (Բաալբեկ), Դամասկոսը (Դիմաշկ), Տիբերիականը (Թաբարիա), Ռամլան և Իլյան: Ասորիքում կան նահանգներ, որոնք Ասորիքի սահմանային ամրություններ են կոչվում (ալ-սուղուր ալ-շամիյա) և դրանք են՝ Ադանան, Մամեստիան (Մասսիսա), Տարսոնը (Թարսուս), Անազարբան (Այն Զարբա), Հարունիան, ալ-Քանիսա ալ-Սաուդան (Սև Եկեղեցի), Ավասիմը, Անտիոքը, Տիզինը, Կուրուսը, Մանբիջը, Տլուքը (Դուլուք) և Ռաարանը:

Օմար իբն ալ-Խաթթաբի օրոք նրա մոտ էին հավաքվում Եմենի և այլ վայրերի արաբ պատվիրակությունները, իսկ նա կառավարիչներ էր նշանակում և ուղարկում Ասորիք: Օմարը Ասորիքը չորս զինվորական գոտիների (աջնադ) էր բաժանել ու հանձնել իր կառավարիչներին, որոնք էին՝ Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը, Խալիդ իբն ալ-Վալիդը, Եզիդ (Յազիդ) իբն Աբու Սուֆիանը և Ամր իբն ալ-Ասը: Ասորիքը մնաց այս զինվորական բաժանումներով, մինչև որ Եզիդ իբն

*Մուավիա [խալիֆան] ավելացրեց Կիննասրինը, որը Ջազիրայի հողերից էր և այսպիսով Ասորիքի զինվորական գոտիները չորսը դարձան՝ Հորդանանի (Ուրդուն) ջունդը, որը Տիբերիականինն է. Պաղեստինի ջունդը, որը Ռամլայինն է, Դամասկոսի ջունդը և Կիննասրինի ջունդը:*

*Սավադը տասներկու նահանգ (քուրա) ունի և ամեն մի նահանգ ոստան (խստան)[34] է և նրա թասուջները[35] վաթսունն են:*

## ԲԱՂԴԱԴՆ ՈՒ ՆՐԱ ՀԱԿԻՐՃ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*էջ 108–109*

*Այս նահանգի (Սավադ) մայրաքաղաքը (միսր) Խաղաղության քաղաքն է (Մադինատ ալ-Սալամ), որը կոչվում է Բաղդադ: Բաղդադը վայրի նախկին անունն է, ուր ասվում է թե հին դարերում կուռքերի վայր է եղել: Սա Բաբելոնի (Բաբիլ) հողն է, իսկ Բաբելոնը այս կողմերում հնագույն բնակավայր է: Հին թագավորներն այստեղ են հաստատվել և ասվում է, որ Նոյի որդիներն այստեղից են բաժանվել:*

*Երբ Օմայանների (Բանու Ումայյա) թագավորությունը վերացավ, Աբու-լ-Աբբաս [խալիֆան] իր իշխանության օրերին հաստատվեց Անբարում[36], մինչև կյանքին հրաժեշտ տալը: Որպես խալիֆա նրան հաջորդեց Աբու Ջաաֆար ալ-Մանսուրը, որը փոխադրվեց Բաղդադ և կառուցեց Խաղաղության քաղաքը: Տիգրիս գետը հոսում է այս քաղաքի միջով և գալիս է Ջազիրայի ու Հայաստանի լեռներից: Բաղդադի բուն շինությունները, որոնք կոչվում են Խաղաղության քաղաք գտնվում են Տիգրիսի արևմտյան ափին և կառուցված են Մանսուրի կողմից:*

*Սա ամրակուռ քաղաք է, ունի կրկնակի պարիսպներ, իսկ երկու պարիսպների միջև կառուցված է ցածր նախապարիսպ (ֆասիլ), պարսպից դուրս կա խրամատ, որի եզրերքները ծեփով (գիպս) ու աղյուսով են պատած: Քաղաքն ունի չորս դռներ, ամեն մի դռան վրա կանաչ գմբեթ կա, ամեն մի գմբեթի տակ՝ դավիթ (հավաքավայր, մաջլիս), կաղնու փայտե սյուների վրա և նայում է դեպի Բաղդադ: Նրա դռներից մեկը կոչվում է Խորասանի դուռ, երկրորդը՝ Բասրայի դուռ, երրորդը՝ Քուֆայի դուռ, չորրորդը՝ Ասորիքի դուռ:*

*Քաղաքի մեջտեղում է Աբու Ջաաֆար [խալիֆայի] կառուցած պալատը, որը կոչվում է Ոսկե դուռ (ըար ալ-զահաբ): Ամեն մի դռնից դուրս՝է գալիս մի մեծ լայն փողոց, իսկ փողոցների վրա կամարներ կան ծեփով (գիպս) ու աղյուսով պատրաստված: Արտաքին պարսպի վրա չորս երկաթե դուռ կա: Առաջին դռնից մտնողը հանդիպում է ցածր նախապարսպին, հետո պետք է պտույտ կատարի քաղաքի*

չուրջը, որպեսզի հանդիպի մի ուրիշ երկաթե դուռ, որի վրա զմրուխտ կա: Քաղաքում կա մայր մզկիթ, կառուցված ծեփից ու աղյուսից, կաղնու փայտե սյուներով, իսկ առաստաղը պատած է կաղնու փայտով և լաջվարդով զարդարված:

## ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ, ՆՐԱՆՈՒՄ ԵՂԱԾՆԵՐԻ ՈՒ ՀՌՈՄՆԵՐԻ (ՌՈՒՄ) ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*էջ 119-123*

Հարուն իբն Յահիան պատմել է, որ ինքը գերի ընկնելով տարվել է ծովի ճանապարհով Ասկալոնից Կոստանդնուպոլիս: Երեք օր ճանապարհորդելուց հետո հասել են մի քաղաք, որը կոչվում է Ատտալիա (Անթալիա)[37] և գտնվում է Միջերկրական (Ռում) ծովի ափին: Այստեղից տարել են փոստային ձիերի միջոցով և երեք օր լեռների, հովիտների ու մշակված հողերի միջով ճանապարհորդելուց հետո հասել են մի քաղաք, որը կոչվում է Նիկիա[38], մի մեծ ու մարդաշատ քաղաք: Երեք օր հետո հասել են Սանկարա[39] կոչված քաղաքը, մի փոքրիկ քաղաք տեղավորված մերկ դաշտի մեջ:

«Ապա, - ասում է Հարունը, - մենք ոտքով գնացինք, ապա դաշտում քայլելով, ձախ և աջ կողմերում տեսնելով հռոմների գյուղեր, երկու օրվա ընթացքում հասանք ծովը, նավ նստեցինք ու մեկ օրում հասանք Կոստանդնուպոլիս»:

Սա մի մեծ քաղաք է, որի [տարածությունը] տասներկու փարսախով տասներկու փարսախ է, իսկ նրանց փարսախը, ինչպես ասում են, մեկուկես մղոն է: Նա արևելյան կողմից ծովով է շրջապատված, իսկ արևմտյան կողմում տարածված է այն դաշտը, որի միջով անցնում է Հռոմի (Ռումիա) ճանապարհը: Ունի ամրակուռ պարիսպ (բերդ): Այն դուռը, որից անցնում են Հռոմի ճանապարհը դուրս գալու համար, ոսկուց է, նրա մոտ կանգնած են պահապաններ և այն կոչվում է Ոսկե դուռ (բաբ ալ-դահաբ): Դռան վրա կան հինգ արձաններ, որոնք ներկայացնում են փղեր և մեկ ուրիշ [արձան], որը կանգնած մարդ է և փղերի սանձն է բռնել: Նա ունի մի ուրիշ դուռ ևս թեւակոչու կողմից, որը կոչվում է Բիղաս (Բիղաս) և այստեղ թագավորը (կայսրը) գալիս է զբոսնելու: Սա երկաթե դուռ է:

Քաղաքի կենտրոնում գտնվող եկեղեցու կողքին կա արքունի պալատը (բալաթ), որը մի ամրոց է: Նրա կողքին կա մի վայր, որը կոչվում է հիպպոդրոմ (ալ-բուդրուն), որը նման է ասպարեզի (մայդան), ուր գալիս ու հավաքվում են պատրիկները: Քաղաքի կենտրոնում գտնվող իր պալատից թագավորը տեսնում (հսկում) է նրանց: Պալատում կան բրոնզից (սուֆր) ձուլված կուռքեր, որոնք ձիերի, մարդ-

կանց, վայրի կենդանիների, առյուծների և այլ կերպարանքներ ունեն:
Հիպպոդրոմի արևմուտքում, Ոսկե դռան կողմը երկու դուռ կա, որոնց մոտ բերում են ութ ձի: Այնտեղ լինում է երկու ոսկե կառք, որից ամեն մեկին չորս ձի են լծում: Կառքերի վրա բարձրանում են երկու մարդ, որոնք հագել են ոսկեթել ղործվածքեղենից զգեստներ: Ապա թողնում են կառքերին լծված ձիերին, որ վազեն և նրանք անցնում են վերոհիշյալ դռներից ու երեք անգամ պտտվում են կուռքերի շուրջը: Ով ընկերոջից առաջ հասնի, արքունի տնից նրան նետում են ոսկե մանյակ ու մեկ ռաթլ ոսկի: Կոստանդնուպոլսի ամբողջ բնակչությունը ներկա է լինում այս մրցումներին ու դիտում:
Արքունի պալատի շուրջը կա մի պարիսպ, որը շրջապատում է ամբողջ ապարանքը և ունի մեկ փարսախ շրջագիծ: Նրա կողմերից մեկը ձգվում է դեպի արևմուտք՝ հասնելով ծովին: Այս պարիսպն ունի երկաթե երեք դուռ, որոնցից մեկը կոչվում է Հիպպոդրոմի (բիդրուն) դուռ, մյուսը՝ ալ-Մանքանայի դուռ, իսկ երրորդը՝ Ծովի դուռ:
Հիպպոդրոմի դռնից կարելի է մտնել մի դահլիճ, որը հարյուր քայլ (խաթուա) երկարություն ու հիսուն քայլ լայնություն ունի: Դահլիճի երկու կողմից կան ճանապարհներ, որոնք ծածկված են դիպակե գորգերով, ներքնակներով ու բարձերով և դրանց վրա կանդնում են քրիստոնեացած սևամորթներ, իրենց ձեռքին կրելով ոսկեզօծ վահաններ ու ոսկեզօծ նիզակներ:
Ալ-Մաքանա դռնով կարելի է մտնել մի դահլիճ, որն ունի երկու հարյուր քայլ երկարություն և հիսուն քայլ լայնություն: Հատակը ծածկված է մարմարով ու նրա երկու կողմերում կան ճանապարհներ, որոնց վրա կանգնած են աղեղը ձեռքին բռնած խազարներ: Դահլիճում կա չորս բանտ՝ մեկը մահմեդականների, մյուսը՝ Տարսոնի մարդկանց, մեկ ուրիշը՝ ժողովրդի համար, իսկ չորրորդը գտնվում է պահակազորքի պետի տրամադրության տակ:
Ծովի դռնով կարելի է մտնել մի դահլիճ, որն ունի երեք հարյուր քայլ երկարություն և հիսուն քայլ լայնություն: Հատակը ծածկված է կարմիր աղյուսե սալերով: Դահլիճի աջ և ձախ կողմերում կան ճանապարհներ գորգով ծածկված, որոնց վրա կանգնած են թուրքեր, ձեռքներին բռնած աղեղներ ու վահաններ: Դահլիճն անցնելուց հետո մտնում են մի բակ, երեք հարյուր քայլ [մեծությամբ], որի դիմացը կախված է մի վարագույր այն դռան վրա, որը տանում է արքունի տունը (դար):
Ներս մտնողի ձախ կողմում գտնվում է արքունի եկեղեցին, որն ունի տաս դուռ, չորսը՝ ոսկուց և վեցն՝ արծաթից:
[Եկեղեցու] օթյակում, ուր թագավորն է կանգնում, կա մի [հատուկ] տեղ չորսով չորս կանգուն, ընդելուզված (ագուցված) մարգարիտներով (դուրր) և կարմիր հակինթներով (յակութ): Արմնկակալը,

որին հենվում է, նույնպես ընդելուզված է մարգարիտներով ու հակինթներով: Խորանի (դոհասնգան) դուռն ունի չորս մարմարե միակտուր քանդակված սյուներ: Խորանը, որի վրա քահանան աղոթք է կատարում, ունի հինգ թիզ (չիբր) երկարություն և վեց թիզ լայնություն, պատրաստված է հալվեի փայտից, ընդելուզված մարգարիտներով ու հակինթներով: Թագավորի քահանան նրա դիմացն է կանգնում: Եկեղեցու բոլոր առաստաղները կամարակապ են և [ծածկված] ոսկով ու արծաթով: Այս եկեղեցում չորս բակ կա, ամեն մեկը երկու հարյուր քայլ երկարությամբ և հարյուր քայլ լայնությամբ: Արևելյան բակում մարմարի մեջ փորված մի ավազան կա, որն ունի տաս կանգուն երկարություն և տաս կանգուն լայնություն: Նրա գլխին մի մարմարե սյուն կա, որը գետնից չորս կանգուն բարձր է: Վերևում կառուցված է մի կապարե գմբեթ, որից վերև կա մի ուրիշ գմբեթ արծաթից, նստած տասներկու սյուների վրա, ամեն մեկը՝ չորս կանգուն: Սյուներից ամեն մեկի գլխին կենդանիների արձաններ կան, ընդ որում առաջինի վրա կա բադե, երկրորդի վրա՝ դառնուկ, երրորդի վրա՝ ցուլ, չորրորդի վրա՝ աքաղաղ, հինգերորդի վրա՝ առյուծ, վեցերորդի վրա՝ եղ առյուծ, յոթներորդի վրա՝ գայլ, ութերորդի վրա՝ կաքավ, իններորդի վրա՝ սիրամարգ, տասներորդի վրա՝ ձի, տասնմեկերորդի վրա՝ փիղ, տասներկուերորդի վրա՝ հրեշտակ:

Գմբեթի մոտ, այդ բակում երկու հարյուր քայլի վրա, մի ջրամբար կա, որտեղից ջուր է բերվում արձանների համար, որոնք սյուների գլխին են: Տոնական օրերին այդ ջրամբարը լցնում են տաս հազար անոթ գինի, ապա նրա մեջ թափում են տաս հազար անոթ սպիտակ մեղր: Գինուն բուրմունք են տալիս լցնելով մի ուղտի բեռ անուշահոտ նարդոս, մեխակ, կինամոն (դարսինի): Ջրամբարն այնպես է փակվում, որ այնտեղ ոչինչ չի կարելի տեսնել: Երբ թագավորը եկեղեցի մտնելու համար պալատից դուրս է գալիս, աչքն ընկնում է արձաններին ու գինուն, որը հոսում է նրանց բերաններից ու ականջներից, թափվելով ու լցնելով ավազանը: Թագավորի շրջապատի անձնավորությունները, որոնք եկել են նրա հետ տոնակատարությանը ներկա լինելու, այդ գինուց մեկական անգամ խմում են:

Երբ վարագույրը բացվում է և մտնում են պալատ, անցնում են մի մեծ դահլիճ, որը չորս հարյուր քայլ երկարություն ու լայնություն ունի, սալահատակված կանաչ մարմարով, իսկ պատերը զարդարված են խճանկարներով և ամեն տեսակ չքնաղություններով: Հենց մեկը մտնում է պալատ, իր աջ կողմում տեսնում է արքունի գանձարանը, ուր ներսում գտնվում է կանգնած ձիու արձան, վրան ձիավոր, իսկ աչքերը երկու կարմիր հակինթներ են: Իսկ ձախ կողմում տեսնում է մի դահլիճ, երկու հարյուր քայլ երկարությամբ և հիսուն քայլ լայնությամբ: Նրանում կա մի սեղան կեչու (խալանջ) փայտից պատրաստ-

ված, մի ուրիշը՝ փղոսկրից, մի երրորդը՝ ոսկուց, որը դրված է խոր-քում:

Երբ տոնակատարությունը վերջանում է, Թագավորը դուրս է գալիս եկեղեցուց, մտնում է այդ դահլիճը, նստում խորքում ոսկե սեղանի առջև: Դա լինում է [Քրիստոսի] ծննդյան օրը: Թագավորը հրամայում է բերել մահմեդական գերիներին ու նստեցնել այդ սեղաններին:

Երբ Թագավորը նստած է լինում խորքում, բերում են չորս ձիակառքի վրա դրված չորս ոսկե սեղաններ, որոնք, ինչպես ասում են, առաջինը պատկանել է Դավթի որդի Սողոմոնին և ընդելուզված է (ագուցված) մարգարիտներով ու հակինթներով: Երկրորդը՝ Դավթինն է, նույնպես ընդելուզված, երրորդը Կարունի սեղանն է, իսկ չորրորդը Կոստանդին Թագավորի (կայսեր) սեղանն է: Այդ սեղանները նրա առջևում են գնում, բայց վրան չեն ուտում: Դրանք այնտեղ թողնում են այնքան ժամանակ, որ Թագավորը նստած է սեղանի առջև, սակայն երբ վեր է կենում, նրանք տանում են սեղանները:

Ահա այս ժամանակ է, որ բերում են մահմեդական գերիներին: Սեղանների վրա լինում են մեծ քանակությամբ տաք և սառը կերակուրներ: Թագավորի մունետիկը (մունադի) ազդարարում է հետևյալ խոսքերը. «[Երդվում եմ] Թագավորի գլխով, որ այս կերակուրներից ոչ մեկի մեջ չկա խոզի միս»: Այդ կերակուրները նրանց բերում են ոսկե ու արծաթե պնակների մեջ:

Վերջապես բերում են մի գործիք, որը կոչվում է երգեհոն (ալ-ուրկանա): Սա մի քառակուսի փայտե [գործիք] է, ճնշիչ մամուլի ձևով, ծածկված հաստ կաշիով: Այդ գործիքի մեջ դրված է բրոնզե վաթսուն խողովակ: Այդ խողովակների գլուխները, մինչև նրանց երկարության կեսը, գործիքից դուրս են ցցված: Խողովակները պղնձի վրա ոսկով են ծածկված և ամեն մեկի փոքր մասն է երևում, համեմատած իրենց երկարությանը, քանզի մեկը մյուսից մեծ է: Այս քառակուսի գործիքի կողքին կա մի ծակ, որի մեջ միացված է մի փուքս դարբինի մոտ եղածի նման: Երեք խաչ են բերում, որից երկուսը երգեհոնի երկու ծայրերին են դնում, իսկ մեկը՝ մեջտեղում: [Երգեհոնահար] վարպետը (ուստադ) գործի է դնում այդ խողովակները, ամեն մի խողովակ հատուկ ձայն է հանում, ըստ վարպետի գործողության, և դա [կատարվում է] Թագավորի պատվին, մինչդեռ բոլոր հրավիրյալները նստած են լինում իրենց սեղաններին: Այդ ժամանակ մտնում է քսան մարդ, որոնց ձեռքին կան հուլբակներ, այսինքն ծնծղաներ և նվագում են ինչքան ժամանակ, որ ճաշը տևում է: Խնջույքը շարունակվում է տասներկու օր:

Վերջին օրն ամեն մի մահմեդական գերի ստանում է երկու դինար, երեք դիրհեմ: Ապա Թագավորը վեր է կենում և դուրս գալիս հիպպոդրոմի (բիդրուն) դռնից:

## ԹԱԳԱՎՈՐԻ (ԿԱՅՍՐԻ) ԵՐԹԸ ՄԵԾ ԵԿԵՂԵՑԻ, ՈՐԸ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՎԱՔԱՎԱՅՐՆ Է

*Լջ 123 –127*

*[Թագավորը] հրամայում է, որ պալատի դռնից մինչև քաղաքի կենտրոնում գտնվող ժողովրդի հավաքավայր եկեղեցին, իր անցած ճանապարհը ծածկված լինի զորգերով և որ ճանապարհին չաղ տան մրտննու [ճյուղեր] և կանաչ տերևներ, ինչպես նաև աջ ու ձախ կողմերում պատերը զարդարված լինեն դիպակով:*

*Երբ նա դուրս է գալիս, նրա առջևից գնում են տաս հազար ծերունիներ, կարմիր դիպակ հագած, մազերն ուսերին թափած և առանց գլխանոցի: Նրանց հետևում են տաս հազար երիտասարդներ, հագած սպիտակ դիպակ: Ամենքը հետիոտն են: Ապա գալիս են տաս հազար մանկլավիկներ (ղուլամ, տղա)՝ կանաչ դիպակ հագած, հետո տաս հազար ծառաներ՝ հագած երկնագույն դիպակ, իսկ ձեռքներին ոսկեզօծ տապարներ: Գալիս են հինգ հազար միջին տարիքի ներքինիներ հագած խորասանյան մուլհամ (կես մետաքս), ձեռքներին ոսկե խաչեր: Սրանց հետևում են տաս հազար թուրք և խազար մանկլավիկներ գույնզգույն զոլավոր բաճկոններով, ձեռքներին նիզակներ ու ոսկով զարգարուն վահաններ:*

*Նրանցից հետո գալիս են հարյուր պատրիկներ՝ մեծամեծներից, հագած ամեն գույնի դիպակ, ձեռքներին ոսկե բուրվառներ, որոնց մեջ վառվում է [Ջավայի] հալվե (հալվախունկ): Հետևում են տասներկու պատրիկ, ամենաբարձր կարգի, հագած ոսկեթել զգեստներ և ամեն մեկը ձեռքին ունի ոսկե գավազան: Նրանցից հետո գալիս են հարյուր մանկլավիկներ, արժեքավոր զգեստներով, զունավոր երիզով, մարգարիտներով զարգարված, կրելով մի ոսկե սնդուկ, որի մեջ կա թագավորի այն զգեստը, որն աղոթքի ժամանակ պետք է կրի: Ապա [թագավորի] հենց առջևից գնում է մի մարդ, որ կոչվում է ալռահում (արքո՞ն), որը լռություն է պահանջում մարդկանցից ասելով՝ լռություն, ինչպես նաև մի ծերունի՝ ձեռքին մի կոնք և ոսկե սափոր ընդելուզված մարգարիտներով ու հակինթներով:*

*Վերջապես գալիս է թագավորը թանկարժեք զգեստներով, կոչված ալլաքսիմա (ալ-աքսիմոն), որը մետաքսի մեջ գործված գոհարեղեններից է պատրաստված: Գլխին ունի թագ, ոտքին՝ երկու մուճակներ՝ մեկը սև, մյուսը՝ կարմիր: Ետևից գալիս է վեզիրը: Թագավորն իր ձեռքին բռնում է մի ոսկե տուփ, որի մեջ հող կա: Նա ոտքով քայլում է և հենց որ երկու քայլ է անում, վեզիրը հունարեն ասում է [...], որը նշանակում է՝ հիշեցեք մահը: Երբ նա ասում է, թագավորը կանգ է առնում, բացում տուփը, նայում հողին, համբուրում ու արտասվում: Այսպես քայլում է մինչև հասնում է եկեղեցու դուռը:*

Այդ ժամանակ մարդը (ծերունին) բերում է կոնքը և սափորը. Թագավորը ձեռքերը լվանում է և ասում՝ ես անմեղ եմ բոլոր մարդկանց արյունից: Աստված ինձանից չի պահանջելու նրանց արյունը, քանզի ես վրայից գցում եմ քո վզին[40]: Ապա հանում է վրայի զգեստներն ու տալիս վեզիրին: Նա վերցնում է Պիղատոսի դրությունը, այսինքն այն մարդու, որն իրեն անմեղ է հայտարարել Քրիստոսի արյան համար և այն դնում է վեզիրի վզին ասելով՝ կառավարիր արդարությամբ, ինչպես Պիղատոսը կառավարել է արդարությամբ: Վեզիրն այս ամենն իր հետ շրջում է Կոստանդնուպոլսի շուկաներում և նրան գոչում են՝ կառավարիր արդարությամբ, ինչպես Թագավորը քեզ հանձնարարել է կառավարել ժողովրդին:

Ապա Թագավորը հրամայում է եկեղեցի մտցնել մահմեդական գերիներին, որոնք նայում են զարդերին ու Թագավորին և երեք անգամ գոչում են՝ Աստված թող երկարացնի Թագավորի կյանքը բազում տարիներ: Իսկ Թագավորը հրամայում է նրանց պատվո զգեստներ տալ:

Թագավորի եռևից բերում են երեք գորշ ձիեր, ոսկե թամբերով, ընդելուզված մարգարիտներով ու հակինթներով և ծածկված դիպակե ծածկոցներով, որոնք նույնպես մարգարիտներով ու հակինթներով են զարդարված: Նրանց վրա հեծյալներ չկան և մտցնում են եկեղեցի, ուր նրանց սանձերը կախված են: Հենց որ կենդանիներից մեկը սանձը բերնով վերցնի, ասում են՝ մենք հաղթել ենք իսլամի երկրին: Իսկ, ընդհակառակը, եթե կենդանին հոտոտի սանձը և եռ դառնա, առանց մերձենալու սանձին, ասում են՝ այս կենդանին ծագում է նրանից, որը պատկանել է Ավսթաթին: Ապա Թագավորը թողնում է եկեղեցին ու վերադառնում իր պալատը:

Եկեղեցու արևմտյան կողմում տաս քայլի վրա կա հարյուր կանգուն բարձրությամբ մի սյուն, որը բաղկացած է իրար կպած բազում սյուներից և շրջապատված է արծաթե շղթաների ցանցով: Սյան գագաթին կա մարմարե քառակուսի սեղան, չորսով չորս կանգուն, որի վրա գտնվում է մարմարե դամբարան, միջին այդ եկեղեցին կառուցող Հուստինիանոսի (Աստիլիանուս) [մարմինը]: Դամբարանի վրա կանգնած է ձիու բրոնզե արձան, իսկ ձիու մեջքին Հուստինիանոսն է նստած, գլխին ոսկե թագ՝ մարգարիտներով ու հակինթներով ընդելուզված: Ասվում է, որ դա հենց նրա թագն է: Նա աջ ձեռքը բարձրացրել է, կարծես ժողովրդին կանչում է Կոստանդնուպոլիս:

Եկեղեցու արևմտյան դռան վերևում կա ժողովատեղի (մաջլիս), որը քսանչորս դուռ ունի, ըստ ցերեկվա ու գիշերվա ժամերի, ամեն մեկը՝ մյուսից մի թիզ հեռու: Հենց որ մի ժամ լրանա, դռներից մեկն ինքնաբերաբար բացվում է և ապա, փակվելու դեպքում դարձյալ ինքնաբերաբար է փակվում: Ասվում է, որ այդ ժամացույցը

սարքել է Ապոլոնիոսը (Բուլունիուս):
Հոռոմների ձիերը լավ են մարզված: Նրանք ոչ հեռանում են, ոչ էլ ռնվելու կարիք ունեն, երբ զորականները ձիուց իջնում են: Նրանք չեն վրնջում ու չեն շարժվում: Բավական է նրանց ասել՝ ստա (չթա, կանգնիր) և նրանք կանգնած մնում են մինչև որ նրանց աերը թագավորի մոտից դուրս գա: Որոշ մարդկանց հարցրել եմ այդ մասին: Նրանք ինձ տարել են ձիու երեք բրոնզե արձանների մոտ, որոնք մարզվել են արքունի դռանը և պատրաստված են եղել Ապոլոնիոս իմաստունի ձեռքով որպես հմայիլ (թալիսման) ձիերին արգելելու, որ չվրնջան, կամ մեկը մյուսին չնեղացնի:
Արքունի դռանը կան նաև չորս բրոնզե օձեր, որոնք իրենց պոչերն են կծում: Դա հմայիլ է օձերի դեմ, որ չարիք չգործեն: Որևէ երեխա կարող է մոտենալ օձին և բռնել, իսկ սա չի վնասի նրան:
Քաղաքի Ոսկե դռան կողմը կարելի է տեսնել մի կամար կառուցված քաղաքի փորումի (սուկ. շուկա) մեջտեղը, որի տակ երկու կուռք կա, մեկը նշան է անում և թվում է թե ասում է՝ եկ, մյուսը նույնպես նշան է անում և կարծես ասում է՝ սպասիր մի պահ: Դրանք երկու հմայիլներ են: Այնտեղ բերում են, որոնց պետք է ազատեն և կանգնեցնում երկու կուռքերի միջև: Միաժամանակ մի սուրհանդակ գնում է թագավորին զեկուցելու: Եթե սուրհանդակը վերադառնալու ժամանակ գերիներին գտնի նույն տեղում կանգնած, նրանց վերստին տանում է բանտ: Եթե ընդհակառակը՝ սուրհանդակը նրանց գտնի երկու կուռքերից այն կողմ, նրանք մահապատժի են ենթարկվում և ոչ ոքի չեն խնայում:
Կոստանդնուպոլիսն ունի մի ջրանցք (գետ), որը գալիս է Բուլղար կոչված երկրից: Այս գետը հոսում է քսան օրվա քայլելու ճանապարհ անցնելով և քաղաք մտնելուց հետո բաժանվում է երեք ճյուղի: Մեկը գնում է թագավորի պալատի կողմը, մյուսը՝ մահմեդականների բանտի կողմը, իսկ երրորդը՝ պատրիկների և ընդհանրապես բնակիչների բաղնիքների կողմը: Բանն այն է, որ նրանք խմում են մի ջուր, որը կիսով չափ աղի և կիսով չափ քաղցր է:
Բուլղարները պատերազմում են հոռոմների դեմ, իսկ հոռոմները նրանց դեմ:
Հարունն ասում է, որ Կոստանդնուպոլսի շրջակայքում կան վանականների մենաստաններ: Կոստանդնուպոլսի դռան մոտ կա մի վանք, որը կոչվում է Փրկչի վանք (Դաւր Սաթիրա, հուն.), ուր ապրում են հինգ հարյուր վանականներ: Գետը, որ մտնում է քաղաք և երեք մասի բաժանվում, անցնում է այս վանքի միջով:
Քաղաքի հյուսիսային կողմում, մեկ փարսախ հեռավորության վրա կա մի վանք կոչված Մունիս, ուր ապրում է հազար վանական: Իսկ քաղաքի արևելյան կողմը, չորս փարսախի վրա, մի վայրում չորս

վանք կա տասներկու հազար վանականներով: Մեկը կոչվում է Մունիս, մյուսը՝ Ֆուսադիր, երրորդը՝ Կուկիյա, իսկ չորրորդը՝ Մարիամի վանք: Քաղաքի արևմուտքում կա նաև երկու վանք՝ վեց հազար վանականներով:

## ՀՆԴԿԱՑ ԵՐԿՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*էջ 132*

*Արու Արդալլահ Մուհամմադ իբն Իսհակը հիշել է՝ թե Հնդկաց արքաներն ընդհանրապես շնությունը (զինա) թույլատրելի են համարել, բացի Կումարի թագավորից, որի քաղաքը մտել եմ, նրա մոտ երկու տարի մնացել և չեմ տեսել մի թագավոր, որ խմիչքը [արգելելու] հարցում նրանից ավելի խիստ և հետևողական լինի: Նա մահվամբ էր պատժում շնությունը և խմելը:*

*[........]*

*Ապա հաջորդում է Հայոց երկիրը (բիլադ ալ-Արման): Սրանք (հայերը) գեղեցիկ են և իրենց արու զավակներին փոքր հասակում ամուսնացնում են, գտնելով որ դա ավելի լավ է և ճիշտ, քան շնությունը:*

## ԽԱԶԱՐՆԵՐԸ

*էջ 139*

*Պածինակների (պեչենեգների)[41] երկրի ու Խազարաց միջև տասը օրվա քայլելու ճանապարհ է տափաստանների ու անտառների միջով: Այս երկու երկրների միջև չկան ուղիներ և ուղիղ ճանապարհներ, այլ հասնում են Խազարաց երկիրը, ինչպես ասվեց, անտառների ու թավուտների միջով:*

*Խազարական հողն ընդարձակ է, հասնելով մեծ լեռներին (Կովկաս), որոնց հեռավոր ծայրերում ապրում են Թուլասը և Լուղարը և ապա ձգվում է մինչև Տփղիսի (Տաֆլիս) լեռները:*

*Նրանց թագավորը կոչվում է Իշա, իսկ մեծ թագավորը Խազարաց խաքանն[42] է: Վերջինս միայն անվամբ է իշխում, իսկ իրական իշխանությունը պատկանում է Իշային, քանի որ կառավարման և զորքի ղեկավարման մեջ այնպիսի մեծ հեղինակություն ունի, որ ոչ ոքի հաշիվ չի տալիս, թեկուզ ձևականորեն իրենից բարձրին:*

*Նրանց մեծ տիրակալը, ինչպես նաև Իշան ու նրա մոտ եղած զորավարները, մեծամեծները դավանում են հրեական կրոնը[43]: Մնացած խազարները դավանում են մի կրոն, որը մոտ է թուրքերի կրոնին:*

Նրանց գլխավոր քաղաքը Սար Աչինն է. կա նաև մի այլ քաղաք, որը կոչվում է Հար Նիյա կամ Հաբնիյա[44]: Ջմռանը խազարներն ապրում են այդ երկու քաղաքներում, իսկ երբ գարուն է սկսվում, նրանք դուրս են գալիս տափաստանները և չեն հեռանում մինչև ձմռան գալը: Այդ երկու քաղաքներում կան մահմեդականներ և նրանք ունեն իրենց մզկիթները, իմամները, հավատագիրները (մուեզզին) և դպրոցները (քատատիբ):

Նրանց թագավորը՝ Իշան, ազդեցիկ անձանց ու բարեկեցիկներին պարտավորեցրել է ձիավորներ հայթայթել, ըստ իրենց կարողության և սպրուստի հնարավորությունների: Խազարներն ամեն տարի արշավում են պածինակների դեմ:

Իշան անձամբ գլխավորում է արշավանքները և իր զորքերով դուրս է գալիս կռվի: Նրանց [ռազմիկները] շատ գեղեցիկ են: Երբ այդ զորքերը հարձակվում են որևէ մեկի վրա, լրիվ սպառազինությամբ են գնում, հարուստ զարդարանքով, դրոշներով և պինդ զրահներով: [Իշայի] հեծելազորքը բաղկացած է տաս հազար ձիավորից, որոնց մեջ կան թե պարտադիր ծառայությամբ թագավորից ռոճիկ ստացող ռազմիկներ, թե հարուստների միջոցներով զինվող [ձիավորներ]: Երբ Իշան որևէ տեղ է գնում, նրա առջևից տարվում է մի տեսակ հովանոց դափի ձևով, որը կրում է մի ձիավոր: Ապա գալիս է Իշան, իսկ նրա ետևից զորքերը՝ երբեք աչքերը չհեռացնելով այս հովանոցի փայլից: Եթե հաղթում ու ավար են վերցնում, հավաքում են ճամբարում և Իշան ընտրում ու վերցնում է իր ցանկացածը, իսկ մնացած ավարը բաժանվում է զորքի մեջ:

## ՍԱՐԻՐԸ

էջ 147–149

Խազարաց [երկրից] մինչև Սարիր տասներկու օրվա քայլելու ճանապարհ է տափաստանի միջով, իսկ հետո երեք օրվա ճանապարհ անցնում է բարձրաբերձ լեռների ու հովիտների միջով, մինչև հասնում է թագավորի ամրոցը, որը լեռան գլխին է, չորսով չորս փարսախ [մեծությամբ] և շրջապատված քարե պարսպով:

Թագավորն ունի ոսկե գահ (սարիր) և արծաթե գահ: Ամրոցի բնակիչներն ամենքը քրիստոնյա են, իսկ թագավորության մնացած բնակիչները բոլորն անհավատ (քաֆիր) են: Թագավորի իշխանության տակ քսան հազար կիրճ կա, որտեղ տարբեր ցեղեր են ապրում և ունեն կալվածներ ու գյուղեր: Նրանք երկրպագում են չոր գլխին:

Երբ նրանց մոտ որևէ մեկը մեռնում է, [հանգուցյալին] դնում են պատգարակի վրա, դուրս բերում հրապարակ և այնպես թողնում են

*երեք օր՝ պատգարակի վրա: Ապա քաղաքի բնակիչները զենք ու զրահով, ձի հեծած, դնում են հրապարակ, նիզակները ցցում են հանգուցյալի դեմ, պտտվում պատգարակի շուրջը, նիզակներով սպառնում են, սակայն չեն խփում:*

*Հարցրեցի այդ արարքի մասին և նրանք պատասխանեցին, թե մեզ մոտ մի մարդ կար, որը մեռավ ու թաղվեց, սակայն երեք օր անց գերեզմանից ձայն լսվեց: Ուստի հանգուցյալին երեք օր թողնում ենք և չորրորդ օրը վախեցնում ենք զենքով, որ եթե հոգին զուրս եկած լինի, վերադառնա մարմինը: Այս սովորությունն արդեն երեք հարյուր տարի է գոյություն ունի:*

*Նրանց թագավորը կոչվում է Ավար: Նրա ամրոցի աջ կողմից ձգվում է մի ճանապարհ հսկա լեռների ու խիտ անտառների մեջ, որը տասներկու օր քայլելուց հետո հասնում է Խայզան[40] կոչված քաղաքը: Նրանք ունեն Ատրներսեհ (Ադարնարսի) կոչված մի թագավոր, որը երեք կրոն է դավանում: Ուրբաթ օրը աղոթում է մահմեդականների հետ, շաբաթ օրը՝ հրեաների հետ, իսկ կիրակի օրը՝ քրիստոնյաների հետ: Ամեն մի թագավոր, երբ իշխանության գլուխ է անցնում, մտածում է, թե՝ ամեն մի կրոնի հետևող հավատում է իր կրոնին և թե իրն է ճշմարիտը ու իր կրոնից բացի բոլորը սուտ է, իսկ ես բոլոր կրոններն ունեմ, այնպես որ բոլոր կրոնների ճշմարտությանը հաղորդակից եմ:*

*Նրա քաղաքից տաս փարսախ հեռավորության վրա կա Ռանհիս կոչված քաղաքը, ուր մի հսկայական ծառ կա, որը ոչ մի պտուղ չի տալիս: Քաղաքի բնակիչներն ամեն չորեքշաբթի նրա վրա տեսակտեսակ պտուղներ են կախում, երկրպագում են, զոհեր մատուցում:*

*Սաբիրի թագավորն ունի մի ամրոց, կոչված Ալալ, կամ Ղումիկ: Սա անմատչելի է և այնտեղ կա թագավորի գանձարանը: Այդ բերդը նրան տվել է Անուշիրուանը:*

## ԱԼԱՆՔ

*Սաբիրի թագավորությունից դեպի ձախ դուրս գալով, երեք օր քայլելով կգնաս լեռներով ու մարգագետիններով, մինչև հասնես Ալանաց թագավորին[46]: Ալանաց թագավորն ինքը քրիստոնյա է, սակայն նրա թագավորության ժողովուրդը ընդհանրապես անհավատ է, կռապաշտ:*

*Ապա տաս օրվա քայլելու ճանապարհ կկտրես գետերի ու ծառերի մեջ, մինչև որ հասնես մի ամրոց, որը կոչվում է Դրունք Ալանաց[47] (Բաբ ալ-Լան), որը լեռան գլխին է: Լեռան ստորոտում կա մի ճանապարհ, իսկ շուրջը հսկա լեռներ են: Այս ամրոցի պարիսպը պահպանում է ամեն օր հազար մարդ նրա բնակիչներից, նշանակված լինե-*

լով որպես կայազոր գիշեր ու ցերեկ [Հսկելու]:

Ալանները չորս ցեղից են բաղկացած: Պատիվն ու իշխանությունը պատկանում է այն ցեղին, որը կոչվում է Դահսաս: Ալանաց թագավորը կոչվում է Բաղաիր և այս անունը տրվում է նրանց ամեն մի թագավորի:

Ալ-Բար վ-ալ-Արուար (Դարբանդ) քաղաքը Կովկաս լեռների գագաթներից ձգվում է մինչև Խազարաց ծովը և երեք մղոն խրվում ծովի մեջ:

## ԻԲՆ ՌՈՒՍՏԱ

## ԳԻՐՔ ԹԱՆԿԱԳԻՆ ԱՐԺԵՔՆԵՐԻ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԱԼԱԿ ԱԼ-ՆԱՖԻՍԱ )

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Հնդկաց, Պարսից ու Չինաց ծովը – Հավանաբար նկատի ունի Հնդկական օվկիանոսը:

[2] Ռումի, Իֆրիկիայի ու Ասորիքի ծովը – Միջերկրական ծով:

[3] Օվկիանոս ծովը, որը Մաղրիբի ծովն է - Ատլանտյան օվկիանոս:

[4] Պոնտոսի ծովը – Սև ծով: (Վ. Տ.-Ղ.):

[5] Թաբարիստանի ու Վրկանա (Ջուրջանի) ծովը – Կասպից ծով:

[6] Ռումի, Իֆրիկիայի ու Եգիպտոսի ծով – Միջերկրական ծով:

[7] Ազրիական (Ազրիաս) - Ադրիական, կամ Ադրիատիկ ծովը:

[8] ... մի ուրիշ ծոց – Թերևս նկատի ունի Տիրենեյան և Լիգուրիական ծովերը միասին:

[9] Կանաց ծով – Կրկին նկատի ունի Ատլանտյան օվկիանոսը:

[10] Շարթա - Հավանաբար խոսքը Այրոբան ծովի մասին է, որը մաս է կազմում Միջերկրականի:

[11] Տանաիս - Այսպես էին Հին Հույներն անվանում Դոն գետը:

[12] Մեոտիս – Հին Հույներն ու Հռոմեացիք Ազովի ծովը կոչում էին Մեոտիս, տեղի Մեոտ ցեղերի անունով: Բայց իհարկե Դոն գետը ոչ թե դուրս է գալիս, այլ ընդհակառակը՝ թափվում է Ազովի ծովը:

[13] Դուրս է գալիս մի ծոց – Մարմարա ծով, որը միացած է Սև ծովին և ոչ թե Ազովի, ինչպես գրում է մատենագիրը:

[14] Հայկական ծովը - Ենթադրաբար սա Վանա լիճն է: Թեև արաբ մատենագիրների մոտ այս լիճը սովորաբար ունի երեք այլ անուն՝ Թիռիխի (Տառեխի), Խլաթի (Խլաթի), կամ Արջիշի(Արճեշի) լիճ:

[15] Միհրան գետը – Ինդոս գետն է Հնդկաստանում (ներկայում Պակիստան), որը նաև Արաբական խալիֆայության սահմանն էր արևելքում:

[16] Չինկան լեռներից – Ինդոս գետը սկիզբ է առնում Տիբեթի Կայլաս լեռնաշղթայի լանջերից: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 4, էջ 340):

[17] Մանսուրա գետ – Ինդոս գետը:

[18] Բարզանջ - գուցե Բարզանդ, տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 230:

[19] Փայտակարան (Բայլական) – Տե՛ս Խալիֆա իբն Խայաթ, ծնթգր. 15:

[20] Ալ-Լան - Ալանաց երկիր, տե՛ս Խալիֆա իբն Խայաթ, ծնթգր. 53:

[21] Սիսար – Քաղաք Իրանում, որը շրջապատված է Համադան, Դինավար քաղաքներով և Ատրպատականով: Արաբ մատենագիրները այն տեղադրում են Դինավար-Մարաղա ճանապարհի վրա՝ Դինավարից 20-22 փարսախ հյուսիս: (Sisar, V. Minorsky, EOI, CD-ROM, (IX: 680a)):

[22] Երկու Զաբերի – Մեծ և փոքր Զաբ գետերը, որոնք Տիգրիսի վտակներն են:

[23] Հազիսա - Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 67:

[24] Նահրաուան գետը - Բառարանը գետ չի հիշատակում, բայց նշում է նույնանուն գյուղի մասին: «- Նահրեվան - Գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի նահանգի Սղերդի գավառում, Ջուղի լեռան (Արարագ) մոտ»: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 959):

[25] Սարոս (Սայհուն) - Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 34:

26 Պիրամոս (Ջայհան) - Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 75:

27 Տևրիկ (Աբրիկ) - Քաղաք, բերդաքաղաք, ճանապարհային կայան Փոքր Հայքում, Սեբաստիայի գավառում, նրա արևելյան սահմանի մոտ, Տևրիկի գավառակում, Եփրատի աջակողմյան Տևրիկ վտակի ափին, Մեծ Հայքի սահմանի մոտ: Տևրիկի գավառակի կենտրոնն էր: (ՀՀՇՏԲ. հ. 5, էջ 80):

28 Ալ-Բաթաիհ - Բառացի նշանակում է ճահիճներ (եզ. բաթիհա), սակայն օգտագործվում է մարգագետին, կամ պարբերաբար հեղեղվող հողի իմաստով: Այսպես է կոչվում Եփրատի ու Տիգրիսի ստորին հոսանքի շրջանը, որը գտնվում է Քուֆա, Վասիթ և Բասրա քաղաքների միջև: (al-Batiha, M. Streck [ Saleh El-Ali], EOI, CD-ROM, (I: 1039b)):

29 Ջիրուֆտ – Քիրման նահանգի մի գավառ, որը բարձրադիր է և բարեբեր և, որի մեջ մտնում է նույնանուն մի քաղաք: (Djiruft, R. N. Frve, EOI, CD-ROM, (II: 553b)):

30 Սիրաջան – Քիրման նահանգի գլխավոր քաղաքներից մեկը, նրա մայրաքաղաքը մինչև 10-րդ դարը: (al-Siradjan , C. E. Bosworth, EOI, CD-ROM, (IX: 667a)):

31 Ջուր - Գոր, տես Ջահիզ. ծնթգր. 8:

32 Վարդանակերտ (Վարսան) – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 52:

33 Սուղդարիլ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 111:

34 Ոստան ( խտան) - կամ ուստան, այսպես են արտասանում արաբները սասանյան վարչական օստան (հայ. ոստան) բառեզրը, որը գոյատևեց նաև խալիֆայության օրոք: Այս անունով մի քաղաք կար Մեծ Հայքի Վասպուրական աշխարհի Ռշտունիք գավառում, Վանա լճի հարավային ափից մոտ մեկ կիլոմետր հարավ, Աղթամար կղզու դիմաց, Արտոս լեռան հյուսիս-արևմտյան լանջերին: (Ustan, C. E. Bosworth, EOI, CD-ROM, (X: 927a), ՀՀՇՏԲ. հ. 4, էջ 177):

35 Թասուջ - Գավառ:

36 Անբար – Քաղաք Միջագետքում:

37 Ատտալիա (Անթալիա) – Քաղաք Փոքր Ասիայի հարավում՝Միջերկրականի ափին:

38 Նիկիա - Տե՛ս Յակուբի (պ.), ծնթգր. 1:

39 Սանկարա - Իրաքի մի գյուղ ստորին Եփրատի մոտ, ալ-Սամաուայի և ալ-Նասիրիյյայի միջև: (Senkere, M. J. E. Richardson, EOI, CD-ROM, (IX: 148)):

40 Աստվածաշունչ, Մատթ. 37, 24 Ղևտ. 16:

41 Պածինակներ (պեչենեգներ) – Թյուրքական ցեղերի միություն Ը-Թ դարերում: Բացի թյուրքական ցեղերից, այդ միության մեջ էին մտնում նաև որոշ սարմատական և ուգրո-ֆիննական ցեղեր: Մինչև Թ դարը պեչենեգները վաչկատուն կյանքով էին ապրում Արալյան ծովի ու Վոլգա գետի միջև ընկած տարածքներում: Թ դարում խազարների ու օղուզների ճնշման տակ, պեչեննգները անցան Վոլգա գետը, դուրս մղեցին Վոլգայի և Դոնի միջև գտնվող մադյարներին(ուգր) և գրավեցրին հյուսիսային մերձսևծովյան տարածքները՝ ընդհուպ մինչև Դանուբ գետը: Պեչենեգները հաճախ հարձակումներ էին գործում Բյուզանդիայի, Հունգարիայի և հատկապես Ռուսիայի վրա: ԺԱ դարի կեսերից նրանք թուլացան, զիջեցին իրենց տարածքները պոլովցիներին, իսկ իրենք բաժանվեցին մի քանի մասի: Մի մասը անցավ Կարպատներ և Դանուբի ավազան, մյուսները հաստատվեցին Հունգարիայում, իսկ մյուսներն էլ՝ Ռուսիայի սահմանների վրա: Պեչենեգները աստիճանաբար ձուլվեցին իրենց հաստատված երկրների բնակչության մեջ: (Сов. Ист. Энц., т. 11, стр. 124-125):

42 Խազարաց խաքան - Տե՛ս խազարներ, Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 44:

43 ... գավանում են հրեական կրոնը – Խազարների հրեական կրոն ընդունելու ճշգրիտ թվականը հայտնի չէ: Պատմիչների տեղեկությունների համադրումը թույլ է տալիս այն թվագրել Ը դարի վերջին քառորդով: Նախքան այդ, Խազարիայում բնակ-

վոզ հիմնականում թյուրքական ցեղերը, հեթանոս էին: Միաստվածային կրոններից հատկապես մովսիսականությունն ընտրելը բացատրվում է նրանով, որ Վոլգայի ավազանը գտնվում էր հրեա առևտրականների ճանապարհի վրա, որոնք մեծ թվով համայնքներ էին հաստատել Խազարիայում, փախչելով հալածանքներից և գաղթելով Բյուզանդիայից, Իրաքից ու Իրան-Միջին Ասիայից: Բայց, ինչպես որ նշում է Իբն Ռուստան, հրեական կրոնն ընդունել էին միայն խաքանը, իր զորավարներն ու ավագանին, իսկ ժողովուրդը մնում էր հեթանոս: (Новосельцев, Хазарское государство, стр. 144-154):

44 Սար Աչին, Հարնիյա – Ըստ Արտամոնովի, որն իր հերթին հիմնվում է այլ ուսումնասիրողների տեսակետների վրա, այս երկու տեղանունները Սար Աչին (կամ Սարաչնն) և Հարնիյա (կամ Հարնեյյա) Խազարների պետության Իթիլ մայրաքաղաքի երկու թաղամասերի անվանումներն են, որոնք գտնվում էին Իթիլ (Վոլգա) գետի երկու ափերին: Նույն հեղինակը նշում է, որ Իբն Խորդադբեհի հիշատակած Խամլիջը (Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 20) այդ նույն Հարնիյա թաղամասի խիստ աղավաղված տարբերակն է: (Артамонов, История хазар, стр. 394).

45 Խայդան – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 161:

46 Ալանաց թաղավորին – Տե՛ս նաև Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 53:

47 Դրունք Ալանաց – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 55:

## ՖԱՐՂԱՆԻ (Թ դար)

Նրա լրիվ անունն է Աբու-լ-Աբբաս Ահմադ իբն Մուհամմադ իբն Քասիր ալ-Ֆարղանի: Դատելով անունից ծնվել է Ֆարղանայում՝ Միջին Ասիայի Սողդ երկրում, որն իրանական բնակչություն ուներ:

Մանոթ է իբրև աստղաբաշխ և աշխարհագրագետ: Ըստ մատենագրական տվյալների ապրել է Մամունի (813-833) օրոք և դեռ կենդանի է եղել Մուտավաքքիլ խալիֆայի մահվան (861) տարում, քանզի Աբու-լ-Մահասին իբն Տաղրիբիրդին (ԺԵ դ.) վկայում է, որ այդ տարում Մուտավաքքիլը Ահմադ իբն Քասիր ալ-Ֆարղանիին ուղարկեց Ֆուստատ (Եգիպտոս)՝ Նեղոսի ջրաչափի (նիլոմետր) կառուցման աշխատանքներին:

Նրա մեծ աշխատությունը, որի ձեռագրի օրինակները գտնվում են Օքսֆորդում, Փարիզում, Կահիրեում, ինչպես նաև Պրինստոնի (ԱՄՆ) համալսարանի գրադարանում, տարբեր վերնագրեր ունեն՝ «Ջավամի Իլմ ալ-Նուջում ու ալ-Հարաքատ ալ-Սամավիյա» (Ժողովածու աստղաբաշխության և երկնային շարժումների), «Ուսուլ Իլմ ալ-Նուջում» (Աստղաբաշխության օրենքներ), «ալ-Մուդխալ Իլա Իլմ Հայատ ալ-Աֆլաք» (Ներածություն մոլորակների կառուցվածքի գիտության) և «Քիտաբ ալ-Ֆուսուլ ալ-Սալասին» (Երեսուն գլուխների գիրք):

Այս աստղագիտական երկը միջնադարում (ԺԲ դ.) թարգմանվել է լատիներեն Հովհան Իսպալենսիսի և Ժերար Կրեմոնացու կողմից: Թարգմանվել է նաև եբրայերենի: Լատիներեն թարգմանությունը հրատարակվել է Ֆերրարայում՝ 1493-ին, Նյուրենբերգում՝ 1537-ին և Փարիզում՝ 1546-ին: Յակոբ Քրիստմանը այն եբրայերենից թարգմանել է լատիներենի, որը տպագրվել է Ֆրանկֆուրտում՝ 1590-ին: Յակոբուս Գոլիուսը հրատարակել է արաբերեն բնագիրը, լատիներեն թարգմանությամբ և ծանոթագրություններով 1669-ին Ամստերդամում:

Բացի այս գլխավոր երկից, որը եվրոպացի աստղաբաշխ Ռեգիոմոնտանուսից առաջ, բոլոր արաբ աստղաբաշխների գործերից ամենահայտնին էր Եվրոպայում, Ֆարղանին գրել է նաև երկու գիրք աստրոլաբների (աստղաբաշխական գործիք) մասին, գրել է նաև երկու գիրք՝ «ալ-Քամիլ ֆի-լ-Ասթուրլաբ» (Լիակատար տեղեկություններ աստրոլաբի մասին) և «Ֆի Սանաատ ալ-Ասթուրլաբ» (Աստրոլաբների պատրաստման արվեստը), որոնցից ձեռագրեր կան Բեռլինում և Փարիզում:

Ֆարղանիի աստղաբաշխական երկը բաղկացած է երեսուն գլուխ-

*ներից (ֆասլ)։ Թարգմանել ենք առաջին և իններորդ գլուխները. իսկ մնացած գլուխները աստղաբաշխության են վերաբերում՝ մոլորակների, աստղերի, լուսնի և արևի խավարման, մոլորակների երկրից ունեցած հեռավորության և այլ հարցերի մասին։*

*Արամ Տեր-Ղևոնդյան*

*(al-Farghani, H. Suter [J. Vernet], EOI, CD-ROM, (II: 793a))*

*Տե՛ս.*

**Muhammedis fil. Ketiri Ferganensis, qui vulgo Alfraganus dicitur, Elementa astronomica, Arabice et Latine. Ed. Jacob Golius, Amsterdam, 1669.**

# ՖԱՐՂԱՆԻ

## ԳԻՐՔ ԵՐԿՆԱՅԻՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԵՎ ԱՍՏՂԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ (ՔԻՏԱԲ ԱԼ-ՀԱՐԱՔԱՏ ԱԼ-ՍԱՄԱՎԻՅԱ ՎԱ ԻԼՄ ԱԼ-ՆՈՒՋՈՒՄ)

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՔԱՍԻՐ ԱԼ-ՖԱՐՂԱՆԻԻ ՄԱՏՅԱՆԻ ՍԿԻԶԲԸ ԱՍՏՂԵՐԻ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՕՐԵՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ
### ԱՐԱԲՆԵՐԻ, ՍՏԱՐՆԵՐԻ (ԱՋԱՄ) ՏԱՐԻՆԵՐԻ, ՆՐԱՆՑ ԱՄԻՍՆԵՐԻ, ՕՐԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԻՐԱՐԻՑ ՈՒՆԵՑԱԾ ՏԱՐԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*էջ 1-6*

*Գիտեցիր, որ արաբների և օտարների տարվա ամիսները տասներկուսն են: Արաբների ամիսներն են՝ Մուհառամ, Սաֆար, Ռաբի Ա ամիսը, Ռաբի Բ ամիսը, Ջումադա Ա, Ջումադա Բ, Ռաջաբ, Շաաբան, Ռամադան ամիսը, Շավվալ, Զու-լ-Կաադա, Զու-լ-Հիջջա: Կան երեսուն օր և քսանինն օր ունեցող ամիսներ: Ուստի տարվա մեջ վեց լրիվ ամիս կա, վեց՝ պակասավոր. տարին երեք հարյուր հիսունչորս օր ունի, բացարձակ հաշվով, որն ամբողջությունն է: Սակայն եթե ստույգ հաշվենք, ապա արաբների տարվա օրերը, ամեն երեսուն տարին մեկ տասնմեկ օրով ավելանում են, այնպես որ ամեն տարվան ընկնում է օրվա մեկ հինգերորդը, կամ վեցերորդը: Այսպիսով, տարվա օրերը իրականում դառնում են երեք հարյուր հիսունչորս օր և մեկ հինգերորդ, կամ մեկ վեցերորդ օր:*

*Ասորիների (սուրիանի) ամիսներն են՝ Տիշրին Ա, որը երեսունմեկ օր է, Տիշրին Բ՝ երեսուն օր, Քանուն Ա՝ երեսունմեկ օր, Քանուն Բ՝ երեսունմեկ օր: Շուբաթ ամիսը, որը երեք տարին է լինում քսանութ օր, իսկ չորրորդ տարում՝ քսանինն օր և այդ տարին կոչվում է նահանջ տարի (քաբիսա), այդ մեկ օրվա ավելանալու պատճառով: Ապա Ազար՝ երեսունմեկ օր, Նիսան՝ երեսուն օր, Այյար՝ երեսունմեկ օր, Հարան՝ երեսուն օր, Տամմուզ՝ երեսունմեկ օր, Աբ՝ երեսունմեկ օր, Այլուլ՝ երեսուն օր: Այսպիսով ամբողջ տարին լինում է երեք հարյուր վաթսունհինգ և քառորդ օր: Ամեն չորս տարին մեկ օր ավելանալով իրականում դառնում է երեք հարյուր վաթսունվեց օր:*

Հոռոմների ամիսները օրերով համապատասխանում են ասորինների ամիսներին: Նրանց մոտ տարվա առաջին ամիսը հունվարն (Յանուարիուս) է, որը Քանուն Բ-ն է, Շուբաթը փետրվարն (Ֆիբրավարիուս) է, Ազարը՝ մարտը (մարթիուս), Նիսանը՝ ապրիլը (իբրիլիուս), Այյարը՝ մայիսը (մայուս), Հազիրանը՝ հունիսը (յունիուս), Թամմուզը՝ հուլիսը (յուլիուս), Աբը՝ օգոստոսը (աղուսթուս), Այլուլը՝ սեպտեմբերը (սիբթանբիր), Տիշրին Ա-ն՝ հոկտեմբերը (ուկտուբիր), Տիշրին Բ-ն՝ նոյեմբերը (նուանբիր), Քանուն Ա-ն՝ դեկտեմբերը (դիկանբիր):

Պարսից ամիսներն են Ֆարվարդին մահ, որի առաջին օրն է Նովրուզը, Արդիբահիշտ մահ, Խորդադ մահ, Տիր .մահ, Մորդան մահ, Շահրիար Մահ, Միհր մահ, որի տասնվեցերորդ օրը միհրականն է: Աբան մահ, որի քսանվեցերորդ օրը այն տասնօրյակի առաջին օրն է, որը կոչվում է ֆարվարդիջան, որից հինգ օրը Աբան մահից է համարվում և հինգ օրն էլ որևէ ամսի մեջ չեն հաշվում և կոչվում է Անդարջահատ: Ազար մահը, որի առաջին օրը Թրաձուկ (քաուսաջ) նստելու օրն է: Ապա՝ Դայ մահը, Բահաման մահը և Իսֆանդարմադ մահը: Ամեն մի ամիսն ունի երեսուն օր և Աբան մահի ու Ազար մահի միջև կա հինգ օր, որը որևէ ամսի մեջ չեն հաշվում: Այսպիսով տարին ունի երեք հարյուր վաթսունհինգ օր:

Պարսիկները ամսվա օրերն այս անուններով են կոչում՝ հուրմուզ (Որմիզդ), բահման, արդիբահիշտ, շահրիար, իսֆանդարմադ, խուդադ, մարդադ, դիբաղար, ատար, աբան, խուր, մահ, տիր, դուշ, դիբմեհեր, միհր, սարուշ, ռաշ, ֆերվարդին, բահրամ, ռամ, բադ, դիբդին, դին, արդ, աշտաղ, ասման, զամիադ, մարասֆանդ, անիրարան: Անդարջահատի օրերն են՝ ահանդ ջահ (զահ), աշանդ ջահ, ասֆանդման ջահ, ախշիտար ջահ և հիշտ վիշտ ջահ:

Ղպտիների ամիսներն են՝ Տուտ (Թոթ), Ֆանաֆի, Հատուր. Քիվաֆի, Թուբիմախիր, Ֆամինուտ, Ֆարմուտ, Բախուն, Բաունի, Իֆիուֆի, Մասուրի, որից հետո հինգ ավելորդ օրեր կան, որոնք կոչվում են Ավկյաց և ղպտերեն կոչվում են Աբուղամնա և մի քանի օր: Ամեն ամիս երեսուն օր ունի և այսպիսով տարին ունի երեք հարյուր վաթսունհինգ օր, պարսիկների տարվա օրերի չափ:

Անցյալում այս ամիսների առաջին օրերը համապատասխանում էին պարսից ամիսների առաջին օրերին: Այսպես, Տուտի (Թոթ) առաջին օրը Դայ մահի առաջին օրն էր և այսպես ամեն ամիս համապատասխանորեն, մինչև որ ղպտիների տարվա վերջին օրը համընկնում էր Ազար մահի վերջին: Այսպես է նաև զիջերի (աստղաբաշխական աղյուսակների) մեջ, ուր կատարվել է հաշվարկը մինչև մեր օրերը: Սակայն ղպտական ամիսները, որ Եգիպտոսի ժողովուրդը այժմ օգտագործում է, տարբերվում է սրանից, քանզի տարվա օրերի մեջ ավելացել են չորս օր, ըստ հոռոմների և ասորիների սովորության և

*այսպիսով նրանց ամիսները տարբերվեցին պարսից ամիսներից և համապատասխանեցին ասորիների և հոռոմների ամիսներին, տարվա օրերի գումարի հարցում: Նրանց մոտ տարվա առաջին օրը Աբ (օգոստոս) ամսի քսանիններորդ օրն է:*

## ԹՎԱԿԱՆՆԵՐԸ

*էջ 6–7*

*Արաբական թվականը մարգարեի Մեքքայից Մադինա գաղթի տարվա սկզբից են հաշվում, որի առաջին օրը հինգշաբթի էր:*

*Պարսից թվականը Խոսրովի (Քիսրա)[1] որդի Շահրիարի որդի Հազկերտի (Յազդաջիրդ)[2] թագավորության առաջին տարուց են հաշվում և դրա առաջին օրը երեքշաբթի էր:*

*Հոռոմների և ասորիների թվականը Ալեքսանդրի իշխանության առաջին տարվանից են հաշվում և դրա առաջին օրը երկուշաբթի էր: Ալեքսանդրը՝ Երկկոտոշավորն է (Զու-լ-կարնայն)[3]:*

*Ղպտիների թվականը, ինչպես գրված է (Պտղոմեոսի) Ալմագեստում (Մաջիսթի) Նաբուգոդոնոսորի (Բուխտունուսսուր)[4] թագավորության առաջին տարվանից է սկսում և նրա առաջին օրը չորեքշաբթի էր: Ղպտիների թվականը ըստ Պտղոմեոսի զիջի (աստղաբաշխական աղյուսակ) Ֆիլիֆուսի (Փիլիպպոս)[5] առաջին տարվանից էր, որն ընկնում է կիրակի օրը:*

*Նաբուգոդոնոսորի և Հազկերտի թվականների միջև հազար երեք հարյուր յոթանասունիննը պարսկական տարի և երեք ամիս կա:*

*Փիլիպպոսի և Հազկերտի թվականների միջև ինը հարյուր հիսունհինգ տարի և երեք ամիս կա:*

*Ալեքսանդրի և Հազկերտի թվականների միջև ինը հարյուր քառասուներկու տարի կա հոռոմների տարիներով և երկու հարյուր հիսունինն օր:*

*Հիջրայի և Հազկերտի թվականների միջև, օրերով հաշված, երեք հազար վեց հարյուր քսանչորս օր կա:*

*Այսպիսով, թվականներից առաջինը Նաբուգոդոնոսորի թվականն է, ապա Փիլիպպոսի թվականը, Ալեքսանդրի թվականը[6], Հիջրայի թվականը[7] և Հազկերտի թվականը[8]:*

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ
## ԱՇԽԱՐՀԻ ՀԱՅՏՆԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՈՒ ՔԱՂԱՔՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱՄԵՆ ՄԻ ԻԿԼԻՄՈՒՄ ԵՂԱԾՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*լջ 35-39*

*Այստեղ հիշենք հայտնի երկրների ու քաղաքների անունները ամեն մի իկլիմում:*

*Սկսենք արևելքից և նախ բացատրենք, թե ինչ է երկրների երկարությունն ու լայնությունը: Ամեն մի քաղաքի երկարությունը դա նրա հեռավորությունն է բնակելի քառորդի (ալ-ռուբր ալ-մաասքուն) սկզբից, դեպի արևելք կամ դեպի արևմուտք: Դա այն չափն է, որը գտնվում է քաղաքի միջօրեականի ու բնակելի քառորդի միջև: Իսկ լայնությունը դա այն հեռավորությունն է, որ կա հասարակածից դեպի վեր հեռանալով հորիզոնից մինչև բևեռը:*

*Առաջին իկլիմը սկսում է արևելքից՝ Չինաստանի հեռավոր ծայրերից, անցնում է Չինաստանի (Սին) վրայով, հարավային կողմերով: Այստեղ կա Չինաստանի Աշտաֆիրա քաղաքը, որը նրա նավահանգիստն է, ապա անցնում է Հնդկաստանի (Հինդ) հարավում գտնվող ծովի[9] ափերով, Սինդով[10] և Քարալ կղզով, ճեղքում է ծովը. հասնելով Արաբիայի թերակղզին, Եմենը: Նրանում հայտնի քաղաքներն են՝ Զաֆարը[11], Օմանը[12], Հադրամաուտը[13], Ադենը (Ադան)[14], Սանաան[15], ալ-Կայնը[16], Մարան, Տաբալան, Ջարաշը[17], Մահարը[18], և Սարան[19]: Ապա կլիման ճեղքում է Կարմիր (Կուլզում) ծովը, անցնում Եթովպիա (Հաբաշա) երկիրը. Եգիպտոսի (Միսր) Նեղոսը, հետո այնտեղ կա Եթովպիական թագավորության քաղաքը, որ կոչվում է Ջարմա[20]. իսկ Դունկուլան[21] Նուբիայի քաղաքն է: Ապա իկլիմն անցնում է Մաղրիբի հողով, բերբերների երկրի հարավով, մինչև որ հասնում է Մաղրիբի ծովը[22]:*

*Երկրորդ իկլիմը սկսում է արևելքից, անցնում Չինաց երկիրը. Սինդ երկիրը, ուր կա Մանսուրա քաղաքը[23], ալ-Բիրուն և Դայբուլը[24], ապա ճեղքում է Կանաչ ծովի[25] ու Բասրայի ծովի[26] հանդիպման վայրը, անցնում է Արաբիայի թերակղզին Նաջդի[27] ու Տիհամայի[28] վրայով: Սրա քաղաքներից են Յամաման[29], Բահրայնը[30], Հաջարը, Յասրիբը[31] քաղաքը, Հիջազը[32], Մեքքան[33] (Մաքքա), Թաիֆը[34] և Ջիդդան[35]: Ապա ճեղքում է Կարմիր ծովը, անցնում Եգիպտոսի Սաիդը (հարավ), Նեղոսը: Նրա քաղաքներն են Կուսիս[36], Իխմիմ, Իսնայ, Անսինա և Ասուան[37], ապա անցնում է Մաղրիբի հողը, Իֆրիկիա երկրի[38] միջին մասը, բերբերների երկիրը և վերջանում Մաղրիբի ծովի վրա:*

*Երրորդ իկլիմը սկսվում է արևելքից, անցնում է Չինաստանի հյուսիսը, ապա Հնդկաստանը: Նրանում է Կանդահար[39] քաղաքը: Հետո*

անցնում է Սինդի հյուսիսը, Քաբուլ[40], Քիրման[41], Ալեքսանդրիա[42], Սիջիստան[43], Մուհամմադիյա, Ջիրաֆտ[44], Սիրջան[45] երկրները, ապա Բասրայի ծովի ափերը: Այնտեղ կան քաղաքներ՝ Իսթախրը[46], Ջուրը[47], Ֆասան[48], Սաբուրը[49], Շիրազը, Սիրաֆը, Սիսրիզը, Ջաննաբան, Մահրուբանը, ապա անցնում է Ահուազի գավառը[50] (քուր), Իրաքը, որի քաղաքներն են՝ Բասրան, Վասիթը, Բաղդադը, Քուֆան, Անբարը[51], Հիթը, հետո մտնում է Ասորիք, որի քաղաքներն են՝ Հիյարը, Սալամիան, Եմեսան (Հիմս), Դամասկոսը (Դիմաշկ), Տյուրոսը (Սուր), Ակրան (Աքքա), Տիբերիադը (Թաբարիյա), Կեսարիան (Կայսարիյա), Արսուֆը, Երուսաղեմը (Բայթ ալ-մակդիս), Ռամլան, Ասկալոնը (Ասկալան), Ջազան, Մադյանը, Կուլզումը[52]: Ապա կտրում է Ստորին Եգիպտոսը, ուր կան Ֆարաման[53], Տիննիսը, Դամիեթը (Դիմիաթ), Եգիպտոսի Ֆուսթաթը, Ֆայյումը[54] և Ալեքսանդրիան, անցնում է Բարկա երկիրը[55], Իֆրիկիան, ուր կան Կայրուան քաղաքը և վերջանում է Մաղրիբի ծովի վրա:

Չորրորդ իկլիմը սկսում է արևելքից, անցնում Տիբեթը, ապա Խորասանը. նրա քաղաքներն են Խուջանդան, Ուշրուսանան, Ֆարղանան, Սամարկանդը, Բահլը (Բալխ), Բուխարան, Հերատը, Ամմույան, Մարվռուդը, Մերվը, Սարախսը, Թուսը, Նիշապուրը, Վրկանը (Ջուրջան), Կումիսը[56], Թաբարիստանը[57], Դմավանդը (Դունբավանդ), Կազուինը, Դելմիկքը[58] (Գայլամ), Ռեյը, Սպահանը (Իսֆահան), Կումը, Եկբատանը (Համադան), Նիհավանդը, Դինավարը, Հուլուանը, Շահրազուրը, Սամառան, Մոսուլը (Մաուսիլ), Բալադը, Մծբինը (Նասիբին), Ամիդը, Ռաս ալ-Այնը[59], Կարնո քաղաքը[60] (Կալիկալա), Շիմշաթը[61], Խառանը[62] (Հառան), Ռակկան[63], Կարկեսիան[64]: Ապա անցնում է Ասորիքի հյուսիսը, ուր կան Բալիս, Մաբբոգ (Մանբիջ), Սամոսատ[65], Մալաթիա[66], Զապետրա[67], Հալեպ, Կիննասրին[68], Անտիոք, Տրիպոլիս, Մամեստիա[69] (Մասսիսա), Սիդոն (Սայդա), ալ-Քանիսատ ալ-Սաուդա[70], Ադանա[71], Տարսոն (Թարսուս), Ամորիոն[72] և Լաոդիկե (Լադակիյա) քաղաքները: Հետո անցնում է Կիպրոս, Հոդոս կղզիները և Մաղրիբն ու Տանժերը, վերջանալով Մաղրիբի ծովի վրա:

Հինգերորդ իկլիմը սկսում է արևելքից՝ Գոգի (Յաջուջ) երկրից, անցնում Հյուսիսային Խորասանը, ուր կան վաճառականների քաղաք Ութրարը, Նավաքիսը, Խորեզմը, Ասփիջանը, Շաշը, Տրապիզոնը, Ատրպատականը (Ադրբիջան), Հայաստանի (Արմինիա, Իրմինիա) գավառները, Պարտավը (Բարդաա), Նախճավանը, Սիսականը, Արզնը, Խլաթը, ապա անցնում է Հոռոմների երկիրը, Խարսիանոն[73], Կուռա[74], Մեծ Հռոմ (Ռումիա ալ-քուբրա) և Ասորիքի ծովի ափերը[75], Իսպանիայի հյուսիսային կողմերը, մինչև որ հասնում է Մաղրիբի ծովը:

Վեցերորդ իկլիմը սկսում է արևելքից, անցնում Գոգի երկիրը, Խազարաց երկիրը, Վրկանա (Ջուրջան) ծովը[76] մեջտեղից ճեղքում դեպի

*Ռումի երկիրը, անցնում է Վիրքը (Ջուրղան, Խաղարան), Ամասիան, Հերակլիան, Քաղկեդոնը (Խալկիդունա) ու Կոստանդնուպոլիսը, Բուրջանը[77] մինչև Մաղրիբի ծովը:*

*Յոթերորդ իկլիմը սկսում է արևելքից՝ Գոգի երկրի հյուսիսից, անցնում է Թուրքաց երկիրը[78], Վրկանա ծովի հյուսիսային ափերը, հետո ճեղքում է Ռումի ծովը[79], անցնում Բուրջանը և սլավոնների երկիրը, մինչև հասնում է Մաղրիբի ծովը:*

*Այս իկլիմներից այն կողմ՝ մինչև հենց բնակելի վայրերը, որին ծանոթացանք, ապա դա սկսում է արևելքից հասնելով մինչև Գոգի երկիրը, անցնում է Տաղազղուղ երկիրը, Թուրքաց հողը, ապա Ալանաց[80] (ալ-Լան) երկիրը և Թաթարները, Բուրջանը[81], սլավոնները[82], հասնելով մինչև Մաղրիբի ծովը:*

## ՖԱՐՂԱՆԻ

## ԳԻՐՔ ԵՐԿՆԱՅԻՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԵՎ ԱՍՏՂԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ (ՔԻՏԱԲ ԱԼ-ՀԱՐԱՔԱՏ ԱԼ-ՍԱՄԱՎԻՅԱ ՎԱ ԻԼՄ ԱԼ-ՆՈՒՋՈՒՄ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Խոսրովի (Քիսրա) – Տե՛ս Արու Յուսուֆ, ծնթգր. 6:*

2 *Հազկերտ (Յազդաջիրդ) – Տե՛ս Յակուբի (պ.), ծնթգր. 25:*

3 *Երկկոտոշավոր (Զու-լ-կարնայն) – Տե՛ս Վահր. ծնթգր. 2:*

4 *Նաբուգոդոնոսոր (Բուխտունուսսուր) – Նաբուգոդոնոսոր Բ. Բաբելոնի թագավոր Ք. ա. 604-562 թվականներին: Թեև իրականում պետք է հաշվվի Նաբոնասարի գահակալությունից, որն ավելի վաղ է և սկսվում է Ք. ա. 747 թ. փետրվարի 26-ից:* (Сов. Ист. Энц., т. 6, стр. 844):

5 *Ֆիլիֆուս (Փիլիպպոս) –Հավանաբար նկատի ունի Ալեքսանդր Մակեդոնացու ժամանակ գործածության մեջ դրված Փիլիպպոսի թվականությունը, որը հաշվվում է Ք. ա. 324 թ. նոյեմբերի 12-ից:* (Сов. Ист. Энц, т. 6, стр. 845):

6 *Ալեքսանդրի թվականը – Նկատի ունի Ալեքսանդր Մակեդոնացու ներմուծած Սելևկյան թվականը (Ք. ա. 312 թ. հոկտեմբեր 1-ից)* (Сов. Ист. Энц, т. 6, стр. 845):

7 *Հիջրայի թվականը – 622 թ. հուլիսի 16-ից, որը Մուհամմադ մարգարեի և իր կողմնակիցների Մեքքայից Մադինա գաղթի, կամ փախուստի օրն է:* (Сов. Ист. Энц, т. 6, стр. 845):

8 *Հազկերտի թվականը – Սասանյան վերջին արքա Հազկերտ Գ-ի գահակալության սկզբից (632) հաշվվում է Հազկերտի թվականը:* (Сов. Ист. Энц, т. 6, стр. 727):

9 *... Հնդկաստանի հարավում գտնվող ծովի... – Հնդկական օվկիանոս*

10 *Սինդ – Տե՛ս Իբն ալ-Ֆակիհ, ծնթգր. 5:*

11 *Զաֆարը – Զաֆար է կոչվում Օմանի հարավային մասը, հիմնականում սուննի բնակչությամբ: (Uman, C. E. Bosworth, G. R. Smith, C. Holes, EOI, CD-ROM, (X: 814b)).*

12 *Օման – Արաբիա թերակղզու հարավ-արևելյան անկյունը: (Uman, C. E. Bosworth, G. R. Smith, C. Holes, EOI, CD-ROM, (X: 814b)):*

13 *Հադրամաութ – Հադրամաութը Արաբիա թերակղզու հարավային ափագծին զուգահեռ շերտն է: (Hadramawt, A. F. L. Beeston, EOI, CD-ROM, (III: 51b)):*

14 *Ադեն – Քաղաք և նավահանգիստ Եմենի հարավում:*

15 *Սանաա – Տե՛ս Արու Յուսուֆ, ծնթգր. 2:*

16 *Ալ-Կայն – Մեկ կամ մի քանի արաբական ցեղերի անվանում; (al-Kayn W. Montgomery Watt, EOI, CD-ROM, (IV: 819b)):*

17 *Ջարաշ – Հավանաբար նկատի ունի Պետրան:*

18 *Մահար – Ցեղի անվանում է, եզակին Մահրա, հոգն. Մահարա, կամ Մահարաթ: Սրանց բնակության վայրն էր Արաբիա թերակղզու հարավ-արևելքը, Հնդկական ծովի ափերին, Հադրամաութի և Օմանի միջև: (Mahra, W. W. Muller, EOI, CD-ROM, (VI: 80a)):*

19 *Սաբա – Եմենի հնագույն ցեղային միության ու պետության անվանումը, որը գոյացել է Ք. ա. Ը դարում: Թեև Ֆարղանին թվարկված տեղանունների համար ասում է քաղաքներ, բայց դրանց մի մասը երկրներ ու երկրամասեր են:*

20 *Ջարմա – Քաղաք Եթովպիայում (Հաբեշստան):*

21 *Դունկուլա – Դունկուլա կամ Դոնղոլա անունով երկու քաղաք կա Նուբիայում*

(Ներկայիս Սուդանում): (Dongola, P. M. Holt, EOI, CD-ROM, (II: 615a)):

[22] Մագրիբի ծովը – Տե՛ս Իբն Ռուստա, ծնթգր. 3:

[23] Մանսուրա քաղաքը – Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 7:

[24] Դայբուլ – Սինդ նահանգի նավահանգիստը: Ծաղկուն քաղաք էր, ծովային առևտրի կենտրոն: Բուն անվանումը Գեվար, կամ Դեբալ, որը արաբները ադավաղելով դարձրին Դայբուլ (Daybul, A. S. Bazmee Ansari, EOI, CD-ROM, (II: 188a)):

[25] Կանաչ ծով – Հավանաբար Օմանի ծոցը:

[26] Բասրայի ծով – Հավանաբար՝ Պարսից ծոց:

[27] Նաջդ - Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 3:

[28] Տիհամա - Տե՛ս Իբն ալ-Ֆակիհ, ծնթգր. 4:

[29] Յամամա - Երկրամաս Արաբիայի կենտրոնական մասում:

[30] Բահրայն – Այսօր Բահրայն կոչվում է այն կղզեխումբը և պետությունը, որ գտնվում է Պարսից ծոցում՝ Արաբիա թերակղզու հարևանությամբ: Սակայն միջնադարում այս անունն ավելի շատ տրվում էր Արաբիա թերակղզու Բահրայն կղզուն մոտակա «մայրցամաքային» մասին:

[31] Յասրիբ - Տե՛ս Մադինա, Արու Յուսուֆ, ծնթգր. 3:

[32] Հիջազ - Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 4:

[33] Մեքքա - Գտնվում է Արաբիայի Հիջազ երկրամասում: Մադինայի հետ միասին համարվում է Արաբիայի և ողջ մահմեդական աշխարհի երկու սրբազան քաղաքներից մեկը, այստեղ է գտնվում Քաաբան, որը հանդիսանում է ուխտագնացության վայր բոլոր մահմեդականների համար:

[34] Թաիֆ – Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 2:

[35] Ջիդդա - Քաղաք- նավահանգիստ Արաբիայում՝ Կարմիր ծովի ափին:

[36] Կումիս – Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 220:

[37] Ասուան – Քաղաք Եգիպտոսում, Նեղոս գետի աջ ափին:

[38] Իֆրիկիա երկրի – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 18:

[39] Կանդահար - Խոշոր քաղաք Աֆղանստանի հարավում:

[40] Քաբուլ - Աֆղանստանի մայրաքաղաքը:

[41] Քիրման – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 11:

[42] Ալեքսանդրիա - Սա պետք է որ լինի Իրանի ծայր արևելքում, Միջին Ասիայում, կամ հյուսիս-արևմտյան Հնդկաստանում Ալեքսանդր Մակեդոնացու հիմնած քաղաքներից որևէ մեկը՝ հավանական է խոսքը Ալեքսանդրիա-Օքսիանայի մասին է:

[43] Սիջիստան – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 12:

[44] Ջիրաֆտ – Ջիրուֆտ, տես Իբն Ռուստա, ծնթգր. 29:

[45] Սիրջան – Տե՛ս Սիրաջան, Իբն Ռուստա, ծնթգր. 30:

[46] Իսթախր – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 13:

[47] Ջուր – Կամ Գոր, տե՛ս Ջահիզ, ծնթգր. 8:

[48] Ֆասա - Նախկինում Պասա, գտնվում է Շիրազից 164 կմ հեռավորության վրա: Շրջանը, որի մեջ է մտնում Ֆասա քաղաքը մաս է կազմում Ֆարսի: Ֆասան հայտնի էր իր զորքերով և փարդաջրով: (Fasa, L. Lockhart, EOI, CD-ROM, (II: 823b)):

[49] Սաբուր – Տե՛ս Շապուհ, Յակուբի (ս.), ծնթգր. 23:

[50] Ահուազի գավառ – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 14:

[51] Անբար – Տե՛ս Իբն Ռուստա, ծնթգր. 36:

[52] Կուլզում – Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 22:

[53] Ֆարամա - Տե՛ս Ֆարմա, Իբն Խորդադբեհ, ծնթգր. 21:

[54] Տիննիս, Դամիեթ, Ֆայյում – Քաղաքներ Հյուսիսային Եգիպտոսում:

[55] Բարկա երկիրը - Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 9:

[56] Կումիս – Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 220:

[57] Թարարիստան – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 8:
[58] Դեյմիկք – Տե՛ս Դայլամ, Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 40:
[59] Ռաս ալ-Այն – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 79:
[60] Կարնո քաղաք – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 78:
[61] Շիմշաթ – Շիմշատ, տե՛ս Բալազուրի, ծնթգր. 73:
[62] Խլաթ – Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 41:
[63] Ռակկա – Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 31:
[64] Կարկիսիա – Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 43:
[65] Սամոսատ – Տե՛ս Բալազուրի, ծնթգր. 42:
[66] Մալաթիա – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 20:
[67] Զապետրա – Տե՛ս Իրն Կուտայրա, ծնթգր. 13:
[68] Կիննասրին – Տե՛ս նաև Բալազուրի, ծնթգր. 21:
[69] Մամեստիա – Տե՛ս Մասսիսա, Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 19:
[70] Քանիսատ ալ-Սաուդա – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 85:
[71] Ագանա – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 71:
[72] Ամորիոն – Տե՛ս Իրն Կուտայրա, ծնթգր. 14:
[73] Խարսիանոն – Տե՛ս Իրն Կուտայրա, ծնթգր. 8:
[74] Կուռա – Տե՛ս Իրն Կուտայրա, ծնթգր. 7:
[75] Ասորիքի ծովի ափերը – Միջերկրականի ափերը:
[76] Ջուրջան ծովը – Տե՛ս Իրն Ռուստա, ծնթգր. 6:
[77] Բուրջան – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 43:
[78] Թուրքաց երկիրը – Հավանաբար նկատի ունի Խազարական պետությունը, իսկ գուցե և նրանից արևելք ընկած տարածքները, որտեղ նույնպես տարբեր թյուրքական ցեղեր էին բնակվում:
[79] Ռումի ծովը – Տվյալ դեպքում թերևս նկատի ունի Սև ծովը:
[80] Ալանաց երկիրը – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 53:
[81] Բուրջանը – Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 43:
[82] Սլավոնները – Սակալիբա: Տե՛ս Խալիֆա իրն Խայյաթ, ծնթգր. 42:

## ԿՈՒԴԱՄԱ ԻԲՆ ՋԱԱՖԱՐ
(մահ. 932-ից հետո)

*Աբու լ-Ֆարաջ Կուդամա իբն Ջաաֆար ալ-Քաթիբ ալ-Բաղդադի անունով բանասերն ու պատմիչը արամնացի (ասորի) էր և ծագում էր Բասրայում ապրող աստիճանավորների քրիստոնյա ընտանիքից:*

*Կուդաման արաջիններից էր, որ ներմուծեց հռետորական բանադարձումների (դարձվածների) պարբերական ուսումնասիրումը արաբական դրականության մեջ: Նրա ծննդյան տարեթիվն անհայտ է, բայց ենթադրաբար դա հիջրայի 260 (873/874) թվականն է: Նա ստացավ թե' դրական և թե' գիտական (ճշգրիտ դիտ.) կրթություն: Սկզբում Կուդաման աշխատեց Բաղդադի հարկային ծառայությունում: Արքունիքին մոտ լինելով, այդ ժամանակվա խալիֆա ալ-Մուկտաֆիի (902-908) պնդումով, ընդունեց մահմեդականություն: Դա նրա համար ճանապարհ բացեց դեպի բարձր պաշտոններ ու կյանքի վերջում Կուդաման վարում էր փոստի պետի պաշտոնը:*

*Կուդաման բազմաժանր հեղինակ է. գրել է թե' բանասիրական, թե' պատմական, թե' աշխարհագրական բնույթի գործեր, որոնցից մեզ է հասել միայն մեկը: Նրա «Հարկամատյան և արվեստ քարտուղարության» (Քիտաբ ալ-Խարաջ ուա Սինաաթ ալ-Քիտաբա) երկը ըստ էության ոչ թե զուտ աշխարհագրական աշխատություն է, այլ ուղեցույց պետական պաշտոնյաների համար: Այն գրվել է հավանաբար 928-ի շուրջ և կազմված էր ութ մասից, որոնցից միայն չորսը, այսինքն երկի երկրորդ մասն է, որ հասել է մեզ, իսկ սրանից էլ հրատարակված է միայն այն մասը, որ վերաբերում է հարկամատյանին:*

**Ներկա թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից. Bibliotheca Geographorum Arabicorum, edidit M. J. de Goeje, VI, Lugduni Batavorum, 1889:**

(Крачковский, IV, стр. 160-161, ***R. Blachère et H. Darmaun, Extraits des Principaux Géographes Arabes du Moyen Age, Paris, 1957, p. 53-54, Kudama, S. A. Bonebakker, EOI, CD-ROM, (V: 318b)):***

## ԿՈՒԴԱՄԱ ԻԲՆ ՋԱԱՖԱՐ

## ՀԱՐԿԱՄԱՏՑԱՆ ԵՎ ԱՐՎԵՍՏ ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅԱՆ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԽԱՐԱՋ ՈՒԱ ՍԻՆԱԱՏ ԱԼ-ՔԻՏԱԲԱ)

### ՀԱՏՎԱԾ ԱԲՈՒ-Լ-ՖԱՐԱՋԻ՝ ԿՈՒԴԱՄԱ ԻԲՆ ՋԱԱՖԱՐ ԲԱՂԴԱԴՑԻ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ «ՀԱՐԿԱՄԱՏՑԱՆ ԵՎ ԱՐՎԵՍՏ ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅԱՆ» ԳՐՔԻՑ

### ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ (ՀԻՆԳԵՐՈՐԴ ԳՐՔԻ), ՈՐԸ ՎԵՐԱԲԵՐՈՒՄ Է ՓՈՍՏԻՆ (ԴԻՎԱՆ ԱԼ-ԲԱՐԻԴ), ՋԻԵՐԻ ԿԱՑԱՆՆԵՐԻՆ (ՍԻՔԱՔ) ԵՎ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻՆ [ՄԱՑՐԱՔԱՂԱՔԻՑ] ԴԵՊԻ ԱՐԵՎԵԼՔ ՈՒ ԱՐԵՎՄՈՒՏՔ

*էջ 184-185*

*Ասում է Աբու-լ-Ֆարաջը. փոստին անհրաժեշտ է հատուկ գրասենյակ (դիվան), որը լինի առանձին և նրա պետին պետք է հասնեն ամեն կողմից առաքված նամակները, որպեսզի նա ամեն մեկն իր տեղը ուղարկի, ուր որ հասցեագրված է: Նա պետք է խալիֆային ընկուցի փոստի [տեղական] պետերի և տեղեկություններ բերող գործակալների նամակների մասին և կամ մանրամասն հաշվետվություն ներկայացնի: Նա պարտավոր է հսկել ճանապարհների վրա նշանակված սուրհանդակների պետերի և կնիք դնողների գործերին, հետևել, որ նրանք ստանան օրապահիկ (մթերարաժին) և ներկայացուցիչներ նշանակել բոլոր քաղաքներում:*

*Այս գրասենյակի պետից [հիմնականում] պահանջվում է, որ լինի վստահության արժանի ինքն իր էությամբ և խալիֆայի մոտ, քանզի այդ գրասենյակում չկան այնպիսի գործեր, որոնց համար անհրաժեշտ լինեն տաղանդավոր մարդկանց, այլ հարկավոր են վստահություն վայելող ու զուսպ մարդիկ:*

*Այս դրասենյակի գործունեությանը վերաբերող կանոնները մոտավորապես նույնն են, ինչ որ մենք արդեն այլոց վերաբերյալ պատմել ենք գործերի կառավարման հարցում: Ինչ վերաբերում է այլ բաներին, ինչպես օրինակ ճանապարհների գործերը, ճանապարհների ղիբքը և անցումներն ամբողջ նահանգում, ապա այդ մասին մենք*

չենք հիշել: Գրասենյակի պետին անհրաժեշտ է, որ լավատեղյակ լինի ամեն ինչի, որպեսզի կարիք չունենա ուրիշներին դիմել, եթե խալիֆան հարցնի նրան երբ անհրաժեշտ լինի որևէ տեղ գնալ, կամ ըստ կարիքի, զորք ուղարկել և կամ այլ դեպքերում, որոնց համար անհրաժեշտ է, որ լավ իմանա ճանապարհները, բոլոր տվյալները նրա մոտ պատրաստ լինեն, ճշգրիտ գրանցված և նա ստիպված չլինի միայն վերջին պահին գործը հետապնդել և հարցուփորձ անել:

Դրա համար այժմ մեզ անհրաժեշտ է պատմել այդ բոլորի մասին, թվարկել վայրերի անունները, հիշատակել կայանները (մանազիլ)[1], մղոնների, փարսախների[2] քանակը և նկարագրել կայանների վիճակը, ջրի դրությունը, ճանապարհների դժվար, կամ հեշտ լինելը, բնակելի լինելը և այլ հատկանիշներ:

Կսկսենք [նկարագրելով] այն ճանապարհը, որով ընթանում են Խաղաղության քաղաքից (Մադինատ ալ-սալամ, Բաղդադ) Մեքքա, քանզի դա ուխտագնացության կարևորագույն վայրն է և Ալլահի հնագույն տունը: Ավարտելուց հետո կսկսենք պատմել հետագա ճանապարհի մասին դեպի Եմեն, ապա՝ բոլոր մերձավորագույն կողմերը, հիշելով անունները:

## էջ 212 – 216

Քանի որ հիշեցինք ճանապարհներն ու ուղիները դեպի Մեքքա և հարակից շրջանները, ինչպես Եմեն և այլն, ապա շարունակենք հիշելով ուղիները դեպի հյուսիսի նահանգները և հարակից շրջանները:

Առաջինը Ատրպատական գնացող ճանապարհն է: Սինն Սումայրայից մինչև Դինավար[3] հինգ փարսախ է, Դինավարից Խուրջան՝ ինը փարսախ, Խուրջանից Տալ Վան՝ վեց փարսախ, Տալ Վանից Սայսար՝ յոթ փարսախ: Սայսարից երկու ճանապարհ է բաժանվում, մեկը դեպի Փայտակարան (Բայլական)[4] տաս փարսախ է, Փայտակարանից Բարզա՝ ութ փարսախ, իսկ ձմեռվա ճանապարհը, ապա Սայսարից Անդարաբ[5] չորս փարսախ է: Արդաբիլից Փայտակարան հինգ փարսախ է, Փայտակարանից Բարզա՝ վեց փարսախ, Բարզայից Սաբուրխաստ՝ ութ փարսախ: Սաբուրխաստից Մարաղա[6] յոթ փարսախ է, Մարաղայից Դահխառական[7]՝ տասնմեկ փարսախ, [Դահ] Խառականից Դավրեժ (Տաբրիզ)[8]՝ ինը փարսախ, Դավրեժից Մարանդ[9] քաղաքը՝ տաս փարսախ, Մարաղայից Քուլսարա՝ տաս փարսախ, Քուլսարայից Սարատ՝[10] տաս փարսախ, Սարատից ալ-Նիր[11]՝ հինգ փարսախ, ալ-Նիրից Արդաբիլ՝ հինգ փարսախ, Արդաբիլից Խան Բաբաք՝ ութ փարսախ, Խան Բաբաքից Բարզանդ՝ վեց փարսախ, Բարզանդից Բիհլար՝ տասներկու փարսախ, Արդաբիլից Մուղան[12]՝ չորս փարսախ:

*Եթե մեկը կամենում է Նարիզից գնալ Բարղա և ապա Տփղիս. երկու փարսախ է. Տփղիսից Ջաբարուան[13]՝ վեց փարսախ. Ջաբարուանից Նարիղ՝ չորս փարսախ, Նարիզից Ուրմիա՝ չորս փարսախ. Ուրմիայից Սալմասա՝ վեց փարսախ, Մարանդից ալ-Ջուր՝ չորս փարսախ, Ջուրից Խոյ՝ վեց փարսախ:*

*Իսկ ով կամենա հասնել Հայաստան այս ճանապարհով, ապա Մարանդից ալ-Սուրա Վաղիի (հովտի)[14] վրայով տաս փարսախ է. Վաղիից Նախճավան (Նաշաուա)՝ տաս փարսախ, Նախճավանից Դվին (Դաբիլ)՝ քսան փարսախ:*

*Ով կամենա Վարդանակերտից (Վարսան) հասնել Պարտավ (Բարդաա), ապա Պարտավից Կումամ երեք փարսախ է, ապա մինչև Փայտակարան՝ յոթ փարսախ, հետո Պարտավ՝ երեք փարսախ:*

*Այժմ ցույց տանք ճանապարհը Խաղաղության քաղաքից (Բաղդադ) մինչև Մաղրիբ և նրա նահանգները: Սկսենք հյուսիսից՝ մեր թողած տեղից, որպեսզի լրացնենք արևելքից հյուսիս գնացող ճանապարհների (ցուցակը) . [....]:*

*Մոսուլից Բալադ քաղաքը յոթ փարսախ է, Բալադից Բաինասա՝ յոթ փարսախ, Բաինասայից Բարկաիդ՝ վեց փարսախ. Բարկաիդից Ադարմա՝ վեց փարսախ, Ադարմայից Տալլ Ֆարուղա՝ երեք փարսախ. Տալլ Ֆարուղայից Մծբին՝ չորս փարսախ: Մծբինից երկու ճանապարհ է բաժանվում, մեկը աջակողմյան է՝ դեպի հյուսիս և անցնում է մեր վերոհիշյալ ճանապարհների մոտով, իսկ մյուսը՝ հասնում է Մաղրիբի կողմերը:*

*Վերցնենք աջակողմյան ճանապարհը. Մծբինից մինչև Դարա[15] հինգ փարսախ է, Դաբայից Քաֆարտուսա՝ յոթ փարսախ, Քաֆարտուսայից Կասր Բանի Նազի՝ յոթ փարսախ, Կասր Բանի Նազիից Ամիդ՝ յոթ փարսախ, Ամիդից Նփրկերտ (Մայաֆարիկին) աջ կողմում՝ հինգ փարսախ. Նփրկերտից Արզն, որը նույնպես Հայաստանին սահմանակից քաղաք է՝ յոթ փարսախ:*

*Ամիդից Ռակկա դեպի ձախ (հյուսիս) մինչև Շիմշաթ, Ռումի սահմանային ամրությունների մոտ, յոթ փարսախ է, Շիմշաթից Տալլ Ջաուֆար հինգ փարսախ է, Տալլ Ջաուֆարից Ջուրնան, որը չեն գյուղ է բազմաթիվ շուկաներով՝ վեց փարսախ: Ջուրնանից Բամակդա, որն ունի շուկա, սակայն բնակիչները քիչ են՝ հինգ փարսախ, Բամակդայից Ջուլլաբ, որը բարգավաճ գյուղ է մի գետի վրա՝ յոթ փարսախ, Ջուլլաբից Եդեսիա (Ռուհա), որը հոռոմների քաղաք է մի լեռան ստորոտում՝ չորս փարսախ, Եդեսիայից Խառան քաղաքը՝ չորս փարսախ, Խառանից Տալլ Մահրա՝ չորս փարսախ, Տալլ Մահրայից Բաջարուան՝ յոթ փարսախ, Բաջարուանից Ռակկա՝ երեք փարսախ:*

*Ինչ վերաբերում է Ռակկայից Սահմանային գոտի (Սուղուր) ըն-*

թացող ճանապարհին, ապա Ռակկայից Այն ալ-Ռումիյյա վեց փարսախ է, Այն ալ-Ռումիյայից Տալլ Արդա՝ յոթ փարսախ, Տալլ Արդայից Սարուջ՝ յոթ փարսախ, Սարուջից ալ-Մադնիյա՝ վեց փարսախ, Մադնիյայից Սամոսատ (Սումայսաթ), որը Եփրատի վրա է Ասորիքի կողմը՝ վեց փարսախ, Սամոսատից Հիսն Մանսուր[16], որը սահմանային ամրություն է, քարե պարսպով՝ վեց փարսախ, Հիսն Մանսուրից դժվարանցանելի կիրճերով մինչև Մալաթիա, որը նույնպես սահմանային ամրություն է՝ տաս փարսախ, Մալաթիայից Կամախ (Քամախ) կոչված քաղաքը, որը նույնպես սահմանային ամրություն է, սակայն թշնամին տիրացել է նրան՝ չորս փարսախ: Դեպի ձախ ճանապարհն ընթանում է դեպի Զապետրա[17], որը նույնպես թշնամին նվաճել է՝ տաս փարսախ, Զապետրայից Հադաս[18], նույնպես սահմանային ամրություն թշնամու դիմաց՝ չորս փարսախ, Հադասից Մարաշ սահմանային ամրությունը, որից այն կողմ կան միայն թշնամու կառուցվածքներ:

Էջ 227

Արևելքի ճանապարհների կայանները Զարայից այն կողմ.

[.....] Զինջանից Մարաղա [ձիերի] տասնմեկ կայան (սիքքա), Մարաղայից Միանաջ՝ երկու կայան, Միանաջից Արդաբիլ՝ տասնմեկ կայան, Արդաբիլից Վարդանակերտ, որն Ատրպատական նահանգի վերջին կայանն է՝ տասնմեկ կայան, Վարդանակերտից մինչև Պարտավ քաղաքը՝ ութ կայան, Պարտավից Մանսուրա[19] չորս կայան, Պարտավից Մուտավաքքիլիյա[20] քաղաքը՝ վեց կայան, Մուտավաքքիլիյա քաղաքից Տփղիս՝ տաս կայան, Պարտավից Դարբանդ՝ տասնհինգ կայան, Պարտավից Դվին՝ ինը կայան:

Էջ 228 – 229

Ճանապարհը Մծբինից Արզն[21] և Խլաթ[22].

Մծբինից Արզն քաղաքը [ձիերի] տասնմեկ կայան է, Բաղեշից[23] Խլաթ՝ չորս կայան:

Ճանապարհը Քաֆարտուսայից մինչև Շիմշաթ. Քաֆարտուսայից Ամիդ յոթ կայան է, Ամիդից Տալլ Ջաուֆար՝ երկու կայան, Տալլ Ջաուֆարից Շիմշաթ՝ վեց կայան, Շիմշաթից Կարնո քաղաք՝ երկու կայան:

Հիսն [Մասլամայից] մինչև միջագետքյան սահմանային ամրությունները (ալ-սուղուր ալ-ջազարիյա) Խառանի ու Եդեսիայի վրայով. Հիսնից Խառան երեք կայան է, Խառանից Եդեսիա՝ երկու կայան, Եդեսիայից Սամոսատ՝ երկու կայան:

*Մանրիջից Ասորիքի սահմանային ամրությունները (ալ-սուղուր ալ-շամիյա) ընթացող ճանապարհի [ձիերի] կայանները. Հալեբից Կիննասրին՝ ինը կայան, Կիննասրինից Անտիոք՝ չորս կայան, Անտիոքից Ալեքսանդրեկ՝ չորս կայան, Ալեքսանդրեկից Մամեստիա՝ յոթ կայան, Ադանայից Տարսոն՝ հինդ կայան, Մամեստիայից Անազարբա՝ երկու կայան:*

## ՎԵՑԵՐՈՐԴ ՄԱՍ (ՄԱՆԶԻԼԱ)

## ԵՐԿՐՈՐԴ ԳԼՈՒԽ [ՀԱՏՎԱԾ] ԲՆԱԿԵԼԻ ԵՐԿՐԻ ՄԱՍԵՐԸ

*էջ 230*

*[...]* Մի մասը վերագրվում է Պարսից (Ֆարս) երկրին և կոչվում է Բալադ ալ-Ջամիյան, որը գտնվում է Բալխ գետի[24] և Ատրպատականի ու Հայաստանի հեռավոր մասերի միջև, մինչև Եփրատ ու Կադիսիյա[25]:*

*Այս առաջին իկլիմը կոչվում է Մերոյե (Մարայիս), որը Եթովպիայի քաղաքն է: Իսկ երկրորդ իկլիմը [...], որը կոչվում է Ասուան[26], գտնվում է Բաջա երկրի սահմանի վրա, Եգիպտոսի հողում, երրորդ իկլիմը [...], որը կոչվում է Եգիպտոսի իկլիմ, չորրորդ իկլիմը [...], որը կոչվում է Անթարսուս, հինգերորդ իկլիմը, որը կոչվում է Հռոդոս (Ռուդիշ), վեցերորդ իկլիմը, որը կոչվում է Պոնտոս (Բունթուս), քանզի նրա գիծը Պոնտոսի ծովի մեջտեղն է ընկնում[27]:*

## ՉՈՐՐՈՐԴ ԳԼՈՒԽ [ՀԱՏՎԱԾ] ԼԵՌՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Իսկ հինգերորդ իկլիմում կա քսանինը լեռ, որոնցից են Մեծ Մասիսը (ալ-Հարիս) և Փոքր Մասիսը (ալ-Հուայրաս): Նրանց երկարությունն է երեսուներեք մղոն: Ապա Մոսուլի ու Շահրզուրի միջև ընկած լեռը, որի երկարությունն է երկու հարյուր քառասունհինգ մղոն, ինչպես նաև այս լեռան ու Մեծ Մասիսի և Փոքր Մասիսի հետ կապված լեռը, մինչև այն տեղը, ուր առնչվում է Կազուինի հետ, մոտենում է Ռույանին[28] և երկարությունն է երկու հարյուր մղոն:*

---

** Այս հատվածում բազմակետերը ձեռագրում պակասող տեղերն են ցույց տալիս:*

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԳԼԽԻՑ [ՀԱՏՎԱԾ]
## ԳԵՏԵՐԻ ԱԿՈՒՆՔՆԵՐԻ ՈՒ ՃԱՀՃՈՒՏՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Հինգերորդ իկլիմում քսանհինգ գետ կա, որոնցից է Տիգրիսը (Դիջլա), սկսում է երկարության վաթսուն աստիճան և մեկ մասնիկից ու լայնության երեսունյոթ աստիճանից, հոսում է դեպի հարավ [...]*

*Իսկ վեցերորդ իկլիմում քսանվեց գետ կա, որոնցից է Եփրատը: Նա բխում է Ռումի երկրում մի ակունքից, անցնում է Մասփինա կոչված լեռան հենց կողքով, ապա թեքվում է և անցնում մոտավորապես չորս հարյուր հիսուն մղոն, հոսում դեպի հարավ և մտնում Իսլամի երկիրը Սղերդի (Սիիրդ)[29], Մալաթիայի և Շիմշաթի արանքով: Անցնում է Հանձիթ (Հանզիթ) քաղաքով, ապա հոսում է արևմուտք հասնելով Սամոսատ քաղաքը, նրա միջնաբերդի կողքով գնում է արևմուտք, մինչև հասնում Ջիսր Մանբիջ [...]*

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ
## ՄԱՀՄԵԴԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ, ՆՐԱ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ՈՒ ՀԱՐԿԵՐԻ ՄԱՍԻՆ

*էջ 234*

*Երբ ասում ենք արևելք կամ արևմուտք, հյուսիս կամ հարավ, ապա այս ամեն անվանումները հարաբերական են, ինչպես օրինակ Եգիպտոսը, որ մենք համարում ենք արևմուտք, Անդալուսում (Իսպանիա) գտնվող մարդկանց համար արևելք է: Նույն ձևով Խորասանը մեզ համար արևելք է, իսկ Չինաստանի համար արևմուտք:*

*Ուստի պետք է նախկին ընտրենք մեկ կենտրոն, որպեսզի որոշենք երկրների դիրքը այդ կետի նկատմամբ: Իսլամի թագավորության համար այդ կենտրոնը Իրաքն է, որն այդպիսին է ոչ միայն այսօր, այլև պարսիկներն էլ այդպես էին համարում և այն կոչել էին Դիլ Իրանշահր (Իրանի սիրտը):*

*էջ 236*

*Սկսենք հաշվելով Սավադի[30] հարկը, ըստ այն դրության, որ նա ունի մեր ժամանակ, նկատի առնելով 204 հիջրի (819-820) թվականը, այսինքն հնագույնը, որի համար գոյություն ունենն հաշիվներ մայրաքաղաքի դիվաններում, քանզի դիվանները վառվեցին խռովության ժամանակ Ամինի օրոք, որը հայտնի է Իբն Զուբայդա անվամբ և դա 183 հիջրի թվականն է:*

էջ 242

Քանի որ նկարագրեցինք Սավադի վիճակը և նրա նահանգների, ապա շարունակենք դեպի Ահուազ[31], որն արևելքից հաջորդում է Սավադին[...]

էջ 244

Ատրպատականի (Ադրբեյջան) գավառներն են Արդաբիլը, Մարանդը, Ջաբարուանը, Վարդանակերտը և նրա մայրաքաղաքն է Պարտավ քաղաքը: Ատրպատականի միջին հարկն է չորս միլիոն հինգ հարյուր հազար դիրհեմ:

էջ 245 – 246

Քանի որ վերահասու եղանք Արևելքի (Մաշրիկ) նահանգների վիճակին, ապա վերադառնանք Արևմուտքի (Մաղրիբ) նահանգներին: Նրանցից առաջինը Եփրատի կողմից Տիքրիտն է ու Թիրհանը, Սինն ու Բավազիջը և նրանց հարկը միջին հաշվով յոթ միլիոն դիրհեմ է: Ապա հաջորդում են Մոսուլն ու նրա գավառները՝ Շահրզուրը, Սամղանն ու Դարաբաղը Մոսուլի գավառներից էին նախքան բաժանվելը և նրանց տարեկան հարկն է երկու միլիոն յոթ հարյուր հիսուն հազար դիրհեմ: Ինչ վերաբերում է բուն Մոսուլի գավառներին, որոնք են արևմտյան կողմից Ջազիրա[32], Նինվե, Մարջ[33] գավառները, Բաադրա նահանգը, իսկ արևելյան կողմից՝ Հադիսան[34], Հազ Բահադրան, Մուդիլյան, Ջիբտունը, Հինայան, ալ-Սա [...], Դայբուրը և Դասինը, ապա այս բոլոր գավառների տարեկան հարկը վեց միլիոն երեք հարյուր հազար դիրհեմ է:

Մոսուլի շրջաններին հաջորդում են հյուսիսում Կարդան և Բազաբդան, որում կա Արաբադ (Ջուդի) լեռը, որի վրա կանգ է առել Նոյյան տապանը: Նրա երկու կենտրոններն (կասաբա) են Ջազիրան, որը հայտնի է Իբն Օմար անվամբ և Բասուրինը, ուր մշակվում է և մակույկներով Իրաք փոխադրվում աղը: Նրա հարկերի միջինն է երեք միլիոն երկու հարյուր հազար դիրհեմ:

Սրան հաջորդում է Դիար Ռաբիան իր գավառներով՝ Բալադ, Բաաբայա, Մծբին[35], Դարա[36], Մարդին[37], Քաֆրտուսա և մի բլուր, որը կոչվում է Սինջար[38], Ռաս ալ-Այն[39] և Խաբուր[40]: Այս բոլորի հարկը, հաշվելով նաև շուկայի հարկը (իհտիսաբատ) չորս միլիոն վեց հարյուր երեսունհինգ հազար դիրհեմ է:

Դիար Ռաբիային հաջորդում են հյուսիսից Արզն[41] և Նփրկերտ[42] (Մայաֆարիկին) գավառները, իսկ նրանց հարկի միջինը չորս միլիոն

հարյուր հազար է: Ապա հաջորդում է Տարոն[43] (Թարուն) գավառ Հայաստանի շրջաններից և նրա տիրոջ հարկն է տարեկան հարյուր հազար դիրհեմ:

Սրա ետևից դեպի հյուսիս գտնվում է Հայաստան երկիրը, որի գավառներն են Վիրքը (Ջուրզան), Դվինը (Դաբիլ), Բարդանդը[44], Շիրակ Տայքը (Սիրաջ Թայրը), Ապահունիքը (Բաջունայս), Արճեշը, Խլաթը, Սիսականը, Առանը, Կարնո քաղաքը, Վասպուրականը (Բասփուռաջան), իսկ նրա մայրաքաղաքն է Նախճավանը: Նրա միջին հարկն է դրամով չորս միլիոն դիրհեմ:

Ապա Դիար Մուդարի արևմտյան գավառները՝ Եդեսիան (Ռուհա), Խառանը. Սարուջը. Մուգայրարը, Բալիխը, Տալլ Մաուզանը, Ռարիատ Բանի Տամիմը, Կարիատ ալ-Ֆուրատը (Եփրատի գյուղերը), Շաթի ալ-Ֆուրատը (Եփրատի ափը), Մազիհ Օմար, իսկ Եփրատի արևմտյան կողմում՝ Հանին և ալ-Մարին: Դիար Մուգարի միջին հարկը վեց միլիոն դիրհեմ է:

էջ 249 – 252

Ահա այն նահանգները, որոնք Իսլամի տիրակալության տակ են:

Այն հարկային գումարները. որոնք ցույց տվեցինք, դրանց միջինն են: Մենք նկատի չենք առել մեր օրերում տարբեր շրջաններում տեղի ունեցած բարձրացումներն ու իջեցումները, քանզի դրանք կառավարիչների թուլության ու անփութության հետևանք են: Այսպես է ամենուրեք. ուր մերժում են հարկը վճարել:

Հարկերի ընդհանուր քանակը, որ մենք գումարելով ենք ստանում, ընթերցողին հասկանալի դարձնելու համար. հետևյալն է. ոսկով չորս միլիոն ինը հարյուր քսան հազար դինար, որը լինում է արծաթով, եթե դինարը տասնհինգ դիրհեմ հաշվենք՝ յոթանասուներեք միլիոն ութ հարյուր հազար դիրհեմ:

Ահա բոլոր հարկերի ցուցակը ոսկով ու արծաթով.

| | |
|---|---|
| Սավադ | հարյուր երեսուն միլիոն երկու հարյուր հազար դիրհեմ, |
| Ահուազ | քսաներեք միլիոն դիրհեմ, |
| Ֆարս | քսանչորս միլիոն դիրհեմ. |
| Քիրման | վեց միլիոն դիրհեմ, |
| Մուքրան | մեկ միլիոն դիրհեմ, |
| Սպահան | տաս միլիոն հինգ հարյուր հազար դիրհեմ, |
| Սիջիստան | մեկ միլիոն դիրհեմ, |
| Խորասան | երեսունյոթ միլիոն դիրհեմ, |
| Հուլուան | ինը հարյուր միլիոն դիրհեմ |
| Մահ ալ-Քուֆա | հինգ միլիոն դիրհեմ, |

| | |
|---|---|
| Մահ ալ-Բասրա | չորս միլիոն ութ հարյուր հազար դիրհեմ. |
| Համադան | մեկ միլիոն յոթ հարյուր հազար դիրհեմ. |
| Մասաբդան | մեկ միլիոն երկու հարյուր հազար դիրհեմ. |
| Միհրիջան Կադակ | մեկ միլիոն հարյուր հազար դիրհեմ. |
| Իղարին | երեք միլիոն ութ հարյուր հազար դիրհեմ. |
| Կում և Կասան | երեք միլիոն դիրհեմ. |
| Ատրպատական | չորս միլիոն հինդ հարյուր հազար դիրհեմ. |
| Ռեյ և Դիմավանդ | քսան միլիոն ութսուն հազար դիրհեմ. |
| Կումիս | մեկ միլիոն հարյուր հիսուն հազար դիրհեմ, |
| Վրկան (Ջուրջան) | չորս միլիոն դիրհեմ, |
| Թաբարիստան | չորս միլիոն երկու հարյուր ութսուն հազար յոթ հարյուր դիրհեմ, |
| Տիքրիտ, Թիրհան | |
| Սինն և Բավազիջ | ինը հարյուր հազար դիրհեմ, |
| Շահրզուր և Սամղան | երկու միլիոն յոթ հարյուր հիսուն հազար դիրհեմ, |
| Մոսուլի նահանգ | վեց միլիոն երեք հարյուր հազար դիրհեմ. |
| Կարդա և Բազաբդա | երեք միլիոն երկու հարյուր հազար դիրհեմ, |
| Դիար Ռաբիա | ինը միլիոն վեց հարյուր երեսունհինգ հազար դիրհեմ, |
| Արզն և Նփրկերտ (Մայաֆարիկին) | չորս միլիոն երկու հարյուր հազար դիրհեմ, |
| Տարոն նահանգ | հարյուր հազար դիրհեմ, |
| Հայաստան | չորս միլիոն դիրհեմ, |
| Ամիդ | երկու միլիոն դիրհեմ, |
| Դիար Մուդար | վեց միլիոն դիրհեմ, |
| Եփրատի ճանապարհի (Թարիկ ալ-Ֆուրատ) գավառները | երկու միլիոն ինը հարյուր հազար դիրհեմ, |
| Կիննասրին և Ավասիմ | երեք հարյուր վաթսուն հազար դինար, |
| Եմեսայի (Հիմս) ջունդը | երկու հարյուր տասնութ հազար դինար, |
| Դամասկոսի ջունդը | հարյուր տաս հազար դինար, |
| Հորդանանի ջունդը | հարյուր ինը հազար դինար |
| Պաղեստինի ջունդը | երկու հարյուր հիսունինը հազար դինար. |
| Եգիպտոս և Ալեքսանդրիա | երկու միլիոն հինգ հարյուր հազար դինար, |
| Երկու սուրբ քաղաքները (Մեքքա և Մադինա) | հարյուր հազար դինար |

Եմեն վեց հարյուր հազար դինար,
Յամամա և Բահրայն հինգ հարյուր տաս հազար դինար,
Օման երեք հարյուր հազար դինար:

Ինչպես նաև մայրաքաղաք՝ Խաղաղության քաղաքի (Բաղդադի) զիմմի մարդկանց վճարած գլխահարկը (ջիզիա), որը երկու հարյուր հազար դիրհեմ է:

Ասվել է, որ Խոսրով Պարվեզը հաշվել է իր թագավորության եկամուտը, իր իշխանության տասնութ տարում և գտել, որ կանխիկ յոթ հարյուր քսան հազար միսկալ ոսկի է, այսինքն արծաթ դրամով վեց հարյուր միլիոն դիրհեմ, այն դեպքում, երբ նրա ձեռքում կար այն [երկրները], որոնք հիշեցինք ու անվանեցինք՝ Սավադը, տարբեր շրջանները, առանց Մաղրիբի գավառների, քանզի նրա սահմանն էր մինչև Հիտ, իսկ Մագրիբի վերոհիշյալ գավառները գտնվում էին հոռոմների ձեռքում:

Ասել է Կուդաման՝ ես հիշել եմ նահանգներն այն ձևով, ինչպես նրանք եղել են այդ ժամանակ: Դրանց հողերը չեն ավերվել, իսկ բնակիչները չեն վերացել, սակայն նրանց գործերի վերակացուները պետք է ունենան նախ և առաջ աստվածավախություն, լավատեղյակություն, արդարամտություն, բարեպաշտություն, որպեսզի գործերը կանոնավոր ընթանան, կարգապահություն լինի և միայն այս դեպքում եկամուտն այնքան բարձր կլինի, որ բոլորին կգոհացնի:

## ԳԼՈՒԽ ՑՈԹԵՐՈՐԴ
## ՄԱՀՄԵԴԱԿԱՆ [ՊԵՏՈՒԹՅԱՆ] ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ԱՄՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ (ՍՈՒՂՈՒՐ) ԵՎ ՆՐԱՆ ՇՐՋԱՊԱՏՈՂ ԱԶԳԵՐԻ ՈՒ ՑԵՂԵՐԻ ՄԱՍԻՆ

*էջ 252 – 266*

Ազգերն ու ցեղերը, որոնք մահմեդական [պետության] հակառակ են, շրջապատում են նրա բոլոր կողմերը և ծայրամասային նահանգները: Նրանցից ոմանք մոտիկ են [խալիֆայական] իշխանության նստավայրին, իսկ ուրիշները հեռու են նրանից:

[Իրանի] ցեղային թագավորները (մուլուք ալ-թավաիֆ, Արշակունիներ), որոնց թագավորեցրել էր Երկկոտոշավորը (Ալեքսանդր), հինգ հարյուր տասնմեկ տարի հարկ էին վճարում Ռումի (Հռոմի) թագավորին, մինչև որ Պապակի (Բաբաք) որդի Արտաշիրը (Արդաշիր) դաժան և երկար պայքարից հետո ամրապնդեց իր թագավորության ուժերը և մերժեց վճարել այն հարկը, որ պարսիկները տալիս էին հոռոմներին:

Ուստի մահմեդականները պետք է առավել զգույշ լինեն հոռոմնե-

րից, քան բազմատեսակ այլ թշնամիներից: Այս մասին եղել են [Ղուրանի] վկայությունններ (այատ), որոնք իմ ասածի ճշմարտացիությունն են ապացուցում, քանզի Ալլահը բարի գործերին զորավիգ է իր զորությամբ:

Իսկ քանի որ հոռոմներն այդպիսին են ինչպես ասացի, ապա սահմանային ամրությունների (սուղուր) մասին խոսելիս նախ նրանց երկրի դիմաց ընկած ամրությունների մասին պատմենք:

Այս սահմանային ամրությունների մի մասը ցամաքային է և թշնամու վրա հարձակվում են ցամաքի կողմից, մի մասն էլ ծովային է, ուստի թշնամու վրա հարձակվում են ծովից: Իսկ կան նաև այնպիսիք, ուր այս երկու պայմանները միասին են և թշնամու դեմ արշավանքները կատարվում են ցամաքի ու ծովի վրա:

Ծովային ամրությունները հիմնականում Ասորիքի (Շամ) ու Եգիպտոսի (Միսր) բոլոր ծովափերն են և այդ կողմից միաժամանակ թե՛ ցամաքի, թե՛ ծովի վրա են արշավանքներ կատարվում:

Սկսենք սիրիական (Ասորիքի) կոչված սահմանային ամրությունների հիշատակմամբ: Դրանք են՝ Տարսոնը (Թարսուս), Ադանան, Մամեստիան (Մասսիսա), Անազարբան (Այն Զարբա), ալ-Քանիսան, ալ-Հարունիյան, Բայասը[45], Նիկոպոլիսը[46] (Նիկուբուլիս): Սրա եկամուտը մոտավորապես հարյուր հազար դինար է, որն [ամբողջովին] ծախսվում է նրա բարեկարգման և տարբեր կարիքների, ինչպես դիտարանների, պահակակետերի, լրտեսների, սուրհանդակների և կիրճերի, ծանծաղուտների (անցահուն), բերդերի և այլ նման բաների վերահսկողների համար: Վերոհիշյալ վայրերին որպես կայազոր անհրաժեշտ են թե՛ կանոնավոր զորքեր (ջունդ), թե՛ անկանոն զորքեր, որոնց, ինչպես նաև ծովի ու ցամաքի վրա, ամառային ու ձմեռային արշավանքների ծախսերի գումարը տարեկան մոտավորապես երկու հարյուր հազար դինար է, իսկ երբեմն հասնում է երեք հարյուր հազար դինարի:

Թշնամու երկրի այն նահանգները, որոնք սահմանների դիմաց են և ցամաքից սահմանակից, հետևյալներն են՝ Կապադովկիան (Կաբադիկ) և նրա մոտ՝ Անատոլիկոնը[47] (Նաթլիկ), իսկ ծովի կողմից՝ Սելևկիան[48] (Սալուկիյա):

Այս սահմանային ամրությունների գոտու ետևում կա Ավասիմ նահանգը և մահմեդական պետության նրան հարող այլ շրջաններ: Կոչվում է Ավասիմ[49], քանզի նրա ամեն մի մասը զորավիգ (ասիմ, հոգն. ավասիմ) է և օժանդակում ու օգնում է սահմանային ամրություններին զորահավաքի ժամանակ, քանի որ այստեղ են հավաքվում Անտիոքի, Ջումայի և Կուրուսի[50] ռազմիկները:

Այս (Ասորիքի) սահմանային ամրություններից դեպի հյուսիս գտնվում են միջագետքյան ամրությունները (ալ-սուղուր ալ-ջազա-

րիյա)[51] և այստեղ առաջինը որ սահմանակից է Ասորիքի ամրություններին գոտուն, Մարաշն է, ապա Հադաս ամրությունը (սարը): Նախկինում Զապետրան (Զիբաթրա) է եղել սահմանային ամենամոտիկ ամրությունը, սակայն Մուտասիմ [խալիֆայի] օրոք կործանվել է [հոռոմների ձեռքով]: Վերջինս (Մուտասիմը) թշնամու երկրում հաղթանակ տանելուց և նշանավոր Ամորիոնը (Ամմուրիյա)[52] նվաճելուց հետո, վերադարձին Զապետրայի և նրան մոտիկ տեղում կառուցեց մի քանի բերդեր, որպեսզի փոխարինեն: Դրանք են Թարարջի կոչված բերդը, Հուսայնիյա կոչվածը, Բանի-լ-Ումինը, Իբն Ռահուան կոչվածը: Ապա այս բերդերին հաջորդում են Քեսուն (Քայսում)[53], Հիսն Մանսուր, Շիմշաթ և Մալաթիա ամրությունները: Վերջինս թշնամու դեմ հարձակման համար ամենահարմար բերդն է, քանզի մյուսներից ամեն մեկն իր և թշնամու միջև ունի որևէ կիրճ կամ արգելք, իսկ Մալաթիան, որպես ամրություն թշնամու դիմացն է նույն հողում:

Այս ամրությունների դիմաց գտնվում են Ռումի կողմից Խարսիանոն, (Խարշանա)[54] և Խաղտիք[55] (Խալդիա) նահանգները:

Այդ ժամանակ դրանց (Սահմանային ամրությունների) և Հայազգի Մլեհին (Մալիհ ալ-Արմանի)[56] ենթակա հոռոմների ու հայերի միջև գտնվող մի քաղաքում ապրում էին մարդիկ, որոնք կոչվում էին Բայալիկա (պավլիկյաններ)[57]: Սրանք հոռոմ էին, սակայն կրոնական շատ հարցերում նրանցից (հոռոմներից) տարբերվում էին: Սրանք մահմեդականների հետ էին և օգնում էին նրանց արշավանքների ժամանակ և մահմեդականները մեծ օժանդակություն էին ստանում: Սակայն հանկարծ հեռացան այդ վայրերից, Սահմանային ամրությունների գոտու մարդկանց (զորքի) վատ վերաբերմունքի և նրանց նկատմամբ [պետության] հոգատարության (ուշադրության) պակասի պատճառով: Նրանք ցրվեցին երկրում և նրանց տեղում բնակություն հաստատեցին վերոհիշյալ հայերը, որոնք անառիկ ամրոցներ կառուցեցին: Սրանց թիվն ավելանում է և նրանք մեզ մեծ չարիք ու վնաս են պատճառում:

Այս ամրությունների (Միջագետքի) և Մալաթիայի հասույթը յոթանասուն հազար դինար է, որից տեղական կարիքների համար ծախսվում է քառասուն հազար դինար, իսկ մնացորդը լինում է երեսուն հազար դինար: Սակայն կառավարիչների ու անկանոն զորքի համար կարիք է լինում տալ առնվազն հարյուր քսան հազար դինար ևս, որն ավելացվում է վերոհիշյալ մնացորդին, երբեմն նույնիսկ հարյուր յոթանասուն հազար դինար և այսպիսով գումարը դառնում է երկու հարյուր հազար դինար, բացի արշավանքների հատուկ ծախսերից, որոնք ժամանակին են կատարվում ըստ զորքի թվի:

Այս սահմանային ամրությունները միջին են կոչվում և այստեղից

չին դուրս գալիս արշավանքները և հենց որ արշավանքի կարիք էր զգացվում, ապա ծախսերը տրվում էին ըստ մասնակիցների թվի: Այս ամրություններին օժանդակող շրջաններն են Տլուքը (Դուլուք)[58], Ռաաբանը[59] և Մանբիջը:

Այս ամրությունների աջ կողմում դեպի հյուսիս հաջորդում են Բաքրյան (Դիարբաքրյան) կոչված ամրությունները, որոնք են Սամոսատը (Սումայսաթ), Հանին, Մալքինը և բերդերը ինչպես Զամահը, Հաուրանը, Քիլիսը[60] և ուրիշներ: Ապա հյուսիսում գտնվում է նաև Կարնո քաղաք (Կալիկալա) սահմանային ամրությունը, որը կից է սահմանային ամրությունների գոտուն, սակայն մեկուսի է, քանզի նրա և այդ գոտու միջև մեծ հեռավորություն կա:

Այս սահմանային ամրությունների դիմաց ընկած Ռումի նահանգներն են Արմենիակոնը (Արմինիակ)[61] և Խաղտիքի[62] մի մասը: Մոտիկ է նաև Պափլագոնիան (Աֆլադունիա)[63], որը ձգվում է մինչև Խազարաց երկիրը:

Այս սահմանային ամրությունների տարեկան հասույթը մեկ միլիոն երեք հարյուր հազար դիրհեմ է, սակայն բերդերի բարեկարգման, զորքի վարձատրման և այլ նպատակների համար ավելացվում է տարեկան մեկ միլիոն յոթ հարյուր հազար դիրհեմ և այսպիսով ընդհանուր գումարը լինում է երեք միլիոն դիրհեմ:

Ինչ վերաբերում է ծովային սահմանային ամրություններին, ապա դրանք են Եմեսայի ջունդի ծովափնյա [քաղաքները]՝ Անթարթուս, Բալինիաս, Լաոդիկե[64], Ջաբալա և Հիրյադա, Դամասկոսի ջունդից են Արական, Տրիպոլին[65], Բիբլոսը (Ջուբայլ), Բեյրութը, Սիդոնը (Սայդա), Հիսն Սարֆանդը և Աղնունը: Հորդանանի ջունդի ափերին են Տյուրոսը (Սուր)[66], Ակրան (Աքքա)[67], ընդ որում Տյուրոսում կա նավաշինարան: Պաղեստինի (Ֆիլասթին) ջունդի ափերին են Կեսարիան, Արսուֆը, Հոպպեն (Յաֆա), Ասկալոնը և Գազան (Ղազզա)[68], իսկ Եգիպտոսի ափերին են Ռաֆհը, Ֆարման[69] և Արիշը:

Ասորիքի սահմանային ամրությունների գոտուց, ինչպես նաև Ասորիքից ու Եգիպտոսից արշավի ելնող նավերի թիվը ութսունից հարյուր է: Երբ արշավանքի որոշումը տրվում է, դրվում է Եգիպտոսի ու Ասորիքի տերերին (կառավարիչ), որ գործի լծվեն: Պատրաստություններ են տեսնվում Կիպրոս (Կուբրուս) կղզում և հավաքված նավերի ամբողջությունը կոչվում է նավատորմիղ (ուսթուլ), ինչպես ցամաքում հավաքված զորքը կոչվում է բանակ (մուասքար, ճամբար): Ասորիքի ու Եգիպտոսի բոլոր նավերի հրամանատարն է Ասորիքի սահմանային ամրությունների գոտու տերը (կառավարիչ), իսկ Եգիպտոսից ու Ասորիքից արշավող նավերի ծախսերի գումարը մոտավորապես հարյուր հազար դինար է:

Քանի որ հիշեցինք Ռումի [դիմաց գտնվող] սահմանային ամրու-

Թյուններր և նրանց պարադաններր, ապա նպատակահարմար է, որ նկարագրենք Ռումի Թագավորության դրությունր, ինչքան որ հարկավոր է իմանալ: Նախ և առաջ հիշենք նրանց զորքի դասավորումր: Պատրիկը նրանց մոտ տաս հազարի պետ է, ամեն պատրիկի հետ կա երկու տուրմարք, ամեն մեկը հինգ հազարի վրա է: Ամեն տուրմարքի հետ հինգ դրունգար (Թուրունջար) կա: Դրունգարր հազարի վրա է, ամեն մի դրունգարի հետ հինգ կոմես կա: Կոմեսր երկու հարյուրի վրա է և ամեն կոմեսի հետ հինգ կոմտարք կա: Կոմտարքը քառասունի վրա է, իսկ ամեն կոմտարքի հետ չորս դեկարքոս (դեկուրիոն) կա: Դեկարքոսը տաս հոգու վրա է:

Ինչ վերաբերում է նրանց զորքի Թվին, ապա Կոստանդնուպոլսում, որը Թագավորի մայրաքաղաքն է, քսանչորս հազար զորք կա, որից տասնվեց հազարը հեծելազորքն է, իսկ ութ հազարը հետիոտն զորքը: Հեծյալները չորս մասի են բաժանվում, առաջինը՝ Սքոլարներն են, որոնց տերն է մեծ Դոմեստիկոսը, որը միաժամանակ ամբողջ զորքի հրամանատարն է և զորաժողովների պետն է, և նրանց Թիվը չորս հազար է: Երկրորդ տեսակը Տաքսիսներն են, որոնք նույնպես չորս հազար ձիավորներ են: Երրորդ տեսակը էքսկուբիտներն են, որոնք պահակազորքն են, նրանց հրամանատարը դրունգար է և Թիվը չորս հազար է: Չորրորդ տեսակը Սկուտարյաններ են, որոնք Թագավորին ընկերակցում են ճանապարհորդության ժամանակ և նրանց Թիվը նույնպես չորս հազար է:

Հետիոտն զորքը երկու մասի է բաժանվում, առաջինը կոչվում է Օպտիմատներ [.....] և նրանց Թիվը չորս հազար է, իսկ մնացածները կոչվում են Նումերա [...] և որոնց Թիվը նույնպես չորս հազար է:

Նահանգների Թիվը տասնչորս է, որոնցից երեքը ծոցից այն կողմ են գտնվում, այն ծոցից, որը կտրում է Ռումի երկիրը [երկու մասի] և հոսում է դեպի Ասորիք և նրա մասին խոսվել է:

Այդ նահանգներից առաջինն է Թաբլան (Թաֆլա), այն երկրամասը, որի մեջ է Կոստանդնուպոլիսը: Նրա սահմաններն են արևելքից՝ վերոհիշյալ ծոցը, հարավից՝ Ասորիքի ծովը, հյուսիսից՝ Խազարաց ծովը, իսկ արևմուտքում կա մի երկարաձիգ պարիսպ Ասորիքի ծովից մինչև Խազարաց ծովը, և երկարությունը չորս օրվա քայլելու ճանապարհ է, իսկ Կոստանդնուպոլսից՝ երկու օրվա քայլելու ճանապարհ:

Հաջորդ նահանգը կոչվում է Թրակիա (Տարակիա), որի սահմաններն են արևելքից՝ վերոհիշյալ պարիսպը, հարավից՝ Մակեդոնիա նահանգը, արևմուտքից՝ Բուրջանը (բուլղար), իսկ հյուսիսից՝ Խազարաց ծովը: Սրա երկարությունն է տասնմեկ օրվա քայլելու ճանապարհ, իսկ լայնությունը Խազարաց ծովից մինչև Մակեդոնիա, երեք օրվա քայլելու ճանապարհ է: Նրա կառավարիչը կոչվում է ստրատեգոս (իսԹիրԹիկուս) և նրա զորքի Թիվը հինգ հազար է:

[Ապա հաջորդում է Մակեդոնիան]

Ծոցից այս կողմ տասնմեկ նահանգ կա: Նախ Պափլագոնիան է, որի զորքը տաս հազար հոգուց է բաղկացած:

Դեպի արևմուտք գտնվում է Օպտիմատոնը և այս բառի արաբերեն մեկնությունը ականջ ու աչք է, քանզի այս նահանգը Ռումի երկրի կենտրոնն է, իսկ ժողովուրդը կովի վարժ չէ, քանի որ մահմեդականների ու այլոց արշավանքները նրանց չեն հասնում: Սրա արևմտյան սահմանն է ծոցը, հյուսիսայինը՝ Խազարաց ծովը, արևելյանը՝ Պափլագոնիա նահանգը, հարավայինը՝ Օպսիկիոնը (Աբսիկ): Նրա զորքը չորս հազար հոգուց է բաղկացած:

Օպտիմատոնին հաջորդում է Օպսիկիոնը, որի արևմտյան սահմանն է ծոցը, հյուսիսայինը՝ Օպտիմատոնը, հարավայինը՝ Թրակեսիոնը: Նրա զորքի թիվն է վեց հազար մարդ:

Օպսիկիոնից հետո գալիս է Թրակեսիոնը (Թարկասիս), որի սահմաններն են արևմտյան կողմից՝ ծոցը, հյուսիսային կողմից՝ Օպսիկիոնը, արևելյան կողմից՝ Անատոլիկոնը, հարավային կողմից՝ Ասորիքի ծովը: Նրա զորքի թիվն է վեց հազար մարդ:

Սրան հաջորդում է Անատոլիկոնը և այս բառի իմաստն է արևելյան: Ռումի ամենամեծ նահանգն է: Նրա սահմաններն են արևմուտքից՝ Օպսիկիոնը, հարավային կողմից՝ Սելևկիան, Ասորիքի ծովի մոտ, արևելքից՝ Կապադովկիան, իսկ հյուսիսից՝ Բուկելլարները (Բուկուլար): Նրա զորքի թիվն է տասնհինգ հազար մարդ: Նրանում է Ամորիոնը, որը նվաճել է Մուտասիմը:

Ապա հաջորդում է Սելևկիա նահանգը, Ասորիքի ափին, որը նրա հարավային սահմանն է: Նրա սահմաններն են արևմուտքից՝ Անատոլիկոնը, հարավից՝ ծովը, հյուսիսից՝ Թրակեսիոնը, արևելքից՝ Տարսոնի մի կիրճ Կալամիյայի ու Լամիսի կողմերում: Նրա զորքի թիվն է հինգ հազար մարդ:

Նրանից հետո Կապադովկիան է, որի սահմանն են կազմում հարավից Տարսոնի, Ադանայի ու Մամեստիայի լեռները, արևմուտքից՝ Սելևկիայի գավառները, հյուսիսից՝ Անատոլիկոնը, իսկ արևելքից՝ Խարսիանոնի գավառները: Նրա զորքի թիվն է չորս հազար մարդ:

Ապա հաջորդում է Խարսիանոնը (Խարշանա), որի սահմանը հարավից Կապադովկիան է, մյուս սահմանը՝ արևելյան Մալաթիայի կիրճերն են: Մի այլ կողմից սահմանակից է Արմենիակների նահանգին, որը հյուսիսում է գտնվում, մի ուրիշ կողմից էլ դրացի է Բուկելլարների նահանգին, որն արևմուտքում է: Նրա զորքի թիվը չորս հազար մարդ է:

Հետո Բուկելլարների նահանգն է, որի սահմանը կից է Անատոլիկոնին ու Օպտիմատոնին, երկրորդը՝ Կապադովկիային, երրորդը՝ Խարսիանոնին, չորրորդը՝ Արմենիակներին: Նրա զորքի թիվը ութ

հազար մարդ է։

Իսկ Արմենիակների նահանգը, ապա նրա մի սահմանը կից է Պափլագոնիային, երկրորդը՝ Բուկելլարների նահանգին, երրորդը՝ Խարսիանոնին և չորրորդը՝ Խաղտիք նահանգին ու Խազարաց ծովին։ Նրա զորքի թիվը չորս հազար է։

Վերջապես Խաղտիք (Խալդիա) նահանգը, որի մի կողմը Հայաստան երկիրն է, երկրորդ կողմը՝ Խազարաց ծովը, երրորդ կողմը՝ Արմենիակները, և չորրորդ կողմը՝ նույնպես Արմենիակների նահանգը։ Նրա զորքը չորս հազար է։

Այսպիսով մեր նշած տասնմեկ նահանգների ամբողջ զորքը յոթանասուն հազար հոգուց է բաղկացած, նկատի ունենալով նրանց, որ զինվորագրված են հեծյալ ու հետևակ գնդերում, առանց հաշվելու անկանոն զորքը։

Սրանից հետո կուզենայինք նկարագրել արշավանքի օրերից մի օրինակ, որպեսզի ընթերցողը ճիշտ գաղափար կազմի այդ մասին։ Կասենք որ փորձություններից ամենադժվարը, որ սահմանային ամրությունների զոտու փորձառու բնակիչները (սաղրիյուն) գիտեն, դա գարնանային [արշավանքն] է, որը տեղի է ունենում Այար (մայիս) ամսից տաս օր անցած (մայիս 11)։ Այդ ժամանակ մարդիկ ձիերը գարնան արածացրած են լինում և ձիերը լավ վիճակում են գտնվում։ [Ռազմիկները] երեսուն օրով են դնում և դա Այար ամսի մնացած օրերն են ու Հազիրանի (հունիս) առաջին տաս օրերը։ Նրանք Ռումի երկրում առատ արոտավայրեր են գտնում, ուստի նրանց ձիերը երկրորդ գարունն են անցկացնում։

Ապա վերադառնալով նրանք քսանհինգ օր մնում են, որը Հազիրանի մնացած օրերն են ու Տամմուզի (հուլիս) առաջին հինգ օրերը, մինչև որ անասուններն ուժեղանան ու պարարտանան։ Հետո ռազմիկները հավաքվում են ամառային արշավանքի և դուրս են գալիս Տամմուզից տաս օր անց (հուլիս 11) և մինչև իրենց վերադարձը մնում են վաթսուն օր։

Ինչ վերաբերում է ձմեռային արշավանքներին, ապա փորձված մարդկանցից լսել եմ, որ դա թեկուզ անհրաժեշտ է, սակայն չպետք է շատ առաջ գնալ ու խորանալ և միայն քսան գիշեր ընթանալ, այնպես որ ամեն զինվոր կարողանա իր ձին անհրաժեշտ մթերքով բեռնավորել։ Դա պետք է տեղի ունենա Սուբաթի (փետրվար) վերջում և ռազմիկները կարող են մնալ Ադար (մարտ) ամսից որոշ օրեր, քանզի այդ ժամանակ թշնամին ու նրա անասունները (գրաստը) գտնվում են առավել թույլ վիճակում, իսկ նրանց արջառը ավելի շատ է լինում։ Ապա մեր [գնդերը] վերադառնում են, որպեսզի ձիերը գարնանն արածացնեն։

Արդ, սկսենք նկարագրել [մահմեդական] պետության այն սահմա-

*նային ամրությունները, որոնք ձգվում են դեպի աջ, հյուսիսային կողմերում, ապա վերջում հասնենք Ռումի մյուս սահմանները, որ գտնվում են արևմտյան կողմերում:*

*Կպատմենք Խազարաց սահմանների մասին, որոնք Հայաստանի կողմից են, մինչև որ հասնենք Խորեզմի սահմաններին՝ Խորասանի կողմից: Կավատի որդի Անուշիրուանը, երբ թագավոր դարձավ, Հայաստանում կառուցեց Շապորան, Մազքութք և Դարբանդ (ալ-Բաբ ու-ալ-Աբուաբ) քաղաքները: Վերջինս կոչվել է Աբուաբ (Դռներ), քանզի կառուցված է լեռան կիրճերի վրա և [Անուշիրուանն] այնտեղ բնակեցրեց իր զորքերից մարդկանց, որոնց կոչեց Սիսականցիներ: Բայց քանի որ վախենում էր խազարների հարձակումներից, դրեց նրանց թագավորին խնդրելով խաղաղություն ու հաշտություն և որպեսզի իրար միանան, առաջարկեց իր դստերը հարս տալ բարեկամանալու ու խնամիանալու համար: Նա ուղարկեց նրան իր կանանցից մեկի որդեգրած մի դստերը, ասելով նրան թե իր դուստրն է: Խազարացին էլ ուղարկեց նրան իր դստերը: Ապա նրանք հանդիպեցին մի վայրում, որ կոչվում է Բարշալիա և օրերով զբաղվեցին զինարբուքով, ամեն մեկը մյուսին մտերմացավ, ցուցաբերելով իր բարյացակամությունն ու հյուրասիրությունը:*

*Սակայն Անուշիրուանն իր վստահելիներից ու մերձավորներից ոմանց պատվիրեց որ խազարացու ճամբարի մի կողմից հարձակում գործեն ու կրակ գցեն: Առավոտյան վերջինս բողոքեց Անուշիրուանին, իսկ սա երդվեց թե անտեղյակ է: Մի քանի գիշեր անց Անուշիրուանն իր մերձավորներին հրամայեց նույնը կրկնել: Այս անգամ զայրացավ խազարացին, սակայն Անուշիրուանը մեղմ խոսեց, ներողություն խնդրեց և սա լռեց: Ապա Անուշիրուանը հրամայեց կրակ գցել իր ճամբարի մի կողմը, որի հետևանքով վառվեցին խոտից ու ծառի ոստերից կառուցված հյուղակները: Առավոտյան Անուշիրուանը բողոքեց խազարացուն թե՝ քո մարդիկ քիչ էր մնում ամբողջ ճամբարս ոչնչացնեին, դու ինձանից վրեժ լուծեցիր: Սա երդվեց թե տեղյակ չէ: Այն ժամանակ Անուշիրուանն ասաց՝ ով եղբայր, իմ և քո զինվորները դժգոհ են մեր կնքած հաշտությունից, քանզի զրկվեցին մեր իրար դեմ կատարած արշավանքների ժամանակ ձեռք բերած (ավարից)· Ես վստահ չեմ, որ նրանք չեն կատարի այնպիսի բան, որ մեր սրտերը պղտորի, բարեկամանալուց ու հարազատանալուց հետո և մենք նորեն թշնամանանք խնամիանալուց ու մտերմանալուց հետո: Ճիշտն այն է, որ ինձ թույլ տաս մի պարիսպ կառուցել իմ և քո միջև, որի վրա դուռ կսարքենք և քեզ մոտ գտնվողներն ինձ մոտ չեն մտնի, եթե չկամենանք: Խազարացին համաձայնեց ու վերադարձավ:*

*Անուշիրուանն սկսեց պարսպի շինարարությունը և այն կառուցեց ծովի կողմից ժայռով ու արճիճով: Լայնությունը դարձրեց երեք հար-*

յուր կանգուն և բերեց կպցրեց լեռանը: Ապա Հրամայեց նավերով տանել քարերը և նետել ծովը, այնպես որ ջրի մակերեսին Հասնելով պարիսպը չարունակվի երեք մղոն Հեռավորությամբ:

Երբ շինարարությունը վերջացրեց, մուտքի տեղում երկաթե դռներ Հաստատեց և Հարյուր Հեծյալ պաՀակ կարգեց տեղում, մինչդեռ նախապես կարիք ուներ Հիսուն Հազար զինվորի և [պարսպի] վրան էլ մի պաշտպանական մեքենա (դաբբաբա) դրեց:

Այն ժամանակ ասացին խաղարացուն՝ նա քեզ խաբեց, ամուսնացրեց ոչ իր դստերը և պաշտպանվեց քեզանից: Սա ոչ մի Հնար չգտավ և այսպիսով վերջ գտան խազարների Հայաստան կատարած արշավանքները, այն բանից Հետո, երբ ավերել էին [երկիրը]:

Այստեղից դեպի աջ կան Դելմկաց (Դայլամ), Դեղանի (Ջիլան), Բաբրի ու Թայլասանի սաՀմանային ամրությունները: Կազուինի բերդը պարսկերեն կոչվում էր Քաշուին, որը նշանակում է երևացող սաՀման: Նրա և Դելումքի (Դայլամ) միջև կա մի լեռ, ուր Պարսից [թագավորությունը] ուներ ձիավոր ռազմիկների ջոկատ, որն այնտեղ ամրացված էր որպես կայազոր և ետ էր մղում դելմիկներին, երբ իրենց միջև պայմանագիր չէր լինում: Նրանք այդ վայրը պաշտպանում էին նրանց (դելմիկների) ավազակությունից:

[Դաշտաբին] բաժանված է եղել Ռեյի ու Համադանի միջև, ուստի մի մասը կոչվել է Ռազի (Ռեյի) և մյուս մասը՝ Համադանի: Իսլամի նվաճման սկզբնական շրջանում մաՀմեդականների Հարձակումներն սկսում էին Դաշտաբիից ու ԱբՀարից: Վերջինս մի բերդ է, որի մասին ասել են, թե Խոսրովներից (արքաներից) մեկն է կառուցել, մի վայրում, ուր բազում ակունքներ կան: Դելմիկների դրությունը մնում է անկայուն, քանզի ոչ կանոնավոր օրենք (շարիատ) ունեն, ոչ կայուն իշխանություն: Նվաճումից Հետո շատ անգամ խախտել են Հպատակության [պայմանը] և անՀավատ դարձել: Մեր օրերում ունեն զզվելի բարքեր՝ երեխաներին սպանում են, մզկիթներում կանանց Հետ անառակություն գործում, Հրաժարվում աղոթքից և մաՀմեդական կրոնական պարտականություններից:

Մեծ սաՀմանային ամրություններից (սուղուր) է թուրքաց [դեմ] սաՀմանային ամրությունը: Վրկանա երկրից այն կողմ նրանք ունեն մի անապատ, որից դուրս են գալիս Հարձակման: Տեղի բնակիչները աղյուսե պարիսպ էին կառուցել նրանց ասպատակություններից պաշտպանվելու Համար, սակայն թուրքերը Հաղթեցին և այդ Հողը նվաճեց նրանց թագավորը, որը կոչվում է Սուլ: Ապա եկան նվաճեցին մաՀմեդականները (արաբները):

Թուրքերի մեծ մասն ապրում է այն սաՀմանային ամրությունների գոտում (սուղուր), որը Խորասանում է և կոչվում է Նուշաջան և գտնվում է Սամարկանդի ետևում, նրա արևելյան կողմում, մոտավորա-

պես վաթսուն փարսախ (ֆարսախ) դեպի Շաշ ու Ֆարղանա։ Սա մահմեդականների առաջին ամրություններից (մասալիհ) է Խարլախների (խարլախիյա) դեմ Քայմաքի կողմերում։ Այս սահմանային ամրությունից մինչև Տաղազղուր քաղաքը քառասունհինգ օրվա քայլելու ճանապարհ է անապատներում, ուր կան աղբյուրներ, ապա քսան օրվա ճանապարհ՝ արոտավայրեր, ապա քսանհինգ օր՝ գյուղեր։ Այդ գյուղերի բնակչության մեծամասնությունը զրադաշտական է, կան նաև հրեղավածողներ (ղանադիկա)։ Տաղազղուր քաղաքի մոտ կա մի լիճ, շուրջը գյուղերով ու չնն տարածությամբ։ Ունի տասներկու երկաթե դուռ և բոլորը պահպանում են թուրքերը, որոնց մոտ տիրապետող է հերձվածություններ (ղանդակա)։ Վերին Նուշաջանի ու Շաշ քաղաքի միջև քառասուն օրվա ճանապարհ է կարավանների համար, իսկ արագ ընթացողի համար՝ երեսուն օրվա։ Վերին Նուշաջանը բաղկացած է չորս մեծ և հինգ փոքր քաղաքներից։ Նուշաջանի ռազմիկները տեղավորված են մեկ քաղաքում, լճի ափին և նրանք քսան հազար ռազմիկ են դիվանով հաստատված։ Թուրքերի մեջ չկան նրանցից ավելի զորեղները և նրանք տասն են խարլախների հարյուրի նկատմամբ։ Լիճը, որի վրա գտնվում է Տաղազղուր քաղաքը, հեռվից շրջապատված է լեռներով։

Սամարկանդից այն կողմ, և ինչպես ասվեց, նրանից վաթսունհինգ փարսախ հեռավորության վրա գտնվող Ստորին Նուշաջանի գլխավոր քաղաք Թարաղից դեպի ձախ գտնվում է Քայմաք երկիրը։ Նրա և Թարազի միջև ութսուն օրվա ճանապարհ է ընդարձակ անապատներում ու տափաստաններում, որտեղ արոտավայրեր ու աղբյուրներ կան։ Մահմեդականները քիչ են արշավում թուրքերի դեմ մարզարեի այն խոսքի պատճառով, թե՝ Թողեցեք թուրքերին, եթե ձեզ հանգիստ են թողնում։ Սակայն մենք հիշատակեցինք նրանց երկիրը և նրա վիճակը, քանի որ նախապես խոստացել էինք հիշատակել մահմեդական [թագավորությունը] շրջապատող ու նրան թշնամի ազգերին (ցեղերին)։

Ինչ վերաբերում է Տիբեթին, ապա դա գտնվում է Տաղազղուր երկրից աջ դեպի հարավ։ Երկկոտոշավորը (Ալեքսանդր) երբ հաղթեց Հնդկաստանի թագավոր Պորոսին (Ֆուր) ու սպանեց նրան, Հնդկաց երկրում մնաց յոթ ամիս և այնտեղից զորքեր ուղարկեց Տիբետ ու Չինաստան։ Ուղարկվածներից ոմանք վերադարձան ու հայտնեցին, որ արևելքի բոլոր թագավորները համաձայն են հպատակվել նրան ու հարկ վճարել, քանզի իմացել են նրա հաղթանակը Դարեհ (Դարա) ու Պորոսի՝ Պարսից ու Հնդկաց երկու թագավորների դեմ և նրա արդարությունն ու բարի վարքը։ Նա իր վստահելիներից մեկին թողեց Հնդկաստանում երեսուն հազար զորքով, իսկ ինքը գնաց, մինչև հասավ Տիբեթ երկիրը։ Ընդառաջ եկավ թագավորը իր թար-

*խաններով հանձնվելու նրան [.........]:*

*Ալեքսանդրը մնաց նրա (Զինաց Թագավորի) երկրում և կառուցեց մի քաղաք, որը կոչեց քարե աշտարակ (բուրջ ալ-հիջարա) և այնտեղ նշանակեց հինգ հազար պարսիկ ռազմիկներից կայազոր, որի գլխավորը նշանակեց իր ընկերներից մեկին կոչված Նեոկլիդես (Նաուքլիդիս) [...........]*

*Ապա գնաց տափաստանային Թուրքերի մոտ, նվաճեց ու ճնշեց նրանց: Լսեց որ այդ Թուրքերից մի խումբ, որը մեծ բազմություն ուներ հյուսիս արևելյան կողմերում, ապականում է երկիրը: Նա հարցրեց Զինաց տիրոջը նրանց մասին և սա հայտնեց, որ այնտեղ արջառից ու երկաթից բացի, այլ ավար չի կարելի գտնել և նրանց հյուսիսից պատում է կանաչ ծովը, որն անանցանելի է, իսկ արևմուտքից ու հարավից երկինք սլացող լեռները նույնպես անմատչելի ու անանցանելի են: Այդ Թուրքերը ոչ մի անցքի ճանապարհ չունեն, բացի մի նեղ կիրճից, պարանի նման և նրանք երկրի այնպիսի անկյունում են գտնվում, որ եթե այդ անցքը փակվի, կմնան ներսում և մարդիկ կազատվեն նրանց չարիքից և երկրից կվերանա նրանց ապականությունը: Ալեքսանդրը համոզվեց Զինաց տիրոջ ցուցմունքների իրավացիությամբ և փակեց այդ կիրճը և ահա սա այն պարիսպն է, որը նկարագրել է Ալլահը և պատմել Ղուրանում:*

*Ապա Երկկոտոշավորը վերադարձավ քաղաքների տեր կռապաշտ Թուրքերի երկիրը և շարունակելով հասավ Սուղդ երկիրը: Այստեղ կառուցեց Սամարկանդը և Դաբբուսիյա կոչված քաղաքը և Հեռավոր Ալեքսանդրիան, ապա հասավ Բուխարայի հողը և կառուցեց Բուխարա քաղաքը, գնաց Մերվի հողը և կառուցեց համանուն քաղաքը, ինչպես նաև Հերատ և Զարնաջ քաղաքները: Դուրս եկավ Վրկան (Ջուրջան) և հրամայեց կառուցել Ռեյը, Սպահանը (Իսբահան), Համադանը, մինչև որ վերադարձավ Բաբելոնի (Բաբիլ) հողը և մնաց տարիներ:*

*Քանի որ հիշեցինք արևելքի սահմանային ամրությունները, ապա դառնանք դեպի հարավ ու պատմենք Բաջայի ու Նուբիայի (Նուբա) սահմանային ամրության (սաղր) մասին: Նրա բնակիչները հաշտության դաշինք ունեն բակթ կոչված հարկի վճարման պայմանով: Նրանց և մահմեդականների միջև պատերազմ չկա, իսկ նրանց հաշտության (դաշինքի) մասին կպատմենք յոթերորդ մասում (մանզիլա), որը կհաջորդի այս (վեցերորդ) մասին:*

*Այժմ հիշենք արևմուտքի (մաղրիբ) սահմանային ամրությունները (սուղուր), որոնց առաջինը Իֆրիկիան է, որի [մայրաքաղաքը] կոչվում է Կայրուան: Հենց նվաճումից հետո նա կառավարվել է Մրվանյանների[70] (Օմայանների) ձեռքով և ապա Իրաքի [Աբբասյան] Թագավորի կողմից, մինչև որ նրան տիրացավ մեր օրերում Մաղրիբի [Ֆա-*

*Թիմյան] տերը ու անցավ, նվաճեց Բարկան և նրա տերը ետ դարձավ:*

*Իֆրիկիայից այն կողմ կա Թահիրթ երկիրը, որի և Իֆրիկիայի միջև հեռավորությունը երեսուն օրվա ճանապարհ է և գտնվում է Իդրիսների[71] պետի ձեռքում, որոնք խարիջիների[72] մի տեսակն են:*

*Թահիրթից այն կողմ, քսանչորս օրվա ճանապարհ հեռավորության վրա, կա մուստազիլիների երկիրը, ուր իշխում է մի արդար պետ, որի [տոհմի] արդարությունը հորդառատ է և վարքը գովելի և նրանց տիրույթներն են Թանժեն ու նրա գավառները: Մեր օրերում նրա տիրակալը որդին է՝ Մուհամմադ իբն Իդրիս իբն Աբդալլահ իբն Հասան իբն Հասանի[73]: Մուհամմադը հաստատվել է Վոլուբիլիս (Վալիլա) վայրում, որը Թանժերի [նահանգի] վերջին քաղաքն է և այնտեղ էլ մեռավ: Նրա որդին տեղափոխվեց Ֆես և նրանք մինչև օրս այնտեղ են:*

*Սրանից այն կողմ Անդալուս երկիրն է, որի տիրակալն է Օմայան [խալիֆան] և նրա նստավայրը Կորդովան[74] (Կուրթուբա) է: Անդալուսը Արևմուտքում (Մաղրիբ) է և նրան շրջապատում են երկու ծովերը, որոնց նկարագրությունը տվել ենք:*

*Վերջացավ Հարկերի ու քարտուղարության մատյանի վեցերորդ մասը (մանզիլա):*

## ԿՈՒԴԱՄԱ ԻԲՆ ՋԱԱՖԱՐ

## ՀԱՐԿԱՄԱՏՅԱՆ ԵՎ ԱՐՎԵՍՏ ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅԱՆ (ՔԻՏԱԲ ԱԼ-ԽԱՐԱՋ ՈՒԱ ՍԻՆԱԱՏ ԱԼ-ՔԻՏԱԲԱ )

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Մանզիլ – Մանզիլ (կայան) բառը սովորաբար օգտագործվում է հոգնակի՝ մանազիլ ձևով և նշանակում է այն կայանները, որոնց հասնում է ճանապարհորդը մեկ օրվա ճանապարհ (մարհալա, հոգն. մարահիլ) գնալուց հետո: Նախկինում՝ մանզիլը քարավանների ճանապարհներին հանգստանալու վրաններ էին, իսկ հետագայում արդեն դիտակցվում էր որպես մայրուղիների վրա կառուցված տուն, որտեղ իջևանում էին ճանապարհորդները: (Manzil, P. A. Andrews, EOI, CD-ROM, (VI: 454b)): Մղոնը հավասար է չուրջ երկու կիլոմետրի:*

[2] *Փարսախներ – Փարսախը հավասար է երեք մղոնի, այսինքն չուրջ 6 կիլոմետրի: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 5:*

[3] *Դինավար – Իրանի Ջիբալ նահանգի ամենակարևոր քաղաքներից մեկը: Դինավարը հիմնվել է դեռևս Սելևկյան դարաշրջանում: Նեհավենդի ճակատամարտում Սասանյանների վերջնական պարտությունից հետո, քաղաքը հանձնվել է արաբներին: Օմայան և Աբբասյան(հզորության շրջանում) դարաշրջանում Դինավարը ծաղկուն քաղաք էր: Հետագայում, Ժ դարից հետո, անկում ապրեց, իսկ Լենգ Թիմուրի ժամանակ վերջնականապես կործանվեց (Dinawar, L. Lockhart, EOI, CD-ROM, (II: 299a)):*

[4] *Փայտակարան – (Բայլական) – Տե՛ս նաև Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 15:*

[5] *Անդարաբ – Իրանական երկրներում հաճախ հանդիպող տեղանուն, որը նշանակում է «ջրերի միջև», «միջագետք»: Այստեղ հավանաբար խոսքը մի բնակավայրի մասին է Արդաբիլ գետի վրա, Ատրպատականում: (Andarab, V. Minorsky, EOI, CD-ROM, (I: 504a)):*

[6] *Մարաղա – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 231:*

[7] *Դահխառական – Կամ Դահնախիրջան. Նախոռական գյուղ, կամ որ նույնն է Դեհխարղան ավանը Թավրիզից դեպի հարավ-արևմուտք. այժմ Ազերշահր: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 170):*

[8] *Դավրեժ (Տարրիզ) – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 235:*

[9] *Մարանդ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 232:*

[10] *Սարաու – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 222:*

[11] *Նիր – կամ Նիրուհ: 13-րդ դարի աշխարհագրագետ Յակուտը իր Աշխարհագրական բառգրքի «ալ-Ջավաղան» (Անձևացիք) հոդվածում գրում է «Իսկ Մուսուլի տեբրերին են պատկանում Ալկի, Արվախ, Բախավիա, Բարխու, Քինքուր, Նիրուհ և Խավչար վայրերը»: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 76-77):*

[12] *Մուղան – Կամ Մուկան: Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 225:*

[13] *Ջարարուան – կամ Ջարրվանի բերդ, գտնվում է Ատրպատականում:*

[14] *Վաղի – Հավանաբար Վաղի ալ-Քուրդ բնակավայրն է: Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 19:*

[15] *Դարա – Քաղաք Միջագետքում, Եփրատ գետի մոտ:*

[16] *Հիսն Մանսուր – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 93:*

[17] *Ջաբետրա – Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 13:*

[18] *Հաղաս – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 18:*

[19] *Մանսուրա – Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 7:*

20 Մուտավաքքիլիյա – Շամխոր քաղաքի այլ անվանումը: Իբն ալ-Ասիր պատմիչը գրում է «Սա (Շամխորը) մի հին քաղաք էր և չէն մնաց մինչև որ այն կործանեցին սևորդիք (Սիյավարդիյա) կոչվածները: [...] Բուղան այն վերականգնեց երկուհարյուր քառասուն թվականին (854/855) և այն կոչեց Մուտավաքքիլիյա Մուտավաքքիլ [խալիֆայի] անունով»: (Իբն ալ-Ասիր. էջ 56):

21 Արդն – կամ Արդան, տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 33:

22 Խլաթ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 81:

23 Բաղեշ – կամ Բաղլիս, տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 59:

24 Բալխ գետ – կամ Բալիխ գետր (գետակը) Եփրատի մեջ է թափվում նրա միջին հոսանքներում: (Վ. Տ.-Ղ.)

25 Կաղիսիյա – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 10:

26 Ասուան – Տե՛ս Ֆարղանի, ծնթգր. 37:

27 Այս հատվածում բազմակետերը ձեռագրում պակասող տեղերն են ցույց տալիս:

28 Ռույան – Տե՛ս Ջահիզ, ծնթգր. 5:

29 Սղերդ (Աիիրդ) – քաղաք Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի նահանգի Սղերդի գավառում, Բիթլիս քաղաքից 50-52 կմ հարավ-արևմուտք. Սղերդի գետի ափին, Սղերդ գավառի կենտրոնը: (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 632):

30 Սավադ – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 11:

31 Ահուազ – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 14:

32 Ջազիրա – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 4:

33 Մարջ – Տե՛ս Դինավարի, ծնթգր. 12:

34 Հաղիսա – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 67:

35 Մծբին – Տե՛ս Նասիբին. Բալաձուրի, ծնթգր. 44:

36 Դարա – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 53:

37 Մարդին – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 52:

38 Սինջար – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 45:

39 Ռաս ալ-Այն – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 79:

40 Խաբուր – Տե՛ս նաև Բալաձուրի , ծնթգր. 66:

41 Արդն – Կամ Արդան, տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 33:

42 Նփրկերտ – Մայաֆարիկին, տե՛ս Բալաձուրի, ծնթգր.՝46:

43 Տարոն – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 186:

44 Բարդանդ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 230:

45 Բայաս – Կիլիկիայի նավահանգիստ, Այասի ճիշտ դիմացը, Հայոց ծոցի արևելյան ծովափի վրա: Կոչվում է նաև Փայաս, Պայաս, հռոմայեցիների կողմից Baiae: Ռուբինյանների ժամանակ ճկեր գավառի մասն էր կազմում: Առաջին խաչակիրներից հիշվում է «Կույսերի բերդ» անունով: Նրա հարավկողմը, Ալեքսանդրետի ճանապարհի վրա գտնվում է Կիլիկյան Ասորոց դուռը, Pylae Syriae Ciliciae, իսկ 30 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք գտնվում է Իսոսը, որտեղ Ալեքսանդր Մակեդոնացին վճռական հաղթանակ տարավ Պարսից թագավոր Դարեհ փոքրի դեմ: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 147), իսկ Յակուտը «Բայյաս» հոդվածում գրում է «Փոքր քաղաք է Անտիոքի արևելակողմում և Մսիսի արևմտակողմում, ծովեզրքի մոտ: Նրա և Ալեքսանդրետի միջև երկու փարսախ հեռավորություն է»: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 39):

46 Նիկոպոլիս – քաղաք Կիլիկիայում: Հույները այդպես սկսեցին անվանել Իսոս քաղաքը 333 թ. այստեղ Ալեքսանդր Մակեդոնացու պարսիկների դեմ տարած հաղթանակի առթիվ: Նիկոպոլիս հունարեն նշանակում է հաղթանակի քաղաք: (ՀՀՇՏԲ. հ. 3, էջ 988):

47 Անատոլիկոն – Բյուզանդական բանակաթեմ Փոքր Ասիայի կենտրոնական մա-

սնրում՝ Կապադովկիայից արևմուտք:

48 Սելևկիա – Քաղաք Կիլիկիայում, Հին Պամփյուլիայում, Միջերկրական ծովի ափին, Սելևկիա (Իսավրիա) երկրամասի կենտրոնը: Զչփոթել սրանից արևելք, դարձյալ ծովափին, Կալիկադնոսի գետաբերանի մոտ գտնվող Սելևկիայի հետ: (ՀՀՇՏԲ, Հ. 4, էջ 662):

49 Ավասիմ – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 22:

50 Կուրուս – Կյուրիս, բերդաքաղաք Հյուսիսային Ասորիքում, Կիլիկիայի սահմանի մոտ, Համանուն երկրամասում: Անտիոքի ստորին կոմսությունների մեկի կենտրոնն էր: Հավանաբար մտնում էր Տլուքի գավառի մեջ: (ՀՀՇՏԲ, Հ. 3, էջ 177)

51 Միջագետքյան ամրությունները (ալ-սուղուր ալ-ջազարիյա) – Տե՛ս Աբու Յուսուֆ, ծնթգր. 6:

52 Ամորիոն (Ամմուրիյա) – Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 14:

53 Քեսուն (Քայսում) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 88:

54 Խարսիանոն (Խարշանա) – Տե՛ս Իբն Կուտայբա, ծնթգր. 8:

55 Խաղտիք – Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 13:

56 Հայազգի Մլեհ (Մալիհ ալ-Արմանի) – Մլեհ մեծը կամ Հայազգի Մլեհը (Մալիհ ալ-Արմանի) Բյուզանդիայի Ռոմանոս Ա Լեկապենոս կայսեր Հայազգի զորավարն էր, որն արաբների դեմ կռվում մեծ քաջություններ գործեց Կիլիկիայում և այլուր, եղել է Լիկանդյան բանակաթեմի ստրատեգ: (Իբն ալ-Ասիր, էջ 386):

57 Բայալիկա (պավլիկյաններ) – Միջնադարյան աղանդավորական շարժում, որը ծագել է Հայաստանում, ապա տարածվել Բյուզանդական կայսրության փոքրասիական շրջաններում: Ենթադրվում է, որ պավլիկյան շարժումն առաջացել է Ե դարի վերջին: Հատկապես ուժեղ է եղել Է–Թ դարերում: Պավլիկյան շարժման դեմ դաժան պայքար է մղել Բյուզանդական կայսրությունը: Թ դարի 70-ական թվականներից հետո ստիճանաբար թուլացել է: Բայց պավլիկյանների գաղափարները դեռ երկար ժամանակ պահպանվել են նպաստելով Հայաստանում Թոնդրակյան շարժման առաջացմանը, իսկ բռնի գաղթեցված պավլիկյանների միջոցով իր ազդեցությունն է ունեցել Եվրոպայում բոգոմիլների, կաթարների, ալբիգոյցիների շարժումների առաջացման վրա: (Հայկ. սովետ. Հանրագիտարան, Հ. 9, էջ 140–141):

58 Տլուք (Դուլուք) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 89:

59 Ռաաբան – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 90:

60 Քիլիս – քաղաք Կիլիկիայում, Ադանայի նահանգի Ադանայի գավառում, Քիլիսի գավառակում, նրա կենտրոնը: (ՀՀՇՏԲ, Հ. 5, էջ 369):

61 Արմենիակոն (Արմինիակ) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 103:

62 Խաղտիք – Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթգր. 13:

63 Պափլագոնիա (Աֆլաջունիա) – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 62:

64 Լաոդիկե – Լաղակիա, կամ Լաղակիյա – Ներկայում Սիրիայի խոշորագույն նավահանգիստը: Հայտնի էր դեռ փյունիկյան շրջանից: Հունարեն և լատիներեն կոչվում էր Լաոդիկեա: Արաբները այս անունը ձևափոխեցին Լաղակիյա, կամ Լաղիկիյա: (al-Ladhikiyya, N. Elisseeff, EOI, CD-ROM, (V: 589b)):

65 Տրիպոլի – կամ Տրիպոլիս: Ասորիքի նշանավոր քաղաք-նավահանգիստ: Արաբական աղբյուրներում կոչվել է Թարաբուլուս ալ-Շամ (Սիրիայի), տարբերելու համար Թարաբուլուս ալ-Ղարբից (արևմտյան), այսինքն Լիբիայի Տրիպոլիից: Կարևոր քաղաք էր թե՛ անտիկ շրջանում և թե՛ Արաբական խալիֆայության օրոք: Խաչակրաց արշավանքների ժամանակ դարձավ Տրիպոլիի կոմսության կենտրոնը: Ներկայում Լիբանանի հանրապետության մեծությամբ երկրորդ քաղաքն է: (Tarabulus al-Sham, F. Buhl-[C. E. Bosworth], EOI, CD-ROM, (X: 214a)):

66 Տյուրոս (Սուր) – Տե՛ս Բալադուրի, ծնթգր. 11:

67 Ակրա ՙԱքքա՚ - Տե՛ս Բալաղուրի. ծնթգր. 10:

68 Գազա ՙՂազզա՚ - Տե՛ս Բալաղուրի. ծնթգր. 9:

69 Ֆարմա - Տե՛ս Իբն Խորդադբեհ. ծնթգր. 21:

70 Մրվանյաններ – Տվյալ դեպքում խոսքը ոչ միայն Մրվանյան ընտանիքի անդամ խալիֆաների, այլև ընդհանրապես Օմայան դինաստիայի մասին է:

71 Իբադիներ – Խարիջիների հիմնական ճյուղերից մեկը: Ներկայումս դրա ներկայացուցիչներ կան Օմանում, Արևելյան Աֆրիկայում. Տրիպոլիտանիայում և Հարավային Ալժիրում: Աղանդի անվանումը ծագում է հիմնադիրներից մեկի անունից Աբդ Ալլահ իբն Իբադ ալ-Մուռրի ալ-Տամիմի: Արաբ մատենագիրները օգտագործում են և Իբադիյյա և Աբադիյյա ձևը: Իբադիները հանդես եկան 684 - 685 թվականին. բայց այս ուղղությունն անկասկած առաջացել էր ավելի վաղ: (al-Ibadiyya. T. Lewicki, EOI, CD-ROM, (III: 648a)):

72 Խարիջիներ – Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 165:

73 Մուհամմադ իբն Իդրիս իբն Աբդալլահ իբն Հասան իբն Հասան – Խոսքը Իդրիսիների պետության ներկայացուցիչ Մուհամմադի (828-836) մասին է: Համարվում է որ այս տոհմը ծագում է Ալի իբն Աբու Թալիբից ու Ֆաթիմայից: Դինաստիայի հիմնադիրն է Իդրիս Ա-ը, որը 788-789-ին հաստատվելով Մաղրիբի Աեուտա քաղաքում հիմնեց մի նոր պետություն իշխելով մինչև 792 թվականը: Նրան հաջորդեց իր որդին՝ Իդրիս Բ-ը (792-828): Նրա օրոք. դեռ իր հոր ժամանակ հիմնադրված Ֆես քաղաքը դարձավ Իդրիսիների պետության մայրաքաղաքը: Իդրիս Բ-ի մահից հետո, սկսվեց այս պետության քայքայումը: Իդրիս Բ-ը ուներ 12 որդի, որոնցից ավագը՝ Մուհամմադը. հաջորդեց իր հորը և իր տատի՝ Քանզայի առաջարկով պետությունը բաժանեց իր եղբայրներից առավել ավագների միջև, իրեն պահելով կենտրոնական մասը՝ Ֆես քաղաքով: Բաժանմանը հաջորդեց ներքին երկպառակությունը: Մուհամմադից սկսած Ֆեսի տիրակալները թեև համարվում էին ավագը մյուսների մեջ, սակայն Իդրիսիների պետությունն այլևս չմիավորվեց: Այն տրոհված վիճակով գոյատևեց մինչև 917 թվականը, երբ Ֆեսի վերջին տիրակալ Յահյա Դ-ը պարտություն կրելով Ֆաթիմյաններից. ստիպված էր ճանաչել վերջիններիս տիրապետությունը: .(Idrisids (Adarisa), D. Eustache, EOI, CD-ROM, (III: 1035a)):

74 Կորդովա - Արաբ. ձևով Կուրտուբա, քաղաք Հարավային Իսպանիայում. Մահմեդական Իսպանիայի կամ Անդալուսի մայրաքաղաքը: Կորդովան գտնվում էր Գվադալկվիվիր գետի (արաբ. ալ-Ուադի ալ-Քաբիր «մեծ հովիտ» կամ «մեծ գետ») միջին հոսանքի աջ ափին: Անդալուսի արաբական նվաճումից շատ չանցած 716-719 թվականներին, մայրաքաղաքը տեղափոխվեց Կորդովա, որից հետո այն դարեր շարունակ թե՛ Խալիֆայության կազմում, թե՛ որպես անկախ ամիրություն և թե՛ որպես Կորդովայի Օմայան խալիֆայություն, մնաց որպես մահմեդական Իսպանիայի մայրաքաղաք: (Kurtuba, C. F. Seybold [ M. Ocana Jimenez], EOI, CD-ROM, (V: 509b)):

## ԻՍԹԱԽՐԻ (մահ. 951-ից հետո)

*Աբու Իսհակ Իբրահիմ իբն Մուհամմադ ալ-Ֆարիսին, հավանաբար ծագում էր Իրանի Իսթախր նահանգից (Ֆարս) և հենց այդ անունով էլ հայտնի դարձավ՝ ալ-Իսթախրի: Նա հանդիսանում է արաբական աշխարհագրական գիտության 10-րդ դարի դպրոցի առաջին և ամենակարևոր ներկայացուցիչներից մեկը:*

*Հավանաբար կյանքի ինչ որ մի շրջանում ալ-Իսթախրին հաստատվել է Իրաքում, գուցե Բաղդադում:*

*Նրա մասին հայտնի է միայն այն, որ իր կյանքի ընթացքում շատ է ճանապարհորդել մահմեդական աշխարհում (Մավերաննահր, Իրան, Արաբիա, Սիրիա և Եգիպտոս) ու մահացել է 951 թվականից հետո: Ալ-Իսթախրիից մեզ է հասել «Գիրք թագավորությունների ճանապարհների մասին» (Քիտաբ Մասալիք ալ-Մամալիք) երկը, որը մանրամասն նկարագրությունն է այն բոլոր երկրների, որ նա համարել է մահմեդական աշխարհի մաս կազմող: Այն առաջին խմբագրությամբ կազմվել է հավանաբար 930-933 թվականներին, բայց Արևելքում տարածվել է շուրջ 950-ին:*

**Ներկա թարգմանությունը կատարված է Bibliotheca Geographorum Arabicorum, M. J. de Goeje, v. I, Leiden, 1967 գրքից:**

*(R. Blachère et H. Darmaun, Extraits des Principaux Geographes Arabes du Moyen Age, Paris, 1957, p. 135, Крачковский, IV, стр. 196-197, al-Istakhri, A. Miquel, EOI, CD-ROM, (IV: 222b)):*

## ԻՍԹԱԽՐԻ

## ԳԻՐՔ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ՄԱՍԻՆ (ՔԻՏԱԲ ՄԱՍԱԼԻՔ ԱԼ-ՄԱՄԱԼԻՔ)

## ՀԱՅԱՍՏԱՆ, ԱՌԱՆ, ԱՏՐՊԱՏԱԿԱՆ

*էջ 180–194*

*Ինչ վերաբերում է Հայաստանին, Առանին ու Ատրպատականին (Ադարբայջան), ապա մենք նրանց մեկ քարտեզի մեջ վերցրեցինք ու մեկ երկրամաս (իկլիմ) համարեցինք: Նրանց շրջապատում են արևելյան կողմից Ջիբալը, Դայլամը (Դեյլումք), և Խազարաց ծովի[1] արևմտյան ափը, իսկ արևմտյան կողմից նրանց շրջապատում են Հայոց (Արման) երկրի սահմանները, Ալանքը (ալ-Լան) և Ջազիրայի սահմանի մի մասը: Հյուսիսից նրան շրջապատում են Ալանքը և Կովկաս (Կաբկ) լեռները, իսկ հարավից՝ Իրաքի սահմանն ու Ջազիրայի մի մասը:*

*Ատրպատականի ամենամեծ քաղաքը Արդաբիլն է, ուր կա զորակայանը (մուասքար) և կառավարչի նստավայրը (դար ալ-իմարա): Այս քաղաքը երկու երրորդ փարսախ երկարություն և այդքան էլ լայնություն ունի: Շրջապատված է պարսպով և ունի երեք դարպասներ (դռներ): Նրա շենքերի մեծ մասը կավից (թին) է կառուցված: Սա մի հարուստ քաղաք է էժան գներով: Ունի երկրագործական արվարձաններ (ռուստակ) և գավառներ (քուրա): Նրան մոտիկ կա մի լեռ, երկու փարսախ հեռավորության վրա, որը կոչվում է Սաբալան, մեծ և բարձր, որի վրա ձյունն անպակաս է, ձմեռ թե ամառ և այնտեղ ոչ ՝ոք չի ապրում:*

*Արդաբիլից հետո մեծությամբ երկրորդը Մարաղան է, որը հնում եղել է զորակայան ու կառավարչի նստավայր: Մարաղան շատ բարեկարգ է, բարեբեր հողով, բազում այգիներով, երկրագործական արվարձաններով, ցանքատարածություններով: Նրա շուրջը եղել է պարիսպ, որը քանդել է Իբն Աբու-լ-Սաջը[2]:*

*Մարաղայից հետո մեծությամբ հաջորդում է Ուրմիան, որը բարեկարգ քաղաք է, առատ բարիքներով, էժան գներով և գտնվում է Ուրմիա լճի վրա:*

*Մայանիջը, Խունաջը[3], Ուջանը, Դախառականը[4], Խոյը[5] (Խուայյ), Սալմաստը[6], Մարանդը[7], Տաբրիզը[8], Բարզանդը[9], Վարդանակերտը[10]*

*Մուղանը[11], Ջաբրավանը[12] և Ուշնուն փոքր և մեծությամբ իրար նման քաղաքներ են, իսկ Ջարրավանը, Տարրիզը և Ուշնու ալ-Ադաբիյան, ապա այդ քաղաքները իրենց շրջակայքով կոչվում են ալ-Ռուդայնի:*

*Պարտավը շատ մեծ քաղաք է, կլինի փարսախով փարսախ: Սա բարեկարգ է, բարեբեր, բազում ցանքատարածություններով, առատ մրգերով: Իրաքի ու Խորասանի միջև ընկած տարածության մեջ, բացի Ռեյից ու Սպահանից, չկա ավելի մեծ կամ բարեբեր, լավ դիրքով ու հարմարություններով քաղաք, քան Պարտավը: Նրանից մեկ փարսախից պակաս հեռավորության վրա կա Անդարաբ կոչված վայրը, որը գտնվում է Քարնայի Լասուրի և Յակթանի միջև, մեկ օրվա ճանապարհից ավելի հեռավորությամբ: Այնտեղ կան խիտ ծառաստաններ, մրգաստաններ (բաղ)՝ ամբողջովին լի պտուղներով: Կա նաև ընտիր կաղին, ավելի լավ քան Սամարղանդինը, ինչպես նաև շագանակ (շահբալուտ), ավելի լավ, քան Ասորիքի (Շամ) շագանակը: Կա մի պտուղ, որը կոչվում է Ռուկալ, սնձենու մրգի մեծությամբ. սա ունի մի կորիզ, որը քաղցրահամ է, երբ պտուղը հասուն է, սակայն դառն է, երբ չի հասունացած: Իսկ շագանակը սև ընկույզի կեսի չափ է և նրա համը կաղինի ու արմավի նման է: Պարտավում կա թուզ, որը Լասուրից է բերվում և թզի այլ տեսակներից գերազանց է: Այնտեղից շատ մետաքսն թել է բերվում և դա աճում է թթենու վրա, որը հանրային է, չունի սեփականատեր: Սա [մետաքսաթելը] մեծ քանակությամբ արտահանվում է Ֆարս ու Խուզիստան:*

*Պարտավից մեկ երրորդ փարսախ հեռավորության վրա է Կուր գետը, որի մեջ կա սուրմահի (շուրմահի) ձուկը և դա աղած վիճակում ամեն կողմ արտահանվում է: Կուրից հանվում է նաև զարակին կոչված ձուկը և աշուբան: Այս երկու ձկները ամեն տեսակի այլ ձկներից նախընտրելի են այդ կողմերում:*

*Պարտավի դռան մոտ, որը կոչվում է Բաբ ալ-Աքրադ (քրդերի դուռ), կա մի շուկա, որը կոչվում է ալ-Քուրքի (կիրակի), և տարածությունը փարսախով փարսախ է: Մարդիկ այստեղ հավաքվում են ամեն կիրակի և գալիս են ամեն կողմերից, նույնիսկ Իրաքից: Սա ավելի մեծ է, քան Քուլսարայի շուկան: Քուրքի (քուրաքի) անունը արդեն դարձել է այդ օրվա անունը. նույնիսկ նրանցից շատերը, երբ շաբաթվա օրերն են հաշվում, ասում են՝ ալ-սաբտ (շաբաթ), ալ-քուրքի (կիրակի), ալ-իսնայն (երկուշաբթի) և ալ-սուլասա (երեքշաբթի) և այսպես մինչև շաբաթվա վերջը:*

*Նրանց արքունի գանձարանը (բայտ ալ-մալ) գտնվում է մայր մզկիթում, ինչպես որ Ասորիքում, ուր գանձարանները մզկիթներում են գտնվում: Այս գանձարանը կապարով երեսապատված տանիք ունի, երկաթե դուռ և կանգնած է ինը սյուների վրա: Կառավարչի*

նստավայրը քաղաքի մայր մզկիթի կողքին է, իսկ շուկաները արվարձանում են:

Դարբանդը (Բաբ ալ-Աբուաբ) մի քաղաք է ծովի ափին ու նրա կենտրոնում կա նավահանգիստ: Այս նավահանգստի ու ծովի միջև երկու ափերի վրա կառուցվել են երկու ամբարտակներ, այնպես, որ նեղացել է նավերի մուտքը և դա ոլորապտույտ է ու նրա բերնի վրա կա մի շղթա: Առանց հրամանի ոչ մի նավ չի կարող դուրս գալ, կամ մտնել: Այս երկու ամբարտակները ժայռից ու կապարից են:

Դարբանդը Թաբարիստանի (Կասպից) ծովի վրա է և Արդաբիլից ավելի մեծ քաղաք է: Ունի ընդարձակ ցանքատարածություններ, սակայն պտուղները քիչ են, բացի այլևայլ նահանգներից բերվածից: Սա մի քաղաք է, որի շուրջը քարե, աղյուսե ու կավե պարիսպ կա: Խազարաց (Կասպից) ծովի նավահանգիստն (փարդա) է Սաբիրի և անհավատների այլ երկրների համար, միաժամանակ նավահանգիստն է Վրկանի (Ջուրջան), Թաբարիստանի ու Դայլամի: Նրանում պատրաստում են քթանե զգեստներ և միայն Առանում, Հայաստանում ու Ատրպատականում է, որ քթանե զգեստներ են արտադրում: Այստեղ կա քրքում (զաաֆարան) և այստեղ բերվում են ստրուկներ անհավատների տարբեր երկրներից:

Տփղիսը Դարբանդից փոքր քաղաք է և ունի երկու կավե պարիսպ ու երեք դարպաս (դուռ): Շատ բարեբեր է, առատ մրգերով ու ցանքսերով: Սահմանային ամրություն է: Նրանում կան բաղնիքներ, Տիբերիադայի բաղնիքների նման և դրանց ջուրը տաք է առանց կրակ [վառելու]: Առանում չկան քաղաքներ ավելի մեծ քան Պարտավը, Դարբանդը և Տփղիսը:

Իսկ Բայլականը, Վարդանակերտը, Բարդիջը, Բարզանդը, Շամախին, Շիրվանը, Աբխազը (ալ-Լայիջան), Շապորանը, Կապաղակը, Շաքեն, Գանձակը, Շամխորը և Խունանը, ապա բոլորն էլ իրար նման փոքր քաղաքներ են, բարեբեր և լայն հարմարություններով:

Դվինը (Դաբիլ) Արդաբիլից մեծ քաղաք է և Հայաստանի մայրաքաղաքն է. նրանում է կառավարչի նստավայրը (դար ալ-իմարա), ինչպես Առանի կառավարչի նստավայրը Պարտավում է, իսկ Ատրպատականի կառավարչի նստավայրը՝ Արդաբիլում: Ունի պարիսպ և քրիստոնյաները նրանում մեծաթիվ են: Մայր մզկիթը եկեղեցու կողքին է: Նրանում արտադրում են բրդե գործվածքներ, ինչպես՝ գորգ, երեսի բարձեր (վասայիդ), հենաբարձեր (մակաիդ), գոտիներ (տիքքա) և այլ հայկական տեսակի (ասնաֆ ալ-արմանի) ապրանքներ: Ունեն մի ներկ, որը կոչվում է կարմիր (կիրմիզ), որով ներկում են բուրդը: Ինձ պատմել են, որ դա մի որդ է, որ ինքն իր վրա հյուսվում է, ինչպես մետաքսի որդը. պատմել են նաև, որ այնտեղից արտահանվում է մեծ քանակությամբ դիպակ (բաղյուն):

Սա Հայաստանի մայրաքաղաքն է, որտեղ կար Սմբատ Աշոտի որդին[13] (Սանբաթ իբն Աշութ)։ Նա (Հայաստանը) գտնվում էր նրանց, քրիստոնյա մեծամեծների ձեռքում, և նրանք (հայերն) են, որ գերակշռում են Հայաստանի բնակչության մեջ։ Սա Հայոց թագավորությունն (մամլաքատ ալ-Արման) է, որը սահմանակից է Հոռոմներին (Ռում). նրանց մի սահմանը հասնում է Պարտավ, մյուս սահմանը՝ Ջազիրա, իսկ մի սահմանը՝ Ատրպատական և Հայաստանից դեպի Հոռոմների կողմերը առաջին սահմանային ամրությունը Կարնո քաղաքն (Կալիկալա) է, որի վրայով Ատրպատականի, Ջիբալի ու Ռեյի և այլ նահանգների ժողովուրդը արշավանքներ է կատարում [Բյուզանդիա]։

Նրանք Հոռոմների երկիրը մտնելու համար ունեն մի նավահանգիստ, որը հայտնի է Տրապիզոն անվամբ, ուր հավաքվում են վաճառականները և մտնում Հոռոմների երկիրը վաճառականության համար։ Ինչքան բյուզանդական մետաքս, դիպակ և զգեստներ են բերվում այդ կողմերը, ապա Տրապիզոնի վրայով է [հասնում]։

Նախճավան, Բերկրի, Խլաթ, Մանազկերտ[14], Բաղեշ[15], Կարնո քաղաք, Արզն, Նփրկերտ և Շիրակ քաղաքները բոլորն էլ փոքր են, մեծությամբ իրար նման։ Բոլորն էլ բարեբեր հող ունեն և շեն են, լի բազում բարիքներով։ Ոմանք Նփրկերտը Ջազիրայի մեջ են համարում, սակայն դա Տիգրիսից այս կողմ է, իսկ Ջազիրայի սահմանը Տիգրիսի ետևում է (այն կողմում է), ինչպես քարտեզում այն դրել ենք Տիգրիսի ու Եփրատի միջև, այդ պատճառով Հայաստանի մեջ ենք համարել։

Իսկ այս երկրների գետերը, որոնց վրա նավեր են գնում, հետևյալներն են՝ Կուրը (Քուռ), Արաքսը (ալ-Ռասս), իսկ Սաբիդռուդը (Սաֆիդ ռուդ), որն Արդաբիլի ու Զանջանի միջև է, մի գետ է, որի վրա նավեր չեն գնում նրա փոքր լինելու պատճառով։ Կուրը քաղցր ջուր ունեցող գետ է, առողջարար ու թեթև։ Բխում է լեռների կողմերից, հոսում է Գանձակի ու Շամխորի միջով հասնելով Տփղիսի մոտ, ապա անհավատների երկրներն է մտնում։

Արաքսը քաղցր ջուր ունեցող հաճելի գետ է։ Բխում է Հայաստանից, հասնում Վարդանակերտի դուռը, ապա Մուղանի ետևի կողմով և Կուրի եզքի ետևով թափվում ծովը։

Ինչ վերաբերում է նրա ծովերին (լճերին), ապա Ատրպատականում կա մի լիճ Ուրմիա կոչված, աղի ջրով, ուր կան ձկներ, ինչպես նաև մի կենդանի, որը կոչվում է ջրաշուն։ Սա ընդարձակ է և ամբողջ շրջակայքը շեն է գյուղերով, գյուղատնտեսական շրջաններով (ռաստիկ)։ Լճի և Մարաղայի միջև երեք փարսախ է, նրա և Ուրմիայի միջև՝ երկու փարսախ, Դախառականի և լճի ափի (շաթթ) միջև՝ չորս փարսախ։ Նրա երկարությունը մոտավորապես չորս օրվա անասու-

նի երթի ճանապարհ է, իսկ նպաստավոր քամու պարագային, գուցե մեկ գիշերում գնան [նավերը]։

Հայաստանում կա մի լիճ, որը կոչվում է Արճեշի (Վանի) լիճ[16], որտեղից հանվում է տառեխ (թիրիխ) ձուկը, որն արտահանվում է բոլոր երկրները։

Նրանք ունեն Թաբարիստանի (Կասպից) ծովը, որի վրա կա Դարբանդը (Բաբ ալ-Աբուաբ) և Բաքուն (Բաքուհ), ուր նավթ (նաֆթ) կա։

Իսկ Տիգրիսը, ապա նրա մի փոքր մասը հոսում է Հայաստանում։ Մենք Տիգրիսը ներկայացրել ենք Ջազիրայի ու Իրաքի քարտեզում։ Պարտավի կողմերում բուծում են ջորիներ, որոնք ամեն կողմ արտահանվում են։ Ստանում են նաև տորոնը, որը տարվում է Հնդկաստան և այլ շատ երկրներ։

Առանի սահմանները ձգվում են Դարբանդից մինչև Տփղիս։ Արաքս գետի մոտ մի վայր կա, որը կոչվում է Հաջիրան։ Ատրպատականի սահմանն է լեռը (ջաբալ) մինչև հասնում է Թարոմի ետևի կողմը, մինչև Զանջանի սահմանը, Դինավարի ետևի կողմը, ապա պտտվում է Հուլուանի ու Շահրազուրի ետևի կողմը և հասնում Տիգրիսի մոտերքը, ապա անցնում Հայաստանի սահմանի երկայնքով, իսկ Հայաստանի սահմանները մենք արդեն ցույց ենք տվել։

Այս քաղաքներում գների էժանություն կա, այնպես որ որոշ վայրերում ոչխարը երկու դիրհեմ արժի, երբեմն որոշ գավառներում մեղրի երկու, նույնիսկ երեք մանը մեկ դիրհեմ է։ Նրանում այնպիսի առատություն կա, որ եթե աչքով չտեսած մարդուն պատմես, չի հավատա, այնքան որ առատ է։

Այստեղ տարբեր կողմերում կան թագավորներ (մալիք), որոնց տիրույթները թագավորությունների նման են, ունեն ընդարձակ թագավորություն և հարստություն։ Այդպիսիք են Շիրուանի (Շարուան) թագավորը, որը կոչվում է Շիրուանշահ և Աբխազների (ալ-Լայիջան)* թագավորը՝ կոչված Աբխազշահ (Լայիջանշահ)։

Ատրպատականի, Հայաստանի և Առանի մեծ մասը լեռնոտ է։ Դվինում կա մի հսկա լեռ, որը կոչվում է Մասիս (Հարիս) և նրա գագաթը կարելի չէ բարձրանալ, քանզի շատ բարձր է ու դժվար են բարձրանալու ճանապարհները։ Ձյունը միշտ մնում է նրա վրա։ Նրանից ցածր կա մի փոքր լեռ, որը կոչվում է Փոքր Մասիս (Հուայրաս)։ Մասիսից են գալիս նրանց ջրերը, նրանց փայտ հայթայթելու վայրն է և որսավայրը։ Ասվում է, որ այս քաղաքներում նրանից ավելի բարձր լեռ չկա։

Արդաբիլի մանը[17] հազար քառասուն դիրհեմ է, ինչպես Շիրազի

---

* Բնագրում թեև կա Աբխազ բառը, բայց այն անհավանական է։ Ձեռագրական տարընթերցվածներում կա Լայիջան բառը, որը շատ ավելի համոզիչ է։

մաննան, սակայն Շիրազում կոչվում է մաննա, իսկ Արդաբիլում ռաթլ[18]:

Ատրպատականի, Հայաստանի ու Առանի լեզուն պարսկերենն է ու արաբերենը: Սակայն Դվինում և շրջակա գավառներում բնակչությունը խոսում է հայերեն (արմանիյա, արմինիյա), իսկ Պարտավի շրջանում բնակչության լեզուն առաներենն (առանիյա) է: Ունեն լեռներ, որ կոչվում են Կովկաս (Կաբկ): Նրա շուրջը կան անհավատ [ժողովուրդներ], որոնք բազմաթիվ ու բազմազան լեզուներ են խոսում: Ատրպատականի, Հայաստանի և Առանի դրամը ոսկին (դինար) է և արծաթը (դիրհեմ) բոլոր տեսակներով:

Ճանապարհների երկարությունները այս նահանգներում.

Ճանապարհը Պարտավից Արդաբիլ: Պարտավից Յունան[19] յոթ փարսախ է, Յունանից Բայլական՝ յոթ փարսախ, Բայլականից Վարդանակերտ՝ յոթ փարսախ, Վարդանակերտից Բալխաբ՝ յոթ փարսախ, Բալխաբից Բարզանդ՝ յոթ փարսախ, իսկ Բարզանդից Արդաբիլ՝ տասնհինգ փարսախ:

Ճանապարհը Պարտավից Դարբանդ (Բաբ ալ-Աբուաբ): Պարտավից Բարզանդ տասնութ փարսախ է, Բարզանդից Կուրի ծանծաղուտը (անցահուն) դեպի Շամախի՝ տասնչորս փարսախ, Շամախիից Շիրուան՝ երեք օրվա ճանապարհ, Շիրուանից Աբխազ (Լայիջան)՝ երկու օրվա ճանապարհ, Աբխազից (Լայիջան) Սամուրի կամուրջը՝ տասներկու փարսախ, Սամուրի կամրջից Դարբանդ՝ քսան փարսախ:

Ճանապարհը Պարտավից Տփղիս: Պարտավից Դանձակ քաղաքը ինը փարսախ է, Գանձակից Շամխոր՝ տաս փարսախ, Շամխորից Խունան[20] քաղաքը՝ քսանմեկ փարսախ, Խունանից Կալաատ (բերդ) իբն Քանդաման բերդը՝ տաս փարսախ և Կալաատից Տփղիս՝ տասներկու փարսախ:

Ճանապարհը Պարտավից Դվին: Պարտավից Կաղանկատույս[21] (Կալկաթուս) ինը փարսախ է, Կաղանկատույսից Հաթերս[22] (Մատրիս, Հատրիս)՝ տասներեք փարսախ, Հաթերսից Զավդիս[23] (Դաումիս, Դաուտիս)՝ տասներկու փարսախ, Զավդիսից Գեղարքունի[24] (Քիլ Քուլ, Քիլքուն)՝ տասնվեց փարսախ, Գեղարքունիից Սիսական՝ տասնվեց փարսախ, Սիսականից Դվին՝ տասնվեց փարսախ: Ճանապարհը Պարտավից Դվին անցնում է Հայոց երկրի միջով և այս բոլոր գյուղերը Սմբատի՝ Աշոտի որդու թագավորության մեջ են:

Ճանապարհը Արդաբիլից Զանջան: Արդաբիլից մինչև Սաբիդ Ռուդի կամուրջը երկու օթևան (մարհալա) է, Կամուրջից (Կանթարա) Սարատ՝ մեկ օրվա ճանապարհ, Սարատից Նույ՝ մեկ օր, Նույից Զանջան՝ մեկ օր:

Ճանապարհը Արդաբիլից Մարաղա: Արդաբիլից Մայանիջ քսան

փարսախ է, Մայանիջից Խունաջ քաղաքը՝ յոթ փարսախ, Խունաջից Քուլսարա, որը գյուղատնտեսական գավառ է և մեծ շուկա, բայց չունի [մզկիթի] բեմ (մինբար)՝ երեք փարսախ, Քուլսարայից Մարաղա՝ տաս փարսախ:

Ճանապարհը Արդաբիլից Ամիդ: Արդաբիլից Մարաղա քառասուն փարսախ է, Մարաղայից Դախառական, ուր կա [մզկիթի] բեմ, երկու օթևան է, նրանից մինչև Ուրմիա քաղաքը երկու օթևան է, Ուրմիայից Սալմաստ՝ երկու օթևան, Սալմաստից Խոյ՝ յոթ փարսախ, Խոյից Բերկրի՝ երեսուն փարսախ, Բերկրիից Արճեշ՝ մեկ օր, Արճեշից Խլաթ՝ երեք օր, Խլաթից Բաղեշ՝ մեկ օր, Բաղեշից Նփրկերտ՝ երեք օր, Նփրկերտից Ամիդ՝ երկու օր:

Ճանապարհը Մարաղայից Դվին: Մարաղայից Ուրմիա երեսուն փարսախ է, Ուրմիայից Սալմաստ՝ տասնչորս փարսախ, Սալմաստից Խոյ՝ յոթ փարսախ, Խոյից Նախճավան՝ երեք օր, Նախճավանից Դվին՝ չորս օթևան, Մարաղայից Դինավար՝ վաթսուն փարսախ և այնտեղ չկան [մզկիթի] բեմեր:

## ԻՍԹԱԽՐԻ

# ԳԻՐՔ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ՄԱՍԻՆ
# ՔԻՏԱԲ ՄԱՍԱԼԻՔ ԱԼ-ՄԱՄԱԼԻՔ

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1 Խազարաց ծով – Կասպից ծով: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 74:*

*2 Իբն Աբու-լ-Սաջր – Հավանաբար նկատի ունի Յուսուֆ իբն Աբու-լ Սաջին: Սաջինները կամ Սաջյանները զորավարների մի տոհմ է, որը կառավարում էր խալիֆայության հյուսիս-արևմտյան նահանգները, Ատրպատականը, ինչպես նաև Աղվանքն ու Հայաստանը 9-րդ դարի վերջին և 10-րդ դարի սկզբին Աբբասյան խալիֆաների անունից: Սաջինները ծագում էին արևելյան Իրանից ու Միջին Ասիայից և ծառայել էին Աբբասյան խալիֆաների բանակներում: Նրանք Միջին Ասիայի Ուշրուսանա քաղաքից ծագող պարսիկ իշխանական ընտանիք էր, որոշ չափով արաբացած: Նրանք կրում էին Աֆշին պատվանունը: Աբբասյաններին տարբեր զինվորական ծառայություններ մատուցելով Սաջյանները բարձր դիրքեր գրավեցին և, ի վերջո, 889/890 թվականին նրանցից Մուհամմադը նշանակվեց Ատրպատականի կառավարիչ: Շատ չանցած սա պատերազմի մեջ մտավ Հայոց թագավոր Սմբատ Բագրատունու դեմ: Սաջյանները շատ հետաքրքիր վիճակ ունեին, երբեմն նրանք հանդես էին գալիս իբրև խալիֆայության ենթականեր, երբեմն դեմ էին դուրս գալիս նույնինքն խալիֆային: Մուհամմադը մահացավ 901 թ-ին: Նրան փոխարինեց որդին Դեւդադը, բայց շատ չանցած նա դուրս մղվեց իր հորեղբոր Աբու-լ-Կասիմ Յուսուֆի կողմից, որը մայրաքաղաքը տեղափոխեց Մարաղայից Արդաբիլ, կարգավորեց հարաբերությունները խալիֆայի հետ և հարձակման անցավ Հայաստանի դեմ: Յուսուֆը զոհվեց Քուֆայի մոտ Կարմատների դեմ պայքարում, որտեղ նրան ուղարկել էր խալիֆան: Դրանից հետո Սաջյաններն աստիճանաբար թուլացան: (Sadjids, C. E. Bosworth, EOI, CD-ROM, (8: 745a)).*

*3 Խունաջ – Ներկայում այս քաղաքը կոչվում է Քաղաղ Քոնան և գտնվում է Իրանական Ադրբեջանի Հաշտառուդի շրջանում: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 162): Իսկ Յակուտը իր «Խունա» հոդվածում գրում է «Ճիշտ անունը Խունաջ է. քաղաք է Ատրպատականի երկրում, Մարաղայի և Զանջանի միջև Ռեյի ճանապարհի վրա, և որ Ատրպատականի վերջին նահանգն է: Ներկայիս կոչվում է Քաղեղ Քունան, այսինքն թղթագործ արհեստավորներ: Այդ քաղաքի բնակիչները խորշում են իրենց քաղաքը Խունա կոչելուց (նշանակում է ամուսնուն անհավատարիմ կին, Հ. Ն.), այդ բառի պիղծ իմաստի պատճառով»: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 61)*

*4 Դախառական – Կամ Դահխառական, տե՛ս Կուդամա, ծնթգր. 7:*

*5 Խոյ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 240:*

*6 Սալմաստ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 241:*

*7 Մարանդ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 232:*

*8 Տաբրիզ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 235:*

*9 Բարզանդ – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 230:*

*10 Վարզանակերտ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 52:*

*11 Մուգան – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 225:*

*12 Ջաբրավան – Դուցե Ջարարուան, տե՛ս Կուդամա, ծնթգր. 13:*

*13 Սմբատ Աշոտի որդի – Սմբատ Ա Բագրատունի՝ Թագավոր Հայոց 890–914 թվականներին: Սմբատ Ա-ը հաջորդեց իր հորը՝ Բագրատունյաց տոհմի առաջին անկախ*

*գահակալ Աշոտ Ա-ին: Սմբատ Ա-ի թագավորությունը ճանաչել են թե՛ Արաբական խալիֆայությունը և թե՛ Բյուզանդական կայսրությունը: Սմբատ Ա-ը վարել է կենտրոնացված ուժեղ պետություն հաստատելու քաղաքականություն: Նրա օրոք Բագրատունյաց թագավորությունն ընդգրկել է Հայաստանի մեծագույն մասը: Սմբատ Ա-ի օրոք սկսվեց ծանր պայքարը Ատրպատականի Սաջյանների հետ, որոնց խալիֆան շնորհել էր Հայաստանում հարկեր հավաքելու իրավունք և ոստիկանի պաշտոն: 890-ական թվականներին Սմբատ Ա-ը փոփոխակի հաջողությամբ դիմադրում էր Սաջիների բանակի ներխուժմանը Աֆշինի գլխավորությամբ: Պայքարն էլ ավելի դժվարացավ նրա հաջորդի՝ Յուսուֆի օրոք, մանավանդ այն բանից հետո, երբ խախտվեց երկրի ներքին միասնությունը (908-ին Յուսուֆը Սմբատ Ա-ի դեմ հանելու նպատակով Վասպուրականի իշխան Գագիկ Արծրունուն հռչակեց «Թագավոր Հայոց»): Ի վերջո, Սմբատ Ա-ի կյանքը ողբերգական ավարտ ունեցավ, 914 թվականին, նա ճարահատյալ, հանձնվեց Յուսուֆին: Վերջինս, դրժելով անձի անվտանգության պահպանման իր երդումը, Հայոց արքային շղթայակապ տարավ Դվին ու մահապատժի ենթարկեց: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 10, էջ 451–452):*

[14] *Մանազկերտ – Քաղաք Մեծ Հայքի Տուրուբերան աշխարհի Ապահունիք գավառում, Վանա լճից հյուսիս: Անունը ենթադրաբար կապվում է ուրարտական թագավոր Մենուայի հետ: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 679):*

[15] *Բաղեշ (Բաղլիս) – Տե՛ս Բալաղուրի, ծնթղր. 59:*

[16] *Արճեշի լիճ – Տե՛ս Թիոխի (Վանա) լիճ, Բալաղուրի, ծնթղր. 121:*

[17] *Մանն –Ինչպես նշում է Իսթախրին, Արզարիլի մեկ մաննը հավասար է 1040 դիրհեմի: Եթե նկատի ունենանք, որ մեկ դիրհեմը 3, 2 գրամ է, ուրեմն մեկ մաննը հավասար է 3, 328 կիլոգրամի: (Хинц, Меры и веса, стр. 27):*

[18] *Ռաթլ - Իրանում հաճախ ռաթլը (լիտր) օգտագործվում էր մաննի փոխարեն, թեև դրանք կշռի տարբեր միավորներ են: Օրինակ Իրաքում, մեկ մաննը հավասար էր երկու ռաթլի: (Хинц, Меры и веса, стр. 26):*

[19] *Յունան – Տե՛ս Բալաղուրի, ծնթղր. 166:*

[20] *Խունան – կամ Հունարակերտ, տե՛ս Բալաղուրի, ծնթղր. 128:*

[21] *Կաղանկատույս – Կաղանկատույք, գյուղաքաղաք Մեծ Հայքի Ուտիք աշխարհի Առանձնակ Ուտիք գավառում, Տրտու (Թարթառ) գետի ձախ կողմում, Պարտավ քաղաքից արևմուտք: Եղել է Դվին - Պարտավ ճանապարհի կարևոր կայաններից: (ՀՀՇՏԲ, հ. 2, էջ 907):*

[22] *Հաթերս – Հաթերք-Գոյակ, Բերդ Մեծ Հայքի Արցախ աշխարհում, Խաչեն գավառում: Այժմ Հաթերք գյուղ ԼՂ Մարդակերտի շրջանում: (ՀՀՇՏԲ, հ. 3, էջ 304):*

[23] *Ջավդիս – Ջավդեք: Սա գուցե Սոթքն (Զոդ) է Մեծ Հայքի Սյունիք աշխարհում Սևանա լճի հարավ-արևելքում: (Վ. Տ.-Ղ): (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 651):*

[24] *Գեղարքունի – Գավառ և բնակավայր Մեծ Հայքի Սյունիք աշխարհում, Սևանա լճի արևմտյան ափին:*

## ԻԲՆ ՀԱՈՒԿԱԼ (մահ. 977-ից հետո)

*Աբու լ-Կասիմ Մուհամմադ Իբն Հաուկալը համարվում է աշխարհագրության մեջ ալ-Իսթախրիի գործի շարունակողը, նա ներկայացնում է իր դարաշրջանի այն գործչի կերպարը, որն իր մեջ միախառնում է արկածախնդիր վաճառականին ու գիտնականին:*

*Իբն Հաուկալը ծնվել է Մծբինում (Նիսիբին), Վերին Միջագետքում (Ջազիրա): Հավանաբար նրա մանկությունն անցել է իր ծննդավայրում:*

*Նա, որպես վաճառական, սկսում է ճանապարհորդել սկսած 943-ից, դուրս գալով Բաղդադից ու այցելելով բազմաթիվ երկրներ Հնդկաստանից մինչև Ատլանտյան օվկիանոս: Մասնավորապես այցելում է Հյուսիսային Աֆրիկա, Իսպանիա (Անդալուս) և Սահարայի հարավային գոտին (947–951), ապա Եգիպտոս, Հայաստան և Ատրպատական (955), Ջազիրա, Իրաք, Խուզիստան և Ֆարս (961–969), Խորեզմ և Տրանսօքսիանա (969) և վերջապես Սիկիլիա (973), որից հետո արդեն նրա անցած ուղին հայտնի չէ:*

*Ըստ իր աշխատանքի, նա շատ լավ ծանոթ է հատկապես Իսպանիային (Անդալուս) ու Արևմուտքի երկրներին: 951-ին երկարատև ճանապարհորդությունից վերադառնալով Բաղդադ, Իբն Հաուկալը հանդիպում է իր ավագ ժամանակակից ալ-Իսթախրիին, որը նրան խնդրում է խմբագրել ու ամբողջացնել իր աշխատանքը: Իբն Հաուկալը համաձայնվում է, բայց ի վերջո, որոշում է գրել իր ինքնուրույն աշխատանքը հենվելով իր նախորդի երկի վրա, ավելացնելով իր անձնական տեղեկություններն ու անվանելով այն արդեն ավանդական դարձած՝ «Քիտաբ ալ-Մասալիք ուա լ-Մամալիք» կամ «Սուրատ ալ-Արդ» (Երկրի պատկերը): Այս երկը հավանաբար գրվել է 967-ին և նվիրված է նշանավոր Համդանի ամիր Սայֆ ալ-Դաուլային, իսկ երկրորդ խմբագրությամբ շուրջ 977-ին: Եվ վերջապես աշխատանքի վերջնական տարբերակը ստեղծվել է հավանաբար 988 թվականին:*

*Դե Գուլեն Իբն Հաուկալի բնագիրը հրատարակել էր ըստ Լեյդենի և Օքսֆորդի ձեռագրերի: Առաջին աշխարհամարտից հետո հոլանդացի արաբագետ Յ. Կրամերսը Կոստանդնուպոլսում հայտնաբերեց մի նոր խմբագրություն, որը տարբերվում է նախորդներից: Իր նոր հրատարակության մեջ Կրամերսը Դե Գուլեի հրատարակածի վրա ավելացրել է նորահայտ ձեռագրի և Փարիզի ձեռագրի (պարունա-*

*կում է Հավնլումներ 1139-1184 թթ.՝ Հավնլումները քառակուսի փակագծերի մեջ:*

Ներկա թարգմանությունը կատարված է Հետևյալ Հրատարակությունից. Opus Geographicum auctore Ibn Haukal, ed. J. H. Kramers, Bibliotheca Geographorum Arabicorum, v. II, Leiden, 1967.

***(R. Blachère et H. Darmaun, Extraits des Principaux Géographes Arabes du Moyen Age, Paris, 1957, p. 135-136,*** Крачковский, IV, стр. 199. *Ibn Hawkal, A. Miquel, EOI, CD-ROM, (III: 786b)).*

*Տե՛ս նաև*

- *Opus Geographicum auctore Ibn Haukal, J. H. Kramers, Lugduni Batavorum, 1938.*
- Bibliotheca Geographorum Arabicorum, M. J. de Goeje, v. II, Leiden, *1878.*

## ԻԲՆ ՀԱՈՒԿԱԼ

## ԵՐԿՐԻ ՊԱՏԿԵՐԸ
## (ՍՈՒՐԱՏ ԱԼ-ԱՐԴ)

*էջ 5*

*Ես համառոտ կերպով շարադրել եմ երկարությունները և տվել եմ քաղաքների համապատասխան նկարագրությունը, նշելով անհրաժեշտ տվյալները: Երկրի ամբողջության համար, որը շրջապատված է անանցանելի Օվկիանոս (մուհիթ) ծովով. պատրաստել եմ մի քարտեզ, որը մասամբ նման է Կավադիանի քարտեզին, բայց որից շատ կետերում տարբերվում է: Ես հստակ կերպով տվել եմ ամեն մի նահանգի տեղանունը, ցույց տալով միացման գծերը մասերի միջև, ցույց եմ տվել ամեն մի նահանգի տարածությունը, իր արտաքին ձևով, թե նրա երկարությունը, լայնությունը, ձևերը, կլորությունը, քառանկյուն կամ եռանկյուն լինելը և այլ երկրաչափական կողմերը, որը նրա ձևը ներկայացնում է: Ճշտել եմ նահանգները, ամեն մի քաղաքի տեղադրումը, նշելով իր մերձավոր քաղաքի հետ ունեցած հարաբերությունը, նշելով նրա դիրքը հիմնական կետի նկատմամբ, լինի հյուսիս թե հարավ, կամ արևելք թե արևմուտք:*

*Ուստի ով այս քարտեզին դիմի, հստակ գաղափար կկազմի նրա տեղանքի մասին, ամեն մի շրջանի դիրքի, տեղագրության, ինչպես նաև այն մանրակրկիտ աշխատանքի մասին, որ ես կատարել եմ նրա դիրքի և արտաքին ձևի վերաբերյալ, պրպտումներս նրա պայմանների մասին և իմ տեղեկությունները, որ հավաքել եմ: Գուցե որոշ մարդիկ կասկած հայտնեն այն կարծիքի նկատմամբ, որ ես հայտնել եմ երկրի տարածության, մեծության և դիրքի մասին: Գուցե կարծվի թե այս գործը չի կարելի համեմատել Ջայհանիի[1] երկի հետ և չի համապատասխանում Իբն Խորդադբեհի տվյալներին: Մնում է ընթերցողին, Ալլահն առաջնորդի նրան, որ ուշադիր զննի այն փաստերը, որոնք տարակուսանք են առաջացնում և մտածի այն մարդու նման, որ ճշմարտությունն է փնտրում, ազատվելով պատմողների չափազանցություններից և ճանապարհորդների ստերից, որոնք չեն ձգտում ճշմարտության հասնել: Թող ընթերցողները լավ իմանան, որ այն պատճառները, որոնք ինձ մղեցին այս գիրքը գրել մի բարեխիղճ աշխատանք կատարելու հաճույքն է, ամեն մի երկրի նկարագրությունը հաջողությամբ գլուխ բերելու փափագն է, ինչպես նաև մտահոգու-*

թյունը մտավորական մարդկանց մոտ լավ ընդունելություն գտնելու. նրանց ամեն մի հավաքույթի ժամանակ:

## ԵՐԿՐԻ ԿԵՐՊԱՐԱՆՔԸ
### Աբու-լ-Կասիմ իբն Հաուկալ Մծբնեցու (Նասիբի)

Նրա ձևերի նկարագրությունը, տարածությունը. երկարությունն ու լայնությունը, երկրների նահանգները (իկլիմները)*, տարբերությունը բնակելի և անբնակ երկրների միջև. վերցնելով իսլամական բոլոր երկրները. քաղաքների նկարագրությունը. բաժանելով ընդհանուր երևույթները, որոնք նրանց իրարից տարբերակում են:

էջ 5-9

2. Իսլամի երկիրը բաժանել եմ ըստ նահանգների (իկլիմների), երկրամասերի ու գավառների: Սկսեցի Արաբաց երկրով և այն մեկ նահանգ համարեցի, քանզի նրանում է Քաաբան և քաղաքամայր Մեքքան: Դա ինձ համար բոլոր երկրների (իկլիմների) կենտրոնն է:

Արաբաց երկրից հետո, ցույց տալով նրանում եղած լեռները, ավազները, ճանապարհները և Պարսից ծովը (ծոցը) թափվող գետերը, մեջբերեցի Պարսից ծովը, քանզի նա շատ երկրների հետ կապված է: Ես պատկերեցի նրա ոլորանը. Պարսից ծովը Մասկաթ կղզուց հետո թեքվում է դեպի արևմուտք Մեքքայի և Կարմիր (Կուլզում) ծովի կողմը, Օմանից հյուսիս փարսախ հեռավորության վրա և այդ վայրը կոչվում է Ռաս ալ-Ջումջումա (Գանգի հրվանդան)[2]:

Ապա հիշեցի Մաղրիբը և այն նկարեցի երկու պատկերով. նախ տվեցի Եգիպտոսի հողից մինչև Մահդիյա ու Կայրուան տարածությունը և նրա անապատում եղած քաղաքները, թեկուզ և թվով քիչ են, ապա տվեցի քարտեսի մեկ այլ մասը Կայրուանից ու Մահդիյայից մինչև Տանժեր (Թանջա) և Ազիլա: Նրա ծովի ափին նկարեցի քաղաքները, ամեն կողմ ընթացող ճանապարհները, դեպի արևմուտք և դեպի արևելք:

Հետո նկարեցի Եգիպտոսը (Միսր), նույնպես երկու պատկերով, Մաղրիբի նման: Երկար աշխատելով հիշեցի նրա քաղաքները և նրանց դիրքը հոսող ջրերի նկատմամբ և նրանց հեռավորությունը նրանցից, ըստ քարտեզի: Գծագրեցի լեռներն ու ջրերն իրենց ծովածոցերով ու լեռնանցքներով և իրար հետ միացումներով ու անջա-

* Իկլիմ (կլիմա) բառը արաբ մատենագիրների մոտ տարբեր իմաստներ ունի: Ըստ համատեքստի այն կարող է նշանակել երկրների խումբ, երկրամաս, գոտի, կլիմայական գոտի, նահանգ և այլն:

*տումներով, նրանց թափվելը դեպի ծով, այնպես ինչպես Ֆայյումի ջուրը թափվում է Ակնա լիճը և Տանհամատը:*

*Նկարեցի Ասորիքը (Շամ) և նրա զինվորական գոտիները (ջունդեր), լեռները, ջրերը՝ գետային ու ծովային, ծովափնյա քաղաքները, Տիբերիական (Թաբարիա) լիճը, Զուղար լիճը (Մեռյալ ծով) և Իսրայելի որդիների անապատը ու նրա դիրքը Ասորիքի կողմից:*

*Ապա Ռումի (Միջերկրական) ծովը, նրա հատկանիշներն ու ձևերը, նրա արևելքում հոռոմներին պատկանող քաղաքները և Մաղրիբ նահանգի գավառները, Կալաբրիայում[3] (Կալլաուրիա) եղած հոռոմների քաղաքները, Լոմբարդիան[4] (Անքուբարդա) և Զանկան (Նեղ ուղին), որը կոչվում է Պելոպոնես (Բալբունաս)[5]: Ռումի ծովից դուրս եկած նեղուցը, որը շրջապատում է Կոստանդնուպոլիսը (Կուսթանթինիա), Ռումի երկրի ջրերը, մեծ գետերը և քաղաքները: Անդալուսի քարտեզը մտցրեցի Մաղրիբի պատկերների մեջ, ուստի կրկին չեմ հիշելու: Այս ծովի մեջ նկարել եմ բնակեցված նշանավոր կղզիները, այնքան ինչքան անհրաժեշտ է հիշատակել, եթե չեն ու նշանավոր են:*

*Հետո հիշեցի նշանավոր Ջազիրան (Վերին Միջագետքը), որը հայտնի է Դիար Ռաբիա, Դիար Մուդար և Դիար Բաքր անունով, ինչպես նաև Տիգրիս (Դիջլա) ու Եփրատ (ալ-Ֆուրատ) գետերը, որոնք նրա սահմաններն են կազմում, նրա լեռները, բոլոր ճանապարհները և վիճակը:*

*Դրանից հետո բերել եմ Իրաքի քարտեզը (սուրատ), նրա ջրերը, ճահիճները (բաթայիհ), ջրերի ծովը թափվելը և թե ինչպես ջրանցքները ճյուղավորվելով նրանց (գետերի) մեջ են թափվում:*

*Հիշել եմ Խուզիստանի սահմանները, գետերը և ինչ որ պահանջում է նրա քարտեզը և նրա վիճակը: Նրանում տեղադրեցի նաև Ֆարսի քարտեզը, որ նկարագրեմ բոլոր գետերը, լճերը, քաղաքների դիրքը և ծովի կերպարանքը մերձափնյա քաղաքներով:*

*Հաջորդը Քիրմանի քարտեզն է, նրա ցամաքային մասը, ծովը, տափաստանները, լեռներն ու ճանապարհները:*

*Նկարել եմ Սինդը[6], նրա քաղաքները, ճանապարհները, ուղիները, նրա ծովը և այն քաղաքները, որոնք նրա ափին են: Նշանակել եմ Միհրան գետը[7], թե ինչպես է թափվում Մուլտանի[8] մոտ և նրան հարակից Հնդկաստանի (Հինդ) և մահմեդականների նահանգները:*

*Ապա դրել եմ Ատրպատականի, [Հայաստանի ու Առանի] քարտեզը, նշանակելով նրանում եղած լեռները, ճանապարհները, քաղցր գետերը, ինչպես Արաքսը (ալ-Ռաս) և Կուրը: Նկարել եմ նաև Խլաթի (Խիլաթ) լիճը և Կապուտան (Քաբուդան) լիճը, որոնք չեն միացած որևէ ծովի և ճշտել եմ Կովկաս (Կաբկ) լեռը:*

*Տվել եմ Ջիբալի քարտեզը՝ նահանգներով, քաղաքների վայրերով, ցույց տալով թե ինչպես նրանք փոխվում են մերձենալով*

Խորասանի ու Ֆարսի անապատին:
Ապա գնտնդել եմ Ջիլի, Դայլամի ու Թաբարիստանի քարտեզը, ինչպես նաև Հարակից Խաղարաց ծովը և մի քանի ճանապարհներ եմ Հիշել, քանզի նրա մասին լավատեղյակ չեմ:
Հաջորդը Թաբարիստանի (Կասպից) լճի քարտեզն է, իր երկու կղզիներով և նրանում թափվող գետերով-ու շրջակա լեռներով, և թե ինչքանն է պատկանում իսլամին և ինչքանն՝ ուրիշներին:
Ցույց եմ տվել Ֆարսի ու Խորասանի միջև գտնվող անապատը և դեպի շրջակա և Հարակից երկրներն ընթացող ճանապարՀները:
Նրան Հաջորդում է Սիջիստանը[9], իր Հարևան Ղուր երկրով, լեռներով ու ԶարաՀ լճեր[10] Հոսող ջրերով:
Տվել եմ Խորասանի պատկերը և նրա կազմում եղած Թուխայրիստանը[11], Բամիանի լեռները, Թուսը և ԿուՀիստանը, իր բոլոր Հոսող ջրերով, նշանավոր լեռներով, ավաղներով ու Հայտնի ճանապարՀներով:
Վերջապես պատկերել եմ ՋայՀուն գետը և նրանից այն կողմ գտնվող Բուխարայի, Սամարկանդի, Ուշրուսանայի, Ասբիջաբի, Շաշի ու Խորեզմի նաՀանգները, ինչպես նաև նրանց ջրերը և ուղիներն ու ճանապարՀները:
3. Եվ աՀա այս թերթի վրա կա ամբողջ Երկրի քարտեզը.
(Երկրի քարտեզի վրա եղած անուններն ու գրվածքները)
Քարտեզի վերևի կողմը գրված է՝ Հարավ, իսկ նրա տակը՝ աջ ու ձախ՝ Ամբողջ երկրի քարտեզը: Ներքևում գրված է՝ Հյուսիս, աջ կողմում՝ Մաղրիբ (արևմուտք), իսկ ձախ կողմում՝ Մաշրիկ (արևելք):
Երկիրը երկու մասի է բաժանված՝ Հարավային ցամաքամասի և Հյուսիսային ցամաքամասի: Հարավային ցամաքամասում նկարված է Նեղոսը (Նիլ), Հարավում՝ Նուբիա (Նուբա), Դունկուլա[12] և Ուլուա, իսկ Հյուսիսում՝ Վերին Սաիդ[13], ապա՝ Եգիպտոսի նաՀանգները: Այս ցամաքամասի ափին, Նեղոսի գետաբերանի աջ կողմում՝ Մաղրիբ երկիրը: Ապա նույն ցամաքամասի ներսում նշված է՝ Բարկան[14] և նրա նաՀանգները, ապա բարձրանալով դեպի աջ՝ Սուրսի և Աջդաբիայի նաՀանգները, Տրիպոլիսի (Թարաբուլուս)[15] նաՀանգը և գավառները, Իֆրիկիա նաՀանգը[16] և նրա գավառները: Ապա ցամաքամասի անկյունում, Օվկիանոս ծովի ափին կա՝ Տանժեր (Թանջա) քաղաքը և նրա գավառները: Հետո ցամաքի երկարությամբ գրված է՝ Աուդաղաստ՝ մաՀմեդականներին պատկանող, Գանան (Ղանա) անՀավատներին պատկանող, Քուղան անՀավատներին պատկանող, Սաման՝ անՀավատներին պատկանող, Ղարիուն՝ անՀավատներին պատկանող և Քազմր՝ անՀավատներին պատկանող: Այս անունների ետևում գրված է՝ Օվկիանոս ծովի վրա գտնվող թագավորություններ: Իսկ ափին՝ Հարավի անապատներ (բարարի): Ցամաքամասի այն

անկյունում սկսում է՝ Պարսից ծովը, որի ափին՝ Սևամորթների (Զինջ) երկիրը, ապա՝ Տափաստան՝ սևամորթների և Եթովպիայի (Հաբաշա) միջև, Եթովպիա երկիրը, որի և Նեղոսի միջև՝ Բաջայի տափաստանը և անապատները: Նեղոսի այն կողմում՝ Օազիսներն ու նրանց գավառները: Ետևում կարդացվում է՝ Ջալուտի (Գողիաթ) որդու երկիրը, ապա՝ Սիջիլմասայի, Սուսի և Աղմաթի նահանգները:

Քարտեզի աջ կողմում, հյուսիսային ցամաքամասից դուրս եկած մի կտոր կոչվում է՝ Կոստանդնուպոլսի նեղուց, այս տեղում կարդացվում է՝ Ռումի երկիր, Թեև երկիր բառի առաջին մասն ընկած է ցամաքի այն կողմում: Ծոցի փոքր մասի ափի մեջտեղում կա՝ Կոստանդնուպոլիսը, որի ափի երկայնքով հետևում է՝ Մակեդոնիա (Մաջդունիա), ապա՝ Քասմիլի, Պելոպոնես (Բալբունաս), Բադրանտ, Վենետիկի ծոցը (ջուն ալ-Բանադիկ), Օտրանտ (Ադրանտ), Կալաբրիա (Կալյաուրիա), Լոմբարդիա (Անքուբարդա) նահանգը, Ֆրանկների երկիրը և Գալիցիա (Ջալիկիա), իսկ անկյունում՝ Անդալուս և Օվկիանոս ծովի ներքևի կողմը՝ Հյուսիսի (բևեռի) անապատներ:

Այս հյուսիս բառը ծոցի ձախ կողմում է, հյուսիսային ցամաքամասի այլ մասում: Հյուսիս բառի ետևում կարդացվում է՝ Գոգ (Յաջուջ) ու Մագոգ (Մաջուջ)[17]: Գեպի վեր՝ Սլավոններ[18] (Սակալիբա), ցամաքամասի փոքր հատվածում: Գրանից վեր արևելյան կողմում՝ բուլղարներ (Վոլգայի)[19], ռուսներ: Ծոցի վրա կա՝ Տրապիզոն (Աթրաբուզանդա): Բուլղարների ու ռուսների կողքին գտնվող գետի վերևից կան՝ Բաշջիրդ[20], Բուրթաս[21], Խազարներ[22], պածինակներ[23] (բաջանաքիյա, պեչենեգներ), կրկին բուլղարներ (Դանուբի)[24], ապա՝ Սարիր երկիրը:

Դրանից վեր Հայաստան երկիրն է՝ Ներքին և Արտաքին, իսկ ձախ կողմը՝ Ատրպատական ու Առան (ալ-Ռան): Հայաստանի աջից՝ Տիգրիս գետը և Եփրատը, որոնց միջև՝ Ջազիրա (կղզի), իսկ Եփրատի ու [Միջերկրական] ծովի միջև կարդացվում է՝ Ասորիք (Շամ): Երկու գետերի գետաբերանի մոտ գրված է՝ Իրաք, իսկ դեպի վեր՝ Արաբաց երկիր:

Ապա Իրաքից ձախ ընկած ծովի վրա կարդացվում է Խուզիստան, Ֆարս, Քիրման, Սինդ, իսկ ետևում՝ Ջիբալ, Ֆարսի անապատ, Սիջիստան և ետևում՝ Դայլամ, Թաբարիստան, Խորեզմ, Ղուզզիյա, Խորասան: Խորասանի կողքին՝ Ջայհուն գետը (Ամու Դարիա), որի ետևում է Անդրգետյան (Մա վարա ան-նահր կամ Մավերաննահր) երկիրը: Ապա կարդացվում է՝ Չինաստան (Սին), Հնդկաստան (Հինդ), ուր կա Միհրան գետը: Դրանից հետո Խարլուխիյա[25], Տիբեթ (Տուբբատ), իսկ Օվկիանոս ծովի վրա՝ Խիրխիզ, Տաղուզղուզ և Չինաց երկիր:

4. Ահա ամբողջ երկիրը բնակելի (չեն) և անբնակ մասերով: Նա բաժանված է թագավորությունների (պետությունների): Երկրի թա-

*գավորությունների հենարանները չորսն են՝ ամենախիտ բնակչությունը, ամենալավ քաղաքական կարգերը. ամենաշեն ու բարեկարգ վիճակը և ամենից ավելի հասույթ (հարկեր) բերելը: Այդպիսին է Իրանշահրը, որի կենտրոնն է Բաբելոնիան: Դա Պարսից թագավորությունն է:*

*Այս պետության սահմանները պարսիկների [թագավորների] օրոք հայտնի են, սակայն երբ երևան եկավ իսլամը, ամեն մի թագավորությունից մի մաս նվաճեց: Ռումից վերցրեց Ասորիքը, Եգիպտոսը, Մաղրիբը և Անդալուսը, Չինաստանի թագավորությունից՝ Մավերաննահրը և այն միացրեց իր ընդարձակ թագավորությանը:*

*Ռումի թագավորությունը ձգվում է մինչև սլավոնների սահմանները և մինչև հարևան ռուսները, Սաբիրի երկիրը, ալանները (ալ-Լան), հայերը (ալ-Արման) և բոլոր նրանց, ովքեր քրիստոնեություն են դավանում:*

*Չինաց թագավորության մեջ մտնում են թուրքերի երկիրը ու Տիբեթի մի մասը և նրանք, ովքեր կռապաշտության կրոնն են դավանում: Իսկ Հնդկաց երկրի մեջ մտնում են Սինդն ու Կաշմիրը և Տիբեթից մի մաս և նրանք, ովքեր նրանց կրոնն են դավանում:*

*Ես չեմ հիշում Սևերի (Սուդան) երկիրը*[26] *Արևմուտքում (Մաղրիբ) և Բաջան ու զինջերի (սևամորթ) երկիրը ու նրանց միջև գտնվող տարբեր ազգերին: Քանզի թագավորությունների կարգերի հիմքը կազմում են կրոնները, դպրությունը, իմաստությունն ու չեն վայրերի ամրացումը ուժեղ իշխանությամբ, իսկ վերջիններիս մոտ այդ հատկանիշները պակասում են և դրանից ոչինչ չունեն, այնպես որ նրանց թագավորությունները արժանի չեն առանձին հիշվելու, ինչպես մյուս թագավորությունները: Սակայն սևերից ոմանք, որ վերահիշյալ հայտնի թագավորություններին մերձավոր են, ունեն կրոններ, սովորություններ ու իմաստություն և այդ երկրներին բնակությամբ մերձավոր են, ինչպես Նուբիան և Եթովպիան (Հաբաշա), որոնք քրիստոնյա են և հոռոմների ուսմունքին են հետևում: Իսլամի երևան գալուց առաջ նրանք հարակից էին Ռումի (Բյուզանդիայի) թագավորությանը, լինելով նրան հարևան, քանզի Նուբիան Եգիպտոսին սահմանակից է, իսկ Եթովպիան Կարմիր (Կուլզում) ծովի վրա է և նրանց ու Եգիպտոսի միջև կան բնակելի անապատներ, ուր ոսկու հանքեր կան և Եգիպտոսի ու Ասորիքի հետ հարաբերության մեջ են Կարմիր ծովի ճանապարհով:*

*Ահա սրանք էին ծանոթ թագավորությունները (երկրները), երբ իսլամի թագավորությունը առաջացավ իր մոտ հավաքելով այդ թագավորությունների արժեքավոր կողմերը, ձեռք բերելով պատիվ ու հզորություն:*

*Երկիրը բաժանվում է հարավային ու հյուսիսային մասերի: Եվ եթե*

սկսենք արևելքից՝ այն ծոցից, որը Չինաց երկրի Օվկիանոս ծովից է ճագում, մինչև այն Օվկիանոս ծովից դուրս եկող ծոցը (խալիջ), որը Մագրիբի երկրների, Անդալուսի և Տանժերի միջև է, ապա երկիրը կարելի է երկու մասի բաժանել և բաժանման գիծը սկսելով Չինաց ծովից ճեղքում է Հնդկաց երկիրը և իսլամի երկրի մեջտեղով անցնում է Եգիպտոս և Հասնում Մաղրիբ:

Ինչ վերաբերում է այս երկու մասերից հյուսիսայինին, ապա նրա բնակչությունը սպիտակ է, և ինչքան դեպի հյուսիս Հեռանան, առավել ես սպիտակ են դառնում, ու դրանք ցուրտ երկրներ են:

Իսկ այն երկու մասերից Հարավայինը, ապա նրա բնակիչները սև են և ինչքան Հեռանան դեպի Հարավ, առավել սև են դառնում:

Այդ երկրների (թագավորությունների) մեջ ամենաչափավորները գտնվում են այն ուղիղ գծի վրա և նրա մերձակայքում:

ԼՋ 10

6. Ամեն մի նահանգը Հիշատակելու եմ ըստ իր սահմանակցի Հետ ունեցած մերձավորության ու դիրքի: Իսլամի թագավորության սահմաններն են՝ արևելքում Հնդկաստանը և Պարսից ծովը, արևմուտքում՝ Սուդանի (սևամորթների) թագավորությունը, որի ժողովուրդն ապրում է Օվկիանոս ծովի վրա Աուդաղաստի տափաստաններին և անապատներին կից Աուլիլի կողմը: Նրա հյուսիսում գտնվում է Ռումի երկիրը և նրան Հարակից Հայոց [երկիրը], Ալանաց [երկիրը], Առանը, Սարիրը, խազարները, ռուսները, բուլղարները, սլավոնները և թուրքերի մի խումբ: Հյուսիսում են նաև Չինաց թագավորության մի մասը և սահմանակից թուրքերը, իսկ Հարավում Պարսից ծովն է:

Ռումի թագավորության սահմանը արևելքում իսլամի երկիրն է, արևմուտքում ու Հարավում՝ Օվկիանոս ծովը, հյուսիսում՝ Չինաստանի մի մասը, քանզի ես սլավոններին, որոնք թուրքերի ու Ռումի մեջ են ապրում, ինչպես նաև Ռումին Հարող երկրները, Ռումին եմ կցում:

Չինաց թագավորության սահմանը հյուսիսում և արևելքում Օվկիանոս ծովն է, Հարավում՝ Իսլամի երկիրը և Հնդկաստանը, արևմուտքում նույնպես Օվկիանոս ծովն է, քանզի Գոգ ու Մագոգը և նմանները, որոնք Օվկիանոս ծովի ափին են ապրում, Չինաց թագավորության մեջ են:

Հնդկաց երկիրն արևելքում ունի Պարսից ծովը, արևմուտքում ու Հարավում՝ Խորասանը, հյուսիսում՝ Չինաստանը: Ահա այս են այն թագավորությունների սահմանները, որոնց Հիշեցի:

Իսկ ծովերի ամենանշանավորները և ամենամեծերը երկուսն են՝ Պարսից ծովը և Ռումի ծովը, որոնք իրար Հանդիպող ծովեր են և

բխում են Օվկիանոս ծովից: Նրանցից երկարությամբ ու լայնությամբ ամենաընդարձակը Պարսից ծովն[27] է: Եթե ցամաքից մոտենանք Պարսից ծովին, ապա Չինաստանի սահմանից մինչև Կարմիր (Կուլզում) ծովը, եթե ուղիղ գծով կտրես, ապա այդ հեռավորությունը երկու հարյուր օթևան կլինի:

էջ 11–12

7. Ռումի ծովը (Միջերկրական) սկսվում է Օվկիանոս ծովից՝ այն եզրուցից, որ Մաղրիբի ու Անդալուսի միջև կա[28] և երկարում է մինչև հասնում սահմանային այն ամրությունները, որոնք Ասորիքի անունով են հիշվում: Այս ամբողջ երկարությունը անցնում են չորս ամսում: Նա ավելի լավ վիճակում է և նավարկելի, քան Պարսից ծովը, քանզի եթե վերոհիշյալ եզրուցից սկսես նավարկել, ապա միևնույն քամին քեզ ծովի մեծ մասով կտանի: Կարմիր ծովի, որը Պարսից ծովի մի լեզուն (ճյուղն) է և Ռումի ծովի միջև Ֆարամայի ուղղությամբ հեռավորությունը երեք օթևան է: Ռումի ծովը Ֆարամայից հետո ավելի քան քսան օթևան է երկարում, որի մասին ասված է Մաղրիբի բաժնում և կարիք չկա կրկնելու: Եգիպտոսից մինչև Մաղրիբի ծայրը հարյուր ութսուն օթևան է: Այսպիսով, երկրի հեռավոր արևմուտքից մինչև հեռավոր արևելքը (Չինաստան), մոտավորապես չորս հարյուր օթևան է (մարհալա):

էջ 13

9. Խազարաց (Կասպից) ծովը ոչինչ չի ստանում այդ երկու ծովերից: Այս ծովի մասին շատ բաներ են պատմել մեծ հեղինակները: Կարդացել եմ մի քանի աշխարհագրական մատյաններում, որ նա իբր Ռումի ծովից ջուր է ստանում ըստ Պտղոմեոսի վկայության: Սակայն քավ լիցի, որ այդպիսի բան ասած լինի Պտղոմեոսը, անհնարին է, որ նա անհավատալի բան պատմեր:

Խազարաց ծովը ցածր վայրում է և սնվում է քաղցր ջրով: Նրա մեջ թափվող գետերն են՝ Իթիլը (Ատուլ)[29], որը նրա ամենամեծ սնուցողն է. դա ռուսաց գետն է: Ապա թափվում են Կուր ու Արաքս, գետերը, ինչպես նաև Դեղանի (Ջիլ), Դելմիկների (Դայլամ), Թաբարիստանի և Ղուզգիյայի ջրերը, որոնք բոլորը քաղցր ջրեր են:

Մեր օրերում ու ժամանակներում Իսլամի թագավորությունը (երկիրը) իր երկարությամբ ձգվում է Ֆարղանայի սահմանից կտրելով Խորասանը, Ջիբալը, Իրաքը և Արաբաց երկիրը, մինչև Եմենի ափերը և դա հինգ ամսվա [ճանապարհ] է: Իսկ լայնությամբ Ռումի (Բյու-

*ղանդիայի) երկրից գալիս կտրում է Ասորիքը, Ջազիրան, Իրաքը, Ֆարսը, Քիրմանը մինչև  Մանսուրայի հողը Պարսից ծովի (ծոցի) ափին և դա չորս ամսվա [ճանապարհ] է:*

*Իսլամի երկրի (թագավորության) երկարությունը հիշելիս բաց թողեցի Մաղրիբի սահմանները մինչև Անդալուս, որը նման է զգեստի մեջ թեզանիքի: Մաղրիբից արևելք ու նրանից արևմուտք չկա իսլամ, քանզի եթե անցնես Եգիպտոսը գնալով դեպի Մաղրիբ, ապա Մաղրիբի հարավում Սուդան երկիրն է, իսկ նրանից հյուսիս Ռումի (Միջերկրական) ծովը և ապա Ռումի երկիրը: Եվ եթե հարմար լիներ իսլամի երկիրը հաշվել Ֆարղանայից մինչև Մաղրիբ և Անդալուս, ապա դա կլիներ երեք հարյուր օթևան (մարհալա) ճանապարհ:*

## ԱՐԱՐԱԾ ԵՐԿԻՐԸ

[........]

*էջ 25*

*9. Բահրայնի քաղաքներն են Հաջարը, Ահսան, Կաթիֆը, Ակիրը, Բիշան, Խարջը և Ավալը: Սա մի կղզու վրա է, որը պատկանել է Աբու Սաիդ ալ-Հասան իբն Բահրամին և նրա որդուն՝ Սուլայմանին, որոնք չատ բարձր հարկեր (դարիբա) են գանձում այստեղ խարիսխ նետած նավերից: Մինչև այսօր այդ իրավունքը պատկանում է նրա հետնորդներին ու ժառանգորդներին, որոնք այժմ չորս հարյուր հոգի են՝ կանայք ու երեխաներ: Բահրայնը տարբեր հասույթի աղբյուրներ ունի՝ տասանորդներ, կողմնակի հարկեր, հողային հարկեր, մաքսեր, տարանցիկ առևտրի տուրքեր այն ամենից ինչ գալիս է Բասրայի ու Քուֆայի տափաստաններից ու Մեքքայի ճանապարհից:*

*էջ 31 - 32*

*17. Ալ-Ջարը Մադինայի նավահանգիստն է, նրանից երեք օթևան հեռավորության վրա [Կարմիր] ծովի ափին, սակայն ավելի փոքր է քան Ջուդդան (Ջիդդա): Ջուդդան Մեքքայի բնակիչների նավահանգիստն է, նրանից երկու օթևան հեռավորության վրա, [Կարմիր] ծովի ափին: Նախկինում Ջուդդան չեն է եղել, աշխույժ առևտրով, փարթամությամբ: Հիջազում Մեքքայից հետո չի եղել մի քաղաք, որն այսքան հարստություն ու ապրանքներ ունենար: Այս քաղաքի առևտուրը պարսիկների միջոցով էր կատարվում, բայց այն բանից հետո, երբ Իբն Ջաաֆար ալ-Հասանին այստեղ հաստատվեց, քաղաքի մեծամեծները ցրվեցին և նրա դրությունը վատացավ:*

էջ 36–37

27. Ամբողջ Եմենում չկա ավելի մեծ և հանգստավետ քաղաք, քան Սանաան է: Քաղաքը գտնվում է հասարակածի վրա: Չափավոր կլիմա ունեցող քաղաք է, այնպես որ մարդը, ձմեռ կամ ամառ, տեղից տեղ փոխադրվելու կարիք չունի: Նրանում գիշերվա ու ցերեկվա ժամերը հավասար են, քանզի արևի առանցքը նրանում չափավոր է: Բոլորությունը տարածված է արևի թույլ լինելու և մարդկանց մարմինների վրա թույլ ազդեցություն ունենալու պատճառով:

Այստեղ էր հին ժամանակներում Եմենի թագավորների նստավայրը: Կա՛ մի հսկայական շինության ավերակները և դա մի մեծ բլուր է, որը կոչվում է Ղամդան: Սա Եմենի թագավորների ապարանքն է եղել և Եմենում նրանից ավելի բարձր շենք չկա, թեև ավերակ վիճակում է:

էջ 37

30. Ադենը (Աղան) փոքր քաղաք է, սակայն հայտնի իր ծովային նավահանգստով, ուր իջնում են ծովում նավարկողները: Եմենում կան ավելի մեծ քաղաքներ, սակայն նրա հռչակը չունեն:

էջ 38

32. Օմանը (Ուման) մի երկիր է անկախ գավառներով, ընդարձակ: Առատ արմավենիներ ունի և տաք երկրների պտուղներ, ինչպես բանանը, նուռը և լոտուսը (նաբկ) ու այլ նման բաներ: Նրա մայրաքաղաքն է Սուհարը, որը ծովի ափին է: Վաճառականներն ու ապրանքներն այնտեղ անհամար են իրենց շատությամբ: Սա Օմանի ամենաշեն ու ամենահարուստ քաղաքն է: Ամբողջ Պարսից ծոցի իսլամական երկրներում չկա ավելի շեն ու հարուստ քաղաք, քան Սուհարը: Նրան ենթակա են շատ քաղաքներ և ասվում է, որ նրա շրջակա գավառները երեք հարյուր փարսախի վրա են տարածվում:

էջ 39

33. Եմենի Սաբա երկրամասում Հիմյարի ցեղերն են տարածված, ինչպես նաև Հադրամաուտում: Համդան, Աշաար, Քինդա և Խաուլան ցեղերի տիրույթները տարածված են Եմենի տարբեր կողմերում և իրարից բաժանված են բերդերով ու ցանքատարածություններով:

## ՊԱՐՍԻՑ ԾՈՎԸ (ԾՈՑԸ)

[.........]

*էջ 53*

*Իսկ Կուլզումը (Սուեզ, Կլիզմա) քաղաք է ծովի ափին մի հողի վրա, ուր ծովը վերջանում է: Նա տեղադրված է ծովի մի կորության վրա, լեզվակի վերջում: Նրանում չկան մշակելի հողեր, ծառեր ու ջրի աղբյուրներ: Ջուրը նրանց մոտ բերվում է հեռավոր ջրհորներից ու ջրի հեռավոր վայրերից: Քաղաքը լրիվ չեն է և դա նավահանգիստն է Եգիպտոսի ու Ասորիքի և նրա վրայով են տարվում Ասորիքի ու Եգիպտոսի ապրանքները դեպի Հիջազ, Եմեն ու նրա ափերը: Նրա (Կուլզումի) ու Եգիպտոսի մայրաքաղաքի (Կահիրե) միջև ճանապարհը երկու օթևան (մարհալա) է:*

*Ցամաքի վրա ընթանալով ոչ մի գյուղի կամ քաղաքի չենք հանդիպի, բացի այնպիսի վայրերից, ուր մարդիկ ծովում ձկնորսություն են անում և կան արմավենիներ: Ապա ճանապարհը գնում հասնում է Տարան ու Ջաբիլան և [Սինայի] անապատի [Թուր] լեռան երկարությամբ հասնում ենք Այլատ:*

*Այլատը մի փոքրիկ չեն քաղաք է, քիչ հողամշակությամբ և այնտեղ ապրում են հրեաներ, որոնց Աստված արգելեց շաբաթ օրը ձուկ որսալ:*

*էջ 54*

*Ապա [Պարսից ծոցի ափը] հասնում է Սիրաֆ, որը Ֆարսի մեծագույն նավահանգիստն է և կարևոր քաղաք է: Նրա շենքերը կառուցված են հնդկական կաղնու (սաջ) փայտից և հասնում ու կպչում են դեպի ծովը նայող մի լեռան: Լավ ջուր չունի, կամ մշակելի հողեր կամ անասուններ, սակայն Ֆարսի ամենահարուստ քաղաքն է:*

## ՄԱՂՐԻԲԸ

*էջ 71*

*Մահդիյան փոքր քաղաք է, որը վերջերս կառուցել է Մաղրիբի տեր Մահդին և այն կոչել է այս անվամբ: Սա ծովի ափին է և այնտեղ է փոխադրվել երեք հարյուր ութսուն թվականին (920) Ռակկադայից, որը Կայրուանի մոտ է: Նա Կայրուանից երկու օթևան (մարհալա) հեռավորության վրա է, երկրի բոլոր կողմերի նավահանգիստն է և ունի աշխույժ առևտուր, շրջապատված է լավ պարսպով, որն ամուր կառուցվածք ունի: Քաղաքի քարե պարսպի վրա կան երկու դռներ,*

որոնց նմանը չկա որևէ երկրում, բացի Ռաֆիկայի պարսպի երկու դռներից, որոնց նմանությամբ է սա կառուցվել և նույն ոճն ունի: Քաղաքում կան բազում պալատներ, մաքուր բնակարաններ ու տներ, բարեկարգ բաղնիքներ, իջևանատներ (խան), առատ ու ընտիր մրգեր ու բերքեր: Քաղաքի ներսը հաճելի է, իսկ դրսից գեղեցիկ է: Այնտեղ այցելել եմ [Երեք հարյուր] երեսունվեցին (947). Նրա իշխանները զինված էին, զորքերը քաջարի պաշտպաններ էին, իսկ վաճառականները՝ աշխույժ: Սակայն [հետագայում] նրա վիճակը վատացավ. Նրա մարդիկ այնտեղից տեղափոխվեցին, երբ նրանց իշխանները փոխադրվեցին ու հեռացան:

Մարդիկ հեռացան երբ [Ֆաթիմյան խալիֆա] Մանսուրը[30] նրանից տեղափոխվեց և ապրեց Մանսուրիյայում, որը Կայրուանի եզևում է:

էջ 73-74

Եվ այնտեղ է Թունիս քաղաքը, որը շատ հին է և շատ քիչ հոսող ջրեր ունի: Այս քաղաքից շատ հասույթ են ստանում և տերերին մեծ շահույթ է բերում: Նրա շրջակայքը շատ բարեբեր է առատ բերքերով: Նրանում պատրաստում են լավորակ բազմերանգ ամաններն (սպասք) և բարձրորակ խեցեղեն՝ նույնքան գեղեցիկ, ինչքան Իրաքից ներմուծվածը:

Հնում նրա անունը եղել է Տուրշիշ, սակայն երբ մահմեդականները կառուցումներ են կատարել և այգիներ ու պարիսպներ են պատրաստել, կոչվել է Թունիս: Նա կից է Կարթագենին:

Նա հայտնի է իր պտուղներով, որոնք առատ են ու լավորակ, ընտիր մրգատու ծառերով, առողջարար կլիմայով և առատ երկրագործական արտադրանքով, ինչպես բամբակը, որը տարվում է Կայրուան հույժ շահավետ պայմաններով, ապա կանեփը, քեմունը (չաման), ասփուրը (գաթայի ծաղիկ), մեղրը, յուղը, հացահատիկները և առատ արջառը:

էջ 76

Ալժիրը (Ջազայիր Բանի Մազզաննայ) շրջապատված է պարսպով ու ծովի ափին է: Շատ շուկաներ ունի ու վճիտ աղբյուրներ, որոնցից խմում են: Նրա շրջակայքում կան ընդարձակ անապատներ (բադիա), լեռներ, ուր բերբերներն են ապրում: Նրանց հարստությունը բաղկացած է կովերի մեծ նախիրներից ու ոչխարների մեծ հոտերից, որոնք լեռներում արածում են: Նրանց մեղրը, յուղը, արմավն այնքան առատ է, որ վաճառքի է տարվում Կայրուան և այլուր: Քաղաքի զիմաց մեկ նետընկեց հեռավորության վրա կա մի կղզի, ուր քաղաքի բնակիչ-

ներն ապաստանում են թշնամու հարձակման պարագային և պաշտպանվում իրենց սպառնացողներից:

էջ 90-91

Ֆեսը (Ֆաս) կարևոր քաղաք է, որի միջով մի գետ է անցնում նրան երկու կողմերի բաժանելով, որտեղ տարբեր ամիրներն են իշխում և երկու կողմերի միջև անվերջ են խռովություններն ու սպանությունները: Այդ գետը մեծ է, ջրառատ ու վրան շատ ջրաղացներ կան:

Դա մի հարուստ քաղաք է և սալահատակված: Այն կառուցել է Իդրիս իբն Իդրիսը[31]: Ամռանը ամեն օր նրա շուկաները գետի ջրով լվացվում են և սալաքարերը թարմանում են: Նրա պտուղները, բերքերը, ուտելիքները, խմիչքները (մաշարիր), ապրանքները, տարբեր հարկերից հասույթը և իշխանատները (խան) գերազանցում են բոլոր մոտավոր ու հեռավոր շրջակա բնակավայրերը:

Նրա մեծ կարևորությունն ակներև է հենց այդ առատության շնորհիվ, նրա հասույթների շատությամբ, որոնք անընդհատ աճում են:

էջ 96

Կայրուանը Մաղրիբի խոշորագույն քաղաքն էր եղել, ամենավաճառաշահը և ամենահարուստը: Նրանում էր ամբողջ Մաղրիբի դիվանը և այնտեղ էին բերում հարկերը: Այստեղ էր կառավարչի նստավայրը: Նրանից դուրս Ռակկադա կոչված վայրն է, որն Աղլաբիների[32] նստավայրն էր:

էջ 97

Մաղրիբից արևելք (մաշրիկ) տարվում են գեղեցիկ ու ակնահաճո խառնածին (մուվալլադ) կանայք, որոնց սիրում էին Աբբասյանները և նրանց մեծամեծները: Ապա տարվում են հռոմ (եվրոպացի) գեղեցիկ տղա ստրուկները (ղուլամ), սաթը (անբար), մետաքսը, շատ նուրբ կամ հասարակ բրդե զգեստները, բրդե պատմուճանները և այդ կտորից այլ բաները, կաշվե կարպետները (անթաա), երկաթը, կապարը, սնդիկը, սևամորթների (Սուդան) երկրից բերված ներքինիները, սլավոնների (սակալիբա) երկրից Անդալուսի վրայով բերված ներքինիները, թանկարժեք ձիերը, նժույգները, ճկուն ջրիները, ուղտերը, ոչխարները, կովերը և այլ կենդանիներ, որոնք լավ են վաճառվում:

էջ 100

Ինչ վերաբերում է բերբերներին, որոնցից բաղկացած է Մաղրիբի բնակչությունը, ապա նրանք ցեղեր են, որոնց թիվը հնարավոր չէ հաշվել, քանզի բազմաթիվ են նրանց ցեղերը և ճյուղավորումները և ցրված են դաշտերում և տարածված անապատներում: Նրանք բոլորը սերում են Գողիաթից, բացի շատ փոքր մասից: Նրանք ունեն ցեղերի թագավորներ (մալիք), պետեր և առաջնորդներ (մուկադդամ), որոնց հնազանդվում են անառարկելիորեն ու նրանց հրամաններին անվերապահորեն ենթարկվում են: Նրանց հարստությունը բաղկացած է ոչխարների հոտերից, որը մեծ քանակությամբ ունեն: Նրանցից անապատի խորքերում է ապրում Աուդաղաստի Սինհաջա [ցեղը]:

## ԻՍՊԱՆԻԱՆ (ԱՆԴԱԼՈՒՍ)

[..........]

էջ 109

Այս կղզու (թերակղզու) արևմտյան կողմը սկսում է այն նեղուցից, որի ջրերը թափվում են Օվկիանոս ծովը դեպի Նիեբլա (Լիբլա) և Ջիբրալկոն (Ջաբալ ալ-Ույուն) ձգվելով դեպի Լեպե (Լար) և Սիլվե (Շալաբ), մինչև որ հասնում է Սինտրա (Շինտրա) և այն դետը, որը բխում է Սամորայից, (Սամուրա)՝ Գալիսիայի (Ջալիկիա) գլխավոր քաղաքից, և որը թափվում է Օվկիանոս ծովը: Նրա հյուսիսային սահմանը Սինտրայից անցնում է Սամորա (Սամուրա) Լեոն, Յունա՝ Գալիսիայի շրջանում, մինչև Գալիսիայի հեռավոր սահմանը: Արևելքում նրա սահմանը սկսում է Գալիսիայի արևելքից մինչև արևմտյան նեղուցը (ծոցը) դեպի Սարագոսայի (Սարակուսա) կողմերը, Հուեսկայի (Ուեշկա) և Տորտոզայի (Թուրթուշա) հողերը և ամբողջ Ֆրանկաց երկիրը ցամաքի կողմից: Նրա հարավային սահմանն է հիշյալ նեղուցը, սկսած Պեչինայից (Բաջանա) մինչև Սիկիլիա կղզու կողմը, այսպիսով տարածվելով դեպի Վալենսիա (Բալանսիա), Մուրսիա, Ալմերիա և Մալագա (Մալկա) և Ալխեսիրաս (ալ-Ջազիրա) մինչև Օվկիանոս ծովի կազմած անկյունը:

էջ 110

Անդալուսում գործվածքեղենի (զգեստների) արտադրության (թիրազ) մի քանի տեսակ կա, որը տարվում է Եգիպտոս, երբեմն նույնիսկ տարվում է մինչև Խորասանի հեռավոր վայրերը: Նրանց արտահանման մեջ հայտնի է ստրուկների [վաճառքը] ինչպես հարճերը (ջավարի), գեղանի տղաները (ղուլամ), որոնք դերեվարվում են

ֆրանկների երկրում, Գալիսիայում և սլավոն ներքինիները: Բոլոր սլավոն ներքինիները, որոնք աշխարհի երեսին կան, Անդալուսից են տարված, որոնք մերձակա վայրերում ամորձատվում են: Այս բանը կատարում են հրեա վաճառականները:

*էջ 110-111*

Անդալուսի կարևոր գավառներից է Ռեդիոն (Ռայու), որի գլխավոր քաղաքն է Արքիդոնան: Այստեղից էր Օմար իբն Հաֆսունը, որն ապստամբեց Օմայանների դեմ: Լոս Պեդրոքեսը (Ֆահս ալ-բալլութ) սահմանակից է Օմար իբն Հաֆսունի տիրույթներին: Ռեգիոն մի ընդարձակ ու բարեբեր գավառ է:

Ուսփուկան նույնպես գեղեցիկ գավառ է, որի գլխավոր քաղաքը Ղաֆիկն է: Իսպանիայում կան բազմաթիվ կալվածներ, ուր կան հազարավոր գյուղացիներ, լրիվ անտեղյակ քաղաքային կյանքից, որոնք հռոմների քրիստոնեական հավատն են դավանում: Նրանք հաճախ ապստամբում են և մի ամուր բերդում ապաստան գտնում: Նրանց հնազանդեցնելը երկարատև գործ է, քանզի նրանք խրոխտ են ու համառ: Երբ նրանք հնազանդության լուծը թոթափում են, չափազանց դժվար է նրանց հպատակեցնել և դա կարելի է միայն մինչև վերջին մարդը կոտորելով, իսկ դա դժվար ու երկարատև գործ է:

*էջ 111-113*

Անդալուսի ամենամեծ քաղաքը Կորդովան (Կուրթուբա) է և ամբողջ Մաղրիբում, ոչ էլ Ջազիրայում, Ասորիքում ու Եգիպտոսում չկա նմանը, որը համեմատվեր նրա հետ բնակչության շատությամբ, տարածությամբ, մաքրությամբ, մզկիթների ճարտարապետությամբ, բաղնիքների ու իջևանատների (փունդուկ) առատությամբ: Այստեղից գնացած ճանապարհորդները, որոնք այցելել են Խաղաղության քաղաքը (Բաղդադ), վկայում են, որ նա Բաղդադի երկու կողմերից մեկի նման է: Նրա տերը Աբդ ալ-Ռահման իբն Մուհամմադ [խալիֆան][33] նրա արևմտյան կողմում, Բաթլաչ լեռան ստորոտում, հարթ վայրում կառուցեց մի քաղաք ու կոչեց Զահրա: Նա հատակագծեց շուկաները, կառուցեց բաղնիքներ, իջևանատներ (խան), պալատներ և զբոսավայրեր: Նա հրավիրեց ժողովրդին այնտեղ բնակվելու և հրամայեց որ իր մունետիկները Անդալուսի բոլոր երկրամասերում հայտարարեն՝ ով կամենա տուն կառուցել, կամ բնակարան տիրակալի (սուլթան) կողքին, ապա նպաստ կստանա չորս հարյուր դիրհեմ: Մարդիկ աճապարեցին շինարարություն կատարել, շենքերը խտացան, ցանկությունն ավելացավ և շենքերը գրեթե միացրին Կորդո-

վան Զահրային: Նա այնտեղ (Զահրա) փոխադրեց իր արքունի գանձարանը (բայտ ալ-մալ), դիվանները, բանտը, պահեստներն ու մթերումները: Սակայն այս բոլորը կրկին վերադարձվեց Կորդովա, քանզի Օմայանները անհիմն կասկածներ ունեին այդ քաղաքի (Զահրա) նկատմամբ և հուսահատ էին այն բանի համար, որ մարդիկ այնտեղ մեռնում էին և կողոպտել էին իրենց բոլոր պարենավորումները:

Կորդովան թեև Բաղդադի երկու կողմերից մեկին հավասար չէ, սակայն դրան մոտիկ է և նման: Սա քարե պարիսպ ունեցող քաղաք է, գեղեցիկ թաղամասերով, ընդարձակ բացատներով (հրապարակներ): Վաղուց է որ նրա տիրակալը իշխում է այս քաղաքում, նրա պալատը պարսպից ներս է, որը շրջապատում է նրան: Նրա պալատի դռների մեծամասնությունը պարսպի ներսում են բացվում տարբեր կողմերից:

Նա (Կորդովան) երկու դուռ ունի քաղաքի պարսպի վրա դեպի Ռուսաֆայից գետը տանող ճանապարհի վրա: Ռուսաֆան քաղաքի բարձրադիր արվարձանն է, որի շենքերը հարում են ներքին արվարձանին, վերջինիս խառնիխուռն շենքերը տարածված են քաղաքի շուրջը արևելքից, հյուսիսից ու արևմուտքից, իսկ հարավային մասը նայում է դեպի գետը, որի երկայնքով անցնում է Ռասիֆ կոչված ճանապարհը: Նրա արվարձանում են վաճառատները, իջևանատները (խան), բաղնիքները (համմամ) և ռամիկների բնակարանները: Նրա մայր մզկիթը գեղեցիկ է ու ընդարձակ, քաղաքի մեջտեղում, իսկ բանտը նրա կողքին է:

Կորդովան առանձնացած է և կպած չէ իր արվարձանների բնակարաններին: Քաղաքը հրաշալի դիրք ունի: Մի քանի անգամ նրա շուրջը շրջել եմ մեկ ժամով: Նա շրջանաձև է, ամրակուռ պարսպով, որը քարաշեն է: Զահրան երբեք ավարտված պարիսպ չի ունեցել: Այնտեղ կա գեղեցիկ մայր մզկիթ, հատուկ հմայք ունեցող, սակայն քաղաքի մայր մզկիթին զիջում է կառուցվածքով, հզորությամբ ու մեծությամբ:

Կորդովան յոթ երկաթե դռներ ունի: Սա մի փառավոր և ընդարձակ քաղաք է, հաճելի հատակագծով: Այստեղ շատ հարստություն ու շքեղություն կա այլևայլ ձևերով արտահայտված՝ արժեքավոր զգեստներով, փափուկ քթանով (վուշ), կոշտ և նուրբ մետաքսով, թեթև հարդարանքով և տարբեր տեսակի ուտելիքներով ու խմիչքներով:

*ԼՁ 114*

Անդալուսում կա սնդիկ, երկաթ և կապար: Այստեղ պատրաստում

են բրդե կտորներ, որոնք լավագույն հայկական (արմանի) թավշակերպ (մահֆուր) [արտադրանքի] նման են, որը բարձր գին ունի, դեռ չհաշված թամբի գորգերը (նամաթ), որոնք այնտեղ են պատրաստվում: Ներկված բրդե և այլ կտորեղենի, որոնք ներկվում են, կան հրաշալիքներ և դա ստացվում է Անդալուսին հատուկ խոտերի միջոցով: Սրանով ներկում են մաղրիբյան բարձրարժեք թաղիքները (լաբուդ) ու մետաքսը տարբեր գույներով, որ նախընտրում են կոշտ (խազդ) և անլվա (կազզ) մետաքսի համար: Նրանք արտահանում են դիպակ (դիբաջ):

Նրանց պատրաստած թաղիքների նմանը չկա ամբողջ երկրի վրա: Հաճախ տիրակալների համար պատրաստում են «երեսունանոց» թաղիքներ, որոնցից ամեն մեկն արժի հիսունից վաթսուն դինար և լայնությունը հինգից վեց թիզ է: Սա շատ գեղեցիկ գորգ (ֆարշ) է: Պատրաստում են նաև [զգեստՙ] նուրբ և կոշտ մետաքսից (խազզ), որը նախատեսված է տիրակալի համար և գերազանցում է Իրաքում պատրաստվածը: Լինում են նաև մոմած տեսակներ, որոնք թույլ չեն տալիս, որ անձրևը թրջի հագնողին:

Ինչ վերաբերում է գներին, ապա [Անդալուսը] նման է այն երկրներին, ուր էժանություն կա, բարիքների առատություն, դյուրին կյանք: Պտուղները որոնք միջին որակի են, մատչելի են ամենքին, առանց մեծ վճարի:

Երկրի տարբեր մասերում պատրաստում են քթանե հագուստեղեն, որը տարբեր կողմ է արտահանվում և գուցե նույնիսկ մինչև Եգիպտոս: Պեքինայում (Բիջանա) պատրաստված վերարկուները ուղարկվում են Եգիպտոս, Մեքքա և Եմեն ու այլուր: Այստեղ հասարակ ժողովրդի և տիրակալի (արքունիքի) համար քթանե զգեստներ են պատրաստում, որոնք ոչ մի բանով չեն զիջում [եգիպտական] Դաբիկի [արտադրանքին]: Դրանք բավական հաստ են, սակայն փափկություն և նրբություն ունեն և նրանք ցանկալի են նրանց, ովքեր Շարբ կոչված շղարշն են օգտագործում: Նրանց որակը մոտենում է լավագույն Շաթավի կոչված [եգիպտական] տեսակին:

Մարդիկ ընդհանրապես չուկա են գնում միայն հեծյալ վիճակում: Ոտքով են գնում միայն հասարակ զբաղմունքներ ունեցող մարդիկ: Զարքաշ ջորիների բուծումն այս երկրի մասնագիտությունն է, նրանով հպարտանում են ու հիանում: Ջորիների բուծումն իր նմանը չունի այլուր, նույնիսկ այն երկրներում, որոնք հայտնի են որպես ջորիներ բուծանող, ինչպես Հայաստանը, Առանը, Դարբանդը (Բաբ ալ-Աբուաբ), Տփղիսը և Շիրուանը: Նրանց անասուններն ըստ էության ճարպոտ են, լավ կազմով ու ցեղային: Այն անասունները, որոնք գեղեցիկ արտաքին ունեն, բարձրահասակ են ու բարձր գնով են վաճառվում, բերվում են Մայորկա կղզուց, որը պատկանում է Աբու ալ-

*Ռահման իրն Մուհամմադին և բնակեցված է մահմեդականներով: Այս կղզին, որը ցամաքից հեռու է, ֆրանկների երկրի (Ֆրանսիայի) դիմաց է:*

*էջ 116*

*Հիշյալ բոլոր քաղաքները հայտնի են իրենց բերքերով. առևտրի ապրանքներով, խաղողի այգեստաններով. շենքերով. շուկաներով. վաճառատներով, բաղնիքներով. իջևանատներով:*

*Քաղաքներն իրար հետ մրցում են իրենց դիրքով. հարկերով. կառավարիչներով, դատավորներով, և այն պաշտոնյաներով. որոնք լրտեսություն են անում և կոչվում են մուխալլիֆ: Չկա մի քաղաք. որ չեն չլինի, չունենա ընդարձակ գավառներ, կամ մի նահանգ՝ լի կալվածներով և հողամշակներով, բարեկեցիկ դրությամբ չլինի [...]:*

**ՍԻԿԻԼԻԱՆ**

[.........]

*էջ 118 – 120*

*Նրանում է այն մեծ քաղաքը (մայրաքաղաք), որը կոչվում է Պալերմո (Բալարմ) և բարձր, հսկայական ու անառիկ պարիսպ ունի: Այստեղ ապրում են վաճառականներ ու նրանում կա մայր մզկիթը, որը [արաբական] նվաճումից առաջ հռոմների եկեղեցի էր եղել: Կա մի հսկայական տաճար (սրբավայր), որի մասին իմաստուն տրամախոս (մանթիկի) ասել է, թե հույների (յունան) փիլիսոփան, այսինքն Արիստոտելը (Արիսթաթալիս) տախտակե դագաղի մեջ կախված է այս տաճարում, որը մահմեդականները մզկիթի են վերածել: Քրիստոնյաները նրա գերեզմանը մեծարում էին և նրա միջոցով բուժվում, իմանալով որ հին հույները նրան մեծարում ու հարգում էին: Ասվում է, որ նրա երկնքի ու երկրի միջև կախված լինելու պատճառն այն էր, որ մարդիկ նրանից հայցում էին անձրև, կամ բուժում, կամ կարևոր հարցերի լուծում, որի համար նրանք ապավինում էին Աստծուն ու նրան մերձենում արհավիրքների կամ ներքին կռիվների ժամանակ: Ես տեսել եմ մի տախտակե արկղ, որը հավանաբար այդ գերեզմանն է:*

*Սրա դիմաց կա մի ուրիշ քաղաք, որ կոչվում է Խալիսա և ունի քարե պարիսպ: Սակայն Պալերմոյի պարսպի նման չէ, ուր տիրակալն (սուլթան) է ապրում ու նրա հպատակները: Նրանում կա երկու բաղնիք, բայց շուկաներ ու իջևանատներ (ֆանադիկ) չկան: Կա մի փոքրիկ մայր մզկիթ. տիրակալի զորակայան, նավաշինարան (դար ալսինաա) ու վարչական դիվաններ: Ունի չորս դռներ՝ հյուսիսային, հա-*

րավային ու Արևմտյան, իսկ արևելյան կողմում ծովն է և մի պարիսպ կա, որը դուռ չունի:

Այն թաղամասը, որ կոչվում է Սլավոնների թաղամաս (Հարատ ալ-սակալիբա), ավելի շեն է ու գեղեցիկ, քան վերոհիշյալ երկու քաղաքները (Պալերմո և Խալիսա): Նրանում է նավահանգիստը, կան հոսող ջրեր, որոնք նրա ու Սիկիլիայի [մայրաքաղաքի] միջև սահմանի դեր են կատարում:

Կա նաև մի թաղամաս, որը կոչվում է Մզկիթի թաղամաս (ճարա), որն այսպես է կոչվում Իբն Սակլաբ մզկիթի անվամբ, որը նույնպես մեծ է: Նրանում չկան աղբյուրի վազող ջրեր և բնակիչները ջրհորներից են խմում: Նրա ծայրին կա այն գետը, որը կոչվում է Վադի Աբբաս, որը մեծ, լայն գետ է և նրա վրա շատ ջրաղացներ ունեն. նրա ափին կան այգիներ ու պարտեզներ, որոնցից բնակիչները քիչ օգուտ են ստանում:

Նոր թաղամասը (ալ-Հարատ ալ-ջադիդա) ընդարձակ է և Մզկիթի թաղամասի կողքին, որից ոչ մի սահմանով չի բաժանվում: Այս երկու թաղամասերի, ինչպես նաև Սլավոնների թաղամասի շուրջը պարիսպ չկա:

Շուկաների մեծ մասը Իբն Սակլաբի մզկիթի ու Նոր թաղամասի միջև է գտնվում, ինչպես բոլոր ձեթ վաճառողների (զայյատ), ցորեն վաճառողների (դակկակ), լումայափոխների (սառաֆ), դեղագործների (սայադինա), դարբինների (ճադդադ), սուր փայլեցնողների (սայակիլա) շուկաները, ապա ցորենավաճառների, ասեղնագործների (թառաղ), ձկնավաճառների (սամմաք), հացահատիկների վաճառականների (աբզարի) շուկաները, մսավաճառների (կասսաբ) ընկերությունը (թայիֆա), բանջարավաճառները, մրգավաճառները, հոտավետ բույսեր վաճառողները (ռայհանի), կարաս վաճառողները (ջառար), հացթուխները (խաբբազ), պարանագործները (ջադդալ), դեղագործների (աթթար) ընկերությունը (թայիֆա), մսագործները (ջազզար), կոշկակարները (իսքաֆի), կաշեգործները (դաբբաղ), հյուսները (նաջջար), բրուտները (ղադայիրի), փայտ վաճառողները (խաշշաբ) քաղաքից դուրս են տեղավորված:

Հենց Պալերմոյում կան մսավաճառների (կասսաբ) ընկերություն (թայիֆա), կարաս վաճառողներ (ջառար), կոշկակարներ (իսքաֆի), իսկ մսավաճառները (կասսաբ) երկու հարյուրից մի քիչ պակաս խանութներ (ճանութ) ունեն միս վաճառելու համար, սակայն նրանք քիչ են քաղաքի ներսում, մեծ փողոցի (սիմաթ) գլխին: Նրանց կողքին կան բամբակավաճառներ (կաթթան), գզրարներ (ճալլաջ), հնակարկատներ (հազզա): Կան նաև մեկից ավելի կարևոր շուկաներ:

Նրանց ճոխության ու բնակչության շատության մասին կարող է գաղափար տալ Պալերմոյի մայր մզկիթի բազմությունը: Ես ինքս մի

օր ներկա եմ եղել ու տեսել, որ բազմությամբ լի էր և կար յոթ հազար մարդուց ավելի. այնտեղ աղոթողների երեսունվեց շարք կար, ամեն մի շարքում մոտավորապես երկու հարյուր մարդ:

## ԵԳԻՊՏՈՍԸ (ՄԻՍՐ)

[..............]

*Էջ 145-146*

*Նրա (Եգիպտոսի) քաղաքների ու շրջանների նկարագրությունը: Նրա ամենամեծ քաղաքն է Ֆուսթաթը[34], որը Նեղոսի հյուսիսային մասում է, քանզի նա այս վայրում հոսում է հարավ-արևելքից: Սա բարեկարգ քաղաք է, որի մոտ Նեղոսը երկու ճյուղի է բաժանվում: Ֆուսթաթից անցնում ենք առաջին ափը, ուր կան գեղեցիկ շենքեր և բարեկարգ բնակարաններ և այդ վայրում Ջազիրա (Գաղիրա. կղզի) է կոչվում: Այն կողմը կամրջով ենք անցնում, որը բաղկացած է մոտավորապես երեսուն նավերից: Այս կղզուց մի ուրիշ կամրջով, որը առաջինի նման է, անցնում ենք մյուս՝ երրորդ ափը, որը կոչվում է Գիզա, ուր կան ուշագրավ կառուցվածքներ ու բնակարաններ:*

*Ֆուսթաթը մեծ քաղաք է, մոտավորապես Բաղդադի մեկ երրորդ մեծությամբ և մոտավորապես մեկ մղոն երկարությամբ. շեն է, բարեբեր ու հաճելի: Այս քաղաքն ունի մեծ բացաստաններ, ընդարձակ շուկաներ, շքեղ վաճառատներ, ընդարձակ անձնական կալվածներ, հրաշալի արտաքին տեսք, հաճելի մթնոլորտ, ծաղկած պարտեզներ ու միշտ կանաչ զբոսավայրեր:*

*Ֆուսթաթում արաբներն ունեցել են ցեղային խմբավորումներ և ամեն մի թաղամաս կոչել նրանց անուններով՝ քուֆացիների, բասրացիների [թաղեր], թեև նրանք մեր օրերում փոքրաթիվ են: Մեծ մասն անհետացել է, բացի Եմենի Մաաֆիր ցեղից: [Ֆուսթաթի] վայրը աղային է ու հողը մաքուր չէ: Շենքերը լինում են յոթ, վեց, հինգ հարկանի և ամեն մի տան մեջ կարող է ապրել երկու հարյուր մարդ: Ֆուսթաթում կա մի տուն, որը կոչվում է Աբդ ալ-Աղիզ իբն Մարուանի օթևանը, որն այնտեղ ապրել է և ամեն օր բերել է չորս հարյուր տիկ ջուր՝ վարձակալների համար: Նրանում եղել է հինգ մզկիթ, երկու բաղնիք և մի քանի փուռ՝ նրա բնակիչների հացը եփելու համար:*

*Նրանց (Ֆուսթաթում) շենքերի մեծ մասը հում աղյուսով (թուր) է կառուցված և նկուղները չեն բնակեցված: Կան երկու ուրբաթ օրվա աղոթքի մզկիթներ: Մեկը կառուցել է Ամր իբն ալ-Ասը[35] շուկաների մեջտեղում, մյուսը Մաուկիֆի գագաթին կառուցել է Աբու-լ-Աբբաս Ահմադ իբն Թուլունը[36]: Քաղաքից դուրս կային շենքեր, որոնք կառուցել էր Ահմադ իբն Թուլունը, մեկ մղոն քառակուսի տարածության*

*վրա, ուր նրա զորքն էր ապրում և դա կոչվում էր Կաթալի: Այն կարելի է համեմատել Ռակկադայի հետ, որը Աղլաբինները կառուցել էին Կայրուանից դուրս: Այս բոլորը հիմա ավերակ վիճակում են: Ռակկադան եղել է ավելի ուժեղ հենակետ և ավելի լավ կազմակերպված:*

*Մաղրիբցիները (Ֆաթիմյանները) Ֆուսթաթից դուրս կառուցեցին մի քաղաք, որը կոչեցին Կահիրե (ալ-Կահիրա): Այն հատակագծել է Ջաուհարը, մաղրիբցիների (Ֆաթիմյանների) զորավարը[37], երբ նվաճել է Եգիպտոսը՝ իր զորքի, պարենավորման ու շքախմբի համար: Սրա մեջ կան թագամասեր, շուկաներ և վայրեր անասունների խնամքի համար, հարմարանքներ, ինչպես բաղնիքներ, իջևանատներ (ֆանադիկ), նաև բաբեկարդ ապարանքներ ու օգտակար հարմարություններ: [Ջաուհարը] նրա շուրջը կառուցեց մի անառիկ ու բարձր պարիսպ, երեք անգամ ավելի ընդարձակ, քան կառուցված տարածությունը: Դա դատարկություն է, որը հավանաբար թողնվել է, որպեսզի վտանգի ժամանակ անասուններն այնտեղ հավաքվեն:*

*Նրանում (Կահիրեում) են Եգիպտոսի վարչական դիվանները, գեղեցիկ մայր մզկիթը, բազմաթիվ սպասարկողներով ու մուեզզիններով (հավատադիր): Մաղրիբի իշխանուհիներից մեկը մի ուրիշ մզկիթ է կառուցել Կահիրեից դուրս՝ Կարաֆայում, ուր ապրում են Եմենից ցեղեր և նրանք, ովքեր նվաճման ժամանակ հաստատվել էին: Սա այն մզկիթներից է, որոնք աչքի են ընկնում ընդարձակ բակով, գեղեցիկ ճարտարապետությամբ, զարդարված առաստաղներով և հաճելի արտաքինով: Գաղիրայում ու Գիզայում ես կան երկու այլ մայր մզկիթներ, որոնք սակայն զիջում են Կարաֆայի մզկիթին շքեղության ու գեղեցկության հարցում:*

*էջ 150–152*

*Եգիպտոսի հռչակավոր քաղաքներից ու զարմանալի հնություններից է Ալեքսանդրիան, որը մի քաղաք է Ռումի (Միջերկրական) ծովի պարանոցի վրա: Նրա ավերակները և նրա ժողովրդի թողած հուշարձանները պարզ երևում են և վկայում թագավորական իշխանության ու հզորության մասին, ցույց են տալիս նրանց տիրապետությունը և գերազանցությունը, ունեն վեհ խորհուրդ և մեծ իմաստ: Կառուցված են հսկայական քարերով, փառավոր շինությամբ, մեծ սյուններով, որոնք մարմարի տարբեր տեսակներից են և դրանցից ամեն մեկը հազար մարդու կողմից հազիվ կարելի է տանել: Կախված են երկնքի ու երկրի միջև, հարյուր կանգուն բարձրությամբ, այնպես որ քարը նստում է ամեն մի սյունի խոյակի վրա: Այս սյուները տասնհինգից քսան կանգուն են, իսկ նրանց վրա նստած քարերը տասը կանգուն խորանարդ են: Այս ամբողջը զարդարված է զար-*

մանալի գույններով ու երանգներով.

**Եթե հարցնես նրանց ժողովրդին, ապա կտեսնես, որ նրանք**
**Տպավորիչ պատմություններ կպատմեն այդ մասին։**

Քաղաքի ճանապարհները տեսակ-տեսակ մարմարներով են պատած և գունավոր քարերով։ Նրանց եկեղեցիներում գտնում ենք սյուններ, որոնք թվում է, թե պատրաստված են կանաչ զմրուխտից և դեղին ու կարմիր եղնգաքարից։ Նրանց ամենակարևոր շենքերը կառուցված են սյունների վրա, որոնք ամրացված են պղնձե ձողերով ու քիմիական նյութերով, որպեսզի ժամանակը չփչացնի։ Ամեն մի սյունի ստորոտում կան երեք կամ չորս պղնձե խնչափառներ։ Սյունի վերին մասը ծածկված է տարբեր պատկերներով, հայտնի և անհայտ։

Նրանում կա նշանավոր փարոսը, քարով կառուցված և կապարով ամրացված։ Ամբողջ աշխարհում չկա այսպիսի փարոս, որի նմանը լինի, կամ մոտիկ նմանությամբ, ձևերով, կառուցվածքով ու հրաշալիքներով։ Նրանում կա մի խորհուրդ, որը մեղ մտածել է տալիս թե գոյություն է ունեցել մի հզոր թագավորություն, ղեկավարված մեծ հեղինակություն ունեցող թագավորի կողմից։ Դա այն նշանավոր փարոսն է, որը հայտնի է ամբողջ աշխարհում և բոլոր հասարակ մարդիկ ու մասնագետ գիտնականներ համաձայն են, որ դրա ստեղծողը այն հնարել է աստղաբաշխական դիտարկումներ կատարելու համար։

Նրա բարձրությունը եղել է երեք հարյուր կանգունից ավելի և նրա մեծ գմբեթն ընկել է, որը փարոսի գլուխն է եղել երկար ժամանակ։ Հակառակ պոռոտախոսների հիմար ենթադրությունների և անհիմն եզրակացությունների, [ես գտնում եմ], որ այս գմբեթը չի կառուցվել այն բանի համար, որ այնտեղ լինի մի հայելի, որի մեջ երևա ամեն ինչ, որ կմտնի Ռումի (Միջերկրական) ծովը, լինի զորքեր փոխադրող նավ, կամ ռազմանավ։

Կան մարդիկ, որ կարծում են, թե նրա կառուցողը եղել է նույն բուրգերը կառուցող թագավորը, իսկ ուրիշներ այլ բան են պատմում։

Ֆուսթաթից այն կողմ, Նեղոսի արևմտյան ափին կան հսկայական կառույցներ, որոնք մեծ թվով տարածված են ամբողջ հարավային Եգիպտոսում (Սաիդ) և կոչվում են բուրգեր (ահրամ)։ Սակայն ոչ մեկը նման չէ այն երկու բուրգերին, որոնք Ֆուսթաթի դիմաց են, երկու փարսախ հեռավորության վրա։ Ամեն մեկի բարձրությունը չորս հարյուր կանգուն է և լայնությունը նույնքան է։ Կառուցված է կրաքարով (քազզան), որի հաստությունը, երկարությունն ու լայնությունը տասից ութ կանգուն է։

Նրանց պատերը հունարեն արձանագրություններով են ծածկված։ Նրանցից ամեն մեկի մեջ կա ճանապարհ, որով մարդիկ վերև էին բարձրանում։ Այս երկու բուրգերի միջև կա ստորերկրյա ճանա-

պարհ՝ մեկից մյուսին անցնելու: Ոմանք ասում են, թե սրանք գերեզմաններ են, սակայն այդպես չէ, այլ կառուցողը նախատեսել է, որ կլինի ջրհեղեղ, որն ամեն ինչ կտանի երկրի վրա, բացի այն կառույցներից, որոնք բուրգերի նման են կառուցված: Նա իր դանձերը և ունեցվածքը այնտեղ էր թաքցրել: Իրոք եղել է ջրհեղեղ և չորանալուց հետո, նրանում եղածը անցել է Բայսար իբն Նուհին: Մի թագավոր այստեղ երկու բուրգերում ցորեն է ամբարել:

Նրա (Եգիպտոսի) կարևոր քաղաքներից են Տիննիսն[38] ու Դիմիաթը, որոնք հայտնի են իրենց մասնագիտացմամբ: Դրանք գտնվում են երկու կղզիների վրա, աղի և քաղցր ջրի մեջ, սակայն տարվա մեծագույն մասում Նեղոսի հոսանքի մեջ են: Նրանց վրա չկա ոչ հողամշակություն, ոչ անասնապահություն:

Նրանցում պատրաստում են նուրբ քթանե գործվածքեղեն և ոսկով հյուսված զգեստներ և Դաբիկի կոչված տեսակներ և ներկված տիննիսյան կոչված պատմուճաններ (հուլլա), որոնց նմանը չկա ամբողջ երկրագնդի վրա, իրենց թանկ գնով, գեղեցկությամբ, փարթամությամբ, փափկությամբ, նրբությամբ: Երբեմն մեկ պատմուճանը երկու հարյուր դինար արժի, եթե նրա մեջ ոսկեթել հյուսվածք լինի, իսկ եթե ոսկով հյուսված չէ, կարժի հարյուր դինար, ավելի կամ պակաս:

Ընդհանրապես, նրանցում պատրաստված քթանե գործվածքեղենի մեկ միսկալ մանած թելը մի քանի դինար արժի: Թենե Շաթա, Դաբիկ (Դաբկու), Դամիրա, Տունա վայրերում և մերձավոր կղզիներում այս տեսակների (աջնաս) նուրբ [գործվածքեղեն] են պարտաստում, այնուամենայնիվ դա նման չէ Տիննիսի (տիննիսական), Դիմիաթի (դիմիաթական) և Շաթավի (շաթայական) արտադրանքին, որի մեկ հակը (համլ) արժի քսան հազար դինարից երեսուն հազար դինար, նկատի ունենալով, որ դա արտահանվում է Իրաք:

Սակայն այս արտադրությունը ընդհատվեց մաղրիբցիների (Ֆաթիմյանների) գալով [Եգիպտոս] և հատկապես Ազիզ [խալիֆայի][39] վեզիր անիծյալ Աբու-լ-Ֆարաջ իբն Քիլլիսի պատճառով, որը կործանեց այս արտադրությունը իր չարաղետ միջոցառումներով, հարկեր դնելով, պարտադիր աշխատանք նշանակելով և կոռ նշանակելով արհեստավորների վրա: Նա նույնիսկ գլխահարկ (ջիզիա) էր պահանջում Տիննիս մտնողներից ու դուրս եկողներից:

Եգիպտոսում կան բազմաթիվ ընտիր գործվածքեղենի արհեստանոցներ (թիրազ), որոնց մասին կխոսեմ:

Էջ 159

Ֆայյում [նահանգում] կան մեծ ու կարևոր քաղաքներ, գործված-

քեղենի արհեստանոցներ (թիրազ) և գավառներ, որոնք պետության [տիրակալին] և անհատներին են պատկանում:

Նրանում պատրաստում են արտահանման համար ապրանքներ, որոնց հռչակն այնպիսին է, որ կարիք չկա նշելու: Բիհնասայում պատրաստում են վարագույրներ, հատակի գորգեր (սրահակներ), ոսկեհյուս մետաքսեղեն, նավերի առագաստներ, վրաններ, պատմուճաններ, ծածկոցներ, գորգեր, տաղավարներ և ընդարձակ վրաններ, բրդից ու քթանից, անայլայլ գույներով (ներկով) և այնպիսի նրբերանգներով, որոնք ամեն տեսակ պատկերներ են ներկայացնում՝ միջատից մինչև փիղը: Այս գործվածքեղենի արհեստանոցների վերակացուները պետության ծառայության մեջ են և պատվերներ են ստանում խալիֆաներից, մեծամեծ պաշտոնյաներից, ինչպես նաև աշխարհի ամեն կողմից եկած վաճառականներից, որոնք այստեղ պատրաստել են տալիս երկար հատակի գորգեր, որոնց համար թանկ են վճարում: Ամեն մի կտորը երեսուն կանգուն երկարություն ունի, առավել կամ պակաս, իսկ մեկ զույգի գինը երեք հարյուր դինար է, առավել կամ պակաս: Թահա քաղաքում ես կան մեկից ավելի գործվածքեղենի արհեստանոցներ:

էջ 161

Նրա (Եգիպտոսի) ժողովուրդը ղպտի (կիբթ) քրիստոնյաներ են: Ունեն բազմաթիվ հարուստ, ընդարձակ եկեղեցիներ (բայաա), սակայն շատերն ավերված են: Նրանք հազվադեպ են չարանում, բայց միայն [զայրանում են] կառավարիչների ու հարկահանների դեմ: Նրանք ունեցել են հարուստ, գանձերի տեր, մեծ ունեցվածքի տեր մարդիկ, որոնք բարեգործություն ու ողորմություն են արել: Ես նկատել եմ, նրանց առատաձեռնությունը և լավ տրամադրությունը մահմեդականների նկատմամբ, որը կարիք չկա երկար բացատրելու:

## ԱՍՈՐԻՔԸ (ՇԱՄ)

էջ 165–170

Իսկ Ասորիքը իր արևմտյան կողմում ունի Ռումի ծովը, արևելքում՝ անապատը Այլաթից մինչև Եփրատ, ապա Եփրատից մինչև Ռումի սահմանը: Նրա հյուսիսում Ռումի երկիրն է, հարավում՝ Եգիպտոսը (Միսր) և Իսրայելի որդիների անապատը: Եգիպտոսի կողմից նրա սահմանն է Ռաֆահը, իսկ Ռումի կողմից՝ Սահմանային ամրություններ ի գոտին (Սուղուր): Հնում նրանում էին Ջազիրայի սահմանային ամ-

րությունները, որոնք են՝ Մալաթիան, Հաղասը, Մարաշը, Հարունի-յան, Քանիսան, Անազարբան (Այն Զարբա), Մամեստիան (Մասսիսա), Ադանան, Տարսոնը (Թարսուս): [Սա հին ժամանակներում է եղել, իսկ մեր օրերում նրանից հյուսիս գտնվող Տրապիզոնի կողմերը և խազա-բաց երկիրը նվաճվել են մահմեդականների կողմից, հինգ հարյուր ութսուն (1184–1185) թվականին: Ասորիքի արևելյան և արևմտյան կողմերում գտնվող վայրերն արդեն հիշել եմ և կարիք չկա կրկնե-լու][40]:

Այս էջի ներքևում գտնվում է Ասորիքի քարտեզը (սուրատ):

[Ասորիքի քարտեզում եղած անունների ու նշանների բացատրու-թյունը. Քարտեզի աջ կեսում, Ռումի ծովի ափերին նշված քաղաքնե-րը վերևից ներքև՝ Պեղուզիում (Ֆարամա), Ռիմաս, Տայդա, Ասկալոն (Ասկալան), Մահուզ, Հոբբե (Յաֆա), Կեսարիա (Կայսարիյա), Ակրա (Աքքա), Ալեքսանդրիա (Իսքանդարիյյա), Տյուրոս (Սուր), Աղնուն, Սարաֆանդա, Սիդոն (Սայդա), Ջիհը, Նախմա, Բեյրութ (Բայրութ), Ջունիա, Մահուզ, Բիբլոս (Ջուբայլ), Բատրուն, Անֆա, Կալամուն, Տրիպոլիս (Աթրաբուլուս), Անթարթուս (Թարթուս), Մարակիա, Բա-նիաս (Բալինիաս), Ջաբալա, Լաոդիկե, Ֆասիրա, Սվեախա (Սուայ-դիյա)[41], Սախրա, Ալեքսանդրեկ (Իսքանդարունա), Բայաս: Քարտեզի ներքևում ծով են թափվում երեք գետեր, որոնց վրա կան հետևյալ քաղաքները՝ Քաֆարբայա, Մամեստիա, Անազարբա, Ադանա, Տար-սոն: Ծովի ափին նշված են երեք քաղաքներ՝ Քանիսա[42], Արսուֆ, Նասդին: Ցամաքի վրա ձախից՝ Կեսարիա, Ակրա, «որոնց միջև կա Հայֆան ու Հայֆային ենթակա բերդերը»: Ափին զուգահեռ կա լեռ-նաշղթա և նրա ու ծովի միջև գրված է «Եգիպտոսի կողմերը», «Ասո-րիքի արևմուտքը» և «Պաղեստին երկիրը»: Այս մասում կա երկու քաղաք՝ Ռամլա և Քաֆր Սաբա: Ապա ընթանում է նրանցից դեպի ցածր միանալով լեռներին՝ Բանիասը, Ակզարը, Արական, Հիսն Բար-ղավայհը, Բաղրասը, Հարունիյան, Քանիսան: Հիսն Բարգավայհի և Սախրայի միջև մի դետ կա: Այս մասի ներքևում գրված է՝ «Ասորիքի կողմերը»:

Լեռնից ձախ կողմում, վերևում գրված է՝ «Սինայի լեռ (Թուր Սի-նա)», իսկ նրանից ձախ՝ «Իսրայելի որդվոց անապատը»: Նրանից ևս ձախ կա Կուլզում (Կլիզմա) քաղաքը և Կուլզում (Կարմիր) ծովը, իսկ նրա տակը գրված է «Ասորիքի հարավը»: Լեռան վերին մասի երկու կողմերում գրված է «Պաղեստին»: Այնտեղ կան երկու քաղաքներ՝ Բայտ Իբրահիմ (Աբրահամի տուն) և Բայտ ալ-Մակդիս (Սուրբ քա-ղաք, Երուսաղեմ), իսկ ներքևում՝ Նաբուլուս: Ապա գալիս է Տիբերի-ական (Թաբարիյա) լիճը և Հորդանան գետը, որը հոսում է Զուղար լի-ճը (Մեռյալ ծովը) և որի վրա կա Զուղար քաղաքը: Իսկ լեռան մոտ, Բանիասին զուգահեռ գրված է «Լեռնային Լիբանան (Ջաբալ Լուբ-

նան)» և ցամաքում, նրա դիմաց կա Դամասկոս քաղաքը: Դամասկոսի ու Զուղարի միջև կան Բալկա, Ռակամ ու Ռուաս քաղաքները:

Լեռան միջին մասում գրված է Բահրա լճը: Այստեղ է Եմեսա քաղաքը և Եմեսայի ու Դամասկոսի միջև կա ճանապարհ, որի վրա են՝ Ջուսիա ալ-Լարուա, Բաալբաք[43], ալ-Զարաղանի քաղաքները: Եմեսայից ներքև կա Ապամեա (Ֆամիա) քաղաքը: Ապա լեռան երկրորդ մասի մոտ դրված է Սիմակ լեռ[44]: Սրա մոտ է Անտիոք քաղաքը, որից մի ճանապարհ է ընթանում Հալեպ, ապա դեպի Բալիս, որը Եփրատ գետի վրա է: Հալեպից Եմեսա ճանապարհի վրա կան՝ Կիննասրին, Քաֆր Թաբ, Շայզար, Եպիփանիա (Համա) քաղաքները: Իսկ Շայզարի ու Անտիոքի միջև կան Մաարատ ալ-Նուման և Մաարատ Միսրայն քաղաքները: Բալիսից Կուլզում ձգվող երկար գծի վրա դրված է «Ասորիքի սահմանը» և այդ գծի վրա կան՝ Ռուսափ (Ռուսաֆա)[45], Խանասիրա, Պալմիրա (Տադմոր), Սալամիա, Մաան քաղաքները: Գծի տակ գրված է. «Սա Ասորիքի պատկերն (քարտեզն) է», որը քարտեզի անվանումն է: Դրանից ձախ կա «Արաբաց երկրի շրջաններն են ու անապատը»:

Եփրատ գետի վրա, ձախ կողմում կան՝ Ռաֆիկա, Կալինիկում (Ռակկա)[46], Ջիսր, Ջարաբլուս: Դրա ետևում գրված է «Ասորիքի արևելքը»: Հալեպի ու Ջարաբլուսի միջև կա Մարբոդ (Մանբիջ) քաղաքը և ապա Եփրատի ափին այս կողմում կան՝ Սամոսատ, Մալաթիան, որոնց աջից կա Շիմշաթը, որտեղից դուրս է գալիս ճանապարհը դեպի Ջարալ և դրա վրա են Տլուքը (Դուլուք), Ռաարանը, Մարաշը, Բուկան և Բուկայից ցածր Հադասը: Այս մասում լեռան անունն է Ամանոս (Լուքքամ): Քարտեզի ներքևում դրված է «Ռումի երկրի կողմերը»]:

Ես բոլոր Սահմանային ամրությունները միավորեցի Ասորիքի մեջ: Թեև դրանց մի մասը կոչվել է Ասորիքի Սահմանային ամրություններ (Սուղուր ալ-Շամ), իսկ մյուս մասը կոչվել է Ջազիրայի Սահմանային ամրություններ (Սուղուր ալ-Ջազիրա), սակայն բոլորն էլ Ասորիքի մեջ են: Բանն այն է, որ Եփրատից այն կողմ գտնվող բոլոր վայրերը թեև Ասորիքի մեջ էին, սակայն Մալաթիայից մինչև Մարաշ կոչվել են Ջազիրայի Սահմանային ամրություններ (Սուղուր ալ-Ջազիրա), քանզի Ջազիրայի ժողովուրդն էր, որ զորք էր տրամադրում և արշավանքներ կատարում: Ահա այս էր պատճառը Ջազիրային վերագրվելուն և ոչ թե այն, որ Ջազիրային մաս էին կազմում:

Ասորիքի գավառները դրանք Պաղեստինի, Հորդանանի, Դամասկոսի, Եմեսայի (Հիմս), Կիննասրինի ջունդերն (զինվորական գոտիներն) էին և Ավասիմն ու Սահմանային ամրությունների գոտին (Սուղուր): Ասորիքի ու Ջազիրայի Սահմանային ամրությունների գոտիների միջև կա Ամանոս (Լուքքամ) լեռը, որ նրանց բաժանում է:

Ամանոս լեռը մտնում էր Ռումի երկրի մեջ և կապված էր Ռումի երկրի բոլոր լեռների հետ: Ասվում է, որ երկու հարյուր փարսախ երկարություն ունի: Իսլամի երկրում նա երևում է Մարաշի և Հարունիյայի ու Անազարբայի միջև: Սա Ամանոս է կոչվում մինչև Լաոդիկեն անցնելը, ապա կոչվում է Բահրա լեռ և Տաննուխ, մինչև Եմեսա հասնելը, ապա կոչվում է Լիբանանի լեռ և ձգվում է Ասորիքով, մինչև հասնում է Կարմիր (Կուլզում) ծովը մի կողմից և մյուս կողմից [Եգիպտոսի] Մուկաթթամին է կպչում:

Սա մի լեռ (լեռնաշղթա) է երկրագնդի վրա, որն սկիզբ է առնում Չինաստանից [...]: [Ռնչ հասնելուց հետո] միանում է Ջիլի (Գեղան) ղլմիկների (Դայլամ) և Ատրպատականի լեռներին, ապա Կովկասին (Կաբկ), Ալանաց (ալ-Լան) ու Ռումի լեռներին: Հարավում նա միանում է Սպահանի (Իսփահան) և Շիրազի լեռներին, մինչև որ հասնում է Պարսից (Ֆարս) ծովը: Ռնչից չարունակվում է [նաև] դեպի Իրաք և աջ կողմում դեպի Հուլուան, Եկրատանի (Համադան), Կարմիսինի և Հուլուանի վրայով Իրաքի առաջին սահմանը: Այս լեռը (լեռնաշղթան) թեքվում է մի փարսախի վրա Հուլուանից Իրաքի ճանապարհով դեպի արևմուտքից հյուսիս, ուղղվում է Սահրավարդ և Շահրազուր, մինչև որ հասնում է Տիգրիս, Տիքրիտի կողմերում: Այստեղ կա Բարամմա լեռը, Տիգրիսի արևելյան կողմում և Շուկուկ լեռը՝ Տիգրիսի արևմտյան կողմում: Բարամմայի կողմերից (լեռնաշղթան) բարձրանում է և գոյանում են Ջինա և Ջամիր լեռները, որոնք Նոր (հադիսատ) Մոսուլից արևելք են: Տիգրիսի երկայնքով բարձրանում է մոտենալով ու հեռանալով և հասնում Ֆիշաբուր, Սամանին (Թմանին) լեռներով դեպի Արարադ (Ջուդի), անցնելով Ամիդի կողմերը: Այստեղ բաժանվում են Դասին լեռները և Արտաքին Հայաստանի լեռները (Արմինիա ալ-խարիջա), որոնք կապված են Ներքին Հայաստանի[47] (Արմինիա ալ-դախիլա) լեռներին և սրանք էլ միացած են Ատրպատականի ու Թարարիստանի լեռներին: Այս լեռները կապված են Կովկաս (Կաբկ) լեռներին, որոնք սկսում են Խազարաց ծովի հյուսիսում գտնվող Դարբանդից (Բաբ ալ-Աբուաբ) ու հասնում Գոգն ու Մագոգը (Յաջուջ ու Մաջուջ):

Այս լեռնաշղթան Ամիդի (Նփրկերտի) կողմերում չարունակում է ձգվել Տիգրիսի ու Եփրատի կողմերով և հասնում Սամոսատ (Սումայսաթ), առնչվում Մարաշի սահմաններին, որի մասին հիշել ենք և ապա անցնում Լիբանանի լեռների վրայով, հասնում է Սուրբ քաղաքը (Երուսաղեմ): Ապա Ռամլայից Ֆուսթաթ ընթացող ճանապարհի ձախ կողմով հասնում է [Եգիպտոսի] Մուկաթթամ լեռը և չարունակելով մինչև հարավային Եգիպտոս (Սաիդ), միանում է Նուբիայի լեռներին, Նեղոսի երկու կողմերով[...]:

Ապա այս լեռները որոշ տեղերում երևում են քարացած ձևով, իսկ

*այլ վայրերում փչրված ավազի լեռների կերպարանքով. մինչև Սիջիլ-մասա և մխրճվում անապատների մեջ, ինչպես վկայում են անցորդները, մինչև Աուդաղաստ և Օվկիանոս ծովը (Ատլանտյան):*

*էջ 170–171*

*Ինչ վերաբերում է Պաղեստին ջունդին (ռազմական գոտի). ապա Ասորիքի ջունդներից առաջինն է արևմուտքից մոտենալու դեպքում: [Սահմանային] Ռաֆհից մինչև Հաջր ալ-Լուջուն երկու օրվա ճանապարհ է հեծյալի համար: Իսկ լայնությունը Հոբբեից (Յաֆա) մինչև Ռիհա. երկու օրվա ճանապարհ է ոտքով [...]:*

*Պաղեստինը Ասորիքի ամենահրաշալի մասն է և նրա (Պաղեստինի) մեծագույն քաղաքը Ռամլան է, իսկ Սուրբ քաղաքը (Երուսաղեմ) նրանից հետո երկրորդն է մեծությամբ: Սա գտնվում է լեռների վրա, ուր բարձրանում են Պաղեստինի ամեն կողմերից եկած մարդիկ: Սուրբ քաղաքում կա մի մզկիթ. որից ավելի մեծը չկա Իսլամի աշխարհում:*

*Իսկ Հորդանանի մեծագույն քաղաքը Տիբերիան է. որը քաղցրահամ ջուր ունեցող լճի վրա է, որի երկարությունը տասներկու փարսախ է, լայնությունը երկու, կամ երեք փարսախ: Ունի տաք հոսող ջրերի ակեր, որոնց աղբյուրը քաղաքից երկու փարսախ հեռավորության վրա է[...]:*

*էջ 174–175*

*Դամասկոսի ջունդի (ռազմական գոտու) մայրաքաղաքը (կասաբա) Դամասկոսն է, հարթ տարածության վրա կառուցված. ընկած է լեռների մեջ և առատ ջրեր ունի. ծառեր, ցանքսեր. որոնք նրան շրջապատում են: Այդ վայրը կոչվում է Ղութա[48]: Նրա լայնությունը մեկ օթևան (մարհալա) է երկու օթևան [երկարությամբ]:*

*Նա ունի մի մզկիթ, որից գեղեցիկը և չքեղը չկա Իսլամի երկրում: Նրա պատերը և գմբեթը, որը միհրաբի վրա է բարձրանում. մակսուբայի մոտ կառուցել են սաբիները[49] և դա նրանց աղոթավայրն է եղել: Ապա անցել է [հեթանոս] հույների (յունան) ձեռքը ու նրանք իրենց կրոնական պաշտամունքն էին կատարում: Հետո անցավ հրեաների և կռապաշտ ու հեթանոս թագավորների ձեռքը: Այդ ժամանակ սպանվեց Հովհաննեսը (Մկրտիչ) Զաքարիայի որդին և նրա գլուխը դրվեց այս մզկիթի դռան վերևում, որը կոչվում է Բաբ Ջայրուն: Ապա քրիստոնյաները տեր դարձան շենքին ու նրանց եկեղեցին դարձավ և այստեղ իրենց կրոնական պաշտամունքն էին կատարում:*

*Վերջապես եկավ իսլամը և այն անցավ մահմեդականներին, որոնք այն մզկիթի վերածեցին: Բար Ջայրանի վրա ղրվեց նաև Հուսայն իբն Ալիի[50] գլուխը, այն տեղում, ուր Հովհաննեսի Զաքարիայի որդու գլուխը կար:*

*Վալիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] շինացրեց և հատակը մարմար փռեց: Նրա ներքին պատերը երփներանգ մարմարով պատեց և նրա սյուները բծավոր մարմարով ծածկեց, իսկ սյուների խոյակները ոսկով պատեց: Միհրաբը ոսկեզօծեց ու դոհարներով զարդարեց, իսկ առաստաղը ոսկով պատեց և արձանագրություններ դրոշմեց, ինչպես նաև պատերի վրա: Ասվում է, որ միայն այս շենքի վրա ամբողջ Ասորիքի մի քանի տարվա հարկերը ծախսեց: Նրա կտուրը կապարով ծածկեց և, երբ կամենում էին լվանալ, ջուր էին թափում և ջուրը մզկիթի ամեն կողմերից կանոնավորապես ծորում էր:*

*Ասորիքի հարկաքանակը Մրվանյանների (Օմայանների) օրոք մեկ միլիոն ութ հարյուր հազարից ավելի էր:*

*Դամասկոսի սահմանների մեջ է Բաալբեկը, որը լեռան վրա կառուցված քաղաք է: Նրա բոլոր կառուցվածքները քարից են, նրանում կան պալատներ՝ հսկայական սյուների վրա կառուցված[51]: Ասորիքի հողում չկան սրանից ավելի հրաշալի կամ մեծ քարե կառույցներ:*

*Սա մի հարուստ քաղաք է, առատ ընտիր բերքով ու մրգով, առատ ու էժան: Նա մոտ է Բեյրութ քաղաքին, որը Ռումի (Միջերկրական) ծովի ափին է և նրա նավահանգիստն է: Այստեղ է Ասորիքի ու նրա բոլոր ջունդերի զորակայանը և այստեղ են հավաքվում զորակոչի ժամանակ:*

*Բեյրութը Աուզաիի (իրավագետ) նստավայրն է եղել: Նրանում կան արմավենիներ, շաքարեղեգ և առատ բերքեր: Նա ծովային առևտրի կենտրոն է ներմուծման և արտահանման համար: Լավ ամրացված քաղաք է, ամուր պարսպով, բնակչությունը ունի լավ հատկանիշներ, պաշտպանվում է թշնամիներից ու նրա վարքը գովելի է ամեն տեսակետից:*

*էջ 176*

*10. Եմեսայի ջունդի (ռազմական գոտի) գլխավոր քաղաքը Եմեսան է, որը նույնպես հարթ և բարեբեր դաշտում է: Նրա չեն վիճակում գտնվելու ժամանակ առողջարար օդ ուներ և իսլամի ամենալավ հողերից էր: Նրա ժողովուրդը ուներ թերություններ ու հաջողակություն և ահա հոռոմները մի քանի անգամ ներխուժեցին ու տակնուվրա արեցին: Նրանում չկան կարիճներ և օձեր ու եթե բերվեն, կսատկեն: Ունի ջրեր, ծառաստաններ, առատ ցանքսեր և անասուններ և նրա չրջակա գավառները (ռաստակ) առանց ոռոգման (անձրևով)*

*լին ջրվում: Այստեղ կա մի եկեղեցի, որի մի մասը մայր մզկիթ է, իսկ մյուս մասը քրիստոնյաներին է պատկանում և նրանք ունեն իրենց «զոհասեղանը» (հայքալ) և խորանը ու նրանց եկեղեցին Ասորիքի ամենամեծ եկեղեցիներից մեկն է:*

*Մեր օրերում հոռոմները ներխուժեցին ու նրա դաշտերը ապականեցին ու ավերեցին [ամեն ինչ]: Եմեսայի բոլոր ճանապարհները թե՛ շուկաներում, թե՛ փողոցներում քարով սալահատակված են: Սակայն նրանում անիշխանությունն ուժեղացավ, երբ հոռոմները ներխուժեցին և նրա տիրակալը հեռացավ, ապա որոշ մարդիկ. որոնք հոռոմների ձեռքից ազատվել էին, նորից հաստատվեցին: Անապատի [բեդվիները] ասպատակեցին թե՛ արվարձանները, թե՛ շրջակա գավառները: Կարծում եմ, որ հոռոմները կենդանի շունչ չեն թողել:*

*Տորտոսը (Տարտուս, Անթարթուս) բերդ է ծովի ափին և Ասորիքի բնակչության համար սահմանային ամրություն է: Նրանում կա Օսման իբն Աֆֆան [խալիֆայի] Ղուրանը (մուսհաֆ): Նրա շուրջը կա պարիսպ, որը նրան պաշտպանում է անապատի [բեդվիներից]: Նրանք մի քանի անգամ համառ դիմադրեցին հոռոմներին հուսահատական վիճակում գտնվելու պատճառով: Այս է պատճառը, որ Նիկեփոր [կայսրը] շատ չհամառեց [գրավելու]:*

*Շայզարը և Եպիփանիան (Համա) երկու փոքրիկ քաղաքներ են բարեկարգ, առատ ջրերով, ծառաստաններով, ցանքսերով, պտուղներով, բանջարեղենով և բավարար չափով ամրակուռ են պաշտպանվելու համար:*

*էջ 177*

*11. Կիննասրին ջունդի (ռազմական դոտու) գլխավոր քաղաքը Հալեբն է, որը չեն էր, խիտ բնակչությամբ, լի հարստությամբ, ընկած էր Իրաքից եկող ճանապարհի վրա, որն ընթանում է դեպի Սահմանային ամրությունների գոտին և Ասորիքի մյուս ջունդերը: Հոռոմները գրավեցին այն (հոռոմները գրավեցին երեք հարյուր յոթանասունից (980–981) հետո): Նա ունի քարաշեն ամուր պարիսպ, որը սակայն չպաշտպանեց նրանց թշնամուց, Սայֆ ալ-Դաուլայի[52] վատ կառավարման և նրա [որոշ մասերում] քայքայված լինելու պատճառով: [Հոռոմները] մայր մզկիթը կործանեցին, ժողովրդին գերեվարեցին ու վառեցին այն (քաղաքը): Ունի փոքր միջնաբերդ, որը մեր օրերում է վերականգնվել, ուր որոշ մարդիկ ապաստանեցին Հալեբի գրավման ժամանակ և փրկվեցին: Սակայն Հալեբի գրավման ժամանակ թե՛ օտարների, թե՛ քաղաքի ժողովրդի ապրանքները և պիտույքները փչացան. շատերը կոտորվեցին ու հասարակ ժողովրդից մեծ չափով կոտորվեցին և այդ մասին ստույգ տեղեկությունները կարող են*

մարդկանց տառապանք պատճառել և վհատեցնել խսլամի և մահմեդականներին:
Նա (Հալեբը) ունեցել է գեղեցիկ շուկաներ, բաղնիքներ և մեծ իջևանատներ (փանադիկ), բացաստաններ, տնային լայն բակեր, չեյխեր և ընտիր բնակչություն: [Մեր ժամանակներում, այսինքն Հիջրայի հինդ հարյուր յոթանասուն (1174–1175) թվականից հետո, ավելի լավ վիճակում է քան եղել է և առավել չեն է, լի բնակչությամբ, կան բազմաթիվ չեյխեր, բարձր խավի մարդիկ, իսկ նրա բերդը անառիկ է, չատ ամուր և անհնար է գրավել]:
Այժմ նրա (քաղաքի) ամիրի ստորության և ագահության հետևանքով երկու կողմից ճնշված է. մի կողմից նա հոռոմների ձեռքում է և ամեն մի մարդ իր տան ու խանութի համար գլխահարկ է վճարում, իսկ մյուս կողմից ամիրը որևէ էժան կամ թանկ ապրանք, որ բերվում է, գնում ու չնչին գնով վաճառում է բնակիչներին, ամենաայլանդակ ու անարգ ձևով:

էջ 178

Կիննասրինը մի քաղաք է, որի անվամբ կոչվել է այս գավառը (քուրա): Այս կողմերի ամենաքիչ չինություններ ունեցող [քաղաքներից է], թեև հաճելի արտաքին է ունեցել և մատակարարության կենտրոն է եղել իր [մթերքների էժանությամբ, առատությամբ և առատ ջրերով: Հոռոմները կործանեցին և կարծես երբեք գոյություն չի ունեցել, բացի որոշ ավերակներից և ինչպիսի՜ ավերակներից]:

էջ 179

12. Ավասիմը (ապաստան)[53] գավառի անունն է և ոչ թե քաղաքի: Նրա մայրաքաղաքն (կասաբա) է Անտիոքը, որը Դամասկոսից հետո Ասորիքի ամենաբարեկարգ քաղաքն է: Մինչև օրս նրա չուրջը կա ժայռ քարե պարիսպ, իսկ նրա վրա իշխում է մի լեռ: Ունի դաշտեր, արոտավայրեր, ծառաստաններ, ջրաղացներ և այլ միջոցներ, որոնք բավարարում են բնակչությանը: Ասվում է, որ ձիավորը նրա պարսպի շուրջը մեկ օրում կարող՝ է պտտվել: Ունեն առուներ, որոնք հոսում են նրանց շուկաների, տների, փողոցների ու մայր մզկիթի միջով: Նա (Անտիոքը) ունեցել է կալվածքներ, գյուղեր ու բարեբեր հողեր: Սակայն թշնամին գրավեց ու տիրեց նրան: Թեև նախօրեին, երբ դեռ մահմեդականների ձեռքում էր, արդեն վիճակը վատացել էր, ապա այժմ էլ ավելի խանգարվեց: Հոռոմներն այն նվաճեցին [երեք հարյուր] հիսունինը (969–970) թվականի սկզբին: Ոչ ոք նեղություն չքաշեց հոռոմների մի մազին դիպչել, ոչ մի փորձ չկատարվեց քաղաքը փրկելու:

Էջ 180–181

13. Բալիսը փոքրիկ քաղաք է Եփրատի արևմտյան ափին: Իրաքի կողմից Ասորիքի առաջին քաղաքն է: Այնտեղ գնացող ճանապարհը բանուկ էր. նրանից մինչև Եգիպտոս և այլ վայրեր գնացող հարթ ճանապարհ կա: Սա Ասորիքի ժողովրդի նավահանգիստն էր Եփրատի ափին, սակայն Սայֆ ալ-Դաուլայից հետո նրա շենքերը անշքացան, կարավաններն ու վաճառականներն անհետացան: Քաղաքն ունի շատ հին պարիսպ: Նրա և Եփրատի միջև պարտեզներ կան: Ամենակարևոր բերքերը ցորենն ու գարին են: Այնտեղ պատրաստում են շատ առատ օճառ:

Բալիսի (Բարբալիսոս) մոտ կա Մամբուկ (Մանբիջ) քաղաքը, որը բերքառատ և ամրացված քաղաք է, բաղում հին շուկաներով, ունի բազմաթիվ բյուզանդական (ռումիյա) հնություններ: Այնտեղ պատրաստում են շամչից ծամելու քաղցրեղեն (ղաբիբ նաթիֆ), որը պատրաստում են ընկույզով, պիստակով, քնջութով, որի նմանը տեսել եմ միայն Բուխարայում, որը նրանից քաղցր էր: Բուխարացիները նրան բուրումնավետ նյութեր են ավելացնում: Ունի որթատունկ, որը չոռոգված հողի վրա է աճում. շատ առատ է և նրա շամիչը տարվում է Հալեբ և այլ վայրեր: Այս քաղաքը գտնվում է անապատային դաշտում, բայց ունի խոնավ հող, որը կարմիր է կամ դեղին քրքմագույն. Նրա հողերի մեծ մասը արհեստական ոռոգում չունի: Շատ հին պարիսպ ունի:

Նրան մոտ է Սանջա քաղաքը, որը փոքրիկ է և կողքին ունի քարե կամուրջ, որը կոչվում է Սանջայի կամուրջ: Իսլամի երկրում չկա ավելի հրաշալի կամ ավելի մեծ կամուրջ և այն օրինակ են բերում, ասելով աշխարհի հրաշալիքներն են Եդեսիայի (Ռուհա) եկեղեցին ու Սանջայի կամուրջը:

Սամոսատ քաղաքը նույն Եփրատի ափին է և մոտիկ է Ջիսր Մանբիջ կոչված քաղաքին: Սրանք երկու փոքր ամրացված քաղաքներ են և նրանց դաշտերը լավ ջրված են իրենց ջրերով, սակայն մշակելի դաշտերը չեն ոռոգվում և նրանց ջուրը գալիս է Եփրատից:

Էջ 181

14. Մալաթիան մի մեծ քաղաք էր և Սահմանային ամրությունների գոտում (Սուղուր) ամենափառավորն էր, ամենալավ զինվածը և քաջարի զորք ուներ: Այս շրջանը (Միջագետքի սահմանային ամրությունների գոտին) տարածվում է Ամանոսի (Լուքքամ) լեռներից մինչև Ջազիրայից այն կողմ (հյուսիս) ընկած մասերը: Նրանում կան բազմաթիվ լեռներ, որոնց վրա առկա են բոլորին մատչելի ընկուզե-

նիներ, նշնիներ, որթատունկեր, նռնենիներ և այլ ձմեռային և ամառային մրգերի ծառեր, որոնք ոչ մի տիրոջ չեն պատկանում: Այժմ նա Հոռոմների երկրում (Ռում) ամենահզոր քաղաքներից է: Այնտեղ ապրում են հայեր: Նա [հոռոմների կողմից] նվաճվել է երեք հարյուր տասներեք (931) թվականին և դա իսլամի երկրների համար առաջին մեծ աղետն էր Սահմանային ամրությունների գոտում: Դրանից հետո Սահմանային ամրությունների գոտու բնակիչների վրա աղետները շատացան, նրանց անձերի, ունեցվածքի, կալվածների ու նրանց տիրակալների նկատմամբ, սակայն այս բոլորը մոռացվել է:

Հիսն Մանսուր կոչված քաղաքը մի փոքրիկ ամրացված վայր էր, որն ուներ մզկիթ, շրջակա գավառներ, գյուղեր, որոնք ոռոգում չունեին, սակայն ճակատագիրը որոշել էր նրանց կորստյան մատնել համդանիների ու հոռոմների ձեռքով:

Հաղասն ու Մարաշը երկու փոքր քաղաքներ էին, որ նվաճեցին հոռոմները դրանից առաջ, սակայն Սայֆ ալ-Դաուլա Ալի իբն Աբդալլահը վերանվաճեց, իսկ հոռոմները նորից եկան ու գրավեցին մահմեդականների ձեռքից: [Սակայն մահմեդականները նվաճեցին այն Ռումի տեր Մասուդ իբն Կըլըջ Արսլան ալ-Սալջուկիի[54] ձեռքով հինգ հարյուր քառասունհինգ (1150-1151) թվականին և այժմ մնում են մահմեդականների ձեռքում]: Նրանք ունեին ցանքսեր, ծառաստաններ, մրգատու ծառեր և երկուսն էլ սահմանային ամրություններ էին, որտեղ մահմեդականները կայազորներ էին պահում, սրբազան պայքար մղում և ավար վերցնում: Սակայն այս մարտունակությունը թուլացավ, գավառներն անտեր մնացին, բարիքները վերացան, տիրակալները (իշխողները) դարձան չահամոլ, իսկ ժողովուրդը՝ խռովարար. և այսպիսով բարեպաշտ մարդիկ մեռան, երկիրը ավերվեց, սրբազան պայքարը (ջիհադ) վերացավ և իրականացավ Բարձրյալի հայտնությունը. «Եթե կամենաք մի քաղաք կործանել, մեր պատվերներն առաքենք մեծահարուստներին»:

Հարունիյան Ամանոս (Լուքքամ) լեռներից արևմուտք գտնվող կիրճերից մեկում կառուցված մի փոքրիկ բերդ էր, որը շինել էր Հարուն ալ-Ռաշիդը: Ես այն տեսել եմ, երբ բարեկարգ վիճակում էր. նրա բնակչությունը մեծ համառությամբ ու քաջությամբ սրբազան պատերազմ (ջիհադ) էր մղում, արշավում էր Ռումի երկիրը, հանկարծակի ներխուժում և ավար էր բերում: Սակայն հոռոմները նվաճեցին այն:

Ալեքսանդրեկը (Իսքանդարուն) նույնպես մի բերդ էր Ռումի (Միջերկրական) ծովի ափին: Այստեղ կային արմավենիներ, մշակված դաշտեր, բերք ու առատություն: Սակայն մտավ թշնամին, նվաճեց ու ապականեց:

Նույնպես և Տինատը մի բերդ էր ծովի ափին, ուր սոճիներից փայտ

էին կտրում և ապա անսահման քանակությամբ տանում Ասորիք, Եգիպտոս ու Սահմանային ամրությունների գոտին: Այստեղ կային ուժեղ ռազմիկներ, որոնք լավ գիտեին հոռոմների երկրի թույլ կողմերը և նրանց ծանծաղուտներն ու վտանգավոր տեղերը:

Քանիսան ևս մի բերդ էր, ուր կար մզկիթ և սահմանային ամրություն, որը մեկուսացած էր ծովի ափից և մոտ էր Մուսակկաբ բերդին, որը հիմնել էր Օմար իբն Աբդ ալ-Ազիզը ու շենացրել: Այստեղ նա ուներ մզկիթ, ուր կար իր ձեռքով դրված Ղուրան (մուսհաֆ): Նրա բնակիչները ազնիվ ցեղի մարդիկ էին, Աբդ Շամսի տոհմից, աշխարհից հրաժարված ու շահ չփնտրող և ապրում էին բարեգործական նպաստ ստանալով: Նրանք ամենքը ոչնչացան:

Անազարբան մի քաղաք էր Ղաուրի քաղաքների նման: Այնտեղ աճում էր արմավենի, հողը բարեբեր էր, հարուստ մրգերով ու ցանքսերով: Սա այն քաղաքն է, որտեղ Վասիֆ ներքինին (խադիմ) կամենում էր մտնել Ռումի երկիրը և Մուտադիդ [խալիֆան] հասավ նրան: Նա ներսից ու դրսից բարեկարգ էր: Պարսպից ներս լավ վիճակում էր և ամեն ինչում հաճելի:

էջ 183-184

15. Մամեստիան բաղկացած է երկու քաղաքներից, որոնցից մեկը կոչվում է Մամեստիա, իսկ մյուսը՝ Քաֆարբայա, որոնք Պիրամոս (Ջայհան) գետի երկու ափերին էին· Նրանց միացնում էր մի քարե կամուրջ և երկուսն էլ ամրակուռ են, բարձունքի վրա տեղավորված: Նրա մայր մզկիթում նստած մարդը կարող էր հայացքով ընդգրկել ծովի կողմից չորս փարսախ հեռավորությամբ մի դաշտ, որը իր առջև սփռված կլինի մի կանաչ ու ծաղկուն ծածկոցի նման: Նա (Մամեստիան) ունի հոծ բնակչություն, մեծ կարողություն, բազում շուկաներ և բարեկարգ վիճակ: Պիրամոսը մի գետ է, որ բխում է Ռումի երկրից ու հասնում մինչև Մամեստիա և նրա շրջակա գավառը, որը կոչվում է Մալուան, ապա թափվում է Ռումի (Միջերկրական) ծովը: Նրա վրա եղել են բազում գյուղեր ու կալվածներ, հոտեր, անասուններ: Այժմ նրա բնակիչներից մի կենդանի շունչ չի մնացել:

Ադանան նույնպես մի քաղաք էր Մամեստիայի երկու կողմերից մեկի նման, Սարոս (Սայհան) գետի վրա, նրա արևմտյան ափին: Սարոսը Պիրամոսից փոքր է, նրա վրա կա մի շատ զարմանահրաշ կամուրջ: Այս գետը ևս բխում է Ռումի երկրից: Այս քաղաքը ևս հոծ բնակչություն ուներ և ամեն տեսակետից բարեկարգ էր ու գտնվում էր Տարսոնի ճանապարհի վրա:

Իսկ Տարսոնը այնպիսի հայտնի քաղաք է, որ ավելորդ է նրա հոչակավոր լինելը շեշտել: Սա մեծ քաղաք էր և այն հիմնել (վերա-

կանգնել) է Մամուն իբն Ռաշիդ [խալիֆան], քաղաքի վերածել ու կրկնակի քարե պարիսպներ է կառուցել: Այստեղ եղել են ձիավորների ու հետևակ ռազմիկների ջոկատներ, ռազմամթերք, ռազմական գործիքներ, անասուններ, զենքեր, շինություններ, իսկ հողը բարեբեր էր, առատ բերքով և քաղաքը՝ հարուստ ու ամեն ինչով ապահովված: Ըստ ամենայնի, այնպիսի վիճակում է եղել, որ ոչ անհավատները, ոչ էլ մահմեդականները չունեին այսպիսի սահմանային ամրություն: Մահմեդական բոլոր կառավարիչները միայն լիակատար հաղթանակ ու փառք են ձեռք բերել: Թե ցամաքում, թե ծովի վրա արշավանքները միայն հաղթանակով, ավարով ու գերեվարությամբ են վերջացել, որը հազիվ կարելի է խոսքերով պատմել կամ ստուգել: Նրա (Տարսոնի) ու Ռումի երկրի միջև կային անմատչելի ճյուղավորված լեռներ, որոնք սկսում են Ամանոսի լեռներից ու պատնեշ են կազմում երկուսի միջև: Լսել եմ բազում խելացի, տրամաբանող, գիտուն, խորաթափանց և քաղաքագետ մարդկանցից, թե այստեղ (Տարսոնում) և նրա շրջանում եղել է հարյուր հազար ձիավոր իմ այցելությունից քիչ ժամանակ առաջ: Բանն այն է, որ Սիջիստանի, Քիրմանի, Ֆարսի, Խուզիստանի, Ռեյի, Սպահանի (Իսֆահան), ամբողջ Ջիբալի, Թաբարիստանի. Ջազիրայի, Արպատականի, Իրաքի, Հիջազի, Եմենի, Ասորիքի բոլոր մասերի, Եգիպտոսի, Մաղրիբի ամեն մի մեծ քաղաքի բնակիչները այստեղ ունեին տներ (դար) և հոգևորական ռազմիկների մենաստաններ (ռիբաթ) ու կարող են այդ երկրների ղազիները (հավատի ռազմիկներ) իջևանել ու հսկել: Նրանց հատկացվում էին հասույթներ, օժանդակության նպաստներ, քանզի տիրակալները և մեծահարուստները կամավոր օգնում էին հանուն բարեգործության և չկար մի պաշտոնյա կամ կարևոր անձնավորություն, որ այնտեղ վակֆ արած չլիներ կալվածներ՝ հողամշակներով, երկրագործներով ու բերքերով, ծածկած շուկաներով (մուսակկաֆ), պանդոկներով (ֆանադիկ), տներով, բաղնիքներով, իջևանատներով (խան), բացի կտակներից՝ ոսկով, արծաթով ու անասուններով:

Այս բոլորը կործանվեց ու նրանք (բնակիչները) ես վերացան. կարծես այնտեղ չէին ապրել և չէին բնակվել ու եղավ այնպես, ինչպես Բարձրյալն ասել էր. «արդյոք զգու՞մ ես նրանց ներկայությունը կամ լսո՞ւմ ես որևէ մրմունջ»:

Աուլասը ծովի ափին մի բերդ էր, ուր բարեպաշտ մարդիկ ամրացրել էին: Նրանք Ալլահի ծառայությանը նվիրված էին: Դա Ռումի (Միջերկրական) ծովի վրա շեն վայրն էր և դրանով էր սկսում թշնամին իր հարձակումները:

Բաղրասը մի բերդ էր, ուր մզկիթ կար և գտնվում էր Սահմանային ամրությունների (Սուղուր) ճանապարհին: Նրանում կար հյուրատուն (դար ղիաֆա), որը հիմնել էր Զուբայդան և Ասորիքում մահմե-

ղականների ունեցած միակ հյուրատունն էր:

էջ 184

16. Մեռյալ ծովը մաս է կազմում Ղաուրին, Ասորիքի մուտքի մոտ և Զուղարին մոտիկ: Մեռյալ է կոչվել, քանզի նրանում կենդանի արարածի ոչ մի նշան չկա [...]:

էջ 185–186

17. Ինչ վերաբերում է Ասորիքի ճանապարհներին, ապա դա երկարությամբ ընթանում է Մալաթիայից մինչև Ռաֆհ (Եգիպտոսի սահմանը):

Ճանապարհը Մալաթիայից Մանբիջ չորս օր է, Մանբիջից Հալեբ՝ երկու օր, Հալեբից Եմեսա (Հիմս)՝ հինգ օր, Եմեսայից Դամասկոս՝ հինգ օր, Դամասկոսից Տիբերիա՝ չորս օր, Տիբերիայից Ռամլա՝ երեք օր, Ռամլայից Ռաֆհ՝ երկու օր: Ընդամենը քսանհինգ օր:

Իսկ լայնությամբ ընթացող ճանապարհը որոշ տեղերում ավելի է, քան այլ վայրերում: Նրա առավելագույնը գտնվում է երկու ծայրերում:

Նրա մի ծայրն սկսում է Եփրատից Ջիսր Մանբիջի վրայով Մանբիջ, ապա Կուրուս, որը Կիննասրինում է, ապա Ավասիմ Անտիոքի՝ սահմանի վրա, անցնում է Ամանոս (Լուքքամ) լեռնաշղթան դեպի Բայաս ու հասնում Տինատ, հետո Մուսակկար, Մամեստիա, Ադանա, Տարսոն: Այս բոլորը տասը օթևան (մարհալա) է:

Իսկ մյուս ծայրն սկսվում է Պաղեստինից: Նախ Հոբբեից (Յաֆա), որը ծովի ափին է, ճանապարհը հասնում է Ռամլա, ապա Սուրբ քաղաքը (Երուսաղեմ), Երիքով (Ռիհա, Արիհա), Զուղար, Ջիբալ (լեռներ) Շուրատ, մինչև որ հասնում է Մաան: Նրա արձանագրված չափը վեց օթևան է:

Այս երկու ճանապարհների միջև Ասորիքը շատ նեղ է և Հորդանանի, Դամասկոսի ու Եմեսայի [ջունդերը] երեք օթևանից ավելի չեն: Դամասկոսից Բեյրութ, որը Ռումի (Միջերկրական) ծովի վրա է, երկու օրվա ճանապարհ է [ոտքով] դեպի արևմուտք: Դամասկոսից մինչև Ղութայի հեռավոր ծայրը, որը արևելքում հասնում է անապատ՝ մեկ օր է: Եմեսայից Տորտոսա (Անթարթուս), որը Ռումի ծովի վրա է՝ երկու օր է ոտքով դեպի արևմուտք, Եմեսայից Սալամիա, որն անապատի վրա է դեպի արևելք՝ մեկ օր, Տիբերիայից Տյուրոս (Սուր), որն արևմուտքում ծովի վրա է՝ մեկ օթևան (մարհալա): Նրանից հետո անցնելով Ֆիկը դեպի Բանու Ֆազարայի հողերը արևելք՝ մեկ օթևանից պակաս:

*Ահա Ասորիքի երկարության ու լայնության ճանապարհները:*

*էջ 186-187*

*18. Միջանկյալ տարածությունների համար սկսենք Պաղեստինով, քանզի նա Ասորիքի առաջին ջունդն (ռազմական գոտի) է արևմուտքի (մաղրիբ) կողմից: Նրա գլխավոր քաղաքը (կասաբա) Ռամլան է: Նրանից Հոբբե (Յաֆա) մեկ օթևան է, Ռամլայից Ասկալոն (Ասկալան)՝ մեկ օթևան, այնտեղից Ղաղղա՝ մեկ օթևանից պակաս, Ռամլայից Սուրբ քաղաք (Երուսաղեմ)՝ մեկ օր, Սուրբ քաղաքից Մասջիդ (մզկիթ) Իբրահիմ՝ մեկ օր, Սուրբ քաղաքից Երիքով (Ռիհա, Արիհա)՝ մեկ օթևան, Սուրբ քաղաքից Բալկա՝ երկու օթևան, Ռամլայից Կեսարիա՝ մեկ օթևան, Ռամլայից Նաբուլուս՝ մեկ օթևան, Երիքովից Զուղար՝ մեկ օթևան, Զուղարից Ջիբալ ալ-Շարատ՝ մեկ օթևան, Ջիբալ Շարատից դեպի ալ-Շարատի վերջը՝ մեկ օթևան:*

*Հորդանանի գլխավոր քաղաք (կասաբա) Տիբերիայից Տյուրոս (Սուր) մեկ օր է, այնտեղից Ակաբատ Ֆիկ՝ մեկ օթևան, սրանից Բիսան՝ երկու թեթև օթևան, իսկ սրանից Ակրա (Աքքա)՝ մեկ օր: Հորդանանը Ասորիքի ամենափոքր ջունդն է, ամենակարճ ճանապարհներով և արդեն երկար տարիներ է, որ կառավարվում է Աբու Մանսուր Ահմադ իբն ալ-Աբբասի ձեռքով ավելի շատ ազատ կառավարմամբ քան պայմանագրով, երկու հարյուր հազար դինար [հարկերի] դիմաց:*

*Դամասկոսի ջունդի գլխավոր քաղաքը Դամասկոսն է և նրանից Բաալբեկ երկու օր է, սրանից Բեյրութ՝ երկու օր, Բեյրութից Տրիպոլիս՝ երկու օր, Բեյրութից Սիդոն՝ երկու օր, Դամասկոսից Ազրիատ՝ չորս օր և մինչև Ղութայի վերին մասը՝ մեկ օր և դեպի Հաուրան ու Բասնիյա՝ երկու օր:*

*Կիննասրինի ջունդի մեծ քաղաքը Կիննասրինն է, սակայն կառավարչությունը (իմարա), շուկաները, հիմնական բնակչությունը և որոշ վարչական ծառայությունները փոխադրվել են Հալեբ: Հալեբից Բալիս երկու օր է, Հալեբից Կիննասրին՝ մեկ օր, Հալեբից Ասարիբ՝ մեկ օր, Հալեբից Կուրուս՝ մեկ օր, Հալեպից Մանբիջ՝ երկու օր, Հալեբից Խունասիրա՝ երկու օր:*

*էջ 187-188*

*19. Արդեն հիշել ենք, Ավասիմի մասին պատմելիս, թե ի՞նչ էր կատարվել նրա հետ, ընկնելով հոռոմների ձեռքը, ուստի ավելորդ է կրկնել: Ավասիմի գլխավոր քաղաքն (կասաբա) է Անտիոքը, որտեղից մինչև Ադանա երեք օթևան (մարհալա) է, նրանից Բաղրաս՝ մեկ օր,*

*նրանից Ասարիր՝ երկու օր, նրանից մինչև Եմեսա՝ չորս օթևան, նրանից Մարաշ՝ երկու օր, նրանից Հադաս՝ երեք օթևան:*

*Սահմանային ամրությունների գոտին չունի [ընդհանուր] գլխավոր քաղաք (կասաբա) և ամեն քաղաք ինքնուրույն է: Մանբիջը Սահմանային ամրություններին մոտիկ է և նրանից մինչև Եփրատ մի թեթև օթևան է: Մանբիջից մինչև Կուրուս երկու օթևան է, նրանից մինչև Մալաթիա՝ չորս օր, մինչև Սամոսատ՝ երկու օր, մինչև Հադաս՝ երկու օր: Սամոսատից մինչև Շիմշաթ՝ երկու օթևան, Շիմշաթից Հիսն Մանսուր՝ մեկ օր, Հիսն Մանսուրից Մալաթիա՝ երկու օր, Հիսն Մանսուրից Զապետրա (Զիրաթրա)՝ մեկ օր, մինչև Հադաս՝ մեկ օր. Մալաթիայից Մարաշ՝ երեք մեծ օթևան, իսկ Մարաշից Հադաս՝ մեկ օր:*

*Սրանք են Ջազիրայի (Վերին Միջագետքի) Սահմանային ամրությունների ճանապարհները:*

*Ինչ վերաբերում է Ասորիքի Սահմանային ամրությունների գոտուն, ապա Ալեքսանդրեկից մինչև Բայաս մեկ թեթև օթևան է, Բայասից Մամեստիա՝ երկու օթևան, Մամեստիայից Անարզարա՝ մեկ օթևան, Մամեստիայից Ադանա՝ երկու օթևան, Ադանայից Տարսոն՝ մեկ օթևան, Տարսոնից Աուլաս, որը Ռումի (Միջերկրական) ծովի ափին է՝ երկու օր, Տարսոնից Ջաուզատ՝ երկու օթևան, Տարսոնից Բայաս, որը Ռումի ծովի ափին է՝ երկու փարսախ, Բայասից Քանիսա և Հարունիյա՝ մեկ օրից պակաս, Հարունիյայից Մարաշ, որը Ջազիրայի սահմանային ամրություններից է՝ մեկ օթևան:*

*Սրանք են Սահմանային ամրությունների գոտու բոլոր ճանապարհները:*

*էջ 188–189*

*20. Արդեն վերջացրել եմ այն, ինչ ուզում էի ասել Ասորիքի մասին, այն բանից հետո, երբ խոսել էի Մաղրիբի, Եգիպտոսի (Միսր) և Ասորիքի մասին, որպես Ռումի (Միջերկրական) ծովի վրա ընկած երկրների և վերջացրի նաև այս նկարագրությունը:*

*Հնարավորություն չկա հիշելու այն [հողերի] հարկերը, որոնք արդեն Ասորիքի ժողովրդի ձեռքում չեն, իսկ Ասորիքի մնացածը, որը մահմեդականների ձեռքին է, որի վրա նրանց տիրապետությունը իրական է և հրամանը գործադրվում է, ապա դա այն է, որ գտնվում է Ռումի (Միջերկրական) ծովի ափին Տրիպոլիսից և Անափայից մինչև Հոբբեի (Յաֆա) և Ասկալոնի կողմերը, քանզի Լաոդիկեն և ինչ որ նրան է պատկանում ու նրա դիմաց է գտնվում, նրանց հարկատվության (գլխահարկի վճարման) և տիրապետության տակ է: Ահա այս մնացածը հռոմների ձեռքին է և նրանց իշխանության ու բռնակա-*

լության տակ է, որը սրով են նվաճել և նրանց իշխանության տակ: Նրա (Ասորիքի) բնակիչներից շատերը համակերպվել են գլխահարկ վճարել, սակայն կարծում եմ, որ նրանք ի վերջո քրիստոնյա կդառնան, ազատվելու գլխահարկի նվաստացումից և կամենալով բարեկարգ ու հանգիստ կյանք վարել:

Մնացածների (Ասորիքում) հարկերի քանակը չեմ կարող հիշատակել, քանզի երկար տարիներից ի վեր ոչ մի իսկական օրենք (կանուն) չի եղել կամ պատշաճ ու արդարադատ ձևով ոչինչ չի արվել: Բանն այն է, որ [երեք հարյուր] քառասուն (951-952) թվականից ի վեր ամեն մարդ մյուսի վրա ձեռք է գցում, ամեն մեկն ուզում է մի բան ձեռք բերել, ինչ էլ որ այդ օրը հնարավոր է. ոչ ոք չի ուզում մտածել շենացման մասին և ոչ էլ դրան ուշադրություն է դարձնում:

Հնում նրա հարկերի քանակը, այն բանից հետո, երբ նրանից հանվում էին կառավարիչների կարիքները, զորքերի ռոճիկը, պաշտոնյաների, քարտուղարների, վարչական ասպարեզի աշխատողների վարձքերը, երեսունինը միլիոն հինգ հարյուր հազար դիրհեմ էր լինում:

Ես պրպտել եմ Ասորիքի հասույթի հաշիվները, որոնք պարունակում են գավառների ու ջունդերի (ռազմական գոտիներ) հարկերը և ինչպես տեղեկացել եմ Ալի իբն Իսայի ու Մուհամմադ իբն Սուլայմանի պաշտոնյաներից երկու հարյուր իննսունվեց (908-909) և երեք հարյուր վեց (918-919) տարիների համար ամեն ինչով, ներառյալ արքունի գանձարանի (բայտ ալ-մալ) իրավունքը, ավելորդ հարկերը և առանց հաշվելու պաշտոնյաների վարձքը, գումարը դառնում էր երեսունինը միլիոն դիրհեմ:

## ՀԱՅԱՍՏԱՆ, ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ԵՎ ԱՌԱՆ

*էջ 331 - 355*

Այժմ դառնանք արևմուտք դեպի հոռոմների երկիրը և նկարագրենք նրա արևելյան սահմանների վրա ընկած իսլամի* վերջին [մասերը]: Այն որից կսկսեմ, Հայաստանն է, Առանն ու Ատրպատականը (Ադարբայջան): Այս ամենը մի երկրամաս (իկլիմ) համարեցինք այն պատճառով, որ դա, ինչքան ես տեսել եմ, իմ ամբողջ կյանքում և ինձանից առաջ եղածները հաղորդել են, մի մարդու թագավորություն

---

* Այս տողերը գրելու ժամանակ թեև Բագրատունյաց Հայաստանը լրիվ անկախ պետություն էր, այսուհանդերձ արաբ մատենագիրները այն տեսակետն էին համարում էին իսլամի (խալիֆայության) երկրների մեջ և հենց այդ հիման վրա Հայաստանը միացնում էին մահմեդական աշխարհին:

է*, ինչպես Իբն Աբու-լ-Սաջը[55], նրա ծառա (ղուլամ) Մուֆլիհի, Դայսամ իբն Շագալավայհի և ալ-Մարզուբան իբն Մուհամմադի** օրոք, որը հայտնի է որպես ալ-Սալլար, մոտիկ ժամանակներում ու հին ժամանակներում, ինչպես Ֆադլ իբն Յահյան և Աբդալլահ իբն Մալիք ալ-Խուզաին և ուրիշներ:

Նրան շրջապատում են արևելքից Ջիբալը, Դայլամը և Խազարաց (Կասպից) ծովը, իսկ արևմտյան կողմից նրան սահմանակից է Հայոց երկիրը (բիլադ ալ-Արման)*** և Ջազիրայի մի մասը: Հյուսիսային կողմից նրան սահմանակից է Ալանաց երկիրը (ալ-Լան) և Կովկասի (Կաբկ) լեռները, իսկ հարավից՝ Իրաքի սահմանները և Ջազիրայի մի մասը:

Իսկ սա Հայաստանի, Ատրպատականի և Առանի քարտեզն (սուրատ) է:

[Հայաստանի], Ատրպատականի և Առանի քարտեզի վրա գտնվող քաղաքների ու գրվածքների բացատրությունը.

Քարտեզի վերևում գրված է՝ Հայաստանի, Ատրպատականի և Առանի քարտեզ, իսկ դրանից ձախ, անկյունում՝ Հյուսիս:

Աջ կողմի վերևում նկարված է ծովը, որի ափին կա Դարբանդը (Բաբ) և Շապորան (Շաբուրան): Դարբանդի մոտից սկսում է մի լեռնաշղթա, որն այստեղից ուղղվում է ձախ և նրան զուգահեռ դրված է՝ Ալանաց կողմերը, Կովկաս լեռները, Սարիրը և հարևան ազգերը: Ներքևի մասում կան հետևյալ քաղաքները՝ ալ-Լայիջան, Կաբիսի, Շաքքի (Շաքե), Կապաղակ (Կաբալա): Դրա ներքևում կա Կուր (Քուռ) գետը, որը թափվում է ծովը: Այս գետի վրա են և Լեռների հետ կապված են՝ Տփղիս (Տաֆլիս, Տիֆլիս) քաղաքը և Բարդաջը[56]: Ապա Շապորանից մի ճանապարհ անցնելով Շիրվան (Շարուան) ու Շամախի (Շամախիյա) քաղաքներով հասնում է Բարդաջ, ապա Պարտավ (Բարդաա): Պարտավից մի ճանապարհ գնում է Տփղիս և այդ ճանապարհի վրա են Դանձակը (Ջանզա), Շամխորը, Հունարակերտը[57] (Խունան) և ալ-Կալաան: Այստեղ բաց տեղում գրված է Առան (ալ-Ռան):

---

* 10-րդ դարի արաբ աշխարհագրագետները համարում են, որ Հայաստանը (և Առանը) Ատրպատականին ենթակա երկրներ են եղել: Առանն իրոք ենթակա է եղել, իսկ Հայաստանի պարագային թե՛ Սաջյանները, թե՛ Սալարյանները նկրտումներ ունեին Հայաստանի հանդեպ, որը պատմիչների մոտ արտահայտվել է որպես տիրապետություն:

** Մարզուբանը հիմնադիրն է Ատրպատականում Սալարյանների (941-983) ամիրության:

*** Հայոց երկիր (բիլադ ալ-Արման) արտահայտությունը արաբ պատմիչների մոտ տարբեր իմաստներով է օգտագործված: Այս պարագային նշանակում է Արևմտյան (բյուզանդական) Հայաստանը (Փոքր Հայք, Բարձր Հայք և այլն):

Առան գավառի (Նահիա) սահմանը հարավից Արաքսն (ալ-Ռաս) է, որի վրա է Վարդանակերտը (Վարսան), իսկ Վարդանակերտից աջ, գետի մոտ կա Բարզանդը: Ճանապարհը Պարտավից Բարդանդ շարունակվում է դեպի Արդաբիլ, Մայանիջ, Խունաջ[58], մինչև Զանջան: Բաց տեղում, Արաքս գետի վերևում գրված է Ատրպատական (Ադարբայջան), իսկ ցամաքից մի մասի վրա, որը մտնում է ծովի մեջ, այս գրության վերջում կա՝ Մուղան (Մուկան): Այս գրվածքից ցածր, ներքև թեքվող գրով, ծովի ու լեռների միջև, տարածության վրա կա ալ-Ջիլ (Ջիլան), իսկ ներքևում՝ Դայլամ: Դրանից ներքև լեռանը կպած է Դինավարը: Արդաբիլից ձախ կա մի լեռ, որի վրա գրված է Սավալան (Սաբուլան) լեռ: Արդաբիլից ձախ գնում է մի ճանապարհ դեպի Մայմադ, Ահար և Վարզական, ապա դեպի Դվին (Դաբիլ): Իսկ Դվինը կպած է մի լեռան, որի վրա գրված է Մեծ Մասիս (Հարիս) և Փոքր Մասիս (Հուայրաս) լեռները: Այս լեռանը աջից կպած է Նախճավան (Նաշավա) քաղաքը: Լեռից աջ տարածության վրա գրված է Հայաստան (Արմինիա):

Արդաբիլից մի ճանապարհ գնում է Բաղեշ (Բադլիս) քաղաքը, որը լեռների ներքևի հետ է կապված: Այս ճանապարհի վրա կան՝ Սարահ, Մարաղա, Դախառական, Դավրեժ (Տաբրիզ), Սալմաստ, Խոյ (Խուվայյ), Բերկրի (Բարքարի), Արճեշ (Արջիշ), Խլաթ (Խիլաթ): Մարաղայի ու Վարզականի միջև կա Մարանդ քաղաքը: Մարաղայի կողքին, ոչ գրչի ձեռագրով գրված է՝ Հուլաղուի[59] (Հուլաքու) աստղադիտարանը, որը կառուցել է վեց հարյուր հիսունյոթ (1258–1259) թվականին*: Դրանից ցածր նկարված է Կապուտան (Քաբուդան) լիճը, որից ցածր Ուրմիա քաղաքը, նրանից ցածր՝ Ուշնու (Ուշնուհ), իսկ նրանից ձախ մի քաղաք, ի նշան որի անուն չկա: Լճից աջ, նրա ու Միանաջի միջև կա Զարարուան քաղաքը: Խունաջից ցածր Դավրեժ (Տաբրիզ) քաղաքն է:

Բաղեշից աջ, նրա և լեռնաշղթայի միջև նկարված է Խլաթի լիճը, իսկ տակին գրված է՝ Վանի ու Ոստանի[60] (Վասթան) կողմերը: Դրանից ձախ, լեռան վրա կա Արզն (Արզան) քաղաքը, իսկ նրանից ձախ լեռներից դուրս կա Նփրկերտը (Մայաֆարիկին): Նրանից ցածր անկյունում գրված է՝ արևմուտք:

Քարտեզի ներքևում լեռն են ճեղքում երկու գետեր՝ Մեծ Զաբը և Փոքր Զաբը, իսկ Փոքր Զաբից աջ կան երկու քաղաքներ՝ Սուհրավարդ և Շահրազուր: Քարտեզի աջ անկյունում գրված է՝ հարավ:

Այս կողմերի ամենահարուստ երկիրը (նահանգը) Ատրպատականն է, որի ամենամեծ և ամենալավ քաղաքն Արդաբիլն է, թեև մեր օրերում նրա վիճակը վատացել է: Նրանում է զորքի կայանը (մուասս-

* Ըստ երևույթին Իբն Հաուկալի բնագրում հավելումներ են եղել ոչ միայն ԺԲ, այլև ԺԳ դարում:

քար) և կառավարչի նստավայրը (դար ալ-իմարա) ու դիվանները և սա մի քաղաք է, որի գավառները տարածվում են երեսունով երեսուն փարսախ: Նրա շենքերի մեծամասնությունը կառուցված է կավով (թին) և աղյուսով (աջուռ):

Նրա շուրջը անառիկ պարիսպ կար, որը Մարզուբան իբն Մուհամմադ իբն Մուսաֆիր ալ-Սալլարը կործանեց, երբ վրեժ լուծեց նրա ժողովրդից այն բանի համար, որ ապստամբ էին տվել Դայսամ իբն Շադլավայհին [երեք հարյուր] երեսունմեկ (942-943) թվականին: Եվ քանի որ նրանց հետ կնքած պայմանագրի մեջ խոստացել էր, որ պարիսպը չպետք է քանդի, ապա այն քանդեց նրա վաճառականների և մեծամեծների (արբաբ) ձեռքով:

Եվ ահա պատվական, բարեկեցիկ մարդը դալիս էր իր ընտիր զգեստներով, որով մետաքսեղեն (բազզ) կամ անուշահոտություն և կամ այլ բան էր վաճառում և առնելով բրիչը (քլունգ) քանդում էր պարիսպը և նրա նման վաճառականը սրա քանդած հողը և քարերը վերցնում էր իր պատմուճանի, թիկնոցի կամ վերարկուի մեջ և տանում էր [թափում]: Նրանց թույլատրված էր այդ աշխատանքը կատարել միայն այդպիսի զգեստներով, որոնցով նրանք զարդարվում և փայլում էին: Նրանց հագուստեղենը բաղկացած էր Մերվի թանկարժեք գործվածքեղենից ու փայլուն կտորներից: [Պարիսպը] ամբողջովին քանդվեց ու անհետ դարձավ: Բնակիչները աղքատացան, նրանց ունեցվածքը վերցվեց, բռնագրավվեց: Նրանք ցրվեցին տարբեր երկրներում, լեռներում և անապատներում: Դարձան անգործ թափառականներ, խռովարարներ, ոչ մի իշխանության չէին ենթարկվում, ապավինելով սատանային և ձգտելով միայն վնասարարության և ըմբոստության: Օտարականների փողերը վերցնում էին, ունեցվածքը կողոպտում և արյունը անպատիժ կերպով թափում էին: Մի քանի հոգի ինձ պատմել են, թե մեկը մսագործին խնդրել է տալ ոչխարի այն մասը, որն ինքը նախընտրում է և նա հաճախորդի թիկնոցից կտրել է մի կտոր ու մսի հետ դրել է կշեռքի նժարին, կամ մեկ ուրիշը կտրել է հաճախորդի հագուստի թեզանիքը, իսկ մեկ ուրիշը կտրել է թաշկինակը, որպես Ալլահի դեմ խռովարարության, անիրավության և հանդգնության նշան:

Սակայն Ալլահը [խղճաց [քաղաքին] այն բանից հետո, երբ ճնշեց նրանց և կարեկցեց: Մեր օրերում նա հիվանդի նման է, համեմատելով այն ժամանակվա հետ, երբ կար շենություն և կարավաններն աշխույժ առևտուր էին կատարում:

Սա մի բարեբեր քաղաք է, էժան գներով և ունի բարեկարգ արվարձաններ և գավառներ: Ունի մի լեռ, ուր բարձրանալն ու վայրէջքը երեք փարսախ է, և կոչվում է Սաբալան, որը մեծ է, բարձր և արևմտյան կողմից նրա (քաղաքի) վրա է նայում. Նրա վրայից ձյունը

նորեք չի վերանում՝ ամառ թե ձմեռ: Քաղաքն ունի վազող գետեր, իսկ ջրհորների ջուրը քաղցր է: Հաճախ նրանում հացը թվով է ծախվում, ընդ որում հիսուն նկանակը՝ մեկ դիրհեմ:Նրա միսը մաննով է վաճառվում մեկուկես մանը՝ մեկ դիրհեմ: Մեղրը, յուղը, ընկույզը. չամիչը (զարիր) և ամեն ուտելիքներն էժան են, ձրի լինելու աստիճան: Բոլոր այն վայրերից, որոնք հռչակված են իրենց էժանությամբ, նրա հետ չեն կարող համեմատվել, քանզի նրանում կյանքը հեշտ է և ամեն ինչ առատ:

Արդաբիլին իր մեծությամբ հաջորդում է Մարաղան, որը հին ժամանակներում նահանգի (նահիա) ռազմական կայանն (մուասքար) էր եղել, կառավարչի նստավայրը (դար ալ-իմարա) և դիվանների գանձատունը: Աբու-լ-Կասիմ Յուսուֆ իբն ալ-Դաոդադ իբն ալ-Դաուդաշտը[61] այս ամենը փոխադրեց Արդաբիլ, որպես երկրում միջին տեղ գրավող վայր: Թեև Մարաղան [գերազանց է] իր առողջ կլիմայով, բազմաթիվ պարտեզներով, գետերով, ջրերով, լավորակ պտուղներով, բարիքներով և ամեն տեսակ բերքերով հարուստ քաղաք է. միաժամանակ ունի բազմաթիվ գավառներ (ռուստակ), ցանքատարածություններ, բարեկեցիկ վիճակ և այն ամենը, ինչ որ այլ երկրներ ունեն, դրա վրա ավելացրած նրա կառավարողների խոհականությունը, կալվածատերերի ու հոգևոր պետերի բազմությունը:

Նրա գյուղերից մեկում, որը կոչվում է Արդահար, կա ձմերուկի [տեսակ], որը նրա անվամբ կոչվում է ալ-Արդահարի, երկար ձևով, տգեղ տեսքով, սակայն ծայր աստիճան քաղցրությամբ ու համեղությամբ, որով նմանվում է Խորասանի հայտնի ձմերուկին:

Մարաղան ուներ պարիսպ, որը քանդեց Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջը[62], այնպես ինչպես Սալլարը քանդեց Արդաբիլի պարիսպը:

[Դավրեժը (Տաբրիզ) գեղեցիկ, շեն քաղաք է, հոծ բնակչությամբ, լի բարիքներով, բազում շուկաներով, առք ու վաճառքով: Այսօր Ատրպատականի գլխավոր քաղաքն (կասաբա) է և ամենից շենը:

Խոյը միջին մեծության քաղաք է, սակայն շեն է, լի բնակչությամբ, առատ բարիքներով, պտուղներով ու պարտեզներով: Աղյուսից պարիսպ ունի և նրա բնակիչները բնավորությամբ ավելի հաճելի են քան Դավրեժինը:

Սալմաստր նույնպես մեծ քաղաք չէ, սակայն շեն է, բազմամարդ, մրգառատ և քառաշեն ամուր պարիսպ ունի]*:

Մարաղայից հետո, ըստ մեծության, գալիս է Ուրմիան, որն առողջարար քաղաք է: Բազում խաղողի որթատունկեր ու հոսող ջրեր կան քաղաքում, կալվածքներում ու գավառներում: Հարուստ է իր առևտրով, բերքերով: Նրա և Մարաղայի միջև կա Կապուտան լիճը, ընդ

* Այստեղ և հետագայում քառակուսի փակագծերի մեջ այն հատվածներն են, որոնք հետագայում են ավելացվել Իբն Հաուկալի շարադրանքի մեջ:

որում Մարաղան լճից արևելք է, իսկ Ուրմիան՝ արևմուտք: Ունի ընդարձակ արվարձաններ ու բարեբեր գավառներ:

Ուրմիայի կազմում և նրա գավառում է Ուշնու քաղաքը, որը նույնպես ունի բաղում ծառաստաններ, բանջարեղեն, բարիքներ, պտուղներ, բերքեր, խաղողի այգիներ ու հոսող ջրեր, առատ կերպով ունենալով նույնը, ինչ ունեն Ուրմիան ու Մարաղան: Դա Հադբանիյա քրդերի շնորհիվ է, որոնք այնտեղ ամառն են անցկացնում և օգտագործում շրջակայքի արոտավայրերը: Այնտեղ է նրանց ամբողջ ունեցվածքը և նրանց պաշարները: Նրանում կան վաճառականների շուկաներ, տարվա որոշ ժամանակներում գալիս են մեծ շահույթների համար և թեև վաճառքը դժվար է, շահույթը մեծ է: Նրանից և նրա սևահողից (սավադ) բերում են հոտեր, արջառ, մեղր, նուշ, ընկույզ, մոմ և նման վաճառքի ապրանքներ, մինչև Մոսուլ քաղաքը և Ջազիրայի նահանգները, ինչպես Հաղիսա և այլուր:

Մայանիջը, Խունաջը, Դախառականը, Խոյը, Սալմաստը, Մարանդը, Դավրեժը, Բարզանդը, Վարդանակերտը, Մուղանը, Բայլականը, Ջաբրավանը մանր քաղաքներ են, մոտավորապես նույն մեծությամբ ու տարածությամբ: Նույնն են նաև Աբու-լ-Հայջա իբն ալ-Ռավվադի գավառները՝ Ահարը և Վարզականը, որոնք բոլորը ծառաշատ են, լի բարիքներով ու մրգերով: Ոչ մի այլ վայր այսքան հարուստ չէ գետերով, պարտեզներով, մրգերով, ջրաղացներով: Մշակությունը զարգացած է, քանզի շատ են հողի մշակները և շինականները: Այս շրջանները լի են բարիքներով, օրհնությամբ, նրանց պտուղները թափված են, ուտելիքը՝ ձրի:

Դախառականը, Դավրեժը մինչև Ուշնու ալ-Ազարիյա իրենց շրջակայքով ընդհանրապես կոչվում են Բանու Ռուդայնի և այդ բոլորը նրանց կալվածներն էին: Դրանք շնորհիվ իշխանությունների բարյացակամության, միշտ ապահով են եղել ավարառությունից, սակայն երբ ժամանակը փոխվեց, իշխանությունը քայքայվեց, հարևանները ձեռք գցեցին և դրանք պատկանեցին ամենահզորին: Ռուդայնիների[63] տոհմը արաբներ էին և ճակատագիրը նրանց հարվածեց և ժամանակը նրանց աննպաստ էր և նրանք քայքայվեցին: Նրանց հետքը կորավ և նրանց հիշատակներից քիչ բան մնաց:

Իսկ Դուինը (Դաուին)* մի մեծ քաղաք է հարուստ բարիքներով, պարտեզներով, մրգատու ծառերով, ցանքատարածություններով և ունի կավե պարիսպ: Նրանում կան ջրի աղբյուրներ և հոսող ջրեր: Հիմնականում ցանում են բրինձ ու բամբակ: Նրա բնակիչների (մահմեդականների) վիճակը վատացավ այս ժամանակներում վրացիների հարևան լինելու պատճառով, քանզի վերջիններս կողոպտեցին քա-

* Այստեղ Դվինը ոչ թե Դարիլ, այլ Դուին է կոչվում:

ղաքը, հրկիզեցին և ամեն առթիվ արշավանքներ են կատարում: Այժմ քաղաքի կենտրոնում վերակառուցված է մայր մզկիթը և շրջապատված այլ պարսպով և նրա շուրջը խրամատ կա: Նրա մզկիթի մեջտեղում կա ջրի աղբյուր: Այնտեղ են ապաստանում, երբ վրաց զորքերը* հարձակվում են: Նրա և Արաքսի միջև երկու փարսախ է]˙

Պարտավ քաղաքը Առանի մայրաքաղաքն է և այդ երկրի ամենակարևոր քաղաքը. հնագույն դարերից մեծ քաղաք է եղել: Երկարությունը կլինի մեկ փարսախ, իսկ լայնությունը փարսախից պակաս: Առողջարար կլիմա ունի, բերքառատ է մրգերով, ծառերով ու գետերով և առաջնակարգ ու բացառիկ դիրք է գրավում: Իրաքում ու Թաբարիստանում Ռեյից ու Սպահանից բացի չկա ավելի մեծ ու բարեբեր քաղաք և ոչ էլ ավելի լավ դիրքով, հարմարություններով, շուկաներով, պանդոկներով (ֆունդուկ), իջևանատներով (խան), բնակարաններով, բաղնիքներով, ունեցվածքով և ապրանքներով:

[Սակայն նրա վիճակը վատթարացավ վրացիների հարևանության պատճառով]:

Նրանում ես մյուսների նման, տիրակալները ագահության, ապիկար քարտուղարների միջամտության պատճառով բռնագրավվեց ժողովրդի ունեցվածքը, կալվածատերերը (արբաբ) նեղեցին ապօրինի բռնագրավումներով և պահանջկոտությամբ, գործադրելով ամենավատ միջոցները հարկահավաքության գործում: Ափսոս այդ քաղաքին ու նրա բնակիչներին: Լսել եմ, որ մեր ժամանակներում վատ վիճակում է և անդորրությունը խանգարված է այն աստիճանի, որ նրանում միայն հինգ հացթուխ է մնացել, մինչդեռ նախկինում հազար երկու հարյուրից ավելի էին:

Նրանից մեկ փարսախից պակաս հեռավորության վրա կար մի վայր, որը կոչվում էր Անդարաբ[64] Քանզայի ու Տասուբի միջև, որն իմ տեսած վայրերից ամենահաճելին է: Նրա երկարությունը և լայնությունը մեկ օրվա քայլելու ճանապարհ է: Մրգաստաններն ու շինությունները իրար են միահյուսված, զբոսավայրերով ու հաճելի պարտեզներով: Ունի առատ միրգ և հարուստ բերք, բազում ապրանքներ, որոնք մեծ շահույթ և օգուտ են բերում: Երբ ես տեսա, ծաղկեփնջի պես գեղեցիկ էր, այգիներում կային կաղին, շագանակ, հազվագյուտ պտուղներ, այլատեսակ ուտելիքներ: Կար մի տեսակ միրգ՝ ռուկալ կոչված, որը խոշոր սնձենու չափ էր և ուներ քաղցրահամ միջուկ եթե հասուն էր, սակայն դառն էր, երբ խակ վիճակում էր քաղված: Պարտավում կա թուզ, որը Տասուբից էր բերվում և բոլոր թզերից գերադանց էր:

---

* Նկատի ունի Վրաց Բագրատունիների թագավորությունը, որի վրաց-հայկական բանակը մեծ նվաճումներ կատարեց ԺԲ դ. վերջին և ԺԳ դարի սկզբին:

Այնտեղ շատ մեծ քանակությամբ մետաքսաթել է արտադրվում: Բանն այն է, որ թթենիները որոշակի տեր չունեն և մատչելի են բոլորին, ոչ վաճառվում են, ոչ էլ գնվում: Բնակիչների մեծամասնությունը մետաքսի որդն է աճեցնում և ստանում հում մետաքս, որը մեծ քանակությամբ արտահանվում է Ֆարս և Խուզիստան և շատ շահավետ է:

Պարտավը Կուր գետից երեք փարսախ հեռավորության վրա է: Կուր գետում կա Սուրմահի կոչված ձուկը, որը կա նաև Արաքս գետում Վարդանակերտի մոտ և այլ վայրերում: Սա տարվում է Արդաբիլ, Ռեյ և Իրաք նրա հաճելի և համեղ լինելու շնորհիվ: Բնակիչները և վաճառականները այն նվեր են տալիս: Կուրի և Արաքսի մեջ կա նաև մի ձուկ, որը կոչվում է դարակին և այն քչերն են մարսում հաստ ճարպի պատճառով: Նրանց մեջ կա նաև մի ձուկ Կուշուրա կոչված, որը բոլորովին այլ տեսակ է և համեղ:

Պարտավի դռներից մեկն է Բաբ ալ-Աքրադը (քրդերի դուռ), որի ետևում կա մի շուկա Սուկ ալ-Քուրքի (կիրակիի շուկա) կոչված և տարածությունը մեկ փարսախ է: Ամեն կիրակի մարդիկ հավաքվում են և գալիս ամեն կողմերից: Հավաքվում են գյուղերի բնակիչներն այնքան, որ Քուրսարայի շուկային է նմանվում: Շուկայի անունը (Քուրքի) իշխել է օրվա անվան վրա, շարունակ հիշվելու հետևանքով և ասում են քուրքի (կիրակի) օրը: Այնպես որ շատերը, երբ շաբաթվա օրերն են հաշվում, ասում են՝ ուրբաթ (ջումա), շաբաթ (սաբտ), քուրքի (կիրակի), երկուշաբթի (իսնայն): Քուրքի ասելով հասկանում են կիրակի (ահադ):

Պարտավն ունի գեղեցիկ, ընդարձակ մայր մզկիթ, ուր գտնվում է նահանգի պետական գանձարանը (բայտ ալ-մալ), ճիշտ այնպես, ինչպես Օմայանները Եգիպտոսում և այլուր ունեցել էին: Այն կառուցվել է տեղացիների կողմից:

Պարտավի շուկաները նրա արվարձանում էին: Այնտեղ խճողում էր լինում և իրար էին հրում: Շուկաների ներսում կային պանդոկներ (ֆունդուկ), իջևանատներ (խան), բաղնիքներ և այս բոլորը միշտ բազմամարդ էին, իսկ ռուսների մտնելուց հետո շատ կանոնավոր էին:

[Սակայն նրա վիճակը վատացավ վրացիների (քուրջ) հարևանության պատճառով: Գանձակը մի գեղեցիկ քաղաք է, լի բարիքներով, շեն և բազմամարդ: Նրա բնակիչները քաջ են և լավ բարքի տեր, մարդկանց գոհացնող, օտարների և գիտության մարդկանց նկատմամբ սիրալիր]:

Դարբանդ (Բաբ ալ-Աբուաբ) քաղաքը գտնվում է Խազարաց ծովի վրա: Նրա կենտրոնում նավահանգիստ կա: Նավահանգստում ծովից դուրս է գալիս մի շինություն, որն ամբարտակի նման է նավա-

*Հանգստի ջրերի վրա իշխող և գտնվում է երկու լեռների միջև, իսկ նրա ջրերը Խազարաց ծովից են: Այս ամրարտակի վրա կա մի կողպած դուռ, որը փակված է ծովի կողմից. նրա հիմքը ամրացված է մի կամարով, որը ջրի վրա է:*

*Նավերն ունեն դռան կողմից մի մուտք, իսկ նավահանգստի մուտքի բերնին ձգված է մի շղթա, այնպես ինչպես Ասորիքի Տյուրոսում (Սուր) և Բեյրութում, ինչպես նաև Կոստանդնուպոլսի նեղուցում: Նրա վրա կողպեք կա, որի տերը ծովի վրա հսկում է և ոչ մի նավ դուրս գալ չի կարող առանց կողպեքի տիրոջ հրամանի: Այս ամբարտակը ժայռից ու կապարից է: Խազարաց ծովը Թաբարիստանի ծովն է:*

*Դարբանդ քաղաքը Արդաբիլից ավելի բերք ունի, սակայն պտուղները քիչ են և այլ նահանգներից են բերում: Քաղաքն ունի քարե ամուր պարիսպ քարից, աղյուսից ու կավից: Սա Խազարաց ծովի, Սաբիրի, ալանների, Թաբարիստանի ու Վրկանի (Ջուրջան) տարրեր կողմերի, անհավատների երկրի և Դայլամի նավահանգիստն է: Նրանից քթանե (վուշ) զգեստներ են բերում թիկնոցի հասակով: Առան, Հայաստան, Ատրպատական երկրամասի միակ քաղաքն է, ուր քթանե զգեստներ են պատրաստում: Այնտեղ կա առատ քրքում (զաաֆարան) և սահմանակից անհավատների երկրներից բազմաթիվ ստրուկներ (ռակիկ) են այստեղ բերվում:*

*Տփղիսն ավելի փոքր քաղաք է, քան Դարբանդը: Ունի կավից երկու պարիսպ և երեք դուռ: Սա մի ամրացված քաղաք է, հողը բարեբեր է, լի բարիքներով, գներն էժան են, ավելի առատ է քան բոլոր այն երկրները, որոնք հայտնի են էժանությամբ և հեշտ ապրուստով: Մեկը, որ այնտեղ մի օր մեղր էր գնել քսան ռաթլը մեկ դիրհամով:*

*Դա մի կարևոր սահմանային ամրություն (սաղր) է, ամեն կողմից թշնամիներով շրջապատված: Ունի բաղնիքներ, Տիբերիայի բաղնիքների նման, ուր ջուրը տաքացվում է առանց կրակի: Նա Կուր գետի վրա է և ունի ջրաղացներ, ուր ցորեն են աղում, ինչպես անում են Մոսուլում ու Ռակկայում՝ Տիգրիսի ու Եփրատի վրա:*

*[Այժմ [Տփղիսը] վրացիների (քուրջ) ձեռքում է, որոնք գրավեցին հինգ հարյուրական թվականների (1106-1107-ից) առաջին տասնամյակում: Վրաց թագավորը* թեև անհավատ է, սակայն հոգատար է ժողովրդի նկատմամբ և արգելում է վնաս հասցնել. իսլամի կոչը (ողջույնի նշանը") մնում է այնպես, ինչպես եղել էր: Մայր մզկիթը զերծ է ամեն պղծումից, ինքը՝ թագավորը մոտ և կանթեղ է վառում և ինչ որ պետք է անում է: Բոլոր մզկիթներում ազանը (կոչը մինարեթից) ազատ կերպով հնչում է և ոչ ոք վնաս չի հասցնում և այժմ մահմեդականն ու վրացին խառնվել են]:*

---

** Հավանաբար նկատի ունի Վրաց Դավիթ Շինարար թագավորին (1089-1125):*

Նրա [մահմեդական] բնակչությունը խաղաղասեր բնավորություն ունի, օտարներին սիրալիր է ընդունում, ցանկանում է, որ օտարականները գան իրենց մոտ: Նրանք բարյացակամ են այնպիսիների նկատմամբ, որոնք թեկուզ քիչ զարգացում ունեն և կամ որոշ զարգացումով են: Նրանք մահմեդական սուննային կապված մարդիկ են, ըստ հին ծեսերի, ամեն ինչից վեր դասելով հադիսների գիտությունը և պատվում են նրա գիտակներին [..........]

Առանի ամենամեծ քաղաքներն են Պարտավը, Դարբանդը, Տփղիսը, իսկ Բայլականը, Վարդանակերտը, Բարդիջը, Շամախին, Շիրվանը, Լայիջանը, Շապորանը, Կապաղակը, Շաքեն, Դանձակը, Շամխորը և Խունանը փոքր տիրույթներ (մամալիք) են, հաճելի քաղաքներ, մեծությամբ իրար նման, բարեբեր հող ունեն և առատ միջոցներ (աղբյուրներ):

Ինչ վերաբերում է Դվինին ու Նախճավանին, ապա Դվինն ավելի մեծ քաղաք է քան Արդաբիլը և Ներքին Հայաստանի (Արմինիա ալդախիլա) ամենակարևոր նահանգն ու քաղաքն է: Դա Հայաստանի մայրաքաղաքն (կասաբա) է, ուր կառավարչի նստավայրը (դար ալիմարա) կա, որին ենթակա են Հայաստանի բոլոր նահանգները (նահիա), ինչպես Առանում Պարտավի կառավարչի նստավայրը և Ատրպատականում՝ Արդաբիլինը: Դվինը շրջապատված է պարսպով: Քրիստոնյաներն այնտեղ բազմամարդ են: Մայր մզկիթը [քրիստոնեական] տաճարի կողքին է, ինչպես Եմեսայի մզկիթը, որը տաճարին կից է ու կպած:

Դվինից արտահանում են այծի նուրբ բրդից (միրիզզա) և բրդից գործվածքեղեն, ինչպես գորգեր (բուսութ), բարձեր (վասաիդ), նստելու բարձեր (մակաիդ), ծածկելու (թամբի) գորգեր (անմաթ), շալվարի գոտիներ (տիքաք) և այլ հայկական արտադրանքի (ասնաֆ ալ-արմանի) տեսակներ, որոնք ներկվում են որդան կարմրով (կիրմիզ): Սա մի կարմիր ներկ է, որով ներկվում են այծի նուրբ բուրդն ու բուրդը, և ստացվում է մի որդից, որն իր վրա է հյուսում, ինչպես շերամը իր վրա մետաքսի բոժոժ է հյուսում:

Այստեղ արտադրում են նաև մեծաքանակ մետաքսեղեն (բազյուն): Նրանց մետաքսն իր նմանը շատ ունի հոռոմների երկրում, թեպետ սա բերվում է [Հայաստանից]: Իսկ հայկական (արմանի) անվամբ հայտնի նրանց արտադրանքը, ինչպես հաստ գործվածքեղենը (րուտուտ), նստելու բարձերը, գորգերը, վարագույրները (սուտուր), երկար գորգերը (անխախ), կաշվե հենաբարձերը (մասավիր), բարձերը, ծածկելու (թամբի) գորգերը (անմաթ), ոչ մի տեսակետից իր նմանը չունի աշխարհի որևէ մասում:

Անցյալում [քաղաքը] պատկանում էր բոլոր հայերի (հայոց) թագավոր (մալիք ալ-Արման) Սմբատին (Սինբաթ) Աշոտի (Աշութ) որ-

ղուն ու նրա պապերին: Սա մնաց նրանց (տոհմի) մեծամեծների ձեռքում, մինչև որ այն նրանցից վերցրեց Աբու-լ-Կասիմ Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջը և խլեց նրանց ձեռքից: Նրանց ձեռքում հին ժամանակներից կային նրանց գոյավիճակը հաստատող ու նրանցից վերցված գլխահարկը (ջիզիա) ըստ պայմանավորվածության որոշող պայմանագրեր (ահդ): Ոմայյաններն ու Աբբասյանները հաստատել էին նրանց ղոյավիճակը իրենց նստավայրերում (սուքնատ) տարրեր հարկեր վճարելու պայմանով: Իսկ սա (Յուսուֆը) ներեց նրանց ու հարձակվեց: Այդ օրվանից նրանք հաջողություն չունեցան և նրանց ղրոշը չբարձրացավ մինչև օրս:

Հայաստանում տիրապետողը քրիստոնեությունն (նասրանիյա) է և նրանք (հայերը) ամեն տարի տիրակալին (խալիֆա) տալիս են հողահարկ (խարաջ). այժմ նախկինի նման ուխտ ունեն [խալիֆայության հետ], սակայն ըստ էության դա իրական չէ: Հարևան տիրակալները (ամիրները) հարձակվում են նրանց վրա, գերեվարում, վնասներ հասցնում և արհամարհում նրանց հովանավորյալի (ղիմմի) իրավունքները: Նախկինում նրանց ստրուկները (ռակիկ) Բաղդադում չէին վաճառվում: Ես գիտեմ որ նրանք այդ վիճակում էին մինչև երեք հարյուր քսանհինգ (936-937)* թվականը: Ոչ ոք իրավունք չուներ այդ բանն անելու, քանզի նրանք որոշակի հովանավորության (ղիմմա) տակ էին [խալիֆայության կողմից] և ունեին մեկից ավելի պայմանագրեր**:

Երկու Հայաստան կա, մեկը հայտնի է որպես Ներքին, իսկ մյուսը՝ Արտաքին (խարիջա)[65]: Արտաքինի որոշ մասերում կան մահմեդականներին պատկանող քաղաքներ և այժմ էլ մնում են նրանց ձեռքում: Հին ժամանակներում դրանք հայերի իշխանության տակ են եղել հարկ վճարելու պայմանով: Այժմ մահմեդական իշխողների ձեռքում են[66], ինչպես Արճեշը, Մանազկերտը և Խլաթը:

Նրա (Հայաստանի) սահմանները հստակորեն հայտնի են: Մի սահմանն արևելքից մինչև Պարտավ, իսկ արևմուտքից մինչև Ջազիրա. հարավից մինչև Ատրպատական, իսկ հյուսիսից մինչև Հոռոմների երկիրը (Բյուզանդիա) Կարնո քաղաքի կողմից: Կարնո քաղաքը Հոռոմների երկրի մեջ (դիմաց) մի կարևոր սահմանային ամրություն էր Ատրպատականի, Ջիբալի և Ռեյի ու հարակից նահանգների բնակչության համար և Ներքին Հայաստանի գլխավոր քաղաքն է:

* Հայտնի չէ, թե ինչ փոփոխություն է կատարվել այդ թվականին: Գիտենք միայն, որ 937-ին Ատրպատականից բախտախնդիր Լաշքարին ներխուժեց Հայաստան, հանդիպեց Անձևացյաց գավառ և այնտեղ խիստ ջարդ կրեց:

** Հայ նախարարները, Հայոց իշխաններր և Հայ եկեղեցին թե՛ Օմայան, թե՛ Աբբասյան խալիֆաների և նրանց ներկայացուցիչների հետ պայմանագրեր էին կնքել նախարարների հողատիրական իրավունքների, եկեղեցական իրավունքների և այլ հարցերի մասին:

*Նախապես ասվեց, որ երկու Հայաստաններ կան, Ներքինը՝ Դվինը, Նախճավանը և Կարնո քաղաքը հյուսիսում, իրենց հարակից նահանգներով, և Արտաքինը՝ Բերկրին, Խլաթը, Արճեշը, Ոստանը (Վաստան), Անձևացիքը (ալ-Զավազան) ու սրանց միջև ընկած տիրույթները, ամրոցները, գավառներն ու նահանգները:*

*Նրանք մի դուռ (մուտք) ունեն դեպի հոռոմների երկիրը, որը հայտնի է Տրապիզոն անվամբ: Սա մի քաղաք է, ուր հավաքվում են վաճառականները իսլամի երկրից և այնտեղից մտնում հոռոմների երկիրը առևտուր կատարելու համար և ապա այնտեղից են դուրս գալիս: Այս նավահանգիստը գտնվում է Կոստանդնուպոլսի ծոցից եկող ջրերի վրա, որոնք [մյուս կողմից] հասնում են մինչև Ովկիանոս: Մեր ժամանակներում հոռոմների տերը (կայսրը) Տրապիզոնի կառավարչից դրամական մեծ գումարներ է վերցնում և մեծ հարկեր է դրել նրա վրա, որն առաջ շատ ավելի քիչ է եղել: Այս մասին նախապես խոսել ենք հոռոմների երկրի (Բյուզանդիայի) մասին պատմելիս: Իսլամի երկիրը և քաղաքները արտահանվող դիպակի (դիբաջ), մետաքսի (րազյուն), բյուզանդական (ռումի) վուշե (քթան) գործվածքների, բրդե գործվածքեղենի ու բյուզանդական պատմուճանների (աքսիա) մեծամասնությունը Տրապիզոնից է [ստացվում]:*

*Նախճավանի, Բերկրիի, Խլաթի, Մանազկերտի, Բաղեշի, Կարնո քաղաքի, Արզնի, Նփրկերտի և Սարուջի միջև մեծ տարբերություն չկա, քանզի նրանք մեծությամբ իրար նման են:*

*[Սակայն Խլաթը ծավալվելով քաղաքից դուրս, մի քանի անգամ կրկնապատկվել է: Նրա բնակիչները հարստության և բարօրության մեջ են և այժմ այնտեղ կան վաճառատներ (մատաջիր), հրաշալի շուկաներ և վաճառականների հավաքավայրեր: Նրա բնակիչների բարքերի մեջ տիրապետողը կոպտությունն է և օտարի հանդեպ թշնամանքը]*

*Դրանցից ոչ մեկը նման չէ Դվինին, իր մեծությամբ ու ընդարձակությամբ, թեև բոլորն էլ բարեբեր են, շեն և լի բարիքներով: Այլ երկրների նման նրանց էլ հասան ժամանակի ավերածությունները, իշխանության խախուտ վիճակի ու ժամանակի մարդկանց բարքերի փոխվելու հետևանքով:*

*Երկրների սահմաններին իրազեկ գիտնականների մեծամասնությունը գտնում է, որ Նփրկերտը (Մայաֆարիկին) մաս է կազմում Հայաստանին, իսկ ոմանք էլ այն համարում են Ջազիրայի նահանգներից: Նա Տիգրիսի արևելյան կողմում է և երկու օթևան հեռավորության վրա է և այս պատճառով է, որ Հայաստանում է համարվում:*

*Այս քաղաքներում ու նրանց գավառներում արտադրվում են ապրանքներ (տիջարատ) արտահանման համար և անհրաժեշտ շատ բաներ, ինչպես արջառ ու ոչխար և գործվածքեղեն, որոնք ամեն կողմ*

ուղարկվում են, Հայկական կոչված բնտիր կահավորանքի (փարշ), շալվարի գոտիներ (տիքաք), որոնք Սալմաստում արտադրվածի նման են և վաճառվում են ամեն մեկը մի դինարից մինչև տասը դինար և աշխարհի ոչ մի մասում նմանը չկա. նաև Հայկական (արմանի) թավշակերպ (մահֆուր) նստելու բարձեր (մակաիդ) Մարանդից ու Դավրեժից, երկար գորգեր (անխախ), որոնք նմանը չունեն իրենց քանակով ու որակով, ինչպես կանացի քողեր (սաբանիյատ), վարագույրի բրդե կտորներ (մակարիմ), դյխի թաշկինակներ (մանադիլ), որոնք պատրաստվում են Նփրկերտում և Հայաստանի այլ մասերում։

Իսկ այս երկրամասի գետերը, որոնք նավարկելի են հետևյալներն են. Կուրը մի մեծ գետ է և կլինի Փոքր Զաբի չափ, որը Տիգրիս է թափվում և կամ Պիրամոսի (Ջայհուն) ու Բարդանի մեծությամբ, որոնք սահմանային ամրությունների երկրում (Կիլիկիա) են: Ապա գալիս է Արաքս դետը: Այս երկուսը ջրի առատությամբ իրար նման են: Իսկ Սաֆիդրուդն դետը, որը Արդաբիլի ու Զանջանի միջև է, իր փոքրության պատճառով նավարկելի չէ:

Կուրը քաղցր ջրով, հաճելի, թեթև գետ է: Բխում է Կովկաս լեռան կողմից, Դանձակի ու Շամխորի սահմաններում, գալով Տփղիսի կողմերից և նախքան այդ քաղաքը հասնելը, անցնում է անհավատների երկրների շատ բերդերի մոտով ու թափվում է Խազարաց լիճը Պարտավի կողմերում:

Արաքսը նույնպես քաղցր ջուր ունի, թեթև ու հաճելի գետ է: Բխում է Ներքին Հայաստանի կողմերից ու հասնում մինչև Վարդանակերտի դուռ (Բաբ ալ-Վարսան), ապա անցնում է և մի մասով թափվում է Կուր, իսկ մյուս մասով՝ Թաբարիստանի լիճը (Կասպից ծով): Սա Արաքսն է, որի մասին բարձրյալն Ալլահը հիշել է, թե ի՞նչ է կատարվել նրա ժողովրդի հետ[67]: Նրա հոսանքն ի վեր բարձրացողը եթե ուշադիր նայի և անցնի նրա ափերով Վարդանակերտ քաղաքից վերև ու ներքև, կտեսնի շուռ եկած ու ավերված քաղաքներ, մի քանիսը կործանված ու գլխիվայր շուռ եկած:

Ատրպատականի լիճը, որը կոչվում է Կապուտան (Քաբուդան), աղի ջուր ունի և նրանում ոչ կենդանիներ կան, ոչ էլ ձուկ: Այստեղ շատ նավեր կան, որ զբաղվում են ապրանքների փոխադրությամբ տարբեր քաղաքների միջև՝ Դավրեժի ու Դախառականի գավառներում ու նրանց շրջակայքում և տարբեր ուղղություններով: Լիճը ամեն կողմից շեն է, գյուղերով շրջապատված ու երկրագործական շրջաններով: Ուրմիայի ու նրա միջև երկու փարսախ է արևմտյան կողմից և նրա ու Մարաղայի միջև հինդ փարսախ է արևելյան կողմից, իսկ Դախառականի մատույցների և այս լճի ափի միջև չորս փարսախ է:

Նրա (լճի) երկարությունը անասունի քայլվածքով չորս օթևան է

հյուսիսից մինչև հարավ, իսկ լայնությունը այնքան է, ինչքան Մարաղայի և Ուրմիայի միջև՝ մոտավորապես քառասուն փարսախ: Ձմռանը այնտեղ լինում են հսկայական ալիքներ և մեծ դժբախտություններ են պատահում: Նրա մեջտեղում կան բնակչություն ունեցող լեռներ, որը սնվում է քաղցր ջրով և աղքատիկ կյանք են վարում: Նրա բնակիչները նավակների տերեր ու նավաստիներ են, որոնք մեկ ափից մյուսը ապրանքներ և ուղևորներ են տանում: Նրանք ունեն այծեր, որոնք մի կերպ նրանց գոյությունն են ապահովում և բացի դրսից բերվածից, իրենց մոտ ոչինչ չունեն:

Բերկրիի, Խլաթի և Արճեշի հարավում կա մի լիճ, որը ձգվում է արևելքից արևմուտք և երկարությունը կլինի ինչ որ մի քանի տասնյակ փարսախ: Նրանից թզաչափ փոքրիկ ձկներ են բռնում, որը հայտնի է տառեխ (թիրիխ) անվամբ և աղում ու տանում են բազում երկրներ, ինչպես Մոսուլ, Ջազիրայի, Իրաքի կողմերը և Ասորիքի գավառները: [Այս լճի մեջ մի կղզի կա, որը կոչվում է Ախթամար]: Նրա ափին կա բորակ աղը, որը նույնպես արտահանվում է Իրաք և այլ տեղեր, հացթուխների համար: Լճին մոտիկ, ավելի ճիշտ նրանից հարավ մի լեռան վրա կա մկնդեղի (զիրնիխ) հանքեր, որը տարվում է աշխարհի տարբեր կողմերը: Սա մկնդեղի բուն աղն է և լինում է կարմիր ու դեղին:

Կապուտան (լճի) ափերից ես հանում են ոսկերչական բորակը, որն օգտագործվում է արծաթի ու ոսկու զոդման համար: Սա, ըստ էության, ստացվում է նրանից, որ նրա ջրերի որոշ մասերը նպաստում են ինչ որ բաների քարացմանը և այսպիսով գոյանում է այս բորակը, որը տարվում է երկրի հովիտներն ու խոր ձորերը և դաշտերն ու լեռները: Վաճառականները նրանից առատ շահույթ են ձեռք բերում:

Իսկ Անձևացյաց և Հայաստանի ու Առանի որոշ մասերից Իրաք, Ասորիք, Խորասան և այլ վայրեր են ուղարկվում ընտիր ջորիներ, որոնք հայտնի են առողջությամբ, տոկունությամբ, ճկունությամբ ու համբերությամբ, ինչպես նաև այլ բաներ, որոնց հուշակն ավելորդ է դարձնում նկարագրել, կամ հատուկ ընդգծել այն: Անձևացիքը մի գավառ է, որն ունի բերդեր և տիրույթներ և այնտեղ տիրապետողը լեռներն են: Բուծում են հրաշալի ձիեր (շահրի), որոնց հատուկ է գեղեցկությունն ու արագաշարժությունը ու կարելի է համեմատել Թաբարիստանի ձիերի հետ և գուցե նրանցից էլ գերազանց են, ինչպես նաև Ջուրջանի ձիերից:

Նրանց լեռները Մեծ Մասիսի և Փոքր Մասիսի կողմից կապված են Ահրի ու Վարզկանի լեռներին: Նրանք հյուսիսում անցնում են դեպի Տփղիս և այնտեղ միանում են Կովկաս լեռանը, Սիահ Քուհի դիմաց: Սա մի հսկա լեռնաշղթա է, որի վրա, ասվում է թե երեք հարյուր և ավելի տարբեր լեզուներ կան: Ես չէի հավատում, մինչև որ այցելեցի

Արդարիլի Սաբալան լեռը, ուր անսա մեկից ավելի գյուղեր, որոնցից ամեն մեկը իր լեզվով է խոսում, որը տարբեր է պարսկերենից (փարսիյա) և ատրերենից (ազարիյա)։ Կովկասի լեռները կպչում են Սիահ Քուհի (Քուայհ) լեռանը, որը Խազարաց երկրից այն կողմում է, օղուզների (Ղուզզիյա) կողմերը և այնտեղից վերադառնում է արևելք Խորեզմի լճի նտևից միանալու Խորեզմի ու Ֆերղանայի լեռներին։ Բանն այն է, որ, ինչպես հիշել եմ, բոլոր լեռները դասավորված ու ճյուղավորված են Չինաստանից դուրս եկող լեռներից, ուղիղ գծով ընթանալով դեպի Օվկիանոս ծովը, Մաղրիբում գտնվող Սուդանի վրայով։

Վարդանակերտի ու Պարտավի կողմերում և Խազարաց լճի մեջտեղում գտնվող Դարբանդի երկու կղզիներում կա չափազանց առատ և բարձր որակի տորոն (փուվվա), որը Խազարաց ծովի վրայով ուղարկվում է Վրկան (Ջուրջան) և ցամաքի ճանապարհով՝ Հնդկաստան (Հինդ)։ Այս տորոնը գտնվում է ամբողջ Առանի երկրում՝ Դարբանդից մինչև Տփղիս ու Արաքս գետի մոտերքը և Վիրքի (Ջուրզան) կողմերը։

Այս ամբողջ նահանգը մի իշխանություն է, որը գտնվում է Ատրպատականի տիրոջ ձեռքի տակ և տեղավորված է լեռներում, որոնք կապվում են Թարոմի լեռներին, Խազարաց ծովի արևմուտքի կողմում կպչում են Ռեյի, Թաբարիստանի ու Վրկանի լեռներին, մինչև Նիշապուր։

Այս բոլոր լեռների լանջերին կան թագավորներ (մուլուք) ու տերեր (ասհաբ), որոնք հսկայական հարստություն ունեն. տիրույթներ, հզոր ամրոցներ, ձիավորներ ու խոշոր անասուններ, ինչպես նաև իրենց նստավայր քաղաքները, բարեբեր գյուղական շրջանները (ռուստակ), շեն գավառները (ակալիմ), որպես սեփականություն (միլք), որից ստանում են հարուստ բերք ու մեծ հասույթ։ Այս բոլոր լեռներում, նահանգներում (նահիա), քաղաքներում ու դաշտավայրերում կա էժանություն, բերքառատություն, արոտավայրեր՝ լի ոչխարների հոտերով ու արջառով, գյուղատնտեսական բարիքներ, հարստություն, ծառաստաններ, գետեր, թարմ ու չոր պտուղներ, ամեն տեսակ փայտեր, ինչպես խալանջը, որթատունկի ու ընկուզենու փայտը և հնարավոր չէ այս ամենը իմանալ ու հաշվել։

Այստեղի թագավորները հարուստ են, վայելում են կյանքի բարիքները ու հաճույքները, սիրում են օժանելիքներ, շքեղ զգեստներ, գեղեցիկ ներքիններ (խադամ), նժույգներ և ջորիներ, ոսկե ու արծաթե ասպանդակներով, դեռատի գեղեցիկ հարճեր (ջավարի), որոնք երգչուհիներ, նվագածուներ ու խոհարարուհիներ են։ Նրանց հասույթներն առատ են, անհատնում, ունեն ոսկե ու արծաթե առարկաներ, ծանրակշիռ սեղանասպասք, դրոշմված սև զարդանկարներով, ինչ-

*պես սկուտեղներ. ափսեներ, չչեր. թասեր (թուսութ). ջրամաններ (իբրիկ), ջրանոթներ. զարմանալի արվեստով, արծաթե (լուջայն) ու ոսկե (ասջադ). Հաստ ապակիով (զուջաջ). ժայռի մշակված բյուրեղապակիով (բալլուր), թանկարժեք քարերով. ինչպես Հատիկը (Հաբբ) և Հակինթը (յակութ):*

*Այս թագավորների մեծամասնությունը մշտական Հարկեր էր վճարում և Հավելյալ Հարկեր, որոնք ամեն տարի տարվում էին Ատրպատականի թագավորներին (մուլուք): Այս Հարկերը չէին դադարում կամ ոչ մի խանգարում չէր լինում: Բոլորը Հպատակվում էին նրան. ով տիրում էր և կառավարում նաՀանգը:*

*Իբն Աբու-լ-Սաջը Հաճախ գոՀանում էր նրանցից ստանալով փոքր գումարներ, որն ստանում էր ընծաների ձևով: Սակայն երբ իշխանությունն (մամլաքա) անցավ Մարզուբան իբն ՄուՀամմադ իբն Մուսաֆիրին, որը Հայտնի է Սալլար անվամբ, ապա նա նշանակեց Հարկերի Հաշվառման գրասենյակներ (դիվան), օրենքներ (կավանին) և Հավելյալ Հարկեր (լավաղիմ), Հարկի տակ դրեց Հարակից տնտեսությունները (մարաֆիկ) և մնացորդների (բակայա) Համար պայմանավորվեց:*

*Այժմ նրանց ամենաՀայտնի թագավորներն են՝ Շիրուան չաՀ ՄուՀամմադ իբն ԱՀմադ ալ-Ազդին, ապա Լայիջանի թագավորը (մալիք), որի թագավորությունը (տիրույթները) կպած է Կովկասի լեռների որոշ մասերին և նրա նաՀանգները կոչվում են Լայիջան չաՀի [երկրներ]: Նրա կողքին է նաև ծանարցին (Սանարի), որը Հայտնի է Սեննեքերիմ (ՍինՀարիբ) անվամբ և կրոնով քրիստոնյա է, ինչպես Դեբանիկի (Դայրանի, Դիբանի) որդին՝ Անձևացյաց (ալ-Ջավազան), Վանի ու Ոստանի (Վասթան) տերը[68]:*

*Սրանցից ամեն մեկին ևս Հիշելու եմ. թե ինչպիսի պարտավորություններ ունի վճարելու, ինչպես դրամ (մալ, ունեցվածք), Հարկեր և ընծաներ, երբ Հիշատակեմ այս նաՀանգի Հարկերը, ճանապարՀները թվարկելուց Հետո:*

*Ատրպատականի բնակչության և Հայաստանի բնակչության մեծամասնության լեզուն պարսկերենն է, որն ընդՀանուր լեզու է, սակայն արաբերենը ևս օգտագործվում է նրանց միջև: Շատ Հազվադեպ է այն, որ պարսկերեն խոսողը չՀասկանա արաբերեն, մի լեզու, որը ճարտարորեն խոսում են վաճառականները և Հողատերերը (կալվածատերեր, ասՀաբ ալ-դիաա): Հայաստանի ծայրամասային սաՀմաններում (աթրաֆ) և նման շրջաններում կան Համայնքներ (մարդկանց խմբեր, թավաիֆ), որոնք խոսում են այլ լեզուներ, ինչպես Հայերենը (ալ-արմանիյա) Դվինի ու Նախճավանի և նրանց շրջակա նաՀանգների բնակիչների Համար, իսկ Պարտավի բնակչությունը խոսում է առաներեն (առանիյա):*

Այստեղ է Կովկաս (ալ-Կարկ) կոչված նշանավոր և հայտնի լեռը, որի շուրջն ապրում են անհավատներ, որոնք խոսում են տարբեր ու բազմաթիվ լեզուներ, ինչպես արդեն ասվեց: Սակայն նրանցից շատերը մի ընդհանուր լեզվով են խոսում:

Ատրպատականի, Առանի ու Հայաստանի դրամը ոսկին է ու արծաթը:

Նրանց մեծամասնությունը քաջառողջ է և ազնվաբարո. հակում ունի բարիք գործելու ու հարգելու պարկեշտ մարդկանց. ապրուստի միջոցները լավ են և զսպվածություն են ցուցաբերում իրենց վրա հասած դժբախտությունների ու փորձանքների հանդեպ:

Այժմ նրանց (մահմեդականների) մեջ կան իսլամական ավանդությունների (հադիս) և [Ալլահի] մարդակերպության (հաշվ) կողմնակիցներ, ինչպես նաև Բակլիյա (կարմատյան) Բաթինիներ (իսմայիլականներ)[69]: Ամբողջ Ատրպատականում, Հայաստանում և երկու Առաններում չկան աստվածաբանության (քալամ) դիտակներ, կամ աստվածախոսության (նազար) ջերմեռանդ հետևորդներ:

Նրանց մոտ կան շնորհալի բժիշկներ, որոնց այցելել եմ. բժշկական հարուստ փորձ ունեն և բժշկության կիրառությամբ (սինաաթ ալթիբբ) հարստացել են, կալվածների, հարստության և անասունների տեր են դարձել:

Նրանք համոզված են, որ տրամաբանությունը (մանթիկ) անհավատություն (քուֆր) է և աստվածաբանական հայեցողությունը (սանաաթ ալ-նազար) ուշադրությունը շեղում է կարևոր բաներից ու խանգարում է կյանքի վարվեցողության տարբեր միջոցներն ըմբռնելու:

Այս երկրամասի ճանապարհների ու երկարությունների նկարագրությունը:

Պարտավից Արդաբիլ ճանապարհը: Պարտավից Մուչան գյուղը յոթ փարսախ է, Մուչանից Բայլական քաղաքը՝ յոթ փարսախ: Բայլականը մի հաճելի քաղաք է, առատ ջրերով, պարտեզներով (աջինա), ծառերով ու դետերի վրա գործող ջրաղացներով: Բայլականից Վարդանակերտ (Վարսան) յոթ փարսախ է: Վարդանակերտը Բայլականից մեծ քաղաք է, առավել ընդարձակ և ավելի բնակչությամբ և շուկաներով ու ապրանքներով: Նա մեծ քաղաքների նման շատ ենթակա վայրեր ու իջևանատներ (ֆանադիկ) ունի: Նրա շուրջը պարիսպ կա և ունի արվարձան շուկաներով: Վարդանակերտից Բալխաբ յոթ փարսախ է: Սա բնակչությամբ շեն գյուղ է, ունի հյուրատներ (ռիբաթ) և իջևանատներ ճանապարհորդների համար, ուր կանգ են առնում կարավանները (սայարա): Բալխաբից Բարզանդ յոթ փարսախ է: Սա Բայլականին հավասար կարևորություն ունեցող քաղաք է: Բարզանդից Արդաբիլ տասնհինգ փարսախ է, որի ճանապարհն անցնում է գյուղերի և աջ ու ձախ տների միջով, որոնք

չեն վերջանում և չարունակ երևում են։

Ճանապարհը Պարտավից Դարբանդ (Բաբ ալ-Աբուաբ)։ Պարտավից Բարդիջ տասնութ փարսախ է։ Սա մի բարգավաճ քաղաք է Կուր գետի վրա, ուր կան տեղական ու դրսից բերված (մաջալիբ) ապրանքներ (մատաջիր)։ Բարդիջից Շամախի (Շամմախիյա) Կուրն անցնելուց հետո տասնչորս փարսախ է, Շամախիից Շիրվան երեք օրվա ճանապարհ է, Շիրվանից Լայիջան՝ երկու օրվա. Լայիջանից Սամուրի կամուրջը տասներկու փարսախ է, Սամուրի կամուրջից Դարբանդ՝ քսան փարսախ։ Այս ամենը դառնում է մոտավորապես իննսուն փարսախ։

Ճանապարհը Պարտավից Տփղիս։ Պարտավից Դանձակ ինը փարսախ է։ Սա բարգավաճ քաղաք է։ Դանձակից Շամխոր տասը փարսախ է, Շամխորից Խունան քաղաքը՝ քսանմեկ փարսախ, Խունանից Կալաատ (բերդ) իբն Քանդաման՝ տասը փարսախ, Կալաայից Տփղիս՝ տասներկու փարսախ։ Այս ամենը վաթսուներկու փարսախ է։

Ճանապարհը Պարտավից Դվին։ Պարտավից մինչև Կաղանկատույք (Կալկաթուս) ինը փարսախ է, Կաղանկատույքից Հաթերք (Հատրիս, Մատրիս)՝ տասներեք փարսախ, նրանից Ջավդեք (Ջաուտեք, Դաումիս)՝ տասներկու փարսախ, Ջավդեքից Դեղարքունիք (Քայլաքուին)՝ տասնվեց փարսախ, Դեղարքունիքից Սիսական՝ տասնվեց փարսախ։ Սա հաճելի, միջին մեծության քաղաք է։ Սիսականից Դվին տասնվեց փարսախ է։

Այս ճանապարհը Պարտավից Դվին՝ անցնում է Հայաստան (Հայոց) երկրի (ալ-Արման) միջով և այս բոլոր գյուղերն ու քաղաքները հայազգի Սմբատի՝ Աշոտի որդու (Սինբաթ իբն Աշութ ալ-Արմանի) թագավորության (մամլաքա) մեջ էին։ Սակայն Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջը նրանից խլեց դավաճանությամբ ու բռնությամբ և հակառակ Ալլահի ու նրա առաքյալի կամքի, քանզի ասել է [Ալլահը]. «Ես ամենքից ավելի իրավասու եմ պահանջելու, որ հովանավորության (զիմմա) պայմանները հարգվեն։ Եթե իմամը կամ իմամին ենթակա որևէ մեկը իրեն թույլ տա, վնասելու նպատակով, կամ կրոնական մոլեռանդությամբ, ավելացնել հովանավորյալների (դիմմի, ահլ ալ-Զիմմա) հարկերը (ասաար), պետք է պատժվի և սաստվի»։ Իսկ ասել է, խաղաղություն նրան, [մարգարեն] թե. «Մահմեդականները իրար հավասար են իրենց արյան արժեքով, նրանցից նույնիսկ ամենափոքրը պետք է պահպանի [զիմմիների] պայմանագրային պարտավորությունները, սակայն այլոց հետ նրանք (մահմեդականները) պատերազմական (հարբ) դրության մեջ են։ Ուստի եթե որևէ մահմեդական ընտրվի նրանց ինչ որ խմբի կողմից, որոնք ապրում են սահմանային ամրությունների գոտում, ընտրվի որպես կառավարիչ և նրան փորձելուց հետո գտնեն, որ նա իմաստուն ու արդար է և այնպես է իշ-

խում, որ Հոգում է նրանց կարիքները, ինչպես նաև այն մահմեդականների, որոնք նրանցից այն կողմ են ապրում, ապա նման պայմաններում նա պետք է արդարացի լինի նաև այդ նահանգի ոչ մահմեդականների հանդեպ: Ոչ ոքի չի կարելի թույլատրել, որ խախտի այդ պայմանները, խորամանկությամբ ու ամբարշտությամբ և վայրենությամբ մարդուն անվայել արարքներ գործելով: Առավել ևս երբ այն վերաբերում է հին ժամանակաշրջանին (ալ-սադր ալ-կադիմ) և արդար ու առատաձեռն վեհանձն իմամին, խաղաղությունը նրա հետ, որն ինքը կնքել է մի պայմանագիր (ահդ) և առաջարկել է մի կարծիք, որը մահմեդականների օգտին է և ի պատվի է մնալու մինչև վերջին դատաստանի օրը (յաում ալ-դին): Ինչպես կարելի է գլխահարկ վերցնել մի հզոր թագավորից (մալիք ազիմ) և օգտագործել նրա մարդկանց ու նրա զորքերին այն պարտականության մեջ, որոնք կարող են վնասել մահմեդականներին, այս կամ այն պայմաններում: Այսպիսի դեպքը ըմբոստություն է կատարված մի ամբարիշտի կողմից, որն իր պատասխանատվությանը վերաբերում է այնպես, ինչպես դինով հարբածը, տգետ հիմարի աչքերով, համարձակվում է խախտել [պայմանագրերը], գիտակցաբար հարատևելով իր ապստամբ ընթացքը և մահմեդականներին հասցնելով այն վիճակին, որի մեջ գտնվում են: Երանի թե մնանք այնտեղ, առանց մեղքի ծանրացման»:

<u>Ճանապարհը Արդաբիլից Զանջան</u>: Արդաբիլից մինչև Սաբիդռուդի կամուրջը մեկ օթևան է (մարհալա), Սաբիդռուդից Սարահ՝ մեկ օթևան, Սարահից Տավա՝ մեկ օր, Տավայից Զանջան՝ երկու օթևան:

<u>Ճանապարհը Արդաբիլից Մարաղա</u>: Արդաբիլից գնում է Քուրսարա: Սա մի ամրոց է հզոր կերպով ամրացված, որին ենթակա է մի ընդարձակ նահանգ (իկլիմ) ու մի կարևոր ու ընդարձակ գավառ (ռուստակ): Ամեն ամիս լինում են շուկաներ ու տոնավաճառներ տարվա ամեն ամսվա սկզբին: Ես վաղուց եմ ճանաչել ու այցելել այս ամրոցը երիտասարդ ժամանակ: Մեծ բազմություն էր հավաքվել շուկայի օրը, իր հետ ունենալով տարբեր առարկաներ, վաճառքի ապրանքներ, ինչպես քթանե զգեստ (բաղզ), համեմունք (սակաթ), հնդկական համեմունք (բարբահար), անուշահոտություն (իթր) և կահավորանքի (ֆարշ) լավ պաստառ, թամբագործների (սառաջ) համար հում նյութ, թամբագործության տարբեր տեսակներ՝ թամբեր, սրեր, գոտիներ, թամբի ծածկոցներ, Մարաղայի փոկեր և ամեն տեսակ զենքեր: Այնտեղ կարելի էր գտնել պղնձե ամանեղեն Իրաքից բերված, այլ ամանեղեն ձուլված ոսկուց ու արծաթից, ձիեր, ջորիներ, ավանակներ, կովեր ու ոչխարներ:

Եթե որևէ մեկն ասեր, թե այս հողը (շուկան) շատ ավելի ընդարձակ է [Արաբիայի] Մավկիֆի հողից, իր ցածր հովիտներով, լեռներով,

բլուրներով, բնակիչներով և Մավկիֆից ավելի բազմամարդ է այն ազգերով (աջնաս), որոնց նկարագրել եմ. ապա ես առանց հաստատման և ստուգման չէի ընդունի. Թեև Մավկիֆի հողը իր լեռներով Արաֆատից երեք փարսախ հեռավորության վրա է, ուր կանգ են առնում տարբեր ազգեր (ումամ)՝ Եմենի, Եգիպտոսի, Իրաքի, Մաղրիբի, Ասորիքի, Խորասանի ժողովուրդները, ինչպես նաև նրանք ովքեր հարևան երկրներից միանում են:

Այնտեղ (այդ շուկան) այցելողներից էր Աբու Ահմադ իբն Աբդ ալ-Ռահման ալ-Շիզի ալ-Մարաղին՝ Ատրպատականի վաճառականների պետը և նրա հաճախորդներից: Նրա քարտուղար Աբու-լ-Ֆատհ իբն Մահդին ասել էր նրան, թե Աբու Իսհակ ալ-Մաջարղանին իր անասունները ծախել է ու հեռացել և մեր նրան հանձնած անասունները մեզ չի վերադարձրել: Հարցրել է Աբու Ահմադը, թե ինչքան է վաճառել: Ասել է՝ հարյուր հազար գլուխ: Ես այս բանը մի քանի անգամ ստուգեցի Աբու Ահմադի մոտ և նա ասաց՝ հասկացա՞ր, նա հեռացել է Ալլահի ողորմածությամբ այդ վայրից, ուր չկա շուկա, մեկ միլիոն ոչխարներով: Ես կրկին հարցրեցի և նա ասաց՝ այո, և Շուայբ իբն Միհրանը ևս նույնքան [ոչխարներով] հեռացել է:

Ապա ես այս շուկայի և այդ վայրի մասին նրանից շատ պատմություններ լսեցի Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջի օրոք կատարված դեպքերի վերաբերյալ, որոնք անհարմար է հիշել այս գրքում: Ինչ որ արդեն հիշել եմ, լրիվ բավական է պատկերացում կազմելու այս շուկայի վիճակի մասին, եթե ընթերցողը հավատա:

Արդաբիլից Քուրսարա տասներկու փարսախ է, Քուրսարայից Մարաղա՝ տասներկու փարսախ:

Սարատ քաղաքը, որը Քուրսարայի ու Արդաբիլի՝միջև է, հաճելի է, բազում երկրագործական բարիքներով, լի ամբարներով, այգիներով, ջրերով, պտուղներով, մշակելի հողերով ու ջրաղացներով: Ունի բարեկարգ շուկաներ ու մաքուր իջևանատներ (ֆանադիկ): Այնտեղ եղել են մեծ հողատերեր, ինչպես Ջանբուււ տոհմը և ուրիշներ, որոնք բոլորն էլ մեռած են կամ անհայտացած: Ես ծանոթացել եմ նրանց հներին (ծերերին, մաշայիխ), երբ քաջությունը նրանց մոտ հատկանշական էր և երբ հարաբերությունները Սալլարի հետ մտերմական էին:

Արդաբիլից Միյանիջ քսան փարսախ է: Սա մի բարեկարգ քաղաք է, ինքն իր մեջ ամփոփված, հարուստ բնակչությամբ և ընկերական բնավորությամբ մարդկանցով, էժանությամբ ու բարիքներով: Միյանիջից Խունաջ, որը նույնպես քաղաք է, կա մաքսային կայան (մարսադ), ուր մաքս են վերցնում Ատրպատականից Ռեյ տարվող ապրանքներից, հարկեր (լավազիմ) ստրուկներից (ռակիկ) և գրաստից և ամեն տեսակ վաճառքի առարկաներից, ինչպես ոչխարներից ու կովերից: Այս մաքսատան եկամուտը (մուկաթաա) միշտ տարեկան

հարյուր հազար դինար է եղել և երբեմն բարձրացել է մոտավորապես մեկ միլիոն դիրհեմի, ապա եղել են պակաս եկամուտով տարիներ: Նրանում և նրան հարակից մասերում եղած շրջանառության նմանը չկա այլ երկրներում:

Ճանապարհը Արդաբիլից Ամիդ և Միջագետքի սահմանային ամրությունների գոտու շրջանները: Արդաբիլից Մարաղա մոտավորապես քառասուն փարսախ է, Մարաղայից Ուրմիա, ցամաքով ու ծովով, մոտավորապես երեսուն փարսախ է, Ուրմիայից Սալմաստ՝ երկու օթևան, Սալմաստից Խոյ՝ ինը փարսախ, Խոյից Բերկրի՝ երեսուն փարսախ, Բերկրիից Արճեշ՝ երկու օր, Արճեշից Խլաթ՝ երեք օր, Խլաթից Բաղեշ՝ երեք օր, Բաղեշից Արզն, Նփրկերտ (Մայաֆարիկին)՝ չորս օր, Նփրկերտից Ամիդ՝ երկու օր, Ամիդից Խառան ղազիների (հավատի ռազմիկներ) ու կամավորների ճանապարհով Շիմշաթ և Սամոսատի վրայով Մալաթիա՝ մոտավորապես հինգ օր:

Ճանապարհը Մարաղայից Դվին Ուրմիայի ու Սալմաստի վրայով: Խոյ են հասնում հիսուներեք փարսախ գնալուց հետո, Խոյից Նախճավան (Նաշավա) հինգ օր է, Նախճավանից Դվին՝ չորս օթևան (մարհալա):

Մարաղայից Դինավար վաթսուն փարսախ է, առանց որևէ մինբարի (մզկիթի) հանդիպելու:

Ահա այս է երկրամասի ճանապարհների ամբողջությունը և ճանապարհների նկարագրությունն ու վիճակը:

Իսկ այդ [երկրամասի] վիճակը, ինչքան կարող եմ հավաստել, ապա նրա տուրքերը (ջիբայաթ) և հարկերը (ղարայիբ), որ դրված են նրա սահմանամերձ թագավորների (մուլուք ալ-աթրաֆ) վրա, բացահայտում են նրա վիճակը և վկայում նրա նկարագրության ճշմարտացիության մասին: Թեև երբեմն [հարկերը] բարձրանում կամ իջնում են: Հավաքված հարկի միջինը և ամենաբարձր չափը, որ ստացվել էր երեք հարյուր քառասունչորս (955-956) տարում, ըստ այն պայմանավորվածության (մուվակաֆաթ), որ կայացրել էր Աբու-լ-Կասիմ Ալի իբն Ջաաֆարը՝ Աբու-լ-Կասիմ Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջի տնտեսական կառավարիչը (սահիբ զիմամ) և հետագայում Մարզուբան իբն Մուհամմադի վեզիրը.

Նա (Մարզուբանը) պայմանավորվեց Մուհամմադ իբն Ահմադ ալ-Ազդիի՝ Շիրուանշահի տիրոջ ու թագավորի հետ մեկ միլիոն դիրհեմ վճարով:

Շաքեի (Շաքքի) տեր Իշխանիկի* հետ, որը հայտնի է Աբու Աբդ ալ-Մալիք անվամբ, որոշ պայմանավորվածության եկավ:

Ռաբի տեր Սենեքերիմի (Սանհարիբ)** հետ, որը հայտնի է Իբն

* Շաքե – Կամբեճանի տեր Իշխանիկն է, Սահլ Սմբատյանի տոհմից:
** Փառիսոսի թագավոր Հովհաննես Սենեքերիմն է, որդի Սևադայի:

Սավադա անվամբ, պայմանավորվեց երեք հարյուր հազար դիրհեմով ու հավելյալ ընծաներով (ալթաֆ):

Ջուրզի (Խազա՞ր) տեր Վաչագան (Վաչական)* իրն Մուսայի (որդի Մովսեսի) հետ՝ երկու հարյուր հազար դիրհեմով:

Վայոց Ձորի (Վայզուր) տեր Աբու-լ-Կասիմ Վայզուրիի** (Վայոցձորեցի) հետ պայմանավորվեց հիսուն հազար դինարով և ընծաներով:

Աբու-լ-Հայջա իբն Ռավվադից, նրան պատկանող Ահր և Վարզուկան գավառներից՝ հիսուն հազար դինար և ընծաներ:

Աբու-լ-Կասիմ ալ-Ջիդանիից, նրան պատկանող գավառներից ու մնացորդներից (բակայա), որ պարտական էր՝ չորս հարյուր հազար դիրհեմ: Սակայն նա փորձեց պակասեցնել, բայց անհաջող եղավ իր խնդրանքի մեջ (ձանձրացրեց իր խնդրանքով) և որպես իր արարքի համար պատիժ, պայմանավորվածի վրա ավելացվեց երեք հարյուր հազար դիրհեմ և հարյուր կտոր ռումի (բյուզանդական) դիպակ (դիբաջ):

Նա (Մարզուբանը) պարտավորեցրել էր Դերանիկի որդիներին (բանու ալ-Դայրանի)*** ըստ նախկին պայմանավորվածության տարեկան հարյուր հազար դիրհեմ վճարել: Սակայն նրանց չորս տարով վճարումից ազատեց ի վարձատրություն այն բանի, որ նրանք Դայսամ իբն Շադլույային իրեն էին հանձնել, որը նրանց մոտ պաշտպանություն էր խնդրել, սակայն հետո հանձնել ու դավաճանել էին:

Սմբատի որդիների (բանու Սինբաթ)[70] հետ համաձայնել էր, որ Ներքին Հայաստանի (Արմինիա ալ-դախիլա) իրենց նահանգներից երկու միլիոն դիրհեմ վճարեն, սակայն հետագայում զիջել էր հարյուր հազար դիրհեմ:

Խաչենի (Խաջին) տեր Սենեքերիմի (Սանհարիբ)[71] հետ համաձայնել էր հարյուր հազար դիրհեմ և ընծաներ ու ձիեր, հիսուն հազար արժեքով:

Այսպիսով հարկերը (մուկաթա) ոսկով ու արծաթով, հավելվածներով և ընծաներով, ինչպես ջորիներ, ձիեր ու զարդարանքներ, հասնում էին տասը միլիոն դիրհեմի:

Իսկ խարաջը ամբողջ Ատրպատականի, Հայաստանի և երկու Առանների իրենց շրջակայքով և հարակից (հավելյալ) հարկերով և ընծաներով, հասնում էր հինգ հարյուր հազար դինարի:

Սա է այն ամեն ինչը, որ իմացել եմ նրա (այդ երկրամասի) դրության մասին, ըստ իմ ձեռքի տակ եղած տեղեկությունների ու մանրամասնությունների և իմ կարողությունների ու հնարավորությունների:

---

* Ջուրզի կամ Ջուրուզի տերը հավանաբար Գողթի բերդի տեր պիտի կարդալ, որը Վաչագանն է, որդի Մովսեսի, որդի Եսայի Աբու Մուսեի:

** Աբու-լ-Կասիմ Վայզուրին հավանաբար Վայոց Ձորի իշխան Սմբատի որդի Վասակն է:

*** Դերենիկի որդիները Արծրունիներն են:

# ԻԲՆ ՀԱՈՒԿԱԼ

## ԵՐԿՐԻ ՊԱՏԿԵՐԸ
## (ՍՈՒՐԱՏ ԱԼ-ԱՐԴ)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Ջայհանի – Աբու Աբդալլահ Մուհամմադ իբն Ահմադ իբն Նասր ալ-Ջայհանին Ժ դարի մատենագիր է: Նա եղել է Սամանիների պետության (Բուխարա կենտրոնով) վեզիրը: Գրել է աշխարհագրական երկ, որն ըստ երևույթին ավանդական ձևով կոչվել է «Քիտաբ ալ-Մասալիք ուա ալ-Մամալիք», որտեղ մեծապես օգտվել է Իբն Խորդադբեհի երկից: Ջայհանիի այս երկը, որը ստեղծվել է հավանաբար մինչև 922 թվականը և որից հաջորդ դարերում օգտվել են բազմաթիվ մատենագիրներ, ցավոք մեզ չի հասել:* (Крачковский, т. 4, стр. 219-226):

[2] *Ռաս ալ-Ջումջումա (Գանգի հրվանդան) - Գուցե այժմ «ալ-Հադ» կոչված հրվանդանն է:*

[3] *Կալաբրիա – Պատմական երկրամաս Իտալիայի հարավում:*

[4] *Լոմբարդիա - Պատմական երկրամաս Իտալիայի հյուսիսում: Հնում կոչվում էր Ինսումբրիա: Ե դարում այն գրավեցին Լանգոբարդները, որտեղից էլ առաջացավ Լոմբարդիա անվանումը: (*Сов. Ист. Энц., т. 8, стр. 765*):*

[5] *Հավանաբար նկատի ունի Հունաստանի Պելոպոնես թերակղզին:*

[6] *Սինդ - Տե՛ս Իբն ալ-Ֆակիհ, ծնթգր. 5:*

[7] *Միհրան գետ – Տե՛ս Իբն Ռուստա, ծնթգր. 15:*

[8] *Մուլտան - Արաբներն այսպես են կոչել Փենջաբի հին քաղաքներից մեկը՝ Մուլաստհանան: Արաբական նվաճումից հետո Մուլտանը դարձավ կարևոր առևտրական քաղաք: (Multan, Y. Friedmann, EOI, CD-ROM, (VII: 548b)):*

[9] *Սիջիստան – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 12:*

[10] *Ջարահ յիճ - Կասպից ծովի ևս մեկ անվանում: Յակուտը իր Աշխարհագրական բառգրքում «Բահր ալ- ադար» հոդվածում գրում է «Նույնն է, որ կոչվում է նաև Բահր Թաբարիստան, Բահր Ջուրջան և Բահր Աբասքուն: Շատ ընդարձակ մի ծով է, որն ուրիշ ծովի միացած չէ: Կոչվում է նաև Խորասանի ծով, Ջիլի ծով, ոմանք էլ կոչում են Խորասանի ավազարյուր: Համդան ասում է, թե նրա պարսկերեն անունն է Ջարահ Աքֆուդա, կոչվում է նաև Աքֆուդա-Գարիու, իսկ Արիստոտելը կոչում է Հիրքանիա»: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 30)*

[11] *Թուխայրիստան – Թոխարիստան, տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 57:*

[12] *Գունկուլա - Տե՛ս Ֆարղանի, ծնթգր. 21:*

[13] *Վերին Սաիդ - Տե՛ս նաև Սաիդ, Իբն ալ-Ֆակիհ, ծնթգր. 11:*

[14] *Բարկա - Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 9:*

[15] *Տրիպոլիս (Թարաբուլուս) – Աֆրիկայի Տրիպոլիսի մասին է:*

[16] *Իֆրիկիա նահանգը – Տե՛ս Վակիդի, ծնթգր. 18:*

[17] *Գոգ ու Մագոգ - Արաբ. Աջուջ-Մաջուջ (Յաջուջ Մաջուջ)- Խոսքը երկու բարբարոս ցեղախմբերի մասին է, որոնք, ըստ մուսուլմանական ավանդության, սերված են Նոյի երրորդ որդուց՝ Հաբեթից: Ըստ ոմանց, նրանք հսկաներ են, ըստ ուրիշների՝ անծանոթ բարբարոսներ, որոնք բնակվում են աշխարհի ծայրում: Նույնն են ինչ Եզեկիելի գրքի և Հովհաննու հայտնության Գոգ և Մագոգը: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 160):*

[18] *Սլավոններ (սակալիբա) - Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 42:*

[19] *Բուլղարներ (Վոլգայի) – Զչփոթել Բուրջանի հետ. Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 43:*

[20] *Բաշջիրդ – Կամ Բաշկուրտ անվանումը Ժ-ԺԴ դարերի արաբ մատենագիրները տալիս են երկու տարբեր երկրների՝ մեկը Հարավային Ուրալում, որտեղ բնակվում էին ներկայիս բաշկիրների (բաշկորտ) նախնիները, իսկ մյուսը՝ Հունգարիան էր: Այս երկուսը ծագումով ցեղակից էին:* (Новосельцев, Хазарское государство, стр. 96):

[21] *Բուրթաս – Սրանք բնակվում էին Պովոլժիեի հյուսիսում, որտեղ, հավանաբար, չէր հասնում Խազարական սլետության ազդեցությունը: Բուրթասները ուգրո-ֆիննական ծագում ունեին և հանդիսանում են ներկայիս մորդվաների ու սրանց ցեղակից ժողովուրդների նախնիները:* (Новосельцев, Хазарское государство, стр. 197):

[22] *Խազարներ – Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 44:*

[23] *Պածինակներ – Տե՛ս Իբն Ռուստա, ծնթղր. 41:*

[24] *Բուլղարներ (Դանուբի)– Տե՛ս բուրջան, Խալիֆա իբն Խայյաթ. ծնթգր. 43:*

[25] *Խարլուխիյա – Տե՛ս Իբն Խորդադբեհ, ծնթղր. 9:*

[26] *Սևերի (Սուդան) երկիրը – Սուդան երկրի անվանումը ծագում է արաբերեն Բիլադ ալ-սուդան՝ «Սևերի երկիր» արտահայտությունից:*

[27] *...ամենաընդարձակը Պարսից ծովն է – Սովորաբար արաբադիր մատենագիրներն այսպես էին կոչում Պարսից ծոցը, բայց տվյալ դեպքում աշխարհագրագետը հավանաբար նկատի ունի Արաբական ծովը, կամ դույցե Հնդկական օվկիանոսը:*

[28] *.. այն նեղուցից, որ Մաղրիբի ու Անդալուսի միջև կա – Ալբորան ծովը:*

[29] *Իթիլ (Ատուլ) – Վոլգա գետը:*

[30] *[Ֆաթիմյան խալիֆա] Մանսուրը – Ֆաթիմյան խալիֆա Մանսուրը իշխել է 946-953 թվականներին: (Fatimides, M. Canard, EOI, CD-ROM, (II: 850a)).*

[31] *Իդրիս իբն Իդրիսը – կամ Իդրիս Բ-ը Իդրիսիների դինաստիայի տիրակալներից էր: 803 թվականին 11 տարեկան հասակում հռչակվեց իմամ: Նա մահացավ 828 թվականին պատահարի հետևանքով, 38 տարեկան հասակում: (Idris II, D. Eustache, EOI, CD-ROM, (III: 1031b)):*

[32] *Աղլաբիների – Աղլաբիներ (կամ Բանու լ-Աղլաբ) մահմեդական դինաստիա էր, որը ողջ 9-րդ դարի ընթացքում իր ձեռքում էր պահում Իֆրիկիա նահանգը Աբբասյանների անունից: Դինաստիայի հիմնադիր է համարվում Իբրահիմ իբն ալ-Աղլաբը, որին Հարուն ալ-Ռաշիդ խալիֆան 800 թվականին նշանակեց Զաբի կառավարիչ: Շարունակելով համարվել Աբբասյանների վասալներ, միաժամանակ Աղլաբիները ձեռք բերեցին ժառանգական իրավունքներ և իշխեցին Իֆրիկիայում: Ավելի քան հարյուր տարի իշխելուց հետո Աղլաբիների ստեղծած պետական միավորը 10-րդ դարի սկզբին (909) անցավ հզորացող Ֆաթիմյան խալիֆայության տիրապետության տակ: (Aghlabides, G. Marcais Aast, EOI, CD-ROM, (I: 247b)):*

[33] *Աբդ ալ-Ռահման իբն Մուհամմադ [խալիֆան] – Մահմեդական Իսպանիայի խոշորագույն տիրակալներից մեկը և այնտեղ իշխած Օմայան տոհմի առաջին խալիֆան: Աբդ ալ-Ռահման իբն Մուհամմադը, կամ Աբդ ալ-Ռահման Գ-ը, իշխեց բավական երկար՝ 912-961, որով նշանավորվեց ամենափառավոր դահակալությունը Մահմեդական Իսպանիայի պատմության մեջ: (Abd al-Rahman, E. Levi-Provencal, EOI, CD-ROM, (I: 81b)):*

[34] *Ֆուսթաթ – Տե՛ս Բալազուրի, ծնթղր. 193:*

[35] *Ամր իբն ալ-Աս – Տե՛ս Վակիդի, ծնթղր. 16:*

[36] *Աբու-լ-Աբբաս Ահմադ իբն Թուլուն – Թուլունիների դինաստիայի հիմնադիրը: Սա թյուրք ստրուկների մի դինաստիա էր: Նրանք դեռևս Հարուն ալ-Ռաշիդի ժամանակներից ծառայելով որպես զինվորականներ, աստիճանաբար բարձրացան և դարձան Եգիպտոսի կառավարիչներ: Ահմադը Եգիպտոսում բարձր դիրքեր գրավեց 868 թվականին և աստիճանաբար դարձավ փաստացի ինքնուրույն տիրակալ՝ Եգիպտոսին*

*սիացնելով նաև Սիրիան և իշխեց մինչև 884 թվականը: (Ahmad ibn Tulun, Zaky M. Hassan, EOI, CD-ROM, (I: 278a)):*

37 *...Ջաուհարը, մաղրիբցիների զորավարը – Ֆաթիմյան խալիֆայության զորավար և պետական գործիչ: Նրա ամբողջական անունն էր Ջաուհար իբն Աբդ Ալլահ, որի վրա ավելացվում էր ալ-Սակլաբի (սլավոն) և ալ-Սիկիլլի (սիկիլիացի): Նրա հայրը, ըստ երևույթին, սլավոն կամ այլ եվրոպական ծագումով ստրուկ էր: Բայց Ջաուհարը հենց սկզբից հիշատակվում է որպես ազատ մարդ: Ջաուհարն արդեն իրեն դրսևորել էր որպես տաղանդավոր զինվորական, երբ Ֆաթիմյան խալիֆա ալ-Մուիզզը որոշեց ուժով տիրանալ ողջ Հյուսիսային Աֆրիկային ու Եգիպտոսին և հենց Ջաուհարին վստահեց արշավանքը ղեկավարելու պատիվը: Մի շարք այլ հաղթանակներից հետո, ալ-Մուիզզը Ջաուհարին ուղարկեց նվաճելու Եգիպտոսը: 969 թվականի հուլիսի 1-ին Ջաուհարը իր զորքով արդեն Ֆուսթաթում էր և տիրում էր ամբողջ Եգիպտոսին: Հաջորդ իսկ օրը Ջաուհարը հիմքը դրեց մի նոր քաղաքի՝ Կահիրեի, Ֆուսթաթից ոչ հեռու, որը մի քանի տարի անց դարձավ Ֆաթիմյան հսկայածավալ տերության մայրաքաղաք և այդ ժամանակից ի վեր անփոփոխ մնաց իբրև Եգիպտոսի մայրաքաղաք: (Djawhar al-Sikilli, H. Mones, EOI, CD-ROM, (II: 494b)):*

38 *Տիննիս – Տե՛ս Ֆարղանի, ծնթգր. 54:*

39 *Ազիզ [խալիֆա] – ալ-Ազիզ Բիլլահը Ֆաթիմյան հինգերորդ խալիֆան էր և առաջինը որ հենց սկզբից իշխում էր Կահիրեից: Նա հաջորդեց իր հորը՝ Մուիզզին: Հռչակվեց խալիֆա 976 թվականին: Նրա հարկային գործերը վարում էր Յակուբ իբն Քիլլիսը, որին տրվեց վեզիրի կոչում: Թեև այստեղ Իբն Հաուկալը բացասաբար է խոսում վեզիրի մասին, սակայն համարվում է, որ նա կարգավորել է հարկահանությունը Ֆաթիմյան պետության մեջ: (al-Aziz Billah, M. Canard, EOI, CD-ROM, (I: 823a)):*

40 *Այստեղ և հետագայում քառակուսի փակագծերով տրվում են այն հատվածները, որոնք Իսթախրիի բնագրում ավելացվել են հետագայում, հավանաբար 12-րդ դարում:*

41 *Սվեդիա (Սուայդիյա) – Գտնվում է Անտիոքից 26 կմ դեպի հարավ-արևմուտք, Միջերկրականի ափին մոտ, Օրոնտես գետից 6 կմ հյուսիս: Միջնադարում այն առաջին անգամ հիշատակվում է նկատի ունենալով նույնանուն նավահանգիստը գետաբերանում: Հայտնի էր նրանով, որ ոչ հեռու գտնվում են սուրբ Սիմեոն Սյունակյացի վանքի ավերակները: Սուայդիյան նոր ժամանակներում մտնում էր Սիրիայի Ալեքսանդրեթի գավառի մեջ և միայն 1939 թ. փոխանցվեց Թուրքիային: (al-Suwaydiyya, E. Honigmann [D. W. Morray], EOI, CD-ROM, (IX: 910a)).*

42 *Քանիսա – Քանիսատ ալ-Սաուդա: Տե՛ս Խալիֆա իբն Խայյաթ, ծնթգր. 85:*

43 *Բաալբաք – կամ Բաալբեք, տես Բալաձուրի, ծնթգր. 19:*

44 *Սիմակ լեռ – Սիմակի լեռ: Լեռ Հայկական լեռնաշխարհում: Հիշատակվում է սեպագիր արձանագրություններում: Տեղադրվում է Ուրմիա լճի մոտակայքում: (ՀՀՇՏԲ, հ. 4, էջ 603):*

45 *Ռուսափ (Ռուսաֆա) – Տե՛ս Բալաձուրի, ծնթգր. 81:*

46 *Կալինիկում (Ռակկա) – Տե՛ս Ռակկա, Բալաձուրի, ծնթգր. 31:*

47 *Արտաքին Հայաստան (Արմինիա ալ-խարիջա) և Ներքին Հայաստան (Արմինիա ալ-դախիլա) – Հայաստանի նման բաժանումը վերաբերում էր Բուն Հայաստանին (Ոչ թե Արմինիա ոստիկանությանը) և ընդգրկում էր՝ Արտաքին Հայաստան հասկացության մեջ մոտավորապես հարավ-արևմուտքը (Բերկրի, Խլաթ, Ոստան և Արճեշ), իսկ Ներքին Հայաստանի մեջ հյուսիս-արևելքը (Դվին, Նախճավան, Կարին և այլն) (Տե՛ս Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 133): Ինչ վերաբերում է լեռներին, ապա նույն այդ տրամաբանությամբ Հայաստանի այս երկու մասերն իրարից բաժանում են, հիմնականում, Հայկական Պարն ու Վասպուրականի լեռները, որոնք էլ իրենց հերթին, մի կողմից միանում են Եփրատի ու Տիգրիսի ավազանի լեռներին, մյուս կող-*

*մից գնում-միանում Ատրպատականի յեռներին: (Վ. Տ.-Ղ.):*

48 *Ղութա – Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 13:*

49 *Սարիներր – Տե՛ս Արու Յուսուֆ, ծնթգր. 17:*

50 *Հուսայն իրն Ալի – Տե՛ս Յակուրի (պ.), ծնթգր. 30:*

51 *Հսկայական սյուների վրա կառուցված – Հավանարար նկատի ունի Բաալբեկի (Հելիոպոլիս) Յուպիտերի տաճարի հսկա սյուներր, որոնք մինչև այսօր էլ կանգուն են:*

52 *Սայֆ ալ-Դաուլա – Արու լ-Հասան Ալի իրն Արու լ-Հայջա Արդ Ալլահ իրն Համդան իրն Համդուն իրն ալ-Հարիս Սայֆ ալ-Դաուլա ալ-Տաղլիրին Հալերի, Հյուսիսային Սիրիայի, ինչպես նաև Մայաֆարիկինի և արևմտյան Ջաղիրայի տիրակալն էր 945-967 թվականներին: Նա հռչակ է ձեռք րերել արարական պատմության մեջ որպես Բյուզանդիայի դեմ ջիհադի քաջարի առաջնորդ: Նա առատաձեռն մարդ էր և մեծ գումարներ էր ծախսում գերիներին ազատելու համար: Սայֆ ալ-Դաուլան պատմության մեջ է մտել նաև որպես լուսավորյալ մարդ, որն իր արքունիքը վերածել էր րանաստեղծների ու գիտնականների հավաքատեղիի: Միևնույն ժամանակ, միշտ չէ որ նա հաջողակ էր, այդ թվում և արտաքին թշնամիների դեմ պայքարում: Ամեն դեպքում նա պատմության մեջ մնացել է որպես ասպետական մի կերպար: Մինչդեռ Իսթախրին նկարագրում է նրան միայն րացասական գույներով: Հայտնի է, որ Սայֆ ալ-Դաուլան մեծ համակրանքով էր վերարերվում շիաներին (գուցե դա է պատճառը մատենագրի նման գնահատականի): (Sayf al-Dawla, Th. Bianquis, EOI, CD-ROM, (IX:103a)):*

53 *Ավասիմ (ապաստան ) – Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 22:*

54 *Ռումի տեր Մասուդ իրն Կիլիջ Ալալան ալ-Սալջուկի – Խոսքր Իկոնիայի (Ռումի) սելջուկյան սուլթան Ռուքն ալ-Դին Մասուդ իրն Կիլիջ Արսլանի մասին է: Տե՛ս նաև Արամ Տեր-Ղևոնդյանի հետևյալ ծանոթագրությունր «Իկոնիայի պետությունր արար պատմիչների մոտ կոչվում է Ռումի (Բյուզանդիային տրվող Ռում հոռոմ րառից) սուլթանություն: Առաջացավ ԺԱ դ. վերջում սելջուկյան պետության քայքայմանր զուգրնթաց: Աստիճանարար ծավալվեց, նախ 1157-ին գրավելով Դանիշմանդյանների որոշ հողեր (Փոքր Հայքում), 1207-ին Անթալիան և այլն: Ալա ալ-Դին Քայ Կուրադի օրոք (1219-1236) հզորության գագաթնակետին հասավ: Նրա քաղաքներն էին Իկոնիան, Կեսարիան, Սեբաստիան և այլն: Մոնղոլական արշավանքներից (1243) հետո դարձավ Իրանի Հուլաղյան իլխանության ենթակա, իսկ 1307-ին մանր միավորների տրոհվեց»: (Իրն ալ-Ասիր, էջ 399-400):*

55 *Իրն Արու-լ-Սաջ – Տե՛ս Իսթախրի, ծնթգր. 2:*

56 *Բարդաջ – կամ Բարդիջ, Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 150:*

57 *Հունարակերտ – Խունան, Տե՛ս Բալաղուրի, ծնթգր. 128:*

58 *Խունաջ – Տե՛ս Իսթախրի, ծնթգր. 3:*

59 *Հուլաղու – Խոսքր Ջինգիզ խանի թոռ Հուլաղուի (1217-1265) մասին է, որր 1256-1258 թթ. մոնղոլական րանակով նվաճեց Իրանն ու Իրաքր: 1258-ին վերացրեց Արրասյան խալիֆայությունն ու մահապատժի ենթարկեց վերջին խալիֆա Մուսաասիմին: Ստեղծեց մոնղոլական ինքնուրույն պետություն՝ Հուլաղյան իլխանությունր, որի մայրաքաղաքր դարձավ Մարաղան: Հենց այստեղ էլ, Հուլաղուի օրոք, Նասրեդդին Թուսիի ղեկավարությամր կառուցվեց Մարաղայի աստղադիտարանր: (*Сов. Ист. Энц., т. 15, стр. 685, *Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 7, էջ 296-297):*

60 *Ոստան (Վասթան) – Տե՛ս Իրն Ռուստա, ծնթգր. 34:*

61 *Արու-լ-Կասիմ Յուսուֆ իրն ալ-Դաուդադ իրն ալ-Դաուդաշտ – Արու-լ- Կասիմ Յուսուֆր Սաջյան տոհմից, որր մայրաքաղաքր Մարաղայից տեղափոխեց Արդարիլ: Տե՛ս նաև Իսթախրի, ծնթգր. 2:*

62 *Յուսուֆ իրն Արու-լ-Սաջ – Տե՛ս Իսթախրի, ծնթգր. 2:*

63 *Ռուդայնիներ – Սա արարական մի տոհմ էր, որ խալիֆայության կողմից Ատրպատականի նվաճումից հետո, հաստատվեցին այստեղ: Ուրմիայից դեպի Մարա-*

դա տանող ճանապարհի վրա նրանք հիմնեցին Նիրիզա քաղաքը: Իսկ հետագայում՝ Թ դարում, Ռուդայնինների ներկայացուցիչներից ոմանք խալիֆայի կողմից նշանակվեցին Ատրպատականի կառավարիչներ: (Niriza. V. Minorsky, EOI, CD-ROM, (VIII: 526)):

64 Անդարար – Տե՛ս Կուդամա, ծնթգր. 5:

65 Ներքին և Արտաքին Հայաստան – Ըստ երևույթին Ներքին Հայաստան ասելով հեղինակը նկատի ունի այն տիրույթները, որոնք Հայոց Բագրատունի թագավորների անմիջական իրավասության տակ էին Հյուսիսային Հայաստանում, իսկ Արտաքին Հայաստանը ընդգրկում էր Վասպուրականի թագավորությունը, արաբական ամիրությունները և այլն (Ա. Տ.-Ղ.):

66 ... այժմ մահմեդական իշխողների ձեռքում են – Հավանաբար նկատի ունի արաբական (մահմեդական) ամիրություններին:

67 ...թե ինչ է կատարվել նրա ժողովրդի հետ – Սա մի ավանդություն է, որի մասին խոսում են տարբեր արաբ մատենագիրներ վկայակոչելով՝ Ղուրանի մի տողը, ուր ասում է. «Եվ Ավոտը և Թեմոտը և Ռասի բնակիչները և ուրիշ ազգեր» (Ղուրան, XXV, 40): Օրինակ այդ մասին խոսում է Յակուբին, իսկ Յակուտը իր Աշխարհագրական բառարքի «Ար-Ռաս» (Արաքս) հոդվածում գրում է «Ատրպատականի (Ադրբեջան) հովիտը ար-Ռաս գետի այն կողմի ափի վրա է տարածվում: Պատմում են, թե Առանում, Ար-Ռասի շուրջը հազար քաղաք գոյություն ուներ: Այլահը նրանց ուղարկեց Մովսես կոչված մի մարդարե, որը տարբեր է Ամրանի որդի Մովսեսից: Սա հրավիրեց նրանց աստծո հավատքին, բայց նրանք չհավատացին նրան, ուրացան և դեմ գնացին նրա հրամաններին: Այն ժամանակ մարդարեն անիծեց նրանց և Այլահը Մեծ ու Փոքր Մասիսները փոխադրեց Թաիֆից (Հիջազի- Հ. Ն.) դեպի Առան և նրանց տակ թաղվեցին ար-Ռասի բնակիչները: (Հակոբ Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 69) (Տե՛ս նաև շատ ավելի մանրամասն. Ա. Տեր-Ղևոնդյան, Մասիս լերան մասին արաբական զրույցը, Հոդվածների ժողովածու, էջ 222-229):

68 Դերանիկի որդին Անձևացյաց, Վանի ու Ոստանի տերը – Խոսքը հավանաբար Դերենիկ Արծրունու մասին է:

69 Բակլիյա (կարմատյան) Բաթինիներ (իսմայիլականներ) – Իսլամի երեք հիմնական ուղղություններից (սուննա, շիա, խարիջի) ամենամեծ թվով ճյուղեր ու ենթաճյուղեր ունի շիա ուղղությունը: Այդ ուղղություններից ամենախոշոր ու կարևորներից է Իսմաիլական ճյուղը, որը անցյալում կոչվում էր նաև «Բաթինիյա»: Իր հերթին Իսմաիլական ճյուղի մի թևն են Կարմաթները, որոնք Թ-ԺԱ դարերում ստեղծեցին ուժեղ և ազդեցիկ մի պետություն Իրաքի հարավում և Արաբիայի մի մասում: Ահա սրանց մի մասը կոչվում էր «Բակլիյա»: Վերջիններս բնակվում էին Սավադում (Հարավային Իրաք) և կապված էին Կարմաթների հետ: Սրանց ղեկավարներից էր Աբու Հատիմը՝ Ժ դարի սկզբին: «Բակլիյա»ի հետևորդները գլուխ բարձրացրին Քուֆայում և Վասիթում: Նրանց ղեկավարներն էին Մասուդ իբն Հուրայսը և Իսա իբն Մուսան: Սկզբնական որոշ հաջողությունից հետո սակայն, նրանք ճնշվեցին Մուկտադիր խալիֆայի զորավար Հարուն իբն Ղարիբի կողմից: (Bakliyya, M. G. S. Hodgson. EOI, CD-ROM, (I: 962b), Batiniyya, M. G. S. Hodgson. EOI, CD-ROM, (I: 1098b)):

70 Սմբատի որդիների (բանու Սինբաթ) – Խոսքը Բագրատունիների մասին է: Սմբատի որդիներ ասելով մատենագիրը նկատի ունի Սմբատ Ա-ին ու նրա հաջորդներին:

71 Խաչենի տեր Սենեքերիմ – Թ-ԺԱ դարերում Խաչենը և հարևան գավառներն ընդգրկում հայկական մի իշխանություն, որը նաև կոչվում էր Փառիսոսի իշխանություն: Ժ դարի կեսին Սահակ Սևադայի որդի Սենեքերիմը (Հովհաննես-Սենեքերիմ) իրեն հռչակեց թագավոր: Հայոց Բագրատունյաց կենտրոնական թագավորության թուլացմամբ շահագրգռված Բյուզանդական կայսրությունը ճանաչեց այս թագավորությունը՝ Սենեքերիմին ուղարկելով արքայական թագ և ծիրանի: Փառիսոսի թագավորությունն իր գոյությունը պահպանեց մինչև ԺԱ դարի կեսերը: (Հայկ. սովետ. հանրագիտարան, հ. 12, էջ 311):

## ՄՈՒԿԱԴԴԱՍԻ
## (946/947 - 1000)

*Շամս ալ-Դին Աբու Աբդալլահ ալ-Մուկադդասին ծնվել է Երուսաղեմում (դրանից էլ նրա Երուսաղեմացի՝ Մուկադդասի մականունը) 946/947-ին: Ճանապարհորդել է գրեթե բոլոր մահմեդական երկրներում: Իր «Ահսան ալ-Տակասիմ ֆի Մաարիֆատ ալ-Ակալիմ» (Լավագույն բաժանումները երկրամասերի (կլիմաների) ճանաչման համար) աշխարհագրական երկը չարաղրել է 10-րդ դարի ութսունական թվականներին: Մահացել է մոտավորապես 1000 թվականին:*

*Նա, ինչպես դասական դպրոցի բոլոր աշխարհագրագետները, նկարագրել է միայն մահմեդական աշխարհը, որը նա երկու հստակ մասերի է բաժանել՝ արաբական երկրների և ոչ-արաբական (աջամ) երկրների: Երկրորդ խմբի մեջ է նաև Հայաստանը, որն «Ընդարձակ հովիտների երկրամաս» հասկացության մեջ միացվել է Առանին ու Ատրպատականին:*

*Թարգմանությունը կատարվել է Դե Գուեի մատենաշարի երկրորդ հրատարակությունից: Descriptio imperii Moslemici autore Al-Mokaddasi, Bibliotheca Geographorum Arabicorum, v. III, Lugduni Batavorum, 1967.*

*(Տե՛ս* **Крачковский,** *т. IV, стр 210-218,* **A. Miquel,** *al-Mukaddasi, (VII:492b), EOI, CD-ROM)*

## ՄՈՒԿԱԴԴԱՍԻ

## ԼԱՎԱԳՈՒՅՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ ԵՐԿՐԱՄԱՍԵՐԻ ՃԱՆԱՉՄԱՆ ՀԱՄԱՐ (ԱՀՍԱՆ ԱԼ-ՏԱԿԱՍԻՄ ՖԻ ՄԱԱՐԻՖԱՏ ԱԼ-ԱԿԱԼԻՄ)

## ԸՆԴԱՐՁԱԿ ՀՈՎԻՏՆԵՐԻ ԵՐԿՐԱՄԱՍԸ (ԻԿԼԻՄ ԱԼ-ՌԻՀԱԲ)

*Նկատի ունենալով, որ երկրամասը (իկլիմ) կարեւոր է, ունի շատ առավելություններ, նրանում առատ են մրգերը, խաղողի որթերը, նրա քաղաքները Իրաքի նման հաճելի են, ինչպես Մուղանը, Խլաթը, Տարբիզը, նրանում գները ցածր են, ծառերը խիտ, նրա միջով գետեր են հոսում, լեռների վրա ձյուն կա, իսկ դաշտերում արհեստանոցներ, տափաստանները լի են ոչխարների հոտերով, իսկ մենք նրա բոլոր գավառների համար մի ընդհանուր անուն չգտնելով, այն կոչեցինք Ընդարձակ հովիտների երկրամաս (Իկլիմ ալ-Ռիհաբ): Այս երկրամասը Իսլամի [թագավորության] համար մի գեղեցկություն է, [թեև] սահմանականներն այնտեղ սլաշարման են ենթարկվում հոռոմների կողմից, երկրամաս, որը բրդե գործվածքներ է արտադրում և դարմանահրաշ գոտիներ, ուր որդերը կարմիր (կիրմիղ) ներկ են տալիս*[1]*:*

*Հնարավոր չէ տալ նրա նկարագրությունը: Մեկ ոչխարի գինը երկու դիրհեմ է, հացի երկու նկանակը մեկ դանկ է, իսկ պտուղները ոչ հաշվում են, ոչ կշռում: Միաժամանակ սա մի կարեւոր սահմանային ամրություն է (սաղր) և աղնիվ երկիր: Նրանում են Արաքսի [եզերարնակ] մարդիկ (ասհաբ ալ-Ռաս), որոնք Մեծ Մասիս (Հարիս) և Փոքր Մասիս (Հուվայրաս) լեռների տակ են մնացել*[2]*: Նրանում կա Թաիֆի [լեռների] մի մասը և դրախտի հետ նմանություն ունի: Սա իսլամի պարծանքն է և ղազիների (ճակատի ռազմիկների) հանգստավայրը: Ունի օգտակար ապրանքներ, հին գավառներ, հորդառատ գետեր, արժեքավոր գյուղեր, հրաշալի առանձնահատկություններ ու հյութեղ մրգեր:*

*Նրա [սահմանական] բնակիչները սուննային դիտակ են, ճարտասան և պատկառելի: Այնտեղ կան մանանա, տորոն, շուշան (ղանրակ), աշուրա՞ (կասրույա) ձուկը, ծով և լճեր, Դարբանդը (ալ-Բաբ), սահմնդական մենաստաններ (ռիբաթ), կրոնական հավատ ու բարեգործություններ: Սակայն ամեն մեկն իր հավատալիքների (մադհաբ) մեջ*

ջերմեռանդ է: Միաժամանակ նրանք ծանր են. նրանց լեզվի մեջ կա գորով և պարծենկոտություն ունեն: Այնտեղ հասնելու ճանապարհները դժվար են, և քրիստոնյաները նրանում մեծամանություն են կազմում: Ահա այս է երկրամասի ձևն ու պատկերը:

Այս երկրամասը մենք բաժանել ենք երեք նահանգների: Առաջինը, որը լճից (Կասպից ծովից) է սկսում, Առանն է, հետո Հայաստանը և ապա Ատրպատականը:

Ինչ վերաբերում է Առանին, ապա դա երկրամասի մեկ երրորդն է և նման է կղզու՝ լճի (Կասպից ծովի) ու Արաքս գետի միջև: Նահր ալ-Մալիքը (Սամուր) նրան ճեղքում է երկարությամբ: Նրա մայրաքաղաքն է Պարտավը: Նրա քաղաքներից է Տփղիսը, ալ-Կալաան (Կալաատ իբն Քանդաման), Շամխորը, Խունանը, Գանձակը (Ջանզա), Բարդիջը, Շամախին, Շիրուանը, Բաքուն, Շապորանը, Դարբանդը (Բաբ ալ-Աբուաբ), ալ-Աբխազը (ալ-Լայիջան), Կապաղակը (Կաբալա), Շաքեն (Շաքքի), Մանազկերտը[3] և Տաբլան[4]:

Իսկ Հայաստանը մի մեծ նահանգ է, որը հիմնել է Նոյի որդի Հաբեթի որդի Թորգոմի որդի Արմինին (Արմինի Իբն Լանթա իբն Յաֆիս իբն Նուհ): Այստեղ արտադրվում են վարագույրներ, բրդե բարձրարժեք գորգեր (ղալալի): Նա ունի բազում հատուկ արտադրանքներ: Նրա մայրաքաղաքն է Դվինը (Գաբիլ) և նրա քաղաքներն են Բաղեշը, Խլաթը, Արճեշը, Բերկրին, Խոյը, Սալմաստը, Ուրմիան, Դախառականը, Մարաղան, Ահրուն, Մարանդը, Սինջանը, Կարնո քաղաքը, Կանդարիյան, Կալաատ Յունիսը և Նուրինը:

Ատրպատականը մի նահանգ է, որի տարածությունը սահմանագծել է Ատրպետը (Ադարբադ) որդի Բյուրասպի (Բայվարասֆ) որդի Ասուաղի, որդի Սեմի որդի Նոյի: Նրա մայրաքաղաքը Արդաբիլն է, որն ամբողջ երկրամասի կենտրոնն է: Նրանում կա մի լիճ, որի երկարությունը հարյուր քառասուն փարսախ է և ամբողջովին ծածկված է գյուղերով ու մշակված դաշտերով: Ասվում է, որ այնտեղ կան յոթանասուն լեզուներ: Այս լճից է գալիս Արդաբիլի բարիքների առատությունը: Նրանց տները մեծ մասամբ գետնի տակ են: Նրանց քաղաքներն են Ռասբան, Տաբրիզը, Ջարրավանը. Խունաջը, Մայանիջը, Սաբատը, Բարուան, Վարդանակերտը (Վարսան), Մուղանը. Միմադը և Բարզանդը:

Եթե որևէ մեկը ենթադրի, որ Բաղեշը (Բաղլիս) Ակուր (Ջազիրա) նահանգում է, ապացույց բերելով այն, թե Համդանինների տոհմի (Բանու Համդան) տիրույթներից էր եղել, ես կպատասխանեմ, որ նկատի ունենալով, թե երկու նահանգների (վիլայաթ) ժողովուրդն էլ այդ բանը ենթադրել է, ապա մենք այս երկրամասում դրեցինք, քանզի մենք նրան մի համանման անուն ենք գտել, որը Տաֆլիսն (Տփղիս) է: Ինչ վերաբերում է որևէ մեկի տիրույթը լինելուն, ապա դա չի կա-

ընլի ապացույց համարել: Չէ որ Սայֆ ալ-Դաուլայինն էին նաև Կին-նասրինն ու Ռակկան և ոչ ոք չի ասել, թե Ռակկան Ասորիքի մեջ է գտնվում:

Պարտավը մի մեծ մայրաքաղաք է, քառակուսի ձևով, դաշտի մեջ: Ունի ընդարձակ բերդ (միջնաբերդ). նրա շուկաները ամբողջովին ստվերի տակ են: Շուկայի ներսում է մայր մզկիթը: Սա (Պարտավը) այս երկրամասի Բաղդադն է: Տները գեղեցիկ են, կառուցված աղյուսով ու գաջով (ջասս): Նա հաճելի է և սիրուն: Մրգերն առատ են: Մզկիթի որոշ սյուներ աղյուսից են և որոշ սյուներ՝ փայտից: Ունի մի գետ, որը միջով է անցնում, իսկ Կուր գետը երկու փարսախ հեռավորության վրա է: Գետակները նրան մոտիկ են և օգտակար նրա համար, սակայն նրանց ափերն ավեր վիճակում են, բնակիչներից դատարկված և նրա բերդն ավերված է:

Տփղիսն ամրացված քաղաք է, լեռների մոտ: Նրա միջով անցնում է Կուր գետը: Նա կառուցված է երկու ափերի վրա, որոնք կամուրջով միանում են: Նրա պատերը (պարիսպները) քարաշեն են, փայտով ծածկված:

Կալաան մի քաղաք է առանց բերդի (միջնաբերդի) կառուցված դաշտում, Լաքզան լեռան մոտ:

Շամախին մի լեռան ստորոտին է: Կառուցված է քարով ու գաջով, ունի հոսող ջրեր, պարտեզներ ու զբոսավայրեր:

Շիրուանը (Շարուան) մեծ է, կառուցված դաշտում, քարաշեն և մզկիթը շուկաների մեջ է: Նրա միջով մի գետ է անցնում:

Մուղանը այս երկրամասի սահմանի ծայրին է: Եղել է մարդաշատ, սակայն նրա բնակիչները պակասել են: Նա մեծ ճանապարհի վրա է:

Բաքուն (Բաքուհ) լճի (Կասպից ծովի) վրա է և այս երկրամասի նավահանգիստներից մեկը:

Շապրանը (Շարաբան) բերդ չունի: Քրիստոնյաներն այնտեղ մեծամասնություն են: Սա ես երկրամասի սահմանի ծայրին է:

Կապաղակը (Կաբալա) ամրացված քաղաք է, գետը քաղաքից դուրս է, իսկ մզկիթը հեռու է, մի բլրի վրա:

Շաքեն (Շաքքի) դաշտում է կառուցված: Քրիստոնյաները այնտեղ մեծամասնություն են: Մայր մզկիթը մահմեդականների շուկայում է:

Վարդանակերտը (Վարսան) դաշտում է, նրա շուկան հաճախ են այցելում: Նրա ներսում կա մի գետակ ու մայր մզկիթ, որոնք իրարից հեռու են:

Բայլականը փոքրիկ քաղաք է, նրա բնակիչները հրաշալի մարդիկ են: Այստեղ կա մի նշանավոր օշարակ (նաթիֆ):

Մանազկերտը (Մալազքիրդ) մի ամրացված քաղաք է: Ունի մի քանի աղոթքի բեմեր (մինբար) և բազմաթիվ պարտեզներ: Մայր մզկիթը շուկայի եզրին է:

Տարյան (Տայյա, Թելավ) մի [քաղաք] է, ուր մահմեդականները հինգ հարյուր ընտանիք (տուն) ունեն, սակայն բնակչության մեծամասնությունը քրիստոնյաներ են: Սա Հաճնլի [քաղաք] է:

Արխազը (Աբխան, Լայիջան) Հաճնլի [դավառ] է: Այդպիսին են նաև այս գավառի քաղաքները:

Յունիս գյուղը (կարիատ Յունիս) Դերանիկի (Դայրանի, Դիրանի) քաղաքն (րալաղ) է, ուր կան մահմեդականներ:

Դարբանդը (Բաբ ալ-Աբուաբ) Խազարաց (Կասպից) ծովի վրա է, ամրացված պարսպով, որը խազարների կողմն է: Ունի երեք դռներ (դարպասներ)՝ Մեծ դուռը, Փոքր դուռը և մի ուրիշ դուռ ծովի կողմը, որը կողպած է և չի բացվում: Կան մի քանի դռներ ծովի և խալամի երկրների կողմը: Պարիսպն սկիզբ է առել (ձգվել) լեռնից մինչև լճի (ծովի) մեջտեղը և վրան եղել են աշտարակներ: Նրանում կան մզկիթներ և պահապան զորք (հուռաս): Մայր մզկիթը շուկաների մեջտեղում է, ուր կա ջրի աղբյուր: Շենքերը քարից կառուցված, տները գեղեցիկ և հոսող ջրեր ունեն:

Դվինը կարևոր քաղաք է, ունի անառիկ բերդ (միջնաբերդ): Նրանում շատ են բարիքները, անունը հռչակված է, բուրդը նշանավոր է, գետը հորդառատ: Սակայն այժմ նրա պարտեզները չորացել են: Ունի հինավուրց արվարձան և ամրակուռ բերդ: Նրա շուկաները խաչաձև են ու նրա գյուղական մերձակա հողերը (սավադ) հրաշալի: Մայր մզկիթը բարձր բլրի վրա է և նրա կողքին է եկեղեցին: Նրան (քաղաքը) պահպանում են քրդերը: Ունի միջնաբերդ: Նրանց շենքերը կավից ու քարից են: Բազմաթիվ դռներ ունի, որոնցից են Քայդարի (Քինդար) դուռը, Տփղիսի դուռը և Անիի դուռը: Սակայն նրա [բնակչության] մեծամասնությունը կազմում են քրիստոնյաները և նրանց ազնվականները: Բայց նրա բնակչությունը պակասել է և նրա բերդն ավերվել:

Բաղեշը մի խորունկ հովտի մեջ է, ուր երկու գետ է հոսում, որոնք քաղաքում իրար են խառնվում: Ունի երկու կողմեր (թաղամասեր): Նրանում կա քարաշեն միջնաբերդ երկու ցուլերի նմանողությամբ:

Խլաթը մի քաղաք է դաշտում կառուցված և ունի գեղեցիկ պարտեզներ: Նրա շուրջը կավե պարիսպ կա: Մզկիթը շուկաների մեջ է: Նրանում մի գետ կա:

Սալմաստը հաճելի [քաղաք] է: Ունի կավից ու քարից կառուցված բերդ և նրանում կա մի հորդառատ գետ: Նրա մայր մզկիթը շուկայի կողմի վրա է: Նա շրջապատված է քրդերով:

Ուրմիան գեղեցիկ [քաղաք] է բարեկարգ միջնաբերդով: Նրա մայր մզկիթը գտնվում է կերպասավաճառների (բազզազ) շուկայում: Ունի բերդ ու մի գետ:

Մարաղան հրաշալի է, ունի բերդ (հիսն) ու միջնաբերդ (կալաա) և

արվարձան: Նրա բերդերը կավից են:
Մարանդը ամրակուռ քաղաք է շրջապատված պարիսպներով: Ունի շեն արվարձան, իսկ մայր մզկիթը շուկայի մեջ է:
Կանդարիյան մի քաղաք է հիմնադրված քրդերի կողմից և նրանում կա վայելչագեղ մայր մզկիթ:
Նուրինը ամրակուռ քաղաք է, ունի միջնաբերդ և մայր մզկիթի դռանը կա ջրի աղբյուր, ինչպես նաև բազմաթիվ պարտեզներ և հաճելի է:
Կալաատ Յունիսը (Յունիսի ամրոցը) Դերանիկի (Դիրանի) քաղաքն է և նրանում կան մահմեդականներ:
Արդաբիլը Ատրպատականի մայրաքաղաքն է և երկրամասի գլխավոր քաղաքը: Նրանում կա անառիկ բերդ: Նա Դվինից փոքր է, նրա շուկաները խաչաձև են և չորս փողոցների (դարբ) ուղղությամբ են ձգվում, իսկ մայր մզկիթն այս խաչմերուկում է, մի բարձունքի վրա, բերդի ետևում կա մի բազմամարդ արվարձան: Նրա շենքերի մեծամասնությունը կավից է, բազմաթիվ լուսամուտներով: Ունի առատ պտուղներ և շատ փողոցի աղբ: Կան հոսող ջրեր ու մշտական կայազոր (ասքար), բաղում բարիքներ և հրաշալի բաղնիքներ: Սակայն բնակիչները ժլատ են, ծանրաշարժ, նրանց մոտ քիչ են գիտուն մարդիկ: Սա մի հակակրելի քաղաք է, գարշահոտ, աշխարհի զուգարաններից (քանաֆ) մեկը: Բնակիչները ննդ են, անտարբեր, անհեռատես և անձնական կարիք ունեցողներին կարևորություն չեն տալիս: Նրանց մոտ չկա ոչ մի հիշատակելի իրավագետ (ֆակիհ), ոչ աչքի ընկնող պետ, ոչ զարգացած մարդ, ոչ էլ հմուտ բժիշկ:
Տաբրիզը, ինչ հաճելի քաղաք է Տաբրիզը: Դա մաքուր ոսկի է, հազվագյուտ քիմիա, ընտիր քաղաք, կարելի է գերադասել Խաղաղության քաղաքից (Բաղդադ), որով իսլամի ժողովուրդը հպարտանում է: Նրա միջով գետեր են անցնում և նրա շրջակա հողերի վրա (սավադ) ծառերը խիստ շատ են, կարիք չկա հարցնելու նրա էժան գների, մրգերի առատության մասին: Մայր մզկիթը քաղաքի կենտրոնում է, իսկ նրա (քաղաքի) հմայքը անսահման է:
Մուզանը մի քաղաք է շրջապատված երկու գետերով և չուրջը գեղեցիկ այգիներով, կարծես ամեն կողմ պարտեզներ են: Տաբրիզի հետ երկու ծաղկանոցներ են և ընդարձակ հովիտների երկրամասի (Ռիհաբ) երկու հպարտություններն են: Նա գտնվում է Արդաբիլի ու Ջիլանի (Դելան) միջև: Նրանից մինչև Պարտավ ութ (օթևան) է: Սա հաճելի քաղաք է բազմաթիվ դաշտավայրերով: Այնտեղ երկու գետ է հոսում: Նրա երեսլիները մարգարտի ու բուստի (մարջան) նման են, առատաձեռն ու ազնիվ:
Բարզանդը փոքր քաղաք է: Սա հայերի շուկան է և նահանգի առևտրական կենտրոնը, հրաշալի է և օգտաշատ:

*Միանան փոքր քաղաք է դաշտավայրում, առատ բարիքներով:*

*Զանջանր այս երկրամասի ծայրին է. մի գետ նրան բաժանում է մասերի: Այնտեղից անցնում է մի մեծ ճանապարհ:*

*Այս երկրամասի բոլոր քաղաքները հաճելի են. լի բարիքներով, էժան արտադրանքի աղբյուր (հանք) են, մրգերով, մսով ու հաճելի բարիքներով:*

## ԵՐԿՐԱՄԱՍԻ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐԸ

*Սա ցուրտ երկրամաս է, առատ ձյունով ու անձրևներով: Բնակիչները որոշ ծանր նկարագիր ունեն, սառն են և դանդաղաշարժ, ունեն երկար մորուքներ: Նրանց լեզուն գեղեցիկ չէ: Հայաստանում խոսում են հայերեն, Առանում՝ առաներեն (առանիյա), իսկ նրանց խոսած պարսկերենը (փարսիյա) հասկանալի է ու մոտիկ Խորասանի [բարբառին], իր ձայներով (տառերով):*

*Նրանք [մահմեդականները] իրավագիտական (մաղհաբ) հարցերում ուղղահավատ են, սակայն հադիսի մասնագետները հանբալիներ[5] են: Դվինում դերիշխող է Աբու Հանիֆայի մազհաբը[6] (կրոնաիրավագիտական դպրոցը), որի հետևորդները գտնվում են որոշ քաղաքներում, սակայն մեծամասնություն չեն:*

*Մի օր ներկա էի Աբու Ամր ալ-Խուայրիի հավաքույթին (մաջլիս) և նա լսում էր [մահմեդական] ավանդություններ (հադիս): Ասաց՝ հարցեր տվեք: Ինձ հետ մի ընկեր կար և մենք հարց տվեցինք «Հրապարակային պարգև» [գլխից]. սկզբում այն քննարկեցինք, ապա մենք տկարացանք [վեճի մեջ] և ահա մի երիտասարդ, որ այնտեղ էր, սկսեց հիանալի դատողություններ անել և երբ խոսքը վերջացրեց ես ասացի նրան՝ Աստված իմ, ինչ արտակարգ դատողություններ ես անում, և ավելացրի, որ հաճախ գալու եմ նրա մոտ ուսանելու: Ասաց՝ ես ձեր բարեկամներին հավասար չեմ: Ես ասացի՝ այդ ինչպե՞ս, չէ՞ որ իմ բարեկամները ավելին չեն ասում ինչ որ դուք եք ասել, բայց այս հարցը դժվարին է: Ասաց՝ այն ինչ ասացի, լսել եմ Խորասանի վերատեսուչ (նաղզար) Հաքիմ Աբու Նասր իբն Սալհից, որի հետ հաճախ եմ զրուցել այսպիսի հարցերի շուրջ:*

*Իսկ ինչ վերաբերում է աստվածաբանությանը, ապա այդ մասին չեն խոսում և չիիներ[7] չեն:*

*Դվինում կար մի մենաստան (խանակահ), ուր սուֆիզմի[8] մասին հարուստ տեղեկություններ ունեին, սակայն աղքատ կյանք էին վարում: Մի օր ներկա եղա Աբու [...] ալ-Արդաբիլիի հավաքույթին և նրա մոտ մեծ բազմություն էր կուտակվել, կանգնած և նստած ու տարբեր նյութերի շուրջ հարցեր էին տալիս: Ասացի՝ ի՞նչ կասես, Ալլահը քեզ ողորմի, այն մարդու մասին, որն ուներ սիրտ շատ մտերիմ, սակայն*

կորցրեց այն, ու՞ր կարող է այն փնտրել:
Ասաց՝ Թող նորից վերադառնա նույն միջոցին (եղանակին), որի օգնությամբ նախկինում այն ձեռք էր բերել և նրանով Թող գործանա:
Ասացի՝ նա արդեն կորցրել է այդ միջոցից օգտվելու կարողությունը:
Նա պատասխանեց՝ Թող նա այդ միջոցի տիրոջը խնդրի, որ այն նորից իրեն տրամադրի:
Ասացի՝ նա արդեն չի արժանանում այդ միջոցի տիրոջ նվազագույն ուշադրությանը, որպեսզի նրանից խնդրի:
Ասաց՝ Թող դուռը ծեծի, մինչև որ բացվի և Թող գիշերային խավարի մեջ աղաղակի, մինչև որ նա ողորմի:
**Գետերը,** որոնք հիշված են այս երկրամասում, երեքն են՝ Արաքս գետը, Մալիք գետը[9] և Կուրը: Վերջինս նրանցից ամենաԹեԹևն է. բխում է լեռան կողմից Գանձակի ու Շամխորի սահմաններում մինչև Տփղիսի՞-մոտերքը, ապա ընկնում է անհավատների երկիրը: Ապա քաղցրությամբ ու Թեթևությամբ նրան հաջորդում է Արաքս գետը, որը ձգվում է Առանի սահմանների երկայնքով, բխելով Հայաստանից ու վերջապես հասնում է Վարդանակերտ, ապա ուղղվում Մուղանի ետևի կողմը և Թափվում [Կասպից] ծովը: Իսկ Մալիք (Թագավոր) գետը բխում է Հոռոմների երկրից, որի ետևում կա Առան նահանգը և Թափվում է ծովը:
Այս երկրամասի հետ կապված է միայն Խազարաց (Կասպից) ծովը: Կան երկու լճեր, մեկն Ուրմիայի մոտ, երկարությունը մոտավորապես չորս օր է անասունի քայլվածքով, սակայն կարելի է [լիճն] անցնել առագաստանավով մեկ օր ու գիշերում: Հայաստանում կա մի ուրիշը, որ կոչվում է Արճեշի (Վանա) լիճ:
**Ապրանքներ,** որոնք այստեղ արտադրվում են: Պարտավից արտահանվում է մեծ քանակությամբ մետաքս: Դարբանդից վուշե (քԹան) զգեստներ, ստրուկներ, քրքում (զաաֆարան) և ընտիր ձորիներ: Դվինից արտահանում են բրդե զգեստներ, գորգեր, երեսի բարձեր, Թամբի կարպետներ (անմաԹ), գոտիներ: Պարտավից՝ վարագույրներ: Պարտավում կիրակի օրը լինում է մի շուկա, որը կոչվում է քուրքիյ (կիրակի), ուր ամբողջ նահանգի ու այլ շրջանների ժողովուրդն է հավաքվում, այնքան, որ [այս շուկայի անունով] մարդիկ ասում են՝ ալ-սաբտ (շաբաԹ), քուրքիյ*, ալ-իսնայն (երկուշաբԹի): Այստեղ վաճառվում է մետաքս և գործվածքեղեն:
Նրանց գոտիների, Թավշապատ գործվածքների, որդան կարմիր ներկի (կիրմիզ), Թամբի կարպետների, ներկերի, ռուկալ (ռուկալ) կոչված պտղի, կասբուլա ձկան, տառեխ (Թիռիխ) կոչված ձկան նմանը

* Հեղինակը չիմանալով հայերեն չի կռահում, որ դա կիրակի օր է նշանակում հայերենով: (Ա. Տ.-Ղ.):

չկա: Ունեն թուզ և չագանակ, որոնք չատ ընտիր են:

Այս երկրի հրաշալիքները: Դրանցից է Դարբանդը. որը մի բերդ է Տյուրոսի (Սուր) և Ակրայի (Աքքա) բերդերի նման, որոնց հիշել ենք: Սա շղթայով փակված է, կառուցված ժայռից ու նրա չաղալը կապարն է: Տփղիսում կան բաղնիքներ, որոնք տաքացվում են առանց վառելիքի Տիբերիայի մասին խոսելիս (նման): Մասիս լեռն խալամի երկրի բոլոր լեռներից բարձր է և ոչ ոք կարող է վերև բարձրանալ: Ասվում է, որ Փոքր Մասիսի հետ միասին Թաիֆի լեռներից է: Ասվում է, որ Արաքս գետի վրա եղել են հազար քաղաքներ, որոնք այժմ այս երկու լեռների տակ են:

Արդաբիլի մայր մզկիթում կա մի հսկա քար, որին եթե մուրճով հարվածեն, ոչ մի հետք չի մնա: Սա երկնքից է ընկել քաղաքից որոշ հեռավորության վրա, ապա տարվել է մայր մզկիթ: Լսել եմ ներքինի Զարիֆից, թե երբ մենք Արդաբիլի մոտ քայլում էինք, տեսանք որ երկնքից մի բան է իջնում, մի հսկա վահանի նման, որն ընկավ երկիր և մենք նկատեցինք, որ քար է: Հավանաբար սա է այն քարը: Այս քարը ներկարարների (սարբաղ) [գործածած] փայլեցնողի նման է, որը երկու ծայրում բարակում է:

Մուղանից երկու օթևան այն կողմ կա մի հսկա ամրոց, որը կոչվում է ալ-Հասրա, որի վերևում կան տներ, պալատներ, ուր մեծ քանակությամբ կան ոսկի, թռչուններ և վայրի գազանների պատկերներ: Մի քանի թագավորներ հնարքներ են մտածել այդ բաները ձեռք բերելու, սակայն չեն կարողացել բարձրանալ:

Դվինից երեք փարսախ հեռավորության վրա կա մի սպիտակ վանք, կառուցված կոփված (քանդակված) քարով և նման է երկար գլխանոցի (կալանսուա): Նրա ներսում կա Մարիամ [Աստվածածնի] պատկերը: [Շենքը] նստած է ութ սյուների (մույթերի) վրա, որոնց միջև գտնվում են դռներ: Որ դռնից էլ մտնես, կտեսնես Մարիամի պատկերը:

Նրա մոտ կա մի սև ժայռ, որից յուղ է ծորում, որով բուժվում են: Նրա (ժայռի) մոտ լինում է որդան կարմիր (կիրմիզ): Սա մի որդ է, որը երկրի վրա երևում է, և կանայք գնալով նրա մոտ, քաղում են պղնձե [ասեղով], որն իրենց հետ է լինում, ապա դնում են փռի մեջ:

Արդաբիլի հողագործական շրջաններում (ռուստակ) հերկում են ութ եզներով և չորս առջևից ընթացող [ձիերով], ամեն երկու եզան առջևից ընթանում է մեկը: Ես հարցրեցի, թե արդյոք հողի կարծրությա՞ն պատճառով է դա: Նրանք պատասխանեցին՝ չէ, այլ սառույցների պատճառով է:

Արդաբիլի մաննը հազար երկու հարյուր [դիրհեմ] է, Խոյի ռաթլը երեք հարյուր [դիրհեմ] է, իսկ նրանց մաննը՝ վեց հարյուր [դիրհեմ]: Այսպես է նաև Ուրմիայում: Ապա գալիս են մյուս բազդադյան ռաթլ-

